МАТЕНАДАРАН
ИНСТИТУТ ДРЕВНИХ РУКОПИСЕЙ ИМЕНИ МАШТОЦА

## ТОВМА АРЦРУНИ И АНОНИМ

# ИСТОРИЯ ДОМА АРЦРУНИ

Критический текст, предисловие
и примечания
М. О. ДАРБИНЯН-МЕЛИКЯН

ЕРЕВАН «МАГАХАТ» 2006

ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ
ՄԱՇՏՈՑԻ ԱՆՎԱՆ ՀԻՆ ՁԵՌԱԳՐԵՐԻ ԻՆՍՏԻՏՈՒՏ

ԹՈՎՄԱ ԱՐԾՐՈՒՆԻ ԵՒ ԱՆԱՆՈՒՆ

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՏԱՆՆ ԱՐԾՐՈՒՆԵԱՑ

Քննական բնագիրը, առաջաբանը և
ծանոթագրությունները
Մ. Հ. ԴԱՐԲԻՆՅԱՆ-ՄԵԼԻՔՅԱՆԻ

ԵՐԵՎԱՆ «ՄԱԳԱՂԱԹ» 2006

ՀՏԴ 941 (479.25)
ԳՄԴ 63.3 (2Հ)43
Թ 792

Հրատարակվում է Մաշտոցի անվան Մատենադարանի
գիտական խորհրդի որոշմամբ

Պատասխանատու խմբագիր՝
***Ս. Ս. Արևշատյան***

**Թովմա Արծրունի և Անանուն**

Թ 792 Պատմութիւն Տանն Արծրունեաց / Քննական բնագիրը, առաջաբանը և ծանոթագր. Մ. Հ. Դարբինյան-Մելիքյանի, պատ. խմբ. Ս. Ս. Արևշատյան. _ Երևան, 2006, XVIII+505 էջ

*Թովմա Արծրունու «Պատմութիւն տանն Արծրունեաց»-ը ընդգրկում է Հայոց աշխարհի պատմությունը, սկսած առասպելական ժամանակներից մինչև մ. թ. 10-րդ դարի կեսը: Այն կարևոր սկզբնաղբյուր է ոչ միայն Հայաստանի, այլ նաև հարևան երկրների պատմության, հատկապես, արաբական ժամանակաշրջանի ուսումնասիրման համար: Սույն հրատարակությամբ ներկայացվում է Թովմա Արծրունու «Պատմության» նոր քննական բնագիրը, որին կցված են տարընթերցվածքների բաժին, առաջաբան և ծանոթագրություններ:*

ԳՄԴ 63.3 (2Հ) 43

**ISBN 99941 – 991 – 7 -X**

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

# ԱՌԱՋԱԲԱՆ

*«Պատմութիւն տանն Արծրունեաց»-ը ընդգրկում է Հայոց աշխարհի պատմությունը, սկսած առասպելական ժամանակներից մինչև մ.թ. X-րդ դարի կեսը: Այն կարևոր սկզբնաղբյուր է ոչ միայն Հայաստանի, այլ նաև Հարևան երկրների պատմության և, Հատկապես, արաբական ժամանակաշրջանի ուսումնասիրման Համար: Ներկայացվող Հուշարձանը մեծ Հետաքրքրություն է ներկայացնում նաև աղբյուրագիտական առումով, շնորհիվ շարադրության Հիմքում եղած բազմազան աղբյուրների, սկսած Արծրունիների տոհմական առասպելներից և վերջացրած Շապուհ Բագրատունու մեզ չՀասած Պատմությամբ:*

Թովմա Արծրունու *Պատմության ձեռագրի*[1] *գոյության մասին Հայտնի է դարձել նախքան դրա Հրատարակությունը՝ շնորհիվ 1818 թ. Վենետիկում*[2] *լույս ընծայած* Եւս. Կես. *Քրոնիկոնի գրաբար թարգմանության բնագրի, որի տողատակ ծանոթագրություններում Հրատարակիչ և լատիներենի թարգմանիչ* **Մ. Աւգերեանցը** *նշում է* Թով. Արծ. *Պատմության բնագրում տեղ գտած բազմաթիվ փոխառություններ Քրոնիկոնից:*

*«Պատմութիւն տանն Արծրունեաց»-ի առաջին Հրատարակությունը լույս է տեսել 1852 թ.*[3]*: Հրատարակված բնագիրը բաժանված է երեք դպրությունների. գլուխները, բացի*

---

1 *Այժմ Մաշտոցի անվան Մատենադարանի ձեռ. N 10451:*

2 Եւսեբի Պամփիլեայ Կեսարացւոյ *ժամանակականք երկմասնեայ... Աշխատութեամբ Հ. Մկրտիչ վարդապետի Մխիթարեան Աւգերեանց: Վենետիկ, 1818:*

3 *«Պատմութիւն տանն Արծրունեաց ի* Թովմայ վարդապետէ Արծրունւոյ*»: Կ. Պոլիս, 1852:*

վերնագրերից, որ կան նաև ձեռագրում, համարակալված են: Ձեռագրում եղած և Դանիէլ գրչի կողմից բազմակետով նշանագրված բացթողումներից բացի, այդ տպագրությունում բազմակետով նշված են մի քանի հատվածներ, որ կան ձեռագրում: Այդ կապակցությամբ Ք. Պատկանեանը իր 1887 թ. հրատարակության կից առաջաբանում գրում է. «Յաւելաք միայն ի տեղիս զհատուածսն, զորս ի բաց արկեալ էր հրատարկչացն առաջնոց առ հանգամանաց տեղւոյն և ժամանակին»[4]. Խոսքը Մոհամմադի և Ղուրանի նկատմամբ արված քննադատական առանձին արտահայտությունների և հատվածների մասին է:

Առաջին հրատարակությանը հետևել է Ք. Պատկանյանի 1887 թ. հրատարակությունը և այս վերջինի արտատպությունը 1917 թ.: Այդ երեք տպագիրներում էլ ձեռագրի բովանդակությունը ներկայացված է որպես մի հեղինակի ստեղծագործություն: Սակայն հենց առաջին՝ 1852 թ. հրատարակությանը համարյա անմիջապես արձագանքեց Մ. Բրոսսեն ընդարձակ հոդվածով, որտեղ Թով. Արծ. ստեղծագործության պատմական բովանդակության մանրազննին քննության հիման վրա եկավ այն եզրակացության, որ այս ստեղծագործությունը գրել են երկու տարբեր հեղինակներ: «Եվ այսպես, _ գրում է նա, _ ես ենթադրում եմ, որ սկսած էջ 131-ից, գրիչը ձեռքն է վերցրել մեկ այլ Արծրունի, որպեսզի շարադրի իր տոհմի պատմությունը, սկսելով Դերենիկի որդի՝ Աշոտից»[5]: 1874 թ. լույս տեսավ «Պատմութիւն տանն Արծրունեաց»-ի Մ. Բրոսսեի ֆրանսերեն թարգմանությունը առաջաբանով և ծանոթագրություններով հանդերձ[6]:

Թովմա Արծրունու աշխատությունը գրավել է բազմաթիվ ականավոր հայագետների և արևելագետների ուշադրությունը

---

[4] «Թովմայի վարդապետի Արծրունւոյ Պատմութիւն տանն Արծրունեաց», ի լոյս էած Ք. Պ.: Ս. Պետերբուրգ, 1887 էջ Ե: «Թովմայի վարդապետի Արծրունւոյ, Պատմութիւն տանն Արծրունեաց», ի լոյս էած Ք. Պ.: Թիֆլիս, 1917:

[5] *«Notice sur l'Histoire de* Thoma Ardzrouni *X-e siecle». MA, IV-VI, p.* ***750:***

[6] **Thoma** Ardzrouni. *Histoire des Ardzrouni. Trad.* ***M. Brosse****. (Collection* ***l'Historiens arméniens****, I). S-Petersbourg,* ***1874.***

*որպես արժեքավոր տեղեկությունների աղբյուր, և յուրաքանչյուրը, իր գիտական հետաքրքրություններից ելնելով, մտցնում էր Թով. Արծ. բնագրի մեջ ուղղումներ և սրբագրություններ: Այդ տեսակետից պետք է հատուկ նշել Է. Դյուլորիեի, Հ. Մարկվարտի և Ն. Ադոնցի ավանդը. դժվար է նաև գերագնահատել Նորայր Բյուզանդացու ուսումնասիրությունների, և հատկապես, նրա երկու աշխատությունների՝ «Թովմա Արծրունի եւ Անանուն Արծրունի երկու այլեւայլ պատմագիրք են»[7] և «Նախնիք» մեծածավալ հատորի[8] նշանակությունը:*

*Առաջին ուսումնասիրությունում, հենվելով բառագիտական-բանասիրական վերլուծության վրա, Նորայր Բյուզանդացին վերջնականապես ապացուցում է, որ «Պատմութիւն տանն Արծրունեաց»-ը պատկանում է երկու տարբեր հեղինակների գրչին[9]: Այդ հաստատում են՝ ա) պատմական իրադարձությունների և գործող անձանց նկարագրությունների մեջ նկատվող տարբերությունները, երբեմն էլ հակասությունները. բ) տարբերություններ, որոնք նկատվում են, ընդհանրապես, շարադրման ձևի, և մասնավորապես, լեզվի և ոճի միջև (տե՛ս էջ 231): Միաժամանակ Նորայր Բյուզանդացին մտցնում է հրատարակված բնագրում մի շարք ուղղումներ: Այդ, ինչպես նաև այլ ուղղումներ, որ առաջարկված են իր մեկ այլ աշխատությունում՝ «Հայկական բառաքննութիւն»-ում[10], հետագայում ընդգրկվել են իր ստվարածավալ «Նախնիք» ուսումնասիրությունում. վերջինս իրենից ներկայացնում է հայ միջնադարյան պատմիչների ձեռագրեր արտագրող գրիչների թույլ տված վրիպակների և աղավաղումների լիակատար ժողովածու՝ զուգահեռ ճշգրտումներով և սրբագրություններով, որոնց հիմքում ընկած են առանձին տառերի գծագրերի նմանությունից բխող իր իսկ հայտնա-*

---

7 *Տե՛ս«Բազմավէպ», Վենետիկ, 1905, 5-10:*

8 *Նորայր Բյուզանդացի. Նախնիք: Հրատարակութեան պատրաստեց Մարտիրոս Մինասեան. Ժնեւ, 1996:*

9 *Նորայր Բյուզանդացին նշում է, որ այդ տեսակետը արտահայտել է նաև Մ. Բրոսսեն վերոհիշյալ հոդվածում և Թով. Արծ. Պատմության ֆրանս. թարգմանության առաջաբանում:*

10 *Նորայր Բյուզանդացի. Հայկական բառաքննութիւն. Կ. Պոլիս, 1880:*

*բերած օրինաչափությունները: Գիտնականի կատարած աշխատանքի հսկայական ծավալը ներկայացնելու համար բավական է ասել, որ միայն Թով. Արծ. բնագրի կապակցությամբ իր առաջարկած ուղղումների թիվը հասնում է մի քանի հարյուրի:*

*1985 թ. լույս է տեսել Թով. Արծ. Պատմության գրաբար բնագրի նոր հրատարակությունը զուգահեռ աշխարհաբար թարգմանությամբ: Հրատարակությունը իրագործել է Վ. **Վարդանյանը**, որը հաշվի առնելով ձեռագրի ուսումնասիրման գործում ձեռք բերած հաջողությունները, առաջին անգամ ներկայացնում է Թով. Արծ. Պատմության բնագիրը որպես երկու հեղինակների գործ:*[11]

*1985 թ. լույս է տեսնում նաև Թով. Արծ. Պատմության Ռոբերտ Թոմսոնի անգլերեն թարգմանությունը.*[12] *բնագրին կցված է ընդարձակ առաջաբան, որտեղ ներկայացված են հիմնականում «Պատմութիւն տանն Արծրունեաց»-ի գրական հատկանիշները, և տողատակի, առավելապես, աղբյուրագիտական ծանոթագրություններ:*

*2001 թ. հրատարակվել է «Պատմութիւն տանն Արծրունեաց»-ի մեր ռուսերեն թարգմանությունը ներածական հոդվածով և ծանոթագրություններով*[13]*, որոնք որոշ չափով օգտագործված են նաև բնագրի սույն հրատարակության ծանոթագրությունների բաժնում:*

* *
*

---

[11] Թովմա Արծրունի և Անանուն. *Պատմութիւն տանն Արծրունեաց: Բնագիրը հրատարակության պատրաստեց, աշխարհաբար թարգ. և ծանոթագր. **Վ. Վարդանյան**, Եր., 1985:*

[12] Thoma Ardsruni. *History of the Ardsrunik, Translation and Commentary by Robert W. Thomson. Detroit, 1985.*

[13] Товма Арцруни и Аноним. *История дома Арцруни. Перевод с древнеармянского, вступительная статья и комментарии* ***М. О. Дарбинян–Меликян**, Ереван, 2001:*

# ՆԵՐԿԱ ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ ՀԱՆԳԱՄԱՆՔՆԵՐԸ

Աշխատելով Թովմա Արծ. Պատմության ռուսերեն թարգմանության վրա և համեմատելով 1852, 1897 և 1985 թթ. տպագիրները ձեռագրի հետ, մենք նկատել էինք, որ՝ 1) որոշ դեպքերում, ինչ-ինչ պատճառներով, առաջին երկուսի տողատակ տարընթերցվածքներում (երրորդը նման բաժին չունի) ձեռագրում ճիշտ գրված բառը տրված է սխալ գրությամբ. 2) որոշ բառեր, անուններ, որ կան ձեռագրում, վրիպել են հրատարակիչների աչքից. 3) ձեռագիրն ավարտող հիշատակարանը, որը տպագիրներում ներկայացված է լրիվ, մեզ հասած ձեռագրում չունի վերջին էջերը: Ահա, ելնելով այս ամենից մենք հարկ համարեցին ձեռնարկել Թովմա Արծրունու Պատմության նոր հրատարակությունը:

Վերը նշված անճշտությունները ներկայացված են սույն հրատարակության տարընթերցվածքների բաժնում: Քանի որ մենք հնարավորություն չունեինք օգտվելու XIX դ. կատարված N10451 ձեռագրի ընդօրինակություններից, որ ձեռքի տակ ունեին առաջին երկու տպագիրների հրատարակիչները, ապա այդ ընդօրինակությունների տարընթերցվածքները նույնությամբ («այլ օր») պահպանել ենք ներկա հրատարակությունում: Բացի այդ օգտագործված են նաև Մատենադարանի հինգ ձեռագիր ժողովածուներում Թով. Արծ. Պատմության Բ դպրության առաջին երկու գլուխներից պահպանված մի հատված՝ «Ի Պատմութենէ Թովմայի վարդապետի» վերտառությամբ, որոնք (և հատկապես, 1172 թվի ձեռագիրը, որից օգտվել է նաև Վ. Վարդանյանը) ունեն կարևոր տարընթերցվածքներ: Այդ բաժնում մենք զետեղել ենք նաև Նորայր արք. Ծովականի՝ «Թովմա Արծրունի: Բնագրական սրբագրություններ» հոդվածում ներկայցված տարընթերցվածքները: Այդ կապակցությամբ նա գրում է. «Սուրբ Աթոռոյս թ. 1 ճառընտրին Գ հատորին մեջ (էջ 267ա-270բ) կըգտնուի «Վկայութիւն Սրբոյն Գէորգա Ակայեցւոյ և Սրբոյն Խոսրովա, որ ի Ղաբեղեան տոհմէն, որք նահատակեցան յաշխարհիս Հայոց, ի ձեռաց անօրէն իշխանին Իսմայելացւոց, որում Բուխայն կոչէին»: Ինչպես նշում է Նորայր արք. Ծովականը, այս վկայաբանությունը որոշ մասերով համընկնում է Թով. Արծ. Պատմությանը (տե՛ս սույն հրատարակության էջ 157-160, 190-193), իսկ որոշ մասերում պարունակում է միայն իրեն յուրահատուկ բավա-

կանաչափ մեծ հատվածներ[14]: Մենք հարկ համարեցինք ներկայացնելու տարընթերցվածքների բաժնում նաև այն սրբագրությունները, որոնք առաջարկում է Նորայր Բյուզանդացին իր «Նախնիք» աշխատության մեջ:

Տարընթերցվածքների բաժնում օգտագործված ձեռագրերն ու տպագիրները ներկայացված են հետևյալ համառոտագրություններով:

**Ձեռագրեր**

*Ա - ձեռ. N 10451 (1303 թ.):*
*Բ - ձեռ. N 1890 (1172 թ., էջ 207բ-209բ):*
*Գ - ձեռ. N 1882 (1619թ., 353ա-353բ):*
*Դ - ձեռ. N 1889 (1675 թ., էջ 67բ-68ա):*
*Ե - ձեռ. N 2550 (XVI դ., էջ 303ա-304բ):*
*Զ - ձեռ. N 1404 (1664 թ., էջ 603ա-604բ):*

**Տպագրեր**

*I* - Պատմութիւն տանն Արծրունեաց ի Թովմայի վարդապետէ Արծրունւոյ. Կ. Պոլիս, 1852:
*II* - Թովմայի վարդապետի Արծրունւոյ Պատմութիւն տանըն Արծրունեաց. ի լոյս էած Ք. Պ.. Ս. Պետերբուրգ, 1887:
*III* - Թովմա Արծրունեաց և Անանուն. Պատմութիւն տանն Արծրունեաց. Բնագիրը հրատարակության պատրաստեց, աշխարհաբար թարգ. և ծանոթագր. Վ. Մ. Վարդանյան. Եր., 1985.
*Ծ* - Նորայր արք. Տովական. «Վանատուր». Բանասիրական յօդուածներու ժողովածոյ Երուսաղէմ, 1998:
*Նախն.* - Նորայր Բիւզանդացի. Նախնիք. Հրատարակութեան պատրաստեց Մարտիրոս Մինասեան, Ժնեւ, 1996:

Բնագրի այն բառերը, որոնք ունեն տարընթերցվածքներ, նշված են աստղանիշներով ըստ ձեռագրի էջերի, ([1] ×) Ա(էջում/ապ ի ս), իսկ բնագրին կից ծանոթագրությունները՝ թվով: Քառանկյուն փակագծերում տրված են N10451 ձեռագրի էջերը՝ [ ]. կլոր փակագծերում՝ ( ) այն բառերը, որոնք ավելացված են հրատարկիչների կողմից: Այն բացթողումները, որոնք Դանիէլ գրիչը նշանակել է բազմակետով և որոնք

[14] Տե՛ս «Վանատուր», էջ 148-153:

լրացրել ենք Եփս. Կես. Քրոնիկոնի օգնությամբ տրված են եռանկյուն փակագծերում՝ <>:

* *
*

Թովմա Արծրունու Պատմությունը պահպանվել է միայն մի ձեռագրով, որը այժմ պահվում է Մաշտոցի անվան Մատենադարանի ձեռագրերի ֆոնդում 10451 համարի տակ: Ձեռագիրը բաղկացած է 326 թերթից: Նյութ՝ թուղթ: Մեծություն՝ 25×33,5: Կազմ՝ կաշեպատ տախտակ. կազմի ներքին կողմը՝ զարդերով գործվածք: Գիր՝ բոլորգիր: Գրադաշտ՝ երկսյուն: Տող՝ 21, էջ 642-ից՝ 28: Զարդագրեր ունի: Գրիչ Դանիէլ: Ծաղկող՝ նույն ինքը՝ Դանիէլն է: Պատվիրատու՝ աթոռակալ մեծի տանն Սիւնեաց Ստեփանոս Օրբելեան: Ստացող՝ Զաքարիա Ա կաթողիկոս Ախթամարցի: Ժամանակ՝ 1303 թ.: Տեղ՝ Ախթամար սբ. Խաչ: Հիշատակարան՝ առաջինը՝ Դանիէլի՝ էջ 642-ից, երկրորդը գրված է ուրիշ ձեռքով, գրչի անունը անհայտ է՝ էջ 648-ից: Ձեռագիրը մուտք է գործել Մաշտոցի անվան Մատենադարան 1969 թ.:

Ձեռագիրը ունի երկու համարակալություն. մեկը (վերին դաշտի մեջտեղում), հավանորեն նախնականը, արված է ըստ թերթերի (1, 1ա, 2, 2ա, 3, 3ա, և այլն), երկրորդը ըստ էջերի (1, 2, 3 և այլն): Սույն հրատարակությունում մենք գերադասեցինք երկրորդը, քանի որ այն պահպանվել է ավելի լավ: Ձեռագիրը չունի անվանաթերթ: էջ 14-ի ներքևի դաշտում մանր բոլորգրով գրված է՝ «Արծրունեաց վիպագրութիւն», էջ 15-ի ներքևի դաշտում՝ «Արծրունեաց գիրք»: Թովման ինքը իր անունն է հիշատակում ձեռ. էջ 178 հետևյալ կոնտեքստում. «Ապա փոյթ ինձ Թովմայի, որ ոչ վերջոտնեալ կալայ ամօթով զյետին տեղին, այլ փոխանակ սոցա մատեայ ի տեղիս յայս, ձեռն արկեալ անիմաստաբար լի անհմտութեամբ և անհանճարութեամբ բուռն հարկանելով զմեծ զայս քերթածութենէ»: Թովմա Արծրունու և Անանունի Պատմությանը XII դարում կցված է եղել Արծրունյաց տոհմի կողագիծ ճյուղի՝ Խեդենիկյաննների համառոտ պատմությունը, որի վերջում (էջ 641-642) գրված է. «Նա (իմա՝ Ալուզը) ստացաւ զմատեանս Թովմայի զպատմագիրս այս և ետ նորոգել վերստին, յիշատակ իւր և բարի ծնողաց իւրոց և աստուածատուր պտղոյ որովայնի իւրոյ Խեդենկին...»: Ձեռագրի էջ 642-ից սկսվում է Դանիել գրչի հիշատակարանը, որտեղ ևս հիշատակված է «... գեղեցկայարմար Պատմու-

թիւնս այս, զոր արարեալ ստուգաբանութեամբ անյաղթ և գիտնական վարդապետին Թովմայի…»:

Թվում է, որ մեզ չհասած իր Պատմության վերջին էջերում Թով. Արծ. պետք է որ գրած լիներ ևս մի ավելի ընդարձակ հիշատակարան: Նույնը կարելի է ասել նաև Անանունի մասին, որի ստեղծագործության ոչ սկիզբն է մեզ հասել, ոչ էլ վերջը:

Թով. Արծ. «Պատմութիւն տանն Արծրունեաց»-ը Մով. Խոր. Պատմության նմանությամբ բաղկացած է երեք դպրություններից: Բուն շարադրանքին նախորդում է չվերնագրված առաջաբանը, որի առաջին տողը գրված է կարմիր գլխատառերով. էջի վերին դաշտում կա պարզունակ գլխազարդ, աջ դաշտում՝ լուսանցազարդ (ձեռագրում բոլոր գլխատառերը և զարդագծերը արված են կարմիր թանաքով): Առաջաբանը, ինչպես նաև բոլոր վերնագրերն և հիշատակարանները գրված են սև թանաքով և կիսով ավելի մանրտառերով, քան բուն շարադրանքինը: Առաջաբանը ավարտվում է էջ 8-դի առաջին սյունակի 1-6 տողերով, որոնք գրված են շուռ տված կոնի ձևով: Երկրորդ սյունակը չի լրացված: Հաջորդ 9-րդ (5ա) էջից սկսվում է Պատմության բուն շարադրանքը: Գրադաշտի վերևի կեսը զբաղեցնում է կիսախորանը: Այնուհետև առանց վերնագրի, գլխատառերով գրված են բնագրի առաջին հինգ տողերը, որոնք զբաղեցնում են գրադաշտի ողջ լայնքը: Առաջին տողի առաջին՝ Ք տառը ոճավորված է թռչնի ձևով. ձախակողմյան դաշտում էջի ողջ բարձրությունը զբաղեցնում է զարդանկար: Առաջին, երրորդ և հինգերորդ տողերը գրված են կարմիր թանաքով, երկրորդ և չորրորդ տողերը՝ սևով: Շարադրանքը շարունակվում է էջ 10-ից երկսյուն, 21 տողերով յուրաքանչյուրում: Առաջին գիրքը ավարտվում է 178 էջի 2-րդ սյունակի 12-րդ տողով: 13-րդ տողից սկսվում է մանր ձեռագրով գրչի հիշատակարանը $(^{2}/_{13-22})$: 179-րդ էջի առաջին սյունակի առաջին երկու տողերը զբաղված են վերնագրով՝ «Դպրութիւն երկրորդ Պատմութեան Հայոց»: Երրորդ տողից սկսվում է անվերնագիր առաջին գլուխը: Հետևյալ՝ երրորդ գիրքը սկսվում է էջ 247-ից և ունի հետևյալ վերնագիր $(^{1}/_{6-11})$ «Դպրութիւն վասն որ ինչ գործեցաւ ընդհանուր աշխարհիս Հայոց: Եւ երկպառակութիւն իշխանացն անհաւանք և անհնազանդք միմեանց լինելով. և որ ինչ ընդ սոքաւք»: Տպագիրներում այդ վերնագիրը, որը համառոտակի ներկայացնում է երրորդ գրքի բովանդակությունը, տրված է որ-

պես առաջին գլխի վերնագիր, սակայն իրականում առաջին գլուխը այստեղ էլ, նախորդ դպրությունների նման, վերնագրված չէ, այլ առանձնացված է կարմիր գլխատառերով գրված առաջին տողով:

Թով. Արծ. Պատմության ներքին գլխաբաժանումը հստակ չէ: Բնագրի բոլոր շատ թէ քիչ ծավալուն հատվածները առանձնանում են, սովորաբար, առաջին տողի խոշոր կարմիր գլխատառերով, սակայն միշտ չէ որ նման տողին նախորդում է վերնագիրը:

Ինչպես նշեցինք, վերնագրված չեն եղել երեք դպրությունների առաջին գլուխները. վերնագիր չուներ նաև 5-րդ հատվածը, որն առանձնացրել է որպես առանձին գլուխ **Ք. Պատկանյանը** իր 1887 թ. հրատարակությունում: Այս հատվածը սկսվում է էջ 98-ից և ավարտվում էջ 105-ում «Ամովս և Եզակիէլ» բառերով. այնուհետև, որպես 6-րդ գլխի վերնագիր հանված է պարսից թագաւորների անվանացանկը, որի առաջին կեսը՝ փոխ է առված Եվս. Կես. Քրոնիկոնից՝ «Յետ Կիւրոսի Կամբիւսէս, Շմերգիս մոգ, Դարէհ Վըշտասպ. ի քսաներորդի ամի Դարէհի մեռաւ Տիգրան Հայկազնեայ»:

Իրականում այդ ցուցակը ավարտում է 5-րդ հատվածը և ձեռագրում ձևակերպված է, ինչպես նաև բոլոր մյուս նման դեպքերում, երբ հեղինակը ներկայացնում է անվանացանկեր՝ կանոնի ձևով.

| | |
|---|---|
| Յետ Կիւրոսի՝<br>Կամբիւսէս<br>Շմերգիս մոգ<br>Դարէհ Վշտասպ | ի քսաներորդ ամի<br>Դարէհի մեռաւ<br>Տիգրան<br>Հայկազնեայ |

Անվանացանկը լրիվ համապատասխանում է 5-րդ գլխի բովանդակությանը և ոչ մի կապ չունի 6-րդ գլխի բովանդակության հետ: Այս կերպ ձևակերպված անվանացանկերի հանդիպում ենք նաև այլ գլուխներում: Այսպես, 6-րդ գլուխը սկսվում է էջ 105-ում կարմիր տառերով առանձնացված տողով, իսկ հաջորդ էջում տեղադրված են ստորև ներկայացված և գլխի բովանդակությանը համապատասխանող Արծրունիների նախնիների և պարսից թագավորների զուգահեռ անվանացանկերը, ձևակերպված կանոնի ձևով (էջ 106, $^{1}/_{3-11}$):

| | |
|---|---|
| Տիգրան<br>Ադրամելէք<br>Ներս<br>Ներսէհ<br>Մարոդ<br>Արշաւիր<br>Ասուդ | Դարեհ<br>Արտաշէս<br>Ողոկոս<br>Զարսէս<br>Դարեհ<br><br>Ապա Աղեքսանդրոս |
| Պարսից թագաւորք<br>Քսերքսէս<br>Արտաշէս<br>երկայնաբազուկ<br>Զմելուզեա (?)<br>արքայ | Փիլիպեա Մակեդոնացի<br>տիեզերակալ<br>թագաւոր<br>զգրիչս յիշեա<br>Քր. Ած. ուլթեան<br>քում: |

Նույն կերպ, հիշեցնելով Եվս. Կես. Քրոնիկոնի Բ հատորում զետեղված կանոնները, ձևակերպված են Թով. Արծ. այլ անվանացանկերը (տե՛ս էջ 110, 114, 136, 139):

Հատկանշական է, որ Պատմության երեք դպրությունների առաջին գլուխներից ոչ մեկը վերնագիր չունի: Այսպիսով, Թով. Արծ. Պատմության ներքին գլխաբաժանումը հստակ չի եղել, որոշ գլուխները ունեցել են վերնագրեր, իսկ մի քանիսը՝ ոչ: Յուրաքանչյուր շատ թե քիչ խոշոր հատվածի առաջին տողը առանձնացվում է կարմիր թանաքով գրված գլխատառերով, այսինքն կատարում է իմաստային չեչտի դերը: Այդ պարագայում մանր տառերով սև թանաքով գրված վերնագրերը, որոնց երբեմն անմիջականորեն կցված է լինում գրչի հիշատակարանը, ինչպես, օրինակ՝ «Զմեղապարտ և զանարժան գրիչս յիշեցեք ի Քրիստոս, որ գրեցի զսա ի դուռն սուրբ Խաչին Ախթամար ՉՃԲ թուին: Թէ որպէս եղև բարձումն չար թագաւորութեանն Պարսից, և փոխանորդեաց միւս ևս չար իսմայելական», կորցնում են իմաստային բեռնվածության կրողների նշանակությունը:

Այդ ամենը մտածել է տալիս, որ հեղինակային օրինակում գլխաբաժանում չի եղել և վերնագրերի դերը կատարում էին կարմիր գլխատառերով գրված տողերը, իսկ գլխաբաժանումը կատարվել է ձեռագիրն ընդօրինակող գրչի նախաձեռնությամբ: Բոլոր դեպքերում XII-րդ դարի գաղափար ձեռագիրը շատ հին էր և քայքայված, ինչի մասին վկայում են այն պակասող թերթերը, որ գաղափար օրինակից ընկած են

*եղել ձեռագրի քայքայվածության պատճառով, և այն բացթողումները, որոնք 1303 թ. ընդօրինակությունում նշանակված են բազմակետով: Ինչպես նշում է Նորայր Բյուզանդացին՝ «Այս չափ թղթերու և թերթերու ընկած ըլլալը՝ յայտնի նշան է, որ գաղափար ձեռագիրն, յորմէ ընդօրինակած է Դանիէլ, սկզբնաբար ոչ կարված էր և ոչ կազմված, և հազիւ ԺԲ դարու կնորոգվի, այսինքն կը կարուի և կը կազմուի»: (*Թով. Արծ. և Անան. Արծ.*, էջ 228):*

*Ձեռագրի բնագիրը ավարտում են երկու հիշատակարաններ. առաջինը՝ Դանիէլ գրչինն է (էջ 642, $^{1}/_{24}$ - 646, $^{1}/_{11}$), որտեղ, ինչպես վերը նշվեց, տրված է XII-րդ դարի գաղափարձեռագրի պատճենավորման տարեթիվը՝ 1303: Ինչպես երեվում է հիշատակարանի բովանդակությունից, այն գրված էր պատճենավորման ավարտից անմիջապես հետո, այնուհետև, ձեռագիրն պետք է որ հանձնվեր պատվիրատու Ստեփաննոս Օրբելյանին, սակայն, ըստ երևույթին, վերջինիս մահվան պատճառով ձեռագիրը մնացել է Խեղենիկյանների[2] ընտանիքում: Երկրորդ հիշատակարանը (էջ 648 $^{1}/_{1}$-651 $^{2}/_{28}$) գրվել է Ախթամարի կաթողիկոս Զաքարիայի մահվան կապակցությամբ:*

*1852 թ. տպագրում, ինչպես և դրան հաջորդող բոլոր հրատարակություններում հիշատակարանը ներկայացված է լրիվ, մինչդեռ ձեռագրում պակասում են վերջին երեք էջերը: Առաջին տպագրության առաջաբանում ձեռագրի վիճակը բնորոշվում է որպես լավ: Սակայն ձեռագիրը մեզ է հասել ավելի վատ վիճակում. մեզ անհայտ հանգամանքներում ձեռագիրը ենթարկվել է ջրի ներգործության, որի հետևանքով 1) ամբողջությամբ լվացվել են վերջին երեք էջերը, որոնց վրա պահպանվել են տողերի հազիվ նշմարելի հետքեր, 2) էջ 20, 40, 41, 64, 65, 254, 456, 487, 644, 646 դժվարությամբ են կարդացվում, երբեմն էլ անընթեռնելի են դարձել առանձին բառեր և նույնիսկ տողեր, 3) հատկապես շատ են վնասվել ջրից 131-137 էջերը: Այսպես՝ չի կարդացվում 131 էջի 2-րդ սյունակի առաջին կեսը. մասամբ չի կարդացվում 132 էջի երկրորդ սյունակի առաջին կեսը, ամբողջությամբ վնասված է 134 էջը, ընթեռնելի են մի քանի առանձին բառեր. էջ 135-ում պահպանվել են երկու սյունակի առաջին յոթ տողերը, մնացած մասը վնասված է ջրով, տեղ-տեղ մնացել են միայն առանձին բառերի մասերը:*

Քանի որ քննության առարկա հիշատակարանը պահպանվել է միայն շնորհիվ 1852 թ. իրագործած հրատարակությանը, որը և հանդիսանում է, ուրեմն, նրա միակ աղբյուրը, ապա դա նշանակում է, որ ձեռագիրը վնասված է եղել հետագայում, 1887 թվից հետո (Ք. Պատկանյանն ոչ մի դեպքում չէր մատնի այդ հարցը լռության), թերևս XX-րդ դարում: Մենք տեղեկություններ չունենք, թե ինչ ճանապարհ է անցել ձեռագիրը մինչև Մաշտոցի անվան Մատենադարանում հանգրվանելը, սակայն նրա այսօրվա վիճակը վկայում է, որ այդ ճանապարհը բավական դժվարին էր, և եթե չլիներ 1852 թ. տպագրությունը, ապա սույն հրատարակությունում շատ ավելի կլինեին բազմակետով նշված բացթողումներ:

Ձեռագրում կան բազմաթիվ լուսանցագրեր, որոնց գերակշռող մասը պատկանում է Դանիէլին, որոշ մասն էլ՝ այլ անձանց գրչին: Դրանցից մի քանիսը, որ բնորոշում են գաղափար-ձեռագրի վիճակը մեջ են բերված տարընթերցվածքների բաժնում: Լուսանցագրեր կան էջ՝ 14, 15, 19, 20, 68, 69, 74, 80, 122, 178, 185, 217, 282, 329, 332, 333, 347, 398, 431, 481, 486, 492, 528/529, 565, 585: Ստորև ներկայացնում ենք դրանցից մի քանիսը:

Էջ 74, սյուն. 2. «Արևն ի յերկինս իմա և լուսնին նադարդուն արա, որ ճարակ չկայ ի լուսնոյն նիւթն որ հեռանա. յորտեղ որ արևն երթայ լոյսն անճառ աղբեւր ցոլանա. հուրն և ճառագայթն և նիւթն միացել որ երկու չէ նա: Այսպէս ի Քրիստոս ասա դաւանումն է սերտ հաւատոյ: Ստեղծող է Քրիստոս և լոյս աշխարհի Տէր անտարակոյս, հոգի ու մարմին ու միտք, որ եղև փրկիչ գերելոյս՝ թէ չէր մի ատել հոգոյս ընդ բանին Աստուած մեռելոյս, ապա զկապանն ո՞վ լուծեր երբ չկայր մեզ ելնելու յոյս»:

Ներքևի դաշտում. «Ղանկ չունն և աշխարհկործան գազանն ՊԼՁ$_2$(=1387) թ. եկն ի Վան որ և առ զնա»:

Էջ 178, $^{2}/_{1-10\text{ն.}}$: «Գծագրեցաւ գիրքս այս առաջի սբ. Խաչիս Աղթամարայ հրամանաւ Զաքարայի վերադիտողի Հայոց սեռի, զոր Տէր Աստուած յամայրամ ժամանակս շնորհեսցէ սմա անփորձութիւն յորոգայթից երևելեաց և աներևութից, հանդերձ բարէպաշտ եղբարբն իւրով, որոյ անուն Ամիր Գաւրգի ճանաչի. ընդ որ աղաչեմ և զմեղուցեալ գրիչս յիշեցէք ի Քրիստոս»:

էջ 185, ներքևի դաշտում: *«Հիշեայ Քր. Ած. զգրիչս մատենի, ով Հարուստամիտ, ուսումնասէր ընթերցող տառիս և դուք ևս յիշեցէք ի Քրիստոս զմեղաւորս ուղղաւոր ամենեցուն սուտ անուամբ տիրացու Հայրապետս և զԳրիգոր, և դուք հիշեալ լինիջիք ի Տեառնէ Ամենակալիս. Ամէն»:*

էջ 329, $^{1}/_{8\text{-}2ն.}$- $^{2}/_{1\text{-}6վ.}$: *«Քրիստոս Աստուած այս սուրբ վկայիս բարեխոսութեամբ զտէր Զաքարիայ զՀայոց վերադիտողն բարձրացոյ աւրըստաւրէ ի վերայ աշխահիս պայծառ իբրև զարեգակն և զսիրտ աշխարհակալ Թագաւորին Ղազանի քաղցրացոյ ընդ դէմ նորա, և յաջողեայ զգործս իւր ի բարի, զժամանակս նորա յերկարեայ մինչև ի խորին ծերութեանն, ընդ նմին և զհարազատ եղբաւր իւրոյ զԱմիր Գաւրգոյ, որոց հրամանաւ գրեցաւ պատմութիւնս այս ի բարձրանշան և հուչակաւոր դուռն սբ. Խաչիս Աղթամարայ, ի Թուականիս Հայոց ՉՃԲ: Եւ քեզ փառք հանդերձ հարբ ամենասուրբ հոգւովդ: Ամէն»:*

*(Նման բովանդակություն ունի նաև էջ 492-ի հիշատակարանը):*

էջ 332, ներքևի դաշտում այլ ձեռագրով: *«Այս Թւին Հայոց ազգին Ե. յուբէլիան ընդ հազարն. Գ. ընդիկտիւն ընդ Է. համարին, սիպտեմբերի ԻԱ-ին Իսա փաշայն Վանայ քաղքին Հազարու ամիրին Ջըզիր... պարօն ընդ նմին ի վերայ Մոկաց և Ըռշտունեաց. պաշարեցին զխան Մահմուդ հանդերձ եղբարբ ըմբռնեցին, Վանայ քաղաք դրէցին: Ամէն: Գրեցաւ ձեռամբ մոկացի Սամուէլին»: (Տե՛ս նաև 1887թ. տպագր., էջ 164, ծն. 4):*

*Այս հիշատակարանը համեմատելի է էջ 565 ներքևի դաշտում այլ ձեռագրով գրված հետևյալ երկտողի հետ՝ «Թ. ՌՄՁԷ Իսա փաշէն զխան Մահմուտ հանդերձ եղբարբն բռնեց Վանայ քաղաքն»:*

էջ 333, ներքևի դաշտում, այլ ձեռագրով: *«Այս գիրքս կորուսեալ էր Վան և ես... աթոռս Աստուած ողորմի ասացէք ծնողաց իմուց. Ամէն»:*

էջ 486, ներքևի դաշտում՝ լուսանցագրության *առաջին կեսը վնասված է ջրով և չի կարդացվում, շարունակությունը 487-ի ներքևի դաշտում կարդացվում է մասամբ՝ «...Վանա ԴՍ հեծելօք ոչ կ...ամրոց դարա... կողոպտեց: Սիմոն վարդապետ»:*

Էջ 528/529 ներքևի դաշտում կա մասամբ վնասված հետևյալ յուսանցագրությունը: «Դարձեալ յիշել մաղթեմ ի ժամանակիս Հայոց ՌՄՅԹ Թ. ի կաթողիկոսութիւն յԱղթամարայ աշխարհիս Թումայի երից երանեալ երջանիկ սրբազան հայրապետին. որ Տէր Աստուած ընդ երկայնաւորս... ամին և ես նա... զաւազան... ի վերայ իւր բոլոր Թեմին եւ վիճակին բարձրազահ պահեա: Ամէն: Դարձեալ և սոյն Թվականիս մայիսի ԻԵ որ ես մեղապարտ Բարսեղս գնացի յԱղթամարայ որ. Խաչն ուխտ, խնդրեցի տեառն Թումայ կաթողիկոսէ զԹումայ պատմագիրք բերի... առաքելոյն Պետրոսի...»:

Էջ 585$^{2}_{17-24}$: «Պայծառ և սքանչելագործ և զարդարեալ բազմարուեստիւ Սուրբ Խաչ պարծանք եկեղեցեայց. աղաչեմ զքեզ զանսպառ բարեխաւսդ, լեր բարեխաւս առ Քրիստոս վասն հոգւոյ տէր Ստեփանոսի Հայոց կաթողիկոսի, որ Հանգուցեալ կայ առաջի սուրբ տաճարիդ քո»:

## ՑԱՆԿ ԳԼԽՈՑ*



### (ԴՊՐՈՒԹԻՒՆ ԱՌԱՋԻՆ)



### ԴՊՐՈՒԹԻՒՆ ԵՐԿՐՈՐԴ



---

* Ձեռագիրը չունի գլխացանկ: Առաջին անգամ ձեռագրի վերնագրերը առանձնացվել և ներկայացվել են որպես գլխացանկ 1852 թ. տպագրում: 1887 թ. հրատարակությունում այդ գլխացանկում Ք. Պատկանյանը ավելացնում է անվերնագիր՝ իր իսկ առանձնացված 5-րդ գլուխը, իսկ Անանունի պատմությունը, XII դարում Թովմա Արծրունու և Անանունի պատմություններին կցված Աբդլմսեհին և նրա որդիներին նվիրված գլուխը ներկայացնում է որպես 4-րդ դպրութիւն, որին հետևում է Դանիէլ գրչի հիշատակարանը և, որպես հավելված, երկրորդ հիշատակարանը: 1985 թ. տպագրի գլխացանկում առաջին անգամ որպես առանձին միավոր տրվում է «Պատմութիւն Անանունի», իսկ «Վասն անցից... Աբդլմսեհի և որդւոց իւրոց» գլուխը՝ որպես հավելված:

## ԴՊՐՈՒԹԻՒՆ ԵՐՐՈՐԴ

## ՎԱՍՆ ՈՐ ԻՆՉ ԳՈՐԾԵՑԱՒ ԸՆԴ ՀԱՆՈՒՐ ԱՇԽԱՐՀՍ ՀԱՅՈՑ. ԵՒ ԵՐԿՊԱՌԱԿՈՒԹԻՒՆ ԻՇԽԱՆԱՑՆ, ԱՆՀԱՒԱՆՔ ԵՒ ԱՆՀՆԱԶԱԴՔ ՄԻՄԵԱՆՑ ԼԻՆԵԼՈՎ, ԵՒ ՈՐ ԻՆՉ ԸՆԴ ՍՈՔՕՔ

## (ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ԱՆԱՆՈՒԱՆ)

# (ՅԱՌԱՋԱԲԱՆՈՒԹԻՒՆ ՀԵՂԻՆԱԿԻՆ)

*[1] Եւ ըստ նմանակերպութեան պատկերի իւրոյ, յանձնիշխան կամայական կամարարութեանն ձգեալ պատիւ զնա՝ և տէր բոլորակերտ իրողութեանց մակադրեալ զհողանիւթեայ էակս[1], որպէս ասաց նախամարգարէն Մովսէս. նմանագոյնս ասացեալ և թագաւորազնն մարգարէաշնորհն Դաւիթ՝ «փառօք և պատուովք պսակեցեր զնա, և կացուցեր զնա ի վերայ ձեռակերտաց քոց, և զամենայն ինչ հնազանդ արարեր ի ներքոյ ոտից նորա»[2]: Եւ ծառայականս պատանիս[×] տուեալ նմա, որ ի վերայ կառուցեալ լուսաւորացդ պարողութիւն երևելագոյն գոյից, ի գործառնութեան կենցաղավարութեան պիտոյից մարդւոյ, ըստ տունջեան և գիշերոյ բացակայութեանց գործոց եղանակեալ: Որպէս ասաց սաղմոսերգուն՝ «ի ծագել արեւուն ելանէ մարդ ի գործս իւր, ի վաստակս ձեռաց իւրոց մին[2]չև յերեկոյ»[3]. և Փրկիչն ասաց՝ «Պարտ է գործել զգործս մինչ աւուր կայ. գայ գիշեր յորում ոչ ոք կարէ գործել»[4]: Համառօտագոյնս ասացից, ամենայն իրողութեանց յօգտութեան մարդկայնոց սոքօք բնաւորեալ ի շարժմունս երկակի լուսաւորօք ժամայեղից[5], առ ի նշանակ հոլովմանց պարագայց ժամանակագիտն շրջագայց արշաւանաց, հանդերձ աստեղացդ ճախագայութեան[×] երկնաչու օդակառոյց ընթացից, ի բացերեւութիւն աւուրց և ամսոց բովանդակութեան, ի լրումն տարեաց, ի չափաբերութիւն անհատից մարդկային սեռից, ի գիտս իմաստից տրամադրութեանց, ի տարբերս[6] թուոց և ի բովանդակութիւն ժամանակաց. որով բովանդակեցան բոլորակերտ[××] աշխարհայնոցս սահմանք, ըստ քառից սեռից որակութեանց՝ ըստ խառնուածոց հակակայիցն շարժմանց, քա-*

---

*[1] ×) Ա $(^{2}/_{4})$՝ պատահիս. ուղղ.՝ պատանիս (Նախն., 92):*
*[2] ×) I (էջ Ա), II (1), III (6)՝ ճոխագայութեան. Ա $(^{1}/_{6})$՝ ճախագայութեան. ուղղ.՝ ծախրագայութեան (ՆԲՀԼ, հ. Բ, էջ 165, հդ.՝ ծախրագայութիւն, էջ 1022, հդ. Օդակառոյց): ××) II(1-2) III(1)՝ բոլորակերպ. Ա $(^{2}/_{7})$, I(էջ Բ)՝ բոլորակերտ:*

ռիւք երրեկօք արշաւասոյր ի շարժմանցն օդոցն տարրերու-
թեանց. և եռակի կացութեամբք եղանակօք կացեալ երրե-
կօքն յաւուրս ՑԿԵ, և յայսոսիկ քաղաքավարեալք մարդք
խնամատարք քաղաքական համաձայնութեանց, սակս
հնարագիտ կեն[3]աց մարդկան ի պէսպէս իմաստս[7] արք
պատուաւորք, ճոխք և բարձրասահք, մեծարեալք ի թագա-
ւորաց, երևելիք և ընչաւէտք, որք յայսոքիկ ներակրթեայք՝
և ի սոյն զդեգերումնն երկասիրէին: Եւ զիւրաքանչիւր իրի
զժամանակս ի ներքոյ թուոց դրոշմեալ՝ զքանիօնութիւնն
կանովնեցին, համահաւաքեալ ի բովանդակութիւն լրման
ժամանակաց եօթն հազարեան դարուցն[8]: Որպէս և մեծն
Մովսէս Եբրայեցւոցն շարագրող և աշխարհարարութեանն
մարգարէ, որ հմուտ և տեղեակ էր եգիպտական հրահան-
գիցն՝ յերկս աշխատասիրութեանն՝ լուսաւորացդ պարողու-
թեան՝ ի նշանս և ի ժամանակս և յաւուրս և ի տարիս բնա-
ւորեալ յԱրարչէն ասաց զսոսա[9]: Եւ ընդ սոքօք դրուագեաց
զժամանակս երկրակեաց կենաց մարդկան ի նախնոյն մերոյ
սկզբնեալ. Ադամ, ասէ, եկաց ամս ՄԼ և ծնաւ զՍէթ, և կե-
ցեալ ամս ՋԼ և մեռաւ[10]: Եւ որք ընդ սովաւ էին տեսակք ա-
ներնդհատից՝ նոյնպէս մատենագրեաց, և զպէսպէս յեղա-
նակս գործառնութեանց մարդկան նովին օրինակաւ ի շարս
կանովնեալ: Գունակ սմին և Բերոսոս ոմն և Աբիդոնոս
Քաղդէացւոց իմ[4]աստունք, որք ոչինչ կարի հեռագոյնք ի
Մովսէսէ զգիւտ ժամուց և ժամանակաց զմարդկայնոց սե-
ռից կենցաղավարութիւնս կանովնադրեալ դրոշմեցին ի մա-
տեանս քաղդէական պատմութեանցն[11]: Եւ ի սոցունց այլք
հետազօտեալ բազում աշխատութեամբ, որ մինչ առ մեզ
հասեալ շարագրեցին, թէ ո՛վ ոք ի թագաւորաց աշխարհա-
կալաց՝ որքան ամս և ժամանակս կեցեալ տիրեցին, և կամ
ո՛վ ոք միւս քան զմիւս առաւելեաց ի հոգաբարձութիւն աշ-
խարհի. և զպատերազմաց և զխաղաղութեանց կարգս,
զյաղթութեանց և զպարտութեանց հանդէս, զառաքինեացն
և զանժուժիցն փորձս, զքաջացն և զվատացն զպնդութիւն
և զլուծութիւն, զարեացն և զանարեացն կարծրութիւն և
զթուլամորթութիւն, զիմաստնոցն և զանմտիցն զանհար-

թութիւն, զհանճարեղիցն և զկարճմտացն զանկցորդութիւն, զշինօղաց աշխարհի և զնոյն անփոյթարարաց զախորժաց իւրաքանչիւրոց բարուց. թէ ո՛րպէս քաղաքավարեցին, մարմնո՛յ զհետ չոգան, եթէ զհոգւոյ մեծարգի եդին զնախապատուութիւնն, և վասն երկնաւորականա՛ցն կենաց ցանկ հոգ տարեալ [5] քաղաքավարէին, եթէ ընդ երկիր զքարշումնն առնէին: Այլ և ըստ իւրաքանչիւրոցն ի միմեանց յաջորդելոցն, որք ըստ սեռից տեսակաւ ենթակացեալ, զտիրելն աշխարհաց, և որք ըստ պատահմանց ի նոյն ձգեցան պատիւ[x]. և այլք որք բռնակալութեան և յընչաւետ մթերից յղփացեալ կորզեցին յինքեանս զփառս աշխարհիս[12]: Եւ զոմանս ի Տեառնէ յայս վեր ելեալ զահակալութիւն, որպէս զԴաւիթ և զՅէու[xx] և զայլ ոմանս, որ որք մինչ առ մեզ հասեալ: Զիւրաքանչիւր զանուանս և զժամանակս, զգիարդն և զորպէսն կանոնեալ սահմանաւ ի ներքոյ թուոց ի գիրս պատմութեանց յօրինեալ դրօշմեցին, ըստ ազգաց ազգաց և լեզուացն տարբերութեանց ընդ գրով պարունակեալ և լրութիւն եկեղեցւոյ զանազան իմաստիւք: Զի որք զկնի նոցունց ի նոյն վարժս և ի գիտս իմաստից յորդորեցին՝ առանց աշխատութեան դիւրաւ առցեն զխնդիրս հանճարեղագոյնքն և ուսումնասէրքն ի մարդկանէ[13]:

Եւ արդ ես՝ սակս որոյ մերս է շարագրութեան յեղանակի խնդիր ի քէն, Գրիգոր Արծրունեաց տէր և Վասպուրական իշխան, ընկալեալ ի մեզ զհրաման պատուիրանի քո, զոր ախորժակք փափագելիք զքեզ ստիպեցին՝ [6] ներքադրեալ ի յիշատակարանս մատենից[14] զնախնեացն քոց զազգաբանութիւն և զորպիսութիւն, կարգաւ ածել, զթիւսն ըստ ծննդոց իւրաքանչիւրոց մինչ առ մեզ զբովանդակութիւնն չափաբերել, և որ վասն անցիցն Հայոց ի Տաճկաց պետութենէն ներգործեցաւ՝ անյապաղ հնազանդութեամբ ըստ հրամանի քո ձեռն ի գործ արկից, և ըստ կարի իմում անցից համառօտիւք ընդ կարևորագոյնսն, և որքան ինչ վայելուչքն են՝ ե-

[5] x) Այլ օր.՝ շաւիղ: xx) զՅեսու ուղղ.՝ զՅէու (Նախն. 354).

դից ի պատմութեան աստ, առ փոքր ինչ և դուզնաքեայ զմնացորդս յիշատակարանացն ի յառաջագոյն և ի Հին պատմագրացն զմեր զբնիկ տերանց տոհմին Արծրունեաց զիրն և զտեղին բացայայտեսցուք ի պատմութեան աստ, զի յայտ յանդիման երևեսցին արիութիւնք առաքինութեանց ըստ անուանց և տեղեաց և ժամանակաց: Եւ խուզեցից զկարևորագոյնսն խորհրդոց ի խաղացմունս բանիցս կարգադրութեանց, թէ ո՛վ ոք էին, և ե՛րբ, և յորմէ՛, և ո՛ւր, և զիա՛րդ, և ո՛րքան, և ո՛րպիսիք, և որովք յեղանակօք քաղաքավարեցին, և յո՛ր պէտս Հանդիսացան: Եւ վասն պատերազմաց և յաղթութեանց և թէ յաղթեցին կամ յաղթեցան[7], և զկէսս որ վասն այլոց ինչ իրաց Հանդիսանալ Հաճոյացան յօգուտ և ի շահ մատակարարեալ անձանց և ընկերացն: Եւ որ ինչ ընդ այսոքիւք պատկանին ստորոգութիւնք զրուցատրութեանց՝ Համառօտեսցուք ի մատեանս յայսոսիկ, ըստ կարի մերում օժանդակեալ ի գրոց Հանդէտ պատմութեանց մարգարէականաց և Նորոց վարդապետաց եկեղեցւոյ Քրիստոսի, և արտաքին վիպասանացն աշխատասէր և մտաՀարուստ արանց, որք դայեակաբար յանձանձեցին մեզ յետոյ Հետևելոցս զառողջ և զառանց խարդախութեան ճաշակս Համեղագոյն և կարևորագոյն կերակրոցն՝ յարբունս կատարեալ գիտութեանն տանել Հասուցանել զուսումնասէրն և զերկիւղածագոյնսն Աստուծոյ, զՀանճարեղսն և զիմաստունսն, զնախանձաւորս լաւագոյն և մնացական ընչաւէտութեանն և որ անդ է աշխարՀն: Զորս և աստ ի յայսմ պատմութեան արտայայտեցից քեզ, քաջդ բանասիրաց, զնոցայն որ վասն Քրիստոսի պատերազմեալ զբարիոք պատերազմ[15], և յաղթանակ կանգնեցին ի վերայ երկրի մինչև յերկինս: Որոց աղօթիւք տացէ ինձ Տէր զուղղորդ և զճշմարտութեամբ զբանն գրել ի մատեանս յայս, առաջնորդութեամբ [8] Հոգւոյն սրբոյ, խորհրդովն Քրիստոսի, ի Հաճոյս քեզ և նմանեաց քոց: Ողջ լերուք ի Տէր Քրիստոս: Ամէն:

# (ԴՊՐՈՒԹԻՒՆ ԱՌԱՋԻՆ)

## (Ա)

[9]Քանզի բազում աշխատութեամբ է գտանել զշար ազգաբանութեան տանն Արծրունեաց, վասն հեռաւոր ժամանակաց կացեալ և [10] դիւանացն անյայտութեանց ի մէջ Հայաստանեայցս՝ և հրաման հարկեցուցանող ճոխութեան քո ստիպէ զմեզ, ճեպել փութալ առ գիւտն հանդիսանալ և կարգել ոճով զփափագելին քո յայտարարական գրով դրոշմել, կանոնել ի գիրս աստ և իմ երկար տաժանմամբ[×] ի խոյզ և ի խնդիր ելեալ զհաւաստին գտանել և հնախօս շարագրական մատեանս և ի բազում վէպս պատմութեանց անցեալ գրեցի, որ ինչ բաւականալ ձեռնհաս եղէ, սկսեալ յԱդամայ[××] մինչ առ մեր հասեալ ժամանակացս գիւտ:

Եւ զի Ժ ազգացն շարք առանց ստութեան կան գրեալ յամենայն մատենադարս՝ յերկրորդն հարկ է մեզ զոճն կանոնել, որ յետ Նոյի և անդր ազգացն բաժանմունք յառաջ խաղան, ըստ ցեղից ցեղից ի կարգ անկեալ աշխարհաբաժին ցեղակարգութեամբ. և ի մէջ առից, թէ ըստ բազմաշուրթն լեզուացն յետ աշտարակաշինութեանն, յորմէ՛ ցեղէ սկիզբն առ[×××] աճել[11] սերունդք Արծրունեաց տոհմին և զի հաւասարութիւն երից ազգացն, այսինքն որդւոցն Նոյի, կարգաւ կանոնեալ դրոշմեալ կան յոլովից գիրս ոչ է մեզ հարկաւոր զնոյն երկայնաբանութեամբ երկրորդել[1]:

Եւ արդ ըստ Եւսեբեա բազմայեղ յեղանակաց խուզմանցն[2] և ըստ Ափրիկանոսի[×] հաւատարմաբանութեանն և ըստ Մովսէսի Քերթողի[3] նախ ի մէջ առից զորպիսութիւն ազգացն բաժանմանցն գրել: Եւ անդէն զտարակարծելի գիւտիցն

---

[10] ×) Ա ($^{1}/_{8-9ա}$)՝ և ի մերկատաժանմամբ. ուղղ.՝ և իմ երկա(ր) տաժանմամբ (Նախն. 437):
××) Այլ օր.՝ յԱդամ: ×××) Ա ($^{2}/_{1ա}$)՝ էառ:

[11] ×) Ա ($^{1}/_{9ա}$)՝ Ափրանոսի: ××) Ա($^{2}/_{3-4}$)՝ անտի և անտի. ուղղ՝ անդէն և անդի (Նախն. 161):

յոյս[4] երկբայութեան՝ յայլոց քննողական աշխատութեանց եղից առ ընթեր թելադրութեամբ. զի անդէն և անդի[xx] ի բաց կացցեն տարակուսական մտածութեանց ծուփս խորհրդոց ի քումմէ հանճարեղ խոհականալիր բանգիտութենէ[5]: Եւ արդ ունի պատմութիւնն այսպէս:

Նոյ ծնանի երիս որդիս, զԶրուան և զՏիտան և զՅապի-տոսթէ, որ են Սեմ, Քամ և Յաբէթ[6]: Սեմ ծնանի զԵղամ և զԱսուր և զԱրփաքսաթ և զԱրամ և զՂուդ[7]: Ասուր շինէ զՆինոս քաղաք, որ է Նինուէ, որ կոչի [12] առաջին Ասորիք[8]:

Իսկ Նեբրովթ ի Քամա շինէ զԲաբելոն առաջին քաղաք, և առաջին թագաւորէ ի վերայ երկրի[9]: Եւ քանզի էր Բաբելոն վիճակեալ Սեմա՝ և բռնազբօսութեամբ Նեբրովթ յինքն գրաւէ, և հաստատէ անդ զթագաւորութիւնն Եթովպացւոց[x10]: Իսկ Ասուր որդի Սեմա զՆինուէ շինէ առաջին քաղաք Ասորւոց թագաւորութեանն:

Արդ զի՞րդ յետ բազում ժամանակաց զՆինոս ասեն շինել զՆինուէ, զայրն Շամիրամայ, որ ծնաւ զՆինուաս[11]. յորոց անճամբ յառաջանայ կարգն և գայ հասանէ ի Սենեքերիմ արքայ, առ Եզեկիայիւ Եբրայեցւոցն[12] առաջնորդաւ և առ մերովն Հարամայիւ: Ոչ վարկպարազի, որպէս ինձ թուի, ի ճախ է զանց առնել զխնդրոյ այսորիկ զպատճառն, բովանդակաբար բացայայտել զհաւատարիմն գրել, թէ արդեօք Ասուր, որ զՆինուէ շինեաց, հաւ Նինոսի՞ իցէ ի ծննդոց Սեմայ, ուստի Նեբրովթ, կամ թէ արդեօք ազգն Արծրունեաց Սեմա՞յ սերունդք իցեն, թէ Քամայ ի Նեբրովթայ: Քան[13]զի որպէս գրեցաւ՝ Ասուր ի Սեմայ շինէ զՆինուէ, և Սենեքերիմ պայազատաբար թագաւորէ ի Նինուէ, և ասի Ասորոց թագաւոր[13]: Հաւաստիս այս մեզ Եւսեբիոս Կեսարացի, Յուլիանոս Աղիկառնացի[14] ստուգաբանեն զթագաւորս

[12] x) Այլ օր՝ Եթէոպացւոց:

[13] x) Այլ օր.՝ զաճմունսն: xx) Ա($^2/_{10}$)՝ Արիւզոնեա. ուղղ. Աբիւզոնեայ (Նախն., 348: II, էջ T Աբիւզոնեայ?): xxx) Ա ($^2/_{3ա}$)՝ զրուեալ:

Ասորոց ի զաւակէ Սեմայ զանմունս[x] առնել որպէս ի կանոնեալ սահմանէն իմանալ[15]: Եւ ունի պատմութիւնն այսպէս. Տիտան բռնացեալ ի վերայ Զրուանայ՝ առնու զԲաբելոն և շինէ քաղաք թագաւորութեան իւրոյ անդ, որ էր հինգերորդ Զրուանն Քսիսութրեա[16]:

Իսկ Ասուր երրորդ ի Սեմայ[17][^] առաջին շինէ զՆինուէ. և Նինոս տասներորդ ի Սեմայ և ի Քամայ[18]. և է Նինուէ իսկապէս վիճակ Սեմայ, և Նինոս ի զաւակէ Քամայ ըստ Աբիւդոնեայ Քաղդէացւոց[x] և ըստ Եւսեբեա Կեսարացւոյ և ըստ Մովսէսի Խորենացւոյ և ըստ Յուլիանու Աղիկառնացւոյ ստուգաբանի[19]: Եւ քանզի առեալ էր Կռոնեայ իւր կին զՌեա յազգէ Զրուանայ, և յինքն գրաւեալ[xxx] զթագաւորութիւնն՝ և ոչ զոք թուլացուցանէր թագ[14]աւորել Զրուանայ, դաշնաւորել երդմամբ՝ մինչև որ ի կնոջէն Ռեա որ ի Զրուանայ զարմիցն էր ծնեալ արու՝ անդէն ի ծննդեանն սատակէր. բայց միայն մանուկ մի Դիոս անուն, զոր գաղտաբար ապրեցոյց մայրն, որպէս յետ բազում ժամանակաց զՄովսէս ի յԵգիպտոս[20], անդէն և անդի ոչ ոք զօրէր Զրուանայ թագաւորել[21]. բայց միայն կին մի անուանի Դիոնիսեայ, հարստայեղց վավաշոտ հոմանի բարուք. սա անուանէ զանուն իւր ըստ անուան հաւոյն իւրոյ Սեմայ՝ Սեմիրամ. որ ըստ սիւղոբայիցն ի հայկական լեզուէ Շամիրամ ձայնաւորի: Առ սա յանգուցեալ Բելեանն Նինոս առնու իւր կնութեան, զի Շեմիրամն ամրանայր ի բնիկ իւրեանց քաղաքին Նինուէ, և մտանէ Նինոս ի համար Ասորեստանեայց թագաւորաց ընդ կնոջ իւրոյ Շեմիրամայ. քանզի ոչ էր օրէն թագաւորացն և օրինադրացն զկանանց ազգի թիւ ազգաբանութեան շարել, բայց միայն ըստ ժամանակագրութեանն կանոնի, որ[15]պէս և յԽսրայէլի զԳոթողիայ[22], և յԵգիպտոս զԿղէոպատրեայ դուստր Պտղոմեայ Դիոնիսեայ: Նա և ս ծանօթագոյն քեզ գրեմ, զՓրկչին մերոյ Տեառն Յիսուսի Քրիստոսի զըստ մարմնոյ ազգաբանութիւնն գրելով աւետարանիչն Մատ-

---

[15] ×) Ա(1/ե-ռ)՝ Մարամայ: ××)Ա(2/1)՝ Մարիամու:

Թէոս՝ և Թուէ մի ըստ միոջէ, սկսեալ յԱբրահամէ և գայ
անցանէ մինչ ի Յովսէփ, և լոէ վասն Մարեմայ[x] զազգա-
բանելն[23]: Եւ քանզի ոչինչ հաղորդութիւն ունէր Յովսէփ
առ ծնունդն Քրիստոսի՝ մտանէ յազգահամարն փոխանակ
Մարիամու[xx] կնոջ իւրոյ զոր վերագոյնն գրեցի. զի ոչ էր
օրէն զկանանց ազգի Թիւ ազգաբանութեան շարակարգել:
Նոյն գունակ և զՂուկա ազգաբանութիւնն՝ գտցես շարա-
ծեալ ի վերջէ յառաջ, և ասէր որպէս կարծէր զՅիսուսէ՝ ի
Յովսէփայ ի Յակովբայ ի Հեղեայ, և ապա մի ըստ միո-
ջէքն[24]: Այսպէս և Շամիրամ կին, ի յազգէն Սեմայ, Թագա-
ւորէ Նինոսիւ արամբ իւրոյ ի վերայ Ասորեստանի պայա-
զատաբար, ընդվզեալ ի վերայ Նինոսի, որպէս Թէ եկեալ
պանդխտաբար [16] մտանել[x] ի Թագաւորութիւն Շամիրամայ
ի Սեմայ: Յաւել և զինչ գրեալն է զվավաշոտ ցանկասիրու-
Թեամբ Թեւակոխել: Բայց որպէս բացայայտեցաւ՝ Շամիրամ
սեպհականեալ Թագաւորէ յազգէ Ասուրա ի Սեմայ Ասո-
րեստանի ընիկ իւրեանց տէրութեանն, և պայազատեալ մի
ըստ միոջէ մինչ ի Թոնոս Կոնկողեռոս, որ յետ ՁԸ ամի
Սենեքերիմ յառաջանայ ի գահ հայրենի իւրոյ Թագաւորու-
Թեանն[25] մեծաւ զօրութեամբ, և առնու զԲաբելոն և շինէ
զՏարսոն ի ձև Բաբելոնի, գետոյ ընդ մէջ անցանելոյ[26] որ-
պէս խոնարհագոյն մասնաւորաբար գրեմ: Որ ապա յետ
սպանմանն Սենեքերիմայ յորդւոց իւրոց՝ բուռն գնդաւ
Ադրամելէք և Սանասար գան մտանեն ի լեառն[xx] Սիմ, որ
յանուն հաւոյն իւրոյ Սեմայ անուանեալ էր լեառն[27]: Որպէս
և պարսկային ձայնին ի Ջրուանն անուն զՋարուանդն[xxx]
անուանեն[28]: Եւ եղեալ նոցա ի Սիմ լերին մինչ ի Տիգրանն
Հայկազնեաց: Բայց քանզի աւերեալ էր զՆինուէ [17] Նաբ-
րովԹայ ի բռնանալն ի վերայ Սեմեացն, և զԲաբելոն փոխա-
նակ նորա շինեալ՝ ի Թագաւորելն Նինոսի առնու զԲաբելոն
և շինէ զՆինուէ, և փոխէ անդ զԹագաւորութիւնն Ասորես-

[16] x) Այլ օր՝ մտաբար: xx) Ա ($^{2}/_{11}$)՝ ի լեառնն: xxx) Այլ օր.՝ Ջարա-
ւանդն:
[17] x) Այլ օր՝ վեցտասաներրորդ:

տանի[29]: Դարձեալ քանզի Մեստրիմ ի Քամայ ըստ բաժանման ազգին և աշխարհին, շինէ զԵգիպտոս և անդ Հարստանան ազգապետաբար, և առանձին թագաւորեն Ասորեստանեայքն՝ ի կանոնի անդ գտցես[30] զՆինոս և զՇամիրամ և զԱբրահամ և զվեշտասաներորդ[x] Հարստութիւն Եգիպտացւոց, և ի չորրորդ դպրութեանն Յուլիանու Աղիկառնացւոյ, որպէս և ի չորրորդ դպրութեանն Մովսէսի[31]:

Իսկ Նինոս և Շամիրամ տիրեն Ասիայւոց և Եգիպտացւոց Հարկապահանջ հնազանդութեամբ, այլ ոչ զազգին ի բաց բառնալով զպայազատութիւն աշխարհին: Զայս սակաւուք ի մասնէ գրեցի ճանաչել միայն զազգս:

Եւ արդ քանզի կարգ բանիցս էած զմեզ առ այս խնդիր՝ պարտ է նախ գիտել թէ որով [18] օրինակաւ Քաղդէացւոցն մատենագրութիւնք զթիւ նահապետացն տասամբք համարին թուով ըստ աստուածահրաման գրոցս, իսկ զանուանս նոցա այլափոխ ասելով զատանին[32]: Նոյնպէս և զպայման ժամանակացն յանբաւ բիւրս ամաց ձգեն, որ ոչ և ըստ միոյ յեղանակի Հաւաստանայ[x] առ ի ցուցումն, ոչ արեգական բերմամբ ի նոյն կէտ ամսոց և աւուրց և ոչ ըստ չորից փոխմանց առ ի յեղումն ժամանակի տարւոյն[33], այլ և ոչ ըստ լուսնական լրութեանն և սուղականութեան[34]: Քանզի թէպէտ և անվաւեր ի նոցանէ գրեցեալքն ասացան՝ այլ բազում ինչ և առ ճշմարիտ ստուերաբանեն, և նախ նոքա եղեն գտակք գրոց, թէ և Յոյնք համարին Պտղոմէիւ պարծիլ՝ երբեմն ի հաւաքումն միահամուռն մատենից ազգաց ազգաց և յեղուլ ի լեզու յոյն[35]. այլ այսուքիկ փոյթք յօժարութեան առ ի յայլոց ասացելոց նախագունից տեղեկութիւն, և ոչ ինքեամբ և կամ նովաւ [19] գտանել զհնարս գիւտի գրոց, թէպէտ և յառաջ քան զնա, այլ ոչ թէ և քան զԲաբելացւոցն իրս, զոր ոչ միայն Յոյնք՝ այլ և այլազգք ոչ երևին այսուիկ նախկինք քանզի Յունաց հուսկ երբեմն յետոյ գտաւ գիր ի

---

[18] x) Ա (Լ/14)՝ Հաւեստանայ:
[19] x) Ա (Լ/11)՝ իսկ Աղմեայ: xx) Յայլ օր. չիք՝ յարևելս:

Կադմեա× յումեմնէ Փիւնիկեցւոյ[36]: Եւ զի առ այսոսիկ փոյթ եղև մեզ քննասիրութեամբ լինել հասու և ոչ զանց առնել՝ աստանօր պարտ է սակաւիկ մի յապաղումն տալ պատմութեանս. զի և աստուածատուր ասացելովքն թևակոխեսցուք յարտաքնոցն վէպս, և ապա յառաջիկայիցն եկեսցուք տեսութիւն:

Տնկեաց, ասէ, Աստուած զդրախտն յԵդեմ ընդ արևելս[37]. այսինքն յերկրի յարևելս, զորոյ չունի բան ասել անդր ևս քան զնա յարևելս ունել բնակութիւն մարդկան. որով իցէ ասել[38] արևմտական զդրախտն կամ ի միջոցի ուրեք. և զանբաւութիւն մեծութեանն յայտ առնէ սաստկութիւն յորդահոս աղբերն, որ արբուցանելով զդրախտն ընկղմի ընդ երկրաւ, և չորեքվտա[20]կեան անյաղթ և զօրաւոր գետովք ելանէ յանհրևելոյն յերևլի աշխարհս[39]: Իսկ զգերազանցութիւն գեղեցկութեանն որ բերան բաւեսցէ ասել բան մարդկային, միանգամայն և զաստուածագործ տնկոցն հեշտալի տեսութիւն. և անհասական իմն շնորհիւ փառօք և պատուով պսակեալ զմարդն իշխանական ճոխութեամբ՝ վայելեցուցանէ դրախտին×, տալով նմա բազմամեայ կենաց սահման իբրև զմի օր, ոչ պիտոյացեալ եկամուտ լուսոյ, որով նսեմացի առ ի հասանել երեկոյին[40], ոչ ապաժամանութիւն աբեզական[41] առ ի մերժել զմութ գիշերի լուսազգեստ ստեղծուածոյն, որ յետ առաջնոցն կարգի և դասու՝ զերկրորդն փոխանորդեցաւ վիճակ, ոչ կերակուր հոսանուտ առ ի լրութիւն տարաբարձ ունակութեանց անապականին, որ դոյզն ինչ փոքրագոյն քան զհրեշտակս գոլ. և զի ասէ՝ գործել և պահել[42] ոչ իբր ի լիութիւն ամենակատար դրախտին կամ պահպանութիւն ի [21] վնասակարաց, այլ ահա գործել զարդարութիւն և պահել զպատուէրն ասացեալ նմա. զի սա-

---

[20] ×) Այլ օր.՝ վայելչութեամբ ճոխացուցանէ ի դրախտին:

[21] ×) Ա $(^{1}/_{7\text{-}8})$՝ ընծայաբեր արար լինելով. ուղղ.՝ ընծայաբեր Արարչին լինելով (Նախն., 175): ××) Ա $(^{2}/_{6\text{-}8ա})$՝ ի զմայլումն հրաժարել ի կերակրոյ. ուղղ.՝ ի զմայլումն հրաժարելի կերակրոյ (Նախն., 399):

կուաջան նպաստաւորութեամբն իբրև ընծայաբեր Արարչին լինելով[x], և այնր աղագաւ յևս բարձրագոյնսն ձգեցի ըստ ասացելումն՝ ի սակաւուն հաւատարիմ լինելով[43] ոչ այնմ և եթ տիրեսցէ տնկոյն, այլ և բազմերջանիկ երկնայնոցն հաս-ցէ կենաց:

Իսկ նա ի հրապոյրս պատամբ վիշապին ելեալ, որ բազ-մախարդախ չարութեամբն եհեղ առատութեամբ զդառնու-թիւն խրատոյն յունկն կնոջն անզգամի: Որով ընթադրեալ զսիրողական երախտիս Արարչին, միանգամայն և զպա-տուէրն՝ առ սպանողն հատուածեցաւ, զոր ի դէպ է այժմ ասել նենգաւոր գոլ և անմիտ. ոչ շատացաւ ինքեան ծնե-լութեամբն առ ի զմայլումն հրաժարել ի կերակրոյ[xx], այլ և աստուածականն ցանկացաւ փառաց, կորզել ապարա-սանութեամբ յինքեան և զպատիւ Արարչին, որով փորձիւ և հր[22]ապուրիչն նորա բանսարկուն ախտացաւ: Այլ և նա-խապատիւ ևս քան զայրն յաստուածականին լինել կնոջն նախայարձակ ճաշակմամբն[44]: Աւա՜ղ խարդախագունին այ-նորիկ խորհրդոյ և յիմարական մտաբերութեանն, որով անգիտացեալ զհողանիւթեայ իւր զանգուած՝ յահաւորէն Աստուծոյ և յԱրարչէն խորհեցաւ թիկունս դարձուցանել, որ ամենատես ակնարկութեամբ ստորիջեալ ի խնդիր կո-րուսելոյն հեզագնաց գարշապարօք՝ ընդելականս նմա գուշակէր զալուստ, ընտանեգոյնս[x]. ևս ձայնիւ կոչելով՝ ո՞ւր ես Ադամ[45], աւաղականս նմա գորովալիր զանկումնն, թերևս ինքեամբ իսկ զօգտակարօքն տածիցի:

Իսկ նա անդէն և անդ հերքեալ ապաժամանակ առ ուղ-ղակի տեսութիւն մեղանաց՝ առ Աստուած վերաբերէ զպատ-ճառն, ասէ՝ կինս զոր ետուր ընդ իս, սա ետ ինձ ի ծառոյ անտի և կերայ[46]. և թէ Ադամ առ նմանն իւր և օգնական զայսոսիկ՝ զի՞նչ ի դէպ իցէ կնոջն անմեղադրելի գոլ՝ օձին պատճառել[xxx], որ ևս [23] վատթարագոյն քան զանասունսն

---

[22] x) Ա $(^{2}/_{7})$՝ ընդնեգոյնս: xx) Այլօր.՝ պատճառելով:
[23] x) Ա $(^{2}/_{5\text{-}6ն})$՝ չնչականաց:

լինիցի[47]: Ուստի և ըստ կարգի մեղանացն՝ և դժուարինք անիծիցն հետևին, նախ օձին և ապա կնոջն[48]: Իսկ եթէ մշակն մեղաց և անդրանիկն ամենայն չարեաց, որ ի յօձն բունեալ ոչ անիծաւ, որպիսիս ուսուցանէ վնասապարտութիւն օձին առ ի պատժականութեանն գտանել պարտաւորութիւն, որ ոչ յընքենէ միայն, այլ մանաւանդ ի գտողէն չարեաց: Առ որս ասեմք՝ եթէ ըստ ամենայն յեղանակի անբոյժն ի բարւոյ, ո՛չ մի ինչ ո՛չ ունի մասն ազնիւ՝ թէ ասիցէ ոք անիծիւք ի բաց բառնալ. նա և կենդանականն որ ի նմա՝ ոչ ի բարի ինչ, այլ զի անհրաժեշտ չարին կալով անմահականս չարչարեսցի: Զոր բան և վասն օձին սքանչելապէս ուսուցանէ Փիլոն Աղէքսանդրացի՝ յառաջ քան զդրժանացն դիպուածս՝ յոլովութիւն իմաստից ունել ամենայն շնչականաց[×49]. այլ և մարդոյն ևս յստակագոյնս տեսանել զիւրաքանչիւրոցն ի նոցանէ մտածութիւն. յետ[24]ուստ երբեմն գտանէր[×] ի ձեռն անիծիցն իմացեալք երկոքին. մանաւոր ինչ մարգարէական ոգւով եղելում ի մարդն օժնդակ խորհրդածութեան արծարծել անդրէն ի ձեռն ապաշաւանացն զվրիպանացն կորուստ. ըստ այսմիկ և այլոց կենդանեացն զգայականօքն և թէ ունայնացելովք առ ի դոյզն ինչ զգուշաւորականս:

Եւ եհան արձակեաց զնա Տէր Աստուած ի դրախտէն փափկութեան՝ գործել զերկիր ուստի առաւ[50]: Եւ ապա զի՞նչ առ այսոսիկ ասցուք ի մէջ զողբերգութեան բերումն ի հառաչանս, որով զաստուածերանն լքեալ զերկիր՝ զախտականս զայս և տաժանելիս փոխանորդեաց վիճակ, անբժշկական և ողորմելի յեղափոխմամբ. ըստ պատկերին Աստուծոյ ստուերացեալ բարձրացեալն՝ նուաստացաւ, անմահից կենաց հաղորդն՝ ի ձեռն անիծիցն հողացաւ, ի տէրութիւն կարգեալն՝ բազմադիմի չարիւք վարատեալ, և ծառայ ախտից եղև, ինքեան և որոց յետ իւր[25] թողլով ժառան-

---

[24] ×) Ա ($^{1}/_{ս}$)՝ գտան ի:

[25] ×) Ա ($^{2}/_{թ}$)՝ գոլորշիս գոլ. ուղղ.՝ գոլ որդի ագոյ (Նախն., 438: Համեմ. նաև Հովս. Փլաւ., Հնթք., Ա. II, 81: Անկ. գիրք, էջ 24):

գութիւնն որդւոց կեանս վշտագինս հանդերձ մահուամբ, և ծննդականութիւնս տրտմութեամբ: Զոր պարտ էր աստանօր յոլովագունիւք ոմամբք աւաղականօք ընդ ողբակիցս՝ և զմարգարէականն առնուլ ի ձայնարկութիւն, «մարդ ի պատուի էր և ոչ իմացաւ, հաւասարեաց անասնոց անբանից և նմանեաց նոցա»[51]:

Յետ այսորիկ եմուտ Ադամ առ Եւա կին իւր, և յղացաւ և ծնաւ զԿայէն[52], և ասէ զնա Ստացուած, թէ և Աստուծով՝ այլ ոչ արժանաժառանգ. և յաւել ծնանել զեղբայրն նորա զՀաբէլ. և կանխածան իմն ոգւովն Աստուծոյ ասէ զնա գոլ որդի սգոյ[x], զի զմահուն սպառնացեալ հօրն պատուհաս՝ աչօք իւրովք տեսցէ, և զինքն կերպագրեալ յորդին իւր սպանեալ ի Կայենէ: Իսկ ասելն՝ ամենայն որ սպանանէ զԿայէն՝ եօթն վրէժս լուծցէ[53], եօ՞թն արդեօք իցեն մեղանացն պարտիք, եթէ ըստ յաւելուածոյ սաստից իմասցին ասացեալքն Աստուծոյ, որ ի բնաւին արդարադատութիւն բնա[26]ւորեալ՝ և ողորմութեանն ընդ նմին լինիցի լծակից. և զայսոսիկ թէ բարիոք ումեք թուեսցի տեսցուք. զի և եօթամբք իսկ շարագրեալ չարիւք[x] ժանդացաւ վիրագն այն ի վնաս, թէ և միատեսակ երևեսցի.

Նախ առաջին՝ զի յետ աւուրց ինչ[54], իբր անագան իմն այլ ո՛չ նախապատիւ և կարևոր. և զայն արատաւոր, այլ ոչ անարատ՝ երևի յասացելոցն՝ եթէ ուղիղ մատուցանես և ուղիղ ոչ բաժանես՝ մեղար[55]: Դարձեալ և յընդդիմակէն՝ ած և Աբէլ ի յանդրանկացն և ի պարարտիցն[56]:

Երկրորդ՝ չարասէր և աներկիւղ նախանձուցն բարք, եթէ ընդէ՞ր ոչ և նորայն ըստ նմին օրինակի եղև արատաձգեալ յԱստուծոյ[57]:

Երրորդ՝ խծաբար[xx] նենգութիւնն, զոր անփրկանակ ի ծնօղացն մեկուսի տարեալ սպան տարապարտ[58]:

Չորրորդ՝ զի զեղբայր և ոչ զօտար ոք, զոր ոչ երկիւղն

---

[26] x) Այլ օր.՝ չորիւք: xx) I (10), II (13), III (24)՝ խժաբար: Ա (2/ց), Նախն. (77)՝ խծաբար:

Աստուծոյ և ոչ գութ բնութեան մեղկացոյց լքմամբ զձեռս արիւնարբու գազանին:

Հինգերորդ՝ զի [27] զծնօղսն անհնարին դառնութեամբ նոր սգովն ելից:

Վեցերորդ՝ զի խաւարաւ չարեացն պատրուակեալ զոգին, մինչև զԱստուած ևս անգէտ կարծելով՝ լրբենի երեսօք պատասխանէր, հարցեալ ցնա «ո՞ւր է Աբէլ եղբայր քո»՝ ասէ «չգիտեմ, միթէ պահապա՞ն իցեմ եղբօրն իմոյ»[59]:

Եօթներորդ՝ զի զվարկ փոխարինին լուեալ ի Տեառնէ՝ ոչ զարհուրեցաւ վերադարձիլ արտասուօք ի ջնջումն մեղացն. այլ և զվճիռ պատուհասին իւրովն կնքէր բերանով. և ելեալ յերեսացն Տեառն՝ անտի տաժանմամբ շինէր քաղաք, չհամարեալն յազգս զղջալից և արդարաքարոզ նահապետացն[60]:

Եւ լեալ Ադամ ամաց ԼՄ ծնաւ զՍէթ, որ ի նախկին բարբառոյ անտի թարգմանի Արբումն: Զոր Փիլոն Աղէքսանդրացի փիլիսոփոս և վարդապետ հնոյն՝ Ջրարբի ասէ[61], թերևս զսննդականութեան և զաճողական բազմամարդութեանն պատճառ նշանակեալ յառաջատեսէ [28]հայրն. քանզի էին Ադամայ և այլ ուստերք և դստերք բազումք, այլ ոչ արժանաժառանգք պայազատութեան աշխարհահայր լինելոյ. զի սմա և եթ յաւելու ասել, եթէ ծնաւ ըստ կերպարանաց իւրոց, և ըստ պատկերի իւրոյ[62]: Եւ դարձեալ՝ եթէ յարոյց ինձ Աստուած զաւակ այլ՝ փոխանակ Հաբէլի զոր սպան Կայէն[63]:

Եւ Սէթ լեալ ամաց ՄԵ ծնանի զԵնովս[64]. նա յուսացաւ կոչել զանուն Աստուծոյ[65]: Եւ որո՞վ օրինակաւ թւացեալ քաջալերեցաւ առ այս. զի և ի հօրէ իւրմէ ուսաւ՝ որդւոյն[×] Սէթայ որդիս Աստուծոյ կոչիլ. որում պատուէր տուաւ չխառնակել յանիծեալ զաւակն Կայէնի[66]. այսոքիւք ծանուցեալ զպատիւ խնամոցն Աստուծոյ՝ ևս յորդորագոյնս յուսացաւ կոչել այցելու ինքեան զԱստուած:

Ենովս լեալ ամաց ՃՂ ծնաւ զԿայինան: Կայինան

---

[28] ×) II (14, ծն. 1)՝ թերևս՝ որդւոցն:

լեալ ամաց ԾՀ ծնաւ զՄաղաղայէլ: Եւ ի սորա հարիւր և երեսուն և հինգերորդ ամին վախճանեցաւ նախահայրն Ադամ, կեցեալ ամս [29] ՋԼ. վասն որոյ զերկայնութիւն կենաց տալով նահապետացն Աստուծոյ՝ յանդիման դրախտին բնակեցուցանէր, ուսուցանելով՝ ի ձեռն ապաշաւանաց ի նոյն վերադարձիլ[×] կեանս. և ոչ նոցա միայն՝ այլ և ընդհանուր մարդկութեան լինել օրինակ արդարութեան և ժուժկալութեան. մտօք սրտի գիտել զերկիւղն Աստուծոյ, կարգել և օրէնս բնութեան ի մարդիկ. զի զոր անձանց՝ զնոյն և այլոց գիտասցեն հրաժարել ի զօշոտութենէն, որ առաջնոյ անկմանն եղև պատճառս, որ կարծիւք յիմարութեան աստուածանալ կամեցաւ: Եւ զի զսրբոցն իսկ ասացից բանս. եթէ զիարդ ամենեքեան սուրբքն որպէս ժառանգութիւն իմն հայրենի ընկալեալ այնպէս պատահեցին հարք որդւոց աւանդելով զպահոցն պէտս. ուստի և մեզ կարգաւորութիւն փոփոխմանց պահեցաւ ստացուածս այս: Եւ այլովք ևս յոլովիւք բազումս է ասել վասն աշխարհալից նահապետացն[67]: Այլ այժմիկ ի կարգ բանին երթիցուք:

Մաղաղիէլ լեալ [30] ամաց ԾԿԵ-ից[68], ծնանի զՅարէդ[×]: Յարէդ լեալ ամաց ԾԿԲ, ծնանի զԵնովք, որ զծայրագոյն շնորհացն Աստուծոյ առեալ պարգևս՝ կենդանւոյն ի կարգս անմահիցն փոխանորդեաց վերագրիլ, որ և յառաջ քան զփոխիլն ծանոյց զհամաջինջ բարկութիւն Աստուծոյ խոտորեալ ազգին և որդւոցն անհնազանդից, որ ո՛չ առին ի միտ լսել զպատուէր սրբոց նախահարցն[69]: Զոր վկայէ ումն ի սրբոցն, թէ Մարգարէացաւ ութերորդն[70] յԱդամայ Ենովք և ասէ «Ահաւասիկ եկն Տէր բիւրովք հրեշտակօք առնել դատաստան ըստ ամենայնի, և յանդիմանել զամենայն ամբարիշտս վասն գործոց իւրեանց զոր ամբարշտեցան»[71]: Աստանօր և զհայհոյական բարսն նշանակէ, և վասն ամենայն խիստ բանից զոր խօսեցան զնմանէ մեղաւորք և ամբա-

[29] ×) այլօր.՝ վերադառնալ:
[30] ×) ($^1/_2$)՝ Յեարէդ:

րիշտք[72]: Եւ զի զԹիւ եօԹներորդիս յաւելուածով ասաց ուԹս
լինել՝ Թուի ինձ Թէ և զարդարն Հաբէլ ի սոյն շարի կարգեալ
համարեցաւ. իսկ եԹէ [31] ընդէ՞ր ոչ ի ծննդաբանուԹեան՝
վասն զի ոչ իսկ ունէր զաւակ Հաբէլ[73]:
Արդ Ենովք լեալ ամաց ՃԿԵ ծնանի զՄաԹուսաղայ, և
կեցեալ առ Նովաւ ամս Մ[74] փոխեցաւ յանմահուԹիւն յամին
ԼԳ Ղամէքայ:
ՄաԹուսաղալ լեալ ամաց ՃԿԵ ծնանի զՂամէք[75]: Ղամէք
լեալ ամաց ՃՁԸ ծնանի զՆոյ[76], և կեցեալ առ Նովաւ ամս
ՇԿԵ[77], մինչև ի հանդերձել տապանին: Նոյ էր ամաց Շ[78],
յորժամ առ հրաման որդւովքն կազմել զտապանն[79]:
Աստանօր լաւագոյնս իմն աստուածային Մովսէս գրէ ի
բերանոյ Աստուծոյ զյաճախուԹիւն ամբաստանուԹեան ամ-
բարշտելոցն, ըստ իւրաքանչիւրոցն և զվնասն նշանակելով:
Քանզի տեսեալ, ասէ, որդւոցն Աստուծոյ զդստերսն
մարդկան զի գեղեցիկ էին՝ առին իւրեանց կանայս յամե-
նեցունց զոր ընտրեցին[80]: Որոց տուաւ պատուէր՝ հեռանալ
յայնցանէ. որով զեղծագործ ապականուԹիւն նոցա յայտ
առնէ, յուսակորոյս յայնմանէ, որ զպատիւ սիրոյ եցոյց ի
նոսա՝ որդիս իւր [32] անելով, այսր անդր կորզեալ զկարգ
բնուԹեան առ ի յընդդէմս հրամանին Աստուծոյ դիմագրա-
ւեալք, միանգամայն և զերկիր զազրացեալ ի բազմադէմ
չարեացն գործելոցն ի նմա: Քանզի ասէ՝ բազմացան չարիք
մարդկան ի վերայ երկրի, և ամենայն ոք խորհէր ի սրտի
իւրում խնամով ի չարիս[81]: Եւ դարձեալ՝ ետես Տէր Աստուած
զերկիր և էր ապականեալ. զի ապականեաց ամենայն մար-
մին զճանապարհս իւր ի վերայ երկրի[82]. ոչ եւս զբանականաց
բերելով խորհուրդս, այլ իբրև երամակք× վայրենիք վայ-
րածեալք անկարգուԹեամբ և պէս պէս անառակուԹեամբք,
ի յաղԹանդամուԹիւն ապաստանեալք, և ապարասանք հպա-
րտացեալք ի զօրուԹիւն բազկի. ընաւ և ո՛չ մի ինչ փոյԹ
ունելով ի դիպաւորագոյնսն առաւել քան Թէ ի վատԹա-
րագոյնսն[83]:
Եւ ստրջացաւ Աստուած քանզի արար զմարդն[84]:

---

[32] ×) Ա $(^{2}/_{1-2})$՝ երեմակք:

*Եւ մտախորհ եղև ի սրտի իւրում, այն որ յստակագոյնս գիտէ և տեսանէ զամենայն, յառաջ քան զլինել* [33] *իւրեանց. այլ ի մարդկապէս բարբառոյ աստի ցուցանէ ի հրաժարականն ի սպառ վախճան: Որով ետ հրաման արդարոյն կազմել զտապանն ի գուշակումն անօրինաց կորստեանն*[85]*:*

*Լո՛ւր և զարմացի՛ր և աստանօր ևս առաւել, եթէ զիա՞րդ ողորմութիւն բարերարին՝ արդարադատ բարկութեանն յաղթէր, որ առ ժամեայ սպառնացեալ պատուհասիւն ի հարիւրամեայ ձգէր ժամանակս ներողութեամբ: Այլ և տեսութիւնք ևս յայնս սաստկագինք և նորանշանք. զոր և սուրբքըն ասեն, եթէ ձայն դակուացն և բախումն խմբիցն առ ի հեղուսել զփայտսն՝ այնպէս իբրև յորոտման ամպոյ յամենեցունց հնչէր լսելիս, ի մօտաւորս և ի հեռաւորս, առ ի յերկիւղ և ի զգուշութիւն անզգամ ազգին, թերևս դարձցին և կեցցեն. իբր ոչ անգիտանալով Աստուծոյ զառ ի նոսայսն լինելոյ, այլ բնաւորեալն բարի անփոփոխ բնութեամբ մնալով ամենայնիւ՝ առ ի չարասէրն զուղիղ հաստուցումնն յապաղէր. զոր և այլուր ասէ՝ կենդանի եմ ես Տէր Տէր, զի ոչ կամիմ զմահ մեղաւորի,* [34] *որպէս դառնալ նորա ի չար ճանապարհէն և կեալ*[86]*:*

*Իսկ ոմանք ասեն ի Ղաւոդիկեայ Փռիւգացւոց շինեալ տապանին, որ յերից մասանց երկրի՝ Ասիական կոչի կողմ. և յոյժ անհաւաստի են ասացեալքն. քանզի սուրբ նահապետացն տասանց բնաւ ոչ երբէք ումեք երևի ասել ի Միջերկրայս*[87] *ունել բնակութիւն: Այլ ի հրամանէ Աստուծոյ յանդիման դրախտին բնակելով պահօք ապաշխարութեան սգացեալ եղեն, ողբալով զվրիպումն առաջին կենացն, ամենայնիւ հրաժարեալ ի մարմնականաց, հոգիազարդ մարգարէութեամբ ժուժկալեալք ի մսոյ և ի գինւոյ: Յետ ջրհեղեղին հրամայեալ՝ կերիջիք միս իբրև զբանջար խոտոյ*[88]*. յետ ջրհեղեղին արբ գինի Նոյ, վասն որոյ և անփորձ իրացն եղելոյ՝ արբեալ եղև: Եւ որք ոչ այսոցիկ նման՝ լուան ի Տեառնէ՝ մի մնասցէ ոգի իմ ի մարդկանդ յայդմիկ յաւիտեան, վասն լինելոյ դոցա մարմին*[89]*. այսինքն մարմնասէրք և ոչ հոգիաս-*

էրք: Եւ նահապետացն արդարոցն անդէն և ի Նոյն [35]
կալով՝ անդ և վախճանեցան, անդ և տապանն շինեալ եղև և անհնարին չարեացն զեղեալ ի վերայ երկրի. և ի բողոքել արդարոյն յետ Ճ ամի՝ ապա հրաման միայնոյ և ահաւորին Աստուծոյ[×] ասէ. «Մուտ ի տապանն դու և որդիք քո և կանայք որդւոց քոց. զի ահա ևս եօթն օր՝ և ածից ջրհեղեղ ջուրց ի վերայ երկիր՝ սատակել զամենայն, յորում է շունչ կենդանի»[90]. - յայտ առնելով ի թիւ եօթանցն այլ ևս ներողութիւն[91]:

Ո՛վ անծախելի բարերարութեանն Աստուծոյ. ո՛վ անհատական մարդասիրութեանն, որ և դեռ ևս խնայել ասի յանզգացեալսն:

Եւ յաւուր յայնմիկ եմուտ ի տապանն Նոյ և որդիք իւր, կին Նոյի և կանայք որդւոց նորա ընդ նմա:

Իսկ ոմանք ի պատմագրաց ասեն, թէ և դուստր Նոյի և ճարտարապետ նաւին կնաւ և որդւովք և կարևոր բարեկամօք[92]. որ և ինձ հաւանականք այսոքիկ թուին. քանզի յետ ջրհեղեղին ոչ երևի լինել դարձեալ որդիս նահապետին. իսկ աշխարհն վերին Հնդկաց ասի լինել դստեր նորա: Զոր
[36] Եւսեբէս Կեսարացի ասէ՝ ի սովորութենէ մինչև ցայսօր կին մարդ թագաւորէ ի վերայ աշխարհին Հնդկաց[93]: Այլ և վասն գործակցաց տապանին դիպողագոյնս է ասել. եթէ հաւանեալք արդարոյն[×] և ապաւինեալք ի Նա՝ յուսացան ի բան նորա, ծառայել երկիւղիւ հրամայելոցն ի նմանէ՝ զի՞նչ անհաւատ թուի և ի փրկութենէն ընդ նմին վայելել. որ և զԹահար[94] պոռնիկն առ ժամեայ բարեմտութեամբն յերիքովական բարկութենէն ապրեցոյց իւրովք ազգականօքն, և զԳաբաւոնացիսն ի Քանանացւոցն սատակմանէ: Այնքան խնամոցն արժանի՝ զի և զվրէժ արեան նոցա առնուլ ի տանէն Սաւուղայ[95]: Եւ զի ասէ գիր՝ ոգիք իբրև ութ[96] երկբայականս իմն և զայն. առ որս ասեմք, եթէ նոցա տուաւ

[35] ×) I (15), II (17)՝ Ի հին օր. չիք՝ Աստուծոյ: «Աստուծոյ» բառը նշված է ձախակողմյան դաշտում «+» նշանով:
[36] ×) Ա($^{ւ}/_{10}$)՝ արդարոցն:

*Հրամանն այն. այլ թէ ի ձեռն նոցա և այլք եղեն փրկեալք: Նաև յութիցն մտելոց ի տապանն ոչ ամենեքին ընտիրք երևեցան, այլ ի ձեռն արդարոյն և նուազունքն ապրեցան:*

*Իսկ Փիլոն ասէ՝ զոսկերսն Ադամայ, ի պատիւ [37] խնամոց, իբրև հօր հասարակաց՝ առեալ Սէմայ եդ ի տապանի անդ[97]. զոր յետ սակաւուց միոյ երկրորդեցից զառ ի նմանէսն:*

*Եւ փակեաց Տէր Աստուած արտաքոյ նորա, ասէ, զտապանն[98]:*

*Ո՛վ անհագնասաստ բարկութեան[×] հրաման նորին օրհասին. ո՛վ ահեղական ձայնիցն և սաստնման հաստատութեան երկնի և երկրի: Զի թէ միոյ փայլատակման ընթացք և ճայթումն[××] ամպոց բաւական է պակուցանել քաղել զուշեղութիւն ոգւոց, զի՞նչ ինչ յայնժամ կրէին ոգիք մնացելոցն յերկրի, ի սահանաբաց և յանդնդաքակ վրդովմանցն հոսելոց[×××], նախ քան զՀրհեղեղ ջուրց սատակումնն: Որով պատառեցան ամենայն աղբերք անդնդոց, և սահանք երկնից բացան[99] անընդմիջաբար երկրի և երկնային ծովուն լինել, և համատարած ջրովն զրաւ առնել համօրէն ամենայն շնչաւոր կենդանեաց՝ զտարի մի ողջոյն մնալ յապականութեան երկրի. և յետ կատարման աստուածային հրամանին՝ ի ծփական ջուրցն բերեալ տապանն [38] յարևելեայն ի միջոց աշխարհի՝ հանգեաւ ի լերինս Կորդուաց, և նահապետն ողջակէզս գոհութեան Աստուծոյ մատուցանէր[100]. և խոստացեալ պատարագընկալին՝ ոչ ևս զնոյն հատուցանել երկրի ուխտ յաւիտենական[×] հաստատեալ՝ զաղեղն իմ եղից յամպս[101], որ է ծիածանդ, զոր ոմանք հուր մեկնեալ յամպոյ ասացին, և որդիք տարրապաշտիցն՝ գօտի Արամազդայ: Իսկ եթէ Բէլ հրամանատու Արամազդայ իցէ՝ զի՞արդ*

---

[37] ×) Այլ օր. չիք՝ բարկութեան: ××) Այլ օր.՝ ճայթմունք: ×××) Ա (Լ/11)՝ հոսելոց ուղղ. հասանելոց (Նախն. 30):

[38] ×) I (16), II (18), III (33)՝ հատուցանել երկրի ուխտ հաւիտեական: Ա (Լ/9)՝ հատուցանել երկրի մարդկան ուխտ հաւիտեն(ա)կան յաւիտենից: (Տե՛ս ձախակողմյան դաշտում «+» նշանի տակ):

իցէ, զի Արամազդ ի գօտոյ իւրմէ խաշիցի հրամանաւ[xx] Բէլայ. զոր մեք ոչ յաւելցուք այժմ յառասպելս նոցա յամել, այլ և ոչ հուր մեկնեալ յամպոյ, ապա թէ ոչ՝ հարկ էր և ի գիշերի երևել. այլ է արդարև նշոյլք արեգական, սեռն օդով ծածկեալ[xxx] ի վերայ խիտ և խոծ ամպոց խոնաւագունից, զոր ի սկզբանց ոչ եղեալ՝ Նոյիւ[xxxx] ասի լնել:

Եւ յետ այնորիկ ի բազմանալ որդւոց մարդկան՝ յերիս մասունս և զերկիր բաժանեալ, ըստ ասացելում Հերոդոտեայն[xxxxx], զոր ասէ մի ըստ միոջէ մեծն Եպիփ[39]անոս[102]: Այլ և զՓիլոնեայսն ասացաք երկրորդել զառն քաջի և գլոյժ հմտագունի իմաստասիրութեան, որ յետոյ և հետևող սուրբ առաքելոցն եղեալ բազում ուսմունս ի հնոց հրէականաց նպաստաւորեաց եկեղեցւոյ գեղեցիկ օրինակօք, որպէս ուսուցանէ գիրք Եւսեբի Կեսարացւոյ[103]: Զոր ի մեկնութեան Եբրայականացն անուանց ասէ Փիլոն[104], զոսկերսն Ադամայ բարձեալ Սէմայ գրաստու՝ տարաւ յերկիր ժառանգութեան իւրոյ, և հասեալ ի տեղի ապառաժ քուաւոր՝ անդէն զետեղէր և զգրաստն[105]: Ըստ դիպուածոցն եղելոց և զանունն ասացեալ՝ տեղի մսրոյ, զոր բարբառն եբրայական իբր ծեքեալով իմն զբանն՝ թուեցուցանէ իմն ասելով Աւաւրիշըլիմ, այսինքն Երուսաղէմ, որ նոյն ինքն թարգմանի՝ մսուրս կատարեցաւ[106]:

Իսկ տեղի շիրմին յորում նախահօրն եդան ոսկերք՝ կատարման և կառափման, որ նոյն ինքն է գագաթն և Գողգոթայ ըստ եբրայականին, երկակի անուամբ. զոր յափշտակեալ ի Սէմայ որդւոցն Քամայ՝ շինեցաւ քաղաք Նովիմբ [40] անուամբ. վասն որոյ և աստուածայնոցն առ Մովսէսիւ հրամայեալ՝ առնուլ վրեժխնդրութեամբ ազգացն Քանանացւոց զառ ի նահապետէն կարգեալ սահման. զոր և Դաւիթ գոհաբանէ, յիշեաց յաւիտենից զուխտ իւր և զբանն զոր

---

xx) Այլ օր՝ հրամանով: xxx) Ա $(^{2}/_{10})$՝ ծածկեալ. ուղղ.՝ ծագեալ (Նախն., 221):
xxxx) Ա $(^{2}/_{8-9ա})$՝ նոցիւ. I (17), II (19), III (34) ուղղ.՝ նոյիւ:
xxxxx) Ա$(^{2}/_{3-2ա})$՝ Հերոդոտեայցն:

պատուիրեաց՝ մինչև ի Հազար ամ[107]: Եւ յետ սակաւու միոյ ասէ. «Ձեզ տաց զերկիրն Քանանու զվիճակ ժառանգութեան ձերոյ»[108] քանզի Քամայ տուաւ ի Հօրէն Եգիպտոս և Լիբէաստան և մինչև յարևմուտս Հարաւոյ: Եւ Յաբէթի Եւրոպնամենայն յԱմման լեռնէ մինչև ի մուտս Հիւսիսոյ: Իսկ Սէմայ՝ Ասորեստանեայքն Համօրէն լայնութեամբ մինչև ի կողմանս արևելից[109]:

Եւ եկաց Նոյ յետ Ջրհեղեղին առ որդւովքն ամս ՅԾ[110] մինչև ի ՀԳ ամն Եբերայ[111], զկամս Աստուծոյ և զօրէնս բնութեան ցուցանել ազգաց եկելոց որ յետ իւր: Զոր մեք սակաւուք այժմ յիշատակեալ զազգաբանութիւն բնաւին մարդկութեան ի նախապետացն առաջնոցն. և մանաւանդ զի Հարկ փութոյ եղև մեզ գիտել զպայազատութիւնս [41] երանաց[×] տիրեցելոց մերոյ[××] աշխարհի և որ յառաջ քան զնոսա Թագաւորք Ասորեստանեայց, որդի ի Հօրէ առեալ մինչև ի Սենեքարիմ արքայ, որ առ Եզեկիայիւ Երուսաղէմի արքայիւ եղեալ ազգապետ տանս Արծրունի: Եւ են ի թուել մինչ ցայս վայր ասոքիկ. Ադամ, Սէթ, Ենովս, Կայիանան, Մաղաղայէլ, Յարէդ, Ենովք, Մաթուսաղայ, Ղամէք, Նոյ, Քամ, Քուշ, Նեբրովթ որս և Բէլ: Եւ առ այսոսիկ այժմ բաւականապէս ասացաւ:

(Բ)

## ՎԱՍՆ ԲԷԼԱՅ ԵՎ ԲԱԲԵԼԱՑԻՈՑՆ ԵՎ ՆՈՑԻՆ ԱՌԱՍՊԵԼԱԲԱՆՈՒԹԵԱՆՑՆ

Թէպէտ և ոչ ինչ նպաստաւորութիւն առաջիկայ տեսութեանս ունին Հետագայից ցոյցք որ վասն Բէլայ և նոցուն իսկ Քաղդէացւոց դիւցազնական զառանցութեանցն՝ այլ և ոչ զծիծաղականս նոցա Համբաւեալ քաջութիւն, որպէս կարծեն՝ առանց եպերանաց անցից զխելագարութեամբքն: Քանզի ասեն սկիզբն աստուծոց՝ զՀին ոմն Բելոս, Հայր

---

[41] ×) ուղղ.՝ երանելեաց: ××) Ա $(^{1}/_{1\text{-}2})$՝ մերոց:

Դիայ, որ կոչի հայերէն Արամազդ[1] ՄԺԵ բիւր ամաց աւուրս ունել և ևս յառաջ. ըստ այսմիկ և այլ առասպելականք. և գիր մատեն[42]ական ի Նմանէ գրեալ և պահեալ ի Բաբելոնի բազում զգուշութեամբ. զոր մեք գիտեմք յետ ջրհեղեղին եղեալ գիր[2]:

Իսկ այլք զԿռոնոս ոմն անուն՝ լինել Հայր Արամազդայ, ևս մօտաւոր ժամանակով, որ զջրհեղեղին իրս գուշակեաց Քսիսութրեայ, և զառաջինս իւր գործոց բնաբանապէս գրել և դնել յաման պղնձի մածեալ կապարով ի պահեստի ի Սիպարացւոց քաղաքին[3]: Եւ այլք յայլ ինչ բազում յածմունս անկեալ ցնդին ժամանակաւ և իրօք. զոր և մեք ոչ ընդդիմակս առ ի լուծումն առասպելեաց Նոցա հարկաւորիմք արժանաւորս գրել: Իսկ Նեբրովթ[×] որդի Քուշայ որ ի Քամայ[4] յոյժ ուժգնագոյն ոչ միայն քան զառաջինս ուրուականաց[5] լինել, այլ և ոչ Հերակլի որ յետուստ՝ մոլի բռնաւոր, որ և զՏրովական դժուարամարտիկ իրս քաջապէս և կարողաբար վանեալ[6] աստուած ի նոցանէ ասացաւ, նա և ոչ աշխարհակալին Աղէքսանդրի Մակեդոնացւոյ, քանզի նա խաբկանօք առն մոգի և կախարդին[7] ասաց լին[43]ել որդի Ամովնայ և Արամազդայ, այլ ոչ ուրացաւ մահկանացու գոլ[8]: Իսկ սա ասաց զինքն հնագունիցն լինել անժամանակ Բէլ՝ ոչ Հայր աստուածոց, այլ և հրամանատու Արամազդայ: Որ և այլոց կարող տուիչ լինել ժամանակաց, որպէս և արանցն որ յառաջ քան զջրհեղեղն քառասուն ևս աւելի բիւրս ամաց[9] և դարս փոխադրական այլաձևս և խժականս, չարս և ձերս և սոսս[×10], նոյնպէս և զանուանս նահապետացն կեղակարծութեամբք այլաբանել[11]. յօրացեալ և ապատանեալ ի յոյժ բազկի և ի յաղթանդամութիւն[××] հասակի[12], քանզի ասեն զբարձրութիւն նորա լինել վաթսուն կանգուն. որոյ սերմանք յիմարութեանն պատուեալ առ Բաբելացիսն պահեցաւ մինչև ի ժամանակս Աղէքսանդրի Մակեդոնաց-

---

[42] ×) Ա (²/₃)՝ Նեբրոդ:

[43] ×) Ա (¹/₄₅)՝ սոսոյ: ××) I (20), II (21)՝ Հին օր.՝ ի յաղթամդամութիւն: Ա (²/₃), III (38) ի յաղթանդամութիւն:

ւոյ. զոր և անդրի ոսկեղէն կանգնեալ թագաւորին Բաբելացւոց՝ արժան քաջութեան առ ի յիշատակ[13]: Եւ թէպէտ յայնմանէ վրիպեցոյց ճշմարիտն Աստուծոյ պատուհաս՝ այլ չարն սովորական բնաւորեալ [44] պահեցաւ անվրէպ: Որ յետ բազում ժամանակի ծախք պիտոյից ասացաւ պատրաստել թագաւորին[14] ըստ անյաղթ բռնութեան և մեծութեան որովայնի կերակուր Բէլայ: Որպես և Յոյնք երբեմն համբաւեցին՝ Հերակղէս աստուած յիսուն կոյս ի միում գիշերի ապականէր. զծանականաց և զամօթալեաց իւրս՝ քաջութեան ասել՝ ըստ այսմ զարմանալիք և Բաբելացւոցն Բէլայ ասացաւ, երկոտասան արդու ալեր և քառասուն ոչխար ի միում գիշերի ուտել Բէլայ[15]. վասն որոյ պարծանօք իմն խնդալից սրտիւ ասէ թագաւորն Դանիէլի, դու ընդէ՞ր ոչ երկիր պագանես Բէլայ, եթէ ո՞չ տեսանես ո՛րչափ ուտէ և ըմպէ:

Ո՛վ Բաբելացի կոյր՝ ունելով խելապատակ ցնդեալ ի մկանց և ի խլրդից. եթէ ոչ այլ ինչ յակն ունելեաց բարւոյ ունիցիս ասել, զի՞նչ ինչ բարգաւաճանք քեզ լրութիւն անյագ որովայնին Բէլայ իցէ: Ո՛վ յիմարութեան առաջնոցն. ո՛րպիսի կատաղութիւն և գիւտք դիւացն նախկին ժամանակաւ սպրդեալ [45] մուծաւ յաշխարհ, ապստամբութիւն առ Աստուած[16] և տրտմութիւն սրբոց հրեշտակաց, և պատճառ վտանգաւոր մահու ծառայիցն Աստուծոյ յաւուրս ապագայիցն. որով ժամ և դէպ իսկ է, առ յայնժամ զարժանապէս նոցա ասել փոխարէն և անմեղադրելի բազմաց, եթէ այնչափ մթերեալ համբարք կերակրոց կուտեցին ի հալոցսն Բէլայ՝ ո՞չ ապաքէն ըստ այնմ և ելքն ի նմանէ լինիցին չահ ի փառս Բաբելացւոցն ըստ կարծեաց նոցա: Սպառնայ և աստուածային դատաստանն Երեմիայիւ, «յաւուր յայնմիկ խնդրեցից զվրէժս ի Բէլայ ի Բաբելոն, և հանից զոր եկուլն՝ ի բերանոյ նորա»[17]: Քանզի առաջնոցն ուրուականք և ստուերականք[18] ոմանք՝ ըստ իւրաքանչիւր կարծեաց թուելոյ վրիպեցան յաստուածածանօթն գիտութենէ հոգեշահ նահապետացն:

Իսկ Նեբրովթ ինքնադիմաբար ասաց զինքն աստուած, և թագաւորեալ ի Բաբելոնի սաստիկ զօրութեամբ՝ առնէր և

նշանս կախարդութեամբ և առ աչօք մինչև ի զարմացումն [46]ամենեցուն: Եւ տիրեաց ամենայն ազգաց որ ի ներքոյ երկնից. և ետ հրաման աՀիւ մեծաւ՝ ամենայն ուրեք կանգնել զպատկեր իւր և երկիրպագանել իբրև աստուծոյ և զոհս մատուցանել. որ և սկզբն պատկերպաշտութեան եղև: Ոչ կարծողականս ինչ ըստ առաջնոցն Բէլայ ասացելում, կամ այլոց ստուերականացն երևեցելոց երազականաց և խաբեբայ դիւաց, այլ ձեռագործ մեռելականս իսկ եցոյց ի պաշտօն, զոր սովորութիւն թէ առցէ ոք արդեօք ասել ի վերայ Փաղեգայ որդւոյ Եբերայ[19] և կամ Առանայ որդւոյ Թարայի[20]: Քանզի սոքա յառաջ քան զհարս իւրեանց ասին վախճանեալ. և հարքն ի գութ խանդաղատանաց զպատկերս որդւոց նկարեցին, ըստ ասացելումն ի Սողոմոնէ, եթէ «Հայր թախծեալ տարաժամ սգով՝ վասն վաղամեռիկ լինելոյ որդւոյ արար պատկեր»[21]:

Իսկ եթէ սովորութիւնն այլանդակեալ ի չարէն ի սոյն, կանգնել պատկերս սկայից և քաջաց և բարբարոսական թագաւորաց [47][22] ի պատիւ, առ այսուիկ և ի պաշտօնս դից յարեցան՝ դիպողագոյնս և զայսոսիկ է ասել ըստ օրինակին Բէլայ, որ և ամբարտաւանեալ մոլեգնականս տալ հրաման զանխորհուրդ միաբանութեան զրաջան վաստակոց, կանգնել բուրգն յերկրէ, որոյ գլուխն հասցէ յերկինս. և կանխավաղ ցրմամբն ի վերուստ՝ զմիաբարբառ լեզու մարդկութեան չփոթեաց յայլաբան խլրտիւնս[23]. միմիայն մնացեալ զիւրականն պահելով լեզու. որ Եբրայեցւոցն ասի նահապետ Եբեր որդի Սաղայի, որ ոչ հաւանեցաւ մտանել յանմիտ խորհուրդ շինութեան աշտարակին. և աստի գիտելի է մեզ բարբառն առաջին Եբրայեցի լեալ[24]:

Այլ անժամանակն Բէլ ծախի ժամանակաւ, նշկահեալ ի Հայկայ որդւոյ Թորգոմայ, որ ի տանէ Յաբէթի, որով քա-

[47] ×) Այլ օր.՝ բարբարոսաց:

մահէ զորսորդականն Քամայ[25], անարգէ ասելով, «ոչ միայն զի չես աստուած՝ այլ չո՛ւն ես դու, և երամակ շանց՝ որ զկնի քո տողեալ սահին»[26]:

Աստանօր ի դէպ ելանէ և մարգարէախառն օրհնութիւնք [48] մեծի նահապետին և աշխարհահօրն Նոյի յասելն՝ ընդարձակեսցէ Աստուած Յաբէթի, և բնակեսցէ ի տան Սեմայ[27]: Քանզի Ասիականք արևելից Սեմայ լեալ վիճակ[28] խոյս տուեալ Հայկայ գայ հաստուածեալ ի Բէլայ ի Բաբելոնէ յարևելս Ասիական. և Նեբրովթայ յանդուգն զօրութեամբ հետամտեալ[x] հրոսակաւ մեռանի ի Հայկայ, հարեալ նետիւ, զոր ոմանք ի պատմագրաց ասեն՝ փախստեամբ դարձեալ գնաց յԱսորեստան: Եւ այսոքիկ վայրապար բանք. զի լայնագոյնս ևս վասն այսորիկ պատմէ մեծ քերթողն Մովսէս, և զօրինակ մահու նորա, և որպէս զմեռեալ դի նորա բարձաւ ի դաւառն Հարքայ ի տեսիլ բազմաց[29]: Եւ ժամանակ բռնակալութեան նորա են ամք ԿԲ, զոր ոմանք ի պատմագրաց ասեն հայր սորա զՄեստրիմ[xx], որ կոչի Մեծրայիմ, այսինքն Եգիպտոս, վասն ժառանգութեան սահմանաց Եգիպտոսի. քանզի Եթովպացի իսկ ասի Քուշ որդի Քամայ. զոր գիրք Արարածոցն հայր Նեբրովթայ ասեն[30], և Եթովպիայ [49] է մասն Եգիպտոսի և ամենայն Լիբէաստանեայց:

Իսկ ըստ պատմագրաց՝ կարգ ծննդաբանութեանդ ունի զայս օրինակ. Քամ ծանիրն զՔուշ, Քուշ ծնանի զՄեստրիմ[x]: Իսկ գիրք Արարածոցն ասեն զՆեբրովթ[31]. այլ ըստ պատմագրացն՝ Մեստրիմ ծնանի զՆեբրովթ, Նեբրովթ ծնանի զԲաբ, Բաբ ծնանի զԱնեբիս, Անեբիս ծնանի զԱրբէլ, Արբէլ ծնանի զՔայաղ, Քայաղ ծնանի զմիւս Արբել, Արբել ծնանի զՆինոս[32] զայրն Շամիրամայ: Եւ զի ասնե զՆինոս թագաւորեալ յետ Բէլայ՝ անփոյթ զայսքանեօք արարեալ. զի ի մատեանս առաջնոցն ունէին պատուէր ի թագաւորացն զնշանաւոր իրս քաջաց գրել, և ոչ վատաց. այլ և նկարագիրս ո-

---

[48] x) Այլ օր.՝ զհետ մտեալ: xx) Այլ օր.՝ կանանցիս:
[49] x) Ա (Բ/12-13)՝ Մեստրիմ:

մանս պատկերաց զպատկեր քաջաց արականս և շքեղաւորս կենդանագրել: Իսկ զվատացն և զնուազազգունիցն՝ լոյծս և կանացիս, և միայն վերնագրութեամբ և եթ նշանակեալս[33]:

(Գ)

## ՎԱՍՆ ԱՍՈՐԵՍՏԱՆԵԱՑՑ ԹԱԳԱՒՈՐՈՒԹԵԱՆՆ. ԵՒ ԹԷ ՈՐՊԷՍ ԶՐԱԴԱՇՏ ԵՒ ՄԱՆԻԹՈՊ ԿԱՑԵԱԼ ԳԼԽԱՒՈՐՔ ԱՐԵՒԵԼԻՑ ԿՈՂՄԱՆ, ԵՒ ՄՈԼԱՐ ՈՒՍՄԱՆՑ ՆՈՑԱ: [50]

*Ցոյցք ժամանակացս այսոցիկ, ըստ որում յառաջագոյն ասացաք, որ յաւուրց անտի Բէլայ մինչև ի Նինոս՝ երևելիք ինչ և նշանաւորք ի մատենիցն առաջնոցն ոչ երևի, թերևս ի բազում խափանմանց[1]: Նախ զի և լեզուքն չփոթեալք՝ ունէին զանմիաբանութեան փոյթս, կամ թէ զի և վատութիւնք քաջաց հարկեալք ոչ գրեցաւ ի մատենագրաց անտի Քաղդէացւոց. դարձեալ զի թէ և գրեցաւ ևս՝ այլ քաջութիւնք արութեանն Նինոսի, ըստ օրինակի Բէլայ, աւուել ամբարձաւ անձնասէր ամբարտաւանութեամբ՝ զինքն գոլ ասել սկիզբն քաջաց և թագաւոր առաջին, զի և զմատեանս առաջնոցն մեծասասատ ստիպով ի մի վայր գումարեալ՝ հրամայեաց այրել. զի և հետք ևս յիշատակ այլոց անուանեաց մի երևեսցի, բայց ինքեան միայնոյ[2]: Քանզի և սա ասի թագաւորեալ ամենայն Ասիաստանի[3] և Լիբէաստանի, բայց միայն ի Հնդկաց[4]. որ և զՆինուէ քաղաք առաջին արքունեաց շինեալ [51] յԱսուրայ, զոր աւերեացն Նեբրովթ՝ սա վերստին շինեաց ի պատիւ անուան իւրոյ[5]: Եւ զԶրադաշտ մոգ արքայ Բակտրիացւոց և Մեդաց ընկճեալ հալածեաց մինչև ի սահմանս Խեփտաղաց[6], հզօրապէս տիրեալ բովանդակ Խուժաստանի և կողմանց արևելից և Պարսից, անդր ևս քան զԲահխ և զԴեպուհան[7], ի Գովմայիդ[8] և ի Գուզբան[9], ի Շերիբամամական[10] և ի Խոճիհրաստան[11], և միանգամայն ասել մինչև ի ծովն Հնդկաց՝ յոյժ արութեամբ և քաջութեամբ վանեաց ամս ԾԲ[12]. և ի վախճանելն իւրում, քանզի էին որդիք նորա յոյժ մանկագոյնք՝ ետ զիշխանութիւնն կնոջն իւրում Շամիրամայ, որ և նա քաջագոյն ևս*

տիրեաց ամենայնի, որոց և Նինոս, և զԲաբելոն պարսպօք ամրացոյց և զհակառակութիւն Զրադաշտին հնազանդեալ ընդ իւրով ձեռամբն նուաճեաց ի ծառայութիւն: Եւ քանզի վավաշոտ մոլորութեամբ վարելով ոչինչ փոյթ զորդւոց իւրոց առնէր՝ ամենածախ գանձիւք առատաձեռն պատուով [52] հոմանեաց և եթ ունելով ուշ՝ կացոյց զԶրադաշտն ի վերակացութիւն Բաբելոնի և Խուժաստանի և ամենայն արևելեաց Պարսից. և ինքն գնացեալ յԱսորեստանէ յերկիր Հայոց, ի տափանս համբաւուց ուրումն Հայկազնոյ: Եւ թէ ո՛րպիսի օրինակաւ գալուստ նորա և պատերազմ վասն սորին իրաց, և արիական ձեռակերտացն շինուածք, որ և յոյժ արժանաւորք զարմանալեաց, և դարձեալ ապստամբութիւն Զրադաշտին և մահն Շամիրամայ և բան յուռթիցն որ զնմանէ՝ այս ամենայն գտանի յայլոց ասացեալ[13]. որ տիրեաց ամս ԽԲ[14]: Եւ առեալ զիշխանութիւն նորա Զամեայ որդի նորա, որ յանուն հօրն իւրոյ կոչեցաւ Նինուաս. որ տիրեաց Ասորեստանի, այլ և ի ժամանակս ինչ Հայոց, ոչ ինչ փոյթ զբազմացուցանելով՝ հեշտասէր և անպատերազմասէր մտօք վարելով կեայր ի խաղաղութեան[15]:

Իսկ զկողմանս արևելից Պարս այնքան ունելով Զրադաշտին՝ յայնմ հետէ ոչ երբէք հարկէր Ասորեստանեայց. [53] նա և պախարակելով զԲէլայսն և զայլոց դիւցազանց, իբրև զկարի իմն հնազունից և զանյայտից զինքեանս ասաց նոր առասպելաբանութիւն[x]. միանգամայն և միահաղոյն որոշել զՊարս և Մարս ի Բաբելացւոց, զի ուսմամբ և անուամբ մի ևս ասիցի ունել հաղորդութիւն ընդ Ասորեստանեայս: Եւ այսպէս զառածանէր, զՍէմ որդի Նոյի ասել նոր Զրուան, որ և սկիզբն աստուածոց: Սա ցանկացաւ լինել, ասէ, հայր Որմզդի և ասէ՝ եթէ՛ եթէ լինէր իմ որդի Որմիզդ անուն, որ արասցէ[xx] զերկինս և զերկիր. և յղացաւ Զրուանն երկուորիս. իսկ խարդախն ի նոցանէ ստիպեալ նախաժաման եկն

---

[53] ×) I (25), II (26), III (46)՝ առասպելութիւն: Ա ($^{1}/_{6-7}$)՝ առասպելաբանութիւն: ××) Ա ($^{1}/_{ռ.}$-$^{2}/_{1}$)՝ ասասցէ:

յառաջ: Եւ հարցեալ Զրուանն, ո՞վ ես դու՝ ասէ. ես եմ որդին քո Որմզդ. և նա ասէ. որդին իմ Որմզդ լուսաւոր է և անուշահոտ, դու խաւարային ես և չարասէր: Իբրև կարի թախանձեաց՝ ետ նմա իշխանութիւն հազար ամ: Յետ հազար ամի ապա ծնաւ Որմզդ, և ասաց ցեղբայրն. հազար ամ անսացեալ իմ քեզ, արդ դու ինձ անսա: Եւ գիտացեալ Արհմին [54] զյետարկելն իւր՝ խեռեալ ստամբակեաց Որմզդի, հակառակ աստուած լինելով: Որմըզդ արար զլոյս, Արհմն արար զխաւար. նա արար զկեանս, սա արար զմահ. նա արար զհուր, սա արար զջուր. նա արար զբարի, սա արար զչար, և զի մի՛ մի ըստ միոջէ ասացից, այլ համանգամայն ամենայն բարիքս Որմզդի է և լաւք, և չարք և դևք՝ Հարամանւոյն[16]: Արդ ո՞վ ոք արժանի յոյժ ծաղու զբանք ումանս այսորիկ համարեսցի. ո՞վ ասասցէ յիմար արքային Զրադաշտի՝ ասա՛ ձրավաստակ աստուծոյդ քո Որմզդի՝ չաշխատել տարապարտ. գուցէ ներհակդ առ ընթեր կալով՝ ի միում ժամու բարկացեալ, և զքեզ ևս վարատիցէ:

Դարձեալ ասէ նոյն յիմար Զրադաշտ, եթէ դէպ եղև լինել պատերազմ Որմզդի ընդ Հարամանւոյն. և ի սաստիկ սովոյն տեսեալ Որմզդի յածէր ընդ վայրս ի խնդիր կերակրոց. և տեսեալ զուարակ մի՝ գողացաւ և տարեալ մեկուսի յազեաց զնա և կարկառեալ քարամբք՝ մնայր երեկոյինն [55] զի տարցի անյայտաբար զգողաւսն առ իւր և լցցէ զսովառութիւն իւր: Եւ եկեալ երեկոյին խնդալից ակն ունէր առնուլ կերակրովն, եգիտ ապականեալ և գիշակեր. զի մողեսք և կովիդայք, քարաթաթօշք և բնդռունք ի վերայ եկեալ կերան զորս նորա: Արդ յայսմ հետէ ըստ նեպակի[×] գեաղջն կապճահամար ժժակք յամենայն ի դուռն արքունի ի սատակումն եկեսցեն. զի սոքա վնասակարք առ աստուծոյն եղեն[17]: Բազում և այլ ինչ զառանցականս բարբանջանաց օրինադրեաց: Եւ զայսոսիկ ոչ վայրապար ինչ եհաս մեզ գրել, այլ զի բազում նեղութիւն և սուր, ի ձեռն այսր

[55] ×) Ա (1/8ա)՝ նեպակի: I (26), II (27)՝ նեպուկի:

սատանայական ուսման՝ սպառեալ կործանեաց զերկիրս Հայոց, որպէս և ցուցանէ քեզ պատմութիւնք սրբոց Վարդանանց, զորս գրեաց երանելի քահանայն Եղիշէ[18]: Զոր և այժըմ իսկ դեռ ունին զսոյն ասել որդիք հրապաշտից:

Իսկ Մանիթոպ արքայ Խեփտաղաց ես յաւելուածով զայսոսիկ հաստատէ. ոչ ասել զհուր արարած Որմզդի, այլ բնութիւն [56] Որմզդի, և Հեփեստոս և Պռոմիթոս, որ է արեգակն և լուսին՝ գողացան զհուրն յՈրմզդայ և մասն ինչ ետուն ի մարդիկ. և երկիր պանդոկի Սպանդարամետ աստուծոյ է, ոչ ստեղծեալ յումեքէ[×], այլ որպէս երևիդ՝ նոյնպէս էր, և կայ մնայ, և զմարդ ինքնածին[19]:

Զայս և ես իսկ տեղեկացեալ գիտացի ի բազմաց, յայնցանէ որ Շախրիքն[20] կոչին. որոց դէպ եղև ինձ հանդիպել եկեալ ոմանց ի յԱպղաստան աշխարհէ, որք անուանէին զինքեանն համակդէնս, այսինքն ամենագետք ի հաւատ կրակի, և զսոյն իսկ ասէին զայսոսիկ[××] այլովք զազիր չարեօք: Եւ զնախնին մեր Ադամ ոչ ասել առաջին մարդ, այլ այլոյ ումեմն որդի Շուռելայ, արօտաբոյծ[×××] ուղտուց, զզուեալ յանծանօթ աշխարհի և անհաւատարիմ յայնմ գտեալ՝ հալածեալ եղև կնաւ իւրով ի միջոց երկրի, և այսրէն եկեալ ցեղապետ մեր եղև: Եւ իմ զհետ երթեալ բանից նորա հարցանէի՝ ո՞ւր ուրեք ասէք լինել զերկիրն զայն անծանօթ. [57] և նոքա ասեն. «լեառն մի է յոյժ անհնարին բարձր, որոյ անդր քան զնա չի՛ք բնակութիւն մարդկան». - զոր և ես գիտեմ յաշխարհագրութեանց անտի Պտղոմեայ՝ զԵմաւոն լեառն յարևելս, որ արդարև բարձր է քան զամենայն երկիր[21], անկոխելի ոտից մարդոց, հազիւ ուրեք ակնակառոյց աչօք նկատել զկատար լերինն, իբր թէ մերձ առ երկնիւքն իցէ. - Եւ ասէին այնոքիկ զորոց և բանս է, եթէ «ի մասն ինչ լերինն յայնմիկ հասեալք բազումք ի մերոց՝ տեսանեն զկողմանս արևելից, դաշտ յոյժ մեծանիստ, լայնատարած, հար-

---

[56] ×) Ա $(^{1}/_{8-9})$՝ աստուածէ որ ստեղծեալ յումեքէ:
××) Ա $(^{2}/_{2-4})$՝ և զսոյն իսկ զայսոսիկ ասէին:
×××) Ա $(^{2}/_{9})$՝ արըռտաբոյծ. ուղղ.՝ արաւտաբոյծ (Նախն. 139):

թայատակ, անվայրափակ առ ի սահման, անբաւական ի տեսութիւն աչաց, սաստիկ լուսով զարդարեա՛լ ի գիշերի, բազմակերպ երեւմամբ, և ի տունջեան ամպ թանձրախոծ իբրև զթաղ լմեալ բալաձև սպիտակափայլ յոյժ. զայնմանէ ասէին՝ երկիր օտար անծանօթ: Եւ ես զայլովք հայեցեալ բանիւք քամահեալ՝ ուժգնակի կարծիք ի միտս իմ ընթացան առ ի հաւատ ասացել[58]ոցս վերջնոյ, թերևս և այն իցէ երկիր[×] բնակութեան առաջին մարդոյն. քանզի արդարև զգալի և շօշափելի էր դրախտն, և ոչ իմանալի կամ ի մէջ երկուց աշխարհաց, որպէս որք զՅովրեգենին համբաւեն. այլ և ոչ տարաբարձական, որպէս և արդ ևս ոմանք կարծեն, ոչ գիտելով զասացեալսն ի Տեառնէ աւազակին՝ այսօր ընդ իս իցես ի դրախտին[22]: Զոր և Աղէքսանդրի Մակեդոնացւոյ ի դէպ ելանէ առ Ողըմպիադայ վիպագրութիւնք[23] թերևս ի մասն ինչ արտաքոյ սահմանաց դրախտին հասանել. և անծանօթ զարմանալի ծառոյն դէպք՝ ի միում աւուր ունել աճմունս փոյթ ընդ փոյթ. և դարձեալ սուզականութիւնս յանկարծօրէնս լինել, որոց և չիթք ցօղոյն ունէր զանհամեմատ անուշահոտութիւն: Եւ ոչ արմատոցն միայն օտար և անիմանալի սարասիցն տիպք, այլ և աներևոյթ պահպանողական և անհպելի զգուշաւորութիւնն. որք և ի մերձենալն անգամ տանջեալ լինէին յաներևոյթ զօրութենէն, [59] զոր ես ոչ հաւանիմ ասել ի դիւաց. «և զտանջողացն, ասէ զճողփիւնն լսէաք, և զհարուածսն եկեալս ի վերայ թիկանցն տեսանէաք, բայց զտանջողսն ոչ տեսանէաք: Այլ ձայն իմն գայր՝ մի՛ ժողովել և մի՛ հատանել, թե ո՛չ՝ եղիցի անձն այն[×] մեռեալ, և ժանտ ախտիւ սատակեսցի գումարտակդ: Եւ ահաբեկ երկիւղիւ ի բաց կացաք յայնմանէ»: Նա և զայլ հիացականսն որ ըստ այսոցիկ ուացիս ի նորին գրոց. և յետ սակաւու միոյ ասէր, «բազում անգամ աղաչեցին զիս բարեկամքն դառնալ, և ես ոչ կամեցայ, քանզի կամէի տեսա-

---

[58] ×) Ա $(^{1}/_{1-2})$՝ թերևս այն իցէ լինել երկիր:
[59] ×) Ա $(^{1}/_{11-12})$՝ եղիցն անձնն այն. ուղղ.՝ եղիցի անձայն (Նախն. 408):

նել զկատարած երկրի. և անդուստ խաղացեալք ընդ անա-
պատ ճանապարհ գնացաք ի ծովակողմն կոյս, և ոչ ևս այ-
նուհետև ինչ ոչ տեսանէաք, ոչ հաւ և ոչ գազան, բայց զեր-
կին և զերկիր: Եւ զարեգակն ևս ոչ տեսանէաք, այլ ընդ ա-
ղօտ օդ յաւուրս Ժ, և եկեալ ի տեղի մի ծովային և զվրանսն
և զբանակն զամենայն ի ներքս եդեալ մտանէաք ի նաւսն,
և նաւէաք ի կղզի մի ծովուն, [60] որ ոչ էր հեռի յերկրէ յոր-
մէ լսէաք խօսս մարդկան հելլենական, և որք խօսէինն ոչ
տեսանէաք: Եւ զինուորք ի մահու վտանգ տուեալ զանձինս՝
ի ղոյղս անցանել ի նաւէն ի կղզին. և խեցգետի մի ել, կոր-
զեալ ձգեաց ի ջուրն զինուորս ԾԴ: Եւ անցեալ գնացաք ի
տեղեացն երկուցեալք, և եկաք յերկուս աւուրս ի տեղիսն,
ուր արեգակն ոչ ծագէ. և կամեցեալ իմ պատմել և ձեռնար-
կել տեսանել ի ձեռն ծառայից, ուր էր երջանկացն վայր,
Կաղղիսթենէս, իմ բարեկամ, խրատ ետ ինձ մտանել
հանդերձ բարեկամօք Խ, և մանկամբք Ձ, և զինուորօք ՌՄ
միայնովք: Եւ արտաքոյ յետ ճանապարհին իմացաք էշ մա-
տակ, որ ունի յաւանակ. զորոյ կապեցաք անդէն զյաւա-
նակն ի բանակին. և ի մտանելն մերում լարօք հնգետասան՝
հաւք երկու պատահեցին մեզ, որ ունէին մարդկեղէն երեսս,
և մեծ էին քան զհաւսն որ առ մեզ լինին, և հելլենական
խօսիւք ի բարձանց [61] աղաղակեցին, «զի՞ զվայր կոխես
զաստուծոյ զտուն տեսանել, Աղէքսանդրէ. ընդ կրունկն
դարձիր, թշուառական, քանզի զերջանիկ կամարարացն
կղզիս կոխել ոչ կարես. զի՞ յերկինս ելանել բռնանաս»: Եւ
իբրև լուայ զայս[xx] դողդոջումն և սարսափումն զիս կալեալ
յահէ յերկիւղէն եղելոյ. ի հարկէ լուայ աստուածայնոյ սքան-
չելի ձայնին որ ի հաւուցն ասացեալ եղև»[24]: Եւ դիպո-
ղագոյնս է առ այս հրեշտակս զայնս ասել. քանզի բանա-
կանն յերիս յայտսիկ տեսանի, ի հրեշտակս, ի մարդիկ և ի
դևս. այլ ոչ ի հաւս կամ ի յայլ կենդանիս:

Իսկ սահմանք վայրիցն ահաւորք և զգալիք միանգա-

---

[61] ××) Յայլ օր.՝ չիք՝ և իբրև լուայ զայս:

մայն և արտաքոյ զգալեաց· ի խնամոտ և ի զգուշացուցիչ աներևութականացն պահպանեալ ըստ օրինակի ցանկոյ ամբագունի, որ ունիցի արմատս ինչ ինքնաբոյսս և սակաւախնամս, որ արտաքոյ պարսպեալ բուրաստանին արքունի կացցէ[25]: Այսպիսիք իմն ինձ թուեցեալ համարեցան այնոքիկ վայրք· այլոց որպէս կամք իցեն: Եւ մեք զայլս ի բանիցն առասպելականաց [62] և որ անպատճառ սոյն է ասացեալ ըստ նոցայցն արժանաբանութեանց առ ի յեղծումն առցուք· զոր աւանդեցին խաւարայած արևելականքն, Զրադաշտ և Մանիթոպ իւրեանց հաւանելոցն, որք ասեն զՀեփեստեայ գողանալ զհուրն յաստուածոյն, մասն ինչ մարդկան շնորհել և զյոլովն ինքեան ունել, և զՀեփեստես[x] ասեն կաղ յերկոցունց ոտիցն, և կայծակնավարս ունի ի ձեռնն աքցանս և կռանս, և նստեալ դարբնէ մարդկան: Արդ եթէ զկէսն Որմզդի գողացաւ կաղն, և նա ոչ գիտաց, զի՞րդ իցէ աստուած կիսատուրն և ի կաղէն գողացեալն: Դարձեալ զի երկրպագէ հրոյ, և արեգական, որ է Հեփեստոս[x], մասն աստուծոյ ասելով, զի՞րդ իցէ, զի գողն և ապիկարն իբրև զաստուած երկրպագիցի: Այլ և զհուրն զի՞րդ մասն աստուծոյ ոչ ամաչեն ասել, որ ի բախմանէ քարի և երկաթոյ կայծակունք արտաթափին, այլ և ի փայտից ընդ միմեանս յիրար շփելոյ[26], որպէս և անուոյ բնաւորեցաւ լինել, որ ի սաստիկ շրջագայութենէ [63] սայլիցն բազում անգամ և առեղք փայտիցն վառմամբ հրոյ հրդեհին: Նա և ջուր մաքուր յապակի զուտ և վճիտ արկեալ, ի տապ արեգականն դնելով, և զնիւթ հրոյն առ ընթեր՝ ի շողոյ անտի արևակէզ եղեալ տոչորի նիւթն: Եւ արդ զի այսոքիկ այսպէս իցեն՝ ո՛րպիսի ինչ առ մոխրապաշտսն առ այնս իմանալի է, «որոց դատաստանն ի բնէ ոչ դատարկանայ»[x] ըստ գրեցելումն, «և կորուստ նոցա ոչ նիրհեսցէ»[27]: Եւ թերևս զանգիտութեան ոք ունիցի ասել զպատճառ. այլ աստուածայինն Պօղոս

---

[62] x) Ա (Ա/15)՝ զՀեպեստոս:

[63] x) Այլ օր.՝ ի բնէ անտի ոչ դատարկանայ:

ճշմարտագոյնս զայսոսիկ յատնէ ասելով՝ «ծանեան զԱստուած, և ոչ իբր զԱստուած փառաւորեցին կամ գոհացան. այլ նանրացան ի խորհուրդս իւրեանց, և խաւարեցան անմտութեամբ սիրտք նոցա. զանձինս առ իմաստունս ունէին յիմարեցան. և փոխեցին զփառս անեղծին Աստուծոյ ի նմանութիւն գոյից եղծանելեացս»[28]: Եւ զյաճախութիւն ամբաստանութեանն ունի բողոք, թէ նախ զբնութեան օրէնս անարգեալ, և յերեսացն Աստուծոյ անկեալք եղեն: Ուստի պարտ [64] իսկ էր նախ զանձանց և եթ գիտել, և ապա յերևելեացս աստի զճարտարապետն սոցա իմանալ. «զի աներևոյթքն աստուածայինք յարարածոց աստի, ասէ, իմացեալ տեսանին, այսինքն մշտնջենաւորութիւն և զօրութիւն և աստուածութիւն նորա, զի ոչ գտանիցին ամենևին տալ պատասխանի»[29]: Եւ թէ ո՞րպէս գիտելի զայս. և արտաքնոցն ուշիմագոյնքն ասեն, եթէ, ամենայն մարմին շարժուն՝ յայլմէ բնաւորեցաւ շարժիլ. քանզի ոչ եթէ մարմին ինքնաշարժ է, այլ հոգին է ինքնաշարժ. արդ տեսանեմք զերկնային մարմինն, զի կարգաւորաբար անդադար շարժութիւն ունի, այսինքն արեգակն և լուսինն և աստեղք և այլք նոյնպիսիք. և յայտ է թէ յայլմէ շարժի. և եթէ յայլմէ՝ ապա ուրեմն է՛ ոմն, որ շարժէ զերկնային մարմինն: Եւ վասն զի մի և նոյն շարժումն է երկնի՝ յայտ է եթէ ի միոջէ ումեմնէ է և ոչ ի բազմաց. զի թէ ի բազմաց էր՝ այլայլակ և չփոթեալ լինէր ի բազմաց շարժումնն և ոչ կարգաւ[65]որաբար: Եւ վասն զի մշտաշարժ է երկինն ՝ յայտ է եթէ որ շարժէն զնա՝ անբաւ զօրութիւն ունի. զի թէ բովանդակ զօրութիւն ունէր՝ ոչ հանդուրժէր անդադար շարժել զերկնային մարմինն. ուստի յայտ է թէ և անմարմին է, զի մարմինն՝ բովանդակեալ զօրութիւն ունի, և ոչ կարէ հանապազ շարժել զերկին կարգաւորաբար. և յայսմանէ յայտ է թէ անեղ է. զի եղեալն՝ ի նիւթոյ և ի տեսակէ է, որ ի նիւթոյ է՝ ոչ է անմարմին, և ոչ անբաւ զօրութիւն ունի: Իսկ նա անեղ է և անբաւ, և ոչ յումեքէ եղեալ. և որ անեղ՝ նոյն և անապական և որ անապական՝ նոյն և մշտնջենաւոր. իսկ մշտնջենաւորն՝ է անսկիզբն և անվախճան: Ապա ուրեմն յայտ է ըստ կարգի

*ատացելոցս, եթէ որ չարժէ զերկնային մարմինն՝ մի է և անբաւ զօրութիւն ունի և անմարմին է և աննեղ է և անապական[x], և ինքն ոչ յումեքէ, և այլք ամենեքեան նովաւ. իսկ այսոքիկ ոչ այլ ումեք արարածոցս պատշաճին, բայց մի[66]-այն միոյ Աստուծոյ, և Նա է Արարիչ: Եւ այսոքիկ իմաստնագոյն գիւտք. իսկ մեք ստուածեղէն գրոց Հետևեալք՝ ոչ յօտարաց աստի Հաստատեմք զճշմարտութիւն, օ՛ն անդր. այլ ըստ օրինակի ասացելումն ի Տեառնէ Մովսէսիւ՝ առ ի յանդիմանութիւն արտաքնոցն՝ «զճարպ մեռելոտւոյ տանել ի գործ ինչ արտաքին, այլ ոչ թէ ի կերակուր»[30]:*

(Դ)

## ԵԹԷ ՈՐՊԷՍ ԿԱՐԳ ԸՍՏ ԿԱՐԳԻ ԵԿԱՑ ԹԱԳԱՒՈՐՈՒԹԻՒՆՆ ԱՍՈՐԵՍՏԱՆԵԱՑՑ ՄԻՆՉԵՒ Ի ԿԻՒՐՈՍ ՊԱՐՍԻԿ:

*Բնաբանաբար իսկ Հետևեալ մեր կարգի ազգաբանութեանս որ վասն առաջի կացելոցս մեզ փութոյ Ասորեստանեայց թագաւորութեանն, զոր պայազատեաց առաջին Զամեսոս, որ և Նինուաս, որդի Նինեայ և Շամիրամայ, ի ԾԳ ամի կենաց Աբրահամու Նահապետի, տիրեալ ամենայն Ասիաստանի և Հայոց: Որ և յետ մահուանն Զրադաշտին դարձեալ միապետեաց ամենայն արևելեաց Պարսից ի Հարկի Հնազանդութեան ունելով, խաղաղասէր կենօք ամս ԼԸ[1]. և յետ նորա Արիաս որդի իւր որ և չորրորդ ի Նինեայ՝ [67] ամս Լ[2]. այլ և ամենայն թագաւորք Ասորեստանեայց որդի ի Հօրէ առեալ զիշխանութիւն ունէին, ոչինչ արժանի յիշատակի ուրուք գործեալ, և ոչ ոք ի նոցանէ նուազագոյն քան Զ-ի ամ կալաւ զիշխանութիւն. զի անպատերազմասէր և խաղաղասէր բարք նոցա յամուր զգուշութեան պահէր զնոսա. քանզի ի ներքս նստելոյ յարքունիս՝ ոչ ոք տեսանէր զնոսա, բայց թէ Հարճք և արք կանացիք[3]: Եւ արդ են[x] մի ըստ միոջէ թագաւորք Ասորեստանեայց այսոքիկ, զորոց*

---

*[67] x) Յամենայն օր.՝ արդէն: xx) Ա ($^{2}/_{9-10}$)՝ Ներոտայ:*

զանուանս և զժամանակս գլխաւորելով նշանակեցից փոքր ինչ որ և առ նոքիմբք եղեն:

Նինոս որդի Արբէելայ ի ցեղէն Քամայ ամս ԾԲ. սա վերստին կանգնեաց զթագաւորութիւնն Նեբրովդայ[xx], որ ասաց զինքն Բէլ: Շամիրամ կին նորա ամս ԽԲ. սա ելեալ ի Հայս պատերազմաւ արար ընդ իւրով ձեռամբ. սա դարձեալ միապետեաց զՊարսս. յերրորդ ամին եղև որդի աւետեաց Աբրահամու Իսահակ. ի վերջին ամի սորա Եսաւ և Յակոբ, որ կոչին երկու [68] նահապետք[4]. <Քսերքսէս Բաղէոս՝ ամս Լ>. ի վերջին ամի սորա տիրեն Եգիպտացւոց հովիւքն <ամս ԾԳ>[5]:

Ի սորա ԻԵ ամին Թէսաղացւոց առաջին թագաւորեաց Բէղղոքոս[6] ամս ԼԵ. ի սորա ԼԳ ամին[x] համբաւեալ ջրհեղեղն Ովդէգայ: Բաղէոս ամս ԾԲ. ի սորա ԽԳ ամին վախճանեալ Յակոբ մարգարէանայ վասն հեթանոսաց կոչմանն[xx][7]: Ագտադաս, ամս ԼԲ. առ սովաւ Պրոմիթէս այր իմաստուն երևեցաւ[8]: Մամիղոս ամս Լ. ի ԺԴ ամի սորա վախճանի Յովսէփ[9]: Մաքաղիս ամս Լ. առ սովաւ Ատղաս[xxx] աստեղագէտ երևեցաւ[10]: Զփերոս[xxxx], ամս Ի. ի սորա ԺԸ ամին ծնանի Մովսէս մարգարէ[11]: Մամիղոս միւս՝ ամս Լ. առ սովաւ այլ թագաւոր եկաց ի Թեսաղեայ[12]: Սպարեթոս ամս Խ. ի սորա Ժ ամին գնացեալ Մովսէս յԵգիպտոսէ առաքինանայր յանապատին[13]: Ասկատադէս ամս Խ. ի սորա Ը ամին եղև Մովսէս առաջնորդ և օրինադիր Հրէից[14]: Ամինտէս ամս ԽԵ. ի սորա Ը ամին Մովսէս մարգարէ վախճանի[15]: [69]

Լինի յԱդամայ մինչև յամս այս ՎՁԼ, ըստ Եւթանասնիցն թարգմանութեանն:

Բէղոքոս ամս ԻԵ. առ սովաւ այլ բազում թագաւորք կացին ի տեղիս տեղիս[16]: Բաղեպարէս ամս Լ. առ սովաւ և Արգիացոց թագաւոր Նստաւ: Ղամբրիդէս ամս ԼԲ. առ սովաւ Պիգասոսն երևեցաւ, զոր համբաւեն, թէ ձի թևաւոր էր[17]:

---

[68] x) Ա ($^{1}/_{8-9}$)՝ ի սորա ԼԳ ամին: II (33)՝ ի սորա ԼԾ ամին: III (56) չիք՝ ամին:

*զանուանս և զժամանակս գլխաւորելով նշանակեցից փոքր ինչ որ և առ նոքիմբք եղեն:*

*Նինոս որդի Արբէելայ ի ցեղէն Քամայ ամս* ԾԲ. *սա վերստին կանգնեաց զթագաւորութիւնն Նեբրովթայ*[xx], *որ ասաց զինքն Բէլ: Շամիրամ կին նորա ամս* ԽԲ. *սա ելեալ ի Հայս պատերազմաւ արար ընդ իւրով ձեռամբ. սա դարձեալ միապետեաց զՊարսս. յերրորդ ամին եղև որդի աւետեաց Աբրահամու Իսահակ. ի վերջին ամի սորա Եսաւ և Յակոբ, որ կոչին երկու [68] նահապետք*[4]. <*Քսերքսէս Բաղէոս՝ ամս Լ*>. *ի վերջին ամի սորա տիրեն Եգիպտացւոց Հովիւքն* <*ամս ԾԳ*>[5]:

*Ի սորա* ԻԵ *ամին Թէսաղացւոց առաջին թագաւորեաց Բէղղոքոս*[6] *ամս* ԼԵ. *ի սորա* ԼԳ *ամին*[x] *համբաւեալ ջրհեղեղն Ովդէգայ: Բաղէոս ամս* ԾԲ. *ի սորա* ԽԳ *ամին վախճանեալ Յակոբ մարգարէանայ վասն հեթանոսաց կոչմանն*[xx7]: *Ագտադաս, ամս* ԼԲ. *առ սովաւ Պրոմիթէս այր իմաստուն երևեցաւ*[8]: *Մամիզոս ամս* Լ. *ի* ԺԴ *ամի սորա վախճանի Յովսէփ*[9]: *Մաքաղիս ամս* Լ. *առ սովաւ Ատղաս*[xxx] *աստեղագէտ երևեցաւ*[10]: *Զիփերոս*[xxxx], *ամս* Ի. *ի սորա* ԺԸ *ամին ծնանի Մովսէս մարգարէ*[11]: *Մամիզոս միւս՝ ամս* Լ. *առ սովաւ այլ թագաւոր եկաց ի Թեսաղեայ*[12]: *Սպարեթոս ամս* Խ. *ի սորա* Ժ *ամին գնացեալ Մովսէս յԵգիպտոսէ առաքինանայր յանապատին*[13]: *Ասկատադէս ամս* Խ. *ի սորա* Ը *ամին եղև Մովսէս առաջնորդ և օրինադիր Հրէից*[14]: *Ամինտէս ամս* ԽԵ. *ի սորա* Ը *ամին Մովսէս մարգարէ վախճանի*[15]: [69]

*Լինի յԱդամայ մինչև յամս այս* ՎՋԼ, *ըստ Եւթանասնիցն թարգմանութեանն:*

*Բէղոքոս ամս* ԻԵ. *առ սովաւ այլ բազում թագաւորք կացին ի տեղիս տեղիս*[16]: *Բաղեպարէս ամս* Լ. *առ սովաւ և Արգիացոց թագաւոր նստաւ: Ղամբրիդէս ամս* ԼԲ. *առ սովաւ Պիգասոսն երևեցաւ, զոր համբաւեն, թէ ձի թևաւոր էր*[17]:

---

*[68] x) Ա ($^{1}/_{8-9}$)՝ ի սորա ԼԳ ամին: II (33)՝ ի սորա ԼԾ ամին: III (56) չիք՝ ամին:*

*Ջովսարէս ամս Ի. առ սովաւ Դիոնեսեայ զօրաժողովն ի վերայ Հնդկաց[18]: Ղամպերէս ամս Լ. առ սովաւ թագաւորք բազումք կացին ի տեղիս տեղիս[19]: Պաննիաս ամս ԽԵ. առ սովաւ Տիւրոս քաղաք շինեցաւ[20]: Սովսարմոս ամս ԺԵ. ի սորա Ը ամին Հերակղեայ նահատակութիւնքն եղեն[21]: Միթրէոս ամս ԻԷ[22]: Մաւտանէս ամս ԼԱ. ի սորա ԻԵ ամին առաւ Ելիոն քաղաք ի յԱթենացւոց անտի, և Սամփսոնի եղեն իրքն առ սովաւ[23]: Տևտեսայ ամս Խ[24]: Ոթինևս ամս Լ[25]: Դերկիւղոս ամս <Խ> առ այսու ժամանակաւ Դաւիթ թագաւորեաց յԵրուսաղէմ. և թագաւորութիւնն Ասորեստ[70]անեայց նուաղեալ՝ բռնակալք ոմանք կացին ի նոցանէ ի կողմանս Դամասկոսի[26]: Ղաւոսթենէս ամս ԽԵ[27]: Պերիտիադէս ամս Լ[28]: Ափրատէս ամս Խ[29]: Ափրատանէս ամս Ծ[30]: Ակրապաղէս ամս ԽԲ[31]: Թոնոսս Կոնկողեռոս[x], որ կոչի յունարէն Սարդանապաղոս՝ ամս Խ[32]. սա անառակութեամբ գեղծ և ապական յիրս թագաւորութեանն եղեալ, որով տաղտկացեալ ի նմանէ բազմութիւն զօրացն՝ արարին լինել նմա պատերազմակուր ի Վարբակայ և ի Բէզոսէ[xx] Մարաց զօրագլխէ, մինչև անձամբ անձին արարեալ ի հուր սատակի[33]:*

*Եւ են ժամանակք թագաւորութեանն Ասորեստանեայց ի Բէլայ և Նինեայ ամք ՌՅ[34]. և Վարբակայ Մարի բարձեալ գիշխանութիւնն Ասորեստանեայց՝ զՊարոյր Հայկազնեայ ապահարկէ[xxx] ի հարկաբարձութենէ և թագապատիւ իշխանութեամբ մեծարեալ՝ տայ զօր բազում յօգնականութիւն, և դարձեալ հաստատէ զթագաւորութիւն Հայոց և զԲէղէսիոս՝ իշխան Բաբ[71]ելոնի կացուցեալ, ինքն զարքունիսն յայնմ հետէ ի Մարս փոփոխէ, որ ձգեցաւ մինչև յամս ՄԾԹ և ըստ ոմանց այլ նախկին թագաւորս ասելով՝ յաւելուն ժամանակս ամաց ՄՂԸ ասել: Եւ առ այսոքիւք պատեհագոյնս իմն գտեալ իբրև յանիշխանութեան՝ ոմանք Ասորեստանեայք և Քաղդէացիք, յազգէ թագաւորացն որ յառաջագոյն՝ հա-*

---

[70] x) Ա ($^{1}/_{10\text{-}11ա}$)՝ Կոնկոռեղիոս: xx) Ա ($^{1}/_{1ա}$)՝ Բեղիոսոսէ: xxx) Ա ($^{2}/_{10ա}$)՝ ապա ի հարկէ:

տուածեալք ի կողմանս Դամասկոսի և Նինուէի, զօր բազում գումարեալ՝ յետ ԻԸ ամի անիշխանութեան Ասորեստանեայց ի ձեռն Փուայ թագաւորեցելոյ դարձեալ տիրեն Բաբելոնի և ստորին Ասորւոց, որ կոչի Խուժաստան, Նորոգեն և զառաջին արքունիսն լքեալս ի Բէլայ, որ է տուն Աստրովայ. և բռնութեամբ Մարապարսացւոցն ոչ կարացեալ ընդդիմանալ՝ ի կողմանս Պաղեստինացւոց ելեալ պատերազմաւ պաշարեն զՍամարիա, և զի թագաւորութիւնն եբրայեցւոց յերկուս հակառակս բաժանեալ էր՝ Հնազանդ իւր արարեալ Փուայ Ասորեստանւոյ առնու հարկս [72] ի Մանասէէ արքայէ հազար տաղանդ արծաթոյ[35]: Եւ յայնմհետէ վտանգի Իսրայէլ յԱսորեստանեայց: Եւ յետ նորա[36] թագաւորէ Ասորեստանեայց Թագղաթփաղասար. սա ել ի վերայ Հրէաստանի և զմեծ մասն ժողովրդեանն գերեաց յԱսորեստան: <Յետ նորա թագաւորեաց> Սաղմանասար. սա իսպառ գերեաց զտասն <ցեղսն հրէից ազգին խաղա> ցուցանելով ի լերինս Մարաց և եբարձ զթագաւորութիւնն <ի Սամարիա> որ և տևեաց ամս ՄԾ[37]: Յետ նորա թագաւորէ եղբայր Սենեքերիմա <եւ յետ տիրելոյ Ակիսեայ բաբեղացւոց, մինչ չեւ եւս զերեսուն օր կալեալ էր իշխանութիւն փութ>ապէս մեռանի ի Մարութաքբաղդան, իբրև <Մարուդակ Բաղդան բռնացեալ> ունէր զվեց ամիս, սպանաւ և նա ի միջէ ումեմնէ, որում անուն էր Ներեղիբդ և թագաւոր էր. և յերրորդ ամի թագաւորութեան նորա, Սենեքերիմոս զօր գումարէր[x] ի վերայ նորա[38], և ձերբակալ արարեալ զնա հանդերձ իւրով բարեկամօքն՝ Բաբելոնի կացուցանէր թագաւոր զորդի իւր զԱսորդանիս, և ինքն գնացեալ ի Միջագետս՝ Հնազանդեցուց[73]անէր ինքեան քաջութեամբ զՇմաթ և զԱրբաթ և զամենայն կողմանս Դամասկոսի և Կիւլիկեայ և զայլ բազումս: Եւ յետ այսոցիկ ել ի վերայ երկրին Պաղեստինացւոց և Երուսաղէմի՝ պաշարել զնա. և հրամանէ Աս-

---

[72] x) Ա ($^{2}/_{12-13}$), III (60)՝ զաւր գումար էր. I (36), II (35) զաւրս բազումս գումարէր:

տուծոյ սատակեցան զօրք նորա. և նա դարձաւ ի Նինուէ. և նենգ գործեալ նմա, վասն նախանձու թագաւորեցելոյ Ասորդանի, երկու ևս որդիք նորա Ադրամելէք և Սանասար՝ սպանին զնա սրով, որ թագաւորեաց ամս ԺԸ, և ինքեանք գնացին յարևելս հիւսիսոյ որպէս ասացաւ ի վեր անդ:

Արդ են թագաւորք Ասորեստանեայց ի միւսմէ կողմանէն այսոքիկ. անիշխանութեան ամք ԻԸ: Փուա ամս ԺԲ: Թագղաթփաղասար ամս ԻԷ: Սաղմանասար ամս ԺԵ: Ներեղիբոս ամս Դ: Սենեքերիմոս ամս ԺԸ: Որդին ամս Ը: Սամոգէս ամս ԻԱ: Նորին եղբայրն ամս ԻԱ: Նաբուպաղասարոս ամս Ի: Նաբուգոդոնոսոր ամս ԽԳ: Ամիղմարուդաքոս ամս Բ: Ներիգղիսարոս ամս Դ: Նաբունիդոս ամս ԺԵ: [74] Այլ սա ի վեց ամին լքեալ ի Կիւրոսէ, և ատանդեալ[x] կենօք շրջէր մինչև իսպառ բարձաւ թագաւորութիւնն Ասորեստանեայց և Մարաց ի Կիւրոսէ որ թագաւոր <էր Բաբելոնի ամս Թ>[39]:

(Ե)

[98] Պատերազմ յուզեալ Աշդահակայ Մարաց թագաւորի ընդ մեծին Տիգրանա Հայկազնոյ, որպէս ցուցանեն մեզ առաջինքն ի պատմագրացն[1]. և այրուձի կազմեալ՝ գալ մտանել յաշխարհս Հայոց, առնել որպէս նիւթեաց զչարիսն: Ազդ եղև մեծին Տիգրանայ պատրաստ պնդութիւն Աշդահակա. և ժողովեալ ազգք ազգք յընտրելոց զօրաւորաց արանց քաջամարտկաց, զզօրս Կապուդկացւոց, զՎրաց և զԱղուանից և զԱյրարատեան գազանամարտիկ զանճոռնի զօրսն[2] և զբոլոր բովանդակեալ գունդս զօրացն և զորդիսն Սենեքերիմայ, ամենայարդար պատրաստութեամբ անհուն բազմութեամբ, աճապարել երագել անյապաղ լինել նախ քան զԱշդահակայ դիմեցումն, զի մի քաջասրտագոյն կարծիցի Մարն քան զՀայկազնեայն: Եւ վազս առեալ փութացան[x] մտին ընդ կողմն Մականայ, բանակեցան ի դաշտավայրին Մեդիացւոց, և անդ ոչ սակաւ վտանգ հասանէր Աշդահա-

[74] x) Ա ($^1/_3$)՝ աստ անկեալ. ուղղ. ատանդեալ (Նախն. 47):
[98] x) Այլ օր. չիք՝ փութացան:

կայ վասն հասանելոյ ի վերայ նորա Տիգրանայ զօրու[99] ծանու[3]: Նա և բազմախոհեմն Կիւրոս Պարսիկ խաղայ գայ իւրովք հեծելազօր մարտակցովքն՝ գալ օգնել Տիգրանայ. քանզի էին բարեկամացեալ ընդ միմեանս Կիւրոս և Տիգրան և յամենայնի համանմանքն, համակամքն, միաւիրտքն, քաջախոհեմքն և բազմադրուատքն[4]: Բայց մինչդեռ չև առ միմեանս հասեալ Տիգրան և Կիւրոս՝ յղէ Աշդահակ պատարագս Կիւրոսի և խոստանայ տալ նմա զտէրութիւնն զչորրորդ մասն Սենեքերիմանցն զկողմամբքն Նինուէի և զՏմորիս ամրոցաւն որ ի նմա, և զայս ոչ միանգամ, այլ յոլովակի՝ մի զմիոյ կնի ընթացուցանէր դեսպանս հրովարտակօք և պատարագօք: Զայս իմացեալ խորհրդականութիւն Քսերքսէս[5] յԱդրամելեայ և Սանասարայ յորդւոցն Սենեքերիմայ՝ ապա գան առ Տիգրան Հայոց թագաւոր և զեկուցանեն նմա վասն որոյ խորհի Աշդահակ. քանզի որդիքն Սենեքերիմայ մեծաւ ցասմամբ և անզրաւ հաշտմամբ[6] ընդ Աշդահակայն լինէին, յաղագս զոլ զնա սերունդ Վարբակ[100]այ Մարի, որ եբարձ զթագաւորութիւնն ի Սարդանապաղեայ, հաւուցն Սենեքերիմանց[7]:

Յայնժամ առեալ հրովարտակ Սանասարեանց ի Տիգրանայ՝ պատարագօք գնացին առ Կիւրոս. և առեալ զնա գան առ Տիգրան, և անյապաղ փութով զգործ պատերազմին վճարեալ, քաջք ընդ քաջս ելեալ[8]. յետուստ կողմանէ աճապարեալ Քսերքսէս բուռն հարեալ զդիակաց պղնձակուռ վարապանին Աշդահակայ ի վերայ թիկանցն զգաւակաւ երիվարին արկեալ, և Տիգրան առ երագութեան ձեռինն հարեալ նիզակաւ ընդ սրտադուրսն՝ ի բաց կորզէր զթոքակէսն. և Կիւրոսի զհետ մտեալ զօրուն՝ ոչ սակաւ սատակմունս առնէր, մինչև միահաղոյն զօրսն Աշդահակայ վատնեալ[x] սուսերաւ՝ տիրէ Մարաց և Պարսից[9]:

Բայց երկուք ոմանք ի զաւակէ Աշդահակայ ձերբակալ արարեալ Տիգրանայ առեալ ածէ ի Հայս. և կացուցեալ զնոսա ի կարգի ստրկութեան, որոյ զփոյթ հպատակութեան

---

[100] x) Այլ օր.՝ վանեալ:

[101] ցուցեալ՝ կարգէ զնոսա ի գործ ծառայութեան, կրել արծուխս և բազէս[10]. և ի գինարբուսն ի տեղի մատռուակութեան յառաջացուցեալ՝ ի գահ նախարարութեան ձգեալ կացուցանէ, և բնակեցուցանէ զնոսա ի գաւառն Աղբագ, յետ բնակեցուցանելոյն զնոսա ի Զողախել, ի Վրնջունիս և ի Հախրամի[11], տեսեալ մինչև ի ժամանակս ինչ, քազնի յառաջագոյն տուեալ էր զնոսա ի ծառայութիւն քեռ իւրոյ Տիգրանուհեայ կնոջ Աժդահակայ, յասացեալ տեղիս բնակեցուցանելով[12]:

Զայս գործ լուեալ Լիդէացւոց Թագաւորին Կրոսիսայ բազմաշփոթ յուզմամբ ամբոխ արարեալ, զօրս բազումս գումարեալ[×], ելանել տալ պատերազմ ընդ Կիւրոսի, զորոյ զօրաժողով լինելն իմացեալ Կիւրոսի՝ գրէ առ Տիգրան՝ զօրս յօգնականութիւն առաքել նմա. զոր անյապաղ փութով զզօրսն Հարաւայինս և Հիւսիսայինս տալ ի ձեռս Քսերքսեայ և Արշէզայ[××] որդւոյ նորուն Քսերքսեայ զի փութով անդր հասցեն. որոց գնացեալ պատահեն նմա ի Դնբուինդ [102] Պարսից: Եւ յառաջեալ առաջոյ զօրուն Կիւրոսի՝ յարդարեն զգործ պատերազմին: Իբրև խռնեցան ի զօրագլուխ գունդ Լիդէացւոց նետաձգութեամբ ընդ միմեանս հարեալ, և յերկարեալ գործ պատերազմին հարուստ մի ժամ, հասանէ արքայն Կիւրոս և Քսերքսէս. և Արշէզայ շուրջ փակեալ վահանաւորօք զԼիդէացւոց թագաւորաւն, տագնապ մեծ լինէր. զի թագաւորն Լիդէացւոց ասպազինեալ զերիվարն շուրջանակի պղնձի արկանելեօք յոտից մինչ ի գլուխ[×] բովանդակ չթողեալ տեղի՝ անկռուելի լինել զինուի, նա և զիւրեաւ տախտակափակ լանջապահս, թիկնապահս, զանգապանս, սռնապանոս, գլխապանս, որ զրեթէ բովանդակ պղնձեղէնս զնա իմանալ թուէր, և զետեղեալ բլրաձև զօրու անմատչելի կարծելով. և զօրքն ախոյեանայարձակ զպատերազմն վառէին: Յայնժամ ձայն բարձեալ Քսերքսէս և Արշէզ լի իմաստութեամբ, որպէս թէ ի զօրացն Լիդէացւոց

[101] ×) Այլ օր.՝ զօրս գումարեալ:
××) Ա (2/5ն. և ամենուրեք)՝ Արշեշայ, Արշեշ:
[102] Այլ օր. չիք՝ ի գլուխ:

իցեն, ասեն՝ Հարան զօրքն Կիւրոսի, և փա[103]խեաւ արքայն: Նոքա առ լուրն խնդացեալ՝ լքին զամրացեալ գունդն՝ աճապարել զհետ Կիւրոսի, ել և ելս արարեալ զմիմեամբք, և թագաւորն Լիդէացւոց ճեմս առեալ երթայր զկնի զօրուն:

Նոյն ժամայն Քսերքսէս և Արշէզ վազս առել պատահեն Լիդէացւոյն. և ձերբակալ արարեալ մերկացուցանեն[x] ի զինէ և յասպազինէ և տանին կացուցանեն առաջի Կիւրոսի. զոր առեալ Կիւրոս դառնայ ի Խորասան. և անտի դարձեալ ի Բաբելոն, ընդ իւր տանելով զԼիդէացին. և զտունս գանձի նորա հրամայեաց ածել յաւարի. և տանջեալ զնա ջղօք՝ տայ նմա և զգանձ աներևոյթս, և ինքն մեռանի ի հրամանէ[xx] Կիւրոսի, բարձեալ զտէրութիւնն Լիդէացւոց[13]:

Իբրև աջողութիւն գործոյն գլխաւորեցաւ՝ եղև դառնալ Քսերքսեանց, առեալ ի պարգևի զՏմորիս ամրոցաւն և զգետափնեայսն[xxx] Նինուէի:

Իսկ իբրև միապետեցաւ թագաւորութիւն Պարսից Կիւրոսի՝ առնու զԲաբելոն և արձակէ զգերին Հրէից[14]: Ընդդէմ նորա զօրա[104]ժողով եղեալ տունն Գագայ[15] ազգն Գաղատացւոց, երկոտասան բիւրու՝ գրէ Կիւրոս առ Տիգրան վասն օգնականութեան մատուցանել նմա: Զի ազգ բարբարոս խուժադուժ ի դիմի ելեալ գան տալ պատերազմ, կորզել յինքեան զգերին Հրէից: Առ որ զբարեկամութիւնն ողջ[x] պահելով յղէ զնոյն Քսերքսէս և զԱրշէզ որդի նորուն քառասուն հազարաւ. գնացեալ պատահին նմա ի սպառուածս Տաւրոսական լերինն: Եւ երկայնագոյնս զպատաղմունսն ի ճանապարհին արարեալ՝ ձգին մինչ յԱրգն Աղձնեաց և անդ մարգարէն Եզր և թագաւորն Սաղաթիէլ վախճանեալ թաղի ի Մարբակատինա ի բլրակի մի տեղւոջ[16]. և տուեալ պատերազմ զաւուրս ոչ սակաւս, որպէս թէ ամսօրեայ մի ժամանակ, յորում ոչ սակաւ քաջութիւն նահատակութեան զօրացն Հայոց, որ ի զարմանս կրթեաց զբովանդակ զօրս Պարսից բարբարոսօքն հանդերձ: Եւ հարան զօրքն Գաղատաց-

---

[103] x) Ա (1/9)՝ մերկանան. այլ օր.՝ մերկացուցանեն: xx) Ա (2/6ա)՝ ի հոմոնէ: xxx) Ա (2/8ա)՝ զգերափնեայսն:

[104] x) Ա (1/2)՝ առողջ:

ւոց. ի մեծամեծաց մինչև ի փոքունս նոցա, և ոչ մնաց ի նոցանէ և ոչ մի: Եւ զորդիսն Իսրայէլի [105] առեալ գնացին յաշխարհն իւրեանց, և առաջնորդեաց նոցա Քսերքսէս և Արշէզ մինչ ի սուրբ քաղաքն յԵրուսաղէմ. և հաւատան զառաջնորդութիւնն Հրէից՝ Զօրաբաբէլի որդւոյ Սաղաթիէլի յազգէ Յուդայ: Եւ դարձան ուժեղ զօրութեամբ և մեծաւ յաղթութեամբ[17]:

Այս այն Գովգ և Մագովգ զոր յիշեն գիր մարգարէից, Ամովս և Եզակիէլ[18]:

(Զ)

## ՑԵՏ ԿԻՒՐՈՍԻ ԿԱՄԲԻՒՍԷՍ, ՇՄԵՐԳԻՍ ՄՈԳ, ԴԱՐԵՀ ՎՇՏԱՍՊԱ. Ի ՔՍԱՆԵՐՈՐԴԻ ԱՄԻ ԴԱՐԵՀԻ ՄԵՌԱՒ ՏԻԳՐԱՆ ՀԱՑԿԱԶՆԵԱՑ[1]:

Իսկ յետ այսց գործոց եղելոյ ի բառնալ թագաւորութեանն Հայկազնեայցն, ոմն այսպէս ոմն այնպէս չփոթաբար կեցեալ անիշխանութեամբ, ունելով զտեղիս տեղիս, տալով ձեռս յովպէտ և ժամագիւտ դիպուածք ումեք Հանդիպանայր, և որոց ոչ գործք ինչ և ոչ քաջութիւն ուրուք յայտ յանդիման ցուցանիւր. և ոչ մեք գրել զմտաւ ածել ջանացուք. բայց զանուանս միայն ըստ կարգի կանոնել բաւական համարեցաք, որպէս և այլոց առաջնոցն մատենագրացն յայս եկեալ ձև պատմագրութեան. բայց կանո[106]նեցի զանուանս ի մատենիս[2]:

| | |
|---|---|
| Տիգրան. | Պարսից թագաւորք. |
| Ադրամելէք. | Քսերքսէս. |
| Ներս. | Արտաշէս երկայնաձեռն. |
| Ներսէխ. | Դարէհ. |
| Մարող. | Արտաշէս. |
| Արշամ. | Ողոքոս. |
| Արշաւիր. | Զարսէս. |
| Ասուդ: | Դարէհ[3]: |

---

[106] ×) Ա (²/₈ₙ)՝ դիմացուածին. ուղղ.՝ դիմեցուածին (Նախն.):
××) Ա (¹⁰⁶·²/₁ₙ-¹⁰⁷·¹/ᵥ)՝ յասպարազինէ երիվարին:

Ապա Աղէքսանդրոս Փիլիպեայ Մակեդոնացի տիեզերակալ թագաւոր:

Զայսու ժամանակաւ թագաւորեալ Աղէքսանդր Մակեդովնացի տիեզերակալութեամբ երագահաս հասեալ ի վերայ Դարէհի սպանանել զնա. և բառնայ զթագաւորութիւնն Պարսից Արշաւրեան: Իսկ Ասուդ[4] զհետ Դարէհի ելեալ ի պատերազմ ընդդէմ զօրագլխացն Աղէքսանդրի՝ Հերակղեայ նահատակութեամբն դիւցազնաբար ի դիմի հարեալ՝ ի բաց նահանջէ զուժեղագոյնս զօրագլխացն Աղէքսանդրի հարուստ ժամ մի, մինչ հիացումն զօրօքն արկեալ՝ տային տեղի փախստէի. մինչ հանդէպ երեսանալ Աղէքսանդրու ի յանդուգն դիմեցուածին[x], և հայեցեալ ի դէմս Աղէքսանդրու իբր յաստուածոց դիւցազանց՝ զերեսս ի վայր արկեալ զերկիր նշմարէր, և շտապով փութանակի յասպազինէ երիվար[107]էն[xx] ի վայր արկեալ զինքն առաջի Աղէքսանդրի, առ ոչինչ համարեալ յահուռնաբար[x] գործսն զոր գործեաց՝ փութացաւ ետ ողջոյն արքայի և ասէ. «քաջք քաջաց պատահեալ՝ անմեղադրելիք կան մնան զյաւակնութեամբքն, զի մի վատութիւն քան զքաջութիւն ճոխասցի, որ կանանցաբարոյիցն քաջ յարմարի, թէպէտ և յարիւն և յապաժոյժ զզօրսն կենացն առնուցուն»[5]: Ընդ որ սքանչացեալ ընդ քաջասրտութիւնն և ընդ իմաստուն բանակարգութիւնն Պտղոմէի և Սելևկեայ զօրագլխացն Աղէքսանդրու՝ խնդրեցին պարգև ի թագաւորէն զԱսուդ. զի Աղէքսանդր թէպէտ և լի իմաստութեամբ և հանճարով առաւելանայր՝ սակայն գազանանայր ընդդիմակացաց հրոսաւղացն. և առեալ Պտղոմեայ զԱսուդ՝ տայ տանել յԵգիպտոս, ի պարգևեալ աշխարհն նմա յԱղէքսանդրէ, և կարգել նմա ռոճիկս առատապէս, մինչ ինքն պարապագոյն ժամու անդր հասանիցէ:

Իսկ զՎահանն[xx] Հայկազնեայ[6], որ էր նիզակակից Ասու-

---

[107] x) Ա ($^{1}/_{ա}$)՝ զյհոռնաբար:
xx) Ա ($^{2}/_{4ա}$)՝ զՎահանն: I (43), II (42), III (70)՝ զՎահագն:

դայ՝ կացուցանեն ի դրան արքունի, [108]յառաջանալ ի գործ պատերազմին մեծաւ աշխատութեամբ՝ կամ մեռանել ի սրոյ թշնամեաց դիպելոց, կամ յաղթել քաջասրտութեամբ: Եւ կացեալ ԺԲ[x] ամ Աղեքսանդրի մեռանի ի Բաբելոն, կեցեալ ամս ԼԳ, թագաւորեալ ամս ԺԲ[xx][7]: Համօրէն տիեզերակալեաց ամս է: Եւ ի մեռանելն իւրում Աղէքսանդրու հաստատագոյն աներկիւղութեամբ զթագաւորութիւնն իւր միապետեալ՝ կացուցանէ չորս զօրավարս չորեքծագեան կողմանց աշխարհի[8], զՊտղոմէոս Եգիպտոսի և Հնդկաց, զՍելևկոս Ասիացւոց և ամենայն հիւսականաց, զԱնդիպատրոս[9] Պարսից և ամենայն արևելից:

Իսկ Պտղոմէոս նենգութեամբ և հ(խ)աբկանօք[xxx] կալաւ զԵրուսաղէմ և զՀրէաստան, մինչև յամս ԺԲ: Եւ զբազումս ի նոցանէ իջուցեալ յԵգիպտոս բնակեցուցանէր[10]: Եւ ապա առնու զթագաւորութիւնն Ասորոց և Բաբելոնի և վերնոց կողմանցն Սելևկոս Նիկանոր[11], որ կոչի յաղթող: Պտղոմեայ հասեալ ի տէրութիւն ժառանգաւորութեանն՝ փոխանակ իւր [109] կացուցանէ զԱսուդ, տալով ի ձեռս նորա զբոլոր իշխանութիւն Եգիպտոսի և Հնդկաց, և ինքն հեռացեալ գնաց զկնի Աղէքսանդրի ի Բաբելոն, և անտի եկեալ յԵրուսաղէմ պագին անդ երկիր Աստուծոյ: Իսկ Ասուդ թէպէտ և այնպէս չքեղութեամբ ճոխանայր եգիպտական և հնդկային հարստութեամբն՝ այլ յիշելով զբուն իւր սեփական թագաւորութիւն Ասորեստանի՝ ոչ հաճոյանայր կեալ եգիպտացի գահակալութեամբն. և ցանկութիւն տենչանացն աճէր. գայր յանդիմանակաց Պտղոմէի: Այլ թէպէտ զայս ախորժելով լսէր Պտղոմէոս առ լաւութեան քաջութեան առնն՝ սակայն յայտնել ոչ զօրէր Աղէքսանդրի, զի ոչ ումեք զայդ յանձին կալաւ Աղէքսանդրոս՝ կարծել տիրել ումեք երկրի բաց յ-

[108] x) Ա ($^{1}/_{7-8}$)՝ կացեալ ԲԺ: xx) Ա ($^{1}/_{11}$)՝ ամս ԲԺ: xxx) Ա ($^{2}/_{7-8}$)՝ հարկանօք ուղղ. հ(խ)աբկանօք (Նախն. 45): Եւս. Կես.՝ խաբանօք (Քր. Բ, էջ 224):

Աղեքսանդրէ: Կեցեալ անդ ամս բազումս մեռանի յԵգիպտոս և կայ անդէն[12]:

Յետ մահուանն Աղեքսանդրի զօրավարաց կալեալ զՄակեդոնացւոց տէրութիւնն, բայց մնայ ի հարստութեան Պտղոմէականն միայն, մինչ տիրել Կղէոպատրեայ կնոջ [110] միոյ եգիպտացւոյ, որ յետ բազում ժամանակաց, մինչև յՕգոստոս կայսր[13]: Իսկ յետ Կ ամի անցանելոյ Աղեքսանդրի և անիշխանութեանն Հայոց և Պարսից՝ թագաւորէ Արշակ Քաջ Մարաց և Պարսից և Եգիպտացւոց և Ելիմացւոց ի Բախլ քաղաքի[14]. և Վաղարշակ եղբայր նորա եկեալ ի Հայս՝ լնու բարեկարգութեամբ զաղմկեալ և զշփոթեալ երկիրս Հայոց: Եւ նախարարութիւնս յօրինէ, յանուն և ի բարձ և ի գահ յառաջ մատուցեալ:

Իսկ սերունդք Ասուղայ Սանասարեանց կային յոր պէսս և դիպուածն պատահէր, երբեմն այսպէս և երբեմն այնպէս. Շաւարշ. Գօզեան. Շաւասպ. Պերոզ. Շահակ. Կիւրոս[15]:

Շահակս այս անուանէ զանուն որդւոյ իւրոյ՝ Կիւրոս, յիշելով զլաւութիւն առնն և զբարեկամանալն նախնոյն նորա Քսերքսեայ: Սոքա մերժեալք ի տէրութենէն իւրեանց, զոր ունեալ էր Տիգրանայ և Կիւրոսի՝ կէին անարգաբար[×] զինչ պիտակէն[××16] մինչ ի Կիւրոս Շահակեան:

Արշակ ունեալ պա[111]տերազմ ընդ Մակեդոնացիսն՝ և անդ Կիւրոս քաջապէս արիացեալ առաւելանայր ի գործ պատերազմին. գրէթէ անցուցանէր զանցուցանէր զքաջութեամբքն Արշակայ Պարթևի, ընդ քաջացն Քուշանաց, Մարաց և Ելիմացւոց. և առեալ զյաղթութեանն քաջանունութիւն, առաւել զհանճարեղութեանն խոհեմութիւն՝ յառաջանայր ի գահ, ի բարձ և ի պարգև զի հարցեալ լինէր, թէ ո՞վ ոք, և յորո՞յ, և յումմէ՞, և ե՞րբ, և առ որո՞վք: Իբրև ստուգեաց զազգն, զգաւառն, զաշխարհն, զպատճառ հաստուա-

---

[110] ×) III (72)՝ անկարգաբար: ××) Այլ օր.՝ պիտակեն:
[111] ×) Ա (Լ/ռ)՝ արծըռունգն:

ծին, զգետեղեն, զիարդն, զորպէսն, զեղանակն, զդիպուածն, զպատահն և զայլն ամենայն՝ խնդրէ զնա Վաղարշակ[17] յԱրշակայ և առնու ածէ զնա ընդ իւր ի Հայս[18], և անուանէ զնա Արծրունի, առաջին լինելով նորա ի դաշտավայրին Արծուիք կոչելոյ. դարձեալ ըստ պատահման և տարբերութեան՝ արծռունգն՝ կերպարանօք: Բայց ոչ գիտեմ, թէ յանուն աշխարհի՞ն թէ ըստ կերպարանին անուանեաց զնոսա Արծրունիս:

Երկրորդ վասն բնակու[112]թեան նախնեացն նորա Աղբամելեայ և Սանասարայ Արզն՝ կոչեցին Արզրունիք:

Երրորդ վասն արիութեան քաջութեանն, արծուաբար քաջասրտապէս խիզախութեանցն ի մարտս պատերազմացն՝ յարծուիս առակեցին զնոսա:

Բայց թէպէտ և երկոքին պատճառք անուանակոչութեանցն պատկանաբար վարկանելի է՝ որպէս իմաստասիրացն Հաճոյ թուի. այլ ինձ զառաջինն ախորժելի զհաւատարմութիւնն ի մէջ առնուլ[19]:

Յանգ հանեալ Պտղոմեանց զժամանակ թագաւորութեանցն, և հասեալ մինչ ի Կղէոպատրեայ, դուստր Պտղոմէի Դիոնիսի[20]. սա թագաւորեալ Եգիպտոսի և Աղէքսանդրի և բացեալ զտուն դիւանապահ մատենիցն և գտեալ զսերունդս Սենեքերիմայ, և զգործս նոցա զմիոյ միոյ ուրուք յականէ յանուանէ[×] զառն իւրաքանչիւր զանուն և զքաջութիւն իւր, նոյնպէս և զայլն ամենայն ըստ տոհմից տեղեաց, և զվատացն և զաննշանիցն նշանաւորեալ ըստ վատութեանցն և զգործս նոցա՝ և[113]ետ տանել զդիւանն մագաղաթեայ յունարէն գրով հանդերձ պատարագօք՝ Տիգրանայ թագաւորի Հայոց, որ չորրորդ կացեալ թագաւոր ի Վաղարշակէ Պարթևէ: Ցայս վայր զայս գրեալ Աղէքսանդրի՝ Մակեդոնացւոյ, ի Սենեքերիմայ յառաջ մինչև ի Պտղոմէոս եգիպտացի, զոր և նոքա Պտղոմեանքն կոչէին. զոր ընթերցասէրն Պտղոմէոս գրեալ և յարդարեալ ստուգաբանութեամբ, դնեն զգուշու-

---

[112] ×) Ա (ր/ց-10), I (46), II (44)՝ յականէ յանուանէ: III (74) չիք՝ յականէ:

թեամբ ի դիւանապահ տունս գանձուց մինչև ի Կղէոպատրա կին, որպէս վերագոյնն գրեցաք[21]: Իսկ առ մեզ հասին զրոյցքս այս ըստ մնացորդաց պատմագրացն առաջնոց, ի Մամբրէէ Վերծանողէ և ի նորուն եղբօրէ Մովսէս կոչեցելոյ, և միւսումն Թէոդորոս Քերթող, որք լեալ էին յաշակերտութենէ Ղևոնդ քահանայի, որ ի Պարսսն մարտիրոսացաւ ընդ այլ սուրբ եպիսկոպոսսն և քահանայսն: Սոքա հրամանաւ Վահանայ Արծրունւոյ փոյթ յանձին կալեալ՝ խուզել քննել կարգել ի համառօտ բանս զաճմու[114]նս ազգացն անցելոց ոչ կարի ինչ ընդ երկայնագոյնս աշխատասիրաբար անցանել պատմութիւնս[22]:

Զոր և մեր ըստ հրամանի քում, Գագիկ զօրավար Հայոց և Վասպուրական իշխան[23], ջան յանձին տարեալ ընդ համառօտութիւն զրուցատրութեանցն անցեալ, յառաջ խաղացուցից զբանսն, արագաքայլ արշաւանօք անցեալ գնացից ընդ շարագրածս անցնիւր պատմագրաց, զազգաբանութիւնն միայն ոճով դրոշմեցից ի շարի աստ, մինչև եկից հասից ի լայնանիստ ընդարձակ ասպարէզս մատենից պատմութեանցս՝ ոճով մի ըստ միոջէ շարեցից[×], կարգեցից, գրեցից զախորժելին քեզ:

Այս Վահանս զոր յիշեցաք[24] այն Վահան է, զոր թագաւորեցուցին նախարարք Հայոց յաւուրս որդոյն Վարդանայ՝ զոր յիւրում տեղւոջն կարգաբանութեան գրեցից[××] որ ինչ վասն սորա: Եւ մեք այժմ զկարգն յառաջ վարեսցուք. Կիւրոս. Վարգէն. Վահան. Շամբիթ. Զաջ. Զաջուռ[25]:

Արջամ թագաւորեալ Հայոց՝ զազգն [115] Բագրատունեաց արկանէ ընդ բազում տառապանօք, վասն արձակմանն Հիւրկանոս քահանայի ի կապանաց բանտին, և կալեալ զԵնիանոս[×] նահապետ Բագրատունեաց և սպարապետ Հայոց հանդերձ ընտանեօք և ամենայն ազգաբանութեամբ՝ արկանէ ընդ բազում չարչարանօք, և զոմանս ընդ սուր հա-

[114] ×) Ա (2/4-5)՝ շարժեցից: ××) Այլ օր.՝ յիշեցից և գրեցից:
[115] ×) Ա (1/6-7 և ամենուրեք)՝ զԵնիանոս:

*նեալ կամէր միախաղոյն զրաւ առնել ազգին Բագրատունեաց[26]:*

*Իսկ Ջաջուռ Արծրունի ձեռն ի գործ արարեալ՝ մատուցեալ առ Թագաւորն խնդրէ զԵնիանոս, զի էր կախեալ զփայտէ, և կատարեալ զխնդիրն իջուցանէ զԵնիանոս ի փայտէն, և զազգն նորա[xx] փրկեալ ապրեցուցանէ ի սրոյն խողխողմանէ. և ի նոյն պատիւ Թագաւորութեան կացուցանէ զԵնիանոս Բագրատունի: Եւ ոչ յանձին կալեալ Արջամայ վստահաբար առ իւր ունել զԵնիանոս՝ յղէ զնա ի Հայս: Զոր առեալ Ջաջուռ ահիւ[xxx] և ամենայն պատրաստ կազմութեամբ բնակեցուցանէ ի կողմն Արագածոյ, ի գիւղն Թալին կոչեցեալ. սա առաջին ի տանէն [116] Բագրատունեաց եկեալ կայ նա զայսու կողմամբ Այրարատեան նահանգի: Եւ առնու Ջաջուռ զդուստր Ենիանեայ կնութեան Սահակայ որդւոյ իւրոյ, որում անուն կոչէր Սմբատուհի: Այս առաջին խնամանալ եղև ընդ միմեանս Բագրատունեաց և Արծրունեաց[27]: Այս եղև յամի յութուտասաներորդի արքայի Պարսից[28]:*

*Եւ կեցեալ Արջամ ամս Ի վախճանի, և Թագաւորէ Աբգար որդի նորա[29]: Հասեալ ի տեղիս յայս ի պատմութիւն Աբգարու Թագաւորի Հայոց, յորոյ աւուրս Փրկչին մերոյ տեառն Յիսուսի Քրիստոսի Աստուծոյ մերոյ մարմնով յաշխարհի երևումն եղև, և սկիզբն լինել նորոգման արարածոց, և լուսաւոր առնել զամենայն մարդ, որ յաշխարհ գալոց է[30]. որ կարի սիրելի է ինձ, մանաւանդ Թէ յոլովից, կամ Թէ ամենայն հաւատացելոց ի Քրիստոս՝ յերկարագոյնս առնել ի ճառիս զդեգերումն չահատակութեան, ձեզ լսել և ինձ գրել:*

*Քանզի սա առաջին ի հեթանոսական Թագաւորաց սկիզբըն արար ի Քրիստոս հաւատ[117]ոց: Որպէս ցուցանեն յիշատակարանք հաւատարիմ պատմագրացն. մանաւանդ Թէ*

---

*xx) Այլ օր.՝ և ամենայն զազգն նորա: xxx) ահիւ: Այսպէս յօրինակին. Թերևս՝ կահիւ (I, 48, ծն. 2)*

*[117] x) Ա (2/4ն) չիք՝ ասեն.*

աւետարանիչն և առաքեալն Յօհաննէս, որդին որոտման, տիեզերաց հնչեցոյց զորոտումն աւետեաց Աւետարանին Քրիստոսի, որ ի նայն հաւատալոց էին: Քանզի ասէ, թէ «էին ոմանք յելելոց անտի հեթանոսաց, որք եկեալ էին յԵրուսաղէմ ի տօնն, զի երկիրպագանիցեն. որք և մատուցեալ առ Փիլիպպոս որ ի Բէթսայիդայն, ասեն[x] կամիմք զՅիսուս տեսանել»[31]. զորս յանդիման Փրկչին կացուցին զառաքեալսն հանդերձ թղթովք Աբգարու, և զխորհրդական պատասխանիսն լուեալ վասն փրկական խաչելութեանն որ վասն աշխարհի, զոր փառս իւր անուանեաց, գրելով և զպատասխանի թղթոյն ի ձեռն Թովմայի առաքելոյ, և զխոստաբանութիւն՝ զԹադէոս առաքեալ լնուլ զփափագումն խնդրոյն. և զանձկալից տեսութիւնն հրաշափառապէս և անճառաբար ի վարշամակի տպաւորեալ ելից զկարօտութիւնըն Աբգարու աղբիւրն կենաց Քրիստոս[32]:

Դարձեալ վերստին հրճուանօք ոռոգե[118]ալ լինի պատմութեան աստ սակս բարձրագահ, համաթոռ, ճոխազգի ազգապետութեանն Արծրունեացս, մեծ զարմի Սենեքերիմայ ծննդոց. որ ըստ անման և սերելոյ նախարարութեանց՝ եկեալ հասեալ զայս վայր ժամանակի[33] ի թագաւորել Աբգարու և հաւատալ ի Քրիստոս: Ընդ որում և մեծ իշխանն Արծրունեաց Խուրան[34] և գլխապետ զօրավար զօրու, և միահեծան թագաւորութեան Հայոց մեծաց, որ առաջին ի Քրիստոս հաւատացեալ եղև իշխանս Խուրան և մկրտեալ ի ձեռաց Թադէոսի առաքելոյ. որ յետ հաւատոցն որ ի Քրիստոս բազում ուղղութեամբ և երկիւղածութեամբ կրօնս ըստ արժանի հաւատոյն ցուցեալ, գրէթէ ի ծայրս առաքինութեան զաճումն հաւատոցն տարեալ հասուցեալ, որ ինչ յորդորումն աւետարանական վարժիցն ունին դաստիարակութեան ցոյցք: Եւ զայս առ այժմ բաւական համարեալ նշանակութիւն ցուցանել զլաւութիւն երանելի առնն Խուրանայ Արծրուն-

ւոյ, խոհեմագունիցն բաւականանալ առ բովա[119]նդակ իմացմունս: Եւ մեք զկարգ պատմութեանցս մասնաւորաբար և համառօտապէս յառաջ վարեսցուք, զի ոչ է ժամ մեզ զներբողականօքն զդեգերումն առնել, զպատմողական զրուցատրութեան կարգաւն զանց առնել[35]:

Հերովդէս այլազգի որդի Անդիպատրեայ Ասկաղոնացոյ և մօր Եւպատրեայ Արաբացոյ, թագաւոր Հրէից, յաւուրս ծննդեան տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի[36]: Որպէս Յովսեպոս մեզ զրուցաբանէ և զինչ գործեաց ընդ մանկունսն[37]: Սորա որդիք հինգ ծնանի, յորոց մինն Հերովդէս և միւսն Փիլիպպոս, զորոյ կինն հանեալ Հերովդէի՝ թող զկինն իւր զառաջին, զդուստր Արէտայ արքայի Պատրէացւոց. առ որ[x] զչարեալ Արէտ՝ խորհէր վրէժ առնուլ զանարգանաց դստերն, և ոչ իշխէր համարձակ յինքնակալէն Օգոստեայ Տիբէրի կայսեր: Ապա բարեկամացեալ ընդ Աբգարու թագաւորի Հայոց և ընդ մեծ զօրավարին Խուրանայ Արծրունւոյ՝ յղէ նմա պատարագս և առնու յօգնականութիւն զԽուրան Արծրունի, զայր իմաստուն և քաջամարտ[120]իկ, կորովի յաղեղն և ի զէն և յասպազէն. և հարեալ ի դիմի Խուրան՝ հարկանին զօրքն Հերովդի, մինչ ինքն Հերովդէս փախստեայ անձնապուր լեալ հանդերձ Ուրեղիանոսիւ զինակրաւ՝ անկանի առ քեռին իւր որդի Հիւրկանու քահանայի ի քաղաքն Ասկաղոն: Բայց թէպէտ և ունէր զպատճառ զբարեկամանալն Արէտայ ընդ Աբգարու և ընդ Խուրանայ՝ այլ Աբգար և Խուրան առ փափագումն որ ի Քրիստոս, և առ լուր սրբոյ Փրկչին, և որ ինչ գործեացն Հերովդէս՝ ոխացեալ ընդ Հերովդի, որպէս և յետոյ ընդ Պիղատոսի խնդրեցին զվրէժ սպանման Մկրտչին և հալածանացն Քրիստոսի[38]. և էր ամ վեշտասաներորդ Տիբերի կայսէր[39]:

Յետ համբառնալոյ Փրկչին մերոյ և վախճանի բարեպաշտ թագաւորին Աբգարու, թագաւորեաց Անանուն[40] որդի Աբգարու, որ ոչ եղև ժառանգորդ հայրենեաց հաւատոցն որ

---

[119] ×) Ա (2/ե-է)՝ առ որս:

ի Քրիստոս. այլ յետս կացեալ յուխտէ սրբութեանն դառնալ զհետ պաշտաման կռոցն, [121] զոր արհամարհեաց մերժեաց Աբգար, և զԽուրանն Արծրունի մեծ զօրավար արկեալ ընդ ուռկանաւ խարդախութեան, հեռեալ զկնի իւրոյ մոլորութեանն. զոր այպն արարեալ արհամարհեաց զնովաւ: Ե ինքն Խուրան առեալ զմեծ մասն զօրուն գնաց ի Շաւարշան ի Սանատրուկ. և առեալ զնա եկն եհաս ի վերայ որդւոյն Աբգարու բառնալ ի նմանէ զթագաւորութիւնն զոր ունէր: Բայց ոչ ժամանեալ կատարման պատերազմին, զաշտարակն[×], զոր շինէր որդին Աբգարու փլուզեալ ի վերայ սպան զնա, վրէժխնդիր եղեալ մահուն Ադդէի սրբոյ[41]:

Իսկ Խուրան ոչ կացեալ առ Սանատրկոյ գնաց յերկիրն Յունաց, առ Կեսար Տիբերիոս, մինչ տայր պատերազմ ընդ Սպանիացիսն վասն ոսկեհան տեղեացն. և անդ Խուրան բազում նահատակութիւնս և յաղթութիւնս կատարեալ զօրականօքն որ ընդ նմա երթեալ էին յաշխարհէս Հայոց, ընդ որ յոյժ ուրախացեալ Տիբերի պատուէ ծիրանօք և բրաբիոնաւ ի Ստադին տեղւոջն. և եղև վախ[122]ճանել Տիբերի թագաւորեալ ամս ԻԳ և թագաւորեաց փոխանակ Տիբէրի Գայիոս փոքրն ամս Գ և կէս[42]:

Իսկ Խուրան լուեալ վասն տիկնոջն Հայոց Հեղինէի կնոջ Աբգարու, թէ ոչ ախորժեաց կալ ի Միջագետս վասն ամբարշտին Սանատրկոյ, այլ ելեալ գայ ի սուրբ քաղաքն Երուսաղէմ, և անդ կեալ բարեպաշտութեամբ՝ եկն և նա առ նա յԵրուսաղէմ, և առեալ ոսկի զտիկնոջն և զիւր՝ գնաց յԵգիպտոս գնել ցորեան յաւուրս սովոյն որ եղև առ Կղաւդեաւ. բաշխել զայն որբոց և այրեաց, միանգամ յամենայն հաւատացեալ[×] ի Քրիստոս տնանկացն, որոց և բաւականանայր ցորեանն: Անդ կեցեալ Խուրան և անդ վախճանեալ ի բա-

---

[121] ×) Ա (Ր/ա)՝ զաշտարակին: Ստուգագոյն թուի գրել՝ զի զաշտարակըն (I, 51, ծն. 1):

[122] ×) Այլ օր.՝ ամենայն հաւատացելոց:

րիոք ծերութեանն և Հանդերձեալ աշխարհին պսակելոց է ի Քրիստոսէ, Հանդերձ տիկնաւն Հեղինեայ ընդ ամենայն սուրբս Քրիստոսի Աստուծոյ մերոյ. ամէն[43]:

(է)

## [123] ԶԱՐԱԽՕՍՈՒԹԻՒՆ ՆԱԽԱՐԱՐԱՑՆ ՆԵՐՍԵՀԻ ԶՎԱՉԷԷ ԵՒ ԶԱՐՇԱՒՐԵԱՆ:

Բայց ի գնալն Խուրանայ առ Տիբէր կայսր՝ եթող զորդին իւր զՎաչէ և զեղբայր իւր զԱրշաւիր ի Խառան առ տիկնոջն Հեղինէի. որ ապա ի գնալն տիկնոջն յԵրուսաղէմ՝ Վաչէ և Արշաւիր երկեան երթալ առ Սանատրուկ, գնացին առ Ներսէհ[1] արքայ Ասորոց, ընդ իւրեանս ունելով զգիր ուխտի խաղաղութեան Աբգարու և Ներսէհի[×] և զԽուրանէ Արծրունւոյ. զոր կարգէ զնոսա Ներսէհ ի վերակացութիւն գործակալութեան, զՎաչէ կացոյց ի դրան արքունի, զի ամենայն ոք նովաւ մտցէ և ելցէ յարքունիսն, և նովաւ վճարիցեն զի՛նչ պէտ և լինիցին ումեք[××] ի մեծամեծաց մինչ ի փոքունս նոցա. և զԱրշաւիր ի գործ պատերազմի զօրագլուխ զօրուն[××] կարգեաց: Ընդ որս զչարեալ նախարարացն Ներսէհի՝ գրգռեն զոմն ի մերձաւորաց Ներսէհի, Դարէհ անուն. որ մատուցեալ առ Ներսէհ ասէ «ընդէ՞ր այսպէս հաճեցար առնել, զի՞ կացուցեր զարսդ զայդ ի գործակալութիւն աշխարհի քո, և ահա[124]դոքա են յորդւոց ազգի Սենեքերիմայ ի Նինուէ, և ունին զզօրս քո ընդ իւրեանս, գուցե կատարիցեն չարիս ի վերայ քո, և կորզեն յընքեանս[×] զթագաւորութիւն Նինուէի: Զի ահա բարեկամացեալ էր Խուրան հայր Վաչէի և եղբայր Արշաւրի ընդ Արտաշէսի Պարսից արքայի յերթալն Աբգարու ի Պարս և եդեալ են դա-

---

[123] ×) Այլ օր.՝ Աբգարու ընդ Ներսէհի: ××) Այլ օր.՝ զինչ պետ ունիցին ումեք:
×××) Ա ($^{2}/_{10}$), I, (53), II, (49)՝ զօրագլուխ զօրուն: III (82) չիք՝ զօրուն:
[124] ×) Այլ օր.՝ և կորզեցին յինքեանս:

չինս ի միջի. գուցէ յորժամ կատարիցեն զչարիսն զոր խոր-
հեալ են ի վերայ քո, որպէս լուաք ի հաւատարմաց իւրեանց՝ օժանդակութեամբ Արտաշէսի մերժիցեն և զզարմ և զզաւակ քո ի թագաւորութենէ Ասորոց: Կամ դարձո՝ զխորհեալ նոցա չարիս ի գլուխս իւրեանց, կամ թող զի ել-
ցեն գնասցեն՝ յով և կամեսցին»: Իսկ Ներսէհ ունկնդիր ե-
ղեալ Դարէհի, բայց ոչ կարաց հաւատարմացուցանել զա-
սացեալսն. այլ վասն բանսարկուացն ելեալ Վաչէ և Արշա-
ւիր գնացին առ Արտաշէս արքայ Պարսից, և կացին մնա-
ցեալ անդր մինչև ի դարձն Արտաշէսի որդւոյ Սանատրկոյ, որ եկեալ այսր թագաւորեաց, [125] սպանեալ զԵրուանդ[2]:

Իսկ Սահակ որդի Վաչէի խոյս տուեալ գնայ յկողմամբքն Մարաց, ընդ կողմն Ատրպատականի, և բնակէ առ զօրա-
վարի ումեմն և մոգի Պերոզ Վրամ կոչեալ: Իսկ Սմբատ ա-
ռեալ զԱրտաշէս բնակէ ի Զարաւանդ Ատրպատականի, և գրէ առ Սահակ դառնալ առ Երուանդ. թերևս հնար լիցի խորհել ինչ վասն Երուանդայ: Նորա ունկնդիր եղեալ գայ առանց յապաղանաց, և առաջի դնէ Երուանդայ զպատճառս փախստեանն, ասէ՝ զի դայեկաբար զորդիսն Սանատրկոյ սնուցանէաք, և դու ի թագաւորելդ քոյ որոյ երդմունս ա-
րարեալ յԱրտեմի և յԱրամազդ անկասկած կալ մնալ վասն որոյ երկիւղն ունէր: Եւ զհետ մտեալ Երուանդայ խոյզ և խնդիր լինել Արտաշէսի. իսկ Սմբատ առեալ զԱրտաշէս գայ բնակէ ի բարձրաւանդակ լերինն Վարագ. Իսկ Երուանդայ հետազօտեալ գայ բնակի առ ստորոտով լերինն ի գլուխս Տոսպ գաւառի, և կոչի զտեղին Երուանդականս. և Սահակայ յղեալ առ [126] Սմբատ՝ մի կալ մնալ ի լերինն, այլ փութալ ելանել դառնալ անդրէն ի Հեռ և ի Զարեւանդ[x] զի ոչ ելանէ, ասէ, Երուանդ զօրու ի սահմանս Մարաց. և տայր տանել Սահակ զպէտս մանկանն օր ըստ օրէ: Զայս զգացեալ Երուանդայ՝ ետ տանել զՍահակ կապանօք յԱրմաւիր. անդ

---

[126] ×) Ա ($^{1}/_{4\text{-}5}$)՝ ի հետ ի և զաւրսանդ. ուղղ.՝ ի Հեռ և ի Զարեւանդ (Նախն., 363):

կեցեալ և մեռեալ ի Նմին ի կապանս[3]:

Իսկ Աշոտ եղբայր Վաչէի քանզի էր մանկագոյն տիովք՝ առեալ դայեկին իւրոյ մատուցանէ առաջի Երուանդայ, զի ոչ կարաց զերծանել գնալ յով և կամիցի, գուցէ, ասէ, ի գնալն ի բուռն առեալ մահ դատապարտեսցի: Իսկ Երուանդ պահեալ զերդումն հօրն նորա՝ թողացուցանէ երթալ բնակել և կեալ ուր և հաճոյ թուիցի. և նորա առեալ տանի զնա ի լեառն Սիմ, ի տեղի հայրենեաց բնակութեան յաշխարհի Տարունոյ[4]:

Նոյն ժամայն առեալ Սմբատայ զԱրտաշէս գայ անցանէ ի վայր ի լեռնէն. և թափառական զվէմս ապաստան արարեալ յանկ[127]ակածագոյն տեղիս դարանի ի փոքր վիմամէջս ի կարկառս հովտաձևս հանդէպ հարաւոյ քաղաքաբերդին Վանի, մօտ յայն տեղի[x], յորում բղխէ աղբիւրաբար առ ստորոտով բլրակի միոյ, մօտ յեզր ծովուն, յորմէ շնչէ օդք բարեխառն, զովացուցանէ զտապ խորշակի ամարայնոյ՝ յարեգակնակէզն լինելոյ. և անդէն կացեալ զաւուրս բազումս յապահովացեալ ի կասկածանաց երկիւղէ Երուանդայ: Քանզի ոչ կարացեալ իմանալ զդէմ փախստէի Արտաշէսի, և այն ի տեսչութենէ Աստուծոյ այնպէս պահեալ լինէր, դառնայ Երուանդ առ սահմանօքն Ատրպատականի ի ձորն Անձահից: Իսկ Անձահից ձոր վասն այսր կոչեցին[xx]. բազում ունելով ինչս ի կոխակս բարձրաւանդակս և ի կիրճս նրբականս, ի զերծս և ի խոխոմս ձորոյն ի թոխ և ի բոխ երկրին անբնակ մարդկան յապատակէ հինիցն Երուանդայ, և երթայ զետեղի ի Նախճաւանն աւանի յոստանին Վասպուրական աշխարհին: Յայնմ հետէ ի տարակոյս անկեալ Երուանդ՝ ոչ քաղցրանայր [128] նմա քուն գիշերոյ[5], և ոչ համեղանայր կերակուր քիմս նորա: Յետ այսր առեալ Սմբատայ զԱրտաշէս ըստ ձևոյ տառապելոյ միոյ, որ շրջիցի խնդրիցէ օր ըստ օրէ զբաւականութիւն աւուրն[x] երթեալ

[127] x) Այլ օր.՝ մուտ յայն տեղի: xx) Այլ օր.՝ այդր կոչեցին զի:
[128] x) Այլ օր.՝ զբաւականութիւն աւուրն օր ըստ օրէ: xx) Այլ օր.՝ Դարէհի Մարաց արքային:

տուայտի ի դրան Մարաց Դարէհի[××6], ինչ զգալ վասն նորա Երուանդայ. և գրէ առ Սմբատ, թերևս տացէ ի ձեռն նորա զմանուկն Արտաշէս: Եւ յորբունս հասելոյ Արտաշէսի՝ երթայ գնայ առ Արտաշէս Պարսից արքայն, և անդ բազում իրս քաջութեան ցուցեալ յախոյանայարձակ պատերազմունսն, և մեծարի յԱրտաշէսէ Պարսից արքայէ, մինչ ձեռնտու լինի նմա զօրու օգնականութեամբ, և թագաւորեցուցանէ զնա ի վերայ Հայոց փոխանակ հօր իւրոյ Սանատրկոյ, ի տեղի թագաւորութեան քաջացն Արշակունեաց: Ապա դարձան Վաչէ և Արշաւիր ընդ Արտաշէսի, առեալ զթագաւորութիւնն Երուանդայ ի ԼԱ ամի Արտաշէսի արքայից արքայի և թագաւորին Յունաց... ամի[7]. և դարձոյց ի նոսա զաշխարհն զոր տուեալ [129] էր ի ժառանգութիւն Տիգրանայ Հայկազնոյ, զոր կալեալ էր Սանատրկոյ յարքունիս, զլեառնն Սիմ և զԱղձնիս մինչ ի սահմանս Ասորեստանի[8]:

(Ը)

## ԹԱԳԱՒՈՐԵԼՆ ԱՐՏԱՇԷՍԻ Ի ՎԵՐԱՅ ՀԱՅՈՑ:

Իբրև յաջողեցաւ թագաւորութիւնն Արտաշէսի ամենայարդար պատրաստութեամբ և աշխարհաշէն հոգաբարձութեամբ, որպէս բացայայտեն գիրք պատմագրաց, և յառնուլ զՍաթինիկ տիկին կնութեան Հայոց յիշէ զնժդեհանալն իւր ի վիմամէջսն զոր վերագոյն գրեցաք. գայ դարձեալ ի տեղին զբօսնուլ ի նմա. և հաճոյ թուեալ յաչս նորա՝ շինէ զքարաբլուրն ապարանս արքայանիստ, աշնանայինս, պայծառայարդարս, գեղեցկայարմարս պարսպաւորս, ընդդէմ ծիծաղելով ծովուն ի հիւսիսի նայեցուածով, արեգակնային ի վերայ խաղալով ճառագայթաձիգ ճեմականացն, յելս և ի մուտս. ձկան իմն թուելով ի վերայ մկանաց ալեացն խաղալով, ընդդէմ նայեցածն[×] ունելով զմեծ լեառնն Մասիք[××]

[129] ×) Այլ օր.՝ նայեցուածն: ××) Այլ օր.՝ Մասիս:

կոչելով բարձրա[130]գագաթն ձիւնալիր սպիտակափառ[1], իբր զԹագաւոր մեծավայելուչ պատուական ալեօք զուարճացեալ ի մէջ ճոխ նախարարութեանց, առաջի տեսանելով զկապուտակ ծիրանափայլ դաշտաձև ծովն[2]. դաստակերտս մեծամեծս շուրջ զեզերբն անտառախիտ ծառովք և գինեբեր[3] որթովք և զանազան պտղովք. գչէնս պատրաստեալ, և շուրջ զամրոցաւն տնկախիտս բուրաստանս ծաղկաւէտս և անուշահոտս ի զանազան ծաղկանց. ոչ միայն ի տեսիլ խտղտման աչաց և ի զուարճումն հոտոտելեաց՝ այլ և ի կազմութիւն դեղոյ բժշկական հնարագիւտ իմաստասիրութեանց կազմեալ Ասկղեպեայ վարժմամբն[4]: Իսկ շուրջ զքերդանման ապարանօքն՝ պարսպէ զբլուրն շուրջանակի յապառաժուտ տաշելոց քարանց, քաղաք ամենալից զհովիտն ամբացուցանելով: Իսկ ի վերայ բղխեալ աղբիւրն[×], դարձեալ պարսպէ զքարաբլուրն ի պահպանութիւն ջրոյն ամրագունիւք շինուածովք և չէն մար մարգարիտ զքարաբլուրն յօրինէ[5] պարսպաւոր անկասկած[131]ելիս անմատչելիս ձեռաց պատերազմողաց, հեշտալիր առ զգուշութիւնն յօրինեալ՝ ի խորագոյնս ծովուն զպարիսպն յօրինեալ կազմէ: Իսկ ի մէջ երեքարմատեան գոգաձև հովտին փոքու, որ յերից բլրոցն խոնարհի՝ շինէ աշտարակ բարձրաբերձ փորուածոյ միջոցաւ, և ի վերայ նորա կանգնէ զԱստղկեան պատկերն, և մօտ նորա զտուն գանձու պաշտպանութեան կռոցն. կարգէ և յօրինէ ի նմա փողոցս վաճառոց ամենալիցս և բաւականս. գտանէ և ի վերագոյն լերինն անդր ի հարաւոյ կողմանէն աղբիւր սակաւաբուղխ, որոյ ջրմուղ կազմեալ ածեալ հասուցանէ ի մէջ հովտին: Իսկ ըստ բաւականութեան աչաց տեսութեանց դաշտավայրին ի մուտս կոյս, և առ եզերբ ծովուն պարսպաւորս յօրինէ զգոգն՝ լնուլ այգեստան տնկախիտ պատրաստութեամբ ականախիտ վայելչութեամբ:

Եւ իբրև կատարեաց զյօրինուած շինութեան քաղաքին և անմատչելի անկասկածելի զամրոցն պատրաստեաց՝ կոչեաց

---

[130] ×) Ա (2/8ա)՝ աղբերն:

զանուն ամրոցին Զարդ, [132] այսինքն պայծառութիւն ի վերայ պայծառայարդար շինուածոյն: Եւ ածեալ զտիկինն Սաթինիկ զբօսնուլ յաշնանային յեղանակս յամարաստուն գեղեցկաշէն յապարանս զարդարեալ բերդին: Իսկ զանուն քաղաքին կոչեցին Արտամատ, որ թարգմանեալ ստուգաբանի Արտաշէսի ձեռակերտ, կամ թէ՝ Արտաշէսի եկք, զի ըստ Պարսիկ ձայնի Մատ՝ Եկք թարգմանի[6]. զի ի գնալ Արտաշէսի յայսմ տեղւոջէ՝ ոչ ևս յաւել ձեռն Երուանդայ տագնապել զնա, բայց ի գնալն ստի ի Մարս և ի Պարսս, դարձեալ դառնայ ուժով մեծաւ և թագաւորական ճոխութեամբ, տիրէ Հայոց մեծաց, և ըստ բարբարոսական հմայիցն պատուէ զտեղիս այս, որպէս ի նմանէ սկսելով զփոփոխումն առնու ի խոնարհագունիցն ի բարձրագոյնսն:

Իսկ սրբոցն որ ի Սուկաւէտ լերինն, քանզի էին համաշխարհիկք և հաւատարիմք Սաթինիկայ եկեալ զկնի նորա՝ յղեն զոմն ի ճգնաւորացն առ տիկինն, զկռոցն յան[133]դիմանելով զսնոտի և զանօգուտ պաշտօնն, որպէս և սուրբն Թադէոսի առ Արտաշէս:

Իսկ Սաթինիկ ունկնդի եղեալ խրատու սրբոցն՝ ոչ ի բաց մերժեցաւ ի կռոցն Աստղկայ անուանեալ պատկերին, քանզի կասկածանս ունելով ի թագաւորէն և յորդւոցն, մանաւանդ զի և թագաւորին նախ ակն ունէր զդառնալն ի կռոցն ի յերկրպագութիւն Քրիստոսի ճշմարտին Աստուծոյ. բայց թէ որպէս եղև կատարումն իրացն մեզ չէ յայտ[7]:

Սահակ որդի Վաչէի[8] կացեալ[x] ի դրան Արտաշէսի շքեղ և երևելի ճոխութեամբ, յոր ձեռն հաւատաց Արտաշէս զգաւառն Աղբագ. զի յայն վայր ոմանք ի զարմիցն Աշդահակայ Մարի բնակէին անդ, արք քաջք, կորովազէնք և դիպաղեղունք, բայց նուազեալ ազգին՝ ոչ զօրք ունէին, որ կարօղ լինէին զգործ պատերազմին վճարել և զպաշտօն թագաւորին. մանաւանդ զի աւերեալ էր երկիրն յասպատակէ Պարսից, այն ինչ հուպ մեռանելն Երուանդայ և ընդ թագա-

---

[133] x) Այլ օր.՝ կեցեալ:

ւորելն Արտաշէսի: Բայց կին ումն յազգէն [134] Աշդահակայ բնակէ յամուրսն Զլմար և ի Սրինգ, ի գաւառին ի Փոքր Աղբագ, և յանուն կնոջն Զայլամար, որ և զամուրն յիւր [անուն] անուանէ. և ունէր կինն գանձ բազում, և նորա դուստր մի Անուշ անուն. առնու զնա Սահակ կնութեան հրամանաւ Արտաշէսի, և կնքեալ աշխարհն[×] հաստատէ Սահակայ ի սեպհական ժառանգութիւն. այսր աղագաւ խնամ տարեալ Թագաւորին կնոջն՝ զի ոչ ել առ Երուանդ և ոչ միով իւիք պաշտպանութեամբ: Սահակայ առեալ ի պարգևի զաշխարհն՝ Թողու զորդին զԱշոտ զլեառնակողմամբքն առաջին իւրեանց տէրութեանն՝ շինել, բնակել, ժառանգեցուցանել զերկիրն ի ժառանգութիւն իւրեանց ազգի ի զաւակ տանն Արծրունեաց: Եւ երթեալ Աշոտ ոչ խորհրդական իմացուածովք մտանէ ի լեառնն. և յելուզակք ումանք ի կողմանց Հաշտենից ամրանային ի լերինն. պատահեն միմեանց և մեռանի անդ անզգուշաբար ի յաւակնայեղց դիմեցուածոյն[9]: Եւ անդէն [135] ոչ կարացեալ շինել զերկիրն այն հուպ ընդ մինչ յութերորդ ամն Արտաշէսի, զոր Թագաւորին յանձն առեալ զաշխարհն՝ հրամայէ շինել անդ մեհեան զՀերակղեայ և զԴիոնիսեայ. և այնու աղագաւ կարաց չէն պահել զերկիրն չատամարդկութեամբ: Եւ նուազեալ ազգին Արծրունեաց ոչ ոք մնաց, բայց միայն մանուկ մի Համամ[10] անուն, որդի Արշաւիրի ծերոյ, եղբօր Խուրէնայ, որ կայր ի դրան արքունի. զորոյ նախնեացն ջան և վաստակ յուշ արարեալ Թագաւորին՝ Համամայ յառաջ մատուցեալ, ի գահ և ի բարձ հայրենեացն ձգեալ զնա[×] ժառանգեցուցանէ զերկիրն Աղբագ, որպէս Սահակայ նոյնպէս և Համամայ: Բայց էր Համամ սէգ և ամբարհաւաճ, յոյլ և Թոյլ առ պատերազմի գործ, միայն և շղոմարար հպատակութեամբ վարէր առ Թագաւորն, զորոյ լոյծ և մեղկ բարս ուսեալ Թագաւորին՝ կացուցանէ զնա ի վերակացութիւն գործակալաց

---

[134] ×) Ուղղ.՝ զաշխարհն (Նախն. 381)

[135] ×) Ա ($^{2}/_{1\text{-}3}$)՝ Բագաւորին զնախնեացն՝ Համամայ յառաջ մատուցեալ ի գահ և ի բարձ հայրենեացն ձգեալ զնա:

դրան արքունի, զի այնու հպատակութեամբ լցցէ զպաշ-
տպանակս [136] թագաւորին, զի և տեղեակ էր դիւանական մատենագրութեանցն: Զի յառաջնումն ոչ ինչ գոյր հոգ ինչ զբաղմանց, և ոչ մի ինչ ըստ աշխարհաշէն խնամակալութեանց, կամ պատերազմասէր աշխատութեանց, բայց միայն ի դրան արքունի մտանել և ելանել ընդ հաւատարիմս թագաւորին ի տունս դիւանաց և գանձուց: Բայց դեսպան արձակեալ Արտաշէսի զՀամամ առ կայսր Ադրիանոս վասն Բարքոբայ աւազակի և նորուն պատերազմին յԱսորիս. և յերթալն նորա և ի դառնալն՝ գայ գտանէ վախճանեալ զթագաւորն Արտաշէս ի Մարինդ, և մեռանի անձամբ ընդ այլ չղոմարարսն յաշխարհին Մարաց ի Բակուրակերտ աւանի[11]:

Յետ Արտաշէսի թագաւորէ Արտաւազդ, ապա Տիրան որդի Արտաշէսի, ապա Տիրան, ապա Տիգրան Վերջին, ապա Վաղարշակ: Առ սոքօք էին ազգք Արծրունեաց ծննդաբանութեամբ՝ Համազասպ. Շաւարշ. Ասոդ. Բարգեան[12]:

Վաղարշակ թագաւորեալ փոխանակ [137] հօր իւրոյ Տիգրանայ, և տուեալ պատերազմ ընդ հիւսիսայինն Հազրաց՝ մեռանի ի կորովաձիգ աղեղնաւորացն[13]: Անդ Բարգեան և ասպետն մեծ Աշոտ նիզակակիցք միմեանց զերծեալ ի մեծ պատերազմէն՝ փութանակի մտին յաշխարհս Հայոց, ետուն գոյժ զմահուանէ թագաւորին[14] և կացուցին փոխանակ Վաղարշու թագաւոր զորդի իւր զԽոսրով ձեռնտուութեամբ Արտաւանու Պարսից արքայի: Եւ այսպէս խաղաղեցուցեալ զաշխարհս կէին հեշտալիր խաղաղականօք ըստ կամի ախորժակաց զամենայն ժամանակս կենաց Խոսրովու, որ թագաւորեաց ամս ԽԸ[15]:

(Թ)

## ԲԱՐՁՈՒՄՆ ՊԱՀԼԱՒԻԿ ԹԱԳԱՒՈՐՈՒԹԵԱՆՆ ԵՒ ԹԱԳԱՒՈՐԵԼ ՍՏԱՀՐԱՑՈՑՆ:

Մինչդեռ այսպէս յանդորրութեան[x] կեանս յապահովանայր երկիրս Հայոց, և ոչ ուստեք գոյր վտանգ կրել, բայց ինքնեանք այլոց հաստուցանէին տագնապս որպէս ընթեռ-

նունք՝ յեղակարծում ժամանակի հասանէ համբաւ մահուն Արտաւանայ, և տիրել Պարսից Ստահրացւոյն Արտաշրի Սասանականի[1]. ի կոր կործ[138]անման կացեալ Խոսրով մեր Թագաւոր, և ջանայր առնուլ զվրէժ մահու հարազատին իւրոյ, Թագաւորին Արտաւանայ, զոր և առնէր իսկ, և հասեալ դաւող մահ նորա ի յԱնակայ իւրոյ մերձաւորէ[2]: Եւ բնաւ աշխարհս քայքայեալ ցրուեցան՝ յով և կարաց աճապարել փախչել այր իւրաքանչիւր. դիմեցան առ կայսրն Վաղէրիանոս[×], թէ հնար ինչ իցէ առնուլ զվրէժ արեան Խոսրովու և ի վերջ նահանջել զբռնակալութիւն Ստահրացոյն. բայց թէպէտ և ետ օգնականութիւն Հայոց կայսրն Վաղէրիանոս Փռիւգացի զօրօք՝ սակայն ոչ խաղաղանայր երկիրս[3], և ոչ ոք կարէր կալ յակաստանի, ունել զժառանգութիւն հայրենի, և ոչ առ զխաղաղութիւն մինչև ի Պռոբոս կայսր, որ արար խաղաղութիւն ընդ Արտաշրի[4]: Աստանօր ոչ է ինձ յայտ թէ զի՞նչ կամ ո՞րպէս դիպեցաւ լինել տոհմին Արծրունեաց, կամ ո՞ւր, կամ զի՞րդ[5]. բայց միայն զազգին շարս ըստ գիւտի աշխատութեանն բաւական համարեցաք [139] յառաջ վարել մինչ ի Թագաւորել Տրդատայ, և սկիզբն լինել լուսաւորութեան Հայոց աշխարհիս ի ձեռն մեծին Գրիգորի սրբոյ Լուսաւորչին[×]: Եւ այս են ծնունդք Արծրունեաց. ի Բաբգենայ Մուշեղ. Վահան. Ներսէհ. միւս Բաբգէն. Տիրոց:

(Ժ)

## ԴԱՐՁՆ ՏՐԴԱՏԱՅ Ի ՅԵՐԿՐԷՆ ՅՈՒՆԱՑ ԵՒ ՀԱՍՏԱՏԵԼ ՅԱԹՈՌ ԹԱԳԱՒՈՐՈՒԹԵԱՆՆ ՀԱՅՈՑ ՄԵԾԱՑ ՕԳՆԱԿԱՆՈՒԹԵԱՄԲ ԹԱԳԱՒՈՐԻՆ ՅՈՒՆԱՑ, ԵՒ ՎԱՍՆ ՀԱՒԱՏՈՑՆ ՈՐ Ի ՔՐԻՍՏՈՍ:

Թագաւորեալ մեծին Տրդատայ ի վերայ հայրենեաց աշխարհին. որպէս գրեալ ցուցանին հանգամանք իրացն գոր-

---

[138] [illegible] Ա ([illegible])՝ Վաղէտիանոս:
[139] [illegible] Ա ([illegible])՝ Գրիգորի սրբոյ Լուսաւորչին: II (57), III (94) չիք՝ սրբոյ

ծնլոց, և հաւատալն նորա ի մի Աստուած Հայր և ի մի Որդի նորա ի Բանն Աստուած Յիսուս Քրիստոս և ի մի Հոգի սուրբ, զուգակից և բնութենակից և փառակից Հօր և Որդւոյ, ի մի Աստուածութիւն կատարեալ. և մկրտեալ սուրբ և անբիծ խոստովանութեամբ ի Հայր և յՈրդի և ի սուրբ Հոգին , ի ձեռն մեծին Գրիգորի հանդերձ ամենայն նախարարօքն Հայոց մեծաց:

Իսկ ի տանէն Արծրունեաց ընդ մեծ նախարարսն Հայոց մկրտեալ լինի Տիրոց[1] որդի Բաբգ[140]էնի երկրորդի, այր հեզ, խոնհական, խորհրդական, համեստ ի բանս, համեստ ի նայեցուածս, որ ոչ բազմաց քան եթէ միոյն, այսինքն Քրիստոսի՝ զինքն ծանօթ ջանայր կացուցանել: Քանզի և ի ժամու անդ յորում զմեծն Գրիգոր առեալ տանէին ի քաղաքն Կեսարացւոց ձեռնադրել զնա ի քահանայութիւն, ի լուսաւոր վարդապետութիւն աշխարհիս Հայոց[2] էր ընդ մեծ նախարարսն երթեալ և Տիրոց, և որպէս վերագոյն ասացաք՝ վասն հեզ և ցած բարուցն կամօք յանձն կրէր, ոչ յառաջանայր ի բարձր նախագահս ճոխանալ երևելեօքս և լքանելեօքս, սրբոյ Աւետարանին հետազօտեալ կրթականին՝ մի բազմել յառաջին բարձին[3], ոչ եթէ ոչ ունէր նազելի և բարձրագահ պատիւս ի մէջ մեծ նախարարութեանցն Հայոց, զի ո՞վ ոք այլ ճոխ քան զՍենեքերիմայսն, զոր համարձակախօսն Եսայիաս հրապարակէ առ Իսրայէլեան զարմն զսորայս մեծափառութիւն[4]. այլ և Մակեդոնացին Աղէքսանդրոս ոչ սակաւ դրուատեօք արձանս գրէ ի մատ[141]եանս դիւանապահ աւանդութիւնս զսորայս մեծափառ գլխաւորութիւն:

Արդ որպէս յառաջագոյն ասացաք՝ սակս կարևոր յուզմանցն միապետեալ ի չարս կանոնաց, միայն յայտարարութիւնս առնել զազգացն Արծրունեաց, և ոչ ընթանալ զհետ բազմախոյս զրուցատրութեանց, զոր առաջնոցն մատենագրեալ դրոշմեալ կայ ի գիրս ընդ ժամանակս ժամանակս սոցա քաջարութիւնք և արժանաւորք յոլովագունի և մեծամեծաց գովութեանց: Բայց մեք զյոյժ հուշակեալսն միայն նշանակեցաք. սրբոյ Թագաւորին և քաջ Նահատակին Տրդատայ

[141] ×) Այլ օր.՝ պատերազմ պատերազմեալ:

զբարիոք պատերազմեալ[×] ընդդէմ անմարմին և մարմնաւոր պատերազմողաց[5], փոխի յերկրաւոր աշխատութեանցս ի Հանգիստ, մեծաւ պատուով թագաւորական շքեղ և երևելի դիազարդութեամբ, որպէս ընթեռնուք ի բանիբուն գրակարգութեանն Մովսէսի տիեզերահռչակեալ վարդապետի և քերթողի և մերոյ լուսաւորութեանցս հաստատագոյն յօրինողի, որպէս պատմէ [142] ի գլուխ երկրորդի պատմագրութեանն[6]:

Թագաւորէ Խոսրով որդի Տրդատայ փոխանակ հօր իւրոյ, հրամանաւ Կոստանդիանոսի[7], և խաղաղասէր բարեկարգութեամբ հաստատեալ յօրինէ զկարգս աշխարհիս նախարարօքըն հանդերձ, և ոչ ինչ փոյթ եղև ումեք հոգալ զուստեք արշաւանս և զգերփանս, բայց ընդ Յունաց թագաւորին միայն հնազանդութեամբ նուաճեալ զինքեանս, ի բաց կալով ի հարկատուութե Շապհոյ արքայից արքայի. և զզօրն տուեալ ի ձեռս Վահանայ Ամատունոյ[8], հոգալ պատերազմաց, թէ արդեօք դէպ լինիցի ուստեք: Բայց ըստ կարգաց քրիստոնէութեան վարէր ըստ արժանի պատուիրանաց Տեառն, և ըստ խրատու մեծին Վրթանեայ յապահովանայր ամենայնիւ, թագաւորեալ ամս ժթ[9]:

Իսկ զհարկացն տուրս յարքունիսն Կեսարու՝ ի ձեռն դպրապետին վճարէ առ կայսր. բայց զտոհմէն Արծրունեաց ոչ ինչ այլ իմանալ կարացաք, թէ զինչ գործ գործեալ նոցա, բայց միայն զխաղաղա[143]սէր կեանս կեալ առ թագաւորն և առ նախարարսն, և ունէր զիւրաքանչիւր կալուածս զաւանդեալ ժառանգութիւն նոցա ի թագաւորացն առաջնոցն Մուշեղ, Վահան: Եւ զոր ինչ ոչ իմացեալ եմք՝ և ոչ գրել արժանի վարկաք, բայց միայն զի բարձրագոյնք և նախապատիւք ի թագաւորաց անտի էին:

Զկնի Խոսրովու Փոքու թագաւորէ Տիրան որդի նորա[10]: Եւ ի ժամանակին յայնմիկ ունէր զհազարապետութիւնն Հայոց այր ժանդ չարաբարոյ, որում Հայր Մարդպետ անուն

---

[143] ×) Յայլ օր. չիք՝ ի միջոյ:

էր[11]. սա մատուցեալ առ թագաւորն Տիրան՝ սկսաւ քսութեամբ խօսել ի գաղտնի զտանէն Արծրունեաց և զՌշտունեաց, զի էին ազգք ճոխք և երևելիք, քաջք և անուանիք, և ամենեցուն պատկառելիք, ասէ. «Թէ ոչ բառնաս կորուսանես ի միջոյ* զերկուս նախարարութիւնսդ՝ ոչ բարւոքագոյն քո թագաւորութեանդ խորհին խորհուրդ. զի ձեռն նոցա է ընդ Շապհոյ արքայից արքայի». զայս խորհեալ Մարդպետին ասէ, թէ զայս ձախողակի իմացմունս կատ[144]արել կարացից՝ թերևս և զտուն Մամիկոնեան նախարարութեանց[12] կարացից որսալ ի կորուստ: Որոյ ունկնդիր եղեալ Տիրան՝ տայ հրաման յանդ հանել զխորհուրդ անօրէն աստուածատեաց առն: Ազդ եղև Մամիկոնեան սպարապետութեանն անոպայ գործն, և դիմեցին քաջասրտագոյնս ի վերայ սուսերամերկք զինեալք ի մէջ ամբոխին, Արտաւազդ և Վասակ Մամնկոնեանք, զբազումս տապաստ արկեալ ի սուրս իւրեանց, յափշտակեցին զՇաւասպ որդի Վաչէի Արծրունւոյ, և զՄեհէնդակ Ռշտունի, քանզի էին մանկագոյնք տիովք. առին գնացին յամուրսն Տայոց. և ի չափ հասեալ ի տիոց տղայականաց՝ ետուն զդստերս իւրեանց կնութեան մանկանցն: Ի նոցանէ աճեալ ազգք երկոցունց Արծրունեացն և Ռշտունեաց, և ոչ խառնեցան ի խորհուրդ Հայոց զամս բազումս[13]. բայց Տիրան պղծութեան աղտեղութեամբն զգառեալ մատնի ի ձեռս Շապհոյ, և կուրացեալ աչօք կեցեալ և մեռեալ ըստ արժանի իւր վաստակոցն, զոր գործեաց ընդ սուրբսն Վրթանէս և Յու[145]սիկ և ընդ քահանայն մեծ Դանիէլ, ըստ այնմ և հատուցաւ նմա, որ թագաւորեաց ամս ԺԶ[14]:

Արշակ թագաւորեալ փոխանակ Տիրանայ հօր իւրոյ, հրամանաւ Շապհոյ արքայից արքայի[15] ժողովէ զնախարարութիւնս Հայոց առ ինքն, տեղեկացեալ և վասն տոհմին Արծրունեաց և Ռշտունեաց և որք ի նախարարութենէն Մամիկոնէից հասեալ գնացեալ ամրանային ի յամուրսն Տայոց, և զպատճառսն ստուգեալ, գրէ ի ձեռն Վահանայ ումեմն ի տոհմէն Ամատունեաց՝ դառնալ գալ բնակել անկասկած կենօք, ի բարձ և ի պատիւ իւրաքանչիւր յառաջանալ: Որում

ունկնդիր եղեալ երեքեան նախարարութիւնքն առն իմաստնոյ Վահանայ Ամատունւոյ՝ գան զկնի նորա անկասկած համարձակութեամբ, քանզի ոչինչ վնաս գիտէին զանձանց և ոչ մի ինչ իրս մեծ կամ փոքր. և ընկալեալք ի թագաւորէն Արշակայ ըստ գրելոյն ի ձեռն Վահանայ՝ կացին անկասկած[16]:

Այլ չարիմացն Հայր կոչեցեալ Մարդ[146]պետ և բնաւորեալ խորհրդոցն չարին ոչ երբէք դադարէր: Ընդ ժամանակս ընդ այնոսիկ խաղաց գնաց Արշակ ի մուտս կոյս, էր երթեալ ընդ նմա և մեծն Ներսէս կաթողիկոսն Հայոց. և հասեալ յԱշտիշատ Տարօնւոյ ի վկայարանս սրբոյն Յովհաննու[x] Մկրտչի, և Աթանագինէի վկային, զոր շինեալ էր սրբոյ Լուսաւորչին մերոյ Գրիգորի ի դառնալն նորա ի ձեռնադրութենէ քահանայապետութեանն: Եւ եղեալ ի տեղին սրբութեան և կատարեալ զաղօթսն՝ ելին շրջել զբօսնուլ յայլ ևս տեղիսն: Զարախորհուրդն հայր Մարդպետ որդին սատանայի ոչ բաւականացաւ չարեօք մարդկան՝ այլ և առ Աստուած ևս և առ սուրբս նորա յաւակնեալ՝ յերկինս բացեալ զգայռալիր բերանն և որպէս շուն լիրբ պատուհաթափ[xx] եղեալ ածէր զլեզուն զերկրաւ[17]: Մատուցեալ առ թագաւորն Արշակ ասէ. ոչ բարեօք[xxx] իմացեալ առաջնոց թագաւորացն, զի ոչ կալան զտեղիս զայս ի բնակեալ[xxxx] ճոխութեան թագաւոր[147]ական վայելչապէս խրախճանութեանց. արդ[x] հաճոյ թուիցի քեզ զոր խորհիմս. սուրբքն ոչ եթէ զերևելի տեղիս ախորժեն, զի թէ ոչ այսպէս, ո՞չ նոքա զնեղ և զանձուկ կեանս կան մահու չափ»[18]: Բայց այս ոչ իմացեալ եմ, թէ արդեօք թագաւորն դրդուեցաւ ի հրապոյրս նորա թէ ոչ: Եւ զոր ոչ հաւատարմանայ մեզ՝ և ոչ գրել կարևոր համարեցայ:

Իսկ սրբոյն Ներսէսի իրազէկ եղեալ չարաբարոյ չարա-

---

[146] x) I (65), II (60), III (100)՝ Յովհաննու և: Ա (1/13) չիք՝ և:
xx) Ա ($^{2}/_{9-10}$ա)՝ պատոհաթափ: Գուցէ՝ պատուհասաթափ. (II, 61, ծն.1)
xxx) Ուղղ.՝ բարիոք, բարւոք (Նախն., 182): xxxx) Թե՞րևս՝ բնակեալ (II, Նախն. 270): xxxxx) Այլ օր.՝ ճոխութեանց:
[147] x) Այլ օր.՝ այլ:

խորհրդութեանն՝ անէծս մեծամեծս և ազդոյս և զօրաւորս դնէ ի վերայ Մարդպետին, և ասացեալքն ի սրբոյն Հանդերձ գործով զկատարումն առնու: Աղէն վաղվաղակի մատուցեալ Շաւասպ Արծրունի առ Մարդպետն՝ ասէ, «արջք գիսակագեղք սպիտակայեղցք որջացեալ ի պրակս անտառախիտ մայրեացդ. արդ թէ հաճոյ թուիցի[×] երթիցուք որսալ զնոսա». և առեալ զնա մտանեն ի մէջ մայրեացն, և ընդ գիրկս մտեալ Շաւասպայ Արծրունւոյ՝ զլայնալիճն լի քարշ[148]եալ հարկանէ ի թիկանց ընդ մէջ ողինն զկորովալիր մատանցն զազդոյ շարժումն թուուցեալ թափանցիկ ընդ չախորհուրդ սրտին միջոցն դիպեցուցանէ. և յետ ընդդէմ կործանեալ փչեաց զոգին ի ձեռս խորհրդածուին իւրոյ սատանայի. և բանք սրբոյ Ներսէսի ընդ կենդանի բանին Աստուծոյ խառնեալ՝ դիւրագոյնս զհաստուցումն արհամարհողացն հատուցանէր յօրհնութիւնս և յանէծս, անյապաղ զգործն կատարելով. որ ըստ արժանի խորհրդոցն ընկալաւ զփոխարէնն[19]:

Ընդ ժամանակսն ընդ այնոսիկ թագաւորէ Յունաց Վաղէս կայսր, և Պարսից՝ Շապուհ արքայից արքայ: Իսկ Արշակ յերկուս թագաւորսն ձեռնտու եղեալ, երբեմն ի Պարսս երբեմն ի Յոյնս, և զապստամբութիւն ի մէջ առեալ Արշակ յերկոցունցն կողմանս[×]:

Իսկ նախարարքն Հայոց ի սադրելոյ Վաղէսի գրգռեալ ի մարտ ընդ Արշակայ ի պատերազմ յառաջանան, ի մէջ անցեալ սուրբն Ներսէս համոզէ զնոսա և [149] խաղաղացուցանէ զաղմուկն: Իսկ թագաւորն աղաչեալ զսուրբն Ներսէս զհաշտութիւն խօսել Վաղէսի ընդ Արշակայ, զոր և արար իսկ զհաշտութիւնն:

Բայց Մեհուժան Արծրունի ոչ եղեալ ունկնդիր սրբոյն Ներսէսի, և ոչ ընդ թագաւորին հնազանդութեամբ նուաճեաց զանձն, հրապոյրս պղտորս արբուցանէ Վահանայ Մամիկոնէի, որ էր աներ Մեհուժանայ, և անցեալ գնացին

---

[148] ×) Ա ($^{2}/_{8ա}$) I (66)՝ կողմանց, II (62), III (100)՝ կողմանս:

առ Շապուհ. Թողեալ զօրէնս քրիստոնէութեանն՝ հնազանդեցան որմզդական մոլորութեանն մոխրապաշտ վարդապետութեանն: Ընդ որ յոյժ ուրախացեալ Շապուհ՝ խոստացաւ փեսայացուցանել զՄեհուժան ի քոյր իւր Որմզդուհի:

Եւ էր ի մէջ Շապհոյ և Արշակայ պատերազմ մեծ զժամանակս կենաց Արշակայ: Եւ բազում անգամ ի բազում տեղիս տային ճակատ զօրքն Հայոց և Պարսից ընդ միմեանս. զոր աւելորդ համարիմ երկրորդել զյառաջագոյն պատմագրաց նշանագրութիւնս[20]:

Բայց յետ բազում պատերազմացն խորա[150]մանկ խաբէութեամբ կոչէ առ ինքն Շապուհ զԱրշակ ի դէմս սիրոյ խաղաղութեան, ոչ ինչ յիշատակ զչարեացն գործելոց ի մէջ առնելով. և նորա գնացեալ զհետ կոչնականացն լի անմտութեամբ: Կապէ երկաթի կապանօք և տայ տանել յԱնուշ կոչեցեալ բերդն ի սահմանս Տիսպոնի[x]. և անդ կեցեալ և մեռեալ անճամբ զիւրովի երթեալ, ըստ սահմանելոյ ի վերայ նորա բանի առնն Աստուծոյ սրբոյն Ներսէսի[21]:

Բայց դոյզն մի զամբարշտին Մեհուժանայ զյանդգնութիւնսն ի վերայ Հայոց բացայայտեցից ի չարի աստ: Առնուն Մեհուժան և Վահան զզօրս Պարսից, գան մտանեն յերկիրս Հայոց, սփռեալ տարածանեն հէնս ասպատակաւորս ընդ բոլոր երեսս երկրիս Հայոց, գերփեն առնուն զչէնս և զաւանս և զագարակս, կապուտ կողոպուտ Թողուն ի ստացուածոց և յամենայն ժառանգութեանց, մաշեն ի սուր սուսերի զորս ի բուռն առնուին. գնացին մտին ի գաւառն Ռշտունեաց, առին[x] յաւարի զտունն Գարեգնի Ռշտունեաց [151] տեառն. ճողոպրեալ Գարեգինն անձնապուրծ գնաց փախստեայ առ կայսրն Յունաց. նոցա կալեալ զտիկինն Ռշտունեաց զկին Գարեգնի զքոյր Վարդանայ Մամիկոնէի ածեալ ի Վանտոսպ ի քաղաքն Շամիրամայ, մատնեն ի խոշ-

---

[150] x) Ա (1/ջռ)՝ տապոնի: xx) I (63), II (68), III (102)՝ և առին: Ա (2/ջռ) չիք՝ և:

[151] x) I (68), II (63), III (102)՝ կրօնս: Ա (1/ց-դռ)՝ զըկրաւնս. տե՛ս նաև Նախն. 381՝ զկրօնս:

տանգանս և ի տանջանս դառնագոյնս. ստիպեն լքանել թողուլ զկրօնս× քրիստոնէութեան, հնազանդել պաշտել զօրէնս մազդեզական մոխրապաշտութեանն, զոր չառեալ յանձն սուրբ տիկնոջն Համազասպուհեայ՝ տանին հանեն ի բարձրաւանդակ ամրական բերդաքաղաքն, մերկանան ի հանդերձիցն, զի քրիստոսեան փառօքն զգեցցի· արկանեն տոռունս ի սրունսն, կախեն զհիւսիսային աշտարակէն. գոհացող համբերութեամբ ընդունի զվճիռ մարտիրոսական: Դահեկին նորա մնալով ի ներքոյ կախաղաղանին՝ ամփոփէ զսուրբ գանձն ի ծոց իւր, տարեալ փոխէ ի վկայարան հանգստի ի ձեռն սրբոյն Ներսէսի, զոր տարեալ հանգուցանեն ի տեղւոջն, զոր յաժմ Զորոյ[152]վանս անուանեն, ի վկայարան սրբոց Հռիփսիմեանց· զոր շինեալ էր սրբոյն Գրիգորի, ուր զսեղանն սուրբ և զգաւազան հովուական և զմատանին պատկերեալ և զգօտին աշխատասէր միջոյն թողեալ ի հանապազորդ յիշատակ լուսաւորութեանն մերոյ հօրն[22]:

Գան դարձեալ Մեհուժան և Վահան և առնուն զՎանտոսպ, քանդեն աւերեն զգեղեցկաշէն ամրական տեղիսն, վարեն ի գերութիւն զբնակիչս քաղաքին ԵՌ զՀրէայսն, և ԺԸՌ զքրիստոնեայսն, և զորս ածեալ գերի Բարզափրանայ զՀրէայսն հրամանաւ Տիգրանայ, և խաղացուցանեն յԱսպահան, առնուն և զՎաղարշապատ և զԱրտաշատ. և զՀրէայսն որ յաւուրց սրբոյն Գրիգորի հաւատացեալ էին ի Քրիստոս՝ վարեն ի գերութիւն, աւելի վտանգ նոցա քան այլոց Հրէիցն հասուցանելով× վասն ի Քրիստոս հաւատոցն:

Գնայ զկնի նոցա և երջանիկն Զուիթայ երէց յԱրտաշատէ զկնի հաւատացեալ Հրէիցն, զի մի հօտն առանց հովուի յանապատս և ի վիհս կորստեան թափառա[153]կան յածիցին գայլոցն գահավիժութեամբ: Իսկ Մեհուժան մտեալ առաջի Շապհոյ սկսաւ չարախօսել զԶուիթայ քահանայէ, ասէ «երէցդ այդ եկեալ է զհետ գերելոց քրիստոնէիցն՝ հակառակ

[152] ×) Այլ օր.՝ աւելի վտանգ հասուցանելով՝ նոցա, քան այլոց Հրէիցն:

[153] ×) Ա (2/4) չիք՝ սուրբն: ××) Այլօր. չիք՝ բազմաց:

կալ հրամանաց արքայիդ և օրինաց Մազդեզանց և Արեաց, և ամենայն ուրեք դա է պատճառ ապստամբութեան Հայոց յարքայից արքայէ. և անարգէ զկրակ և առ ոչինչ համարել զարեգակն. արդ զրաւ եղիցի կենաց դորա, և հրաման արքայիդ դիւրաւ զկատարումն առնուցու»: Նոյն ժամայն ածեալ լինի սուրբն առաջի Շապհոյ, և հարցեալ և պատասխանեալ սուրբն[x] լի կատարեալ իմաստութեամբ Հոգւովն սրբով՝ զոր անմեկնելի ունէր յինքեան սուրբն. և անդ զբարիոք պատերազմն պատերազմեալ՝ որպէս քաջ հովիւ զանձն իւր եդ ի վերայ հօտին, և ընկալեալ զվիճռ մարտիրոսութեան կատարի ի փառս սուրբ Երրորդութեանն, և հորդեաց երանելին Ջուիթայ ճանապարհ բարի բազմաց[xx] վկայից ի մէջ Հայաստան աշխարհիս, որ յարևելս և յարևմուտն[23]:

Եւ կալե[154]ալ Արշակայ զթագաւորութիւնն ամս ԼՁ[24] վախճանի ըստ օրինակի ասացելոց:

Շապուհ արքայ[x] թագաւորեալ՝ բազում և անչափ չարիս հասուցանէր ի վերայ Հայոց աշխարհիս և Ասորեստանեայց և Պաղեստինացւոց, և վարեալ ի գերութիւն զՀրէայսն Ն բիւր, յաւեր դարձուցեալ զՀրէաստան և զսուրբ քաղաքն Երուսաղէմ. և զբովանդակ թոյնս անբժշկականս իժից և քարբից եհեղ ի վերայ քրիստոնէից. յորմէ բազում սուրբք ի Քրիստոս վկայեցան, և որպէս ասի աւելի քան ԽՌ սրբոց արանց, որք վկայեցին վասն Քրիստոսի, բազումք յեպիսկոպոսաց, ի քահանայից և յայլ կարգէ յեկեղեցական գնդէ, բազմագոյնք և յազատաց աշխարհիս և ի տիկնանց նոցա անհնարին և դառն տանջանօք, զոր սարսափեմ և հիացմամբ մեծաւ յապուշ կրթին միտք իմ ընդ ժուժկալութիւն այնքանեաց բազմահնար մեքենաւոր չարչարանաց. որպէս ընթեռնուք ի գիրս պատմութեան վկայելոցն[xx], որ Արևելեայ

[154] x) I (69), II (64)՝ արքայից արքայ: Ա ($^{1}/_{5-6}$), III (104)՝ Շապհոյ արքայի թագաւորեալ:
xx) Ա ($^{2}/_{3-2ա}$)՝ վկայեցելոցն:

ասի գրոցն վերա[155]գրութիւն, զոր շարագրեաց երանելի խոստովանողն Քրիստոսի Աբրահամի ի գեղջէն Արածոյ[25]. որ էր աշակերտ և հետևող սրբոց Ղևոնդեանց, և զսակաւուց քան թէ յոլովից գրեաց անուանս ի յիշիտակարանի անդ, զՇահդուստ, որ թարգմանի արքայասէր, և զԳոհշթասդ, որ թարգմանի ներկագործ ծիրանեաց արքայական զգեստու, և զՇմաւոն եպիսկոպոս, վէմ եկեղեցւոյ Քրիստոսի, ընդ նմին և այլ եպիսկոպոսք և քահանայք արք Ճ, որ կատարեցան միանգամայն սրով ի միում աւուր ի մեծի ուրբաթի զատկին:

Բայց Մեհուժան ոչ բաւականացաւ կատարել զչարիսն, զոր արար քրիստոնէիցն ևս առաւել Հայաստան աշխարհիս, այլ առնու զզօրսն Պարսից և գայ թագաւորել Հայոց հրամանաւ Շապհոյ արքայի×, ունելով ընդ իւր զՎահան Մամիկոնեան. և եկեալ մտեալ յաշխարհս Հայոց աներկիւղ համարձակութեամբ, խորհեալ խորհուրդ զոր ոչ կարաց հաստատել: Քանզի Սամուէլ որդի Վահանայ գնաց [156] ընդ առաջ հօր իւրոյ: Կարծելով Վահանայ խոնարհել զորդին իւր յանկանգնելի կործանումն, զոր մեկուսեալ Սամուէլի զհայր իւր Վահան, իբր այն թէ խորհիցին ինչ վասն որոյ եկեալն էին, իբրև հարուստ մի մեկնեցան ի գնդէն Պարսից, ամբարձեալ Սամուէլի զմիողնին՝ ազդոյ վէրս ի վերայ եդեալ առ ժամայն եհատ զնա ի կենաց. և դարձեալ անտի սպան և զմայր իւր զՏաճատուհի, զի երկոքինն ուրացեալ էին ի Քրիստոսէ. և ինքն գնաց փախստական ի Պարսից ի կողմանս Խաղտեաց×[26]:

Իսկ Մեհուժան ոչ թողանայր զթագաւորելն Հայոց, կուտեալ առ ինքն անհուն բազմութիւն վաշտից և դրօշուց և նշանաց որոց ոչ գոյր թիւ. և հասեալ ի Բագրաւանդ գաւառ ի Ջիրաւ գեօղ՝ կամէր անցանել ի թագաւորաբնակ տեղիսն Հայոց: Ընդդէմ զօրաժողով եղեալ× Սմբատ սպարապետն

---

[155] ×) Ա $(^{2}/_{10ռ})$՝ արքայից արքայ:
[156] ×) Ա $(^{2}/_{1-2})$՝ ի պարսիս կողմանց Խաղտեաց: ××) Ա $(^{2}/_{ռ})$՝ ելեալ:

Հայոց որդի Բագարատայ Բագրատունւոյ, ունելով ընդ իւր զզօրսն Յունաց բազմամբոխ վաճառականաց և դրօշ[157]աց[x] սաւառնացելոց, և փողք կայսերալուրք և գունդք գունդք վառելոցն վաշտիցն շուրջ փակեալ զՄեհուժանեան գնդիւն, զի մի ճողոպրել ինչ անճապարիցի: Եւ նոյնժամայն հուպ ընդ հուպ ի դիմի հարեալ Մեհուժանայ և կարթակոտոր զասպազինեալ երիվարն արարեալ քաջին Սմբատայ[xxx] տոռն արկեալ ի պարանոցն Մեհուժանայ ասէ[xxx]. «բարի՛ է քեզ, թագաւոր Հայոց, ե՛կ այսր զի պսակեցից զքեզ ես սպարապետս». և շամփուր շողացուցեալ մանուածոյս փակէ ի ներքս զգագաթն ամբարշտին. և այնպէս եղ յաշխարհէս թշուառականն[27]:

Առ սա ինձ ի ճախ եղանէ քերթողական առասպելն որ ասէ. բազում անգամ աղուեսք թագաւորել խորհեցան, բայց չունք ոչ առին յանձն[28]:

(ԺԱ)

## ԹԱԳԱՒՈՐԵԼ ԹԷՈԴՈՍԻ Ի ՎԵՐԱՑ ՅՈՒՆԱՑ

Վախճանեալ կայսր Վաղէս, և թագաւորէ Յոնաց մեծն Թէոդոս[1]. և առեալ սուրբն Ներսէս զՊապ որդի Արշակայ՝ հանդերձ յունական զօրուն թագաւորեցուցանեն զՊապ ի վերայ Հայոց ի տեղի [158] բուն թագաւորութեան Արշակունեաց: Եւ ոչ գնացեալ ըստ խրատու սրբոյն Ներսէսի Պապ թագաւորն Հայոց, այլ գնաց զխոտորնակ և զձախողակի ճանապարհ, աղտեղասէր բազմադիմակ պղծութեամբք, զոր ոչ է հաճոյ երկրորդել ի գիրս աստ. և յանդիմանեալ ի սրբոյն Ներսիսէ՝ արբուցանեն նմա դեղ մահու, զանխուլ կարծիս բերելով. և զրկեալ լինին[x] Հայք ի լուսաւոր վարդապետէն և ի քաջ հովուէն սրբոյն Ներսիսէ. և բարձեալ

---

[157] x) Ա (Բ/ԺՆ)՝ դրօշուց: xx) ճողոպրել ինչ ուղղ.՝ ճողոպրելի (Նախն. 437): xxx) Այլ օր.՝ Սմբատայ սպարապետին Հայոց: xxxx) Այլ օր.՝ ասելով:

[158] x) Այլ օր.՝ և այսպէս զրկեալ լինին: xx) Ա (Բ/ՑՆ)՝ բուն առեալ:

զմարմին սրբոյն բազմամբոխ զօրօքն Հայոց, առաջապահեստ ճանապարհորդութեանն արարեալ զՄերշապուհ Արծրունի զօրավար Հայոց և զՎահան Ամատունի և եղբայր Մեհուժանայ՝ տարեալ հանգուցանեն ի տեղւոջ հայրենեացն վկայարանի ի Թորդան[2]: Բայց ինքն Պապ նշկահեալ զկայսր Թէոդոս, զոր ի բուռն առեալ[xx] Տերինտեայ զօրավարին յունաց՝ խաղացուցանէ կապանօք առ կայսր, և անդ սպանին հրամանաւ կայսեր, թագաւորեալ ամս Զ: Եւ կացին եպիսկոպոսապետք [159] Հայոց յետ մահու[x] սրբոյն Ներսէսի ոմանք ի զաւակէ Աղբիանոսի եպիսկոպոսի Բզնունեաց, առն պատուականի, Շահակ և Զաւէն և Ասպուրակէս, որք ոչ արժանաւորք ինչ բարի յիշատակաց:

Եւ թագաւորեաց կայսր Թէոդոս փոխանակ Պապայ զՎարազդատ ոմն յԱրշակունի տոհմէ[xx], այր քաջ և պատերազմող, ահարկու մեծամեծաց և փոքունց. և սա նշկահեալ զկայսերբ՝ յղէ առ Շապուհ արքայից արքայ նուաճել ընդ նմա, և Մեհուժան Արծրունի[xxx] յղէ դեսպան առ Շապուհ զնոյն խորհուրդ հաստատել: Որոյ երթեալ առ Շապուհ յիշեցուցանէ նմա զհարազատէն իւրմէ Մեհուժանայ՝ միամիտ և հպատակ լինիլ արքայի, և զպատերազմացն գործ և զբազում աւարառութիւնս և զգերփանս Հայոց աշխարհիս ի Մեհուժանայ, և զմահն նորա ի ձեռանէ քաջին Սմբատայ Մամիկոնէի[3], գրգռէ զարքայ կատարել զասացեալսն Վարազդատայ թագաւորի Հայոց: Եւ մինչդեռ զայս խորհէին՝ եհաս [160] լուրն առ կայսր ի ձեռն Տիրենտեայ զօրավարին. և զի չև էր դարձեալ պատասխանի յարքայէն՝ հրաման եհաս ի կայսերէ առ Վարազդատ անյապաղ առ նա հասանել: Իսկ նորա տուեալ գնա ի կղզիս Ովկիանու[4] վախճանի անդ, թագաւորեալ ամս Դ: Իսկ Մեհուժան ծանեաւ զինչ

---

[159] x) Այլ օր.՝ յետ մահուան: xx) Ա ($^{1}/_{գ-ծ}$)՝ Յաշակունի տոհմէ: xxx) II (67), III (114)՝ նուաճեալ ընդ նմա և եղբայր Մեհուժան Արծրունի յղէ դեսպան: Ա ($^{1}/_{ճ}$-$^{2}/_{ч}$), I (72)՝ նուաճեալ ընդ նմա և Մեհուժան Արծրունի յղէ դեսպան:

[160] x) Ա ($^{2}/_{9}$ և ամենայն ուրեք)՝ Աշակ:

պատահելոց էր նմա ի կայսերէ և ի նախարարացն Հայոց, ոչ յաւել դառնալ ի Հայս. այլ անդ կեցեալ և անդէն վախճանեալ, ոչ արժանի ինչ գործ յիշատակաց ցուցեալ: Եւ էր կացեալ եպիսկոպոսապետ Հայոց Զաւէն, զոր յառաջագոյն ասացաք, յետ չորրորդ ամի Շահակայ:

Մեծն Թէոդոս յետ Վարազդատայ թագաւորեցոյց ի վերայ Հայոց զԱրշակ[×] և զՎաղարշակ զորդիսն Պապայ թագաւորի Հայոց. և յետ Բ ամաց վախճանի Վաղարշակ, թագաւորեալ ընդ եղբօրն բոլոր Հայոց: Որ և հուպ ժամանակաւ վախճանի և կայսր Թէոդոս, և առնուն զթագաւորութիւնն Ոնորէոս և Արկադ որդիքն Թէոդոսի[5]: [161] Եւ բաժանեալ թագաւորութիւնն Հայոց յերկուս, ի Յոյնս և ի Պարսս. Արշակայ գնացեալ զկողմամբ Միջագետաց, լաւ համարեալ ընդ ձռամբ քրիստոնեայ թագաւորի հնազանդել, քան Պարսկականն հնազանդել տէրութեանն. այլ և բազումք ի նախարարացն Հայոց ելեալ զհետ Արշակայ գնացին առ Արկադ, Սամուէլ Մամիկոնեան, որ սպան զհայր իւր Վահան և զմայր իւր Տաճատուհի վասն պարսկականին հնազանդութեան մոգութեան օրինացն, և Վասակ Արծրունի: Եւ այլք յաւագ նախարարացն գնացին ամենայն պնդակազմ սպառազինութեամբ ի Պարս՝ հնազանդել ընդ ձեռամբ հեթանոսական և բարբարիկոն[×] ազգին Սասանականին. որոց հնազանդութիւնն կորստեան պատճառք դտաւ աշխարհիս Հայոց: Եւ տային կարծիս պարսկականին՝ որպէս թէ հաւանեալ օրինաց նոցա[6]:

Իբրև գիտաց Շապուհ արքայ զոր գործեաց Արշակ՝ թագաւորեցոյց ի վերայ Հայոց զԽոսրով ոմն յազգէն Արշակունեաց: Եւ գրեաց [162] թուղթ զկնի նախարարացն Շապուհ, լուծանելով զպատճառ հատուածի նոցա. ասէ, զի կացուցի թագաւոր ձեզ յազգէ և ի դենէ ձերմէ, մի՛ ծանր թուիցի ձեզ դառնալ անդրէն և ունել զիւրաքանչիւր ժառանգութիւն.

---

[161] ×) Այլ օր.՝ բարբարոսական:

[162] ×) Այլ օր.՝ դարձջիք իւրաքանչիւր այսրէն:

××) Այլ օր.՝ յեկեղեաց գաւառ և անդէն:

մի՛ յամառիք զհետ Արշակայ և բնաւ սպառ սպուռ մերժեալ լինիք ի Հայրենեաց բնակութենէ, և կեայք պանդխտութեամբ կեանս, իւրաքանչիւր ի սուր իւր գտանել զբարձ և զգահ նախարարութեան. այլ դարձջիք այսրէն[×], և առանց աշխատութեան զերկիր իւրաքանչիւր կալարուք[7]: Որում ունկնդիր եղեալ՝ դարձան այր իւրաքանչիւր ի բնակութիւն իւր, և առեալ զգանձս Արշակայ բերին առ Խոսրով: Եւ եղեալ պատելազմ մեծ Արշակայ և Խոսրովու յեզր ծովուն Գեղամայ ի մօրին տեղւոջ՝ գնաց Արշակ փախստական յԵկեղեաց գաւառ և անդ[××] վախճանի իւրով մահու, թագաւորեալ ամս Է[8]:

Իսկ Յունաց առեալ կացուցին ի բաժնին Արշակայ հիւպատու և զօրավարս և կոմսունս, ոչ զոք թագ[163]աւորեցուցեալ այնուհետև[9]:

Իսկ Վասակ Արծրունւոյ[10] եկեալ առ Խոսրով և կալեալ զժառանգութիւն իւր և զգահ, յերկուս կողմանս բաժանեալ զնայեցուած խորհրդոցն, և կայր կեղծաւորութեամբ անհաստատագոյն և անօգուտ հնարիմացութեամբ, ընդ քրիստոնեայսն քրիստոնեայ և ընդ պարսկականսն զնոցայսն կեղծաւորէր:

Զայն ի փոքր ինչ աւուրց զապստամբութիւն ի մէջ առեալ Խոսրովայ ի Շապհոյ՝ ի Յոյնս ապաւինի, և խոստանայ զբոլոր Հայս նուաճել ընդ կայսերական իշխանութեամբ. քանզի յետ վախճանի Ասպուրակայ նստուցեալ էր Խոսրովու յաթոռ հայրապետութեան Հայոց զսուրբն Սահակ որդի սրբոյն Ներսէսի. և զնախարարսն դարձեալսն յԱրշակայ կացոյց յանձն իւր գահու, ընդ որ զչարացեալ Շապուհ, թէ ընդէ՞ր առանց իւր հրամանի զայն գործեաց՝ յղէ ի Հայս զԱրտաշիր որդի իւր, և ընկեցեալ զԽոսրով յաթոռոյն՝ կացուցանէ փոխանակ զՎաղարշ զեղբայր [164] Խոսրովու[11]:

Իսկ Վասակ Արծրունի խոյս տուեալ գնաց առ Արտաշիր Պարսից, խորհելով վասն սպարապետին մեծին Սահակայ, որպէս ի նմանէ Խոսրով զանձնիշխանականն օրինադրեաց հրաման. միանգամայն խորհէր վրէժխնդիր լինել ազգին Մամիկոնէից վասն սպանման Մեհուժանայ հաւոյն իւրոյ:

Ընդ որ յոյժ զչարեալ սքանչելին Աղան Արծրունի որդի Վասակայ ընդ հօրն անհմաստասէր բարուցն անխորհրդածութիւն և ընդ այնպիսւոյ աստուածամարտին Մեհուժանայ զթասիրաբար վարել ազգականութեամբ, զոր ատել արժան էր և չար ի չարի վերայ, թէ հնար էր՝ հասուցանել. և ելեալ Աղան գնաց առ սուրբն Սահակ, և զէնընկեց եղեալ առաջի նորա՝ մերկանայր զհանդերձն զինաւորական, և ողբայր ի վերայ աշխարհիս Հայոց, ընդ նուազել զօրութեան թագաւորութեանս Հայոց և ընդ բռնազբօսութիւնն Պարսից: Առաւել ի սուգ մտեալ և յողբս անմխիթարս վասն ազգին իւրոյ Արծրունեաց, որ դիւրամոռաց [165] զերախտիսն Քրիստոսի համարէին, միայն զկնի փառաց աշխարհիս ընթանային և մոգութեան մոխրապաշտութեանն հետևէին: Եւ յերկարեալ Աղան զողբսն, ջերմեռանդն յորդահոս արտասուաց բղխմունս առաջի սրբոյն Սահակայ և մեծ սպարապետին Սահակայ և այլոց նախարարացն. մինչև նոքա խոնարհեալ առ նորայն խորհրդական առ յապա պատահմունսն, որ հանդերձեցաւ աշխարհիս Հայոց, իբր մարգարէականի իմն գոգցես տեսաւորութիւն, և միաբան յարտասուս եղեալ[x] լային, և դառնապէս[xx] ողբս յողբս հարեալ անմխիթար սգոյ՝ անկեալ Աղան յերեսս առաջի սրբոյն Սահակայ և առաջի սպարապետին Սահակայ՝ ընդունել զսքեմ կրօնաւորութեան մոնազնութեան անապատասէր միայնական ստանալ իւր վարս: Զոր առ վայր մի ոչ առեալ յանձն սրբոյն Սահակա՝ ասէ «լուռ լե՛ր առ յաժմ, և յայլում ժամու հոգացայց վասն որոյ խորհիս. մի գուցէ մատուցեալ առ Արտաշիր ոմանց սուտակասպաս չարախորհաց կեղծաւ[166]որութիւն իմն զմէնջ առնուցուն, և հայր քո Վասակ խորհիցի ինչ առ արքայի, և աղմուկ և չփոթ ինչ յուզիցէ հայր քո, որպէս թէ զապստամբութեան ինչ խորհել կարծիս զմէնջ առնուցուն: Բայց Աստուած ըստ յօժարութեան քո սիրոյդ կատարեսցէ զկամս

[165] x) III (114)՝ հեղեալ. Ա ($^{2}/_{\text{վ}}$), I (76), II (70)՝ եղեալ: xx) I (76, ծն. 1), II (70, ծն. 1)՝ հին օր.՝ դանապէս. Ա ($^{2}/_{\text{գ}}$)՝ դառնապէս:

քո որպէս և հաճոյ Թուիցի առաջի Տեառն»: Եւ ընկալեալ զխրատ նորա երանելոյն Աղանայ անսայր դիպող աւուր[12]:

Արկադեայ կայսեր թագաւորեալ ամս ԻԳ մեռանի սաստկակոծ պատուհասիւ յաղագս մեղանացն առ Յոհան Ոսկեբերան: Եւ թագաւորէ ընդ նորա որդի իւր Փոքր Թէոդոս. և բազում և ազգի ազգի հոգաբարձութեամբ տուեալ օգնականութիւնս Հայոց աշխարհիս, շինելով քաղաք Թէոդուպօլիս ի Կարին գաւառի[13], և զօրս կողմնակալս ի պահեստ՝ ընդդէմ կալ պարսկական յարձակմանցն: Զի Վռամ և Յազկերտ զկէս աշխարհիս յինքեանս յանգուցեալ՝ զբոլոր ապա աշխարհիս զտիրելն յոխորտային: Եւ եղև ի վախճանելն Խոսրովու Հայոց թագաւ[167]որի, որ եկաց ի տէրութեանն ամս Դ՝ ոչ առ յանձն Յազկերտ նստուցանել զոք ի տոհմէ Արշակունեաց թագաւորել Հայոց զի այնու թերևս քաջ կարասցէ գլել զինքեամբ զզօրս Հայոց նախարարօք հանդերձ. այլ թագաւորեցոյց նոցա զորդի իւր Շապուհ, որ եկեալ ոչ կարգաւորաբար աշխարհախնամ հոգածութեամբ յարդարէր զկարգս աշխարհիս. միայն որսոց և խաղուց պարապ զինքն հաճոյանայր կացուցանել: Առ որ հայեցեալ նախարարքն Հայոց՝ կատականօք և արհամարհանօք ընդ նա նայէին, որպէս Ատոմ Մոկաց իշխան՝ յորսն Աստուածորդի զնա ձայնէր, զի այնու փքացեալ առ հուրն յաւակնեալ զինքն տացէ. դարձեալ կնամարդ զնա կոչելով ընդդէմ միմեանց անուանձայնէ. և ինքն Ատոմ հատեալ գնայ ի կողմն Մարաց[14]: Եւս քաջասրտագոյն Շաւասպ Արծրունի, խաղս ձիընթացիկ արշաւանաց գնդակացն՝ զհետ մտրակեալ հանէ ի նմանէ զգնդակն բազում անգամ ասելով, «ա՛ղջկամարդ, ի բաց լեր [168] յասպատակէ ասպարիսիս, ա՛յր կանացի, և ծանի՛ր զքեզ»: Իսկ Շապհոյ զմական գնդին ի դիպուածս Շաւասպայ շարժեալ. զոր արհամարհեալ Շաւասպ զոր արձակերեսան զերիվարն ի սիգաքայլ արշաւանս արարեալ՝ աներկիւղ համարձակութեամբ ճանց գնաց ճեմ զճեմի առ զօրավարն Անատողի: Եւ հրամանաւ ինքնակալին Թէոդոսի կայսեր հաւատայ նմա զհազարապետութիւն բաժնին Հայոց, զՄիջագետս մինչ ի յանցս Եփրատ գետոյ: Եւ կացեալ Շաւասպ առ կայսեր ամս Դ:

Իսկ Շապհոյ լուեալ զհիւանդանալ հօր իւրոյ՝ փութացաւ

գնաց ի Պարս. և վախճանեալ հայրն նորա՝ ի նմին աւուր մեռանի և ինքն սրով յիւրայոցն: Եւ քանզի վախճանեալ էր Համազասպ Մամիկոնեան, որ ի ժամանակին կալեալ էր զմարզպանութիւն և զզօրավարութիւն Հայոց ի խնդրոյ սրբոյն Սահակայ յերկուց թագաւորացն Յունաց և Պարսից՝ ոչ ոք այնուհետև առաջնորդէր Հայոց աշխարհիս. այլ քայքայեալ ցրուեցան յոր կողմ և [169] անճապարել ախորժեաց ոք, քանզի հէնք բազումք կալան զերկիրս[15]:

Եւ թագաւորեալ Վռամ որդի Յազկերտի՝ կոչէ ի դուռն զսուրբն Սահակ Հայոց կաթողիկոս: Որոյ առեալ զթոռունս իւր զՀմայեակ և Համազասպեան[×] գնաց առ արքայ ի Տիզոն: Քանզի Վարդան անցեալ գնացեալ էր սուրբ վարդապետաւն Մաշտոցիւ առ կայսր Թէոդոս և առ Ատտիկոս արքեպիսկոպոս հանդերձ թղթովք սրբոյն Սահակայ, տանելով ընդ իւրեանց և զգիր և զբառ հայերէն դպրութեան. զոր ընկալեալ սուրբ հայրապետին և բարեպաշտ թագաւորին Թէոդոսի հինգ թղթովք և հինգ պատասխանեօք՝ կարգէ զսուրբ վարդապետն ընդ վարդապետութեան աթոռակալութեան սրբոյն Յոհաննու Ոսկեբերանի և այլոց քաջաց և գլխաւոր վարդապետացն, իսկ զՎարդան կարգէ ստրատելատ Հայոց[16]:

Իսկ ի հասանել սրբոյն Սահակայ ի դուռն հանդերձ նախարարօքն՝ գիջանէ ցածնու Վռամ ի բարկութենէ վրէժխնդրութեան Հայոց քինահանութեան[××] անարգանաց Շապհոյ, և ընդ Յուն[170]աց զսերտ խաղաղութիւն ունելով. և ի խնդրոց նախարարացն և սրբոյն Սահակայ թագաւորեցուցանէ Հայոց Վռամ երկրորդ զԱրտաշէս, որ և Արտաշիր: Եւ ի թագաւորել Արտաշրի խաղաղանայր երկիրս առ վայր մի ի չփոթմանց պարսկական գնդի. և հարկացն արքունի կանգնեցան դիւանքն, զի այն Ն ամ բեկեալ հարկք և զաւրք ի յարքունէ

---

[169] Ա (1/ա.ա)՝ զՀամազասպեան: ××) Ա (2/ա.ա)՝ քինահանութեան: I (78). II (72). III (116)՝ քինահարութեան: ՆԲՀ, II, էջ 1000 քինահանութեան:

Պարսից: Իսկ Արտաշիր յանդգնագոյնս և առանց պատկառանաց զհետ ամօթալից ախտին գիջութեան իգամոլ ցանկութեանցն ընթացեալ՝ ոչ միայն ի գիշերի այլ և ի տունջեան, յանդիման արեգական, անխտիր կատարէր զցանկականն, զանասնական գիջութեամբքն զանցուցեալ: Ընդ որ զչարեալ նախարարքն Հայոց՝ տաղտկացան ընդ գիջանալն, և խորհեցան զոչ թագաւորելն Արտաշրի ի վերայ Հայոց. որք մատուցեալ առ սուրբն Սահակ զեկուցանել նմա զոր ինչ խորհինն, և թևակոխէին առ Պարսից արքայն, զոր և արարին իսկ. որք գնացին առ Վռ[171]ամ, և ոչ առ Թէոդոս բարեպաշտ և զուգափառ քրիստոնեայ թագաւոր, զեղխեցան ամբարշտաբար առանց խորհրդոց: Եւ Վռամ քանզի կարի ախորժելով ունկն դնէր և յօժարէր բառնալ զթագաւորութիւն Հայոց՝ փութացաւ կոչեաց դարձեալ ի դուռն զԱրտաշիր և զսուրբն Սահակ բազմութեամբ նախարարացն Հայոց. և հարցեալ վասն որոյ ամբաստանն եղեն զԱրտաշրէ. զոր ոչ առ յանձն սուրբն Սահակ գրել ինչ վասն որոյ չարաբանեն զԱրտաշրէ:

Իսկ նախարարացն ընդդիմաբանեալ սրբոյն Սահակայ՝ իբր ոչ զնոցայն հաստատել ախորժակս, մատուցեալ առ Վռամ հանդերձ Սուրմակաւ ումեմն[x] Արծկեցւոյ մոլեգնոտ փառամոլ աբեղայի՝ սկսան ազգի ազգի լեզուագարութեամբ չարախօսել զսրբոյն Սահակայ, որպէս թէ ոչ կամի զթագաւորելն Պարսից և հարկել Հայոց և զօրավարել, այլ զթագաւորելն Յունաց ցանկայ[xx] գտանել. նա և հաւատարմութիւն իւրեանց առեալ զթուղթսն սրբոյն Սահակայ առ կայսրն և առ հայրապետն, և զերթ[172]ալն Մեսրովպայ և Վարդանայ ի Յոյնս առաջի արկանէին, և զգալն Անատոլեայ և զշինել քաղաքին ի Կարին գաւառ: Եւ անմիաբանք լեալ ընկեցին զսուրբն Սահակ յաթոռոյ եպիսկոպոսութեանն և զԱրտաշիր ի պատուոյ թագաւորութեան. և կա-

---

[171] ×) Ա (2/6)՝ ուրեմն: ××) Ա (2/6ն.)՝ ցանկալ:

*ցուցին հակառակաթոռ սրբոյն Սահակայ զՍուրմակ մոլի, և ապա զԲրքիշոյ Ասորի, և ապա զՍամուէլ[16], որք ոչ ըստ օրինի եկեղեցականաց կրօնից զվարսն յարմարէին, այլ ընդ մարզպանին Մշկանայ[17] լծակցեալ հոգալ զաշխարհիս: Մշկանս այս փոխանակ Արտաշրի մեր Թագաւորի մտեալ ունի զաշխարհս հրամանաւ Վռամայ Պարսից արքայի: Իսկ նախարարքն Հայոց իբրև տեսին յերկոցունց կողմանց զանկարգ և զանտեղի աշխարհիս պիտաւորութիւն՝ յապաշաւանս դարձեալ ի վերայ անցից անցելոց զոր ախորժելովն խնդրեցին՝ դարձան առ Վռամ, խնդրեցին իրեանց կաթողիկոս զսուրբն Սահակ: Իսկ Վռամ յերկմիտս եղեալ, ոչ կարէր կատարել զխնդիրն, և կասկածան[173]օք տարուբերէր ի միտս, մի գուցէ ոչ առնելով իմ զոր խնդրեն՝ առ կայսր հատուածեալ անկանիցին նախարարքն, հարկել և զինաւորել կայսեր:*

*Իսկ Վաչէ Արծրունեաց տէր և Հմայեակ Աշոցաց տէր և այլք յանդուցեալ ի նոսա՝ հաճեցին զկամս Վռամայ, և թոյլետուն[x] զով և հաճոյ թուիցի արքայի. նորա զՍամուէլն զայն կացուցանէ ի տեղի եպիսկոպոսապետութեանն Հայոց, որ յետ Ե ամաց վախճանի, կեցեալ կեանս արտաքոյ իրաւանց[18]:*

*Իսկ Անատողի զօրավարն Յունաց զՀաւուկ ոմն Կուկռճացի կացոյց մասինն Յունաց եպիսկոպոսապետ[19]. և այսպէս աղմկեալ և շփոթեալ երկիրս Հայոց՝ կեայր անմիաբանութեամբ, լի անկարգութեամբ, ըստ յօժարութեան Վաչէի Արծրունոյ:*

*Եւ եղև ի դառնալն սրբոյն Սահակայ ի Պարսից՝ եկն առ նա դարձեալ Աղան Արծրունի, և ընկալաւ ի նմանէ սքեմ կրօնաւորութեան. և երթեալ բնակէ առանձնապէս ի Գողթն գաւառի ի տեղւոջ վարդապետութեան սրբոյն [174] Մեսրովպայ, ճգնասէր հրեշտակակրօն վարուք, երանելի մարդկան և աճարկու դիւաց[20]: Ապա իբրև վախճան առնոյր կարգեալ*

---

*[173] x) Ա ($^{1}/_{13}$)՝ և թոյլ երան:*

եպիսկոպոսացն որք ի Պարսից, որք առանց եպիսկոպոսին Կեսարու ձեռնադրեցան յերանեալ եպիսկոպոսէ[21] միաբան ապա նախարարքն Հայոց եկին առ սուրբն Սահակ, անկեալ առ ոտս նորա մեծաւ հառաչանօք՝ մի՛ յիշել զանցս զանցիցն անցելոց, զոր արարինն առ սուրբն, այլ դարձեալ կալցի զաթոռ Հայրապետութեանն. և խոստանային գնալ ըստ հրամանի նորա: Զոր ոչ առ յանձն լսել նոցա. այլ եկ պատմեաց նոցա զհանգամանս տեսլեանն, զոր եցոյց նմա Հոգին սուրբ՝ որ ինչ առ յապա ժամանակս գործելոց էր, զքառնալ եպիսկոպոսապետութեանն և թագաւորութեանն ի տանէն Արշակունեաց, և զկարգապետել անարժանիցն, և զընտրութիւնն սրբոց, և դարձեալ զնորոգումն Հայրապետութեան և թագաւորութեան ի նոյն զարմէ Արշակունեաց, և զգալուստ Նեռինն, և զգալուստն Քրիստոսի, և զհանդերձեալ դատաստանացն, և զ[175]հատուցումն իւրաքանչիւր ըստ գործս իւր, զոր եւես ի մեծի հինգ շաբաթոջն[22]:

Եւ այս ամենայն այսպէս եղեալ, կեցեալ սուրբն Սահակ, <որոյ ժամանակ կենացն տեւեալ ձգեալ ամս ԾԻ լի և պարարտ ծերութեամբ> փոխի յաշխարհէս ի կարգս հրեշտակաց, և տարեալ հանգուցանեն զնշխարս սրբոյն յԱշտիշատ Տարօնոյ ի տեղոջ վկայարանի սրբոյն Յոհաննու Մկրտչին և Աթանագինի վկային: Ի նմին ամի յետ վեց ամսոյ անցանելոյ փոխի և սուրբ վարդապետն Մաշտոց. և խաչանշան լուսով խաղացուցանեն բազմութեամբ նախարարացն Հայոց ի ձեռն Վահանայ Ամատունոյ[23], որ էր ի ժամանակին սպարապետ Հայոց. և տարեալ հանգուցանեն զնա ի Յօշական գեօղ, ի գաւառին որ կոչի Ոստն Արագածոյ, <զոր և երանելին Կորիւն, ուսումնակից Մովսէսի և աշակերտ սրբոյն Մաշտոցի[xx] յիւրում ստուգաբանեալ պատմութեան զայսուսիկ մեզ հաւատարմացուցանէ> [24]:

Յամի երկրորդի Յազկերտի որդւոյ Վռամայ երկրորդի՝

---

xx) Ա ($^{2}/_{12-13}$)՝ և աշակերտ սրբոյն Մաշտոցի: I (82), II (76), III (122)՝ և աշակերտ սրբոյն Մեսրովպայ:

բարձաւ Թագաւորութիւնն ի տանէն Հայոց, որ տևեաց ամս ՆԺԵ և վախճանեցաւ[25]:

Յետ բառնալոյ Թագաւորութեանն ի տանէն Արշակունեաց, և Հայրապետութեանն ի տանէն սրբոյն Գրիգորի՝ Ղևոնդ ումն աշակերտ [176] սրբոյն Մաշտոցի տեղապահ լինէր սրբոյն Սահակայ, և Յովսէփ եպիսկոպոս և Մովսէս և Մեղէս[26]: Իսկ զտեղի Թագաւորութեանն Հայոց հրամանաւ Յազկերտի ունի Մշկան զօրավար Պարսից:

Իսկ Վարդան Մամիկոնեան, որդի Համազասպայ Մամիկոնէի, Թոռն սրբոյն Սահակայ, խոյս տուեալ գնաց զկողմամբքն Մոկաց, ի խոխոմս Տաւրոսական լերինն, ի լեսուրս[27] Ջերմաձորոյ, և բնակէ յամրոցին, որ այժմ Չողայլ[28] վասն անխեղեդ ամրութեանն գեղջկաբանեն: Եւ քանզի յետ մահուանն մեծին Սահակայ Բագրատունոյ սպարապետի սպետի և զօրավարի Հայոց, հաւատացեալ էր Թէոդոսի կայսեր զսպարապետութիւնն Հայոց Համազասպ Մամիկոնէի և որդւոյ իւրում Վարդանայ՝ երկեաւ Վարդան ի մարզպանէն բնակել յանդորրու, այլ այնր աղագաւ էանց գնաց յամուրսն Մոկաց, և կայր մնայր ի նախախնամութենէ Աստուծոյ այցելել աշխարհիս Հայոց: Եւ կոչեալ առ ինքն զեպիսկոպոսն Մոկաց զՅօհան և զեպիսկոպոսն Ռշտունեաց Սահակ [177] և զեպիսկոպոսն Անձաւացեաց[×] Շմաւոն, և կարգէ զդասս պաշտօնէից կատարել զպաշտօն Տեառն ի տուէ և ի գիշերի անձանձրոյթ աշխատութեամբ և առատաձեռն տեսչութեամբ աղքատաց, զի գտցեն զողորմութիւն ի Քրիստոսէ[29]:

Սահակս այս այն Սահակ է, որոյ հրամանաւ գրեաց մեծ վարդապետն Մովսէս տիեզերահռչակեալ քերթողն զգիրս Պատմութեան Հայոց մեծաց, հրաշազան յօրինուածով, սկսեալ յԱդամայ մինչ ի կայսր Զենոն... որպէս գրեալ աւանդեցաւ մեզ այս ի չորրորդ դրուագի խոստաբանեալ պատմութեանն Մովսէսի Խորենացւոյ, վերադարձութեան ի

[177] ×) Անձաւացեաց ուղղ.՝ Անձեւացեաց (Նախն.՝ 326):

վերայ երեցունց դրուադեալ հատուածին...[30]: Ուստի և մեք ըստ կարի մերում անցեալ գտաք զհամառօտութիւն զրուցատրութեանս, զոր շարադրեալ յայտ[178]արարութեամբ յանդիման կացուցաք քեզ, քա՛ջդ բանասիրաց, Գագիկ Վասպուրական և մեծ զօրավար Հայոց[31], իսկ որպէս գրեալ հաստատեալ կայ հաւատարմապէս վարդապետացս քաջաբան և լի իմաստութեամբ շարագրածք հրաշափառագոյնք:

Ապա փոյթ ինձ Թովմայի, որ ոչ վերջոտնեալ կալայ ամօթով զյետին տեղին, այլ փոխանակ սոցա մատեայ ի տեղիս յայս, ձեռն արկեալ անիմաստաբար լի անհմտութեամբ և անհանճարութեամբ բուռն հարկանելով զմեծ զայս քերթածութենէ: Բայց հրաման քո ճոխութեանդ ձգեաց զիս յայս մեծ ձեռնարկութիւնս, սակս որոյ բացաձգեցայց արտաքոյ շաղակրատոյ լեզուաց փառամոլ ոգոց:

Կատարեցաւ Դպրութիւն Առաջին Պատմութեան Հայոց ըստ ազգաբանութեան Արծրունեաց սեռի[32]:

# ԴՊՐՈՒԹԻՒՆ ԵՐԿՐՈՐԴ ՊԱՏՄՈՒԹԵԱՆ ՀԱՅՈՑ[x]

(Ա)

*[179] Յետ բառնալոյ թագաւորութեանն Հայոց ի տանէն Արշակունեաց՝ ապա մարզպանք Պարսից կալեալ տիրէին աշխարհիս. և գլխաւորք Հայոց մեծաց ամրանային ի քարանձաւս ամրաշէն բերդիցս, ըստ տեղիս տեղիս և ըստ աշխարհս աշխարհս. և պարսկական բռնութիւնն զօրացեալ աճէր, և հարկապահանջք գունդքն ել և ելս առնէին սաստիկ խոշտանգանօք[1]:*

*Ընդ նոյն ժամանակս խորհուրդ ի մէջ առեալ Շաւասպ Արծրունի եղբայր Վասակայ հօր Աղանայ Արծրունոյ, և խորհեցաւ զտիրելն Հայոց, և ելեալ գնաց զհետ անհանճար իմացմանց առ Պերոզ[2] արքայ Պարսից, և յանձն առեալ ինքնակամ մոլորութեամբ զօրէնս մազդեզանց մոխրապաշտ յամառութեանց, և խնդրեալ յարքայէ զիշխանութիւն Հայոց: Եւ նորա ըստ ցանկութեան սնոտի փառամոլութեանն կատարեալ զխնդիրն. և դարձեալ դառնայ ի Հայս, ընդ իւր ածելով մարզպան զՎնդոյ Պարսից մոգպետ[3]: Եւ ընդ մտանելն նոցա յաշխ[180]արհս՝ վրդովեցին զուխտ քրիստոնէութեան, և փոյթ ընդ փոյթ ձեռնամուխ եղեն աւերել քանդել զեկեղեցիս, զտունս աղօթից կործանել. զսեղանս խորհրդականս փրկագործութեանն յատակել, հիմն և վեր[x] տապալել զաւազանն մաքրափայլ լուսաւորութեանն Հոգւոյն սրբոյ, դառնապէս չարալլուկ չարչարել զքահանայս զպաշտօնեայս Նորոց կտակարանաց, զարս և զկանայս մատնել ի*

---

*[179] ×) Այսպես է ձեռագրում (Ա, $^{1}/_{1\text{-}2}$)՝ և I-ում (84). II (77), III (124)՝ Դպրութիւն երկրորդ:*

*[180] ×) I (85), II (77), III (124)՝ հիմն ի վերայ. Ա ($^{1}/_{9\text{-}10}$)՝ հիմն ի վեր. (տե՛ս նաև՝ Նախն., 261): ××) I (85), II (77, ծն. 1)՝ հին օր.՝ հարկապահանջութեամ, սակայն Ա ($^{1}/_{2\text{-}14}$)՝ հարկապահանջութեամբ: ×××) Ա ($^{2}/_{16\text{-}17}$)՝ ի դուռն քաղաքին. ուղղ.՝ ի Դուին քաղաքին (Նախն. 363):*

բանդս ի խոշտանգանս ծանրաբեռն հարկապահանջութեամբ[xx], զի այնու դիւրաւ կարասցեն հերքել մերժել ի բաց կալ ի սուրբ հաւատոյ պարկեշտ կրօնից քրիստոնէութեան: Եւ բազում այն էր որ մարտիրոսական ճգնութեամբ վկայեցին, քան որք դրդուեցան, առ ոչինչ համարելով զյափշտակութիւն ընչից և ստացուածոց և զմահս դառնագոյնս: Եւ հասեալ Շաւասպայ Արծրունւոյ ամբարշտի յԱրտաշատ հանդերձ մարզպանաւն՝ շինեն ի դուռն քաղաքին[xxx] զորմզդական մեհեանն, և զկրակապաշտութեան մոլութիւն բորբոքեն ի նմա. և կայր աշխարհս ի մեծ վտանգաւ[181]որ աղէտս:

Այս լուր դառնութեան եհաս առ մեծն Վարդան Մամիկոնեան, որ էր ամրացեալ ի Տաւրոսականն[x] Ձռայլ: Եւ առ չհանդուրժել այնքան եկեալ հասեալ վտանգաւոր նեղութեանցն, և գազանեղէն զայրացմամբ մրմռեալ յոգի իւր ի վերայ կորստեան սուրբ հաւատոյս և կործանման աշխարհիս Հայոց՝ փութացոյց գիր պաղատանաց առ Տաճատ Ռշտունեաց տէր և առ Վախրիճ Անձաւացեաց տէր, զեկուցանել նոցա զեղեալսն: Եւ նոքա Թափառնակի[xx] անյապաղ հանդերձ իւրաքանչիւր զօրու եկին հասին առ մեծն Վարդան, և զզօրս լեռնակողմանն ընդ իւրեանս ածելով, ոչինչ աւելի քան զհազար և երկերիւր այր, և յանկարծօրէն յեղակարծ երագութեամբ հասին ի վերայ Շաւասպայ և մարզպանին Վնդոյի: Եւ քանզի էին բանակեալ ի խառնուրդս Երասխայ և Մաւրին մեծի՝ պատահի յառաջ Շաւասպ Արծրունի, յորոյ վերայ կալեալ և կանչեալ քաջն Վարդան իբրև զառիւծ, իբրև զկորիւն առիւծոյ, [182] և առ ուժոյ և երագութեան[x] ձեռինն ի վերայ ձգեալ զմիողնին՝ յերկուս կտրէ զՇաւասպն:

Իսկ Տաճատ և Վախրիճ ի մէջ փակեալ զմարզպանն և զորդի նորա զՇիրոյ՝ ձերբակալ արարեալ ածեն ի Դուին, և ի

[181] x) Ա $(^1/_5)$՝ տորոսականն: xx) Թափառնակի ուղղ.՝ փութանակի? (Նախ., 368):

[182] x) Յօրինակն՝ եագութեան: Ա $(^1/_{1-2})$՝ երագութեան:

Հուր կրակարանին բորբոքեալ՝ աստուածակէզ արարին զնա յորմզդական մեհենին. և զՇիրոյ կախեն զփայտէ ի վերայ կրակարանին. և զարսն գետավէժս և սրախողխողս արարեալ վատնեն, և զփախստեայսն տանին անցուցանեն յայնկոյս քան զքաղաքն Նախճաւան, և ինքեանք դառնան մեծաւ յաղթութեամբ: Եւ քանդեն աւերեն զմեհեանն և յատակեալ զտեղին՝ շինեն նորին քարամբք զմեծ եկեղեցին զսուրբ Գրիգորն ի Բլուր տեղւոջն, և փոխեն անդ զկաթողիկոսն Հայոց զԳիւտ և շինեն նախարարքն Հայոց իւրաքանչիւր պալատս արքունականս և դաստակերտս յականաւորս, և զքաղաքն որմափակօք պարսպեն, և խաղաղեցուցանեն զերկիրս: Իսկ զԹագաւորաբնակ տեղին մեծին Տրդատայ տան ի ձեռս Վահանայ Արծրունւոյ[*] շինել նմա տուն Թագաւորաց, [183] արարս[x] պատրաստութեամբ. քանզի խորհեցան Թագաւորեցուցանել զնա ի վերայ Հայոց, զի էր այր սրտեայ և ուժեղ, քաջախորհուրդ և իմաստնախորհ, խոնարհ, առատաձեռն և զուարթամիտ: Բայց յետոյ անմիաբան գտեալք նախարարքն Հայոց՝ Թողին զոր խորհեցանն վասն Թագաւորելոյ Վահանայ, և անցին գնացին առ մեծն Վարդան. գնաց և Վահան զհետ նախարարացն[xx] առ Վարդան յառաջագոյն, տալ նմա զվերակացութիւն Հայոց. և եղեն հնազանդեալ նմա զամենայն աւուրս Վարդանայ[5]:

Բայց արքայն Պարսից հեռացեալ պատերազմաւ ի Քուշանն ի դուռը Ճորայ. և երկիրս Հայոց յապահովանայր ի հինիցն Պարսից. և անդ սպանանի արքայն ի Քուշանաց, և Թագաւորէ ընդ նորա Յազկերտ[6]: Եւ սկսաւ ոգորել ընդ իշխանս Հայոց մեծաց խրոխտանօք[xxx], որպէս ցուցանեն յիշատակարանքն առաջնոց պատմագրաց զաւերումն Հայոց և զյաճախել նեղութեանցն և զանթիւ բազմութիւն վկայից, որք վասն Քրիստոսի նահատակեցան, և զքաջապէս արիա-

---

[182-183] x) Թագաւորաց արարս. ուղղ.՝ Թագաւորացաբարս (Նախն., 398):

[183] xx) Այլ օր.՝ ընդ նախարարսն: xxx) Այլ օր.՝ խորխտանօք:

նալ [184] սրբոց քահանայիցն, և անդ զբարիոք պատերազմն պատերազմեալ ի մեծ անապատին յԱպար աշխարհին, և որ ինչ այլն ամենայն. զոր աւելորդ համարիմ երկրորդել զմիանգամ[x] ասացեալսն[7]:

Բայց իբրև եղև մեծ պատերազմ սրբոյն Վարդանայ ընդ Մշկանին և ընդ զօրս Պարսից ի յԱւարայրեան դաշտինxx, յԱրտազական գաւառին. և անդ յԱստուած խրախուսեալ սուրբ աստուածաբանակ զօրացն Հայոց՝ կատարեցան ի Քրիստոս: Եւ անդ Վահան Արծրունի խոյակապ և յականաւոր քաջամարտութեամբ ընդ սրբոյն Վարդանայ ճակատ առ ճակատ վառեալ զպատերազմն, իբրև հուր ընդ եղէգն ճեմելով[8] ի մէջ քաջ ախոյեանացն Պարսից:

Եւ իբրև ռազմ երկոցունց կողմանցն խռնեցաւ[xxx], և ձախոյ կողման[xxxx] թևն Հայոց պարտել[xxx] սկսաւ, և սրբոյն Վարդանայ մտրակեալ զերիվարն ի փախուստ զախոյեանսն Պարսից դարձուցեալ և զկողմն իւրոյ ձեռին գնդին զօրացուցեալ՝ անդ Վահան Արծրունի ընդմիջեալ զգունդն Պարսից դարձուցանէ ընդդէմ Վարդ[185]անայ. և անյապաղ մինչ այս մինչ այն՝ նոցա հարեալ ընկեցեալ ի զօրացն Պարսից գունդ մի հարուստ արք իբրև ՃԽ: Ի վեր կառուցեալ զաչս սրբոյն Վարդանայ՝ տեսանէ զանօրէնն Վասակ Սիւնեաց տէր, և զհետ նորա աճապարեալ արկանեն զնա ի յամբափակ զինեալ վաշտն ի մէջ փղացն. և քաջն Վահան Արծրունի ընդ նմա նիզակակցեալ՝ մեռանին ի միասին քաջքն և ընտիրքն[xx], մեծ նահատակք[xxx] Վարդան և Վահան, և զվկայիցն անուն ժառանգեալ կատարեցան ի Քրիստոս սուրբ գունդն Հայոց, ՈՂՋ[xxxx] ոգիք: Եւ պատմի այս ի համառօ-

---

[184] x) Ա (1/9)՝ զմիանգամայն. ուղղ.՝ զմիանգամ (Նախն. 237):
xx) Գ՝ պատերազմն սրբոյն Վարդանայ ընդ Մշակին և զզօրսն պարսից յաւարայրեն դաշտին: xxx) Գ, Դ, Ե, Զ՝ խառնեցաւ:
xxxx) Դ՝ ձախակողման: Զ՝ ձախակաղմն:

[185] x) Դ, Ե՝ արքայի: xx) Բ, Գ, Ե, Զ՝ ընդիրքն: xxx) Գ, Զ, չիք՝ մեծ նահատակք: xxxx) Բ ողջ: xxxxx) Ա (2/9)՝ Բ, Գ, Ե՝ ի գիրս Եղիշէի պատմագրի: I (88), II (80), III (128) չիք՝ Եղիշէի: xxxxxx) Բ քաջութեանդ:

տութեան Աբրահամու Խոստովանողի[9]:

Բայց թէ է՞ր աղագաւ պատմութիւն վկայութեան Վահանայ ոչ է գրեալ ի գիրս Եղիշէի[xxxxx] պատմագրի՝ ստուգապէս առանց յերկուանալոյ ցուցանեմ քում ուսումնասէր քաջահմտութեանդxxxxxx:

(Բ)

## ՎԱՍՆ ԱՐԻՒՆԱՀԵՂԻՆ ԲԱՐԾՈՒՄԱՅԻ[1]:

Ընդ ժամանակս Պերոզի[xxxxxx] արքայից[xxxxxxx] արքայի, ումն յաղանդոյն Նեստորի Բարծումայ անուն, [186] որ ունէր զանուն եպիսկոպոսութեան, զօրեղագոյնս[x] զնեստորական հերձուածոյն բուռն հարեալ, և քսութեամբ զնախարարացն Հայոց[xx] առ Պերոզ վարելով՝ բազում օճիրս արիւնհեղութեան[xxx] գործեաց:

Ի ժամանակին յայնմիկ էր ճոխացեալ պանծալի աթոռակալութեամբ սրբոյն Գրիգորի տէր Քրիստափոր Հայոց կաթողիկոս[2] գրէ առ կողմանս Ասորեստանի զգուշացուցանելով՝ մի խառնել[xxxx] ընդ նեստորականսն. զնոյն գրէ և առ որս ի Խուժաստանին[xxxxx] էին ժողովուրդ ուղղափառացն: Դարձեալ գրէ և ի կողմն Դերջանոյ[xxxxxx], և Խաղտեաց ձորոյ[xxxxxxx] բնակիչսն և աշխարհական տեարս և առ եպիսկոպոսունսն: Զոր զթուղթսն[xxxxxxxx] խաբող պատրանօք ի բուռն առեալ Բարծումայ՝ ետ տանել առ արքայ Պերոզ, և ասէ թէ «զայս ամենայն զոր գրէ կաթողիկոսն Հայոց և առ ապստամբութիւն խորհել առ ի քէն, և զնախարարսն Հայոց զՅունաց թագաւորին[xxxxxxxxx] խորհել հնազանդութիւն. արդ

xxxxxx) Գ՝ Մերոզի: xxxxxxx) Դ չիք՝ արքայից:

[186] x) Ա ($^{1}/_{2-3}$)՝, Գ, Դ՝ զօրագոյնս: xx) Դ չիք՝ Հայոց: xxx) Գ, Դ՝ արեանհղութիւն: xxxx) Բ, Գ՝ չխառնեալ: xxxxx) Գ՝ ի Խուժաստանէին: xxxxxx) Զ՝ տերչանու: xxxxxxx) Դ՝ խաղիձորոյ: Զ՝ Խորդիձորոյ: xxxxxxxx) Բ, Դ՝ Զորոյ Թուղթսն: xxxxxxxxx) Բ՛ թագաւորէն: xxxxxxxxxx) Գ՝ արդ տեսանել վարդապետէ վասն այդր:

տեսանել պարտ է վասն այդր»[xxxxxxxxxx]։ Եւ ինքն Բարձումայ ի չքմեղս լինելով՝ եկն ի Հայս[3] [187] յԱրզնարզիւն և յաշխարհն Մոկաց, զի անդ զնեստորական աղանդոցն սերմանիցէ սերմանս։ Եւ սրբոյ վարդապետին մեր Եղիշէի[x], որ յայնմ ժամանակի ի Մոկաց բնակէր աշխարհին[xx] եկեալ առ նա Բարձումայ, խնդրեալ զպատմողական գիրսն Հայոց, զոր գրեալ էր հրամանաւ սրբոյն Վարդանայ. և նորա կատարեալ զխնդրելին։ Ի նմին ժամու զգացեալ վասն նորա մեծ իշխանին Արծրունեաց Մերշապհոյ, որ յայնժամ ի Տմորեացն ամրանայր բերդի՝ յղէ առ նա ելանել գնալ ի սահմանացն յայնոցիկ. ոչ ինչ ձեռնամուխ լինելով ի նա, վասն կասկածանաց[xxx] Պարսից արքային, միայն սպառնական[xxxx] խոստաբանութեամբ[xxxxx] յղէ առ նա պատգամս։ Նորա զչարեալ ընդ հասանել պատգամին՝ առ զայրուցս[xxxxxx] բարկութեան քինահանութիւն վրէժխնդրութեան[xxxxxxx] արարեալ՝ ի բաց եհան ի գրոցն պատմութենէ՝ որ ինչ վասն տանն Արծրունեաց էր գործոց հանգամանք, և որ ինչ օրինակ մարտիրոսութեան Վահանայ Արծրունոյ։

Իսկ վարդապետն Եղիշէ էր ի ժամանակին յայն[188]միկ բնակեալ ի գաւառին Ռշտունեաց ի ծովեզերին, յորում տեղւոջ և հանգեաւ իսկ ի Քրիստոս սուրբն Աստուծոյ[x] Եղիշայ։ Իսկ ի դառնալ գրոցն[xx] ի յաշխարհն Մոկաց՝ ոչ ինչ ումեք փոյթ վասն այն լինելով[xxx], կարծել՝ վարդապետին զայս այսպէս կանոնեալ. զոր ցուցանեմ յայլում տեղւոջ, և զոր ինչ արար արքայն Պարսից ընդ տունն Արծրունեաց ի սադրելոյ Բարձումայի ամբարշտի[4]։

Մարկիանոս կայսր թագաւորեալ Յունաց յերկրորդն Թէո-

---

[187] x) Գ, Դ՝ մերոյ Եղիշայի։ xx) Բ, Դ՝ ի Մոկաց աշխարհին բնակեալ։ xxx) I (89), II (81) չիք՝ կասկածանաց։ Ա ($^{2}/_{4-5}$), Բ, Գ, Դ, III (130)՝ վասն կասկածանաց։ xxxx) Գ, Դ՝ սպառնակս։ xxxxx) Գ՝ խոստամերութեամբ, Դ՝ խստամբերութեան։ xxxxxx) Բ, Գ, Դ՝ առ զայրացկս։ xxxxxxx) Գ՝ վրէժխնդրութիւն։

[188] x) Գ չիք՝ Աստուծոյ։ xx) Այլ օր.՝ գրոցն Եղիշէի։ xxx) Գ, Դ՝ ոչ ինչ ումեք փոյթ վասն այնր լինելոյ։

դոսի, որ արար գժողովն ի Քաղկեդոն ՈԼԴ եպիսկոպոսաց[5]. առ որով վկայեաց սուրբն Վարդան և Վահան Արծրունի:

Իսկ Վասակ Արծրունի, Հայր Աղանայ սրբոյ, առեալ զՏաճատ և զԳոտեր զեղբայր իւր՝ գնաց առ կայսր. մեկուսի եղեալ ի չփոթմանց պարսկական վրդովմանցն և աւերման աշխարհիս. իսկ թագաւորն Մարկիանոս ընկալաւ զնոսա սիրով ի խաղաղութեան, մեծաշուք պատուով ի բարձ և ի պատիւ յառաջ ածեալ, իբրև զքաջամարտիկ ախոյեանս որ ի վերայ եկեղեցեաց Քրիստոսի և սուրբ ուղղ[189]ափառ Հաւատոյ արեամբ չափ ճգնեալ նահատակեցան, և զխոստովանողական անուն ձայն ի վերայ եդեալ կարդային: Բայց աղերսեալ թագաւորն զարս պատուականս, զՎասակ և զՏաճատ և զԳոտեր, որք էին ի մեծ նախարարութենէ տանն Արծրունեաց՝ զի զժողովն ընկալցին ընդ երից* սուրբ ժողովոցն: Նոքա պատասխանեալասեն. «վասն զի մեք ի պարսկական հինիցն անդուլ և անպարապ գոլով ի բաց լքաք զկրթութիւնն գրոց սրբոց՝ առ ընտրել զհաւատոց խոստովանութեան կանոնադրութիւն. բայց մինչ էաք յաշխարհին մեր՝ առաջնորդքն մեր ոչ եւտուն տեղի ընդունել զասացեալսն ի սահմանին խոստովանութեան: Արդ ոչ կարեմք փոյթ ընդ փոյթ շղումարար հաճութեամբ թագաւորիդ յանձըն առնուլ՝ զոր հրամայէ կայսերական ճոխութիւնդ. այլ հրամայեսցէ մեզ գրել ի Հայս և հարցանել առաջնորդացն Հայոց, և ընդունել պատասխանիս»:

Այլ և զայս ևս եդին առաջի թագաւորին աղերսական մեղադրանս, եթէ [190] ընդէ՞ր իբրև ժողովն գումարէր՝ ոչ զոք ի Հայոց հարկաւոր համարեցայք կոչել ի միաբանութիւն հաւատոց:

Պատասխանի ետ Մարկիանոս և ասէ. «վասն զի առաջնորդքն Հայոց զպարսկական չփոթմանցն զվտանգ կրէին»: Ապա առեալ հրաման մեծամեծացն մեր Արծրունեացն՝ գրեն

---

[189] ×) Ա (¹/ₙ.)՝ընդ երիս:
[190] ×) Ա (²/ᵥ)՝ զոր տարեալ թուղթն:

առ Աբրահամ Մամիկոնէից եպիսկոպոս, որ էր աշակերտ սրբոյն Սահակայ, և ծանուցանեն նմա զոր խնդրէ արքայ: Եւ դարձեալ պատասխանի ասէ, մի՛ տալ տեղի՝ լսել հրամանի թագաւորին. թէ վտանգ ինչ հասանէ՝ կրել հանդոյն զինչ կրեցինն: Զոր տարեալ զթուղթն[×] մատուցին առաջի թագաւորին: Իսկ թագաւորն գիտացեալ զհաստատուն և զանդրդուելի միտս նոցա՝ ոչ ինչ փոյթ արարեալ թողու ի կամս կամաց իւրեանց, կեալ որպէս հաճոյ թուի: Եւ կացեալ անդ մինչ ի ժամանակս առաջինն Ղևոնի կայսեր՝ մեռանի անդ Վասակ և Տաճատ և փոխին ի հանգիստ փառաւորպէս ի գերեզմանս մեծամեծացն Յունաց:

Իսկ երանելոյն Աղանայ Արծրունւոյ որդւոյ Վաս[191]ակայ դարձեալ ի Յունաց աշխարհէն՝ եկն յերկիրս Հայոց, նովին կրօնաւորական խստամբերութեամբ և հրեշտակակրօն առաքինութեամբ կեցեալ՝ վերափոխի յաշխարհէս ի դասս սրբոց. որոյ ոսկերքն ընդ այլ սուրբսն հանգուցեալ կան ի վանսն Յաղամակերտոյ:

Յերկարեալ վտանգ նեղութեան Հայոց[×], որպէս ցուցանեն բազումք ի պատմագրաց, մինչ ի ժամանակս Զամասպայ և Կաւատայ, մինչ ի Խոսրով արքայ: Եւ նախարարքն Հայոց կրէին կիրս ծանրաբեռինս ի զէն և ի ճակատամարտ:

Իսկ յաւուրս Վաղարշու մանուկն Վահան Մամիկոնեան ուժեղանայր ընդդէմ Պարսից. և առ ինքն ժողովեալ նախարարքն Հայոց՝ դնեն ուխտ և դաշինս աստուածայինս, միջնորդութեամբ սուրբ Աւետարանին՝ անկեղծաւոր և աննենգ տիրասիրութեամբ ցուցանել հնազանդութիւն հպատակութեամբ, մինչ յարիւն և յապաժոյժ նահատակութեամբ առնուլ վրէժս ի Պարսկացն հինիցն՝ զաւեր եկեղեցեացն Հայաստանի և զնեղութեանցն և զգերփանացն և զսաստիկ արհւնահեղութեանցն զքրիստոն[192]էից և զուխտի մանկանց եկեղեցւոյ սրբոյ:

---

[191] ×) Այլ օր.՝ նեղութեան աշխարհիս Հայոց:
[192] ×) Այլ օր.՝ արծարծարեալ:

Եւ եղև ընդ ժամանակն ընդ այնոսիկ եւ Հազարաւուխտ Պարսից զօրավար[6] ծանր զօրու ի վերայ Հայոց՝ տալ պատերազմ ընդ զօրս Հայոց, աւերել գերել գերփել զաշխարհս, այն ինչ արծարծեալ[×] առ նորոգումն շինութեան եկեղեցւոյ Քրիստոսի ի կործանմանէ հինի յետ մեծ պատերազմին սրբոյն Վարդանայ. և սփռեալ ասպատակ ընդ կողմանս կողմանս՝ և ինքն Հազարաւուխտ առնու զընտիրս այրուձիոց, զկորովի պատերազմողս ի վարելոցն պարսկային հարստութենէն, և խաղայ գնայ զկողմամբքն Հաշտենից և Ծոփայ, ի վերայ Վահանայ յանկարծօրէն:

Ազդ եղև քաջին Վահանայ, եթէ զօր բազում առեալ Հազարաւուխտ յընտրելոցն Պարսից և ահաւադիկ հասեալ գայ ի վերայ: Նոյն ժամայն աճապարեալ Վահանայ խրախուսեալ յԱստուած, ձայն քաջալերութեան առ նախարարսն Հայոց ասէ. «Հապա, քաջք, վառեալ ի զէն և յասպազէն, արիաբար մարտիցուք. մի՛ երկիցուք ի բազմու[193]թենէ զօրաց նոցա. Տէր խորտակէ զպատերազմողսն, Տեառն է պատերազմ, Տէր տկար առնէ զհակառակորդսն[×], Տէր է յոյս մեր»[7]:

Եւ նոյնժամայն վառեցան պատրաստեցան, հեծեալ յիւրաքանչիւր յերիվարս ելին ընդդէմ նոցա: Իսկ իբրև տեսին զբազմութիւն պարսկային զօրուն՝ վհատեալ գնդին Հայոց լքին զմիմեանս և գնացին յետս կոյս, մինչ կալ[××] մնալ միայն երեսուն արանց ընդ քաջին Վահանայ, Մեհրշապուհ և Ցաշկուր Արծրունիք, և Կամսարն Ներսէհ, և ի տանէն Ամատունեաց՝ զօրոց զանուանսն անգիտանամ, նիզակակիցք միմեանց եղեալք երեք տասնեակք թուովն, զսուրբ Երրորդութիւնն յօգնականութիւն իւրեանց վերաձայնեալ՝ լքին զօգնականութիւն մարդկան. և մածեալ պնդեալ իբրև զբլուր պղնձի, իբրև զմի այր, և ասելով միաբան իբրև ի մի բերանոյ, «ամենայն ազգք շրջեցան զինև, և անուամբ

[193] ×) Այլ օր.՝ զհակառակորդսն: ××) Ա (Ա/5ն) չիք՝ կալ:

Տեառն վանեցի զնոսա»[8] և ըստ միոջէքն՝ և Հարեալ ի դիմի ղաշիկ զօրուն Պարսից. և նոցա թուէր ծաղր առնել: [194]Իսկ նոքա պատահեալ Պարսից ի գեօղն Երիզ կոչեցեալ, իբրև մրրիկ զփոշի պտուտեալ, իբրև Հուր ընդ եղէգն ընթացեալ սուր ի վերայ եդեալ վանեցին զբազումս քան եթէ զսակաւս, և զմնացեալսն փախստականս արարեալ Հետամուտ լինելով Հանին ի սաՀմանացն Հայոց. և ինքեանք դարձան մեծաւ յաղթութեամբ, մատուցին պատարագս Աստուծոյ և լցուցին զպէտս տնանկաց և աղքատաց այրեաց և որբոց: Եւ ամենեցուն բերան լցեալ խնդութեամբ ետուն փառս Աստուծոյ[9]:

(Գ)

## ԵԹԷ ՈՐՊԷՍ ԵՂԵՒ ԲԱՐՁՈՒՄՆ ՉԱՐ ԹԱԳԱՒՈՐՈՒԹԵԱՆՆ ՊԱՐՍԻՑ ՏԱՆՆ ՍԱՍԱՆԱԿԱՆ[1]:

Յամի ութերորդի Մուրկայ Յունաց թագաւորի, թագաւորն Պարսից Որմզդ[x] որ ի տանէ Սասանայ՝ սպանաւ յիւրոց Հաւատարմաց, և որդի նորա Խոսրով մանկագոյն տիովք մնացեալ՝ առնու զթագաւորութիւն: ՎաՀրամ ումն ՄեՀրևանդակ, որ էր իշխան կողմանցն արևելից, այր Հզօր զօրութեամբ՝ քաջութեամբ իւրով եՀար զզօրս Թետալացւոց, և բռնութեամբ կալեալ[xx] զԲախլ և զամենայն երկիրն Քուշա-[195]նաց, մինչև յայնկոյս գետոյն մեծի որ կոչի ՎաՀռոտ[2]. սա և զթագաւորութիւնն Պարսից յինքն կորզեաց, և որդի Որմզդի Խոսրով գնաց փախստական առ Մուրիկ թագաւորն Յունաց՝ զոր առեալ քեռիք նորա Վնդոյ և Վստամ գնացին փախստական ի դուռն կայսերական[3]: Առաքեցին առ Մուրիկ թագաւորն արս ճոխս մեծամեծ ընծայիւք և պատարագօք և թուղթ գրեալ ի բերանոյ Խոսրովայ զայս ինչ.

«Թագաւոր մեծ, իշխան ծովու և ցամաքի, տո՛ւր ինձ զօր

---

[194] x) Ա (2/7)՝ Որմազդ: xx) Ա (2/ԻԵ)՝ եկեալ. ուղղ.՝ կալեալ (II, 85, ծն.3):

յօգնականութիւն և հաստատեա՛ զիս ի տեղի թագաւորու-
թեան հարց իմոց, զի թէ կարացից հարկանել զթշնամին իմ
և կանգնել զթագաւորութիւնն իմ՝ ես եդէց քեզ որդի հնա-
զանդութեան և տաց քեզ զկողմանս Ասորոց և զամենայն
Արևաստան մինչև զՄծուին[4] քաղաք, և ի յերկրէ Հայոց՝
զաշխարհ տանուտերական իշխանութեանն մինչև յԱյրա-
րատ և ընդ Դուին քաղաք և յեզր ծովուն Բզնունեաց և զԱ-
ռեստն աւան, և զմեծ մասն աշխարհին Վրաց մինչև զըՏ-
փղիս [196] քաղաք. և կալցուք ուխտ խաղաղութեան ի մէջ
մեր երկոցունց[5], և անշուշտ լիցի այս երդումն և պայման ի
մէջ մեր և որդւոց մերոց յետ մեր թագաւորելոյ»[6]:

Եւ կայսր Մուրիկ հաւանեալ նմա՝ յղէր առ նա զՓիլիպի-
կոս փեսայ իւր[7]. և տայր տանել նմա գիր ընդունելութեան,
և առնոյր ի նմանէ երդումն: Եւ տայր նմա զօր կայսերա-
կան յօգնականութիւն, և զՅովհան պատրիկ ի Հայոց կող-
մանէ, և զՆերսէս ստրատեղատ յԱսիւրոց, և զՄուշեղ այր
քաջամարտիկ և հզօր զօրութեամբ, և զամենայն զօրս Յու-
նաց և Հայոց, Վրաց և Աղուանից, գունդ անթիւ բազմու-
թեամբ եկեալ ի կողմանս Ատրպատականի ի Վառարատ գա-
ւառի[8]:

Գրէ և Վահրամ առ Մուշեղ և այլ զօրագլուխսն այսպէս.

«Ես այսպէս կարծէի, թէ յորժամ ես ընդ թշնամիս ձեր
մարտնչիմ՝ դուք յայդմ կողմանէ օգնական ինձ լինիցիք, և
միաբանութեամբ բարձցուք ի միջոյ զտիեզերական պատու-
հասն, զտունդ Սասանայ: Դուք աւադիկ ժողովեալ գայք ի
վերայ իմ պատերազմաւ. այլ ես ոչ [197] երկեայց ի ժողովե-
լոց երիցանցդ Հռոմայեցւոց, որ գումարեալ գան ի վերայ
իմ:

Բայց դուք, Հայք, տարաժամ ցուցանէք զտիրասիրու-
թիւն. ո՞չ ապաքէն տունդ Սասանայ եբարձ զերկիր ձեր
զտերութիւնդ, և դուք դիմեալ գայք ի վերայ իմ: Բայց ապա
հաճոյ թուիցի ձեզ՝ ի բաց կալ ի դոցանէ և միաբանել ընդ

---

[197] ×) Ա (ʻ/ն)՝ զձեզ:

*խս. զի թէ ես յաղթեցից՝ երդուեալ ի մեծ աստուածն Որմազդ և յարեգակն և ի լուսին և ի հուր և ի ջուր և ի Միհր և յամենայն աստուածս՝ զի ձեզ[×] տուեալ լիցի թագաւորութիւն Հայոց. և զոր կամիջիք՝ արասջիք ձեզ թագաւոր, և յԱսիւրոց կողմանէ զԱտրպատան և զՄծուրն[9] և զՆուշիրական մինչև ցսահմանս Տաճկաց, և ես մի՛ իշխեցից քան զԱրասխ[10] անցանել յայդկոյս: Եւ զգանձդ Արեաց թագաւորութեան այնչափ արձակեցից՝ մինչև շատ լիցի ասել ձեզ, և բազմութիւն զօրաց՝ որքան և պիտոյ իցէ ձեզ, մինչև ձեր թագաւորութիւնն հաստատեսցի»: Եւ ըստ կարգի օրինաց իւրեանց երդուեալ, և աղ ծրարեալ [198] ընդ հրովարտակին ետ տանել. և նոցա առեալ և ընթերցեալ՝ ոչ արարին բանիցն պատասխանի[11]:*

*Գրէ դարձեալ թուղթս երկրորդս և ասէ. «Գրեցի ձեզ, ի բաց կալ յայդմանէ, ուրեմն ոչ կամեցարուք լսել, ես զձեզ ապաշաւեմ, ասէ: Քանզի փաղիւ առաւօտուն ցուցանեմ ձեզ փիղս վառեալս[12], և ի վերայ հզօր սպառազէնս ի քաջաց, որ տեղասցեն ի վերայ ձեր նետս երկաթեղէնս և շուառունս[13] մուխս պաղատիկք սլաքովք և հաստաձիգք աղեղանց և կռուփք բազմադիմիք՝ որչափ Խոսրովայ և ձեզ պիտոյ իցէ»:*

*Գրէ պատասխանի Մուշեղ նմա այսպէս. «Զբանս քո լուեալ՝ ասեմ, եթէ յԱստուծոյ է թագաւորութիւն և ում կամի տացէ. բայց դու պարտիս յանձն քո ապաշաւել քան թէ ի մեզ. զի տեսանեմ զքեզ այր պոռոտաբան, զի յանձն քո խրախուսես և ոչ յԱստուած, ի բազմութիւն զօրաց և ի փղաց զօրութիւն. այլ ես ասեմ քեզ, եթէ Տէր կամեսցի՝ փաղիւ պատելոց է զքեզ պատերազմ քաջաց. և ճեղքեսցեն ի վերայ քո իբրև զամպս երկն[199]ից և բռնալիր նիզակօք անցանիցեն ընդ մէջ բազմութեան քո իբրև զփայլատակունս հրոյ շանթից: Քանզի թէ Աստուած կամեսցի՝ տանելոց է սաստկութիւն հողմոյ զզօրութիւն քո իբրև զփոշի»: Էին անդ[×] Վնդոյ և Վստամ և զօրք պարսիկք իբրև ԸՌ հեծեալ, թող*

---

*[199] ×) Ա (^/₉)՝ և նանդ, և:*

զզօրս Յունաց և Հայոց: Եւ ի վաղիւ անդր մինչդեռ արևն ընդ ծայրս հարկանէր՝ կարգեցաւ պատերազմ սաստիկ, ճակատ առ ճակատ ձգին[14] խումբ և անհնարին խառնուրդ. և մարտուցեալ ընդ միմեանս յայգուէ մինչև ընդ երեկս քաջապէս՝ և յոգնեցան երկոքեան կողմանքն ի մեծ պատերազմին. և այնչափ սաստիկ լինէր կոտորածն՝ մինչ զի սաստկութիւն վտակաց արեանն խաղացեալ ոռոգանէր զերկիրն ամենոյն: Եւ ոչ կարացեալ ունել զդէմ զօրն Վահրամայ՝ փախստական լինէր առաջի զօրացն Յունաց. և նոցա հետամուտ եղեալ մինչև ի մուտ երեկոյին, լցին դիակամբք զերկիրն. և զբազումս ձերբակալ արարեալ ածին առ Խոսրով, և զօրացաւ յաւուր յայնմիկ յաղթութիւն Խոսրովայ: [200] Եւ Վահրամ գնաց փախստական և անկաւ ի Բախղ Շախստան. որ և յետոյ իսկ սպանաւ ի հրամանէ Խոսրովայ[15]:

Եւ հաստատեցաւ Խոսրով յաթոռ թագաւորութեան, և զխոստացեալսն կայսեր՝ կատարեաց. ետ նմա զԱրևաստան զամենայն մինչև ցՄծուին, և զերկիրն Հայոց մինչև ցգետն Հուրաստան, և զգաւառն Կոտայից մինչև յաւանն Գառնի յեզր ծովուն Բզնունեաց և մինչև յԱռեստն աւան և զԿոգովիտ գաւառ մինչև զՀացիւն և ցՄակու[16]: Եւ էր սէր դաշնաւորութեան մեծի ի մէջ երկոցունց թագաւորացն Պարսից և Յունաց:

Եւ եղև յամի չորեքտասաներորդի Խոսրովայ արքայի, ի քսաներորդ ամի Մուրկայ թագաւորութեանն՝ ապստամբեցան ի կայսերէ զօրքն Յունաց, որք ի Թրակացւոց կողմանէն, և նստուցին իւրեանց թագաւոր այր զոմն անուն Փոկաս կոչեցեալ. և գնացեալ միաբանութեամբ ի Կոստանդնուպօլիս՝ սպանին զՄուրիկ թագաւոր և նստուցին զՓոկաս յաթոռ թագաւորութեան[17]:

Իբրև լու[201]աւ Խոսրով արքայ զլուր համբաւոյն այնորիկ՝ շարժեցաւ ի բարկութիւն մեծ, լինել վրէժխնդիր արեանն Մուրկայ: Եւ ժողովեալ զբազմութիւն զօրաց իւրոց՝ առնէր վնասս մեծամեծս և սաստիկս ի բաժնին Յունաց[18]: Իբրև լցան ամք Ը Փոկայ՝ սպանաւ և նա Հայրակղէ, որ դա-

ւեալ նմա՝ էառ զԹագաւորուԹիւն նորա: Եւ առաքեաց Հրեշտակս մեծապէս գանձիւք և Հրովարտակօք առ առքայ Խոսրով, խնդրել ի նմանէ զխաղաղուԹիւն մեծաւ Թախանձանօք, ասէ. «զվրէժ արեանն Մուրկայ առի ի Թշնամոյ նորա, արդ կա՛մ եղիցի քեզ առնել ընդ իս զխաղաղուԹիւն և արգելուլ զսուր քո ՚յերկրէ իմմէ»: Որում ոչ կամեցեալ լսել Խոսրովայ՝ ասէ. «իմ է Թագաւորուվիւնն այն, և ես զորդին Մուրկայ նստուցի Թագաւոր, և նա երԹեալ առանց մեր Հրամանի Թագաւորեաց, և զմեր գանձս մեզ ընծայ մատուցանէ, ոչ գիտելով եԹէ Համարս խնդրեցից զանձիս այսմիկ, և ոչ դադարեցից մինչև առից զնա ի բուռն իմ»: Եւ առեալ զգանձսն՝ Հրամայեաց [202] սպանանել զընծայաբերսն, և բանիցն Հայրակղի ոչ արար պատասխանի[19], այլ առնէր վնասս սաստիկս ի կողմանս կողմանս, աւարառուԹիւն և գերուԹիւն և սուր. և զօրք Պարսից որք էին ի կողմանս Պաղեստինացւոց, և զօրավար նոցա անուանեալ Ռազմայուզան որ է Խոռեամ՝ խօսէր ընդ Երուսաղէմի զխաղաղուԹիւն. քանզի էին Հնազանդեալք յառաջագոյն ընդ ԹագաւորուԹեամբն Յունաց, և սպանեալ զոստիկանն Պարսից, որ էր ի վերայ նոցա, և ինքեանք պատրաստեալ ի պատերազմ ընդդէմ Պարսից: Յայնժամ ժողովեալ Խոռեմ Եռազմայուզան զզօրս իւր բանակեցաւ շուրջ զԵրուսաղէմաւ և պաշարեաց զնա, և պատերազմեցաւ ընդ Երուսաղէմի աւուրս ԺԹ, և փորեալ ի ներքոյ զՀիմունսն՝ աւերեցին զպարիսպն: Եւ եղև յաւուրն ինն և տասներորդի, յամսեանն մարգաց, որ օր ԻԸ էր ամսոյն, յամի քսան և Հինգերորդի ԹագաւորուԹեանն Խոսրովու, որ կոչէր Ապրուէզ, զկնի Ժ աւուր անցանելոյ զատկին՝ առին [203] զքաղաքն. և սուր ի գործ արարեալ զերիս աւուրս՝ սպառեցին զամենայն մարդ ի քաղաքին. և նստան ի ներքս ի քաղաքին ԻԱ օր. ապա ելեալ բանակեցան արտաքոյ քաղաքին, և զքաղաքն այրեցին Հրով[20]: Եւ Հրամայեցին Համար առնել անկելոց դիակացն, գտաւ Թիւ սպանելոցն ԾԷՌ մարդ[21]: Կալան և զՀայրապետն Զաքարիայ, և ի խնդիր անկեալ աստուածային սուրբ նշանին՝ սկսան զնոսա տանջել, մինչև զբազումս ի պաշտօնէիցն

կառափեալ սատակեցին. ապա ցուցին զտեղին ուր ծածկեալն էր. զոր առեալ վարեցին ի գերութեան, և ոսկի և արծաթ անբաւ խաղացուցին ի դուռն Թագաւորին: Եւ վասն մնացելոցն որք ի քաղաքին և ի սահմանս նորա՝ ել հրաման յարքունուստ առնել ի վերայ նոցա ողորմութիւն, շինել զքաղաքն և հաստատել զամենեսին յիւրաքանչիւր կարգ: Եւ անդէն վաղվաղակի կատարէին զհրաման արքունի. և կարգեցին երիցապետ զոմն ի վերայ քաղաքին որում անուն էր Մոդեստոս[22]: Եւ յետ այսոր[204]իկ գումարեցոյց զօրս բազումս Խոռեմ, և ել ի Քաղկեդոն և նստաւ յանդիման Բիւզանդայ, և խնդրէր անցանել և կործանել զքաղաքն Թագաւորանիստ: Իբրև ետես կայսր Հայրակղէս զչարիսն ամենայն, որ եկին հասին ի վերայ նորա՝ ակամայ կամեցեալ ցուցանել բարեկամութիւն՝ ել ընդ առաջ նոցա, մեծարել իբրև զվաստակեալս և զհիւրս, ընկալաւ զնոսա մեծամեծ ընծայիւք. և տայր զօրավարին և իշխանացն ամենեցուն պարգևս մեծամեծս, և բաշխէր զօրացն ամենեցուն դահեկանս ի խոռկս, և ճաշս և ընթրիսս ուրախութեան կազմէր ամենայն զօրացն մինչև է օր: Ապա ելեալ ի նաւ՝ եկն ի մէջ ծովուն խօսել ընդ զօրավարին Պարսից. «զի՞նչ կամիք, ասէ, առնել, և վասն է՞ր եկիք ի տեղիս յայս. միթէ զծով իբրև զցամա՞ք համարիցիք, մարտնչել ի սմա ընդ մեզ. կարող է Աստուած, եթէ կամեսցի՝ ցամաքեցուցանել զծովս առաջի ձեր: Բայց զգոյշ լերուք, մի՛ գուցէ ոչ հաճեսցի Աստուած, և խնդրեսցէ ի ձէնջ զվրէժ [205] արեան կոտորածի աշխարհի: Զի ոչ թէ վասն աստուածպաշտութեան ձերոյ կամ բարեգործութեան և սրբութեան արար Աստուած զայս այսպէս, այլ վասն մերոյ ամբարշտութեան ի Տէր. մեղք մեր արարին և ոչ քաջութիւն ձեր: Բայց և զի՞նչ իսկ խնդրիցէ թագաւորն ձեր յինէն, որ ոչ առնէ զխաղաղութիւն, բառնա՞լ կամի զթագաւորութիւնս զայս: Մի ջանասցի. քանզի յԱստուծոյ հաստատեալ է, և բառնալ զսա անհնար է, բայց թէ Աստուծոյ այն-

---

[205] ×) Այլ օր.՝ երկիրդ ամենայն առաջի:

պէս հաճոյ իցէ՝ կամք Աստուծոյ կատարեսցին: Եւ եթէ ասիցէ, եթէ այլ թագաւոր նստուցի՛ց՝ արասցէ զո՞ր և կամեսցի և արձակեսցէ և մեք ընդունիմք, աՀաւասիկ է տեղի թագաւորութեանս: Եւ եթէ զքէն արեանն Մուրկայ խնդրէ՝ զքէն արեանն Մուրկայ խնդրեաց Աստուած ի Փոկասայ ի ձեռն Հօր իմոյ Հայրակղի. և եթէ երկիր խնդրիցէ՝ աՀաւադիկ երկիրդ առաջի× ձեր, եթէ կամիմք և եթէ ոչ կամիմք՝ եՀան Աստուած ի մէնջ և ետ ի ձեռս ձեր: Եւ եթէ քաղաքս խնդրիցէ՝ աՀաւադիկ է քաղաքք մեծամեծք և պարսպաւորք. այլ [206] գանձս խնդրիցէ՝ ասացի թէ տաց որչափ և ձեռն Հասանիցէ. և ոչ կամեցաւ լսել, այլ տակաւին ծարաւի է արիւնարբութեան: Մինչև յե՞րբ ոչ կամիցի× յագենալ արեամբ. մի՞թէ ոչ կարէին Հոռոմք սպանանել զնա, և բառնալ զթագաւորութիւնն Պարսից ի ժամանակի, իբրև ետ Աստուած զսա ի ձեռս մեր. այլ արարին ի վերայ նորա ողորմութիւն: Բայց արդ ես զնոյն բարիս խօսեցայց և խնդրեցից ի նմանէ Հաշտութիւն և սէր, և ի ձէնջ խնդրեցից երիս ինչս, և լուարուք ինձ. ի բաց արարէք յաշխարհէ զսուր և զՀուր և զգերութիւն, և յերիցդ օգուտ գտանէք. զի ոչ դուք նուազիցիք ի սովոյ, և ոչ Հարկք արքունի կորնչիցին: Եւ ես աւասիկ արձակեցից թագաւորին ձերում պատարագս և Հրեշտակս Հրովարտակօք, խնդրել ի նմանէ զխաղաղութիւն աշխարհի և ընդ իս Հաշտութիւն»: Եւ նոցա ընկալեալ զխնդիրսն՝ Հաւանեցան առնել ըստ կամաց նորա, մինչև տեսցեն եթէ զի՛նչ պատասխանի եկեսցէ յարքայէն իւրեանց, և կամ զօր[207]ուն զի՛նչ Հրամայեսցէ առնել: Եւ զօրուն գնացեալ անտի ձմերեցին ի Սուրիա:

Իսկ թագաւորն Պարսից ընդունէր զպատարագսն բերեալս ի կայսերէն, և զՀրեշտակսն անդրէն ոչ արձակեաց, և ոչ Հրովարտակացն պատասխանի առնէր. այլ Հրաման տայր զօրացն՝ նաւս կազմել և անցանել ի Կոստանդնուպօլիս: Եւ եղև պատերազմ և նաւամարտութիւն սաստիկ ի մէջ ծո-

---

[206] ×) Այլ օր՝ կամեսցի:

վուն: Եւ կորեան ի զօրացն Պարսից յաւուր յայնմիկ սպառազէնք Հեծելոց ԴՌ Հանդերձ նաւօք իւրեանց: Եւ տեսեալ զայնպիսի կորուստ՝ ոչ ևս Համարձակեցան ի նոյն գործ, այլ տարածեալ կալան զերկիրն ամենայն[23]:

Եւ յաւել գրգռել ի սիրտս իւր արքայ Խոսրով. զի Տէր խստացուցանէր զսիրտ նորա, զի կործանելոց էր զԹագաւորութիւն նորա. գրէ Հրովարտակ նախատանաց առ կայսր, որ ունէր օրինակ զայս.

«Աստուծոց պատուական և ամենայն Թագաւորաց, տէր երկրի և ծովու, ծնունդ մեծին Արամազդայ Խոսրով Թագաւոր. առ [208] Հայրակղոս անմիտ և առ անպիտան ծառայ մեր: Ոչ կամեցար կամօք տալ զանձն ի ծառայութիւն մեզ, այլ տէր և Թագաւոր կոչես զքեզ. զգանձն արքունի որ իմ առ քեզ է՝ ծախես, և զայդ ոչ գիտես, եԹէ վաղիւ Համարս տալոց ես: Զծառայս իմ պատրես, և զզօրս աւազակաց ժողովեալ՝ ոչ տաս ինձ Հանգչել, այլ Հանապազ պատրաստիս ինձ[x] ի պատերազմ, և ասես վստաՀանալ յԱստուածն իմ: Արդ ո՞ւր է Աստուածն այն, զոր դուդ ասես, վասն է՞ր ոչ փրկեաց զԿեսարիայ և զԱնտիոք և զՏարսոն և զԱմասիայ և զԵրուսաղէմ և զԱղէքսանդրիս և զԹեբայիտ և զայլ աշխարՀս: Մի՞Թէ և այժմ ոչ գիտիցես, Թէ զամենայն երկիր զծով և զցամաք ինձ Հնազանդեցուցի. արդ զԿոստանդնուպօլի՞ս միայն ոչ կարիցեմ բրել[xx]: Բայց արդ զամենայն յանցանս քո և զվնաս զոր արարեր Թողում քեզ. արի առ զկին քո և զորդիս և եկ այսր. և տաց քեզ ագարակս, այգիս և ձիԹենիս և սերմանս, զի վարեսցես և Հնձեսցես, և մեք սիրով նայեսցուք ի քեզ: Ապա [209] Թէ ոչ՝ մի խաբեսցէ զքեզ յոյսն սնոտի, զի Քրիստոսն այն, որ զանձն իւր ոչ կարաց ապրեցուցանել ի Հրէից, այլ կալան զնա և սպանին ի վերայ փայտի՝ իսկ արդ զքեզ զիա՞րդ կարէ ապրեցուցանել ի ձեռաց իմոց: Զի Թէ իջանիցես յանդունդս ծովու՝ ձգեցից

---

[208] x) Այլ օր.՝ ընդ ինձ: xx) Ա (²/₁₁)՝ բերել. ուղղ. ըստ Սեբ. (123)՝ ոչ կարացից բրել: (Տե՛ս նաև Նախն. 184 բրեմ):
[209] x) Ա (¹/₈)՝ զի: xx) Ա (¹/₈)՝ չիք՝ և:

*զցանցս իմ և ըմբռնեցից զքեզ. և ապա տեսանիցես զիս այնպէս՝ որպէս դու ոչ կամիցիս»:*

*Եւ առեալ Հայրակղի զՀրովարտակն՝ հրամայեաց ընթեռնուլ առաջի հայրապետին և ամենայն մեծամեծացն. և[xx] ապա մտին ի տունն Աստուծոյ, և տարածեալ զՀրովարտակն առաջի սրբոյ սեղանոյն՝ անկան ի վերայ երեսաց իւրեանց յերկիր առաջի Տեառն և լացին դառնապէս, զի տեսցէ Տէր զնախատինսն զոր նախատեաց զնա թշնամին:*

*Եւ հաճոյ թուեցաւ Հայրակղի և ամենայն սինկղիտոսիցն՝ նստուցանել զորդին Հայրակղի յաթոռ թագաւորութեան, որ էր մանուկ փոքր. և ինքն հանդերձեալ կազմել գնալ ընդ արեւելս նաւել ի Քաղկեդոն: Եւ զօր Պարսից արքային որ յաշխարհին՝ ոչ գիտ[210]ացին. և Հայրակղի ժողովեալ զամենայն արեւելեայս իբրև ՃԻՌ՝ դիմէ ի վերայ Խոսրովայ: Եւ ճանապարհ արարեալ ընդ կողմն հիւսիսոյ՝ եւ դէպուղի ի Կարնոյ քաղաք[25] և անցանէ ի Շիրակ, և հասեալ ի Դուին՝ աւերէ զնա և զՆախճաւան և յՈրմի, և դիմեալ ի Գանձակն Ատրպատականի[26] բրէ զնա, աւերէ զԱհմատան և զՄայ, կործանէ և զբագինն հրատին մեծի, որում Վշնասպ կոչեն, և լնուն զծովակն որ յանդիման հրատին՝ դիակամբք[27]. զխոսուն և զանասուն, զայր և զկին և զմանուկ առ հասարակ մաշեցին ի սուր սուսերի: Եւ արքայ Խոսրով զարհուրեալ պատրաստի ի փախուստ, քանզի զօրացաւ յաղթութիւնն Հայրակղի. և ամենայն ուրեք ուր և հանդիպէր զօրուն Պարսից՝ առ հասարակ սատակէր զամենեսեան, մինչ ոչ մնալոյ ապրեալ:*

*Զայս յառաջագոյն իմացեալ հին պատմագրին՝ յառաջատես զկործանումն նոցա յայտ առնէ. և զոր ասէն այսպիսի ինչ է. «վա՜յ քեզ, եղո՜ւկ դու, երկիրդ [211] Պարսից, յորժամ բազմախուռն գունդք զօրացն Յունաց ի քեզ արշաւանս եդեալ՝ հասանիցեն և հարկանիցեն զքեզ ի սուր սուսերաց, և յառաթուր սմբակաց: Վա՜յ քեզ, եղո՜ւկ դու, այր քաջ, ար-*

---

[211] ×) *բազում ամբոխից ուղղ.՝ բազմամբոխից* (Նախն. 459):

քայդ մեծանուն, յորժամ կարկառիցէ բարձրեալն զձեռն իւր ի կործանել զքեզ և ի խորտակել զգաւազան ամբարտաւանութեան քո: Յայնժամ մերկասցի արեգակն զլոյս իւր ի քէն և զգեցուսցէ քեզ խաւար. յայնժամ ահագինս որոտալով ճայթիցէ ի վերայ քո երկինք, և լսիցէ հնչիւն և բոմբիւն և դղրդիւն յանդնդոց, ձայն որոտալոյ սմբակաց բազում ամբոխից[×] երիվարաց և աղաղակ բազում սպառազինաց յարձակեսցին ի վերայ քո. յայնժամ ամօթալից աչօք տեսցես զբազմափառ զպայծառացեալ նշանս դրօշմացն բարձրացելոց: Յայնժամ թանձրացեալ մթասցի, բալ և մառախուղ խաւար ի վերայ լերանց և դաշտաց քոց. յայնժամ կերիցէ սուր զպատերազմողս քո. ելցեն ի քեզ փայտահարք բազումք և կոտորեսցեն զմայրս քո մեծ[212]ամեծս և զմատաղատունկս բարձունս. յայնժամ ելցէ հուր ի քէն ծնեալ. և կերիցէ զքեզ և զբազմութիւն ուստերաց և դստերաց քոց; ի քէն ակն ունելով զբորբոքումն: Զի որովք բարձրացար և ամբարտաւանեցար՝ նոքիմբք խոնարհեսցիս և անկցիս: Քակտեսցի և աւերեսցի պերճութիւն տաճարաց քոց, և ամենայն ուրեք անարգեսցի: Եւ զոր ծնար և գգուեցերն՝ քեզէն կոչեսցես ի մահ»: Այս ամենայն վճարեցաւ Պարսից ի ձեռն յունական սրոյն[28]:

Իսկ Խոսրովու կարծեալ արծարծեալ[×] զզօրս իւր և որք ի դրանէն արքունի որ կոչին համհարզք և փուշտիպանք, և ամենայն արք ընտիրք տան թագաւորին ոյժ առեալ դարձեալ պատերազմել ընդ Հայրակղի: Եւ նա գնաց ընդդէմ նոցա սաստիկ զօրութեամբ. և եղև բալ և մութ թանձրամած խաւարին ի վերայ երեսաց ամենայն երկրի. և ոչ գիտացին զօրն Պարսից զդարձն Հայրակղի ի վերայ նոցա՝ մինչև երթեալ խառնեցան և բախեցին զմիմեանս[213]]պատերազմօք: Եւ անյպէս զօրացոյց Տէր զողորմութիւն իւր ի վերայ Հայրակղի յաւուր յայնմիկ՝ տալ ի ձեռս նորա զամենեսեան. և

[212] ×) Այլ օր.՝ արծարծել:
[213] ×) Արք իբրև ԴՌ վիրաւորք ուղղ.՝ արս իբրև չորս հազարս վիրաւորս (Նախն. 459):

նոքա հարեալ սատակեցին զնոսա սրով սուսերի յանխնայ, սպանին և զզօրավարն ի պատերազմին, և զմնացեալ սակաւսն ի մէջ արարեալ շրջափակ տուեալ՝ կամէին զամենեսեան սատակել: Եւ նոցա ձայն բարձեալ ողորմագին պաղատանօք առ Հայրակղոս, եթէ «աստուածասէր և բարերար տէր, արա ի վերայ մեր ողորմութիւն, թէպէտ և չեմք արժանի ողորմութեան»: Յայնժամ Հայրակղոս հրամայեաց առնել ի վերայ նոցա ողորմութիւն: Եւ թողին զնոսա արք իբրև ԴՌ, վիրաւորք, բոկք և մերկք և հետևակք: Եւ ընդ առաւօտն հրամայեաց Հայրակղոս ասպատակս սփռել ի վերայ ամենայն[x] երկրին, և հարկանել զամենայն երկիրն սրով սուսերի[29]:

Եւ Խոսրով արքայ փախստական գնաց, և անցեալ զԴեկղաթաւ ի Վեհկաւատ[30] հրամայեաց զլար կամուրջացն կտրել. և Հայրակղի հասեալ բանակ[214]եցաւ առ դուրս Տիսպոն քաղաքի. և քանդեալ աւերեաց զամենայն ապարանս թագաւորին և այրեաց զնոսա հրով, և բազում գանձս մթերեալս յափշտակեաց անչափ աւարաւ գանձս ոսկոյ և արծաթոյ և հանդերձից, և անասուն բազում յոյժ, և բազմութիւն գերեաց իբրև զաւազ ծովու անթիւ: Բայց տիկնայքն և հարճքն և ամենայն որդիքն արքայի և ախոռն[x] արքունի երիվարացն՝ էին անդէն ի Վեհկաւատ. և սկսաւ Խոսրով արքայ ժողովել զմնացեալ նախարարս զօրացն և զզօրն[xx], որ զերծեալ էին ի պատերազմէն: Եւ խօսէր ընդ նոսա սաստիկ և ահագին դատաստանօք և սպառնալեօք, թէ «ընդէ՞ր և դուք ոչ մեռարուք[xxx] ի պատերազմին, քան թէ ելեալ փախստական գնացէք գալ առ իս և տալ համարձակութիւն ծառայի իմում ի յայսքան վնաս. մի՞թէ արդեօք զԽոսրով մեռեալ կարծէիք»: Յայնժամ խորհուրդ միաբանութեան ի մէջ առեալ ամենեցուն նոցա ասեն. «թէպէտ և ի թշնամեացն ապրեց[215]աք՝ սակայն ի ձեռաց դորա մեզ չիք ապրել. արդ եկայք իմասցուք ինչ»: Յայնժամ երդուեալ միաբանութեամբ գնացին ի գիշերի և անցին ընդ զոմ ի Վեհ-

[214] x) Տե՛ս Ա (1/4-3ն): I(102), II(94), III(150) չիք՝ ախորն: xx) Այլ օր.՝ և զզօրն ամենայն: xxx) Այլ օր.՝ մեռայք:

կաւատ և կալան անդ զտիկնայսն ամենայն և զհարճսն և զորդիսն արքայի, և զերիվարսն արքունական, որով եկեալ էր Խոսրով արքայ ի Տիսպոն՝ հանեին գաղտաբար ի գիշերի, և արքայ Խոսրով ոչ միոյ իւիք չէր տեղեակ. և զորդի նորա Կաւատ նստուցին թագաւոր. և նա դիմեալ եկն ի վերայ նորա: Եւ ումն ընթացեալ ետ գոյժ վաղվաղակի Խոսրովու, թէ «ապստամբեցաւ ամենայն Արեաց երկիր ի քէն, և զորդի քո Կաւատ նստուցին թագաւոր, և ահաւադիկ դիմեալ գայ ի վերայ քո»: Եւ ընդոստուցեալ Խոսրով ի յահէն և զարհուրեալ մեծաւ դողութեամբ՝ խնդրեաց իւր տեղի փախստեան, աղաղակեաց և ասէ՝ ձի՛, ձի՛, և մտեալ յասպաստանն՝ ոչ հանդիպեցան ձիոյ: Յայնժամ արքայ Խոսրով յայլակերպս եղեալ գնաց եմուտ ի բուրաստանն արքունի, և երթեալ ի թաւ պուրակս բուրաստանացն. [216] մտեալ ի ներքոյ թաւ թփոյ ծաղկոցն որ էր մուրտ բազում՝ ղուղեալ դադարեաց: Եւ Կաւատ արքայ հրամայեաց խնդիր առնել. և երթեալ ի բուրաստանն՝ գտին զնա ի թաւի անդ ղուղեալ, կալան զնա և եկին ածին զնա ի դախղիճ անդր[31]: Հրաման ետ արքայ Կաւատ արկանել զնա ի տուն մի արքունական սենեկացն. և մտանէին առ նա արք ի նախարարացն, խօսէին դատաստանօք և նախատէին զնա, անարգէին և գնային: Այս եղև զաւուրս ինչ. ապա անարգեաց զնա և Կաւատ արքայ, եհատ ի վերայ նորա դատաստան մահու, և հրամայէ արանց մտանել և սպանանել զնա. որք մտեալ քարտակատեցին զնա տապարօք ի սենեկի անդ և սպանին: Հրամայեաց և զեղբարսն իւր սպանանել, որք ի միում ժամու սպանան արք Խ, ամենեքեան ի չափ հասակի եկեալ:

Եւ Կաւատ արքայ հաստատեցաւ յաթոռ թագաւորութեան և արար խաղաղութիւն մեծ ընդ կայսեր և ընդ ամենայն երկիր իշխանութեան իւրոյ: Ետ և կայսեր զամենայն զոր [217]և կամեցաւ առնուլ. և մինչդեռ խորհէր արքայ Կաւատ վասն շինութեան աշխարհի և խաղաղութեան՝ եհաս նմա վախճան կեն[76][x]աց և մեռաւ, կեցեալ ամիսս Զ[32]:

Եւ յետ մահու նորա նստուցին թագաւոր զորդի նորին

---

[217] x) Բնագիրը շարունակվում է էջ 76-ից, «վախճան կենաց» բառերի կրկնությամբ:

զԱրտաշիր, կարի տղայ մանուկ: Յայնժամ Հայրակղէս գրէ առ Խոռեամ և ասէ. «Կաւատ Թագաւորն ձեր վախճանեցաւ, և որդի նորա մանուկ տղայ է. բայց արդ ի քեզ հասեալ Թագաւորութիւնդ, և ես քեզ տայց զնա, և եթէ զօր պիտոյ իցէ յօգնականութիւն՝ արձակեցից որչափ և կամիս. բայց արդ եկ ի կողմանցդ յայդցանէ, եկից և ես յԱսորեստան[33]. և երդումն արարեալ ուխտ դիցուք ի մէջ մեր երկոցունց՝ խաղաղութեամբ ունել զԹագաւորութիւն»: Եւ հաւանեալ Խոռեմայ՝ եկն առ Հայրակղոս արքայ Յունաց, Թողեալ ի նա զԵրուսաղէմ և զԿեսարիայ Պաղեստինացւոց և զամենայն կողմանս Անտիոքացոց և զամենայն քաղաքս գաւառացն այնոցիկ, և զՏարսոն Կիւլիկեցւոց և զմեծ մասն Հայոց[34] և զամենայն զօր միանգամ կամեցաւ Հայրակղոս. և ուրախ եղև մեծապէս խնդութեամբ. և Հայրակղոս [77]տայ նմա զԹագաւորութիւնն և խոստանայ զօր որչափ և պիտոյ իցէ: Եւ խնդրէ ի նմանէ խնդիրս, «առաջին, ասէ, զաստուածընկալ սուրբ նշանն, զոր գերեցեր յԵրուսաղէմէ՝ խնդիր արարեալ մեծաւ փութով այսրէն դարձուսցես»: Յայնժամ երդուաւ նմա Խոռեամ և ասէ. «Հրամայեա՛ արձակել արս հաւատարիմս, և ես յորժամ հասից ի դուռն արքունի՝ ի նմին ժամու խնդիր արարից Խաչին, և գտեալ զնա տայց բերել առ քեզ»: Եւ արար նմա հաւատարմութիւն յոյժ գրով, և կնքեալ աղիւ ըստ սովորութեանն իւրեանց երդումն, և խնդրեաց ի նմանէ զօր ինչ սակաւ յերևելի մարդկանէ, յորս ինքն վստահն էր: Իսկ Խոռեմայ առեալ զզօրսն երթեալ ի Թագաւորանիստն, հրաման տուեալ այլոց ոմանց՝ սպանին զտղայ Թագաւորն զԱրտաշիր: Յայնժամ արձակեաց Հայրակղոս արս հաւատարիմս առ Խոռէմ վասն աստուածընկալ սուրբ Խաչին. և նորա խնդիր արարեալ մեծաւ ստիպով, մինչև կարացին գտանել նովիմբ կազմածաւ[×], և ետ յարսն որք [78] եկեալ էին. նոքա առեալ գնացին փութանակի. և ետ բերողացն Հայրակղոս ինչս բազումս և մեծարեալ արձակեաց պատուով[35]: Եւ գու-

[77] ×) Այլ օր.՝ կազմածով:

մարեալ Հայրակղի զամենայն զօրս իւր յորդոր և խնդալից սրտիւ, բազմութեամբ զօրաց ել ընդ առաջ սուրբ նշանին, ի պատիւ Հրաշալի և երկնաւոր գանձուն, և տարեալ Հասուցանէր ի սուրբ քաղաքն Երուսաղէմ: Եւ ապա անտի ոչ սակաւ ինչ լինէր յաւուր յայնմիկ ձայն լալոյ, Հեղումն արտասուաց յաՀագին բորբոքմանէ սրտից նոցա և գութ խանդաղատանաց թագաւորին և իշխանացն և զօրացն ամենեցուն և բնակչաց քաղաքին. և ոչ ոք կարէր երգել զօրՀնութիւն սաղմոսացն և կամ լսել ի գթալից արտասուաց ժողովրդեանն միաբանգամայն և յայնչափ խնդութենէն: Եւ կարգեալ Հաստատեաց Հայրակղոս զսուրբ նշանն անդէն ի տեղւոջ իւրում ի սուրբ Գողգոթայ[36]: Եւ բաշխեաց ամենայն եկեղեցեացն և աղքատաց քաղաքին օրՀնութիւն և գինս խնկոց[37]. և ինքն [79] գնաց ի Միջագետս Ասորոց, զի կալեալ Հաստատեսցէ ինքեան զքաղաքսն և զսաՀմանսն ամենայն, որ առ Խոսրովաւ և առ Մուրկաւ Հաստատեալ էր: Եւ եկաց սուրբ Խաչն տէրունական յաստուածակերտ քաղաքին մինչև զմիւսանգամ առումն Երուսաղէմի, որ յորդւոցն Իսմայելի[38]:

Եւ Խոսրովայ առեալ զթագաւորութիւնն՝ յաւուր միում զգեցեալ էր Հանդերձ թագաւորական և Հեծեալ յերիվար արքունի, և շրջէր ի մէջ ամենայն զօրացն իւրոց, ցուցանել զինքն և քաջալերել զզօրսն. և յանկարծակի ի թիկանց կողմանէ յարձակեալ ի վերայ նորա արանց՝ Հարեալ սատակեցին զնա:

Ապա թագաւորեցուցին զԲօրն՝ զդուստրն Խոսրովայ, որ էր կին նորին. որում բամբիշն կոչէին. և կարգեցին Հրամանատար ի գլուխն զԽոռեամ Որմզդ, որ և սպանաւ ի բամբշանէն որ կոչէին Բոր: Եւ կալաւ Բօրն զթագաւորութիւնն ամս Բ և մեռաւ: Եւ յետ նորա առին զԽոսրովայ ազն ազգայ մանուկ և նստուցին իւրեանց թագ[80]աւոր. և նա փութանակի վախճանեցաւ: Ապա ամենեքին թագաւորեցուցին զԱզարմիդ դուս-

[79] Ն) Ալ որ՝ զԲօրն:

տըր Խոսրովու, և զօրն Խոռեմայ թագաւորեցուցին զՈրմզդ ոմն ի Մծուին քաղաքի. և յայնմհետէ նուազեալ պատառեցաւ թագաւորութիւնն Պարսից: Յետ այսր ամենայնի Յազկերտ թագաւորեաց ի Տիսպոն, և ունէր զթագաւորութիւնն երկիւղիւ, և ոչ հրամանատու այլ անձնապահ[39]: Որ և ի սա հասեալ՝ վախճան եղև թագաւորութեանն Պարսից. զոր յետ սակաւու միոյ ասասցուք:

Աստանօր և ի դէպ ելանէ մարգարէութիւնն Դանիէլի, տեսութիւն անհեղեղ պատկերին բազմախառն նիւթօքն ի վերայ խեցեղէն և երկաթեղէն ոտիցն[40]:

(Դ)

## ԹԷ ՈՐՊԷՍ ԵՂԵԻ ԲԱՐՁՈՒՄՆ ՁԱՐ ԹԱԳԱՒՈՐՈՒԹԵԱՆՆ ՊԱՐՍԻՑ, ԵՒ ՓՈԽԱՆՈՐԴԵԱՑ ՄԻՒՍ ԵՒՍ ՁԱՐ ԻՍՄԱՅԷԼԱԿԱՆ:

Ընդ ժամանակս Հայրակղի կայսեր Հոռոմոց էր հասեալ ի վախճան թագաւոր[81]ութիւնն Պարսից: Եւ յայնմ ժամանակի երթեալ ժողովէին ի քաղաքն Եդեսացւոց արք ԺԲՌ յամենայն ցեղիցն Իսրայէլի զի տեսին եթէ մեկնեցաւ անտի զօրն Պարսից, և թողին ի բաց զքաղաքն. նոքա երթեալ մտին անդ, փակեցին զդրունսն և ամրացան ի նմա և սկսան ապստամբել ի Հռովմայեցւոց տէրութենէն:

Իսկ թագաւորն Հայրակղէս հրաման ետ պաշարել զնոսա. զոր Թէոդորոս եղբայր թագաւորին և բազմութիւն զօրացն կամեցան սատակել զնոսա. իսկ թագաւորն հրաման ետ՝ երթալ գնալ ի սահմանաց իւրոց. և նոցա կալեալ զճանապարհն անապատի՝ գնացին ի Տաճկաստան առ որդիսն Իսմայէլի[1], ի քաղաքն որ կոչի Մադիամ[2], զոր աւերեացն Իսրայէլ յելանելն իւրում յԵգիպտոսէ և ընդ պատերազմելն ընդ Բաղակայ արքայի Մովաբայ[3]: Եւ քանզի իշխանութիւնն Պարսից յոյժ լքեալ էր՝ և աներկիւղ[x] շինեցին զքա-

---

[81] ×) Այլ օր.՝ վասն որոյ աներկիւղ:

ղաքն Մադիամ և բնակեցան ի նմա:

Յղէին պատգամս առ որդիսն [82] Իսմայէլի և ցուցանէին զմտերիմ հարազատութիւն, թէ «որդիք Աբրահամու եմք, և մեք և դուք եղբարք^x. պարտ է ձեզ գալ յօգնականութիւն մեզ, և առցուք զերկիր ժառանգութեան մերոյ»: Իսկ նոքա թէպէտ և հաւանէին՝ այլ էր և հակառակութիւն մեծ ի մէջ նոցա. քանզի որոշեալ էին պաշտամամբ կռոց ըստ իւրաքանչիւր կամաց:

Յայնմ ժամանակի էին եղբարք[4] բնակեալք ոմանք ի կողմանս ապառաժ Արաբիոյ ի տեղւոջն Փառան, որ այժմ կոչի Մաքայ, արք պատերազմողք զօրագլուխք, պաշտօնատարք մեհենին Ամովնացւոց պատկերին, որ կոչի Սամամ և Քաբար: Դէպ եղև միում ի նոցանէ մեռանել, որում կոչէին Աբդլայ. և որդի նորա մնացեալ մատաղ հասակաւ, որում Մահմէտ կոչէին. զոր առեալ սնուցանէր հօրեղբայր իւր Ապուտալպ մինչև ցարբունս հասակի. և ի չափ ինչ հասեալ բնակեցաւ առ ումեմն մեծատան ի նոցունց ազգականից. հարկանէր^xx նմա սպասաւորութիւնս միամիտս, [83] արածէր ուղտս և լինէր հրամանատար տանն նորա: Եւ իբրև անցին աւուրք ինչ՝ վախճանեցաւ տանուտէր տանն: Տեսեալ կնոջն զՄահմէտ այր հաւատարիմ և ուշմագոյն^x յամենայն իրս աշխարհականս՝ եղև նմա կին և ետ ի ձեռն նորա զամենայն հոգս տան և ընչից: Եւ եղև այր թանգար արուեստիւ և հմուտ վաճառականութեան. հարկանէր ճանապարհս հեռաւորս ի գործ վաճառականութեանն, յԵգիպտոս և ի կողմանս Պաղեստինացւոց. և մինչ այսմ գործոյ պարապէր՝ դէպ եղև նմա ի կողմանս Եգիպտացւոց հանդիպել առն միոյ մոնազնի, որում կոչէին Սարգիս Բհիրայ, որ էր եղեալ աշակերտ մոլեգնութեանն արիանոսաց. սմա ծանօթացեալ և սիրողացեալ ժամանակաւ ուսուցանէր բազում ինչ նմա և յոլովա-

---

[82] x) II (99), III (156) չիք՝ և: Ա ($^{1}/_{35}$), I (109)՝ և մեք և դուք եղբարք:
xx) Այլ օր.՝ հարկ էր:

[83] x) Այլ օր.՝ ուշիմագոյն:

գոյնս զՀնոց կտակարանաց, և եթէ ոչ գոյ բնութեամբ որդի Աստուծոյ: Եւ միջնորդէր նմա Հետեւել Հաւատոյ առաջնոյ Իսրայէլականացն, «զի թէ յայս եկեսցես՝ իմով Հրամանաւ եղիցիս զօրագլուխ մեծ և առաջնորդ ամենայն [84] տոհմի քո»: Ցուց առնէր նմա զխոստումնն Աստուծոյ առ Աբրահամ[5] և զկարգս թլպատութեանցն և զզոհիցն և զայլոցն ամենեցուն[6], զոր ոչ է այժմ առել մի ըստ միոջէ. և յայս լինէր խոկումն Իսմայէլացւոցն մինչև իսպառ:

Եւ եղև ի միում աւուրց, ի գալ նորա ի նմանէն՝ ձայն օտարոտի, և ազդումն աՀագին և դիւական անկեալ ի վերայ նորա՝ ուշաթափ անկեալ դնէր, զոր[xx] դիպողագոյն է այժմ ըստ առաջիկայ օրինակիս յայտ առնել. քանզի ասեն զկնոջէն, յորմէ նեռնն է ծնանելոց՝ ճանապարՀորդել յԵգիպտոսէ յաշխարՀն Պաղեստինացւոց, և ցանկացեալ տեսանել զարձանն կնոջն Ղաւտայ[7] երթեալ դադարէ անդ Հանդստութեամբ. և ի նիրՀելն իւրում՝ ձայնէ Հոգին աւտար ի բերանոյ կնոջն քարացելոյ եթէ՝ ծնցիս որդի աշխարՀակալ. որ և ի պոռնկութենէ յղացեալ իսկ էր դուստր ցեղի Դանայ[8]: Այնպիսիք և առ սովաւ երևեցան. քանզի Հարցեալ[xx] ցնա որք նորին ուղեկից՝ թէ ո՞րպիսի պատճառաւ անկեալ եղեր ի [85] մտաց՝ ասէ, «ձայն իմն աՀաւոր Հրեշտակի անկեալ ի վերայ իմ՝ Հրամայեաց երթալ պատգամաւոր յազգն իմ, ցուցանել զԱստուած արարիչ երկնի և երկրի. առնուլ ինձ անուն գլխաւորութեան, և զստութիւն Հաւատոց որ ի կուռս՝ յանդիմանել և քակտել»: Եւ եկեալ ի Փառան՝ զնոյն ասաց երկրորդել զբանս զայսոսիկ առ Հօրեղբօրն իւրոյ որ կոչէր ԱպղջէՀր: Ասէ, «զի՞նչ է նոր Հաւատդ, որ այժմ ի քէն երևի. եթէ այլ ևս յաւելցիս ասել՝ անձին քում դու եղիջիր պարտապան». և նա տրտմեալ գնաց ի տուն իւր, քանզի

---

[84] x) I (101)՝ «և դիւական» բառերը նշանակված են բազմակետով:
xx) I (110)՝ «զոր դիպողագոյն... Հարցեալ» Հատվածը նշանակված է բազմակետով:

[85] x) I (111)՝ «ի դիւէ անտի... Աստուծոյ» Հատուածը նշանակված է բազմակետով:

Հանապազ ստիպէր ի[x] դիւէ անտի, թերևս թոյլ տալովն Աստուծոյ, զոր համարէր ի հրեշտակէ[xx] զանկանելն ի մտաց։ Եւ բազումք ի նոցանէ հաւանեցան նմա՝ պատգամաւոր Աստուծոյ ասել։

Եւ յաւուր միում լեալ նորա ի տխրութեան[xxx] ի սպառնալեաց հօրեղբօրն իւրոյ՝ եկն եմուտ առ նա Ալի որդի Ապուտալպի և ասէ, զի՞նչ են պատճառք դ զի նստիս տխրեալ. և նա ասէ՝ զԱստուած արարիչ երկնի և երկրի պատմեմ, և անարգեն զիս սպառնալեօք։ Եւ Ալի էր այր [86] քաջ. ասէ ցնա, արի՛ ելցուք, քանզի են և ընդ մեզ արք բազումք, թերևս լիցի ելք իրացդ պիտանութեամբ։

Եւ ելեալ նոցա արտաքս՝ սկսաւ խօսել Մահմէտ հրապարակաւ զնոյն բանս. և եղև աղաղակ մեծ ի միջի նոցա և կռիւ այնքան, մինչև բազումք ի նոցանէ ի սուրս դիմեցին։ Եւ պարտեցաւ կողմն Մահմէտի, և վիրաւորք բազումք լինէին յերկոցունց կողմանցն, և փախստական եղեալ Մահմէտ և Ալի և ընդ նոսա իբրև արք Խ՝ եկին ի քաղաքն Մադիամ, զոր և ասացաք յառաջագոյն։ Եւ ուսեալ Հրէիցն զպատճառս փախստեանն՝ խրախուսեցին ի միաբանութիւն, ճշմարիտ ասել զասացեալսն, իբրև նախանձախնդիրք Աստուծոյ և որդիք Աբրահամու և եղբարք միմեանց։ Եղեն ընդ նմա և ուխտեցին ուխտ, և ետուն նմա կին յազգէն իւրեանց և պատրաստեցան լինել ընդ նմա, որպէս և կամք իւր հրամայեսցեն. զոր թէ ասիցէ ոք՝ ի հրամանէ Աստուծոյ լինել սկիզբն առաջարկութեանն այնորիկ։ Գումարեցան ի միասին Հրէայքն համդերձ Իսմայէլացովք և եղեն բա[87]նակ մեծ, և ելեալք ի վերայ Փառանու՝ արարին մեծ խորտակումն դիմադարձացն, սպանին և զԱպղջէհրն և զբազումս ի զօրէն Ամովնացւոց և Մովաբացւոց, կործանեցին և զպատկերսն Սամամայ, որ ի բագնին այնորիկ. յանդգնեցան ասել և զմեհեան՝ տուն Աբրահամու, հնազանդեցուցին և զամե-

xx) Այլ օր.՝ ի հրեշտակաց։ xxx) Ա ($^{2}/_{11}$)՝ ի տիրութեան։

[87] x) Այլ օր՝ կալայքդ։

նայն բնակիչս սահմանացն մերձակայից, և զապստամբսն միահաղոյն բարձին սրով[10]:

Տեսեալ Մահմէտի զյաջողութիւն իրացն և զմիաբանութիւն Հրէիցն՝ ասաց զինքն գլուխ և առաջնորդ ամենեցուն: Կարգեաց հրամանատարս և զօրագլուխս ինքեան յիսմայէլականաց անտի՝ զԱլի և զԱպուբաքր և զԱմր և զՈւթման: Եւ յղէ պատգամ առ Թէոդորոս եղբայր Հայրակղի, ըստ այնմ որում Հրէայքն եղեն ձեռնտու, եթէ «զերկիրդ զայդ Աբրահամու խոստացաւ Աստուած և զաւակի նորա, և ի ձեռս նոցա էր բազում ժամանակս. և եթէ վասն չարութեան գործոց նոցա տաղտկացաւ Աստուած և ետ ի ձեռս ձեր՝ բաւական լիցի ձեզ այդչափ որչափ կալէքդ. և [88] արդ մեք զաւակ Աբրահամու եմք. և գիտէք դուք զխոստումնն որ առ Իսմայէլ հայրն մեր. տուք ի մեզ զերկիրդ մեր խաղաղութեամբ, ապա թէ ոչ առցուք պատերազմաւ, ոչ միայն զայդ, այլ և զայլ ևս բազումս»[11]: Եւ նորա կամեցեալ ցուցանել թագաւորին՝ ի սոյն աւուրս վախճանեցաւ Հայրակղէս. իսկ որդի նորա Կոստանդին ոչ ունէր յանձին ըստ կամաց նորա պատասխանի. այլ հրամայէր միայն զգուշանալ և ոչ ելանել պատերազմաւ ընդդէմ նոցա, մինչև տեսցէ զելս իրացն[12]. և բանակն Իսմայէլի հզօրագոյնս ստիպէր ի պատերազմ: Եւ նոքա կամեցեալ անձնապահ լինել աշխարհին՝ գնացին ընդդէմ նոցա. թողեալ զերիվարս իւրեանց, ի հետիոտս ելին ընդդէմ նոցա: Իսկ նոքա քանզի ի հանգստեանն էին՝ դիմեցին ի վերայ նոցա, և նոցա պարտասեալք[x] ի ծանրութենէ զինուցն և ի ջերմութենէ տապոյ արեգականն և ի սաստկութենէ աւազոյն, որ ոչ ունէր զկայ ոտից, և ի հետևակագնացութենէն և ամենեքումբք [89] թշուառացեալ՝ անկան ի ձեռս թշնամեացն, որք դատեցին ի սուրս իւրեանց, և եկեալ ի տեղի բանակի նոցա՝ առին աւար բազում, և սկսան աներկիւղ տարածանել ի վերայ երկրին. քանզի ոչ կասկածէին ի

---

[88] x) Ա (2/8ա)՝ պատրաստեալք:
[89] x) այլ օր.՝ թագաւորանիստ:

պատերազմէ իմեքէ:

Յայնժամ տեսեալ Երուսաղէմացւոցն զանհնարին դիպուածսն անօգնականութեանն՝ առին զաստուածային սուրբ նշանն տէրունական հանդերձ այլ սպասիւք եկեղեցեացն, փախուցին ի քաղաքն Թագաւորական[x] ի Կոստանդին. և Իսմայէլ տիրեաց ամենայն Հրէաստանի[13]:

Իսկ աբեղայն արիսեան, զոր յառաջագոյն ասացաք վարդապետ Մահմէտի, տեսեալ զյաջողութիւն իրացն՝ յարուցեալ եկն առ Մահմէտ, ցուցանել նմա զգութ երախտեաց, իբրև յիւրմէ վարդապետէ ուսեալ եհաս այնպիսի իրաց. իսկ նա քանզի ի հրեշտակէ ասէր ունել պատգամ և ոչ ի մարդոյ՝ յոյժ դժուարեալ ընդ իրսն՝ սպան զնա ի գաղտնիս:

Ի սոյն ժամանակս էր այլ ոմն ի կողմանս Պարսից միայնացեալ կրօնաւորութեամբ, էր և նորա աշակերտ մի, [90]որում անուն էր Սաղման[14]. որ ի ժամ մահու միայնակեցին՝ պատուիրէր նմա և ասէր, «որդեակ, ի վախճանելս իմում մի կայցես յայսմ աշխարհի, զի մի կորուսցես զկարգ քո ի մէջ անհաւատից. այլ երթիցես ի կողմանս Եգիպտոսի՝ բնակել ի մէջ բազմութեան եղբարց, զի շահեսցիս զոգիդ քո»: Եւ վախճանեալ միայնակեցին՝ կամեցաւ կատարել զպատուէր նորա Սաղման: Դէպ եղև նմա ճանապարհաւ գալ ի քաղաքն Մադիամ, էր և ծանօթ գիտութեան գրոց, թէպէտ և ոչ կատարելապէս: Զսա տեսեալ Մահմէտի՝ կոչեաց և յարեցոյց առ ինքն, հրամայեալ նմա գրել գիրս օրինաց ազգին իւրոյ, ձեռամբ Աբութուռաբայ իսմայէլացւոյ[x]. քանզի ինքն ոչ գիտէր գիր և ոչ դպրութիւն: Իսկ Սաղման յանձն առ գրել նմա. և գրէր գիրս յօդուածոյս, էր ինչ որ ի ստուգ յիշողութենէ, և էր ինչ որ կարծողական բանք. այլ և ինքն Մահմէտ, մոլեկան հոգւով շարժեցեալ[xx] տայ[xxx] գրել զանուղ-

---

[90] x) Այլ օր.՝ Իսրայէլացւոյ:
xx) I (114)՝ «մոլեկան հոգւով շարժեցեալ» բառերը նշնակված

ղայս[xxxx], զոր մեք ի բազմաց զսակաւս յիշեցուք: Քանզի ասէր զինքն՝ մխիթարիչն, [91]զոր խոստացաւ տէր Քրիստոս առաքել աշակերտացն իւրոց, և զինքն համեմատ Փրկչին ասաց լինել և ուղեկից ճանապարհի նորա, յասելն Եսայեայ մարգարէի, «հեծեալ մի իշոյ, և հեծեալ մի ուղտու»[15] զայս ամենայն յինքն յարակցէր: Եւ փոխանակ սուրբ մկրտութեանն՝ հանապազ ողողանիլ ջրով, և զայն բաւական համարել ի սրբութիւն: Եւ զերկնային պարգևացն որ ի հանդերձեալսն խոստացաւ Տէրն, զանպատում և զհրեշտակային նորոգութեան՝ նա ասաց լինել անդ կերակուրք և ըմպելիք ուժգին. զո՛ր և կամեսցի ուտել անյագաբար՝ պատրաստ գտանիցէ, և կանանց կուսից մնացելոց հանապազ անյագաբար խառնակումն: Եւ երկայնագոյնս է զամենայն բանս պղծութեան նորա շարագրել, զի յոյժ բազում է և ընդդիմակ Աստուծոյ[x]: Եւ զայս ամենայն հաստատեալ եդ օրէնս ազգի իւրում, կոչելով Կուրանս:

[xx]Եւ արդ եկ ասացից քեզ, ո՛րպիսի ողբովք ողբայ զնոսա հին մատենագիրն ասելովն, «վ՛այ քեզ, եղուկ դու, ազգ Տաճկաց, արանց և կանանց [92] ամենայն ծովեզերեայ քաղաքաց. փոխանակ անաւրէնութեան լեզուիդ և պղծութեան կարգաց, որով բացեալ զբերանդ պղծութեան զանաւրէնս բարբառէիր: Հասեալ կայիք յանդիման մեծազաւրին Աստուծոյ: Եւ զլեզուդ պղծութեամբ զոր սրէիր ի վերայ մեծազաւր Թագաւորին՝ արդ նոր և զարմանալի վիրաւք դա-

---

են բազմակետով:
xxx)Ա ($^2/_{16}$)՝ տայր: xxxx) Ա ($^2/_{18}$)՝ գրել զաննուղղայս: I (114)՝ զանուղղայս»-ի փոխարեն՝ բազմակետ. ծն. 2 գրել բանս զանուղղայս:

[91] x) Г «և ընդդիմակ Աստուծոյ-ի փոխարեն բազմակետ: xx) I բազմակետով են նշանակված Ա-ի 2-րդ սյունակի 16-21-րդ տողերը, էջ 92 ողջ 1-ին սյունակը, 2-րդ սյունակի 1-7, մասամբ 8-9, 11-14 տողերը: 14-ի վերջի՝ «և կեցէ» բառերից՝ շարադրանքը շարունակվում է ըստ ձեռագրի:

[92] x) Ա ($^1/_{17-18}$)՝Ահ եղև: xx) Ա ($^2/_{10}$)՝ և ևս:

տեսցէ զքեզ քան զամենայն տիեզերս: Այլ և^x սաստիկ Հարուածովք սատակեսցէ զքեզ: Եւ առՀասարակ ամենայն տիեզերք ծխեալ տեսանիցեն, և ի քէն ամենեւին Հուրն ոչ պակասեսցէ յաւիտեան, իբրև զՀնոց խեցագործաց այրեսցիս, և քեզ ոչ եղիցի Հանգիստ»[16]:

Եւ նորա զայս ամենայն չարիս կատարեալ՝ և ևս^xx բազմագոյնս քան զայս Հաստատեալ եդ ազգի իւրում օրէնս բազում և այլ չարագործութեամբք. և կեցեալ ամս Ի ի սմին՝ մեռաւ. և ինքն կացուցանէ ի գլխաւորութիւն Տաճկաց զԱպուբաքր, և կեցեալ ամս Բ մեռանի: Յետ այսորիկ կայ ի գլխաւորութիւն տաճկ[93]աց Ամր, որդի Հատապայ ամս Ի և ամիսս Զ[17]: Սա Հալածեաց զՅոյնս, և գումարեալ զօր բազում գնաց ի վերայ լքեալ թագաւորութեանն Պարսից յերկիրն Պարթեւաց, ի վերայ Յազկերտի անուանեալ արքային Պարսից: Եւ փախեաւ Յազկերտ յերեսաց նոցա և ոչ կարաց ճողոպրել. քանզի Հասին զՀետ նորա մերձ ի սաՀմանս Քուշանաց, և կոտորեցին զամենայն զօրս նորա. և փախուցեալ նա անկաւ ի զօրն Թետաղաց, որ էին եկեալ նմա յօգնականութիւն, որ և սպանին զնա Հրամանաւ Իսմայէլի, կալեալ զթագաւորութիւնն ամս Ի: Եւ յայնմՀետէ բարձաւ տէրութիւնն Պարսից և ազգին Սասանայ, որ տևեաց ամս ՇԽԲ[18]:

Արդ են ժամանակք թագաւորութեանն Պարսից, սկսեալ ի Կիւրոսէ ցԴարեՀիսն^x զոր սպան Աղէքսանդրոս Մակեդովնացի, և ամք անիշխանութեանն զոր ոմանք ի պատմագրաց գրեն Կ, և այլք Հ, և յետ այնորիկ պաՀղաւիկ թագաւորաց ժամանակք, որ կոչին Պարթևք, մինչև յԱրտևան որդի Վաղարշու, զոր սպան Ստախրացին [94] Արտաշիր որդի Սասանայ, որ առեալ զթագաւորութիւնն Պարթևաց՝ տևեաց մինչև ի ժամանակս Յազկերտի, որ վերջին կացեալ թագաւոր Պար-

[93] x) Այլ օր.՝ մինչև զԴարէՀիսն:

[94] x) I (116), II (104)՝ Հին օր.՝ Վիգք: Ա ($^2/_{10}$)՝ վիղք. (թերևս՝ Վղիդ=Վլիդ):

ւից՝ սպանաւ ի Տաճկաց: Եւ համարին ամք ժամանակացս այսոցիկ, ի Կիւրոսէ մինչև ցԹագաւորութիւնն Տաճկաց՝ ամք ՃԿՌ[19]:

Մաւի ամս Ի և ամիսս Գ և աւուրս ինչ: Եւ էր պատերազմ սաստիկ ի մէջ Ալեայ որդւոյ Ապուտալպի և Մաւեայ ամս Ե և ամիսս Գ: Քանզի առէր Ալի անգաւոր ինքեան զգլխաւորութիւնն Տաճկաց: Յեզիտ որդի Մաւիայ ամս Գ և ամիսս Գ: Աբդլմէլք որդի Մրուանայ ամս ԻԱ: Եւ էր հակառակութիւն մեծ և պատերազմ Աբդլայի որդւոյ Զուբայրի ամս Բ և ամիսս Գ: Ի սոյն աւուրս մեծ նեղութիւն եղև աշխարհիս Հայոց ի չարասէր կամաց նորա: Վիղղ[x] որդի Աբդլմէլքի ամս Ժ. սա ևս աւելի խորհեցաւ չար, և պատրանօք խաբէութեան որսացեալ զնախարարս աշխարհիս Հայոց՝ աբար հրկէզ զամենեսեան ի քաղաքին Նախճաւան և յաւանին Խրամի, [95] որ է ի ներքոյ Աստապատոյ վանացն, յեզր Երասխայ. և զաշխարհս ապականեաց գերութեամբ: Սուլիման որդի Աբդլմելքի ամս Գ: Ումառ որդի Աբդլազիզա ամս Գ: Սա ազնուագոյն եղեալ քան զամենեսին. գրէ Թուղթ հաւատոց առ Ղևոն կայսր Յունաց, և ընկալեալ ի նմանէ պատասխանիս[20] բազում ինչ ի Կուրանէ անտի իւրեանց արտաքս ընկէց զյոյժ առասպելագոյնն, քանզի ստուգապէս ծանեաւ զզօրութիւնն. Թէպէտ և ոչ համարձակեա՛ց զամենայն բառնալ, այլ յոյժ պատկառանօք ամաչեցեալ՝ լքաւ ի ստութենէ անտի, որ յանդիմանեցաւ ի Թղթոյ կայսերն, և ի ձեռն այսորիկ ցուցանէր բարեմտութիւն մեծ առ ազգս քրիստոնէից. և ամենայն ուրեք բարեացապարտ զինքն ցուցանէր. գերեաց գերեդարձ արար, և ամենեցուն շնորհէր զյանցանս, և ձրի Թողութիւն առնէր. և առ իւր ազգն ցուցանէր մտերմութիւնս առաւել քան զամենայն առաջինս: Եւ բացեալ զմԹերս գանձուցն բաշխէր առատապէս ամենեցուն իւրոց սպայիցն: Յեզիտ[21] ամս Զ. սա էր այր ժանտ, և մոլե-

կան Հոգւ[96]ով չարժեցեալ՝ բազում չարիւք մարտնչէր ընդ ազգն քրիստոնէից. տայր հրաման փշրել և խորտակել զկենդանագրեալ պատկերս ճշմարիտ[x] մարդեղութեան Փրկչին և նորին աշակերտաց: Խորտակէր և զնշան տէրունական Խաչին, զոր ուրեք ուրեք կանգնեալ լինէին. քանզի յոյժ ստիպէր զնա Հոգին մոլեկան: Տայր հրաման և խոզասպանութեան և ջնջէր յերկրէ զբազմութիւն արօտական խոզից: Եւ ի կատարումն ամենայն չարեաց հասեալ՝ ինքն խեղդեալ ի դիւէ սատակեցաւ: Շամորեհեշմ[xx] ամս ԺԹ. Վլիթ ամս Բ. Մրուան ամս Զ. Աբդլայ ամս Գ. միւս Աբդլա ամս ԻԲ[22]. Մահադի ամս Ժ[23]. Մահմետ որդի Մահադեայ ամս Ը. Մուսէ ամ Ա. Ահարոն ամս Ե[24]. Մահմետ որդի Ահարոնի և կնոջ Զուպետայ ամս Դ Մայմաւն եղբայր նորա ամս ԻԱ. Սահակ Մահմետի որդի ամս Թ. Ահարոն որդի Մահմետի ամս Ե և ամիսս Զ. Ջափր որդի Մահմետի ամս ԺԷ: Եւ զրոյցք ժամանակաց սոցա յայլոց գրեալ [97] յառաջագոյն, աւելորդ համարեցաք երկրորդել. Նա և զանուանս նոցա և զթիւ ժամանակացն այլափոխս տուն մեզ, թերևս վասն չփոթեալ և հակառակասէր ազգին, որ ի կողմանս Դամասկոսի կացեալ՝ ոմանք թագաւոր ասէին զինքեանս, և այլք յԱսորեստանի[x] կացեալ՝ զինքեանս ասէին թագաւոր, մինչև ի ժամանակս Աբդլայի, որ միապետեալ զամենայն, շինեալ քաղաք և տուն արքունի, վասն ամուր զգուշութեան արքունեաց, զԲաղդադ[25]: Եւ քանզի թարգմ.նի Աբդլայ ծառայ Աստուծոյ ըստ հագարական լեզուին. այս այն Աբդլայն է, զոր ազգ իւր ասացին Աբդլանգէ, այսինքն ծառայ դանգի և ոչ Աստուծոյ, վասն սաստիկ զօշութեանն և անյագ ագահութեանն[26]:

Բայց մեզ կայ առաջի ասել վասն Ջափրայ և չար գործոց

---

[96] x) Այլ օր.՝ պատկերս տէրունականս ճմարիտ: xx) Ա ($^2/_{2-3}$)՝ Շամորեհեշմ, ուղղ.՝ Շամ որ է Հեշմ:

[97] x) Այլ օր.՝ յասորեստան:

Նորա, անգիրս մնացեալ յայլոց, զոր կատարեաց ի վերայ աշխարհիս Հայոց երկայնագոյն ժամանակաւ, և անըմբռնելի նեղութեամբ ի մերս հանդիպեալ աւուրս, որ էր Հայոց Ց թուական[xx]:

(ե)

## [217]ՎԱՍՆ ԹԱԳԱՒՈՐԻՆ ՋԱՓՐԱՅ, ԶՈՐ ԻՆՁ ԽՈՐՀԵՑԱՒ Ի ՎԵՐԱՅ ԱՇԽԱՐՀԻՍ ՀԱՅՈՑ, ԵՒ Ի ԳԼՈՒԽ ԵՀԱՆ ԶԿԱՄՍ ՉԱՐՈՒԹԵԱՆՆ. ԵՒ ՈՐ ԻՆՁ ԸՆԴ ՍՈՎԱՒ ՆԱԽ ՔԱՆ ԶԼՆՈՒԼ ՎԵՑԵՐՈՐԴ ՅՈԲԵԼԻՆԻ[1], ԵՒ ԵՕԹԱՆԱՍՈՒՆԵՐՈՐԴ ՈԼՈՄՊԻԱԴԻՆ[2], ՅԵՏ ԻՆՆԵՒՏԱՍՆ ԸՆԴԻՔՏԻՈՆԻՆ[3], ՅՈՐՈՒՄ ԲՈՎԱՆԴԱԿԻՆ ԺԱՄԱՆԱԿՔ ԲՌՆԱԿԱԼՈՒԹԵԱՆՆ ՏԱՃԿԱՑ ԱՄՔ *ՄԻԲ* ԸՍՏ ԹՈՒՈՑ ՀԱՅԵՐԷՆ ՏՈՒՄԱՐԻ. ԹԱԳԱՒՈՐԷ ՏԱՃԿԱՑ ԹՈՔԼ[x]ՈՄՆ ՋԱՓՐ ԱՆՈՒՆ[4]:

Այր ոմն Ջափր խրոխտ և ամբարհաւաճ. և սկսաւ եղջիւր ածել անօրէնութեամբ և գոռալով ոգորէր ընդ չորս կողմանըս երկրին և նեղեալ տագնապէր զխաղաղասէրս կենօք, քանզի կարի սիրելի էր նմա խռովութիւն և արիւնհեղութիւն. և հանապազ յանձն իւր տարակուսանօք տարուբերէր, թէ յո՞վ և կամ յո՞յր կողմանս թափիցէ զդառնութիւն մահաբեր թունից իւրոց, և կամ ո՞ւր վատնիցէ ցանիցէ թափիցէ զբազմութիւն նետից ի կապարճից [218] խորհրդանոցին, չարին հնարիմացութեան: Եւ առ յոյժ յիմարութեանն հարեալ ցանկութեամբ, խլրդենի դիմօք[5], իբրև զգազան մի կատաղեալ՝ սկսաւ յարձակել ի վերայ աշխարհիս Հայոց. և ըստ հնարագէտ ազգի իւրեանց խորամանկ կեղծաւորութեամբ, խաղաղասէր դիմօք առ սակաւ սակաւ ջանայր կատարել զկամս չարութեան իւրոյ:

Ի սորա ժամանակս տիրէր Վասպուրական աշխարհիս Ա-

---

xx) Այստեղից բնագիրը շարունակվում է էջ 217-ի 2-րդ սյունակից:

[217] x) այլ օր.՝ Թուրք:

[218] x) Ա (ʻ/ն)՝ յոր: xx) Այլ օր.՝ ճակատելոց:

չոտ ի տանէն Արծրունեաց, այր քաջայայտ և ճոխ ի բարձրագոյնս. յոյր[×] ձեռն բազում արութիւն նահատակութեան երևեալ լինէին ի մարտս պատերազմաց և ի հանդէսս ճակատեցելոց[××] ի միայնամարտիկ զինուորութեան: Եւ խոյակապ և անուանի եղեալ քան որ յառաջագոյն քան զնա էին կացեալ իշխանք ընդհանուր Հայաստանեայցս, որ յարևելս և ի կողմանս հիւսիսոյ, մանաւանդ որ ի Վասպուրական աշխարհիս էին կացեալ նախարարք յիշխանական պետութիւնս:

Ընդ նոյն ժամանակս յղէ թագաւորն զոմն ի յաւագ նախարարացն վերակացու Հայոց և հաւատարիմ ի վերայ [219] հարկաց արքունի Ապուսէթ անուամբ, ըստ տաճկական լեզուին, յարելութեամբ եբրայական դպրութեանն: Եւ յելանելն նորա և մօտ լինել ի սահմանս Հայոց զօրօք բազմօք, մերձ ի սահմանս Տարունոյ Առաջին կոչեցեալ Հայոց՝ իշխան Տարունոյ Բագարատ, վասն զի ունէր յայնժամ զգլխաւորութիւն բարձակցութիւն իշխանաց Հայոց[6], որ էր ի տոհմէն Բագրատունեաց՝ առաքէ զոմանս ի մեծամեծաց իւրոց ընդ առաջ նորա պատարագօք ոսկոյ և արծաթոյ և պատուական հանդերձից, համոզեալ մի ելանել յերկիրս Հայոց: Բայց նոքա ի մտի եդեալ էին, թերևս պատիր խաբէութեամբ կարասցեն բառնալ զնոսա յիւրաքանչիւր տէրութենէ: Իսկ իբրև ծանուցաւ նմա անլոյծ միաբանութիւն ուխտի ընդ միմեանս Աշոտոյ և Բագարատայ՝ ոչ ինչ[×] յայտնեաց զխորհուրդս չարութեանն, զոր խորհեալ էին ի վերայ նոցա. բայց միայն զհարկաց և զայլ հոգաբարձութենէ ծանուցանէ զպատճառ գալստեանն. և նոքա տան տանել նմա զհարկս [220] և զհասս արքունի և դարձուցանեն զնա ընդ նոյն ուստի եկն[×]: Նորա դարձեալ դառնայ ի Սամառայ և ծանուցանէ արքայի զոր ինչ գործեաց, և թէ զիա՛րդ են առ միմեանս միաբանութեամբ իշխանք Հայոց: Եւ զչարեալ ընդ խափանումն խորհրդոցն իւրոց՝ ամբաստան յոյժ լինէր զԱշոտոյ

[220] ×) Այլ օր.՝ զնա ուստի եկն:

Հանդերձ թղթովք Տաճկաց, որք էին ի կողմանս Հայոց, բազում այն ինչ զոր ստութեամբ քան թէ ճշմարտութեամբ զեկուցանեն զնմանէ զգործս, և թէ հակառակս ես թագաւորութեան քոյ բանընդդէմ լինի հանապազ: Զնոյն և կողմնակալքն Պարսից գրգռէին զթագաւորն ամբաստան լեալ ամբաստան լինել Աշոտի զպետութենէն Տաճկաց

Բայց ի գնալ մեծ հազարապետին յարքունիս՝ հաւատաց զվերակացութիւնն աշխարհիս Հայոց և հարկս արքունի ի ձեռս Մուսէի ումեմն որդւոյ Զորահայի հազարացւոյ[7], որ տիրէր յայնժամ Արզնայ և ներքոյ կողմանն Աղձնեաց մերձ ի սահմանս Տարօնոյ:

(Ջ)

## ՎԱՍՆ ՊԱՏԵՐԱԶՄԻՆ ԲԱԳԱՐԱՏԱՅ ԻՇԽԱՆԻՆ ՀԱՅՈՑ ԵՒ ՄՈՒՍԷԻ ԵՒ ՅԱՂԹՈՒԹԵԱՆՆ Ի ՁԵՌՆ ԱՇՈՏՈՅ ՎԱՍՊՈՒՐԱԿ[221]ԱՆ ԻՇԽԱՆԻՆ, ԶԻ ԵԿՆ ԶՕՐԱՎԻԳՆ ԲԱԳԱՐԱՏԱՅ:

Ի ժամանակին[x] յայնմիկ էր խռովութիւն մեծ ի մէջ Բագարատայ և Մուսէի: Եւ զօրաժողով եղեալ Մուսէի պատճառաւ հարկաց արքունի՝ եկն եմուտ յերկիրն Տարօնոյ, տալ պատերազմ ընդ Բագարատայ: Եւ կուտեալ զբազմութիւն զօրացն մերձ ի քաղաքն որ էր ձմերոց իշխանին Հայոց՝ անցանէր բանակէր ամենայն զօրօք իւրովք. գունդ կազմեալ ռազմ արարեալ զբոլոր դաշտաձև հովիտն ի ներքս փակէր, վառեալք զինու և ամենայն պատրաստութեամբ ընդդէմ գնդին Հայոց:

Իբրև ետես իշխանն Հայոց զզօրսն Տաճկաց եկեալ կազմութեամբ, հայեցեալ և յիւրեանց սակաւութիւնն՝ գիր պղատանաց փութանակի տայր առ քաջ նահատակն Աշոտ իշխան, զի թէ հնար իցէ՝ անյապաղ երագութեամբ անձամբ իւրով և զօրու և զինու ձեռնտու լիցի հասանել յօգնակա-

---

[221] x) Ա (¹/₃)՝ Ի բանակին:

նութիւն նմա: Իբրև յանդիման եղեն դեսպանքն մեծ իշխանին Աշոտոյ, և ընթերցաւ գգիր պաղատանացն և զյիշատակարան նախնեացն, և զմերձաւորութիւն [222] Հարազատութեանն և զկապակցութիւն ուխտին որ ընդ միմեանս[x] երդմամբք հաստատեալ սուրբ Աւետարանաւն և տէրունական[xx] նշանաւն՝ համագունդ ժողով առնէր ամենայն աշխարհին և ամենայն նախարարօք Վասպուրական տէրութեանն:

Փութանակի և վաղվաղակի իւրաքանչիւր զօրօք անդր հասանէին՝ իշխան Աշոտ և եղբարք իւր Գուրգէն և Գրիգոր զօրօք իւրեանց, և ի տոհմէն Արծրունեաց՝ Վահան և Վասակ և Մուշեղ և Ապուպէլճ[1] և Գուրգէն և Վասակ և Ապուջափր և Մուշեղ և Ապումայեայ և Վասակ և Վահան և Համազասպ և Վասակ որդի Գրիգորի և Ապումկդէմ և Մեհուժան և Գրիգոր, սոքա ամենեքին արք ԺԶ ի տանէն Արծրունեաց զօրօքն իւրեանց. և ի տանէն Բագրատունեաց Թոռնկայ որդի զօրօք իւրովք. ի տոհմէն Ամատունեաց Շապուհ Ը հարազատօք և զօրօքն իւրեանց. ի տոհմէն Գնունեաց Գրիգոր որդի Հազրի Զ այլ ևս հարազատօք և զօրօք իւրեանց. ի տոհմէն Ընտրունեաց[2] Արտաւազդ Է հարազատօք և զօրօք [223] իւրեանց. և այլք ի նախարարացն Վասպուրական իշխանին, Սմբատ Ապահունի[x], Գրիգոր Քաջբերունի, Վահան Հաւնունի, սեպուհն Դաւիթ, Գագրիկն Ապուհարազ, Թոդորոս Վարազխ, Խոսրով Վահևունի, Խոսրով Ակէացի, Վարդան Գաբայեղէն, Սմբատ Մարացեան, սեպուհ մի Սահակ, Պատրիկն Անձևացի, Գորգ Հարմացի, Դաւիթ Գունդսաղար[3]. և այլ բազումք յազատ տանէ, իւրաքանչիւր զօրօք գումարեալ, ի մի վայր խաղացեալ՝ գնացին հասին յայն վայր, մինչ նոքա գունդ առ գունդ ընդդէմ միմեանց ճակատեալ կազմէին զռազմն, և փողքն գոչէին և դրօշքն տարածանէին և նշանքն փողփողէին, վահանաւորքն և նիզակաւորքն գոչէին, այրուձին այսր անդր վազս առնէին և ախոյեանքն

---

[222] ×) Ա ($^{1}/_{3}$)՝ որ միմեանս: ××) Այլ օր.՝ տեառնական:
[223] ×) Այլ օր.՝ Ապուհունի:

յարձակէին, կապարճակիրքն աղեղանցն յուրային:

Եւ մինչդեռ զայսքան և զայսօրինակ մարտն գրգռէր՝ ահա յանկարծակի հասանէր քաջն մեր Աշոտ. և միախուռն յանդուգն յարձակմամբ դիմեցին ի [224] վերայ այլազգեացն, և ի դիմի հարեալ միմեանց՝ այր զախոյեան իւր յերկիր կործանէր: Զաչս ի վեր ամբարձեալ իշխանն Աշոտ՝ ետես զմի ոմն հարեալ ի զօրաց իւրոց. գոչեաց առիւծաբար, յարձակեցաւ ի վերայ ընտիր այրուձիոյն, և զաջ թեւն բեկեալ՝ զձախոյ կողմամբն արկանէր, և սրոյ ճարակ զամենեսեան տայրն, խիզախելով իբրև զքաջ նահատակս. իբրև զարծուիս կանչելով, իբրև զկորիւն առիւծուց ի վերայ որսոյ հասեալ բեկանէին: Եւ առ յոյժ յանդուգն յարձակմանն բազում այն լինէր, զոր ձիովքն ընթադրեալ դիաթաւալ կացուցանէին, քան զոր սրովն սատակէին: Եւ ոչ ոք գտանէր ամենևին ի կողմանէ թշնամեացն որ կարէր կալ ընդդէմ նոցա, և ոչ մի ոք. այլ մնացեալքն ի սրոյն փախստական անկանէին յամուրս մայրեացն: Եւ կէսքն հասանէին մինչ ի շահաստան Բաղէշ[×], թողեալ անդէն զբուն բանակն: Իսկ իշխանքն զհետ մտեալ փախստէիցն անկելոցն յամուրսն՝ աճեն մերձ ի պաշարումն զքաղաքն և զամրոցն, մինչ ելեալ արտաքս տիկինն ի հետիոտս լի հառաչանօք՝ [225] բաւական համարել զգործ նահատակութեանն, զոր ետ Աստուած ի ձեռս Աշոտոյ. և համոզեալ ի միջի նոցա յուղարկել զնոսա, զի էր քոյր Բագարատայ: Եւ նոցա ի գլուխ հանեալ զգործ պատերազմին՝ դառնան զօրքն Հայոց մեծաւ յաղթութեամբ, և յաւարի առնուին[×] զբանակետղն, դիակապուտ առնէին, ժողովէին աւար բազում, և կուտէին արծաթ և ոսկի յոյժ և զզէնս պատենազարդս, զզարդս և զզէնս արի արանց և զընտիրս երիվարաց և զզարդս նոցա. և դառնային մեծաւ ուրախութեամբ և անտրտում խնդութեամբ յիւրաքանչիւր տեղիս:

Յայնժամ իբրև ետես անօրէնն զօրավարն Մուսէ, թէ ոչ ելին ի գլուխ խորհուրդ չարին յօժարութեանն, և հարան ի հարուածս մեծամեծս զօրք նորա՝ փութացաւ արձակել զուժ-

---

[224] ×) Ա ($^{2}/_{10-11ա}$)՝ ի շհստանն բաղաղէշ:
[225] ×) Այլ օր.՝ առնեն:

պստամբս և զանհնազանդս[xxx] և զստահակս ի ծառայութենէ տէրանց՝ արդ դու յարուցեալ գնասցես ի մի քաղաքացդ Հայոց, որպէս օրէն է աշխարհակալաց. և մեք տացուք քեզ զհաստ հարկացն և հաճեսցուք զմիտս քո, և մի յանխնայ ասպատակելով յաւեր դարձուցանես[xxxx] զերկիր իմ»:

Նորա արհամարհեալ զառաքեցեալսն, չվարկանելով արժանի պատասխանոյ, և նովին օրինակաւ սկսաւ շրջել ընդ բոլոր աշխարհս Վասպուրական: Եւ հասեալ ի գեօղն Արճուճս[5] մնայր անդէն, և դիտակս թողոյր ի վերայ բլրոցն [228][xxxxxx] բարձրաւանդակաց:

Բարկացաւ յոյժ իշխանն ընդ արհամարհանսն, և յոյժ զայրացեալ մեծաւ ցասմամբ՝ առնու զբազմութիւն ազատագունդ զօրաց ըստ տոհմս ազգաց իւրաքանչիւր զօրօք. և եհաս ի վերայ նորա վառեալ զինու սպառազէն երիվարաց ընտիր հեծելովք այրուձիոյ: Եւ դէտն ազդ արարեալ զօրացն այլազգեաց՝ վառեն և նոքա ընդդէմ նոցա ի պատերազմ, և ի դիմի հարեալ միմեանց և հատանէին յերիս առաջս[x]: Զգունդն առաջին տուեալ լինէր ի ձեռս Գուրգինայ և Վահանայ Հաւնունոյ, որ և նիզակակից նմա էր: Եւ զգունդն երկրորդ ի ձեռս Գուրգինայ Ապուպելճի[6], և նիզակակից էր նորա Վահան Արծրունի: Եւ գունդն երրորդ ի ձեռս իշխանին, որ և յարդարիչ պատերազմին: Եւ յարձակեալ քաջութեամբ և արիական ձայնարկութեամբ՝ դիմէր ի վերայ թշնամեացն. ընդ առաւօտանալն սկսեալ՝ ի ժամս բովանդակ յաղթութիւն սատարեաց[xx] և ի փախուստ դարձոյց զբազմութիւն զօրացն Ովայի. սպանաւ ի խռան[xxx] անդ [229] և եղբայր Ովային և հեղմունք արեանց եղեն անհնարինք: Քաջապէս մարտուցեալ Գուրգէն եղբայր իշխանին և Վահան Հաւնունի՝ առին անուն յաղթութեան, անցուցանելով ընդ սուր զկողմն թշնամեացն. և զբոլոր ովիտն լնուն դիակամբք կոտորելոցն. և քամուածք ջրոյն որ ի ծործորացն ի

[228] Այլ օր.՝ յերիս առաջս հատանէին: ××) Ա ($^{1}/_{ցւ}$)՝ սատարեաց, ուղղ.՝ կատարեաց (Նախն. 218): ×××) Ա ($^{Լ}/_{Վ}$)՝ ի հռան:
[229] ×) Ս (113)՝ Թերևս՝ դարձեալ:

վայր գեղուին՝ յարիւն դառնային ի բազմութենէ սպանելոցն. և ինքն Ովայ զերծեալ սակաւ ումամբք գնաց փախստական ընդ կողմն Բերկրոյ: Իսկ ի զօրացն Հայոց զսակաւս յաննշանից ոմանց սպանին, և զտէր Գուրգէն վիրաւորեցին:

Եւ բարձեալ[×] զօրքն Հայոց դիակապուտ արարեալ զզարդ և զզէնս զարի արանց և զքաջ երիվարաց, առեալ աւար բազում՝ գնան յիւրաքանչիւր տեղիս մեծաւ յաղթութեամբ: Եւ վասն այսր իրաց նենգութեամբ և չարակնութեամբ առլցեալ, մանաւանդ յերկիւղէ՝ կարի յոյժ գրգռեցաւ պատերազմ սաստիկ ի ձեռն Վասակայ Արծրունւոյ[7]. զի էր նորա գանձ բազում ի կարաս թաքուցեալ ի գետնափոր տան, ի ներքոյ դր[230]ացն ապարանից տան իւրոյ, և յերկիւղ կասկածանաց եղեալ, թէ իցէ ընդելուզեալ Տաճկաց՝ գտեալ զպահեստ գանձին ծախիցեն զզօրութիւն նորա: Եւ ի հասանելն նորա առ թագաւորն՝ ունէր ևս ընդ ինքեան թուղթս լի ամբաստանութեամբ զնախարարացն որ բնակեալ էին ի Հայս, և բազում վնասս ի գործս արքունի կուտէին ի վերայ իշխանին Աշոտի. և քմազարդ բանիւք գրգռեն զթագաւորն ի վերայ իշխանին ի չարիս: Նոյնպէս և բնակիչք Աղձնեաց անհանդուրժելիք լեալք անցիցն անցելոց, և առ զայսոսիկ յամբաստանելն՝ և կանայք կոտորելոցն հանդերձ խառնիճաղանճ ամբոխիւն լրբենի դիմօք, հոլանեալք և ի բաց ընկեցեալ զձև կանացի բնութեան, որպէս օրէն է նոցա, մանաւանդ տաճկական ազանց, և ի հետիոտս դիմեալք ի դուռն արքունի հասանէին: Դարձեալ բողոք հարեալ, ձեռն զօձիւք արկեալ և զհերս խզեալ, զդէմս կեղեքեալ և ձայնս առեալ կական ողբօք արտասուալից հառաչ[231]անօք, վայ ի բերան առեալ և խիղբ՝ «վնասս և զբեկումն հարկաց արքունի և զկոտորումն զօրաց քոց Աշոտ գործեաց, և նա է պատճառ ամենայն ապստամբութեան Հայոց[×] ի քումմէ թագաւորութենէդ, ասեն, ո՜վ քաջդ և հաւասար աստուածայնոց կարո-

---

[231] Այլ օր.՝ պատճառ ապստամբութեան ամենայն Հայոց: ××) Այլ օր.՝ օցտելոցն: ×××) Այլ օր.՝ ի դրան արքայի:

ղութեան ինքնակալ, և ընդհանուր իշխեցօղ կենաց և մահու»: Եւ լցաւ ասացեալն ի Սոփոնիայ մարգարէէն, թէ «Եղիցի յաւուր յայնմիկ ձայն ի դրանէ օգտելոցն[××] և գոյժ յերկրորդ դրանէն և բեկումն ի վերայ բլրոց: Ողբացէք, բնակիչք կոտորելոցդ, զի նմանեցան ամենայն ժողովուրդք Քանանացւոց, և սատակեցան ամենեքին, որ հպարտացեալ էին արծաթով»[8]:

Իսկ իբրև լուաւ թագաւորն զայս գոյժ աղաղակի հասեալ ի դուռն արքայի[×××] մրմռեալ իբրև զառիւծ և իբրև զարջ տարակուսեալ՝ վառեալ լինէր իբրև զբոց հնոցի, իբրև զալիս ծովու դիզեալ կուտմամբ փրփրեալ ծիրանագոյն արիւնամամն, ուժգին գոչելով անդնդաքակ յուզմամբ, իբրև զհեղեատ յորդահոս ի ճայթ[232]մանէ կարկտահոս ամպոց, հրախառն տոչորմամբ եռացեալ շուրջ զսրտիւն արիւնն՝ մաղձախառն բերմամբ յապուշ զմիտսն կրթեալ՝ կայր ի մէջ տարակուսի, խնդրէր գտանել զելն իրացն եկելոցն առ նա գուժկանացն[×], և կուտէր խումբս սինկղիտոսաց զամենայն իմաստունս Ասորոց և Բաբելացւոց տեսանել վասն գործոյս այսորիկ:

Ընդ ժամանակս ընդ այնոսիկ էր կացեալ յաթոռ հայրապետութեան տէր Յոհաննէս կաթողիկոս Հայոց: Եւ յաւէտ հրաշիւք յօրինէր զկարգս սրբոյ եկեղեցւոյ ուղղափառ առաքելական հաւատոց ի տէր Յիսուս Քրիստոս. դնէր ուխտս ընդ իշխանս աշխարհիս Հայոց՝ գնալ ըստ արժանի հաւատոցն Քրիստոսի, զի վկայեսցեն ըստ անուանն քրիստոնէութեանն և գործքն: Այլ նոքա թէպէտ և յանձն առնուին և մտադիւրութեամբ լսէին նմա՝ սակայն ոչ մեկնեալ լինէին ի ժանդագործ պղծութենէն զազրալից սոդոմական ախտիցն, և ըստ մեղաց տանն Արշակունեաց առաջին թագաւորացն մերոց հետազօտեալ լինէին[233], գնային ոտնխեթի[×], գայթ ի

---

[232] ×) Ա ($^{1}/_{10}$)՝ գուշականացն:
[233] ×) Այլ օր.՝ ի խեթի: ××) Ա ($^{1}/_{4}$)՝ յասելն, «իշխանքն սոդոմեցոց: ×××) Այլ օր.՝ զայս ասելով: ××××) Յայլ օր.՝ չիք՝ սպառնալեօք:

դայթս և աղտեղասէրս, մինչև զանքարկանալին Աստուած ի բարկութիւն ածել, ի սատակումն անձանց և ի կործանումն աշխարհի և յաւեր ժառանգութեան տանց Հայրենի բնակութեանց. քանզի գրեալ է, «Թագաւոր արդար կանգնէ զաշխարհ, կործանումն է աշխարհի Թագաւոր անօրէն»[9]: Եւ յորդորականիւ հրաժարեցուցանէր զնոսա ի բաց կալ յապիրատ և ի վնասակար գործոցն զոր գործէին, և սաստիկ կսկծեցուցանէր զնոսա բանիւք, ունելով իւր վկայ զԵսայի մարգարէ՝ յասելն, «լուարուք, իշխանք Սոդոմայեցւոց[xx], ունկն դիք օրինացն Աստուծոյ, ժողովուրդ Գոմորացւոց»[10]. զայս ասէր[xxx], ոչ զի սոդոմայեցիք էին, այլ զի ընդ նոյն մեղս սոդոմական պղծութեանն զառածեալ լինէին՝ սոդոմայեցիս կոչէ: Որպէս և Եզեկիէլ մարգարէ ասէ, «հայր քո քանանացի էր և մայր քո քետացի»[11]: Դարձեալ ի նոյն յարեալ՝ և այլ հոգաբարձութեան աշխարհի խնամ տանէր, ի մեղադրանս մատուցեալ մարգարէիւն հանդերձ սպառնալեօք[xxxx], «իշխանք ձեր ապստամբք, ասէ[234], գողակիցք են գողոց, սիրեն զկաշառս, վրիժապարտք են: Որբոց իրաւունս ոչ առնեն, և դատաստանի այրեաց ունկն ոչ դնեն»[12]: Դարձեալ ասէ, «Թագաւոր արդար Թագաւորեսցէ, և իշխանք իրաւամբք իշխեսցեն»[13]. և դարձեալ՝ թէ «դատաստանս արդա՛ր դատեցարուք, և ողորմութիւն և իրաւունս արարէք. քանզի առ ձեզ են բանք իմ, ո՜վ բռնաւորք»[14], ասէ Սողոմոն. զի առ զօրաւորսն զօրաւոր դատաստան առաքէ Աստուած, իսկ խառնաղանճն[x] ներելի ողորմութեան է: Զայս և առաւել քան զսոյն խրատէր և ուսուցանէր սուրբ Հայրապետն և քաջ հովիւն տէր Յոհաննէս կաթողիկոս Հայոց մեծաց: Բայց նոքա ոչ վերակնեալք յօրէնս Տեառն, այլ ստացան իւրեանց անունկնդիր լսարանս, զչարագոյնն իժի և զանբժշկականն քարբի, արբեցան գինով յիմարութեանն. ստացան աչս, ո-

[234] ×) Այլ օր.՝ խառնիճաղանճն:

րովք ոչ տեսանիցեն, և ականջս, որովք ոչ լուիցեն. մինչև եկին հասին ի վերայ մեր մեծամեծ չարիքս այսոքիկ և անկանգնելի գլորումնս, զոր յառաջ խաղացուցանելով զբանն՝ ցուցից [235] յիւրում[×] կարգի, մինչև կատարեցաւ ասացեալն ի ձեռն Եսայեայ մարգարէի, «լսելով լուիջիք և մի՛ իմասջիք, տեսանելով տեսջիք և մի՛ գիտասջիք. զի թանձրացաւ սիրտ ժողովրդեանս այսորիկ, (ասա ի բուն) մինչև աւերեսցին քաղաքք ի բնակչաց, և տուն առ ի չգոյէ մարդկան. և դարձեալ ի գերութիւն մատնեսցի ժողովուրդ իմ, վասն ոչ ճանաչելոյ նոցա զՏէր. և բազում եղեն դիականք նոցա վասն սովոյ հացի և ծարաւոյ ջրոյ»[15]:

Արդ ի գալ միւսոյ ամին որ յոբելեանք Ջ և ոլըմպիատք ՀԲ, ընտիքտիոնք Ի, որ է ըստ հայերէն թուականութեանն ամք Յ[16] աներկբայ խորհուրդ ի մէջ առեալ թագաւորն սինկղիտոսօքն հանդերձ և ամենայն մեծամեծօքն Բաբելացւոց, զի զիշխանս աշխարհին Հայոց ի բաց բարձցէ յիւրաքանչիւր տէրութենէ, զի մեր լիցի ժառանգութիւն նոցա. և նախ ձեռս արկցէ յԱշոտ և ի տուն նորա և ի Բագարատ և ի տուն նորա, զի ասեն, թէ նոքա ի միջոյ բառնայցեն՝ ոչ ոք կարասցէ կալ ի կայի իւրում ունել զդէմ մեր:

[236] Նոյնժամայն զօր գումարեալ, գունդ կազմեալ յընտիր ընտիր հեծելոց արանց զօրաւորաց, զօրօք և զօրագլխօք, և տայ ի ձեռս Յովսեփու ումեմն որդւոյ Ապուսէթի[×17], և նմա յանձն առնէ զաշխարհն, փոխանակ հօր իւրոյ Ապուսէթի. զի մեռաւ նա ի ճանապարհի, ի կողմանս Ասորոց, յելանել նորա ի վերայ աշխարհիս Հայոց՝ չարչարել զոսսա որպէս խորհեցանն. և ասէ, «եթէ աջողեսցին քեզ խորհուրդ մեր, զոր խորհեցաք ի վերայ Հայոց և իշխանաց նոցա, և ըստ ախորժակաց մերոց ի գլուխ ելանիցեն, որ ինչ կամք յօժարութեանց մերոց ըղձանայցեն, և կարիցես զիշխանս Հա-

---

[235] ×) Ա (Լ/Վ)՝ յորում կարգի:
[236] ×) Այլ օր.՝ Յովսէփու որդւո ումեմն Ապուսէթի: ××) Այլ օր. չիք՝ զայն: ×××) Այլ օր.՝չիք ել: ××××) Այլ օր.՝ յայդուիկ:

յոց կապանօք առ մեզ հաստուցանել, մանաւանդ զիշխանն Վասպուրական զԱշոտ՝ քեզ և զաւակի քում տաց զերկիրն զայն[xx] ի ժառանգութիւն: Արդ փութա՛, պնդեա՛, ե՛լ[xxx] զհետ նոցա, և մի ինչ յայդոսիկ[xxxx] յերկուանայցես, թուլագոյն կալով մնալով յիրիդ յայդմիկ»:

Յայնժամ մեկնեալ ի Նմանէ զօրավարն, լցեալ խորհրդովք չարին հնարագիտութեամբ՝ [237] եկն եմուտ ընդ կողմն Ատրպատական յԱղբագ գաւառ յերկիրն Վասպուրական, և բանակեցաւ ի յԱդամակերտ ոստանին Արծրունեաց, և անդէն սկսաւ ասպատակս սփռել, աւար առնել, կուտել առ ինքն զկապուտ աշխարհին յոյժ սաստկութեամբ: Կոչէր առ ինքն զիշխանն դիմօք սիրոյ խաղաղութեան, պատճառ հարկաց արքունի. բայց ազդ լինէր իշխանին ի նոյն գնդէն Տաճկաց՝ մի տեսանել զերեսս նորա, ծանուցանելով նմա՝ զոր ինչ խորհեալ էր վասն նորա և վասն աշխարհին նորա[18]:

Եւ իշխանն վառեալ զինքն բազում պատրաստութեամբ զինու և զօրօք ազատակոյտ գնդաւ իւրով, և ամենայն բնակ տերամբք իւրոյ իշխանութեանն, և խոյս առեալ շրջէր զկողմամբքն Մարդոստանի և Զորոյ հասկոյ[19], և դեսպանս առ զօրավարն արձակէր: Գրէ հրովարտակ մի զայս օրինակ.

«Թագաւորաց աշխարհակալաց օրէնք են՝ մեծաւ հոգաբարձութեամբ խնամ տանել վասն շինութեան աշխարհի և թեթևացուցանել զլուծ բռնութեան ծանրակի բեռանց, թուլացուցան[238]ելով զսաստկութիւն հարկապահանջ խոշտանգանաց, զի մի սպառ սպուռ տապալիցի զօրութիւն շինուածոյ աշխարհի, ի բաց ընկենլով զծառայական պաշտօնատրութիւն կողմնակալաց, և քաղաքային անհաւատարիմ[x20] կամարարողաց, և հարկաց բերման և զօրաց. զի երկիր ի շինութեան լինելով և ի խաղաղութեան՝ և հարկք արքունի կանգուն երթիցեն: Զոր և մեք ակն ունիմք և քեզ զսոյն զայս կամել, և տեսանելով մեր զխնամարկութիւն բարի կամաց քոց ի վերայ աշխարհի, և զսէր երախտեաց որ առ մեզ՝ յօժարագոյնս եղիցուք և մեք մտերմութեամբ ծառայել և

---

[238] ×) Ա ($^{1}/_{10}$)՝ անհամատար. I (130), II (117)՝ գուցէ՝ անհաւատարիմ:

*փութով մեծաւ կատարել զհրամայեալսն ի քէն»: Բազում և այլ բանս ախորժականս և դիւրընկալս ըստ այսոցիկ կարգէր ի թղթի իւրում: Նա և մայր իշխանին Աշոտի, քոյր Սահակայ և Բագարատայ իշխանին Տարօնոյ, որ էր կին իմաստուն ի բանս և յիրս և յոյժ խոհեմագոյն միանգամայն և աստուածասէր՝ երթեա՛լ ընծայիւք բազմօք յանդիման լինէր Յովսէփայն և խնդրէր զհաշտութիւն[239] և զխաղաղութիւն հաստատել առ որդիսն իւր և առ բոլոր աշխարհն Վասպուրական: Եւ նորա ընկալեալ զպարգևն՝ կատարէր զխնդիրն: Եւ առնու պատանդս արս անուանիս և պատուականս, և զմայրն Աշոտի դարձուցանէ մեծաւ պատուով. և ինքն անցանելով խաղաղութեամբ ընդ աշխարհն Վասպուրական սակաւատոյժ վնասիւք՝ զպատանդսն ընդ իւր առեալ տանի: Եւ անցանելով ընդ գաւառն Բզնունական գայ մտանէ ի Խլաթ. քանզի կամէր անսալ ժամու դիպողագունի, զի որսայցեն նենգութեամբ խաբել:*

*Իբրև եհաս ամիրայն ի Խլաթ՝ եմուտ բանակեցաւ յամրոցին որ ի քաղաքին: Արձակէ առ Բագարատ կոչողս պատճենիւք հանդերձ, զի եկեսցէ առ նա առանց պատճառանաց և երկիւղի: Գրեալ ի թղթի անդ՝ ի ձեռն նորա հաւատալ աշխարհիս× Հայաստանեայց, զի ինքն երթիցէ յարքունիս, կեղծոտելով զսաստկութիւն ձմեռնային ժամանակին ի վերայ եղելոյ և զխստութիւն հիւսիսային օդոյն սառնամանեաց, անընդ[240]ել զինքն այնոցիկ վարկանելով:*

*Իսկ իշխանն Բագարատ, քանզի ոչինչ ունէր զկարծիս դրժանաց× առ թագաւորն և առ զօրս նորա՝ ել գնաց անխիղճ համարձակութեամբ, տիրասէր խորհրդովք, կատարել զսպաս զինուորութեան, ըստ աստուածեղէն պատուիրանին և ըստ թագաւորական հրամանին, զհետ եկելոյ×× կոչնականացն, ոչինչ իմացեալ զպատրանս խաբէութեան նորա, որով վրիպեցն: Բարձեալ ևս ընդ իւր զսուրբ կտակարանս աստուածաշունչ գրոց բազմութեամբ պաշտօնէից քահանայական դասուց: Եւ նորա ըմբռնեալ զնա և զամենայն աղ-*

---

[239] ×) Այլ օր.՝ աշխարհս:
[240] ×) Այլ օր.՝ դժրանաց: ××) Այլ օր.՝ զհետ եկեալ: ×××) Այլ օր.՝ կապեալ զնա:

գատոՀմն նորա ի տանէ Բագրատունեաց և կապեալ[xxx] երկաթեղէն կապանօք՝ խաղացոյց ի Սամառայ: Եւ ինքն եկն ձմերել ի Մուշ քաղաքին Տարօնոյ, ունելով ընդ իւր զպատանդսն, և Վասպուրականի ի նախարարութենէն Արծրունեաց և յազատաց նորա: Եւ զբնակիչս աշխարՀին վարեաց ի գերութիւն, վաճառակուր առնել ի կողմանս Ասորոց և յամենայն սաՀմանս տէրութեանն Տաճկաց. և զկէս [241] գերւոյն ընդ իւրեանց ունելով ի քաղաքն, լինել իւրեանց ջրկիրս և փայտակոտորս. և չարչարէին զնոսա ի գործս խիստ սաստկասառոյց ձմերանն դառնութեան. և զերծեալքն փախստեայ անկանէին ի կողմանս կողմանս աշխարՀաց, յաւեր դարձուցեալ զբնաւ աշխարՀն, բայց ի լեռնայնոցն՝ որ յամուրս իւրեանց մնային ի լերինն Խոյթ անուանեալ:

(է)

## ՎԱՍՆ ՄԱՀՈՒԱՆՆ ՅՈՎՍԵՓՈՒ Ի ԼԵՌՆԱՑՆՈՑՆ ԽՈՒԹԱՑ ԵՒ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՆՈՑԱ:

Իբրև ձմեռն ընդմիջեցաւ և օդն խստացեալ թանձրացաւ միգախառն մրրկալից, և թանձրութիւն ձեանն Հարթայատակ դիզաւ շուրջ զստորոտով լերինն, յորում տեղւոջ քաղաքն Տարունոյ շինեալ էր, ուր բնակեալ բայանայր զօրավարն Տաճկաց, զօրՀաստական արջոյն[x] բերելով նմանութիւն, որ յաւուրս ձմերայնոյ արմատովք պարենաւորեալ՝ ի մէջ կենաց և մաՀու անցեալ որջանան ի բոյնս իւրեանց: Իսկ ի շնչել Հարաւային օդոյն, եռացուցանելով երկրի ի վեր զջերմային զօրութիւնն, զուարթացուցան[242]ելով անդնդական բերմամբն զընդարմացեալ արմատս և զբոյսս ի Հիւսիսային սառնամանեաց օդոյն շնչելոյ, և բայացեալքն եթէ գազանք և եթէ թռչունք, յորժամ զգան զջերմութիւն օդոյն ի Հասարակել տունջեան և գիշերոյ՝ ի գարնանային եղանակի ելեալք յիւրաքանչիւր կայենից. և բազում այն են որ ի նմին

[241] ×) Այլ օր.՝ արջոցն:
[242] ×) Այլ օր.՝ վնասս: ××) Այլ օր.՝ զգործն յօրինեսցեն:

իսկ սատակին. և կէսքն դիւրըմբռնելի որսորդաց լինին. և ապրեալքն սաստիկս հասուցանեն վտանգս[x] ուր և դիպիցին, եթէ մարդկան և եթէ այլոց ինչ կենդանեաց: Սոյնպէս և այրն այն Յովսէփ զօրավարն Տաճկաց մնայր անցանել ձմերանն, զի ելցէ ի վերայ աշխարհիս Հայոց սրով և գերութեամբ և մեծամեծ հարուածովք և զմեծամեծս աշխարհիս խաղացուցանէ ի գերութիւն և կացուսցէ ի վերայ աշխարհիս գործավարս, որ ըստ իւրեանց հրամանի զկարգս աշխարհիս յօրինեսցեն[xx], և իւրեանք հանդերձ ընտանեօք իւրեանց նստցին յամուրս Հայոց:

Յայնժամ բնակիչք լերինն իբրև տեսին, թէ վարեցաւ իշխանն ի գեր[243]ութիւն, ինքեանք պատրաստեալ են զնոյն փարշմանն կրել զոր դաշտայինքն կրեցին՝ հասին միաբան բազմութիւնն մեկնակազէնքն[x] Խութայ ի հնարս արուեստգիտութեանն իւրեանց, զոր ի պէտս օժանդակութեան ձմերայնոյ հնարաւորեալ[xx] էին: Եւ բարձեալ աշտեայս հանապազակիրս ի պատրաստութիւն գազանացն որ ի մայրիսն որջանան, կամ թշնամեաց ի վերայ հասելոց, և եկեալ ի վերայ քաղաքին պաշարեն զնա, և զզօրսն մատնեն ի սատակումն սրոյ, և զպատանդսն Վասպուրականի հանեն յարգելանէն. և գերեացն ընդարձակեն, զկապուտ նոցա բաժանեն յինքեանս:

Բայց ինքն կարծեցեալ մարզպանն փախստեայ անկանի ի բարձրաբերձ եկեղեցին, որ յանուն Փրկչին մերոյ շինեալ էր յիշխանէն Բագարատայ, ի ծախս մեծամեծ գանձուց իբրև Յ հազարաց: Եւ անդ ի միջոց գմբեթիւն[xxx] ղօղեալ սալարեալ սարսռալից դողմամբ զետեղեալ լինէր: Եւ մեկնակազէնքն պատեցին շուրջ զեկեղեցաւն, և ելեալ առ նա ոմանց [244] ընդ փորուած գմբեթին՝ և եհար մի ոմն աշտէիւն ընդ միջոց թիկանցն, և ընդ անթովքն հանեալ ի ներքոյ թոքացն՝ փչեաց զոգին և թաղեցաւ զթաղումն իշոյ:

---

[243] x) Այլ օր.՝ բազմութեամբ մեկնազենքն: xx) Այլ օր.՝ հնարեալ: xxx) Այլ օր.՝ և անտի միջոց գումբէթիւն:

[244] x) Այլ օր.՝ և կամ ո՞րպէս:

*Եւ ես աչօք իմովք տեսի զայրն զայն, որ Հարեալն էր զնա, և ի նմանէ ստուգեցի վասն նորա:*

*Եւ անդէն իսկ և իսկ փուԹացաւ, եՀաս գոյժկան առ Թագաւորն, եԹէ սպանաւ զօրավարն քո և ապստամբեաց ի պետուԹենէ քումմէ աշխարՀն Հայոց:*

*Աստանօր սակաւուք բացայայտեցից զորպիսուԹիւն բնակչաց լերինն. Թէ զիա՞րդ կամ ո՞րպիսի ոք են, և ո՞րպէս՞ Հնարաւորեալ յապրուստ անձանց վճարեն զկարևոր պէտս իւրեանց լի աշխատուԹեամբ և սաստիկ տառապանօք. և բնակուԹիւն նոցա ի խորաձորս և ի փապարս լերանց և ի պրակս մայրեաց, ի գագաԹունս լերանց: Եւ բնակեն առանձին ըստ տունս ազգաց, և այնչափ ի բացեայ են ի միմեանց՝ մինչ Թէ ոք յարանց զօրաւորաց ի բարձրաբերձ տեղեաց ուժգին խանչիցէ՝ Հազիւ Թէ ուրեք կարիցէ [245] առնուլ զբոմբիւն ձայնին, իբրև ի վիմաց ինչ արձագան լինելոյ կարծիս բերելով, և կէսքն վրիպեալք ի բնական Հայրենի լեզուէն, յաղագս Հեռաբնակ լինելոյ և անՀամբոյրք միմեանց Հանդիպեալք, և խօսս միմեանց եղեալ կարկատուն մուրացածի բանիւք: Եւ այնքան խրԹնի անծանօԹք պատաՀեն առ միմեանս, մինչև Թարգմանաց անգամ կարօտանան. և զպէտս կերակրոցն վճարեն ի սերմանց ինչ, առաւել ի կորեակ կոչեցեալ սերմանէն, զոր ոմանք ի սով ժամանակի Հաց անուանեն. և զնոյն ռոգեալ ոտիւք ի միջոցս պրակացն, կամ երկմատնի փայտատովք սերմանեալ. և է զգեստ նոցա ասուիս ի ծածկոյԹ մերկուԹեանն, և օդ ոտիցն Հնարաւորեն զձև կաւշկաց, ի մորԹոց այծից կազմեալ, և միով կերակրով և միով Հանդերձիւ բաւականանան զամառն և զձմեռն. և են ստացեալ զէնս աշտեայս Հանապազ կրելով ընդ ինքեանս, ի պատրաստուԹիւն գազանացն որք ի լերինն բնակեն:*

*[246] Այլ և ի ժամանակս Հասելոց Թշնամեաց յերկիրն իւրեանց՝ գան միաբան լեռնայինքն յօգնուԹիւն իշխանացն, զի են տիրասէրք: Իսկ վասն ձեանն անկայուն զօրուԹեանն որ այն ինչ յամպոյն ի վայր զեղեալ լինին՝ Հնարաւորեալ իւրեանց փայտս իբրև զանուրս չուանօք պարունակեալ*

*չուրջ զոտամբք, դիւրաւ ընթանան ի վերայ ձեանն իբրև ընդ ցամաք երկիր: Եւ են գազանաբարոյք, արիւնարբուք*[1], *առ ոչինչ համարելով զսպանումն եղբարց հարազատաց, նա և զանձանց ևս, և կոչին սոքա մեկնակազէնք սուրհանդակք, բնակեալք ի լերինն որ բաժանէ ընդ Աղձնիս և ընդ Տարօն: Եւ յաղագս խրթնի և անհետազօտելի խօսիցն և բարուցն կոչին Խութ, յորոց անուան և լեառնն Խոյթ անուանի: Եւ գիտեն զսաղմոսսն զհին թարգմանեալսն վարդապետացն Հայոց, զոր հանապազ ի բերան ունին: Սոքա են զռեահք Ասորոց, որ չուեցին զկնի Ադրամելեայ և Սանասարայ որդւոց Սենեքերիմ արքայի՝ թագաւորի Ասորեստանի և Նինուէի, յորոց [247] անուն ինքեանք Սանասնայք զինքեանս անուանեն. և են հիւրասէրք օտարընկալք, պատուադիրք:*

# ԴՊՐՈՒԹԻՒՆ ԵՐՐՈՐԴ

## ՎԱՍՆ ՈՐ ԻՆՉ ԳՈՐԾԵՑԱՒ ԸՆԴ ՀԱՆՈՒՐ ԱՇԽԱՐՀՍ ՀԱՑՈՑ. ԵՒ ԵՐԿՊԱՌԱԿՈՒԹԻՒՆ ԻՇԽԱՆԱՑՆ, ԱՆՀԱՒԱՆՔ ԵՒ ԱՆՀՆԱԶԱՆԴՔ ՄԻՄԵԱՆՑ ԼԻՆԵԼՈՎ, ԵՒ ՈՐ ԻՆՉ ԸՆԴ ՍՈՔՕՔ×:

### (Ա)

*Ոչինչ զանգիտեալ մեր մինչ ցայս վայր, պատմել զվըտանգս և զնեղութիւնս եկեալ հասեալ ի վերայ մեր ի թշնամեացն ճշմարտութեանն. զի թէպէտ նեղեալք և չարչարեալք լինեաք պէսպէս կտտանօք ի զօրացն իմայէլական ազգացն տաճկական տէրութենէն՝ այլ սակաւագոյնք և առ փոքր ինչ ժամանակս, և բազում այն էր որ ի մէնջ հարեալ լինէին, քան թէ մեք հարկանէաք, քանզի դեռ միաբանք և միախորհուրդք և հաւասարք առ միմեանս բնակէին իշխանք Հայոց ազատագունդ բազմութեամբ և զօրաց նոցա, թէպէտ և ի ծածուկ ունէին զերկբայութիւն նենգութեանց: Իսկ իբրև սկսաւ սպրդել մտանել ի ներքս երկպառակութիւնն ի մէջ միաբանութեանն, հեռացաւ մեկնեցաւ գնաց շնորհ աստուածատուր զօրու[248]թեանն. և խորհուրդք խորհրդականացս յոչինչ համարեալ լինէին ի գործս մարտից և յայլ կարգս հոգաբարձութեան աշխարհիս. և զոր օրինակ ոք զբոլոր անդամս մարմնոյ յօշիցէ ի մասունս մասունս՝ և ոչ երևի տեսակ կենդանի մարդոյն, որպէս է գոյացութիւն խառնուածոյն. իսկ եթէ մի յանդամոցն կորիցէ՝ զպատահումն խեղութեան ընդունիցի, այլ ոչ ի բաց դարձցի կենդանի:*

---

*[247] ×)Առաջին սյունակի 6-րդ տողից սկսվում է Պատմության Գ գիրքը: Վերնագիրը, որ զբաղեցնում է սյունակի 6-11-րդ տողերը, ներկայացնում է Գ գրքի ընդհանուր բովանդակությունը, իսկ առաջին գլուխը առանձին վերնագիրը չունի, Ա և Բ գրքերի նմանությամբ:*

*[248] ×) Ա (¹/₄), I (137), II (122), III (194)՝ տակաւին. ուղղ.՝ տակաւ (Նախն. 262): ××) Այլ օր.՝ զմիաբանութիւն:*

Այսպէս տակաւին[x] ի բազումս քայքայեալ լինէր միաբանութիւն աշխարհիս, և իւրաքանչիւր ոք այր զընկերէ և զեղբօրէ իւրմէ ի չարիս խոկային: Եւ թուղթս և դեսպանս առ թագաւորն յղէին ծածուկս ի միմեանց. այլ և ընդ միմեանս արկանէին բանս քսութեան, և ոչ ոք մնայր գէթ երկու ի միասին. և յոյժ ուրախ առնէին զթշնամիսն ի քակել միաբանութեան[xx] իրերաց: Եւ յոլով այն լինէր զոր ինչ գրէինն՝ զոր ոչ էր գործեալ Հայոց, և զամենայն վնասս և զգործս ապստամբութեանն ի վերայ Աշոտի կուտէին: Եւ առ սոսա ասացեալն ի Փրկչէն, «ամենայն [249] թագաւորութիւն բաժանեալ յանձըն[xx] աւերի, և ամենայն քաղաք և տուն բաժանեալ յանձն ոչ կացցէ»[1]: Ի դէպ ելանէ և հին առասպելն Ոլպիանու[2] փիլիսոփայի, որ վասն առիւծուն և զուարակացն են բարառնութիւնք. տեղեակ են այսմ ուսումնասէր անձինք:

Յայնժամ դարձեալ ի խորհուրդ եմուտ թագաւորն Հանդերձ մեծամեծօքն իւրոյ տէրութեանն, տեսանել զանվրէպ և զանսխալ իմացումն կատարածի ի վերայ աշխարհիս Հայոց: Եւ ի բազում և քաջ խորհրդոց զայս և եթ հաստատուն խորհուրդ ընտրեցին սինկղիտոսքն, և ասեն ցթագաւորն. «զօր գումարեա, գունդ կազմեա, խաղացո երթալ մտանել յերկիրն Հայոց: Եւ յամենայն ազգաց որ ընդ ձեռամբ քո են՝ հաւաքեա առ քեզ զընտիրն այրուձիոյ, և անց յայնկոյս գետոյն: Եւ հասեալ ի վերայ Հայոց՝ նախ զԱշոտ վտարանդեալ այսր խաղացուսցես, և այլքն ամենայն դիւրաւ մտցեն ի ներքոյ ձեռին քո, և աներկբայութեամբ փակես զամենայն ընդ լծով հնազանդ[250]ութեան քո: Եւ մի հարկաց ինչ կամ զօրաց կամ այլ ծառայութեան խափանիչ լինելոյ[x] կամ ի վնասս արքայի խառնելոյ փոյթ արասցուք պահանջել վրէժս[xx]. այլ ստիպեսցուք զըմբռնեալսն՝ ի բաց կալ ի հաւատոց քրիստոնէութեանն. և պաշտեսցեն զօրէնս մերոյ պատգամաւորին և օրէնսդրին: Եւ ամենայն խորհուրդք մեր դիւ-

---

[249] x) Այլ օր.՝ յանձն իւր:

[250] x) Այլ օր.՝ լինիցի: xx) Այլ օր.՝ վրէչսնր: xxx) Այլ օր.՝ աշխարհի է և կամ ի վերայ միոյ ազգի:

րաւ կատարեցին. և խոշտանգեցես զնոսա գանիւ և բանտիւ և պէսպէս տանջանօք. սպառնալեօք և ողոքանօք և ընչից պատրանօք արկցուք զնոսա ի ներքոյ կամաց թագաւորութեան մերոյ. և ի բաց բարձ զանունն քրիստոնէութեան ի միջոյ նոցա»: Եւ յոյժ հաճոյ թուեցաւ խորհուրդս այս առաջի թագաւորին, և մեծապէս ուրախ լինէր:

Ցայսմ վայրի ոչ ի վերայ միոյ ազգի և ի վերայ միոյ աշխարհի է[×××] լալումն ողբումն և կոծումն, այլ ի վերայ բոլոր ազգաց և աշխարհաց Հայաստանեայց: Զոր յառաջ մատուցեալ ասացից ըստ կարգի, թէպէտ և ոչ խնդամիտ յօժարութեամբ՝ սակայն ա[251]կամայ և ի հարկէ ճառագրեցից զբացումն դրան աստուածասաստ բարկութեան ի վերայ մեր, եկեալ հասեալ վրէժխնդրութեան պատիժք, վասն անօրէնութեանց մերոց զոր գործէաք առ հասարակ ի փոքրկանց մինչև ցմեծամեծս. որպէս և գրեալ է ի մարգարէութեանն Երեմիայի, «եթէ եբաց Տէր զգանձս իւր և եհան անտի զանօթս բարկութեան»[3], զոր ժողովեալ պահեալ և կնքեալ ունէր յօր հատուցման վրիժուց՝ հատուցանել մեզ ըստ գործս մեր[×], ի հարկանել զքարի զօտս մեր. եկեալ հասեալ աւուր կորստեան մերձ առ դուրս մեր, զի ահա հասեալ է պատրաստութեամբ Տէր[××] ի վերայ մեր, որպէս գրեաց Մովսէս[4]: Բայց բացումն դրան քան զամենայն այս չար է որ յաներևոյթս է բացեալ, դուռն կորստեան հոգւոց՝ առաւել քան թէ մարմնոց, վրիպել յանբիծ և յուղիղ յառաքելաքարոզ[×××] հաւատոցն ի Հայր և յՈրդի և ի Հոգին Սուրբ: Զոր մարդկային կարողութեան անհնար է փակել զբացումն դրանն ի կորուստ. բայց միայն Աստուծոյ կարողի և յամենայնի խնամ[252]օղի կարողութիւնս այս է դիւրայարմար, որպէս և գրեալ է, թէ «փակիցէ, և ոչ ոք իցէ որ բանայցէ, և բանայցէ, և ոչ ոք իցէ որ փակիցէ»[5]:

Ցայնժամ հրովարտակս արարեալ, պնդադեսպանս արձա-

---

[251] ×) Այլ օր.՝ ըստ գործոց մերոց: ××) Այլ օր.՝ հասեալ է Տէր պատրաստութեամբ: ×××) Այլ օր.՝ յառաքելաքարոզ ուղիղ:

[252] ×) Այլ օր.՝ առ զօրավարս:

կեալ ընդ ամենայն սահմանս իւրոյ տէրութեանն, ի հեռաբնակ վայրս Ասորոց և Բաբելացւոց, Թուրքաստանի և Խուժաստանի, Մարաց և Իլամացւոց, Եգիպտացւոց և մինչև ի ներքին կողմն Տաճկաստանի և մերձ ի սահմանս Սակաստանի՝ առ զօրս[×] և զօրագլուխս, աշխարհակալս, գաւառապետս քաղաքայինս, հազարապետս կողմնակալս մեծամեծս աշխարհաց. ժամ տուեալ՝ փութով յանդիման լինել նմա ի թագաւորաբնակ քաղաքն իւրեանց: Եւ ամենեցուն ըստ հրամանի թագաւորին յիւրաքանչիւր կողմանց այրուձի գումարեալ՝ հանդերձ այլովք սպառազէն յօրինուածովք անյապաղ երագութեամբ գային ի ժամադրեալ կոչումն:

Եւ մտեալ զօրագլխացն առաջի թագաւորին՝ [253] խօսել սկսաւ թագաւորն և ասէ. «ի սկզբան թագաւորութեան նախնեաց մերոց, յորժամ ետ Աստուած զաթոռ բազում թագաւորաց ի ձեռս նոցա, և մինչ առ մեզ հասեալ՝ ոչ ոք զօրեաց կալ ընդդէմ մեր, ոչ ի հեռաւոր աշխարհաց և ոչ ի մերձաւորաց: Եւ ոչ ոք այսքան աղէտս տարակուսանս հասոյց ի վերայ մեր և ի վերայ ազգի և զօրաց և զօրավարաց մերոց, որչափ գործեաց Աշոտ իշխան Վասպուրական: Եւ արդ քաջալերացարուք, լերո՛ւք արք. ելէք ի վերայ աշխարհին Հայոց սովով և սրով և գերութեամբ. զիշխանս և զտեարս կողմնակալս և զկուսակալս աշխարհին, զազատս և զազատորդիս փութով առ մեզ հասուցջիք կապանօք, և դուք անդէն յաշխարհին կալարուք ձեզ բնակութիւն, և ձեր լիցի երկիրն այն ի ժառանգութիւն և որդւոց ձերոց: Բայց նախ զԱշոտ և զտուն նորա ածիջէք այսր, և մի՛ այլում ումեք փոյթ առնիջիք յառաջ քան զնա ըմբռնել»:

Եւ իւրաքանչիւր զօրագլխացն եկելոց առ նա պարգ[254]ևս և պսակս մատուցանէր, գեօղս և աւանս[×] կնքէր և տայր. խնդրէր և զդիւան թուոյ զօրացն. քննեցին և գտին: Տեղեկանայր և զայն ևս ըստ իւրաքանչիւր գնդից, զքա-

---

[254] ×) Ուղղ.՝ զպարգևս և զպսակս մատուցանէր, զգեօղս և զաւանս (Նախն. 381):

ջացն և զկորովացն պատերազմողաց ըստ իւրաքանչիւր անուանց, և զայն ևս, թէ քանի՛ սպառազէնք են, և կամ քանի՛ այնոքիկ, որք վահանաւորք հետևակաց են, և կամ քանի՛ նիզակաւորք, և կամ ո՛րչափ թիւք աղեղնաւորացն են, և կամ քանի՛ պարագլուխք իցեն զօրուն, և կամ քանի՛ սաղարք միայնամարտիկք ախոյեանք իցեն, և կամ քանի՛ ըմբշամարտիկք, և կամ թէ քանի՛ գունդքսաղարք իցեն, և քանի՛ սաղարք սուրհանդակաց իցեն: Խնդրէ և տեղեկութիւն թէ քանի՛ դրօշք են, և կամ քանի՛ նշանք, և կամ ի քանի՛ առաջս զօրքն բաժանիցին, և կամ քանի՛ փողք գոչիցեն, և կամ քանի՛ թմբուկք դափիցեն:

Եւ իբրև ստուգեաց և տեղեկացաւ զամենայն՝ եգիտ բազմագոյն քան զամենեսեան զկապարճաւորս և զկորովիս աղեղնաւորացն Ե[255]լեմացւոց և Արաբացւոց, աջողակք յերկոցունց ձեռաց, որք ոչ վրիպէին ի մազոյ, որպէս և յայնժամ յիսրայէլի էին արք զօրաւորք, գունդք տանն Եփրեմի և Բենիամինի[6]: Եւ զօրագլուխ կացուցանէ նոցա զայր մի Բուղայ անուն, ազգաւ թուրք. և հրաման պատուիրանի տայր յանդիման բազմութեանն, զի խրատու նորա լուիցեն, և հրամանի նորա անսայցեն: Սա էր իշխան հրամանատար ամենայն տէրութեանն Տաճկաց, և ոչ ոք ամենևին իշխէր ելանել արտաքոյ կամաց ձեռին նորա ի մեծամեծաց մինչև ի փոքունս. այլ և ինքն թագաւորն հրամանի նորա անսայր: Որ զապիրատ և զլի հնարիւք սատանայական իմաստից, չարահնար խորհրդոց բուռն հարեալ՝ մեծամեծս փքայր փռնքտալով, և վիշապաձայն որոտալով ահ արկանել հեռաւորաց և մերձաւորաց:

Նոյնժամայն ելեալ մեկնեցաւ յերեսաց արքայի այրն այն Բուղայ, յորում որջացեալ բունեալ էր սատանայ զօրութեամբ իւրով: Որոյ յօժարութիւն կամաց [256] ախորժակաց իւրոց էր մարմին[x] և արիւն անմեղ մարդկան, առ ի յագումն

---

[256] Այլ օր.՝ ոչ այլ ինչ էր՝ քան թէ մարմին, xx) Այլ օր.՝ կատաղութեան գազանաբարոյ: xxx) Այլ օր.՝ և առած է: xxxx) Այլ օր.՝ ի վերայ կերակրոյ:

*անհնարին գազանաբարոյ կատաղութեանն*[xx]*:*

*Առ սա ինձ թուի ասացեալն մարգարէին Ամբակումայ. «տեսէք, արհամարհոտք, և զարմացարուք և եղծարուք, զի գործ մի գործեմ ես յաւուրս ձեր, գործ որում ոչ հաւատայցէք, թէ ոք պատմեսցէ ձեզ: Զի ահա ես զարթուցանեմ ի վերայ ձեր զազգ դառն և զերագ, որ գնայ ընդ լայնութիւն երկրի, ժառանգել զխորանս որ ոչ իւր են, ահեղ և երևելի: Եւ դատաստան իւր յանձնէ եղիցի, և առած*[xxx] *յինքենէ ելցէ: Եւ վազեսցեն առաւել քան զինձ երիվարք նոցա, և երագունք քան զգայլս Արաբացւոց: Եւ դիմեսցեն երիվարք նոցա, դիմեսցեն որպէս զարծուիս ի վերայ կերոյ*[xxxx]*. կատարած ամբարշտաց հասցէ դարձելոց ընդդէմ նոցա. կուտեսցէ գերի իբրև զաւազ, և ինքն թագաւոր փափկասցի, և բռնաւորք խաղալիկ նորա, և ինք ընդ ամենայն ամուրս խաղալով խաղասցէ»*[7]*:*

(Բ)

## [257] ՎԱՍՆ ՍՄԲԱՏԱՅ ԲԱԳՐԱՏՈՒՆԻՈՅ, ՄՈԿԱՑ ԻՇԽԱՆԻՆ:

*Յայնմ ժամանակի Բուհայ եկն եմուտ ի Խլաթ քաղաք, ճանապարհ արարեալ ընդ կողմն Ապահունեաց. և հատեալ զզօրսն յերկուս առաջս, և հրաման տուեալ ելանել յերկիրն Վասպուրական, ողողել գերել գերփել զաշխարհն, աւերել և բնաջինջ առնել և մաշել ի սուր սուսերի. զբազմամարդի գեօղս և աւանս՝ առնել անմարդիս, և զմնացեալսն վարել ի գերութիւն, զկանայս հանդերձ մանկտով. և զիշխանն Աշոտ տալ տանել կապանօք առ թագաւորն, զի տացէ վրէժս անցիցն անցելոց ի նմանէ և ապստամբութեամբ ի պետութենէն Տաճկաց: Տուեալ լինէր այնուհետև զմասն ինչ զօրուն ի ձեռս զօրապետի ումեմն Ժիրաք*[1] *կոչեցելոյ, և յղէ զնա ընդ կողմն Ռշտունեաց. և զայլ բազմութիւն զօրացն առեալ ընդ իւր՝ երթայ ընդ սահմանս Ապահունեաց, իբրև զօրսորդս ինչ առիւծուց կամ այլոց ինչ նոյնպիսեաց, շուրջ ձգեալ*

զզաւագիղն՝ ի մէջ [258] փակել զկորովին և զքաջ արանցն զիշխանն Աշոտ, ընդ ակամբ հայելով, թէ գուցէ ճողոպրեալ ելանիցէ ի ձեռաց մերոց, կամ ի գիշերամարտս յանկարծ հասանիցէ ի վերայ մեր մեծամեծ ոճիրս գործիցէ: Բայց քանզի ընդարձակ էր պահն Հողցայ՝ փութանակի եկն եհաս ժիրաք ի գաւառն Ուշտունեաց և զզօրսն առխթեալ[x] ի ձորն Առուանից, ի սահմանս Մոկաց. և անդ գտեալ զբնակիչսն Ուշտունեաց, թափառականս անկեալ յանողորմ և ի մարդախոշոշ շանցն գիշակերաց, յորոց վերայ սուր եդեալ կոտորէին. և լնուին արեամբ զերկիրն: Եւ զկէսն գերի առեալ ածեն ընդ իւրեանս, և զշէնս և զաւանս և զագարակս հրձիգ արարեալ՝ անապատ կացուցանեն ի մարդոյ և յանասնոյ: Այլ և զռամիկ Նորագեղջ աւանին Ուշտունեաց[2] առեալ ածեն ի տեղի վաճառուն ոստանին Ուշտունեաց, արկեալ տոռունս ի պարանոցն հանեն ընդ սուր. և անտի գնացեալ ի ձորն Աձանայ[3] [259] ի խնդիր փախստէիցն և հասեալ ի յետոյ կողմանցն՝ ի սուր և ի գերութիւն զբազումս ի նոցանէ արկանեն:

Բայց երկու ոմանք ի սաղարաց սուրհանդակաց, եղբարք միմեանց, հասեալ ի կիրճս ձորոյն, վահան ի թիկունս եգեալ, նիզակ ի ձեռին ունելով, ի կապարճս աղեղանց ի դիմի հարեալ զօրացն, և օգնութիւն հասեալ նոցա յԱստուծոյ՝ ի պարտութիւն մատնեն զայլազգիսն, բազում վէրս ի վերայ եդեալ, և զբազմութիւն գերւոցն զերծանեն գնալ յամուրս երկրին: Սոքա[x] անուանք ճանաչին միոյն, և կատարեցաւ արով[xx]: «Եղբայր յեղբօրէ օգնեալ իբրև զքաղաք ամուր և հզօր»[4], և ըստ Եսայեայ՝ թէ «ի բարբառոյ միոյ հազարք կորիցեն, և ի բարբառոյ հնգից բազումք փախիցեն»[5]: Երէց մի Շապուհ անուն, և մի ոմն յռամկաց ձորոյն՝ լնուլ զթիւ

---

[258] x) Ա ([illegible])՝ և զզաւրսն առաջնեալ ի ձորն:

[259] x) Ա ([illegible])՝ սոցա: xx) Ա ([illegible])՝ և կատարեցաւ արով: I (143). II (128). ծն. 2 Թուի աղաւաղութիւն կամ պակասորդ բանի զոլ յայսոսիկ վայրս:

գնդիցն, սոցա ի Թիկունս Հասեալ և Հովիւ մի՝ պարսատկաւ քարինս ի վերայ արկանէին. իբրև բազումք առաքինացան մեծաւ ուժով և քաջ նաՀատակութեամբ [260] ի Հանդէս մարտին. որոց յիշատակ նոցա եղիցի բազմաց նպաստ յարութիւն քաջութեան և ի զօրութիւն անարեանցն և ի յորդորումն քաջ նաՀատակացն:

Ըմբռնեալ լինէր յայնժամ մի ոմն ի Հայոց ազատանոյն տոՀմից ՎաՀևունեաց, ԱպուսաՀակ ոմն, եղբայր ՍաՀակայ եպիսկոպոսի ոստանին Նախճաւանու և Մարդպետականի. և էր ալևոր ըստ մարմնոյ և Հնացեալ արտաքին մարմինն, բայց ներքինն նորոգեալ և գեղեցկատեսիլ ըստ պատկերի արարչին. տեղեակ և Հմուտ Աստուածաշունչ գրոց, և ընդել և ծանօթս. նստէր փորող պողոտային նրբափողոց ճանապարՀին, որ Հանէր ի վերին մայրաքաղաքն Սիոն[×], ի բանակետղն երկնաւոր զօրացն յարքայանիստ քրիստոսեան թագաւորութեան: Զսա ածեալ լինէր առաջի զօրավարին Ժիրաքայ, որոյ տեսեալ զբարձրաբերձ վայելչութիւն Հասակին և զպատշաճ գեղ երեսացն, զփաղփեալ գոյնն ի տեսիլ արուսեկի ի մէջ սպիտակափայլ ալեացն պատուաբերի՝ և Հաճոյ թու[261]եցաւ յաչս զօրավարին: Եւ սկսաւ ի վերայ մղել[×] զժխաՀոտ և զյիմարեցուցիչ մաղձախառն թոյնսն, զի թերևս կարասցէ արկանել զերանելին ի ներքոյ պղտոր Հրապուրեցուցիչս ժախուն մաՀածին Հնազանդութեանն, և զփքինս կապարճիցն սպնգով[××6] ծածկեալ՝ զսատակչական զօրութիւնն թռուցանէր ընդդէմ սրբոյն, թէ գուցէ դրդուիցի ինչ ի միջոցէ ապաստանին վիմին Հաստատնոյ, զի կարասցէ խոտորել ի գաղտնիս զոգի սրբոյն, զգրաՀեալն Հոգւովն սրբոյ վերեկութեամբ[×××]. և սուսեր ընդ մէջ ածեալ զբանն տերունական, զոր ասացն, թէ «յորժամ մատնիցեն զձեզ, մի՛ Հոգայցէք թէ ո՛րպէս, կամ զի՛նչ խօսիցիք, զի ես տաց ձեզ բերան և իմաստութիւն, որում ոչ կարիցեն կալ Հակառակ

---

[260] ×) Ա $(^{2}/_{7-8})$՝ մայրաքաղաքն սրբոց:

[261] ×) Ա $(^{1}/_{2-3})$՝ և սկսաւ ի վերայ մղել փխ. ի վեր մղել (Նախն.՝ 261):
××) Ա $(^{1}/_{12})$՝ սըպգով: ×××) Ա $(^{2}/_{1})$՝ վերիկութեամբ:

կամ տալ պատասխանի ամենայն հակառակորդըքն ձեր»[7]:

Սկսաւ խօսել բռնաւորն բանիւք ողոքանօք, և պարգևս և պատիւս մեծամեծս հրամայէ բերել առաջի, [262]և խոստանայր չքեղ և երևելի կացուցանել ի մէջ աշխարհակոյտ ամբոխից ի դրան արքունի, և ընդ առաջին իշխանացն լինել առաջի թագաւորին, և բարձակից լինել մեծամեծացն արքայի ի գլխաւոր բազմականի անդ, յորժամ ատեանն արքունական յարդարիցի: «Միայն ի բաց լեր, ասէ, ի հաւատոցն Քրիստոսի, հնազանդեալ ընդ ձեռամբ մեծ թագաւորին, և ընկա՛լ օրէնս և հաւատս արժանի կենաց և գովութեան ի մեծ արքայէն և ի մեր իշխեցող հրամանակատար թագաւորին հնազանդութենէ:

Իսկ սուրբն վառեալ հոգւովն սրբով՝ յիշէ զասացեալն ի Փրկչէն, թէ «մի երկնչիք յայնցանէ, որ սպանանեն զմարմինն, և զոգին ոչ կարեն սպանանել»[8], և զի մի՛ ճրագն եօթնաստեղն[×] ընդ գրուանաւ զփայլումն լուսոյն ծածկիցէ, այլ ի վերայ դնիցի բարձրաբերձ աշտանակի առաքելական եկեղեցւոյ, որպէս զի տեսցեն և փառաւորեսցեն զՀայրն երկնաւոր[9]: Եւ բացեալ լինէր զբերան իւր բանիւն Աստուծոյ, և անդ գեղեցիկս և համառօտս անպաճոյճս կարգէր մի ըստ միոջէ զվկայութիւն հաւատոցն որ ի Քրիստոս և որ ինչ ի նմանէ կան [263] պահին պարգևք կացելոյն ի ճշմարտութեան հաւատս, և տանջանք ուրացելոցն և յետս կացելոցն, և ընդ մեծ պարսաւանօք ներքադրեալ զբռնաւորն և զմոլար օրէնսդիրն իւրեանց զՄահումաթ: Բայց քանզի մեր ոչ ոք յայնժամ հանդիպէր ի պատասխանատրութիւնս երանելոյն՝ և ոչ գրել արժանի համարեցաք:

Բայց իբրև ետես բռնաւորն զանդառնալի միտսն և զաներկրայութիւն հաւատոցն և զաներկիւղ և զյանդուգն պատասխանիսն և զմեծ անարգութիւնն, զոր հասոյց ի վերայ նորա և նոցին օրէնսդրին, զի տեղեակ էր մոլար վարդապետութեանն նոցա և բարկացեալ յոյժ հրաման ետ փութով

---

[262] ×) Այլ օր.՝ եօթնաստեղեան:

զրաւ առնել կենաց նորա:

Իսկ սուրբն ելեալ հանդերձ դաՀճօքն ի տեղի ասպարիսի կատարմանն երկնաւոր նաՀատակութեանն՝ ի ծունր իջեալ կայր յաղօթս, զի կարասցէ անսայթաք հաւատով յաղթել հնարից բանսարկուին, որ ի ծածուկ և յայտնի պատերազմին, և ասէր «Արարիչ իրաւանց և արդարութեան»[10]: Եւ զձեռս յերկինս համբարձեալ, ուն[264]ելով[×] զպարանոցն առաջի դաՀճացն. և առեալ մի ոմն զսուրն՝ եհար զերանելին և եհատ զգլուխ նորա: Եւ այսպէս կատարեցաւ երանելին Ապուսահակ: Սա առաջին գտաւ պտուղ մարտիրոսական ի մեծ վտանգի նեղութեանն, որ եհաս ի վերայ բոլոր Հայաստանեայցս: Պատմեաց զայս մեզ մեծ քահանայն Սամուէլ յաւանին Արտամետ. նորա լուեալ էր ի պարսկէ ումեմնէ, ի ձորոյն Շատուանոյ[11], որ էր ընդ դաՀիճսն, և ի սկզբան վկայութեան մինչ ի կատարումն սրբոյն՝ ի տեղւոջ անդ հանդիպեալ լինէր, և ի միտ առեալ էր զսաղմոսն, զոր ասացեալ էր երանելին: Գիտեն զայս և բնակիչքն Ոչտունեաց գաւառին, զի դեռ ևս կենդանիք են բազումք ի նոցանէ:

Եւ եղև զկնի այսորիկ գնաց անտի Ժիրաք և եկն եմուտ ի Վանտոսպ, և ի յանցին[××] հրձիգ արար զմեծ եկեղեցին յաւանին Արտամետոյ:

Բայց ինքն Բուղայ խաղացեալ զհետ իշխանին, և ընդ նմա Տաճիկք Հայաստանեայց, որ բնակեալ էին ի կողմանս կողմանս աշխարհիս՝ առ[265]աջնորդէին Բուղայի ի մուտ և ելս աշխարհիս:

Իսկ իշխանն Աշոտ, առ սակաւ սակաւ ամփոփեալ զինքն՝ ընտանեւք[×] իւրովք, և ընդ նմա ոմանք յազատաց իւրոց, Մուշեղ Վահևունի, որ զտանուտրական պատիւն ունէր, և Վահրամ սեպուհ Թիկնապահ իշխանին, և Վահրամ Տրունի և Հասան և այլք ի սեպուհ պաշտօնէից՝ և եկին մտին ի բերդն Դղեակ, յամրոցն Նկան, որ ի Թոռնավան գաւառի. և

---

[264] ×) Ա (263,$^{2}/_{21}$-264,$^{1}/_{1}$)՝ չունելով: ××) Ա ($^{2}/_{9}$)՝ յանցին. գուցէ՝ անձին (II, 131):

[265] ×) I (146), II (131), III (206), ամփոփեալ ընտանեօք:

խնդրէին տեսանել, թէ ո՛րպէս կարասցեն գտանել զելս իրաց վտանգին ի վերայ հասանելոյ:

Իբրև իմացան զօրքն Տաճկաց, թէ եմուտ իշխանն յամրոցն՝ զհետ մտեալ բազմութեանն այնուհետև, և շուրջ փակեալ անդէն զամուրն զանել գառագիղն: Եւ զբուն բանակն առնէին ի Ղոկորուատ[x] աւանին[12], ունելով ընդ ինքեանս զբազմութիւն գերւոյն կուտեալ իբրև զհող: Այլ և Վահան Ամատունեաց գաւառին փախստեայ եկեալ ի ձորն, որ մերձ յամրոցն, ուր տէրն իւրեանց կայր:

Ապա յետ փոքր ինչ աւուրց վառեալ զզօրսն ի պատերազմ ընդ [266] բերդայինսն, առնուլ զամրոցն: Եւ ինքն իսկ գլխովին զօրավարն Բուհայ, հեծեալ յերիվարն, պնդեալ զինքն զինու ի պատերազմ ընդդէմ իշխանին, և զկորովին աղեղնաւորացն Ելիմացւոցն և զընտիրս հեծելոց նոցա ընդ ինքեան վառեալ[x] ի ճակատ: Եւ զայլս ազգի ազգի զինուորք ունէին վաղերք և վակուրք, սուսերք և սուինք, տապարք և վիրգահանք, մեքենայք և ումբաքարք[xx], վահանք և նիզակք: Այլ և հուր և ծծումբ նաւթիւ բարձեալ ի գործ պատերազմին, և զլոյծ բնութիւնս յանօթս ապակեղէնս եդեալ, և մանր զծծումբն ընդ նմին խառնեալ, եդեալ ի պարսատիկ մեքենայից, և զհուրն առ ընթեր նմին, հնարաւորեալ արկանել զամրոցաւն: Եւ որք մերձ առ պարսպօքն զճակատն վառէին և զմարտն գրգռէին՝ զգեստն ինքեանց յասուէից կազմեալ, զոր ի զօրութիւն թիկանց ուժոյ բազկաց ճնշեալ և մածուցեալ ընդ միմեանս՝ զնրբութիւն մազոյն թաղ կոչեցին, զոր ի ջուր եդեալ՝ ծծէ իբրև զսպունգ, զայն [267] զինեալ ի վերայ անձանց՝ սաստկացուցանեն զպատերազմն, աներկիւղ մնալով ի հրոյն տոչորմանէ. և զերիվարսն և զհեծեալս նոցա զինեալ սպառազինօք, չռնջապահս ձիոցն և տաշտս գաւակացն և զանգապանս ի չորս կողմանս, ձգեալ և լանջացն զէն, և բարձրավիզ խրոխտանացն զրահս, և ոտնատորոփ փռնկալոյն մանեակս զանգակեալս, և մահիկս

---

[266] ×) Այլ օր.՝ վառեալ ընդ ինքեան: ××) Ա $(^{1}/_{ռ})$՝ ումբաքարք:

լուսնաձեւս ի մէջ ճակատուն կապեալ, և զնիւս երիվարացն երկաթապատ պնդեալ, այլ և աստի և անտի երիվարի փորոյն տախտակագործ գրգեալ ըստ փորոյն չափու մածուցեալ ի ձև վահանի զգործ արուեստի զինուն ցուցանեն: Եւ ինքեանք արկեալ զրահ զանձամբ, և սաղաւարտ ի գլուխ եդեալ, բազպանս ի ձեռն արկեալ, զանգապանս ի վերայ բարձիցն պնդեալ, օղ ոտիցն կօշկաձև արուեստաւորեալ, վահան ի թիկունս եդեալ, սուսեր ընդ մէջ ածեալ, նիզակ ի ձեռին ունելով, կապարճս և աղեղունս պատրաստականս զառաջեաւ ի նիւսն ունելով, և զարդս ոսկեզարդս և արծաթագործս և [268] կամարս ընդ մէջ ածեալ, դրօշ և վերջաւորս փողփողեալս[x] սաւառնաձայն հնչմամբ զլեառնն դնդեցուցանէին[xx], նշանս կանգնեալ և փողք և քնարք հնչէին և թմբուկքն դափէին, և արեն ի վերայ հասեալ սպառազէն զարդուն՝ և մերկ սուսերացն փայլեալ՝ ճառագայթս արեգակնայինս յինքեանց ձգէին շուրջ զլերամբն. քաջքն խիզախէին, սաղարքն կանչէին, նահատակքն գոչէին, զռազմ ճակատուն կարգեցին պատրաստեցին. զայս ասաց Եսայի միով բանիւ. Ելեմացիք, ասէ, առեալ զկապարճս, հեծեալ յերիվարս[13]. և գունդք ճակատելոցն ելին կացին մօտ առ քաջն մեր Աշոտ և ընտիր զօրավարն Հայոց առ մեծն իշխանաց: Եւ յայնչափ և առաւել քան զոյն կազմութեան սպառազէն պատրաստութեանն՝ սաստիկ տարակուսանօք և մեծ երկիւղիւ պակչէին յահէ հայկասիրտ իշխանին և յաղթող նահատակին մեր Աշոտոյ, և որք ընդ նմա էին գունդք ազատաց և նոցին զօրաց ըստ տոհմս ազգաց, ի բնիկ նախարարացն Վասպու[269]րական տէրութեանս:

---

[268] ×) դրօշ և վերջաւորս փողփողեալս. ուղղ. դրօշք ի վերջաւորս փողփողեալք (Նախն. 198): ××) Այլ օր.՝ գնդեցուցանէին: Ուղղ. թնդեցուցանէին (Նախն. 198):

[269] ×) Ա ($^{2}/_{8\text{-}5ն}$)՝ տալ նմա գեօղս և ագարակս, և տալ հարկս արքունիս և պատանդս խաղաղութեան. ուղղ.՝ տալ նմա զգեօղս և զագարակս, և տալ նմա զհարկս արքունի և զպատանդս խաղաղութեան (Նախն. 381):

Իսկ իշխանն ելեալ կայր ի վերայ պարսպին, նազելով և սիգալով, իբրև զկորիւն առիւծու ճեմէր, անկասկածելի մնալով, առ ոչինչ համարելով զհէնն եկեալ հասեալ, փակեալ շուրջ զնովաւ. զի կարծէր ևս համախորհ և միագործ զնիզակակիցսն իւր, զզօրսն և զզօրագլուխս զգունդ ազատացն, որ մտեալ էին ընդ նմա յանձաւն Նկանի: Բայց նոքա ևս քան զևս սաստկացուցանէին զմարտն:

Յայնժամ ի խորհուրդ եմուտ իշխանն և տոհմակիցք իւր, Վահան և Մուշեղ Արծրունիք, և գունդքն ազատանոյն որ ընդ նմա, զի թերևս կարասցեն հաճել զմիտս զօրավարին՝ ի բաց կալ ի խորհրդոցն զոր ինչ խորհեալ էր, և զմարտն ցածուցանել և զաղմուկն ամբոխեալ ի բաց վճարել, և զոր ինչ խնդրիցէ՝ առնիցէ ըստ կամաց նորա, կնքել և տալ նմա գեօղս և ագարակս, և տալ հարկս արքունիս և պատանդս խաղաղութեան[x]:

Եւ մինչդեռ զայս օրինակ խոկային և խորհէին ի միասին՝ միանգամայն արգելականք բերդին [270] անդէն իսկ և իսկ քակեալ ի միաբանութենէ ուխտին, որք էին անդ խորհրդականք ի յազատ տոհմէ՝ խորհուրդ չար ի մէջ առեալ և զբարեկամութիւն կեղծաւորեալ, որպէս յերէկն և յեռանդն՝ և յանձն առնուն երթալ առ զօրավարն, խնդրել խաղաղութիւն. և մեկնեալ յինքեանց զՎահրամ անուն՝ և տան տանել հրովարտակ առ զօրավարն, լի թունիւք սատանայական խորհրդոցն, ծածկեալ յաչս իշխանին գառնենի զգեստիւք ի հանդերձս ոչխարաց, և ներքոյքն զապականիչ գայլոցն բերելով զլրբութիւն, իբրև շունք համրացեալք, որ ոչ կարեն հաչել, որպէս ասէ Եսայի մարգարէ[14], ընդդէմ Տեառն փոխելով զկատաղութիւն մահածին թիւնիցն սատակչական զօրութիւնն, լինել տիրակորոյսք և աշխարհաւերք, բանսարկուք և քսսիչք, խռովասէրք մանաւանդ քան թէ խաղաղասէրք, որք քակէին գոլ նոցա ամենայն ուրեք ուր և դիպէին զմիաբանութիւն ուխտի խաղաղութեան եղբարց և ազգականաց և բարեկամաց:

[271] Եւ ելեալ արտաքս հանգոյն մատնչին ի տնօրինականս Փրկչին, ունելով ընդ ինքեան զհրովարտակն գրեալ այսպէս.

«Ի յարքունուստ ընկալեալ քո զվերակացութիւն աշխարհիս Հայոց, և ըստ հրամանի ինքնակալ Թագաւորին նուաճեալ ունիս ի հնազանդութիւն պետութեան ձեր զիշխանս և զտեարս, զկողմնակալս և զկուսակալս, զքաղաքապետս և զմարզպետս բոլոր Հայաստանեայցս, և զապստամբսն և զընդդիմակայսն ըստ արժանի ապիրատութեանն իւրեանց խրատել գանիւ և բանտիւ և պէսպէս տանջանօք, և ի բաց բառնալ յաշխարհէ զշփոթ և զխռովութիւն ի միջոյ խաղաղութեան, որպէս օրէն է խաղաղասէր Թագաւորաց և Թագաւորազանց, իբրև Աստուծոյ կամարարողաց և հաւատարիմ ծառայից տիրասիրաց:

Եւ արդ մեք, նահապետք ազատաց Վասպուրական իշխանիս՝ Մուշեղ ի ցեղէ Վահևունեաց, Վահրամ յազգէ Տրունեաց, Վահրամ միւս, որ և Թիկնապահ իշխանիս, և այլ գունդք ազատաց և զօրական պետութեանց, ի ձեռս [272] մեր է հօգաբարձութիւն աշխարհիս, գրեցաք առ քեզ Բուխայ[×] գլուխ զօրավարաց Տաճկաց և բարձակից մեծ Թագաւորին. միայն թէ ընդարձակեսցես մեզ և տոհմի մերոյ, բնակաց[××] երկրի մերոյ՝ մնալ յիւրաքանչիւր տունս բնակութեանց կալ խաղաղութեամբ՝ մեք տացուք զԱշոտ ի ձեռս քո առանց զինու և մարտից և ճակատուց կազմութեան, և մի ինչ յայնոսիկ աշխատ լինիցիս. այլ և ոչ զմեզ ապստամբս կարծիցես գոլ յինքնակալ Թագաւորէն և ի քումմէ ճոխութենէդ, եթէ հաւաստեաւ քննիցես: Բայց մի և այսմ անտեղեակ լինիցիս, զի Գուրգէն եղբայր իշխանիս և այլ տոհմն Արծրունեաց և բազմութիւն ազատաց և ազատորդեաց և նոցուն զօրաց քաջաց Վասպուրական տէրութեանս, ամենեքեան ընդ նմա անցեալ գնացին ի կողմն Ատրպատականի, և անդր գումարեալ են ամենայն զօրք և ռամիկք աշխարհիս, արք կորովիք և պատերազմողք, որք ոչ դառնան ի սրոյ. և եթէ յերկարիցի գործոյս [273] այսորիկ հանդէս և մարտիցն հանգամանք ոչ

---

[272] ×) Ա ձեռ. ունի անխտիր՝ Բուխայ, Բուհայ Բուղայ: ××) Այլ օր.՝ բնակչաց:

[273] ×) Այլ օր.՝ վասն աշխարհաց և տանց: ××) Այլ օր.՝ և կամ այլ

փուԹանակի վարիցին՝ գուցէ օգնականուԹեամբ գիշերոյ ե-
կեսցէ ի վերայ քո և մեծամեծ ուճիրս ի վերայ քո և զօրացդ
արքունի հասուցանիցէ: Զի այր քաջ է և պատերազմօղ, և
միաբանք են որք ընդ նմա են զօրքն, և զանձինս ի մահ
դնիցեն ի վերայ տանց և աշխարհաց[x] և ազանց և տոհմից
իւրեանց: Եւ ամուրք յոյժ և անկասկածելիք ի ձեռս նոցա
են, ամուրն Ջլմար և Սրինդ, և Ճախուկ բերդն. և Թէ նոքա
յերիս կամ ի չորս կամ ևս աւելիս բաժանեալ օգնական առ-
նիցեն[xx] իւրեանց զամուրսն՝ մեծ աշխատուԹիւն քեզ հասու-
ցանիցեն, և ամենայն խորհրդոց քոց խափանիչք գտանի-
ցին, և զքեզ կորակնեալ ամօԹալից ի պարտուԹիւն մատնի-
ցին, որպէս զյառաջագոյն եկեալ հազարապետն արքու-
նուստ, զի ոչ կարաց կալ ընդդէմ սոցա, և ոչ Ճ այր առ Ժ
զօրացն Հայոց»:

Եւ իբրև ընԹերցաւ մեծ զօրավարն զծածուկս ազատա-
նոյն՝ ետ պատասխանի, զոր և գրով իսկ աւանդեաց. երդ-
մամբ հաստատեալ [274] ասէ, «զոր ինչ միանգամ կամք յօ-
ժարուԹեան ձերոյ ախորժեսցեն՝ եղիցի ձեզ ստուգապէս ա-
ռանց երկբայուԹեան. միայն ոչ ելցէ ի ձեռաց իմոց Աշոտ
հանդերձ ազգականօք իւրովք»:

Իմացեալ յայնժամ իշխանն զնենգուԹիւն նոցա և զխո-
րամանկ կեղծաւորուԹիւնն, և զի ոչ ըստ հրամանի նորա յօ-
րինէին զպէտս պատրաստուԹեան ամրոցին՝ ասէ ցնոսա. «ա-
րիք երԹայք առ զօրավարն, տեսէք հաւաստի, և ի վերայ
հասեալ գիտասջիք, Թէ ի՞ւ իւիք կարասջիք հաճել զմիտս
նորա ի խաղաղուԹիւն»:

Յայնժամ բացեալ լինէր պատրուակ կեղծաւորուԹեանն ի
խլրդենի դիմացն: Ետուն պատասխանի և ասեն, «յարուցեալ
երԹիցես դու ինքնին և քեզէն լուիցես ի նմանէ զոր ինչ ա-
խորժիցէ, և բարձցի ի քէն ապստամբուԹիւնն, զորմէ կար-
ծեն ապստամբ լինել ի Թագաւորէն»:

Իբրև գիտաց իշխանն, եԹէ վճարեալ է չարուԹիւնն յաչս

---

աւելիս բաժանեալ օգնական ունեցեն:

*նոցա, և այլ ընդ այլոյ խօսին, և ի գաղտնիս քրթմնջեն, և անտեղի և անը[275]նդունակ հրամանաց նորա լինէին՝ ետ պատասխանի և ասէ, «զի՞նչ է այդ, զոր դուք ի ծածուկ գործէք, և ընդէ՞ր խորհուրդք գաղտնիք ընդ միմեանս խոր-հիք· եթէ չար ինչ թուիցիմ յաչս ձեր, և ապիրատս գործեալ եմ առ ձեզ և խարդախութեամբ բնակեալ ընդ ձեզ՝ աւասիկ յանդիման երեսաց իմոց տուք պատասխանի, և ցուցէք յականէ յանուանէ մի ըստ միոջէ իւրաքանչիւր զվնասս զոր գործեալ եմ, դի՛ք ի լսելիս համագունդ զօրականացս, և մի՛ պատկառէք խօսել զճշմարտութիւնն։ Ապա թէ իբրև զհայր*[×] *գրգեալ և գգուեալ էի զձեզ, և ժողովեալ իբրև հաւ զձագ ընդ թևովք ի պատճառս պահպանութեան, և դուք ամենայն ուրեք ամրացեալ ի զգուշութիւն իբրև յամուր քաղաքի ընդ ձեռամբ իմով յանհոգս լեալ լինել ձեզ· և դուք զայսքան հատուցումն հատուցանէք ինձ, չիմացեալ ձեր զոր ասաց Դաւիթ, «հատուցին չար փոխանակ բարւոյ, ատելութիւն փոխանակ սիրոյ իմոյ»*[15] *և նմին հատուցումն ի կարգի որ ասէ, «կացո ի վերայ նոցա մեղաւոր, սատանայ [276] կացցէ ընդ աջմէ նորա»*[16]*, և որ ինչ ի կարգ սաղմոսին է։ Չիցէ՞ լուեալ ձեր զոր ասաց Սողոմոն, թէ «որ հատուցանէ չար փոխանակ բարւոյ՝ չար ի տանէ նորա մի պակասեսցէ»*[17]*։ Ո՞չ ածէք զմտաւ և ոչ զմի ինչ ի բարեացն, զոր ձեր յինէն գտեալ· զի ըստ իւրաքանչիւր հասակաց՝ զմի մի ոք ի ձէնջ գթալիր սիրով մեծարէի այնչափ, զի և զմեծութիւն ընչից, որ ի գանձս իմ՝ ամի ամի յաւար տալով՝ զուարթամիտ սրտիւ ինձ համարէի զյափշտակութիւն տան իմոյ որ ի ձէնջ և առ ձեզ, զոր ոչ և զմի ոք յիշխանաց ոմանց առաջնոց լուեալ ուրուք, եթէ իցէ այսպիսի ինչ արարեալ· և ես ամա-յացեալ ոչ ինչ փոյթ առնէի, միայն ձեզ զլիանալն սիրելով առ այսոքիւք· և զորդիս ձեր և զմանկունս տեսանելով ի*

---

*[275] ×) Ա ($^{2}/_{1-2}$)՝ ապա եթէ իբրև զհայր։*
*[276] ×) Այլ օր.՝ հանդերձ մեծամեծ ընծայիւք ի գիրկս իմ ընդունէի մե-ծաւ գգուանօք։ ××) I (153), II (136), III (216)՝ դիւր որսալ ի· ուղղ· ըստ ձեռ.՝ Ա ($^{2}/_{ւ}$)՝ դիւրորսալի· (տե՛ս նաև Նախն. 398)։*

դուլթ խանդաղատանաց ի գիրկս իմ ընդունէի ընծայիւք մեծաւ գգուանաց[×], իբրև զառ ի յինէն ծնեալս: Եւ արդ այսոքի՞կ են փոխարէնք, զի ետուք յօժարութիւն նենգագործ խորհրդով՝ լինել յարգելանի, և առնել դիւրորսալի[××][277] խնդրողաց անձին իմոյ և իմոց զաւակաց, համօրէն ընտանիւք արկանել ի բերան վիշապի, և լինել պատճառք սրոյ և գերութեան ամենայն աշխարհի»:

Այլ նոքա քանզի հաստատուն մտօք ունէին զմիաբանութիւն դաւաճան խորհրդոյն որ առ բռնաւորն Տաճկաց՝ ետուն պատասխանի և ասեն, «ոչ կարեմք զդէմ ունել անհընարին ուժոյ բռնութեանն արքունի, ոչ ամուրքն պատրաստական առ ի յամրութիւն, որպէս թուէր մեզ. և ոչ համբարք ի սմա բաւական, թողումք այլ ումեք ասել՝ այլ և ոչ պահապանաց ոմանց ռամկաց որ պահիցեն զամուրքս: Եւ վասն այսր ամենայնի հարկ է քեզ երթալ, զի և կարծիք ապստամբութեանդ բարձցի, և տառապելոցդ որ եկեալ յեցեալ են ընդունայն գաղթականութեամբ՝ եղիցի արձակուրդ[×] ի տեղիս իւրաքանչիւր, և աշխարհ զրաւ առցէ յասպատակէ թշնամեաց, որ եկեալ հասեալ է յաւեր և յեղծումն: Եւ եթէ քոյին կամաւ երթիցես՝ թերևս օգուտ բազմաց և անձին [278]քում եղիցի. գուցէ ակամայ երթալովն, և նեղիչն աշխատելով ի պահելն՝ յաճախեսցէ ի վնաս և ի քէն, և օճան բարւոյ յայնմ հետէ ոչ ևս ումեք հասցէ գտանել»:

Եւ զայս լուեալ գիտաց զառ ի նոցանէ հաստատուն նենգագործութիւնն, և զաչս առ Աստուած համբարձեալ եկաց յաղօթս, ճաշակեալ սակաւ ինչ հաց և գինի գոհացաւ, և առ ընտանիս իւր դարձեալ թախանձագին՝ յարուցեալ էջ ի յամրոցացն, և եկեալ եկաց առաջի ոսոխ[×] վիրագին, և տուեալ ողջոյն ըստ սովորութեան նոցա: Եւ եհարց [illegible]է դո՞ւ իցես Աշոտ. ասէ, այո ես եմ. երկրորդեալ և երրորդեալ և զսոյն լուաւ. ապա բանս մեղադրականս բազումս յաճախեաց եղ

---

[277] ×) Ա (Ը/13ն)՝ յարկակուրդ:
[278] ×) Ա (Ա/1ն)՝ աւսոխ:

առաջի նորա. և լուեալ ի նմանէ պատասխանիս դիպողագոյնս և իմաստունս՝ հրամայեաց նստել:

Յայնժամ Սմբատ Բագրատունի[18], զոր վերագոյնն յիշեցաք, Մոկաց իշխեցող, քանզի յոյժ սիրեցեալ եղև ի զօրավարէն, և առաւել քան զամենայն [279] մեծամեծս ընդունէր պարգևս և պատիւս՝ անհանդուրժելի լեալ անցիցն անցելոց, և մեծաւ տրտմութեամբ հաչէր և հառաչէր յոգի իւր. և ելեալ արտաքոյ բանակին յորդառատ հեղոյր արտասուս ի վերայ բեկման իշխանին և այլոց նախարարացն. բայց ոչինչ ձեռնհաս լինէր օգնել նոցա վասն դառն հրամանի ամբարիշտ Թագաւորին. այրէր և խորովէր ի սիրտ իւր ի ծածուկ ընդ աւեր աշխարհին և ընդ անողորմ չարչարանս գերելոցն ի թշնամեացն: Յայնժամ համարձակեալ եմուտ յատեան բռնաւորին և եկաց առաջի զօրավարին աներկիւղ համարձակութեամբ առանց պատկառանաց, և ասէ, «որովհետև գտի շնորհս առաջի քո, և արարեր մեծարանս երեսաց իմոց, և առաւել քան զամենայն իշխանս Հայաստանեայց և մեծամեծս[×] արքունի զիս նախամեծար և մեծարգի ցուցեր, և լուան ամենեքեան զառնելն քո ընդ իս՝ մի՛ ընդունայն և դատարկ լիցի սիրելութիւն քո առ իս, զի և որք յոյժ ատեցողքն են [280] մեր և թշնամիքն՝ տեսցեն և յամօթ լիցին, և բարեկամքն և սիրելիքն յոյժ ուրախ եղիցին»:

Իսկ զօրավարն խոստացաւ երդմամբ[×] տալ նմա զի՛նչ և խնդրիցէ, մինչև հաւասար իւրոյ տէրութեանն բարձակից և պատուակից կացուսցէ[××]:

Իսկ նա անփոյթ արարեալ երկրաւոր մեծութեանս, զի անցաւոր է՝ անսպառ և անվախճան և անծերանալի և անծախ և առանց ըմբռնելի ի գողոց խնդրեաց պարգևաց առիթ լինել. «տո՛ւր ինձ, ասէ. ի գերելոց այտի՝ որչափ և կամք քո հրամայեսցեն»: Անդէն փութով և անյապաղ երագութեամբ հրաման ետ, զի որ ոք և հաճոյ թուիցի Սմբա-

---

[279] ×) Այլ օր.՝ և քան մեծամեծս:

[280] ×) Այլ օր.՝ երդմամբ խոստացաւ: ××) Այլ օր.՝ Մինչև հաւասար և պատուակից իւրոյ տերութեանն կացուցէ:

տայ՝ մի ոք իշխեսցէ արգել լինել: Եւ ետ նմա սուրհանդակս և մեկնակազէնս և սակրաւորս և կափաւորս, և զի ըստ կամաց նորա հանցէ ի բանակէ անտի զգերիս Վասպուրականի: Եւ առեալ զնոսա անցուցանէ յիւրաքանչիւր սահմանս բնակութեան, ինքնին զհետ նոցա ելանելով, որպէս Կիւրոս արքայ Պարսից զհետ դարձելոցն ի գերութեն[281]էն Բաբիլոնի. ած եհան զժողովուրդն յերկիր իւր: Եւ կատարեցաւ ի վերայ Սմբատայ ասացեալն յեսայեայ մարգարէէ, թէ «առաքեսցէ նոցա այր մի, որ փրկեսցէ զնոսա և դատաստանաւ փրկեսցէ զնոսա»[19], և դարձեալ՝ թէ «զգերութիւն ժողովրդեան իւրոյ դարձուսցէ, ոչ կաշառօք և ոչ պատարագօք, ասէ Տէր»[20]: Եւ արձակեաց զնա ի տուն իւր մեծաւ ուրախութեամբ և անտրտում խնդութեամբ, ժամ տուեալ նմա դառնալ առ նա ի ձմերոց նորա ի քաղաքն Դուին:

(Գ)

## ԿԱԳՈՒՄՆ ԵՒ ՎՏԱՐՈՒՄՆ ՑԱՇԽԱՐՀԷՍ ԻՇԽԱՆԻՆ ԵՒ ՆԱԽԱՐԱՐԱՑՆ ԵՒ ՆՈՑԻՆ ԸՆՏԱՆԵԱՑ:

Ընդ աւուրսն ընդ այնոսիկ, մինչ կային ի կայանսն իշխանն և նախարարքն իւրաքանչիւր ընտանեօք՝ կազմեալ գունդ զինուորաց և ընտիրս այրուձիոց, վառեալ զինու բազում պատրաստութեամբ, և զիշխանն Աշոտ և զորդի նորա Գրիգոր և զՎահան Արծրունի և զորդի նորա Գագիկ, որ և Ապումրուան[×] կոչէր, և զՄուշեղ եղբայր Վահանայ և զտիկնայս նոցա[×××1] և զտիկինն Հրանուշ[2] և զայլս յազատտանէ[××] [282] կապեալ և բարձեալ ի վերայ ուղտուց՝ վտարեաց ի Սամառայ, և եդեալ ի ներքոյ արգորայ տաղաւարաց և յղեաց ընդ կողմն Պարսից, ճանապարհ արարեալ ընդ Ատրպատական, կասկածելով թէ գուցէ Գուրգէն և կամ մի ոք ի տոհ-

[281] ×) Այլ օր.՝ Ապրուպուան: ××) Այլ օր.՝ յազատ տանէ:
×××) Տպագիր բնագրում բաց է թողնված «և զտիկնայս նոցա» դարձվածը: (Վ. Վարդանյան - ծն.181):

[282] ×) Ա ($^{2}/_{13}$)՝ զայն վայր: ××) Ա ($^{2}/_{24}$)՝ ովմանք:

*մէն Արծրունեաց և նոցին ազատաց ի կորովացն Վասպուրական Հեծելոցն Հասանիցէ ի վերայ և Թափիցէ զնա ի զօրացն և Հանցէ ի ձեռաց իմոց:*

*Եւ եղև իբրև եՀաս իշխանն յարքունիսն՝ ետ կապել զոտս նոցա կրկին շղթայիւք և դնել ի բանտի. և Հրամայեաց զինուց վառելոց զինուորաց պաՀել զնա՝ մինչ ինքն նստցի յատենի և մուծցէ զնոսա ի դատաստան Հարցափործի և քննութեան վարուցն, զոր կուտեալ եղեալ էին ի վերայ իշխանին:*

*Եւ իւր Հազարապետին գրեալ և ծանուցեալ էր արքային, զոր ինչ գործեաց ցայն վայր[x] ժամանակի:*

(Դ)

## ԹԷ ՈՐԳԻՍԻ ՊԱՏՃԱՌԱՒ ՀԱՍԻՆ ՈՄԱՆՔ[xx] Ի ՆՈՑԱՆԷ ՍՈՒՐԲ ԿԱՏԱՐՄԱՆՆ:

*[283] ՆաՀատակք ոմանք կային յայնժամ ելեալ յարգելանէն ընդ կալանաւորսն, և դեռ զիւրաքանչիւր սուսեր ածեալ ունէին ընդ մէջ իւր և վաՀան ի վերայ թիկանց եդեալ. ամբարձին զաչս իւրեանց և տեսին, զի զկանայս և զմանկունս իւրեանց տեսին[x] ընդ աշխարՀական գերիսն: Եւ առ չժուժեալ այնպիսի վտանգաւոր նեղութեանն[xx], արիաբար Հասեալ ի կիրճս ձորոյն և մերկացեալ զսուսերն՝ յարձակեցան ի վերայ գերէվարացն[xxx] և Տէր մատնեաց զնոսա ի ձեռս նոցա, յորոց վերայ սուր եդեալ զբազումս սպանին և զևս բազումս վիրաւորեցին և զյոլովագոյնսն ի գերելոցն Հանդերձ ընտանիւք իւրեանց զերծին ի նոցանէ և անցուցին ընդ պաՀակ ձորոյն յամրական կողմանս լերին[xxxx]: Իսկ զօրքըն Տաճկաց գումարեալ ի վերայ նոցա, շուրջ փակեալ,*

---

*[283] x) II (էջ 140)՝ թերևս՝ տանէին, (տե՛ս նաև՝ Նախն., 263): Ճ (267բ)՝ ածէին: xx) Ճ (267բ)՝ տեսութեան: xxx) Ա (¹/₂ₓ)՝ էրիվարացն: Ճ (267բ)՝ գերիվարացն: Նախն. (195)՝ գերէվարացն: xxxx) Ճ (267բ)՝ Հանդերձ ընտանեաւքն զերծուցին որպէս զօչխարս ի գայլոց և անցուցին յամրակողմանս լերինն:*

*ձերբակալ արարեալ ածին առ զօրավարն և պատմեցին նմա՝ զոր ինչ գործեցին զիրս քաջութեանն: Զորս ածեալ զարսն[xxxxx] ստիպեաց ի բաց կալ յերկրպագութենէն Քրիստոսի, և պատուի [284] և պարգևաց[x] արժանի լինել ի նմանէ, և մի չարաչար տանջանօք մեռանել: Նոցա գեղեցիկ խորհուրդ ի մէջ առեալ՝ ընտրեցին զմահ քաջութեամբ, քան զկեանս խղճիւ: Խօսեցաւ ընդ նոսա բանիւք ողոքանօք, և ոչ լուան նմա. ետ բերել պարգևս, և այնպէս ոչ առին յանձն. խօսեցաւ ընդ նոսա խստութեամբ, սակայն և յայնմանէ ոչ երկեան. տանջեաց զնոսա գանիւ, և նոքա ևս առաւել պնդեցան ի հաւատսն և ի յոյս բարեաց և ի սէրն Քրիստոսի: Այնուհետև հրաման ետ սրով բառնալ զգլուխս նոցա. և նոքա յոյժ ուրախ եղեն, զի վասն անուանն Տեառն արժանի եղեն մեռանել. և ընկալան զվճիռ մարտիրոսական և կատարեցան վկայութեամբ ի փառս սուրբ Երրորդութեանն, որոց անուանք ճանաչին, միոյն Գէորգ յԱկեցի տոհմէ, և միւսոյն Խոսրով ի Գաբաելեան[xx] տոհմէ:*

*Բայց երիցս երանելի ոմն երիտասարդ հասակաւ, ինքն տաճիկ[xxx] և ազգաւ պարսիկ՝ ելեալ զհետ սիրոյն Քրիստոսի հաւատոցն[xxxx] եկն յարեցաւ ի Պատրիկն Անձևացի, և խնդրէր առնուլ զտէր[285]ունական կնիքն, զի կատարեալ լիցի ի գործս պատուիրանաց Տեառն, և յապաղեալ խափան լինէր նմա յօժարութիւն ցանկութեան բարեպաշտութեանն. և էր մտեալ սա ընդ արգելականսն ի բերդն, և ի ժամուն յայնմիկ մինչ առաւ ամրոցն և զըմբռնեալսն ստիպէին, զի որք ի բաց կացցեն ի Քրիստոսէ՝ և մի մեռցին[x], և բազումք դրդուեցան և ելին զկնի սատանայի, և կէսք ընկալան զճգնութիւն*

---

xxxxx)Ա $(^{2}/_{18-19})$, I (157)՝ Զորս ածեալ զարսն: II (140)՝, III (222)՝ Զորս առեալ զարսն: Ճ (267բ)՝ զոր ածեալ զառաջեաւ զարսն:

[284] x) Այլ օր.՝ և մեծարանաց և գևւի: xx) Ճ (268ա)՝ Գաբեղեան: xxx) Ճ (268ա)՝ և ինքն տաճիկ հաւատով: xxxx) Այլ օր.՝ հաւատոցն և սիրոյն Քրիստոսի:

[285] Ճ x) (268ա)՝ եւ զըմբռնեալսն ստիպէին ի բաց կալ ի քրիստոսական հաւատոցն և մի մեռանել:

*մարտիրոսական մահու*[xx] *դիմեալ գայր և սա ընդ աջաթև կողմն վկայելոցն, ընդդէմ սրոյն մատուցանել զինքն պատարագ կենդանի Որդւոյն Աստուծոյ:*

*Իսկ Վահրամ տեսանէր զնա մերձ առ սպանդանոցն. այն ինչ սուր ի վերայ բերեալ դահճին՝ ձայնէ բարձր և ասէ, «դու, մլլի մանուկ*[xxx]*, ընդէ՞ր մեռանիս զուր և տարապարտուց». և նորա ճիչ բարձեալ ասէ, քրիստոնեայ եմ. և նա ևս պնդէր և ասէր, «մի՛ մեռանիր, մլիմանակ ես». և նա առաւել յորդորագոյն հնչէր և արտօսր ի վեր բերեալ հեղոյր, ասէ, «Քրիստոնեայ եմ*[xxxx]*, և մեռանիմ վասն Քրիստոսի,* [286]*և մկրտիմ ի Հայր և ի յՈրդի և ի Հոգին Սուրբ, ոչ ջրով, այլ իմով արեամբ: Ո՞չ ապաքէն դու իսկ տեսանէիր, զի մտանէի և ելանէի ի սուրբ եկեղեցին ընդ ամենայն հաւատացեալսն, և դու ջանաս մոլորեցուցանել զիս ի հաւատէն Քրիստոսի: Ես իսկ լուայ յորժամ կարդային զԱւետարանն, թէ ասաց Քրիստոս, «որ խոստովանեսցի զիս առաջի մարդկան՝ խոստովանեցայց և ես զնա առաջի Հօր իմոյ որ յերկինս է»*[1]*. արդ ի բաց գնա, այր դու, ես մեռանիմ վասն Քրիստոսի»: Եւ վազէր ընդ բանակն, կանչէր*[x]*, հնչէր, շարժէր զձեռնն և ասէր, «ես Քրիստոնեայ եմ, Քրիստոնեայ եմ», մինչև զայրանալ դահճացն, և խուռն ի վերայ դիմեալ ի մեծ հրապարակին՝ հարին սրով զերանելին և ի բաց առին զգլուխ նորա, և անցեալ պատմեցին զօրավարին: Եւ ահա լոյս սաստիկ իջեալ յերկնից և ցոլացեալ ի վերայ սուրբ մարմնոյն, և շուրջ փակեալ զտեղեաւն, թէ ուրեք յարենէ նորա ցայտեալ կայր: Եւ տեսին առ հասարակ ամենայն*

---

*xx)Ճ (268ա)՝ զճգնութիւնն մարտիրոսական մահուամբ:*

*xxx) «Օրինակքն աստ և ամենայն ուրեք զկնի ունին՝ մոլի մանուկ կամ մոլի մանակ, որ ընթերնելի է՝ մլիմանակ: (Տե՛ս Նոր. Բիւզ., Հայկ. բառաքն., էջ 5» (I, էջ 141, ծն. 3): Ճ (268ա)՝ իսկ ապաթուռն այն ուրացող, երիցս թշուառական և ողորմելի, տեսանէր զնա մերձ առ սպանդանոցն, այն ինչ սուր ի վերայ նորա բարձեալ դահճին, ձայն էբարձ առ դահիճն և ասէ:*

*xxxx) Այլ օր.՝ Քրիստոնեայ եմ, Քրիստոնեայ եմ:*

[286] *x) Այլ օր.՝ ձայնէր կանչէր:*

*բազմութիւն կարաւանին:*

*Առ սա ինձ [287] թուեցաւ ասացեալն ի մարգարէէն, «մի ասիցէ այլազգին, որ եկեալ յեցեալ իցէ ի Տէր՝ եթէ մերժելով մերժէ[×] զիս Տէր ի ժողովրդենէ իւրմէ»[2]. և զկնի ինչ փոքու ասէ, «զայլազգիսն որ եկեալ յեցեալ իցեն ի Տէր՝ սիրել զանուն նորա, լինել նմա ի ծառայս և յաղախնայս, և ամենեքեան որ պահիցեն[××] զշաբաթս իմ և ոչ պղծիցեն, և պահիցեն զպատուիրանս իմ և կացցեն յուխտին իմում՝ տարայց զնոսա ի լեառն սրբութեան իմոյ և ուրախ արարից զնոսա ի տան աղօթից իմոց. ողջակէզք նոցա և պատարագք նոցա ընդունելի լիցին ի վերայ սեղանոյ իմոյ, զի տուն իմ տուն աղօթից կոչեսցին[×××] ամենայն հեթանոսաց, ասաց Տէր ամենակալ»[3]: Եւ դարձեալ նոյնպէս Փրկիչն ասաց, «են ոչխարք իմ, որ ոչ են յայսմ գաւթէ, և զայն ևս պարտ է ինձ ածել այսր, և ձայնի իմում լուիցեն և եղիցին մի հօտ և մի հովիւ. և ես տամ նոցա զկեանսն յաւիտենից»[4]:*

*Եւ կատարեցաւ սուրբ վկայն փառաւորապէս ի Հայր և յՈրդի և ի Հոգին սուրբ, որոյ անունն գրեալ է ի դպրութեան [288] կենաց: Իսկ առ մեզ ծանուցեալ զոր ինքն ասաց, թէ Քրիստոնեայ եմ, ըստ այնմ թէ «ծառայի իմոյ կոչեսցի անուն նոր, որ օրհնեսցի վերայ երկրի»[5] գրեցաւ յիշատակարանս սրբոյն:*

*Զկնի այսորիկ մեկնեալ Բուխայ յինքենէ արս զօրաւորս յամենայն ազգաց և յամենայն մեծամեծաց և յամենայն աշխարհակալաց, և ի Պարսից և յԵլիմացւոց և ի Բաբելացւոց և յԱրաբացւոց, որ էին ընդ նմա եկեալ ի գործ պատերազմաց ըստ հրամանի թագաւորին և մեծ զօրավարին, արս աւելի քան ԺԵ հազարաց և եհան զնոսա զհետ Գուրգինայ, զի ուր և իցէ՝ ածցեն զնա առ նա, թէ՛ պատիր խաբեութեամբ խորա-*

---

[287] ×) *Այլ օր.՝ մերժեսցէ: Ճ (268բ)՝ մերժեաց:* ××) *Ճ (268բ)՝ եւ զամենեսեան որ պահէն:* ×××) *Ճ (269ա)՝ տուն աղօթից կոչեսցի:*

[288] ×) *Ճ (269ա)՝ որ օրհնեսցի ի վերայ երկրի:* ××) *Ա ($^{2}/_{6\text{-}8}$)՝ թէ պատիր խաբէութիամբ խորամանկ և կեղծաւորութեամբ: III (224)՝ թէ պատիր խաբէութեամբ և խորամանկ կեղծաւորութեամբ:*

մանկ և կեղծաւորութեամբ[xx] և խարդախութեամբ, կամ պատերազմաւ և մեծամեծ զօրութեամբ, ամենայն պատրաստութեամբ, արքունի կարողութեամբ, որպէս զիարդ և կարասցեն՝ առ նա հասուցանեն:

Իսկ նա անցեալ ի գաւառն Որսիրանից, և ընդ նմա բազմութիւն ազատաց և մեծամեծացն Արծրունեաց նախարարութեանց [289] և ամենայն զօրաց նոցա, և բանակեալ կային ի լերինն որ ի վերայ գեղջն Թուայ[6], ի հովիտս նորա, որ կոչի Արեան լիճ. զի անդ է լիճ մի մեծ մօտ ի տեղին, որ էր տեղի ասպարիսի ճակատամարտ զօրու նահատակութեան քաջացն մերոց իշխանացն Վասպուրականի, և անդ լինէին ժողովեալ ամենայն բազմութիւն աշխարհակոյտ ամբոխից գաղթականաց գաւառացն կողմանցն Աղբակոյ, Զարէհվանի և Ակէոյ և ի լեռնակողմանցն Աղզոյ և Ոտնն Առնոյ[x], մի կողմն ի Ջողայ լեռնէն և անդր: Եւ էին անհուն բազմութիւնն մածեալ շուրջ զլերամբն իբրև զմարախ և իբրև զաւազ ծովու առանց թուոյ. իբրև ի մեծ և յանկասկածելի ամուր ապաւինեալ լինէին ի քաջ զօրավարն Գուրգէն և որք ընդ նմա զօրք Հայոց. և առաքեալ էր զմայր իւր զբամբիշն Վասպուրականի առ զօրավարն Բուխայ, զի յայնմհետէ կալցի խաղաղութիւն ինքն և աշխարհ իւր, և տացէ ի ձեռս նորա զիշխանութիւնն Վասպուրականի փոխանակ եղբ[290] օր իւրոյ, և կացցէ ինքն և իւրքն ամենեքեան ի հնազանդութեան արքունի, ի հարկս և ի հաս չափոյ սակի արքունական աւանդութեանց:

Իսկ իբրև եմուտ տիկինն ի բանակն և եկաց առաջի զօրավարին՝ խօսեցաւ ընդ նմա ըստ պատշաճի իրացն յոր պէտս չոգաւ: Եւ պատասխանի նմա զօրավարն ի խաղաղութիւն, և ասէ, «Նիստ դու աստ, մինչև արձակեցից զքեզ և արարից զկամս հայցուածոց քոց վասն որոյ եկեալ ես»: Եւ հրամայեաց պահել զնա յընդարձակի, և կարգեաց նմա ռոճիկս օր ըստ օրէ ըստ արժանի մեծ տիկնոջն հռիփսիմեայ:

---

[289] ×) Այլ օր.՝ Աղեղոյ և ոտն Առնոյ:

Եւ զօրքն, որ ելեալ էին զհետ Գուրգինայ՝ եկին հասին ի սահմանս երկրին, ուր կայր Գուրգէն զօրօքն իւրովք, և բնակեցան յեզր գետոյն Ջաւ կոչեցեալ: Եւ զօրագլուխք զօրացն էին այսոքիկ, Մուքադմ, Յուսփ ի Թփղիս քաղաքէ, Յուսփ որդի Ռահմայ և Ապուհեշմ Եղոյ տէր և ընդ նոսա զօրք Համդոյի Պարսից ամիրայի: Յղեն առ Գուրգէն դեսպ[291]անս, զի եկեսցէ առ նոսա առանց պատկառանաց և երկիւղի[×] և առանց միոյ իւիք կասկածանաց, միայն զի պատահեսցեն միմեանց սիրով խաղաղութեան, և պարգևօք պատուեալ[××] ի նոցանէ ըստ հրամանի զօրավարին՝ և տիրեսցէ փոխանակ եղբօր իւրոյ բոլոր աշխարհի իւրոյ: Իսկ նորա յղեալ առ նոսա դեսպան զԱբդլայ ոմն, որ ծանօթ էր զօրավարին, տեսանել թէ իցէ՞ հաւատարիմ զոր ինչ խօսին ի ձեռն դեսպանաց, թէ պատիր խաբէութեամբ ջանան կորուսանեն զնա: Իսկ նոցա ոչ յայտնեալ զխորհուրդ չարութեանն՝ դարձուցանեն զնա անդրէն, զի մի յերկբայս եղիցի գալ առ նոսա. և երկից և երից և բազում անգամ զնոյն հաստատեցին երդմամբ, զի անվեհեր համարձակութեամբ եկեսցէ առ նոսա. և ինքեանք զզօրսն ամենայն մեկնեցին երթալ ի վերայ գնդին Հայոց, և ասեն. «ահա մեկնեցաք ի մէնջ զզօրսն, և սակաւք են առ մեզ, և դու նոյնպէս սակաւուք եկ, կամ թէ ևս աւելի արամբք, և տեսց[292]ուք զմիմեանս»: Յայնժամ ետ զզօրսն ի ձեռն Մուշեղի Ապուսպելճի եղբօր Գուրգինայ, և ինքն ել գնաց զհետ եկելոց կոչնականացն. և յարգելուլ զնա մեծամեծաց նախարարացն՝ չանսաց բնաւումեք, և ամենեքեան միաբան յարտասուս եղեալ լային[×]. և մինչև հասեալ առ զօրագլուխսն, այլ ի բացեայ երթայր հեռագոյն ի նոցանէ իբրև յերկու մղոնս՝ նոցա ի մտի եդեալ էր, զի թէ գայցէ զհետ կոչնականացն՝ կալցուք զնա և զօրքն նորա լքանիցին, և դիւրաւ յաղթեսցուք նոցա:

Եւ եղև իբրև երրորդ ժամ լինէր աւուրն, որ էր միաշաբա-

---

[291] ×) Այլ օր.՝ երկիւղի և պատկառանց: ××) Ա ($^1/_8$)՝ պարգևք պատուեալ:

[292] ×) Այլ օր.՝ լային անմխիթար:

թի՝ և ահա ելանէին գունդք գունդք Հեծելոցն ընդ կողմն անապատին Սմբատայ կոչեցեալ բերդին, զի էր աւերեալ առ նախնեօքն ի զօրացն Պարսից: Եւ դրօշք փողփողեալ ըստ միոյ միոյ գնդի, և լցեալ էր լեառնն բազմութեամբ զօրացն, և կարաւան գաղթականին տեսանէր զփայլիւն զինուցն և զշողալ սուսերացն, և այսր և անդր խուճապական [293] լեալ Հալածեալս, իբրև զոչխարս ի գայլոց: Եւ զօրուն ազդ լինէր վասն իրացն, լսէին և նոքա, զի ձայն զօրու է և սաստիկք յոյժ: Եւ Հնչեաց երկիրն, և զաղաղակ բարձին ամենայն բազմութիւնն, իբրև այն թէ ի Հիմանց լեառնն տապալեցի: Եւ էր ահեղ որոտումն և արՀաւիրք և թնդիւնք. և ի սաստիկ փայլմանէ զինուցն և սուսերացն շողալոյ, և ի փայլիւնն սպառազէն երիվարացն վառելոցն՝ զկարծիս բերէր զՀրոյ վառեալ լերինն, կամ թէ յամպոց ինչ ճայթիւն արձակելոյ և ի վայր Հրաձգութիւնն արկանէ ի կարկտաբեր և յանձրևաբեր[xx] ժամանակի, այնպէս թուէր ի խինջել երիվարացն և յերագ ի վերայ դիմելոցն:

Եւ զօրքն Հայոց կային դեռ յանՀոգս, և պաշտօն աւուրն ի գլուխ ելեալ, ընթերցան քաՀանայքն զսուրբ Աւետարանն ի տեղիս տեղիս ի բանակին, և կատարեալ զաղօթսն և գոՀացեալ՝ ետուն զփառս Աստուծոյ և Հատուցին զամէնն և նստան ուտել Հաց. բայց միայն տէր Ապումկդէմ[7] և որք ընդ նմա պաՀէին զ[294]պաՀպանութիւն գիշերոյն և դիտէին զդիտաւորութիւն զօրացն, և դեռ ևս Հեծեալ կայր ի նիւս երիվարին, փութացան ի բանակն. և Հրաման ետ զինել վառել ի զէն և ի զարդ և ի սուր, և զընտիրս երիվարացն յիւրեանց զէնսն պատրաստել: Եւ ինքն շտապէր տագնապէր փութացուցանէր ռազմ բոլորել, կարգել կազմել զճակատն, պատրաստել ի պատերազմ, և նժոյգաձիգն[x] իւր մատոյց նմա զընտիր երիվարն: Եւ Հեծեալ փութացաւ պնդեցաւ զՀետ Գուրգինի, և մօտ եղեալ մերկեաց զսուսերն և զաղա-

---

[293] ×) Այլ օր.՝ յանձրևային:

[294] ×) Ա (1/4ն)՝ նոյգաձիգն: Այլ օր.՝ նետաձիգն ××) Ա (2/9)՝ և ի փայլալ:

ւարտն և զզրահսն, զոր արկեալ էր զանձամբ, և աղաղակեալ զկնի նորա՝ զի թերևս ի լուր ձայնին և ի փայլումն[xx] զինուցն և ի շողալ սուսերին և ի խինջիւն քաջ երիվարին և ի վազս երագութեանն ուժոյ ազդ լինիցի, և դարձցի ի ձայն նոցա և ծանիցէ, և դարձցի ի կորստական ճանապարհէն, յոր դիմեալ երթայր՝ անկանել ի ժանիս արիւնարբու գազանացն: Եւ եղև զի ամբարձ զաչս իւր և ետես, զի պնդեալ գայր [295] հեծեալն զկնի նորա, և ծանեաւ թէ գուժկան ոք է, զի սուսեր մերկ ի ձեռին ունի, և միայն առանձին գայ զհետ մեր, և դարձոյց զերեսանակ[x] երիվարին ընդդէմ նորա, և հասեալ ընդդէմ միմեանց՝ դարձան հասին ի բանակն իւրեանց: Եւ զօրացն քաջալերեալ ընթացան յիւրաքանչիւր զէնսն, և հեծեալ յընտիրս երիվարացն՝ կացին ի հանդիպոջ և հանդիսացան գումարեցան ի մի վայր և պնդեցան կարգեցան մածեան հոլովեցան յինքեանս, և եղեն իբրև զմի այր կամ թէ իբրև զվէմ մի բլրաձև, արձանացան կարծրացան պնդութեամբ՝ անմատոյց լինել ի նոսա զօրութիւն երկաթի. և իբրև զպարիսպ անդամանդեայ՝ այնպէս եղին զանձինս ի վերայ բազմութեան գաղթականին աշխարհակոյտ ամբոխիցն, իբրև զքաջ հովիւ ի վերայ խաշանց մեռանել յանձն առին[8]: Եւ մինչ[xx] նոքա դեռ չև հասեալ էին մերձ առ գունդն Հայոց՝ փութացաւ զօրավարն Գուրգէն յղեաց դեսպանս առ Ապուհեչմ [296] և որ ընդ նմա զօրագլուխքն՝ աղաչել ի խաղաղութիւն, մինչև եկեսցէ նմա պատասխանի ի բուն զօրավարէն, և ոչ լուան աղաչելութեան նորա. խոստացաւ տալ նոցա գանձս, գեօղս և ագարակս[x], գրել կնքել և կացուցանել նոցա[xx] վկայս[xxx], սակայն և յայնմ[xxxx] ոչ ետուն հրաման զօրուն մի ելանել ի պատերազմ:

Յայնժամ իբրև գիտաց զօրավարն Հայոց և ոչ միով իւիք կարաց հաճել զմիտս նոցա, այլ միաբան ետուն հրաման ելանել ի պատերազմ և հրաման ետ Գուրգէն իւրում գնդին

---

[295] x) Այլ օր.՝ զերասանակ: xx) Այլ օր.՝ մինչդեռ:
[296] x) Ուղղ.՝ տալ նմա զգանձս, զգեօղս և զագարակս (Նախն., 381): xx) Այլ օր.՝ նմա: xxx) Ուղղ.՝ զվկայս: xxxx) Այլ օր.՝ այնու:

պատրաստել ի պատերազմ, կազմել ռազմ և տալ ճակատ ընդդէմ այլազգեացն, և ինքն ամբարձ զձեռս իւր յերկինս, յորդառատ արտասուօք եկաց յաղօթս, ասելով զերեսուն և չորրորդ սաղմոսն և զութսուն երկու, և ահա այլազգիքն հասին ի դիմի գրգռել զմարտն և զօրագլուխք փութացան զհետ զօրուն: Եւ գունդն Հայոց խաղացին ընդդէմ նոցա, վիմաձև անքակ ի միմեանց ըստ տոհմս ազգաց, ի տանէն Արծրունեաց՝ [297] Գուրգէն և Վասակ և Պելճ և Մուշեղ և Սահակ և Ապումկդէմ և Աշոտ. և Գնունիք՝ Վահան և Շապուհ և Ապուսէթ և Պատրիկ և Ապուսելմ և Վարդան. և Գազրիկքն՝ Ապուսելմ և Վասակ և Վահան. և Ամատունիքն՝ Մուշեղ և Ասիթ և Սահակ. և Վարաժնունիք՝ Մլեահ և Ռստոմ և Վարազշապուհ. և Ընտրունիքն[x] Գէորգ և Յիսէ և Սահկաւն[xx], և Ակէացիք և Վասակ. և Վահևունիք՝ Քաբարակն[xxx] և Խրախատ. և Անձևացիքն՝ Պատրիկն և Գէորգ, Դաւիթ և Հասան և Դաւիթ գունդսաղար, կարգեցին յօրինեցին զռազմն: Եւ ինքն զօրավարն Գուրգէն եկաց ի ձախու կողման ճակատուն՝ ի թիկունս լինել գնդին հետևակազօր մարտակցացն, և զաջ թևն տուեալ լինէր ի ձեռն Ապդլմկդէմայ[xxxx]: Եւ այլքն մի ըստ միոջէ կացին ի կարգի ճակատուն, և աղօթականք արկանէին առաջի Տեառն զպաղատանսն, և պաշտօնեայքն բարձրացուցանէին զօրհնութիւնսն[xxxxx], և քահանայքն բարձեալ ի վեր զԱւետար[298]անն սուրբ[9] և նշանակ իւրեանց կանգնեալ զնշան Խաչին, և պաշտօնեայքն կատարէին զտէրունական կանոնն, և երաժշտականքն երգս առեալ զյաղթութեանն Փարաւոնի՝ գոչէին «Տէր խորտակէ զպատերազմունս, Տէր է անուն նորա»[10]: Եւ այլք զցաւղածին օրհնութիւն հնոցին երգէին[11], ի վերուստ կոչել[x] զօրավիգն զհրեշտակ Աստուծոյ, և ռամիկքն ամբո-

[297] x) Այլ օր.՝ Ընտունիք: xx) Այլ օր.՝ Սահակաւն: xxx) Այլ օր.՝ Քաբարակաւն:
xxxx) III (230-232)՝ Ապումկդէմայ: xxxxx) Այլ օր.՝ զօրհնութիւնսն երից մանկանց:

[298] x) Այլ օր.՝ կոչելով: xx) Այլ օր.՝ զձեռս իւրեանց:

խին ոմանք ի կողմանէ մխեցին զձեռս[xx] ի գործ պատերազմին քարամբք:

Եւ դիմեցին խուռն յանդուգն յարձակմամբ և բախեցին զգունդն և պատառեցին զռազմն և դարձուցին զայլազգիսն. և գոչէին վիշապաձայն և բեկանէին առիւծաբար և Հարկանէին վարազաբար, և մատնեցին ի սատակումն և ի պարտութիւն, և իւրաքանչիւր այր զախոյեան իւր յերկիր Հարեալ՝ և ինքն զկնի միւսոյն ճեպէր: Եւ ի սաստիկ բախմանէ[xxx] խուռն նիզակացն և ի զինուց փայլելոյ և շողալոյ[xxxx] սուսերացն և սընգելոյ աղեղանցն լարելոյ՝ Հրաձգութիւն իմն արտ[299]աքս ելանէր իբրև յամպոյ ճայթմանէ, և լեառնն իբրև ի Հրոյ վառեալ երևէր: Եւ յերկարեցան գործ պատերազմին մինչ ի տասներորդ ժամ[x] աւուրն, և Հարին ի Հարուածս մեծամեծս զայլազգիսն. և եղև թիւ սպանելոցն ՌՊ, թող զբազում վիրաւորսն և զկողոպուտն[xx] և զձերբակալսն: Ձեռնամուխ եղեն ի գործ պատերազմին և քաՀանայքն, որ կային ի բազմութեան գաղթականին, զի Հոգևոր էր պատերազմն և ոչ մարմնաւոր, և ի վերայ սուրբ եկեղեցեաց և ժողովրդեան Աստուծոյ պատերազմէին: Հարին Հալածեցին և ի փախուստ դարձուցին զզօրսն. և կէսքն զՀետ մտեալ փախստէիցն, մինչ թանձրացաւ մութ գիշերին՝ Հանին ի սաՀմանացն Հայոց, էր որ ի կողմն Ելոյ և էր որ ի կողմն Ատրպատականի և Պարսից: Բայց Աշխէ ոմն, որ եկեալ էր ընդ զօրսն արքունի ի Գարդայ Պարսիցն[12] ոչ եմուտ ընդ նոսա ձեռնամուխ լինել ընդ նոսա ի գործ պատերազմին, այլ կայր ի բացեայ իբրև Հազարօք երկուք, [300]և իբրև Հարան զօրքն՝ մտրակ ի կուշտ արարեալ երիվարացն՝ նախ նո-

---

xxx) Ա ($^{2}/_{18}$)՝ բղխմէ:

xxxx) Այլ օր.՝ ի շողշողալոյ:

[299] x) Այլ օր.՝ և ի տասներորդ ժամու: xx) Ա ($^{1}_{12-13}$), I (165)՝ և զկողոպուտն, II (148), III (232) չիք՝ և: Այլ օր.՝ զկողապուտ:

[300] x) Յերկուս սև օրինակս այս բան ընդ նախորդին միաՀետ գրեալ էր. մեք ըստ ցուցանելոյ ոճոյն առանձին գլխոյ խորագիր պատշաճ դատեցաք (Ք. Պ., էջ 148, ծն. 2):

*քա փախեան: Եւ դարձան առնել դիտակապուտ:*

*Բայց ոչ միայն քաջքն Հայոց նահատակեցան ի մեծ պատերազմին այլ և անմարմին զօրք երկնաւորք մարտակից եղեն գնդին Հայոց. զի մինչ խռնեցաւ պատերազմն և դէմ առ դէմ ճակատէին՝ յանկարծակի այր մի ի նմանութիւն լուսոյ եկն եկաց ի մէջ ռազմի ճակատուն, արկեալ զիւրև պատմուճան լուսակիզն փայլեալ իբրև զարուսեակ, և յաջոյ ձեռինն ունէր սուսէր, և ի ձախոյն՝ բուրուառ լի խնկով, և ինքն կայր հեծեալ ի վերայ սպիտակ ձիոյ, և ցանէր զծուխն ընդդէմ թշնամեացն, և օդ քաղցր, որ արկանէր զծուխն զերեսօք նոցա. և ի սաստկանալ ծխոյն զօրանային գունդքն Հայոց, և ի նուազելն փոքր մի ոգի առնուին ի թշնամեացն:*

(Ե)

## (ԵՐԿՐՈՐԴ ՆՈՐԻՆ ԵՒ ԵՐԹԱԼՆ ԳՈՒՐԳԷՆԻ ԶՀԵՏ ԿՈՉՈՂԱՑՆ ԲՈՒԽԱՅԻ ԵՒ ՈՐ ԻՆՉ ԳՈՐԾԵՑԱՒՆ, ԵՒ ԹՈՒՂԹՆ ԻԲՐԵՒ Ի ԴԻՄԱՑ ԱՐՔԱՅԻ) ×:

*Եմուտ [301] այնուհետև տարակուսական խորհուրդ ի մէջ զօրագլխացն վասն հարուածոց զօրացն ի գնդէն Հայոց. գրել և ծանուցանել բուն զօրավարին ոչ իշխէին, ծածկել և թաքուցանել ոչ մարթէին, լռութեամբ և պատճառանօք ոչ կարէին հաճել զմիտս զօրավարին, յայտնի և յանդիման կացուցանել զթիւ սպանելոցն ոչ առնուին յանձն, թէ Ջ այր միայն հզօր ձեռամբ յաղթեցին ԺԵ հազարացն. զի ստուգեալ քննեցին՝ միոյ առն երկուս յինքեանց հարեալ ընկեցեալ էր, թող զվիրաւորսն և զկողոպուտ և զձերբակալսն, հարկ եղև× ակամայ կարգել դնել առաջի զդէմս×× անցիցն ըստ իւրաքանչիւր պատահմանց: Եւ առ վտանգի երկիւղի զօրավարին՝ ածին ի մէջ զիրս տեսլեանն, որ երևեցաւ յերկնից հրեշտակ Աստուծոյ. որով փոքր մի ցածուցին զլեռնացեալ ալիսն, և զկոհակսն մրրկալիցս դադարեցուցին և զզա-*

---

*[301] ×) Այլ օր.՝ հարկել: ××) Ա $(^2/_6)$՝ զդեմս. ուղղ. զդեպք (Նախն. 191):*

զանութիւն բռնաւորին յընտանութիւն ածին: Եւ հրաման տուեալ ընդ ամենայն երկիրն՝ զի այր [302] իւրաքանչիւր դարձցի յերկիր իւր և կալցի զիւր ժառանգութիւն, և բնակեսցէ խաղաղութեամբ և կացցէ ըստ կամաց իւրոց, և մի հալածեսցի ոք ի բնակութենէ իւրմէ յօտար երկիր պանդխտութեամբ բնակել: Զայս հրաման պատուիրանի տային յօժնդակութիւնն[×] պատիր խաբէութեանն իւրեանց, որով որսացանն իսկ և վրիպեցուցին:

Ապա այնուհետև դարձեալ յղեաց զՀամդոյ զՊարսից ամիրայ, և ի զօրաց արքունի զՀէթմ ազգաւ Թուրք, և ընդ նոսա հեծեալս Ժ հազարաց, կազմեալ սպառազէն պատրաստեալ բարձրագոյն քան զառաջինն, և թուղթ մի գրեալ և կնքեալ լի խորամանկութեամբ և կեղծաւոր խարդախութեամբ ըստ հնարագիտութեան որդւոցն Իսմայէլի. և մօտ[××] եղեալ ի տեղին, ուր բանակն Հայոց նստէր՝ ետուն տանել զթուղթն, լի թիւնիւք սատանայական իմացմանց, իբրև զկապարճս լի նետիւք դեղեալ ի գաղտնիս ի գրկաց թռուցանել ի նպատակն:

Իսկ իբրև ընթերցաւ[××][303]զնամակն, գրեալ երդմունս ի ծանականս կանանցն իւրեանց և ի մոլար օրէնսդիրն իւրեանց Մահումաթ, յանձն առեալ տալ նմա զիշխանութիւնն բնիկ տէրութեանն իւրեանց ել գնաց զկնի փառաց իշխանասիրութեանն ցանկութեան յորմէ վրիպեացն[×]:

Եւ եղև ի մերձենալն նորա ի բանակն՝ եհան ընդ առաջ նորա գունդք գունդք զօրաց. և ի մտանելն առաջի զօրավարին՝ ոչինչ փոյթ արարեալ զվնասուցն և զհարուածոց զօրացն, իբրև զապստամբէ ինչ ամբաստանել. բայց և նշա-

---

[302] ×) Ա ($^{1}/_{12-13}$)՝ յօժնդակութիւն. ուղղ. յօժանդակութիւն (Նախն. 16): ××) Այլ օր.՝ մօտ: ××) Ա ($^{2}/_{1ւ}$)՝ ընթերձաւ:

[303] ×) Ա ($^{1}/_{3-12}$)՝ և ի մոլար օրէնսդիրն յանձն առեալ տալ նմա զիշխանութիւն բնիկ տերութեան իւրեանց. իւրեանց Մահումատ ել գնաց զըկնի դառաց իշխանութեան ցանկութեան յորմէ վրիպեացն: Բնագրի սրբագրութիւնը կատարել է Նորայր Բիւզանդացին (Նախն., 449-450): ××) Այլ օր.՝ հեծեալ ի մեծազարդ:

նակս և դրօշս փողփողել առաջի, և դնել թագ իշխանական ի գլուխ և զգեստս արքունականս զանձամբ. և սուսեր ընդ մէջ ածեալ, և հեծուցեալ ի մեծազարդ[xx] ջորւոջ, և նժոյգս առաջի և զկնի ի զարդ և ի զէն սպառազինեալ, և ձայնք փողոց և դոփիւնք թմբկաց և այլ երաժշտական գործոց հնչեցուցանէին շուրջանակի. և բազմութիւն զինուորաց վառելոց աստի և անտի, և վարոցաւորք և սակրաւ[304]որք[x] այսր անդր քշել զամբոխն դռոթեալ[xx]. և քարոզն աղաղակէր, թէ «առաւ[xxx] իշխանութիւնն Վասպուրականի աշխարհին ի ձեռս Գուրգէնի, փոխանակ եղբօր իւրոյ Աշոտոյ տիրել ընդ նոսա»:

Եւ եղև զկնի երից աւուրց անցանելոյ ետուն թուղթ մի տանել առ Գուրգէն, գրեալ Բուխայի լի դառնութեամբ, կնքեալ մատանեաւ արքայի, իբրև այն թէ ի դիմաց արքային և յարքունուստ եկեալ. և էր պատճէն թղթոյն զոր կեղծաւորեալ ետուն ցնա՝ այս ինչ.

«Բուխայ գլուխ զօրավարաց ընդհանուր թագաւորութեան Տաճկաց, Ջափր իշխեցող ծովու և ցամաքի, հաւասար և օրէնսդրին մերոյ Մահումաթի, և հաւատարիմ միջնորդ Աստուծոյ և մարդկան, և թագաւոր ընդհանուր ազգաց հարաւային[xxxx] աթոռակալութեան, յորոց ձեռս հաստատեալ կայ մահ և կեանք: Յղեցի զքեզ ելանել ի վերայ երկրիդ Հայոց ամենայն կենդանեաց, և ետուն ի ձեռս քո զզօրս իմ հանդերձ զօրագլխովք մեծամեծօք իմովք, յամեն[305]այն ազգաց որ ընդ ձեռամբ իմով նուաճեալ են թագաւորազունք՝ զի զԱշոտ և զեղբարսն իւր փութով առ մեզ հասուսցես: Դու աւադիկ ելեր մտար յերկիր Հայոց, ելեր ի կողմն թշնամեաց իմոց և ապստամբացդ զքեզ միաբանեցեր, զի յապաղեցեր հրամանաց իմոց: Արդ ի հասանել նամակիդ՝ փութով զԳուրգէն և զազգատոհմդ իւր հանդերձ ազատօքդ

---

[304] ×) Այլ օր.՝ սկսրաւորք: ××) Ա ($^{1}/_{2}$)՝ դռոթեալ. I (168)՝ գռոթեալ: ×××) Ա ($^{1}/_{4}$)՝ առաւ. II (150, ծն. 3)՝ թերևս՝ տուաւ. (տե՛ս նաև՝ Նախն., 173):

[305] ×) Այլ օր.՝ յիս վնաս իմ:

Վասպուրականի կապեալս առ մեզ հասուսցես: Ապա թէ ոչ՝ տեսից վասն քո»:

Եւ իբրեւ ետուն զթուղթն կարծեցեալ իբրեւ յերեսաց արքայի՝ «ընթերցիր զայդ, ասէ, մի՛ ինչ ընդ մեղադրութեամբ արկաներ զիս, և կարծել նենգութեամբ գնալ առ քեզ և զրժել ինչ քեզ և ստել երդմանց մերոց. տես քեզէն և ծանի՛ր, զի ոչ գոյ վնաս իմ× յիրիդ յայդմիկ կամ կարողութիւն արձակել զքեզ»:

Յայնժամ ետուն զոտս նորա ի կապանս երկաթիս, և ընդ նմա զտէր Գրիգոր Արծրունի, որ և վկայեաց առաջի Թագաւորին [306] զքարիոզ դաւանութիւն ի Քրիստոս. և եդեալ ի վերայ ուղտուց խաղացուցին ի Սամառայ, տարան ետուն ի բանտ արքունի, ուր կայր Աշոտ իշխան և այլ նախարարք ի տանէն Արծրունեաց:

Նոյնժամայն իբրեւ ետես տիկինն, եթէ վարեցան որդիք նորա ի գերութիւն՝ գնաց և ինքն զհետ նոցա, զհերս խզեալ և զօձիս պատառեալ, կոծելով և աշխարելով, որպէս ասաց Ամովս մարգարէ, «գերծիր և կտրեա ի վերայ փափուկ որդւոց քոց, լայնեա զխզումն քո իբրեւ զարծուոյ, զի գերեցան ի քէն»[1]:

Յայնժամ սկսան ամենայն նախարարքն Հայոց ցրուել մեկնել ի միմեանց. և գնացին կալան զամրական տեղիս ով ոք և փութացաւ մտանել յամուրս ի բերդսն որ ի Վասպուրականի. և զօրքն ցրուեցան քայքայեցան ընդ ամենայն երեսս երկրին: Եւ այս եղեւ, զի լցցի որ ասէ, «զարթի՛ր սուր ի վերայ հովուի և ի վերայ առն ընկերի նորա. հարից զհովիւն× և ցրուեսցին ոչխարքն»[2]. և դարձ[307]եալ վերագոյնն ասէ, զոր ասաց Տէր ի բերանոյ մարգարէին:

Յայնժամ իբրեւ գիտաց զօրավարն, եթէ յաջողեցաւ նմա ամենայն ինչ ըստ կամաց իւրոց և ըստ հրամանի ամբարիշտ Թագաւորին, ի գլուխ ելին խորհուրդ× չարութեան նոցա, զոր ինչ խորհեցան ի վերայ աշխարհիս Վասպուրական

[306] ×) Այլ օր. չիք՝ հարից զհովիւն:

[307] ×) I (170), II (151), III (238)՝ խորհուրդ. Ա ($^{1}/_{11}$)՝ խորհուրդք:

իշխանութեանս, և եբարձ զամենայն արս զօրութեանց, և ոչ ոք էր այնուհետև որ կարէր կալ ի կայի իւրում ունել զդէմ նորա՝ սկսան այնուհետև աներկիւղ համարձակութեամբ սփռել տարածանել ի վերայ երեսաց երկրիս ամենայն ազգքն Տաճկաց, որ ելեալ էին զհետ նորա ընտանեօք իւրեանց, և ձեռնամուխ եղեն բաժանել զերկիրն յինքեանս. և արկանէին վիճակս և լարս ձգէին ի վերայ սահմանաց և բնակէին յամուրս աշխարհիս աներկիւղս. զի յորմէ սակաւ մի կասկածս ունէր՝ անտի ևս աներկիւղ հաստատեցան: Եւ էր նեղութիւն մեծ ընդ ամենայն երկիրս, որպիսի ոչ եղև ի սկզբանէ [308]աշխարհի[x], և մի այլ լիցի. և յաւեր դարձան գեւղք և ագարակք և աւանք, ի բաց մերկացեալ զզարդ և զբարեձևութիւն, և ընդ ապականութեամբ[xx] փակեալ զանազան բոյսք և տունկք, որ ի վերայ երեսաց երկրի. որպէս մարգարէն Յովէլ ողբայ ի վերայ եկեալ հասեալ թշուառութեանն, ասէ, «իբրև զդրախտ փափկութեան երկիրն առաջի, և զկնի նորա դաշտ ապականութեան, և իբրև հուր ընդ եղէգն ընթացեալ՝ այնպէս հասեալ ի վերայ մեր իբրև զմարախ, իբրև զջորեակ և իբրև զթրթուր խառնիճա՛ւն հանդերձ, հասեալ ի վերայ ծառոց մրգաբերաց, կամ դիւրածախելի բոյսս խոտոյ, այնպէս վատնեցին ծախեցին զզօրութիւն մարդկային ազգի ստացուածովք իւրեանց». որպէս կայ և այս ի գիրս տեսութեանն Յովելեայ մարգարէի[3]:

Եւ հրաման ետ այնուհետև, զի զբազմութիւն գերելոցն վաճառակուր արասցեն յազգս ազգս ում և հաճոյ թուիցի. և ինքն ել գնաց երթալ մտան[309]ել ի քաղաքն Դուին, ձմեռոց ինքեան պատրաստեալ զնա, մինչ ի ժամ գարնանայինս, ունելով ընդ իւր կալեալս բազումս. և աւերեալ էր զերկիրս մեր ի մտանել և յելանելն իւրում:

---

[308] x) Այլ օր. յաւելու՝ մինչև ցայժմ: xx) Ա ($^{1}/_{7-8}$)՝ ազգականութեամբ. ուղղ.՝ ապականութեամբ (Նախն., 151):

[309] x) Ա ($^{2}/_{4-5}$)՝ ոչ իցեմ:

(Զ)

## ՎԱՍՆ ԶԱՐ ՑԱՆՁՆԱՌՈՒԹԵԱՆ ՆԱԽԱՐԱՐԱՑՆ ԱՐԾՐՈՒՆԵԱՑ, ԵՒ ԽՈՍՏՈՎԱՆՈՒԹԻՒՆՆ Ի ՔՐԻՍՏՈՍ ՏԵԱՌՆ ԳՐԻԳՈՐԻ ԱՐԾՐՈՒՆՒՈՅ ԵՒ ՏԵԱՌՆ ՅՈՎՀԱՆՆԻՍԻ ԵՊԻՍԿՈՊՈՍԻ ԱՐԾՐՈՒՆԵԱՑ ԵՒ ԳՐԻԳՈՐ ՔԱՀԱՆԱՅԻ, ԵՒ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՆՈՑԱ:

*Սաստիկ և վտանգաւորք և լի դառնութեամբ են որ ինչ ի ճառի աստ են յիշատակարանք, սակս յանձնառութեան մեծ նախարարացն և իշխանացն մերոց. լի արտասուօք է բանս և ոչ եմ× բաւական պատմել զանցս անցիցն կորստականութեանն նոցա մոլորութեանն, վրիպել յուղիղ և յամբիծ առաքելաքարոզ դաւանութեան հաւատոց կաթողիկէ եկեղեցւոյ ի Հայր և յՈրդի և ի Հոգին Սուրբ. և ոչ են կամք իմ փութալ պատմել ընդ գրով փակել զկործանումն տերանց իշխանաց մերոց, և որ ինչ կրեցին թշուառութիւն զոգւոց առաւել քան եթէ մարմնոց. բայց ակամ[310]այ և ի հարկէ գրեցից կարգեցից ի փոքր և ի դուզնաքեայ բանից, բովանդակեցից համառօտ սուղ և սակաւ բանիւ անցանել ընդ պատմութիւն իրիս այսմիկ, զի ոչ իսկ է կարողութիւն լռութեամբ ծածկել թաքուցանել անյայտ առնել զանհուն և զանբաւ վիշտս աղէտս եկեալ հասեալ մեզ: Եւ արդ ասացից փոքր ի շատէ զյայտնի գործեցեալսն, զի և որ ինչ ընդ սոքօք և յետ սոցա ի գլուխ ելին հանգամանք իրաց՝ և այնմ առանց երկբայութեան հաւատասցես, իբրև ճշմարիտ և անսուտ պատմողի:*

*Իբրև օր մի լինէր պարապոյ, մինչ կային ի բանտի իշխանն և որք ընդ նմա ազգատոհմիւք և այլովք օտարազգօք՝ և ահա հնչեցին փողք ուժգին գոչմամբ ազդ առնել քաղաքին՝ եթէ ել նստաւ թագաւորն յատենի և պատուիրակքն× զքարոզն բարձրացուցանէին, զի ամենայն մեծամեծք քաղաքին և գլխաւորք և իշխանք յարքունի նախա-*

---

*[310] ×) Ա (2/8ա)՝ պատուիրանքն: ××) Ա (2/1ա)՝ գումարեցան:*

բարութենէն անդր գումարեցին[xx], [311] զի զկապեալսն յառաջ մատուցեն ի հանդէս հարցափորձի քննութեան: Եւ ամենայն մեծամեծքն հանդերձ խառնաղանճ[x] ամբոխիւն դռոթ[xx] տուեալ, ոչ միայն ըստ հրամանի թագաւորին ելանել զհետ աղաղակի փողոյն և արքունի կոչնականացն՝ այլ փութացան տեսանել, թէ ո՛վ ոք և ո՛րպիսիք են սոքա, որոց անուանք[xxx] քաջութեան իւրեանց հռչակ հարկանէր ընդ ծագս տիեզերաց, մինչև հարկեցաւ թագաւորն յամենայն ուժով[xxxx] կարողութեան իւրոյ զօրս գումարել յամենայն ազգաց, որ ընդ ձեռամբ իւրոյ տէրութեանն էին հնազանդեալ թագաւորք և թագաւորազունք, և մեծաւ աշխատութեամբ և ի բազում ժամանակաց փոյթ յանձին կալեալ անդուլ զցայգ և զցերեկ[xxxxx] ի մեծ տարակուսանս ըմբռնեալ կայր վարանեալ, և ոչ քաղցր թուէր նմա քուն գիշերոյն, և փափկութիւն տունջեան յոչինչ համարեալ լինէր, մինչ հազիւ թէ ուրեք կարաց նշկահել զսոսա ի պատրանս խաբէութեան և ի նենգու[312]թիւն կեղծաւոր խարդախութեան զօրականաց իւրոյ տէրութեանն: Եւ ընթանային ամենեքեան յաճխու[x] տեսանել զնոսա և ի վերայ հասանել, թէ զիա՛րդ ի գլուխ ելանիցէ ատեանն:

Եւ ելեալ թագաւորն նստաւ յատենի ի բարձրաբերձ բեմի միոջ, ի մէջ աշխարհակոյտ ամբոխի անհուն բազմութեանն, և հրամայեաց ածել առաջի զկապեալսն, հարցանել և լսել ի նոցանէ: Եւ կայր զյօնսն պռզտեալ[x], կոկոզաբանէր լի յոխորտանօք[xx], խրոխտայր և փռնքտայր, եռացուցանէր ի վեր մղէր զդառնութիւն ժահհոտ[xxx] մաղձոյն չարաթոյն վատախառնութեանն, սրտմտեալ անժուժկալ[xxxx] ի բարկութեանն ջերմագոյն արեանն մրրկալից շարժմանն, և սկսաւ

---

[311] x) Այլ օր.՝ խառնիճաղանճ:
xx) Այլ օր.՝ դռոհ: xxx) Ա $(^{1}/_{14-15})$՝ որոց անուն: xxxx) Ա $(^{1}/_{3-2ն})$՝ ամենայն ուժոյ: xxxxx) Այլ օր.՝ զցայգ և զցերեկ անդուլ:

[312] x) Այլ օր.՝ պռրզտեալ: xx) Այլ օր.՝ խրոխտանօք: xxx) Ա $(^{2}/_{3})$՝ զդառնութիւն ժահու: xxxx) Ա $(^{2}/_{6-7})$՝ անժուժկալ ի. ուղղ.՝ անժուժկալի (Նախն. 396): xxxxx) Այլ օր.՝ ափռեալ:

թափել զմահածին թոյնս իւր ի վերայ կապելոցն, իբրև զթոյնս իժի, առանց վեր ի վերայ դնելոյ սփռել^xxxxx տարածանել ի կորուստ և յապականութիւն բազմաց:

Եւ իբրև կացին նոքա առաջի թագաւորին՝ եհարց հեզնական բանիւք եպերելով լի [313] ամբարհաւանութեամբ, և խորամանկ խարդախութեամբ քողարկեալ զբանսն՝ և ասէ, «ո՞վ ոք էք դուք և յորմէ՞ աշխարհէ, և զի՞նչ անուն է ձեր. թերևս արդեօք դո՞ւք էք ապստամբեալքն յինէն»:

Պատասխանի ետուն և ասեն, «ընդէ՞ր, ով աստուածասէր թագաւոր, իբրև ընդ համհարզս և ընդ ստամբակս, իբրև ընդ աննշանս կամ ընդ անընդել վայրագս խօսիս ընդ մեզ, և նախ քան ընդ պատժական տանջանաւոր խոշտանգանօք արկանելն զմեզ՝ բանիւք քո իբրև քարամբք հարեալ զմեզ՝ չտապ տագնապի ի վերայ արկանես թափել զոգիս մեր: Այլ զմեզ գիտես ո՛վ ոք եմք և ուստի՛ և յումմէ՛, և թէ զի՛նչ անուն է մեր՝ կարի քաջայայտ է քեզ, և մեք ոչ եմք ապստամբք ի քումմէ ինքնակալ թագաւորութենէդ. այլ բազմացան չարիք մեր, զի մեղաք առաջի տեառն Աստուծոյ մերոյ և յետս հարաք զիրաւունս պատուիրանաց նորա, և մատնեաց զմեզ Աստուած ի ձեռս քո. արդ ահաւասիկ հասեալ կամք առաջի քո, ինքնակալ թագաւոր [314] իշխեցող կենաց և մահու. որպէս Տէր հրամայեսցէ՝ եղիցի»:

Խօսել սկսաւ թագաւորն և ասէ, ի բազում ժամանակաց լեալ թագաւոր նախնեաց մերոց և մինչ առ մեզ հասեալ, և բազում ազգք և թագաւորք են զոր նուաճեալ^x ունիմք ընդ ձեռամբ մերոյ տէրութեանս. և ոչ առ մի ոք այդչափ խնամ և հոգաբարձութիւն առնէաք, որչափ ընդ ձեզ և ընդ աշխարհ ձեր. դուք աւադիկ զընդդէմսն ինձ խոկայիք միշտ, և անընդունակք լինէիք՝ որ ի մէնջ առաքեցեալքն հազարապետք և վերակացուք աշխարհիս մերոյ և խնամատարք արքունի հոգաբարձութեան գային առ ձեզ. զօրս գումարէիք, այրուձի կազմէիք, մարտս և պատերազմունս գրգռէիք, ճա-

---

[314] ×) Այլ օր.՝ թագաւորք և ազգք նուաճեալ:

կատ դնէիք և զզօրս մեր ի սատակումն սրոյ մատնէիք և զազգատոհմ մեր ընդ մեծ նեղութեամբ պաշարէիք և աշխարհի աւերիչք գտանէիք և հարկացն եղելոց խափանիչք լինէիք: Եւ մեք ահա անփոյթ [315] այդմ ամենայնի արարաք, զի յայտնի լիցի սէրն և գութ խնամոյն, զոր ասեմք ունել ընդ ձեզ[x]: Բայց քանզի արդ տեսանեմք զձեզ անձնեայս և գեղեցիկս, և գեղ երեսաց ձերոց պատշաճագոյնս և վայելուչս, և որդիք թագաւորացն այսր աշխարհի լեալ էք դուք, և արժանի[xx] էք արգահատելոյ, և արք զօրութեան էք դուք, և ի դիմաց ձերոց երևի, զի զօրութիւն բազում գոյ ի ձեզ, զի այդչափ վնաս գործեալ է ձեր առ իս, և ահա հասեալ կայք յատենի առաջի իմ անտրտում և անտխուր երեսօք, որպէս զանմեղս և զբարեգործակս[xxx], և լի ամենայն կամարարութեամբ մեր, անխիղճ համարձակութեամբ[xxxx] և իմ խնայեալ ի ձեզ ոչ արարից զրաւ կենաց ձերոց ըստ արժանի ապիրատ գործոց և վնասուցն, զոր յանցեայքն առ իս դուք. առանց ի տանջանս և ի չարչարանս լի դառն[xxxxx] հարուածոց մտանելոյ հաւանեալ մեզ և օրէնսդրին մերոյ Մահումաթայ՝ ընկալջիք հաւատս և օրէնս աստուածատուրս հեռի [316] ի ստութենէ և լի որ ինչ ընդդէմ ստութեան է, և ի բաց լերուք ի սնոտի և ի մոլար պաշտամանէ ձերմէ, որ վասն Քրիստոսի էք կաշկանդեալ ի մեծ յամառութեանդ: Եւ մեր անտես արարեալ զգործս վնասուց ձերոց, զոր մեղայք մեզ, և լիցին անձինք ձեր ի գիւտս, և կեցջիք և տիրեցէք աշխարհի և տանց ձերոց, դուք և որդիք ձեր, և մի ի ձեռն տանջանաւոր մահու ելանիցէք ի բնակութենէ ձերմէ և բնակիցէք ի դժոխըս:

Եւ պատասխանի սուրբ հայրապետն Յօհաննէս հանդերձ մեծ նախարարօքն Հայոց և ասեն. «ի քո իսկ[x] ինքնակալ թագաւորութեանդ և ի յօրէնս առաջնորդին ձերոյ գրեալ է՝

---

[315] ×) Այլ օր.՝ մեր խնամոցն... առ ձեզ: ××) Այլ օր. յաւելու՝ դուք: ×××) Այլ օր.՝ զբարեգործս: ××××) Այլ օր.՝ ամենայն համարձակութեամբ: ×××××) Այլ օր.՝ դառնութեամբ:

[316] ×) Յայլ օր. չիք՝ իսկ:

ոչ գոլ ճշմարիտ վկայութիւն միոյ ուրուք և հաւատարիմ, և յոյժ հաւաստի և ընդունակ գոլ զառ ի բազմաց վկայութիւն ի վերայ մեծի և կամ փոքու ինչ իրաց կամ ի վերայ կենաց և մահու. և խոտեալ ի բաց ընկենուք զմիոյ անընկեր և անվերոյ իրաց հանդէս, որպէս և է իսկ կոչեցեալ մարգարէն ձեր Մահումաթ, զի ոչ գոնեայ [317] մի ոք գոյ, որ զճշմարտութիւնն վկայէ ուսուցանելով նորա, թող թէ զբազումս[2]: Եւ արդ ձժԱ[x] են մարգարէք, որ զվկայութիւն աստուածութեանն Քրիստոսի ստուգաբանեն ճշմարտութեամբ յանցնիւր ժամանակս, իբրև ի միոջէ բերանոյ, թող զԱւետարանն և զառաքեալս նորա: Եւ մեր ընկալեալ և հաւատացեալ ճըշմարտութեանն՝ և ոչ կարեմք փոխանակել զճշմարտութիւն ընդ սնոտի, առասպելաբան և կարկատուն, ստայօդ և պաճուճազարդ մոլար[xx] ուսմանդ ձերոյ: Որով օրինակաւ կամք քո հրամայեն՝ եկեսցէ ի վերայ մեր պատիժ պատուհասի. պատրաստ եմք ի կապանս, ի բանտս, ի գանս, ի հուր, ի սուր. ի ջուր, ի տանջանս հարուածոց և յամենայն հնարս չարչարանաց»: Զայս և առաւել քան զսոյնս և բազմապատիկ կարգեցին եդին բանս գեղեցկայարմարս ի Քրիստոս հաւատոցն: Բայց քանզի ոչ ոք յայնժամ ընդ գրով զայնոսիկ ներքադրեաց. որպէս օրէն է թագաւորաց՝ և ոչ մեք երկրորդել պատկան[xxx] վարկաք:

Յայնժամ թագաւ[318]որն լի եղև սրտմտութեամբ, և զգոյն երեսաց իւրոց բոցագոյն դարձուցեալ, խրոխտացեալ և մրմռեալ իբրև զգազան արիւնարբու՝ հրաման ետ հանել արտաքս յերեսաց ատենին, յղեաց պատգամս և ասէ, «ոչ են օրէնք թագաւորութեանս մերոյ ի պայքար բանից զոք արկանել. և յերկարել ի բանս, որչափ արարաք ընդ ձեզ, զոր ինչ այլ արասցուք. և արդ քանզի խօսեցայ ընդ ձեզ բանիւք ողոքանաց՝ և դուք թերևս յայդ գայթակղեալ խաբեցայք և

---

[317] x) III (246)՝ ՆժԱ: Ա (1/4.5), I (175), II (156)՝ ձժԱ: xx) I (175) չիք՝ սնոտի. առասպելական և կարկատուն, ստայօդ և պաճուճազարդ մոլար: xxx) Այլ օր.՝ արժան:

[318] x) Այլ օր.՝ անկեալ ի սիրտ:

*պնդեալ կայք յամառեալ: Եւ արդ խնայեալ իմ ի ձեզ, և դուք առանց յապաղանաց և զիս աշխատ առնելոյ ի բաց լերուք յերկրպագութենէն Քրիստոսի, և եղիցին անձինք ձեր ի գիւտս և կեցջիք. և իմ թողեալ ձեզ զչարիս ապստամբութեանն ձեր, վայելեսջիք ընդ իս և տիրեցէք աշխարհին ձեր»:*

*Այլ նոքա թէպէտ առ փոքր մի ոչ կամեցան դառնալ յերկրպագութենէն Աստուածորդւոյն, զի տնկեալ էր ի սիրտըս[x] նոցա հաւատ սուրբ առաքելոցն, բայց վասն զի ոչ ունէր արմատս՝ [319] վաղվաղակի չորացաւ ի տապոյ բանսարկուին[x], զի ի փոնգալոյ նորա կայծակունք հատանին[xx] և ընդ ռնգունս նորա ելանէ ծուխ հնոցի կայծականց, որպէս գրեալ է ի Յովբ[3]: Եւ վասն իւրեանց թուլամորթութեանն և անհաստատ և յողդողդ մտաց սիրեցին զփառս մարդկան առաւել քան զփառս Աստուծոյ. զի «ժողովուրդս այս շրթամբք պաշտեն զիս, և սիրտք իւրեանց հեռացեալ մեկուսի են յինէն»[4]. և կողմնեալք ի սիրոյ աստուածութեանն՝ անկաւ ի վերայ նոցա զարհուրումն մահու, մանաւանդ ոչ կամելով ելանել ի սնոտի կենացս դիւրափոփոխ աշխարհիս՝ ասեն. «յանձն առնումք զհրամանս արքունականս», ի մտի եդեալ զի այն ինչ, իբրև թէ ի վերին երեսս[xxx] հաճիցեն զմիտս թագաւորին, և ի ներքին խորհուրդս պահիցեն զխոստովանութիւնն որ ի Քրիստոս. որում անհնար է երկոցունց ի միասին բնակել, և ոչ ոք կարէ երկուց[xxxx] տերանց ծառայել[5], որպէս ասաց Փրկիչն, զոր ի կարգի իւրում հարկեցայց [320] ցուցանել:*

*Յայնժամ իսկ և իսկ արագապէս թլպատեալք եղեն մսլիմանակ, հետևեալք զկնի Բագարատայ Բագրատունեաց[x], որ ըմբռնեցաւ ի յայլ զօրավարէ ի Խլաթ քաղաք, և էր նա իշ-*

---

[319] ×) Այլ օր.՝ ունէն արմատս յինքեանս վաղվաղակի ի ծագել տապոյ բանսարկուին չորացան: ××) Այլ օր.՝ հատանէին:
×××) Այլ օր.՝ թէ այն ինչ ի վերին երես: ××××) Այլ օր.՝ կարէք երկոցունց:

[320] ×) Այլ օր.՝ Բագրատունւոյ: ××) Այլ օր.՝ զամենայն խորայել:

խան Տարաւնոյ, բարձեալ եղև ի Սամառայ և եղև աս-
տուածուրաց, և եբաց զպողոտայն լայն և ընդարձակ, զշա-
ւիղն կորստեան, որ տանի յանգիւտ կորուստն. որպէս Բոբո-
վամ որդին Նաբատայ, որ մեղաւ և յանցոյցն զԻսրայէլ[xx],
որպէս գրեալ է ի գիրս Թագաւորացն Իսրայէլի[6], և յիշատա-
կարան նորա մոլորութեանն որով վրիպեացն և վրիպեալ
կործանեաց զազգս բազումս՝ կայ և մնայ ազգաց յազգս
մինչև յաւիտեան:

Բայց Վասակս այս զոր յիշեցաք վերագոյնն ընդ մեծ Նա-
խարարսն՝ վասն ազգակից գոլ[xxx] նոցա ընդ[xxxx] տոհմին Ար-
ծրունեաց. սա յառաջ քան զըմբռնելն նոցա ել գնաց իւրովք
կամօք ի Սամառայ և եղև աստուածուրաց, և բունեալ
ուրջացեալ[xxxxx] էր ի նմա սատանայ զօրօք իւրովք, ամենայն
հնար[321]իւք խորամանկութեամբ կապեալ անլոյծ գօտեամբ
ընդ ոգւոյ երիցս Թշուառականին, զոր կազմեաց իւր սատա-
նայ գործի աջողակ յամենայն արուեստ գիտութիւն խար-
դախութեան, իբրև զպատշաճ դարան[x] դեղեալ նետիւք ընդ
խաւար Թռուցելոյ յոգիս խաւարամածս: Որպէս և այրս այս
արար, անքակ և անմեկնելի զգեցաւ պատեանս յինքեան
զզօրութիւն բանսարկուին: Եւ զի մի երկայնեալ որ ինչ վա-
սն սորա ապիրատ և ինքնակամ և անզիղջ և անխիղճ ա-
ռանց պատկառանաց մոլորութիւն սորա լի անամօթու-
թեամբ՝ ի բաց դիցուք զսա ի միջոյ յիշատակի Նախարա-
րացն, զի ոչ եթէ ատեաց զանօրէնն իբրև զանամօթն. զի
քան զմեղանչելն առաւել չար այն է՝ չունել զինքն ընդ յա-
նցաւորսն, զի ողջախոհացն քան զամենայն չար տանջանս
ամօթն է. և մի եղիցի յիշատակ սորա ընդ սոցա, որք Թէպէտ
և վրիպեցին և կործանեցան՝ սակայն և ապաշաւեցին և
կանգնեցան յետ դարձին իւրեանց ի մեծ կարաւանէ գե-
րու[322]Թեանն ի միջոյ ժանեաց բռնաւորին. բայց սա յեր-

xxx) Այլ օր.՝ գոլոյ:
xxxx) Ա ($^{2}/_{10ռ}$)՝ ըստ տոհմին: xxxxx) Այլ օր.՝ սորջացեալ:
[321] x) Իմա՝ պատկանդարան (II, 158, ծն. 7):
[322] x) Այլ օր.՝ լրբութեամբ և մոլորութեամբ:

թալ և ի դառնալ իւրում նովին մտօք և նովին մոլորութեամբ[x] վարեցաւ, լրբեալ լի թշուառութեամբ. և որպէս պատմեն զնմանէ՝ զի դարձաւ յետս յԱստուծոյ և դարձոյց զերեսս իւր ի ճշմարիտ դաւանութենէ յերկրպագութենէ Աստուածորդւոյն, որպէս ասաց՝ «դարձուցին յիս զթիկունս և ոչ զերեսս իւրեանց»[7]. աստէն իսկ դարձաւ յետս երես իւր ի թիկունս կոյս, ըստ ձախողակի խոտորմանն յետս ընդդէմ զխոտորմանն ժառանգեաց: Առանց ախոյեանի պարտեցաւ և առանց զինու խոցոտեցաւ և առանց հողմոյ նաւաբեկեցաւ, ի կամս անձնիշխան կամաց մոլորեցաւ, և ել գնաց զկնի իշխանութեանն ցանկութեան ինքնամոլորութեանն անգիւտ կորստեանն. եղև սմա կեալ անհաւատութեամբ և մեռանել անյոյս:

Իսկ երիցս երանելի սուրբքն տէր Յոհաննէս Արծրունեաց եպիսկոպոս և երանելի քահանայն Գրիգոր և տէր Գրիգոր Արծրունի[xx] խրախուսեալք յԱստուած, կացեալ յատենի ի [323] մեծ ասպարիսի հոգևորական պատերազմին՝ աներկիւղ համարձակութեամբ, բանիբուն համառօտութեամբ կարգեցին եդին առաջի բռնաւորին բանս գեղեցկայարմարս յԱստուածաշունչ գրոց վասն ի Քրիստոս հաւատոցն և պախարակելով զմոլար օրէնսդիրն նոցա Մահումաթ: Առ ոտն հարկանելով զխոստացեալ նոցա պարգևսն՝ ասեն. «լաւ է մեռանել վասն Քրիստոսի, քան առ ժամանակ մի վայելել ի մեղս»:

Յայնժամ հրամայեաց բռնաւորն կապել զնոսա երկաթի կապանօք և դնել ի բանտի: Վայելէր իսկ եպիսկոպոսին Յոհաննու՝ առնուլ զլուծ համանուանն իւրոյ զՅոհաննու Մրկրտչի, որ կապեալն էր ի Հերովդիայ և տուեալ[x] ի բանտ[8]: Գեղեցիկ էր և տեառն Գրիգորի Արծրունւոյ՝ ոչ անփոյթ առնել և զիւրոյ համանուանն զսրբոյն Գրիգորի առնուլ յանձն զխաւարամուտ լինել ի խորին խաւարային վիրապն

---

xx) Այլ օր.՝ Արծրունեած:

[323] x) Այլ օր.՝ համանմանել և առնուլ զլուծ հոմանուան իւրոյ զսրբոյն Յովհաննու... և տուեալ լինէր:

կապանօք հանդերձ. յոյժ վայելուչ էր և երանելի քահանային Գրիգորի՝ միաբանել ընդ նոսա և լինել զերրեակ թիւն, զի անմեկն[324]ելի եղիցի Քրիստոս ի նոցանէ, որպէս ասաց Քրիստոս, եթէ «ուր երկու կամ երեք ժողովեալ են յանուն իմ՝ անդ եմ և ես ի մէջ նոցա»[9]: Եւ սաղմոսէին միաբան՝ «վասն քո մեռանիմք զօրհանապազ. համարեցաք որպէս զոչխար ի սպանումն»[10]:

Իբրև գիտաց բռնաւորն, եթէ յաղթեցաւ ի սրբոց արանցն, մանաւանդ ի քաջէն Գրիգորէ, զի կարծէր դիւրաւ արկանել զնոսա ի հաղբս պատրանաց զկնի դարձելոցն ի ճշմարտութենէն. և մինչ ոչ ելին ի գլուխ կարծիքն, այլ իբրև զմեքենայ ինչ յամուր անդամանդեայ պարսպէ ի բաց դառնայր, որոյ գլուխ անկեան Քրիստոս[×11], ապա յամառեալ զարբանեալքն իւր հրամայեաց կապել կրկին շղթայիւք և արկանել ի ներքին բանտ:

Իբրև գիտացին սուրբքն զանհուն պատերազմ չարին՝ վառեալ և նոքա զինքեանս հանապազակռիւ լինել ի ճակատուն, անխափան սաղմոսերգութեամբ զանուշահոտ աղօթս իւրեանց միշտ ի բարձունս[××] առաքելով, և հայցէին յամենայաղթն [325] Քրիստոսէ յաղթել մեծի պատերազմին և վառեալ զինքեանս յընթացս պատերազմին, զգեցեալ զզրահս արդարութեան և պնդեալ զմէջս ճշմարտութեամբ և ագուցեալ զոտս պատրաստութեամբ Աւետարանին խաղաղութեան և սուսեր ընդ մէջ ածեալ զբանն Քրիստոսի, որ հատու է քան զամենայն սուր երկսայրի, և վահան ի թիկունս եդեալ ի բոլոր սրտէ զհաւատս անբիծս, և համբարձեալք զձեռս իւրեանց յերկինս իբրև զաղեղն հաստ, և զզօրութիւն աղօթիցն իբրև զնետ ձգեալ ի լայնալիճ աղեղանէ ի նպատակն, հարեալ զկառափն սատանայի դիաթաւալ կացուցեալ յերկիր կործանէր: Եւ վասն յաղթութեանն գոհութիւն մատուցեալ Քրիստոսի՝ ասէին. «օրհնեալ է տէր Աս-

[324] ×) Այլ օր.՝ վէմն Քրիստոս: ××) Այլ օր.՝ զաղօթս իւրեանց ի բարձունս:

տուած մեր, որ ուսոյց զձեռս մեր ի պատերազմ, և զմատունս մեր ի ճակատամարտ»[12], և որ ի կարգին է: Եւ յայսմ պատերազմի ոչ միայն երանելի եպիսկոպոսն և ճգնաւոր քահանայն մարտակից էին տեառն Գրիգորի, այլ և զօրք հրեղինաց, քանզի «բանակք հրեշտակաց Տեառն շուրջ են զերկ[326]իւղածովք իւրովք և պահեն զնոսա»[13]:

Եւ կացեալ սուրբքն ի կապանս զերիս ամս ի ներքին բանտին: Եւ խնդրէին ի բազումողորմէն× Աստուծոյ՝ հանել ի գլուխ զառօրեայ ժամանակս անսայթաք և հաստատուն հաւատովք, լի արտասուօք և հեծեծանօք յիշեցեալք զվերին Սիօն մայրաքաղաքն սուրբ[14], որպէս ժողովուրդն Աստուծոյ առ գետսն նստէին և լային ի յիշելն իւրեանց զՍիօն, և կամ իբրև զնոյն ինքն զերիս մանկունսն, կապեալք և արկեալք ի հնոց նեղութեան[15] զնոցին օրհնութիւնս զամենայն գիշեր×× օրհնէին և զնոյն ցօղ օրհնութեան յամենապարգևողէն Քրիստոսէ խնդրէին: Եւ յոյժ զուարճացեալ քաղցր բարբառովն Քրիստոսի, որ է անեղծանելի վճիռ քրիստոսասիրաց անձանց, եթէ «եկայք առ իս ամենայն աշխատեալք և բեռնաւորք, և ես հանգուցից զձեզ»[16], և թէ «որ ուրասցի զանձն իւր վասն իմ՝ գտցէ զնա»[17]. և զայն երիս ամս կերակրեալ լինէին սուրբքն ձեռնարուեստիւք իւրեանց, որպէս զնոյն ինքն զաստուածազարդն Պօղոս, թէ «զ[327]պէտս իմ և որ ընդ իսն էին՝ պաշտէին× ձեռքս այս»[18]:

Իսկ ի չորրորդ ամին դարձեալ ի բարձրագոյն քան զառաջինն կազմեալ զմեքենայս չարին արկանել զԳրիգոր ի քուրայս նեղութեան. զի պայծառ սուրբ և մաքուր ոսկին յիւրումն կտակագրի պատկեր աստուածորդւոյն: Քանզի սուրբ Գրիգոր Հայոց լուսաւորիչն ասէր, թէ «ի մէջ օձիցն էր բնակութիւն իմ, և կոտռային պանդամօք իմովք»[19]: Իսկ տէր Գրիգոր ի մէջ մարդակերպ գազանաց ի ժողովս խուժադուժ բարբարոսաց բնակէր, որ ես չար քան զթունաւոր գա-

---

[326] ×) Ա ($^{1}/_{6-7}$)՝ ի բազումողորմն: ××) Այլ օր.՝ գիշերի:
[327] ×) Ա ($^{1}/_{7}$)՝ պաշտեցին:

զանս են առ մեզ, և մխիթար բարի ունէր ի բարբառոյ մարգարէին որ ասէր, թէ «մանուկ մատաղ ի ծակ իժից արկցէ զձեռս իւր՝ և ոչ մեղիցեն նմա»[20]: Եւ խնդրէր ի Քրիստոսէ ելանել ի մարմնոյ աստի և մտանել առ Աստուած. զորոյ զպաղատանս ոչ անտես արարեալ Քրիստոսի՝ ներէ նմա հանել ի գլուխ զսուրբ քառասնորդսն, խաչակից լինելով Քրիստոսի, մինչև ի պարտ զատկին, և զուարճացեալ լինէին սուրբ ճգնաւորքն յաւուրս պենտեկոստէից. բազմ[328]եալ էին ընդ Քրիստոսի իբրև զմանկունս առագաստի: Իսկ զկնի վերանալոյն Քրիստոսի, յետ ԺԵ աւուր, ապա հասանէր Գրիգորի քրիստոսակոչ[x] կատարումն. որպէս ասաց Քրիստոս, թէ «ես յորժամ բարձրացայց[xx] առ Հայր՝ զամենեսեան ձգեցից առ իս»[21]: Ապա համբարձեալ զձեռս իւր յերկինս՝ ասէ, «յիշեա՛ զիս, Տէր, յորժամ գաս արքայութեամբ քո»[22]. և օրհնեաց զամենեսեան, զհեռաւորս և զմերձաւորս յանձն արար շնորհացն Աստուծոյ, և զինքն յանձն արար երանելի եպիսկոպոսին և ճգնաւոր քահանային, հանգեաւ բարի խոստովանութեամբ ի հոռի ամսեան, որ օր Ե էր ամսոյն յաւուր ուրբաթու[23] ի Քրիստոս Յիսուս ի Տէր մեր, որում փառք յաւիտեանս. ամէն:

Իսկ հաւատացելոցն տեսեալ, եթէ բարի խոստովանութեամբ ննջեաց տէր սուրբ Գրիգոր՝ գոհութիւն մատուցանէին ամենազօրին Քրիստոսի, որ զօրացոյց զսուրբ վկայն և արար յամօթ զսատանայ: Եւ պատուական արանցն քրիստոսասիրաց մտեալ առաջի թագաւորին՝ խնդրեցին զմարմին սրբոյն, և առեալ պատեցին և եդին [329] ի գերեզմանին. և զօր մահուան[x] սրբոյն ամենայն Ասորեստան տօնախմբեալ մեծաւ ուրախութեամբ ի Քրիստոս Յիսուս ի Տէր մեր, որում փառք յաւիտեանս. ամէն:

---

[328] x) Ա (¹/₈)՝ Գրիգոր ի Քրիստոսակոչ. ուղղ.՝ Գրիգորի Քրիստոսակոչ (Նախն., 397): xx) Այլ օր.՝ բարձրացոյց:

[329] x) Այլ օր.՝ մահու: xx) Այլ օր.՝ բայց քանզի:

(Է)

## ՎԱՍՆ ՀԵՐՁՈՒԱԾՈՑՆ ԲԱԳԱՐԱՏԱՅ ԲԱԳՐԱՏՈՒՆԻՈՅ, ՈՐ Ի ՎԵՐԱՅ ՈՒՐԱՑՈՒԹԵԱՆՆ ՋՔՐԻՍՏՈՍ ՑԱՒԵԼ ԵՒ ՋԱՑՍ Ի ԿՈՐԾԱՆՈՒՄՆ ԲԱԶՄԱՑ: ԸՆԴԴԻՄԱԴՐՈՒԹԻՒՆ ՍԱԿԱՒՈՒՔ

*Ասաց Բագարատ յուրացութեանն իւրում, առ վտանգի նեղութեանցն՝ ուրացութիւնն ոչ ինչ վնասէ, եթէ ի սրտին գաղտնի պահէ զխոստովանութիւնն հաւատոց: Եւ զայս Եղկղեսիանոսք. բայց [330] ինձ այսպէս թուէր, թէ աղանդն Եղկղեսիանոսաց վաղուց շիջեալ խափանեալ լինէր ի քաջաց վարդապետացն սրբոց, զոր եդն Աստուած յեկեղեցւոջ. դա աւադիկ արմատ դառնութեան ի վեր երևեալ, և բազումք պղծին նովաւ: Արդ եկայք դիցուք զյանդիմանութիւն սոցա առ փոքր ինչ և դուզնաքեայ ի գրոց սրբոց, զի ի բաց խլիցի ամբարշտութիւն աղանդոյն այնորիկ յեկեղեցեաց ուղղափառ հաւատացելոց. անցցուք ի վեր Եղկղեսիանոսաց, ի ժամանակի հալածանաց որք անկան ի կռապաշտութեանն մոլորութիւն. և խորհեցաւ սա զմիտս զայս, եթէ որ առ վտանգի նեղութեան դարձցի ոք առ ի պաշտօն կռոցն՝ ոչինչ է, եթէ սիրտ իւր ուղիղ պահեսցէ զհաւատսն Քրիստոսի: Ձընդ նոյն ժամանակս և Նաւատիոս× երէց ի Հռովմ[1] առաքէր ընդդիմակս Եղկղեսիանոսացն××, որք ի դադարել հալածանացն՝ զամենայն ի զոհելոյ կռոցն ոչ ընդունէր զապաշխարողսն: Եւ սա բազումս արգել ի կռապաշտութենէ, թէպէտ և մոլորեցոյց [331] անյուսութեամբ զդարձեալսն յապաշխարութիւն, և նա զբոլոր իսկ զաշխարհն կործանեաց, պաշտօնատար× լինել սնոտեացն, թէպէտ յետոյ ընդունէր զապաշխարողսն: Բայց երկոքեան կողմանք դնին ի ներքոյ պարսաւանաց, թէպէտ և ի բարեպաշտութեան յաղագս մոլորեցան: Բայց զի մի և մեք անկեալք լիցուք ի*

---

*[330] ×) Այլ օր.՝ Նաւատիկոս: ××) Ա (2/9ւ)՝ ընդդիմակս եղկըեսիացն:*

*[331] ×) Ա (1/5)՝ պաշտօնարար. ուղղ.՝ պաշտօնատար (Նախն. 147): ××) Այլ օր.՝ երկոքին: ×××) Այլ օր.՝ երկօքին թևօք*

նոյն՝ ուսցուք ի յԱստուածաշունչ գրոց և ընդ հարթն գնասցուք ճանապարհ, և մի խոտորեսցուք մի յաջ և մի յահեակ. զշրթունս մեր մաքրեսցուք ի մաքուր խոստովանութիւն հպելով և զմիտս մեր սուրբ պահելով ի հաւատս ճշմարիտս. զի եթէ երկոքեան[xx] միով բարեպաշտութեամբ ոչ վառեսցին՝ ոչ ինչ օգուտ ի միոջէն բերցի: Զի թէ առագաստ նաւին յերկոսին կոյս ոչ պարզիցի՝ ոչ ուղղակի նաւարկութիւնն ճանապարհորդիցի, կամ թէ նաւաբեկեսցի իսկ ի բռնութենէ մրրկալից հողմոյն զալիսն կուտակելով: Եթէ երկոքումբք թեւովք[xxx] ոչ թռչիցի թռչունն՝ ոչ վերասցի ի բարձունս: Նոյնպէս եթէ ոչ հաւատք սրտի [332] և խոստովանութիւն շրթանց ամբողջ պահիցին՝ ոչ կարասցէ հետևել ճշմարիտ դաւանութեանն ի Հայր և յՈրդի և ի Հոգին Սուրբ, «զի սրտիւ հաւատամք յարդարութիւն, և բերանով խոստովանիմք ի փրկութիւն»[2], որպէս ասաց առաքեալն, որպէս որ շրթամբքն պատուեն և ի սիրտս իւրեանց անպատուեն. զի «ժողովուրդս այս, ասէ, շրթամբք իւրեանց պատուեն, և սիրտք իւրեանց հեռացեալ մեկուսի են յինէն»[3]: Զի չէ և չէ իսկ հնար, թէ որ հաւատայ բերանով՝ թէ ուրասցի շրթամբք, զի «ոչ կարէ ծառ բարի պտուղ չար առնել, և ոչ ծառ չար՝ պտուղ բարի առնել»[4], որպէս և ասաց Փրկիչն, և այլ թէ, «մի՞թէ քաղիցեն ի փշոց խաղող կամ ի տատասկէ թուզ»[5]. այլ թէ «որ ուրասցի զիս առաջի մարդկան՝ ուրացայց և ես զնա առաջի Հօր իմոյ որ յերկինս է. և որ խոստովանեսցի զիս առաջի մարդկան՝ խոստովանեցայց[x] և ես զնա առաջի Հօր իմոյ որ յերկինսն է»[6]: Այսու զպտուղ շրթանց մերոց խոստովանելով[xx] յանուն Նորա պահանջէ սպառնալեօքն [333] և խոստմամբքն: Դարձեալ նմին նման ասէ Պօղոս, զօրինացն ստորոգելով[x] գրաւորութիւն, այսպէս ասելով, «մերձ է բան ի բերան քո և ի սրտի քում, այսինքն է բան հաւատոց զոր քարոզեմք»[7]. և առ Տիմոթէոս գրէ, հաւատա-

[332] x) Ա (լ/ղ) չիք՝ խոստովանեցայց: xx) Ա (լ/յւ)՝ խոստովանեաց:
[333] x) Այլ օր.՝ զանօրինացն ստորագրելով:

րիմ գոլ[xx] զզօրութիւն Հաւատոցն, ասէ, «Թէ ուրանամք՝ և նա ուրանայ զմեզ. թէ չՀաւատամք՝ նա Հաւատարիմ մնայ»[8]: Տե՛ս և զերանելին Եսայիաս զի՞նչ ասէ, «մարդ եմ և պիղծ շրթունս ունիմ, և ի մէջ պղծաշուրթն ժողովրդեան բնակեալ եմ ես»[9]: Զայս ոչ եթէ սակս ուրացութեան ինչ ամբաստան[xxx] լինի զինքենէ[xxxx], կամ վասն ժողովրդեան, այլ զի ոչ յանդիմանեցին զԹագաւորն, որ արտաքոյ օրինացն ամբարշտէր. իսկ եթէ առ փոքրն այնչափ ամբաստանէր զանձն մարգարէն՝ քանի՞ ևս ողբոց և արտասուաց արժանի են՝ որ յՈրդին Աստուծոյ ամբարշտեն շրթամբք իւրեանց: Որպէս և Պօղոս ողբալով և սպառնալեօք ասէ. «ո՛րչափ սաստիկ պատժոց արժանի Համարիցիք զայն, որ զՈրդին Աստուծոյ առ ոտն եՀար և զարիւն նորոյ ուխտին խառնակ Համարեցաւ և զՀոգին [334] շնորՀաց թշնամանեաց»[10]: Տե՛ս, ո՛վ սիրելի, զի թշնամանելն՝ լեզուին բարբառ է, և ոչ ներէ ստեղծիչն լեզուին զուրացութիւնն բարբառել, զի ոչ եթէ այլ ոք է որ ստեղծ զլեզուն, և այլ ոք է որ արար զսիրտն. օ՛ն անդր ի բաց տար:

Տես և զմիւս ևս նման սմին ի գրոց Գործոց առաքելոց: Սիմոն Սամարացի մատուցեալ առ Փիլիպպոս զՀոգւոյն պարգևաց լեզուացն[x], և սրտին կեղծաւորութեամբ զիա՞րդ պատժապարտեցաւ[11]. զի՞նչ Անանիա և Սափիրայ վասն ագարակին և նորին ստութեանն[12], իմա և ի միտ առ: Զի եթէ ոչ ստուգութիւն սրտին և ճշմարտութիւն բերանոյն Համամիտ առ Հաւատոցն խոստովանութիւն ուղղակի մատչիցին՝ խոտան և ի բաց ընկենլի է և օտար ի սրբոյ[xx] առաքելական եկեղեցւոյ: Քանզի ոչ յարմարական[xxx] բարւոյն և չարին ի միասին առկայանալ, և ոչ լուսոյն ընդ խաւարի, կամ զի առողջութեանն ընդ Հիւանդութեան. նոյնպէս և ոչ է Հնար սրտի Հաւատացելոյն պղծել շրթամբք: Զի գրեալ է՝ յաւելո-

xx) Ա ($^{1}/_{10-11}$)՝ Հաւատարիմ գոլ գրէ: xxx) Ա ($^{2}/_{1-2}$)՝ սակս ուրացութիւն ամբաստան ինչ: xxxx) Այլ օր.՝ յինքենէ:
[334] x) Ա ($^{1}/_{ռ}$)՝ զՀոգւոյն պարգևս լեզուացն: Այլ օր.՝ զիա՞րդ լեզուացըն: xx) Այլ օր.՝ ի սուրբ xxx) Ա ($^{2}/_{10}$)՝ յարմարական է բարոյն:

ըղէ սրտի խօսի բերանն, զի խորհուրդ յղութիւն է մտաց, և [335] բան ծնունդ է իմացմանց. այլ որպէս արմատն՝ նոյնպէս և ուռն և պտուղն. եթէ սկիզբն սուրբ է՝ ապա և արմատն, ապա զինչ ուռն՝ նոյն և տեսակ: Բաւականասցի իմ դուզնաքեայ բանքս առ հերձուածող մոլորութեանց:

Եւ մեք հետևեալ Աստուածաշունչ գրոց՝ պահեսցուք անբիծ զհաւատս սրտից, և մաքուր զխոստովանութիւն շրթանց, ըստ սրբոյն Պօղոսի վերաբերեալ զօրինականն, թէ «մերձ է բան ի բերան քո և ի սրտի քում, այսինքն է բան հաւատոյ զոր քարոզեմք»[13], և Դաւիթ ասէ, «յոր հաւատացի զնոյն և խօսեցայ»[14], և Պօղոս՝ «մեք հաւատամք զոր խօսիմքն»[15]. և դարձեալ Պօղոս՝ «եթէ խոստովանեսցիս բերանով քով զտէր Յիսուս, և հաւատասցես ի սրտի քում թէ Աստուած յարոյց... զի սրտիւ հաւատամք յարդարութիւն և բերանով խոստովանիմք ի փրկութիւն»[16]:

Արդ այսքանեաց վկայութեանց ի մի վայր եկելոց՝ մի ելցուք զհետ առասպելաբանիցն թէ ընդ անկոխն գնալով ճանապարհ. այլ տանելով մեր առաջի թագաւորաց× և դատաւորաց վասն իմ ի վկայութիւն՝ պահեսցուք զբար[336]իւոք դաւանութիւն և վկայեսցուք որպէս Փրկիչն առաջի Պոնտացւոյ Պիղատոսի. որպէս ասէ Պօղոս առ Տիմոթէոս, «մի ամօթ համարիցիս զվկայութիւն Տեառն մերոյ»[17], և Դաւիթ՝ «խօսէի զվկայութիւնս քո առաջի թագաւորաց և ոչ ամաչէի»[18], և Փրկիչն՝ «եթէ ոք ամօթ համարեսցի զբանս իմ»[19]: Աստանօր զվկայալ բանիս[20] և մեք ի ճեպելն փութասցուք, զի մի յերկարաձգեալ զդերհատուցական× բանիս՝ յետնեալ գտցուք յառաջիկայ մեզ գրաւորութենէն, որ սակս պատմութեանցն են հանդէսք:

---

[335] ×( Այլ օր.՝ այլ տանելով մեր զվկայութիւն առաջի թագաւորաց:
[336] ×) Ա (¹/5ա.)՝ զդեր հատուցական. ուղղ.՝ զդերհատուցական (Նախն. 397): ××) Այլ օր.՝ գրեցաք և պատմեցաք: ×××) Այլ օր.՝ խնդրոյ:

## ՈՐ ԻՆՁ ՋԿՆԻ ԱՑՍՈՐԻԿ ԳՈՐԾԵԱՑ ԲՈՒՀԱՑ Ի ԴՈՒԻՆ ՔԱՂԱՔԻ, ԵՒ ՑԻՇԱՏԱԿԱՐԱՆ ՎԿԱՑԻՑՆ:

*Զոր օրինակ փոքր մի վերագոյնն պատմեցաք[××] զծովային վիշապէն ըստ բարոյականի՝ նոյնպէս և այժմ դարձեալ արարից գլիշատակ սորա աղագաւ պատմութեանս խորհրդոյ[×××1]:*

*Յորժամ անդնդական խորքն ազդ առնիցեն ներքին բնական կենդանեացն զհասանել ջերմութեանն, յորում ջեռացեալ ի հիւսիս[337]ային սառնամանեաց օդոյն շնչելոյ, ի խորսն զխաղացումն արարեալ լինին, և յորժամ զգան ջերմութեանն՝ զուարթանան զուարճանան, հրճուին կայտռելով ի վեր փքալով հասանել ի ջերմագոյն վայրսն, ի ջրշիղջսն ծովափնեայս ջանան հասանել, և առ ծովեզերբն զամառնային ժամանակն պարենաւորեալ առկայանան. և յաղագս անճոռնի և թանձր բլրաձև[×] ծանրակիր մարմնոյ՝ և դժուարաշարժ զի վեր բերումնն առնեն: Եւ է զի ի նուրբ և ի հուն տեղիս ջուրցն անկեալ՝ ի նմին խրեալ կան անշարժ, և դիւրաւ անկանիցի ի ձեռս որսորդաց. այլ ի շարժելն իւրում՝ ահ առնուն ամենայն լողակք[××] և գազանք ծովայինք, որոյ և կերակուր նոյն լողակք և զեռունք այլովք կենդանեօք: Եւ յորժամ դարձեալ պակասիցէ զօրութիւն ջերմ օդոյ հարաւային հողմոյն, և արեգակն ի վայր կոյս զընթացսն առնիցէ, և ձմեռնային եղանակն առ դուրս հասեալ կայցէ, և հիւսիսային օդն շնչեալ սաստկացուցանէ զզօրութիւն ցրտոյն, և հասեալ ի վերայ ծառոց ի [338] բարձրաբերձ գագաթունսն տերևաթափ առնիցէ և ընդարմացուցանէ զզօրութիւն արմատոյն՝ յայնժամ վիշապն նեղի, շտապի, տագնապի բռնութեամբ ուժոյ զօրութեանն, խաղայ*

---

[337] ×) Այլ օր.՝ և բլրաձև: ××) Ա $(^2/_5)$՝ ղուղակք:

[338] ×) Այլ օր.՝ հնչէ: ××) Ա $(^2/_{11})$՝ և զձմեռնայինն: ×××) Այլ օր.՝ ի ջերմական: ××××) Ա $(^2/_{8ւ})$՝ ամրական:

*իջանէ ի խորագոյն և ի ջերմային վայրս անդնդական խորոցն, ձմեռնանայ անդ, և որ ի նմա են կենդանիքն՝ զնոյն առ ի վերայ հասուցանէ և նոքօք զպէտս քաղցոյն վճարէ մինչ ի ժամանակս գարնանայինս: Նոյնպէս բանայ, որպէս և այլ թռչունք և գազանք՝ բնաւորեալ բաժանեն զժամանակս տարւոյն յերկուս կամ յերիս ամարանոցս և ձմերանոցս ինքեանց կենաց պաճարին, զգարնանայինսն ի բարձրագոյն գագաթունսն լերանց և ի փապարս վիմաց և ի վերայ բարձրաբերձ ծառոց կենցաղավարին, ուր յաճախ շնչէ[x] օդն հիւսիսային, և ձմեռնայինն[xx] խաղան գնան ի խորագոյն երկիր, ի ջերմագոյն[xxx] վայրս ամրանան[xxxx] առանձնանան և միայն բնակեն ըստ ազգս իւրեանց[2]:*

*Ըստ նմին օրինակի և զօրավարն Բուխայ, ի հասանել ամառնային ջերմութեանն, իբրև ի խորոց անդնդոց [339] ի վեր մղեալ զինքն, ելեալ յերեսաց արքայի բազում և ծանր զօրու՝ եհաս ի վերայ երկրիս ի կողմն հիւսիսոյ ի մուտս Հայաստան աշխարհիս. և ի շարժելն նորա ահ կալաւ զբոլոր աշխարհս և աշխարհակալս. յորոց վերայ հասեալ եկուլ վիշապաբար զորս և կարաց ի դիմի հարկանել: Եւ զոր օրինակ զնա վիշապ առակեցաք յաղագս սաստիկ ուժոյ զօրութեան ձեռին նորա, ի ծովէ ելեալ, այսինքն յերկրէ և յանդնդական խորոց, ի Թագաւորաբնակ[x] քաղաքէն՝ նոյնպէս և զայլս յիշխանական պետութենէ փոքրագոյն կէտս և լողակս[xx] մանունս իմանալի է. զի ոչ ոք զօրեաց կալ ընդդէմ նորա: Եւ ոչ անվկայ բանս, որպէս վերագոյնն գրեալ է մեր զդերահատուցականս սորա, վկայութեամբ մարգարէական տառիցն, որպէս և ի պատահմանէ իրացն ճարտար գիտեն՝ որք են ի ժամանակս յայսմիկ մնացեալ յայնժամու[xxx] անդ հանդիպելոցն:*

*Իսկ անօրէն զօրավարն իբրև արար և կատարեաց զամենայն [340] կամս չարութեանն ի վերայ աշխարհիս Վաս-*

---

*[339] ×) Այլ օր.՝ և ի Թագաւորական: ××) Ա ($^{2}/_{3}$)՝ ղուղակս: ×××) Բնագրի՝ յայն ժամու ուղղ.՝ յայնժամու (Նախն. 400):*

պուրական կոչեցեալ[3] և գնաց եմուտ ի ջերմագոյն տեղիս ի
քաղաքն Դուին ձմերել անդ[4]. և արձակեաց զզօրսն իւրա-
քանչիւր զօրագլխօք եկելոց առ նա յամենայն ազգաց յաշ-
խարհէս Հայոց՝ երթալ ձմերել յիւրաքանչիւր տեղիս բնա-
կութեանց, հրաման տուեալ ամենեցուն, զի իբրև մերձ լինի-
ցի գարնանային ժամանակն՝ փութով առանց յապաղանաց
առ նա հասանիցեն ամենայն պատրաստութեամբ: Եւ եղև ի
մտանելն նորա ի քաղաքն, ունելով ընդ իւր կապեալս բա-
զումս և գերեալս, որոց ոչ գոյր թիւ. զորս վաճառակուր
արարեալ յօտար ազգս, վարել ի ծառայութիւն, գնալ հեռա-
նալ մերժել ի տանց հայրենի ժառանգութենէ իւրեանց: Նո-
յնժամայն իբրև կատարեաց զամենայն կամս չարութեանն
իւրոյ ի վերայ սրբոյ եկեղեցւոյ և կործանեաց կորոյս զբա-
զումս ի գնդէն քրիստոնէից և զորդիս լուսոյ արար որդիս
խաւարի և զժառանգս Աստուծոյ արար բաժին սատ[341]ա-
նայի և զժառանգակիցսն Քրիստոսի արար ժառանգակից
դիւաց և զբնակիչս արքայութեան արար բնակիչս յաւիտե-
նական հրոյն՝ կարծեաց համանգամայն զբոլոր պաշտ-
օնեայս Քրիստոսի ի բաց վճարել ի հաւատարիմ երկրպա-
գութենէ ճշմարտին Աստուծոյ տեառն մերոյ Յիսուսի Քրիս-
տոսի. և կայր յօրացեալ բարձրամտեալ լցեալ խարդախու-
թեամբ: Եւ հրամայեաց ածել առաջի զոմանս յերանելի ա-
րանց յազատ տանէ, և զայլս որք ի բնիկ հեծելազանց, ըստ
ազգս և ըստ տոհմս աշխարհաց, որք ոչ առին յանձն միա-
բանել ընդ գունդս ուրացողացն. և կարծէր յայնժամ ի ձեռն
խոշտանգանաց դիւրաւ արկանել զնոսա ի հաղբս կորու-
սելոցն և մոլորելոցն ի հաւատէն Քրիստոսի[x5]: Ոչ ամենևին
գոնէ փոքր մի խոտորեցան ի բանս նորա և ոչ առին յանձն
ի պատրել մեծութիւն ընչից և ոչ անսացին հնազանդել փա-
ռաց աշխարհական ցանկութեանց, զի գիտացին և ծանեան,
թէ ունայնութիւն և ստութիւն են կեանք աշխարհիս և ե-

[341] ×) Ճ (269բ)՝ ի հաւատէն Քրիստոսի:

րազ դիւրամոռաց և ստուեր [342] երագահոս, և յաւիտենական և անսպառ և անվախճան են կեանքն և պարգևքն, զոր պատրաստեաց Աստուած սիրելեաց իւրոց և որք կան համբերութեամբ ի հաւատս ճշմարտութեանն. Նոյնպէս և տանջանքն նմին նման յաւիտենականք և մշտնջենաւորք յանսպառ յաւիտեանս և յանմահ խոշտանգանս՝ պղծոցն և ուրացողացն ի սուրբ և յանբիծ հաւատոց քրիստոնէութեանն. և դաստիարակ առընթեր ունելով զբանն տէրունական, թէ «որ ուրասցի զիս առաջի մարդկան՝ ուրացայց և ես զնա առաջի Հօր իմոյ[x]»[6], և թէ «որ կամիցի կեցուցանել զանձն իւր՝ կորուսցէ զնա, և որ կորոյս[xx] զանձն իւր վասն իմ՝ գտցէ զնա»[7], և թէ «զի՞նչ օգուտ իցէ մարդոյ, եթէ զաշխարհս ամենայն շահեսցի և զանձն իւր տուժեսցէ, կամ զի՞նչ տացէ մարդ փրկանս ընդ անձին իւրոյ. զի եկն որդի մարդոյ խնդրել և կեցուցանել զկորուսեալն»[8], և որ այլ այսպիսիք զմտաւ ածեալ, որ գրեալ է ի սուրբ Աւետարանն, և լի ծաղու և կատա[343]կանօք այպն արարեալ՝ արհամարհանօք անարգեցին զբռնաւորն, իբրև զմանուկ մի անպիտան[9], կամ զծեր զառանցեալ և խելագարեալ, որ ոչ ըստ իւրոց կամաց զոր ինչ ախորժիցէ խօսիցի:

Իսկ իբրև գիտաց բռնաւորն, եթէ չելին ի գլուխ կարծիքն զոր ի վերայ սրբոցն խորհեցաւ, որպէս գրեալ է, «կարծողն և արհամարհողն այր ամբարտաւան է և ոչ ինչ վճարեսցէ»[10] նոյնժամայն առ յոյժ ամբարտաւանութեանն և սաստիկ բարկութեանն և անհուն սրտմտութեանն և առանց բուժելի[x] կատաղութեանն, յապուշ միտքն կրթեալ իբրև զարբեալ զանզգայ արբեցութեամբ՝ և ոչ առ փոքր մի ինչ ներեաց կամ անսաց տալ տեղի պատասխանոյ, այլ հրամայեաց դահճացն տալ ի վերայ նոցա զվճիռ մահու, փութով զրաւ առնել նոցա ի սատակումն սրոյ: Նոցա ելեալ արտաքս յատենէն մեծաւ խնդութեամբ, և յոյժ զուարճացեալք փութային ելա-

---

[342] x) Այլ օր.՝ առաջի Հօր իմոյ որ յերկինս է: xx) Այլ օր.՝ և թէ որ կամի զանձն իւր կեցուցանել... և որ կորուսցէ:

[343] x) Ծ (269բ)՝ առ անբուժելի:

նել ի մարմնոյ աստի և մտանել առ Աստուած, և ցնծային Հրճուէին կայտռելով, [344] բերկրեալ և ուրախացեալ սրտիւ, անտրտում խնդութեամբ դիմեցին ի տեղի սպանմանն, իբրև[x] ի Հարսանիս ինչ[xx] երիտասարդական ամուսնութեանն, ուրախ լինել որպէս փեսայ առ Հարսին. և մերկացեալք ի մէջ ամբոխին որ փութացան տեսանել զնահատակութիւն սրբոցն՝ ի բաց ընկեցին զՀանդերձս ծածկոյթս ապականագործ Հնութեան մեղացն, և փոխանակ զգեստու Հարսանեաց զգեստ մկրտութեանն ծանուցեալ ցուցին, զոր ջրով և Հոգւովն Սրբով զգեցեալ էին, և փոխանակ ծաղկեալ պատմուճանի գունագոյն երանգ երանգ անկուածոցն՝ զսուրբ և զվարդագոյն կարմրատեսիլ արիւնն իւրեանց ի վերայ սուրբ մարմնոյն, և փոխանակ ոսկեՀուռ թագակապ զարդու պսակացն՝ զերկրպագութիւնն Քրիստոսի. և զնշան փրկական[xxx] խաչին ի վերայ գլխոցն դրոշմէին, և փոխանակ մանեկաց՝ զսուրն փայլեալ ի պարանոցսն ընդունէին:

Եւ եղև իբրև Հասին ի տեղի կատարմանն ասպարիսի նաՀ[345]ատակութեանն՝ ծունր եդեալ կային յաղօթս, զի անսայթաք և աներկբայ Հաստատուն Հաւատով ընկալցին զվճիռ մարտիրոսական, Համբերութեամբ բազմաւ և գոՀացողական օրՀնութեամբ. և դաՀճացն Հանեալ զսուսերն[x] դիմեցին ի վերայ նոցա իբրև զգազանս արիւնարբուս, և ծեծէին սրովն, իբրև ոք զի Հատանիցէ փայտ[xx] ի մայրս անտառախիտս Հարեալ կացնաւ, և յանխնայ անողորմ յօշէին անդամ անդամ:

Իսկ երանելիքն գոՀացեալ զանպատում պարգևաց Քրիստոսի, որ արժանի արար զնոսա մեռանել վասն անուան նորա և միաբան զաղաղակ բարձեալ ասէին, «Աստուած, յօգնել մեզ նայեաց, և Տէր, յընկերել մեզ փութա՛»[11], և որ ի կարգին, «զի վասն քո մեռանիմք զօրՀանապազ, Համարեցաք որպէս զոչխար ի սպանումն»[12]: Եւ սոցա այսպէս նաՀա-

---

[344] ×) Այլ օր.՝ որպէս: ××) Ա ($^{1}/_{5-7}$)՝ իբրև ի Հարսանիս ինչ: I (191), II (170), III (266) չիք՝ ինչ: ×××) Այլ օր.՝ փրկագործ:

[345] ×) Այլ օր.՝ զսուսերս իւրեանց: ××) Այլ օր.՝ զփայտս:

*տակեալ կատարեցան վկայութեամբ ի փառս Աստուծոյ[13], և զմարտիրոսական անուն ժառանգեցին ի Քրիստոս ի պատիւ ամենասուրբ Երրորդութեանն: Սոցա անուանք ճանաչին՝ Ատոմ [346] Անձևացի և Մլեահ Վարաժնունի և Գէորգ Բող-կացի և Վասակ, և այլք բազումք, որոց անուանք գրեալ են յերկինս[9]: Բայց երանելիս այս Գէորգ, մինչ կայր ընդդէմ սրոյն և դահիճն ծեծէր իբրև զանզգայ ինչ, և ոչ փոքր մի գիծ[×] կարացեալ հարկանել ի մարմին սրբոյն զխոցումն սրոյն՝ դարձաւ ի դահիճն կոյս պատճառաւ աղաչելութեան՝ տեսանել, թէ ընդէ՞ր ոչ հատանիցէ սուսերն, և առեալ ի ձե-ռանէ նորա զսուսերն շողացուցեալ՝ հայեցաւ յայսկոյս յայնկոյս և ասէ, «ո՛վ անարի վատ արանց և կանացի այր, թշուառական զինուոր, չուն անպիտան տեառն իւրոյ», և հարեալ զպարանոց դահճին՝ ի բաց առ զգլուխ նորա: Եւ զարմանք կալան զամենայն բազմութիւնն ի վերայ պնդութեան սրտին և զօրութեան ուժոյն և քաջութեան նա-հատակութեանն, զոր գործեաց երանելին Գէորգ. և բազ-մութեան քրիստոնէիցն, որ էին ի տեղւոջն յայնմիկ՝ գոհա-ցեալ միաբան ետուն փառս Աստուծոյ, որ զօրացոյց զը-սուրբսն և արար յամօթ[××] զսատ[347]անայ հանդերձ գոր-ծակըցովքն իւրեանց:*

*Յայնժամ հրամայեաց զօրավարն քարշել զմարմինս սրբոցն արտաքոյ քաղաքին, լինել կերակուր շանց և թռչնոց երկնից. և կացեալ զաւուրս բազումս անթաղ՝ և ոչ*

---

*[346] ×) Այլ օր.՝ մի ինչ գիծ:*
*××) Այլ օր.՝ յամօթ արար:*

*[347] ×) Ճ (270բ)՝ որք էին գլխաւորք ի նոցանէ թուով ութն: Եւ այլք ընդ նոսա նահատակակիցք աւելի քան զհարիւր եւ յիսուն այր որոց անուանք գրեալ են ի դպրութիւն կենաց: Զոր երանելի կաթողիկոսն Հայոց Յովհաննէս սահմանեաց տաւնել զաւր յիշա-տակի նոցա տարեւորական պատւով ի քսան եւ ի հինգն մեհեկի ամսոյ, ի փառս ամենակալին Աստուծոյ Հաւր եւ Որդւո եւ Հո-գոյն Սրբոյ, այժմ եւ...*
*××) Ա $(^2/_8)$՝ ոլոմպիառք: ×××) Ա $(^2/_{9\text{-}10})$՝ խմաելացս ××××) Ա $(^2/_{17})$ մառախղաձև:՝*

ինչ ամենեւին արատեցան մարմինք սրբոցն, և ոչ գոյր հոտ ժախու ի վերայ նոցա: Զորս առեալ քրիստոնէից զպատուական մարմինս նոցա՝ ծածկեցին փառաւորապէս թաղմամբ, ամ ըստ ամէ տօնիւք զօր կատարմանն յիշատակել, որք են արք թուով է: Եւ կատարեցան սուրբ վկայքն ՅԲ թուականին[x]:

(Բ)

## ՈՐ ԻՆՉ ԳՈՐԾԵՑԱՒ ՑԵՐԿՐՈՐԴ ԱՄԻՆ ԳԱԼՍՏԵԱՆՆ ԲՈՒԽԱՅԻ, ՈՐՔ ԵՆ ՈԼՈՄԲԻԱԹՔ[xx] ՎԱՍՆ ՊԱՏԵՐԱԶՄԻՆ ԸՆԴ ՍԱՀԱԿԱՅ ԻՍՄԱՅԷԼԱՑՈՅ[xxx] ՈՐ ԻՍՄԱՅԷԼԻ ՈՐԴԻ ՃԱՆԱՉԷՐ, ԵՒ ՎԱՍՆ ՊԱՇԱՐՄԱՆ ՔԱՂԱՔԻՆ:

Եւ եղև իբրև ձմեռն փոքրացաւ և ժամանակ գարնանային եղանակին մերձեցաւ[1] և օդն մառախլաձև[xxxx] միգախառն յստակեցաւ և հարաւային ջերմագոյն օդն շնչեաց ի խորագոյն դաշտն քաղ[348]աքին Դվնայ, և ընդարմացեալ արմատքն և բոյսքն զգենուլ սկսան զզօրութիւն, և թռչունք և գազանք ծանեան զժամանակս գալստեանն իւրեանց, և աշխատասէր մշակքն պատրաստեցան ի գործ երկրասէր վաստակոցն, և որսորդքն զինքեանց գործիսն պատրաստէին, և վաճառականքն զհեռաւոր ճանապարհացն խոկային պատրաստութիւնն, և հովիւքն տաւաղելով զգառինսն քշէին ի դալարաբեր հովիտն, և ամենայն ոք ըստ ազգս ազգս փութայր ի հնարս ինքեանց վաստակոցն մի զմիով ելանել. իսկ զօրավարն զիւրն կերպամտեալ խորհուրդս ապականագործս աշխարհաւերս՝ խոկայր և մտախորհ լինէր և վասն այլոց աշխարհաց և աշխարհակալաց չառնուլ դուլ և դադար, ծփայր ի խորհուրդս իւր իբրև զծով, որ ոչ դադարէ զալիսն յուզելոյ. յիշեցուցանէր զոր ինչ գործեաց ընդ Աշոտ և ընդ աշխարհ նորա, յուշ առնէր և զքաջութիւն արիութեան նորա, և զի չզօրեաց կալ ընդդէմ նորա, ահ [349] արկանէր,

---

[349] x) Ա ($^1/_8$)՝ ոտնատորի լինել: xx) Այլ օր.՝ կրճատելով: xxx) Այլ օր.՝

սպառնայր չար ևս կոտանօք լլկել զնոսա, ոտնատրփ[x] լինելով փանգայր իբրև զձի խստերախ: Մերթ տապալէր իբրև զօձ, մերթ գոչէր իբրև զառիւծ, և իբրև զխոզ վայրենի կնչէր կոնչէր, փրփուր ի վեր բերելով, զատամունս կրճտելով[xx]. առ մերձաւորսն կեղծաւորէր զբարեկամութիւն, և առ հեռաւորսն բարձրացուցանէր զչարութեան սպառնալիս: Հրաման տայր փութով ամենեցուն պատրաստական գտանել ի դաշտն քաղաքին. ժողովէր և զորս յառաջագոյնն ունէին յինքեանս զազգս զօրօք իւրեանց, բայց այլ ամենայն իշխանք արևելեայք խոյս տուեալ յերեսաց նորա՝ ետուն տեղի. եւին կալան զամրական տեղիս, ի բերդս[xxx] և ի քաղաքս և ի լերինս, ընդ ինքեանս գումարեալ զզօրս և զբնակիչս աշխարհաց իւրեանց ամենայն պատրաստութեամբ: Իսկ Սմբատ և որ Ապլարաս սպարապետն Հայոց, իբրև գիտաց թէ ոչինչ օգուտ բերէ արտաքոյ հրամանացն նորա լինել՝ փութացաւ եկն առ նա. [350] և ընկալեալ ի նմանէ՝ բնակեաց ինքն և իւրքն հանդերձ իւրաքանչիւր կալուածովք առանց կասկածանաց. մանաւանդ յառաջագոյն պատրաստեալ պատսպարեաց թղթովք և պատարագօք առ թագաւորն և առ զօրավարն գնալ ըստ հրամանաց նոցա. և ոչ ինչ արտաքոյ կամաց նոցա խորհել կամ գործել ինչ: Եւ էր յղեալ յառաջագոյն զԱշոտ որդի իւր ընդ առաջ նորա, անդստին յելանելն նորա յերեսաց արքայի. և առաջնորդէր նորա սպարապետն ի գործս պատերազմացն և յելս և ի մուտս աշխարհացն. ծանուցանէր զզօրութիւն իւրաքանչիւր աշխարհաց և զամուրս նոցա և զզօրութիւն պատերազմաց նոցա ըստ ազգս ազգս: Եւ գումարեալ այնուհետև զանհուն բազմութիւն զօրացն բարձրագոյն քան զառաջինն՝ և ել խաղաց հասանել ի վերայ արևելից աշխարհին. և հրաման ետ հասանել ի վերայ քաղաքին Տփղիք՝ կոչեցեալ, որում յառաջագոյն Փայտակարան անուանէին[2]. և ի փայտից մայ-

---

ի յամուրսն ի բերդսն: xxxx) Ա (՚ ա) և որ Ապլարաս Ա (173) Որովլարաս Թերևս որ և Ապլ Արաս (ծն. 3):

[350] ²) Այլ որ՝ Տփղիս:

րեաց չինեալ էր քաղաքն նոցա, պարիսպք և պատու-[351]արք և ապարանք նոցա և ամենայն տուն բնակաց քաղաքին և ամենայն կազմած պատրաստութեան նոցա:

Աւելորդ համարիմ մի ըստ միոջէ զանօրէնութիւն քաղաքին ընդ գրով բացայայտել, զառաւելեալն Սոդովմայ և Երիքովի, լցեալ չարագործութեամբք: Բայց հասեալ Բուխայ անց ընդ գետն մեծ զոր Կուրն կոչեն, և յորձանուտ շարժման գարնանային հոսանացն տեղի տուեալ ելանել զօրուն և բնակել շուրջ զքաղաքաւն. և ոչ միոյ[x] ումեք կորնչել, բայց ի միոջէ ումեմնէ, որում անուն Աշխէթ ճանաչէր, այր պերճ և անուանի ի զօրուն քաջամարտիկ, ունելով ընդ ինքեան գունդ հարուստ իբրև ԾՌ վարելոց[xx] զօրավարաց. և ինքն Աշխէթ զինեալ զինքն ի զէն և յասպազէն, զոր կարծեալ ոմանց երկաթեղէն պատկեր գոգցես զերիվարն և զհեծեալն, աչացն միայն ոչ գոլով ծածկոյթ. և իբրև մօտ եղև յափն գետոյն՝ քարշեալ ոմն զլայնալիճն, նստելով ընդ դարիւն, և հարեալ նետիւ ընդ բացատն, և երեսանակ[352]ալ[xx] ձեռնն թուլացեալ[x]. կրկնեալ այլ ոմն ճօճ նիզակաւն ընդ նոյն ակն՝ գետավէժ արարին զԱշխէթն. մինչ զդի նորա գտելոցն յետ աւուրց ինչ ետ Բուխայ ԺՌ արծաթ, զի այնչափ պատուական էր այրն նմա:

Եւ նոյն ժամայն շուրջ փակեալ զքաղաքաւն հրձգութեամբ, և դիզեալ բորբոքէր հուրն ի դիւրածախ փայտէն մայրից և գիոց: Իսկ քաղաքապետն Սահակ[3] ելեալ ընդ դուռնն, որ ելանէ ի բերդն Շամշղտայ, սամոյր զինքեամբ արկեալ և գաւազան ի ձեռն առեալ, յիմարեալ մտօք կորոյս զփախուստն իւր, որ կարող էր գնալ յով և կամիցի. յղեաց առ զօրավարն Ժիրաք, ասէ, «փութա՛ ի հանդիպումն իմ». և նորա ոչ հաւատայր երթելոց[xx] կոչնականացն, մինչև կրկ-

---

[351] x) Ա $({}^{1}/_{24})$՝ և ոչ միով:
xx) Ա $({}^{2}/_{7\text{-}8})$՝ իբրև ծովառելոյ զաւրաւորաց. ուղղ.՝ իբրև ԾՌ վարելոց զաւրաւորաց (Նախն., 394): xxx) Ա $({}^{2}/_{18}$-[352]${}^{1}/_{1})$՝ երեսանկակալ:
[352] x) Այլ օր.՝ ձեռն թուլացուցեալ: xx) Ա $({}^{2}/_{11})$՝ երթելոցն:

նեաց և երեքկնեաց. և գնացեալ ժիրաքն առնու զնա ածէ կացուցանէ առաջի Բուխայի: Եւ քան ընդ ապստամբելն ի նմանէ՝ ընդ յոյժ անմտութեամբ գալն առ նա զարմացաւ: Եւ լուեալ կնոջն Սահակայ, թէ ըմբռնեցաւ, և քանզի [353] էր կին գեղեցիկ՝ փութացաւ գնաց եկաց առաջի Բուխայի, թերևս կարասցէ ըստ պատշաճ գեղոյն և ըստ բազմաձեռն գանձուց ապրեցուցանել զայրն իւր, որ առաւել մահու քան թէ կենաց պատճառ եղև նմա: Եւ հրամայեաց Բուխայ դահճացն՝ բառնալ զգլուխ նորա. իսկ կինն ճիչ բարձեալ ասէ, «առ թագաւորն հասցէ գոյժ իմ», շրջելով ընդ բանակն հոլանի, զոր չէր օրէն տաճկական ազգի կանանց, բայց ոչ-ինչ օգնեաց. այլ հատեալ զգլուխն եա տանել յարքունիս և զկինն ա՛ռ իւր Բուխայ կնութեան: Կինն դարձեալ ճիչ բարձեալ ասէ, «վասն իմ սպաներ զտէրն իմ. ես ոչ վայել եմ քեզ կին, այլ մեծի թագաւորին»․ իսկ զկինն կալաւ ընդ իւր Բուխայ: Ապա յղէ առ թագաւորն լինել նմա կին. և կինն անցեալ պատմեաց թագաւորին որ ինչ եղեն, զբողոք բառնալն իւր և զկացուցանելն վկայս, թէ ոչ վայել եմ քեզ կին, այլ արքայի, և որ ինչ եղեն, որ եղև իսկ պատճառ կորստեան Բուխայի, զոր ցուցանեմ յիւրում կարգի ի բանս համառօտս:

(Ժ)

## [354] ՎԱՍՆ ՈՐ ԻՆՉ Ի ԾԱՆԱՐՍՆ[1] ԳՈՐԾԵՑԱՒ:

Բայց քանզի ամենայնիւ ամենայն˟ ուրեք ոչ ոք զօրեաց կալ ընդդէմ նորա յամենայն գործս զոր և կամք իւր ախորժէին՝ սկսաւ ձեռնամուխ լինել կարգաւ ընդ բոլոր աշխարհս արևելեայս, և աներկիւղ համարձակութեամբ լի ամբարտաւանութեամբ առնէր ասպատակ ընդ ամենայն կողմանս տէրութեան նոցա: Եւ ահա դիմեալ գնաց հասանել ի վերայ կողմանց հիւսիսոյ, յերկիրն յորում Ծանակ կոչի. սոքա

[354] ˟) Այլ օր.՝ ամենայնիւ:

բնակին յամուրս լեռնականս, յանհոգս խաղաղացեալք յարտաքին թշնամեաց, և հարկք և հասք արքունի ի յինքեանս մնալով, միայն զմի ոմն կացուցաննեն տիրել ի վերայ իւրեանց ըստ կամս անձանց իւրեանց, և միաբան և միախորհ կան և կեան առ միմեանս, և բնակեն ըստ ազգս ազգս, բացագոյն ի միմեանց: Եւ մօտ առ սոցա կայ լեառն Կաւկասու, յորում բնակեն ազգք յամենայն լեզուաց բաժանեալք, ըստ ազգս ՀԲ ազգացն, և կեան առանց [355] առաջնորդի, և օրէնս անձանց ունին ամենայն ոք որ զինչ կամի, և ընդ մայրս և ընդ քորս ամուսնանալ:

Առ սոսա գնացեալ Գրիգորէս երեց որդին Վրթանայ՝ քարոզեաց նոցա զբանն կենաց. յորս բազումք անկեալ ի նա հաւատացին ի Քրիստոս, որպէս Ծանարքն և Ափհազքն[×]. և կիսոցն անուղղելի եղեալ՝ գնացին ի նոյն կործանման մինչև ցայսօր ժամանակի, զոր ոչ է ժամ մեզ պատմել, յորոց և զկատարումն մարտիրոսական ի նոցունց բարբարոսաց ընկալաւ սուրբն Գրիգորիս ի Վատնիանեայն դաշտին[××]:

Իսկ իբրև եհաս Բուխայ զօրօք բազմօք մերձ ի սահմանս նոցա, և գրեաց հրովարտակս դիմօք խաղաղութեան՝ դառնալ սիրով միաբանութեան ի հնազանդութիւն արքային և ընդունել պատիւս և ի ձեռն նորա ընդունել զանուն իշխանութեան ճոխութեան: Բայց նոքա քանզի ապաստան լեալ յանկասկածելի յամուրս և ի բազմութիւն զօրացն և ի քաջութիւն արանց պատեր[356]ազմողաց՝ և ոչ առ փոքր մի խոնարհեցան ի բանս նորա կամ ետուն տեղի պատասխանւոյ. այլ դարձուցին անդրէն զպատգամաւորսն անարգանօք, արբուցեալ նոցա գան սաստիկ. և ինքեանք իջեալ ի լերանցն՝ կալան զստորոտ լերինն, պատրաստեալ ի պատերազմ: Եւ արգելին փակեցին զպահակս ամրականացն և զկիրճս ձորոց, որ հանէին յերկիր նոցա մտանել յամուրսն:

Յայնժամ հրաման ետ զօրավարն Բուխայ զօրաց իւրոց՝

---

[355] ×) I (197), II (175), III (274)՝ աւրհազքն. ուղղ. ըստ բնագրի՝ Ա (1/[illegible])՝ ափազքն: ××) Այլ օր.՝ ի Վատնեայն:

եյանել ընդ առաջ նոցա ի պատերազմ. ի մօտ առ նոսա Հասեալ՝ կարգեցին կազմեցին զճակատն և եռուն պատերազմ ընդ զօրացն Ծանարաց. և փակեցին ի ներքս զոտն լերինն իբրև գծով շուրջանակի, ի վեր ձգելով զկուտակումն ալեացն ի բռնութենէ հողմոցն վարելոյ. և ահա հնչէր առ Հասարակ երկիրն ամենայն իբրև գծով ալեաց կուտակելոյ, և սաստկացաւ պատերազմն, յառլուսանալ աւուրն մինչև ի սպառել անցից տունջեանն, իշխեց[357]ողին երկոտասան ժամու աւուրն. և Հարան զօրքն արքունի և դարձան ի բանակն իւրեանց, և լեռնայինքն գային յիւրեանց բանակն: Եւ յետ աւուր միոյ ընդ մէջ լինելոյ՝ դարձեալ խմբեցաւ պատերազմն, և Հարան զօրքն արքունի. դարձեալ յետ փոքր ինչ աւուրց անցանելոյ՝ և խռնեցաւ միւսանգամ պատերազմն, և ևս սաստիկ Հարան զօրքն արքունի. և կային ի մեծ տարակուսի. դառնալ անդրէն ոչ կամէին, զի կարի սաստիկ ամօթս համարէր զգործեցեալսն, կալ տևել ժուժկալել ընդդէմ նոցա ոչ կարէին, զի բազում անկան ի զօրաց իւրեանց: Ապա մտախորհ եղեն դարձեալ վառել ի պատերազմ. և կանգնեցին պատնէշս և շինեցին ապարանս և արարին տուն բնակութեան, և նստան անդէն զաւուրս Թ և պատերազմեցան ընդ նոսա աւելի քան զԺԹ անգամ. և Հարան սատակեցան պակասեցան զօրքն արքունի ի զօրացն Ծանարաց, և դարձան կորակնեալք ամօթա[358]լից խայտառակեալք, լի ծանականօք և մեծ բեկմամբ:

Եւ եղև մօտ ի կատարումն Հասանել ամին երկրորդի[x] գալստեան նորա՝ ել գնաց ի կողմանս Աղուանից. և տիրէր յայնժամ մեծի կողմանն[xx] Աղուանից Ապումուսէ[xxx2] ոմն, որում վերծանութեանն[xxxx] յայտնութիւն՝ երիցու որդի ճանաչէր: Իսկ իբրև լուաւ, թէ ահա առեալ Բուխայ զզօրս իւր գալ Հասանել ի վերայ նորա՝ Հրաման[xxxxx] ետ բոլոր աշխարհին իւրոյ ելանել ունել զլեռնակողմն, ուշ եդեալ ուժե-

---

[358] ×) Այլ օր.՝ երրորդի: ××) Այլ օր.՝ յայնժամ ի կողմանն: ×××) Այլ օր.՝ Ապամուսէ: ××××) Ա ($^{1}/_{11-12}$)՝ ոմն որում ծանութեան: Այլ օր.՝ ծանոտութեան: ×××××) Ա ($^{1}/_{4-3v}$)՝ նորա Հրամ ետ:

ղութեամբ և քաջութեամբ սրտիւ ընդդիմանալ, մանաւանդ ի Տանարացն գնա տեսեալ ի պարտութիւն մատնեալ և յաղթահարեալ: «Ոչ, ասէ, վատագոյն մեք քան զՏանարսն եղիցուք, զի և ամուրս հզօրագոյնս և բարձրագոյնս քան զնոսա ունիմք և դիւրափակս՝ առ ի յունել զմուտս կրճիցն. միայն միաբանութեամբ սրտիւ կացցուք ապաւինեալ յօգնականութիւնն Աստուծոյ. և թէ մեռանիլ եւս ումեք հասցէ՝ ի պարծանս անձին և ազգին իւրոյ համար[359]եալ է, և պսակ մարտիրոսական ընկալցի ի Քրիստոսէ. զի ոչ եթէ ըստ հասարակաց սահմանաւոր մահու է, այլ ի վերայ սուրբ եկեղեցւոյ և ժողովրդեան Աստուծոյ»: Զայսոսիկ և առաւել քան զսոյնս ասելով՝ դնէր առաջի զօրաց իւրոց սատուածասէր իշխանն Աղուանից:

Իսկ Բուխայի առեալ զբազմութիւն զօրացն իւրոց՝ իջանէ ի դաշտն Գարգարացւոց[×3], և երթեալ մտանէ ի քաղաքն մեծ Պարտաւ: Եւ սկսաւ գոռալ, և խորհէր զթոյնս չարութեանն թափել ի վերայ իշխանին Աղուանից, և յղէր առ նա կոչելով ի հնազանդութիւն. այլ նա ոչ տայր տեղի բանից նորա, քանզի քաջագոյնս գիտէր զբարս նորա խաբեբայս: Եւ ժողովեալ զբնակիչս աշխարհին համօրէն զարս և զկանայս և զայլս ի յերկրէն Աղուանից բազմութիւն ռամիկ շինականաց, և լէգէոնս զօրականաց զսակաւս ի լեառնն ամուր անուանեալն Քթիշ, ըստ այնմ և համբարս ռոճկաց: Եւ Բուխայի իմացեալ ո՛րպիսի պատրաստութեամբ կազմ[360]ի իշխանն Աղուանից՝ տարակուսէր ի միտս իւր. զի և զբազումս պատերազմեալ պէսպէս մարտիւք, և ոչ ինչ կարացեալ առնանել անմարտնչելի ամրոցացն և քաջութեան արանցն որ ի նմա՝ ողոքական բանիւք կոչէր ի հաւանութիւն[×]:

Եւ նա դարձուցանէ այսպիսի իմն պատասխանի, եթէ «Օրէն է աշխարհակալաց արքունի խնամակալութեամբ գնալ ընդ աշխարհ իբրև առ հնազանդս, և զնեղութիւնս

---

[359] ×) Ա (^1/_6)՝ գագարացւոց:
[360] ×) Այլ օր.՝ ի հնազանդութեան:

տառապելոց բառնալ և ի դիւր հանել իբրև զխնամարկուս, և ոչ աւազակաբար աւերել, և սրով և գերութեամբ յաւեր դարձուցանել. և դու թէ ոստիկան խաղաղութեան էիր ե֊կեալ յարքունուստ՝ զշինութիւն պարգևաբաշխէիր սոցա, և ոչ զաւերս և զխռովութիւն: Եւ արդ յայտնի լիցի, զի որչափ բաւէ զօրութիւն իմ և իցեմ կենդանի՝ կացից ընդդէմ զօրու֊թեամբ և ուժով տեառն Աստուծոյ, և ոչ տեսից զքեզ սիրով խաղաղութեան. այլ տեսից զքեզ զինու և աղեղամբ և սրով, քաջ արամբք և ընտիր երիվարօք. [361] և քեզ եթէ հաճոյ թուիցի ապրեցուցանել զքեզ և զզօրս քո՝ արի ել աստի և գնա ի սահմանաց իմոց: Ապա թէ փութաս ելանել ի կենաց աստի առ զայրուցս կատաղութեան քո և զոսկերս քո[×] ցրուես յանապատս և լինել կերակուր գազանաց երկրի և թռչնոց երկնից՝ կամք քո լիցին, և ես քաւեալ եմ յարենէ քումմէ, մանաւանդ զի բարեպաշտութիւն[××] մեծ համարիմ սատակել զթշնամիսդ Աստուծոյ, որպէս Մովսէս զԱմաղէկ[4], և Յեսու զՔանանացիսն[5], և Սամուէլ զԱգագ[6], և Դաւիթ զԳողիաթ[7], և համանգամայն իսկ որպէս սատակեցին Իսրա֊յէլացիքն[×××] զայլազգիսն, և հաճեցաւ ընդ նոսա Աստուած. նոյնպէս արարից ընդ քեզ և ընդ զօրս քո: Արդ վճարեալ է յիմմէ կողմանէ շատխօսութիւն ընդ քեզ. ի ձեռս քո է խաղաղութիւն և խռովութիւն: Եթէ, որպէս ասացի, ի բաց գնաս յինէն՝ խաղաղութիւն է, և թէ ոչ՝ պատերազմ և կռիւ և ճակատամարտ. և դու նպատակ՝ և աղեղն իմ խոցոտիչ, դու ախոյեան՝ և մանկունք իմ յաղթանակ, դու [362] ոսոխ՝ և զօրք իմ դատապարտիչք. քո պատերազմ՝ և մեր յաղթու֊թիւն, քո մարմին՝ և իմ նիզակ, քո պարանոց՝ և իմ սուսեր. քո ստացուածք՝ և մեք ժառանգորդք, քո աւար՝ և մեք աւա֊րառուք. դու աւազակ՝ և մեք կողոպտիչք, դու եղէգն՝ և մեք հուր դիւրածախ, դու յարդ՝ և մեք հողմք դիւրափուշ, դու ծաղիկ՝ և մեք խորշակ թառամեցուցիչք, դու անդ պտղալից՝

---

[361] ×) Ա ($^{1}/_{9-10}$)՝ I (200)՝ զոսկերս քո: II (178), III (278) չիք՝ քո: ××) Այլ օր.՝ բարեպաշտոն: ×××) Այլ օր.՝ Իսրաէլացիկն սատակեցին:

*և մեք կարկուտ ապականարար, դու շինուած առանց հիմանն՝ և ես հեղեղ հիմն ի վեր տապալիչ, դու գէշ՝ զօրքն իմ պատառիչ գազան, որ պատառեն զառագաստ սրտի քո. դու խաղալիկ՝ և մեք մանկունք, ի ձեռն առեալ զզօրութիւն քո՝ խաղալով խաղամք ընդ քեզ և ամենայն հպարտութիւն ամբարհաւաճութեան քո. դու երէ վայրի՝ և մեք որսորդք, դու թռչուն՝ և մեք ի բարձանց ի վայր իջուցանեմք և վարմ ձգեալ. դու վիշապ ծովական՝ և մեք կարթ, ի քիմս քո ի վեր ձգելով զքեզ ի խորոց անդնդոց. և դու [363] իբրև զեղջերու առանց եղջեր՝ և մեք արծուիք ի վերայ քո, կուրացուցիչք աչաց քոց, և գէշ զքեզ արկանել ձագաց[×] իմոց և աղուեսոց ի ծակս բնակեցելոյ: Եւ ահա դարձեալ ասեմ, չկայ[××] ինչ քո. և զի մի կրիցես զոր ինչ խօսեցայ ընդ պատգամաւորս քո, և աւելի քան որոգել ջանար ընդ մեզ՝ զդոյն ընդունիցիս վտանգաւորս»:*

*Յայնժամ իբրև լուաւ բռնաւորն զայս դարձուած պատասխանաց լի հզօրութեամբ և ահագին մեծաւ անարգութեամբ՝ յոյժ տարակուսանօք լցաւ յանձն իւր, և կայր մեծաւ հիացմամբ ըմբռնեալ. և ամենայն խորհուրդք իւր ապականեալ ցրուեցան. եթէ զի՞նչ գործիցէ ոչ գիտէր. ապա մտախորհ եղեն բազում քննութեամբ, և յանբաւ և յառաւել իմացմանց ընտրեցին՝ գրել և ծանուցանել թագաւորին վասն առնն այնորիկ. և առաքեցին դեսպանս առ արքայ և ինքեանք նստան շուրջ զլերամբն, մինչև փութով եկեսցէ նոցա հրամ[364]ան ինչ յարքունուստ:*

*Իսկ Ապումուսէ[×] վառեալ և զինեալ զինքն ամենայն զօրութեամբ իւրով՝ խաղաց էջ ի վերայ նոցա և եհար ի հարուածս մեծամեծս, և առ[××] աւար բազում և դարձաւ ի տեղի իւր ի բանակն իւրեանց: Ապա այնուհետև ոչ կարաց կալ համարձակութեամբ ի բացեայ առնել զբանակն իւր, այլ ետ*

---

[363] ×) *Այլ օր.՝ ձագուց:* ××) *Այլ օր.՝ չգոց:*

[364] ×) *Ա (1/2)՝ իսկ Մուսէ:* ××) *Այլ օր.՝ էառ:* ×××) *Այլ օր.՝ ի հիւսիսոյ:* ××××) *Այլ օր.՝ կողմանէ:* ×××××) *Այլ օր.՝ մեծամեծ:* ××××××) *Այլ օր.՝ զռազմ:*

զկէս զօրուն յոմն գլխաւոր և նստոյց զնա ի կողմանէ հիւսիսի[xxx] կողմն. և ինքն բազմութեամբ զօրաց նստաւ յարևելից կուսէ[xxxx], և շինեցին ապարանս ամուրս և պարսպեցին մեծաւ[xxxxx] զգուշութեամբ. և կանգնեցին պատնէշ և կուտեցին քարինս և կանգնեցին մեքենայս և կացին ի պատրաստութեան: Եւ յետ փոքր ինչ աւուրց հրաման ետ Բուհայ ելանել ի պատերազմ. և կարգեցին ճակատս, և բոլորեցին ռազմ[xxxxxx], և գունդս գունդս յընտրելոց զօրացն ըստ ազգս ազգս, շուրջանակի ի ներքս փակեցին զլեառնն և դրօշս և նշանս բարձրագոյնս լայնատարածս կանգնեցին. կարգեցին ըստ գունդս գունդս առ Ն այր նշանակ մի. և զի [365] մի մի թուիցէ յանուանէ զյաճախութիւն զինուցն և զսպառազէն կազմութեանցն զձիոցն և զհեծելոց նոցա. գիտակ են այդմ արք քաջք. և որ միշտ ի պատերազմունս զդեգերումն առնեն՝ գումար արարեալ են, ամենայն զինուոր ի գանձարանս ի տունս գանձուց թագաւորին, զոր բարձեալ ուղտիւք կրէին ընդ ինքեանս: Ելին ի պատերազմ և պատերազմեցան, ըստ որում սաստկացաւ պատերազմն: Եւ խուռն յարձակմամբ դիմեցին ի վերայ իւրեանց[x]. և հարան զօրքն արքունի ի հարուածս մեծամեծս և դարձան փախստական ի բանակն իւրեանց և մտին յապարանսն զոր շինեալ էին. և լեռնային զօրքն Ապումուսէի զհետ մտեալ փախստէիցն՝ իջուցին ի լեռնէ անտի և դարձան առնել դիակապուտ, և չոգան ի բանակետղ իւրեանց մեծաւ յաղթութեամբ, ուրախացեալ անտրտում խնդութեամբ, և նստան պահել զպահպանութիւն իւրեանց և աշխարհակոյտ ամբոխին բնակաց իւրոյ տէրութեանն:

Եւ զկնի այսորիկ, որ է երկրորդ [366] հարուածք այլազգեացն՝ դարձեալ հրաման ետ ելանել ի պատերազմ, և հետամուտ հասեալ առ նոսա. և ահա իբրև արք հազարք ի յընտրելոցն Աղուանից պատահեալ նոցա հարին զնոսա և

---

[365] x) Ա (1/1-2Ն)՝ ի վերայ իւրեանց. ուղղ.՝ ի վերայ իրերաց (Նախն. 217):

[366] x) Ա (2/Ս)՝ իղձկեր: xx) Այլ օր.՝ լինելով:

ածին փախստեայ ի բանակն և ինքեանք դարձան ողջանդամ, և ոչ մի ոք վիրաւորեցաւ. և հասեալ առ զօրավարն իւրեանց մեծաւ յաղթութեամբ և բազում աւարաւ:

Իսկ զօրավարն Բուհայ կայր ի կոր կործանմանն, ի տարակուսանս ըմբռնեալ փղձկէր[×] ի միտս իւր, ցնորակոծ լինէր[××], հնարէր ելս իրացն գտանել ի վրանայարկն փակեալ, և ոչ առնոյր դուլ և դադար: Եւ հատաւ քուն յաչաց նորա, և ոչ ոք մտանէր և ելանէր առ նա զաւուրս Ժ, զի եմուտ ի սենեակ ամօթալի երեսօք. այլ և երկիւղ ոչ սակաւ ունէր զնա, զի բազում գունդք սուսերամերկաց շուրջանակի պահէին զնա: Իսկ զկնի աւուրցն տասանց ի գլուխ ելանելոյ՝ խնդրեաց սպարապետն մտանել առ նա, և կալեալ [367] զձեռանէ նորա՝ սկսաւ խօսել ընդ նմա և ասէ, «ընդէ՞ր լքանես զձեռն քո և ընդ արութիւն դոցա խառնես վատութիւն և առնես զօրացեալ ի վերայ քո ամենայն աշխարհաց, և զանուն քաջութեան քո քեզէն կորուսանես, որով ամենայն աշխարհ զարհուրեալ դողաց և ոչ ոք եկաց ընդդէմ քո, և զբազուկս[×] և զձեռս քո հզօր տկարացուցանես. միթէ դո՞ւ միայն առաջին յաղթեցար և հարար ի թշնամեաց, կամ քո՞ միայն զօրքդ անկան, կամ քո՞ և եթ աւար բաժանեցաւ: Ո՞չ ածեր զմտաւ, թէ յսկզբանցն մինչ ցայսօր ժամանակի ամենայն ուրեք ուր և գումարէր զօրն և լինէր պատերազմ և սուր և ճակատամարտ՝ երբեմն յաղթեն և երբեմն ի պարտութիւն մատնին. ո՞վ ոք յաշխարհակալաց ոչ մատնեցաւ ի սուր. և են իշխանք ազգաց, է ուրեք որ զօրանան, և է ուրեք որ տկարանան»: Եւ յերկարեալ սպարապետին խօսել ընդ զօրավարին՝ ի բաց մերկեաց զպատրուակ սրտմտութեան[×] ի սրտէ [368] նորա: Եւ ելեալ արտաքս ի սենեկէն՝ և նստան ուրախ լինել:

Եւ նոյնժամայն եհաս հրաման յարքունուստ՝ մի տաղտկալ և վհատել[×] և մի ի բաց կալ պատերազմել ընդ նմա,

---

[367] ×) Այլ օր.՝ զբազուկս քո: ×) Ա (բ/ւն)՝ սըրտմտութեան. ուղղ՝ տրտմութեան (Նախն. 239):

[368] ×) Այլ օր.՝ և մի վհատել:

մինչև եկեսցէ ակամայ կամօք ի հնազանդութիւն արքայի:
Յայնժամ հրաման ետուն ամենայն զօրացն ելանել ի պատերազմ. և ահա աղաղակ և փողք և քնարք և ջնարք, և վառեալ զինու և սրոյ և ամենայն պատրաստութեամբ անհուն զօրացն, մինչ դրեթէ ի հիմանց զլեառնն տապալել, և եհան զզօրսն մինչ մերձ ի գլուխ լերինն, և ընդ նոսա նշանս բազումս, իբրև Ռ արանց ընտրելոց քաջ երիվարօք. և գրեթէ ոչ ամենևին ուրեք երևեցաւ այնպիսի ահաւոր տեսիլ զօրու և սպառազէն կազմութեան՝ ամենայն թագաւորաց, որ կացեալ էին ընդ ծագս տիեզերաց. զորոյ սաստիկ և ահագին որոտումնն և ճայթումնն և փայլիւն զինուցն, և որ ինչ յայնժամ զարդարեալ և զինեալ պատրաստեցան զօրքն [369] Տաճկաց: Եւ ելանէին գունդք գունդք չտապով և ճեպով մի զմիոյ կնի, և ամենայն ոք որ տեսանէր՝ ընդ մեծաւ երկիւղիւ ներքադրեալ լինէր: Եւ նստէր անդ ի բացեայ ի վերայ բլրի միոջ տէր Մուշեղ որդի սպարապետին և կայր հիացեալ ահեղ և մեծ զարմացմամբ: Եւ ամբարձ զմիտս իւր ի հանդերձեալ գալուստն Քրիստոսի, և որ յայնժամ լինին ահեղ որոտմունք և թնդիւնք և հրձգութիւնք և արհաւիրք մեծամեծք յերկրէ, և թէ զիա՛րդ գունդք գունդք հրեշտակաց մի զմիոյ կնի ելևելս առնեն, և զիա՛րդ փայլեալ նշանն տէրունական ահաւոր ճառագայթիւք, և որ ինչ այդմ հետևին ի հանդերձեալ գալստեանն Քրիստոսի ի վերջնումն աւուրն. Յայնժամ մերկացեալ և ի բաց եդեալ զաշխարհական պատրանաց զբաղումն՝ և ձանց գնաց ի վեր քան զերևելիսս, և զի էր վարժեալ ուսմամբ Աստուածաշունչ գրոց և ընդել և ծանօթ էր ճարտասանական հրահանգիցն՝ եդ առ յայն ժամու իմացական [370] տեսութիւնն զերգս՝ որոյ սկիզբն է՝ «Անզբաղել ական սրտի նայեցող անձն իմ ի միւսանգամ գալուստն», Ե տուն ի յութերորդ վանգէ:
Եւ եղև իբրև գումարեցան ի մի վայր ամենայն բազմութիւն զօրացն աւելի զՄՌ-աց և կազմեցին ռազմ և կարգե-

---

[370] ×) Այլ օր.՝ ի ներքոյ:

ցին ճակատ, և ետուն ձայն այր առն ախոյեան ելանել. և ա-
հա Ապումուսէ, որ ճանաչէր երիցու որդի՝ Հանդէպ նոցա ել
ի պատերազմ և Հանդիսացաւ ընդդէմ նոցա. և եղև իբրև
գբլուր մի մեծ երկաթի, կամ զվէմ անդամանդեայ. և խուռն
բոլորեալ գունդն կային մածեալ իբրև զմի այր: Եւ զօրքն
Տաճկաց պնդեցան և փակեցին շուրջանակի ի ներքս[x]
զգունդն Աղուանից և դիմեցին յանդուգն ի վերայ նոցա. և
նոքա կային անշարժ, և ոչ ել այր քան զընկեր յառաջ. և
մինչ նոքա կարծեցին, թէ ի ձեռն նոցա մատնեցան՝ և նոքա
կային յաղօթս և զԱստուած կարդային օգնել նոցա. և
դիմեցին ի մէջ նոցա ի չորս առաջս, ըստ նմանութեան [371]
տեառնանման խաչին, և բախեցին զճակատն և պատառեցին
զռազմն և դարձուցին ընդ զառ ի վայրն և իջուցին ի լեռնէ
անտի, և Հարին ի Հարուածս մեծամեծս. որպէս յարդ ի Հող-
մոյ վարեալ, կամ ծուխ վատնեալ ի մրրկէ՝ այնպէս կորեան
գնացին յերեսաց զօրացն Աղուանից: Եւ դարձան կուտեցին
աւար, որոց ոչ գոյր թիւ: Բայց զի՞ մի մի զիւրաքանչիւր
Հանդէս պատերազմաց նոցա գրեցից յականէ անուանէ.
ասացից կարճառօտ և Համառօտեցից զբանս. յերկարեցաւ
գործ պատերազմաց սոցա իբրև մօտ ի լինել ամի միոյ. և ոչ
ի միում ճակատու դարձոյց Ապումուսէ զերեսս իւր յերեսաց
Բուհայի. և որպէս պատմի՝ եղև թիւ պատերազմաց նոցա ԻԸ
անգամ, և Հարան զօրքն արքունի յայսքան Հանդէսս և ի
կռիւ:

Յայնժամ իբրև գիտացին երկոքին կողմանքն, եթէ ոչ գոյ
Հնար գտանել զելս իրացն և տալ խաղաղութիւն՝ ապա Հա-
ճեցան և Հաւանեցան գրել առ թագաւորն. զի ասաց զօրա-
վարն Աղուանից, եթէ «մի՛ կարծ[372]իցէ ոք զիս ապստամբ
գոլ ի թագաւորէն և վասն այնր Հարկանել զզօրսդ Ասորես-
տանի». այլ կուտեաց եդ ի վերայ Բուհայի զապստամ-
բութեան վնասն և զՀարուածս զօրաց, զոր գրեաց իսկ և
ծանոյց արքայի. «իսկ եթէ եկեսցէ առ իս գիր յարքունուստ,

---

[372] ×) Այլ օր.՝ առաքեսցեն:

կնքեալ մատանեաւ արքայի, և իցէ գրեալ ի նմա հրաման՝ գալ ինձ առ քեզ կամ երթալ յարքունիսն՝ ոչ ելից արտաքոյ հրամանացն նորա: Բայց եթէ այդ այդպէս ոչ եղիցի, որպէս ասացի՝ աւելի ևս տեսցես քան զոր տեսեր, սուր և պատերազմ»:

Ապա երկոքին նոքա դեսպանս արձակեցին^× առ Թագաւորն ի Հաւատարիմ արանց ըստ Եսայեայ զոր ասէ, «Հրեշտակս արձակիցեն որ լայցեն դառնապէս»[8], և գրեցին և ծանուցին արքայի՝ զոր ինչ գործեցին և ո՛րպէս հարան զօրքն արքունի: Նստան երկոքին կողմանքն պահել զպահպանութիւն իւրեանց մեծաւ զգուշութեամբ, և առուն ժամ անսալ միմեանց՝ ոչ ելանել ի պատերազմ, մինչև [373] եկեսցեն հրեշտակքն յարքայէ, զոր առաքեցինն: Բայց տուաւ յաղթութիւնն այն մեծ ի ձեռն զօրավարին Ապումուսէի, զի լցցի զոր ասաց Տէր ի բերանոյ Ամովսայ մարգարէի՝ «խորտակեցից զնիգակս^× Դամասկոսի»[9], որում այժմ Դմիշկն կոչեն, ուր ելին զհետ Բուհայի:

Եւ մինչ նոքա կային մնային հրաման ինչ ընդունել յարքունուստ՝ դարձան հրեշտակքն և եկին փութանակի, և բերին թուղթ յարքայէ առ Ապումուսէ՝ գալ ի հնազանդութիւն նոցա և երթալ առ Բուհայ. և էր գրեալ ի նմա թողութիւն վնասուցն և հարուածոցն զօրացն և բազում աւարացն, և երդումն ի հաստատութիւն ասացելոցն, և պարգևս ի պատուական և մեծագնի հանդերձից, և սաղաւարտ ծաղկեայ և սուսեր. միայն զի եկեսցէ ի բան արքունի և մի ելցէ արտաքոյ կամաց թագաւորին. և գրեալ էր առ Բուհայ, զի մի՛ ինչ չարիս խորհիցի կամ գործիցէ առնն այնմիկ, այլ տացէ տանել զնա առ Թագաւորն [374] մեծաւ պատուով և զգուշութեամբ:

Իսկ իբրև ընթերցաւ զօրավարն Աղուանից զթուղթ թագաւորին՝ փութացաւ էջ ի լեռնէ անտի և եկն եկաց առաջի

---

[373] ×) Նիզակս փխ. նիգս (Նախն. 243):
[374] ×) Այլ օր. յաւելու՝ ըստ քաջութեան:

Բուհայի. և մինչչև հասեալ առ զօրավարն՝ եհան ընդ առաջ նորա գունդս գունդս վառեալ զինու և ընտրեալ երիվարօք, և ետ տանել ընդ առաջ նորա նժոյգս մեծազարդս և երևելիս, և երգեցիկս և գովասացս և բազում գործիս երաժշտականս առաջի և զկնի՝ մինչև եմուտ ի բանակ նոցա: Եւ ոչինչ ամենևին զչարացաւ ընդ նմա Բուհայ և ոչ յիշեաց զգործսն զոր գործեաց, և ոչ տրտմեցոյց զերեսս իւր. այլ ընկալաւ զնա սիրով խաղաղութեան և մեծաչուք պատուով և պարգևօք ըստ հրամանի թագաւորին: Իսկ յետ անցանելոյ աւուրց ինչ՝ ետ տանել զնա առ թագաւորն, և ընդ նմա գունդս զինուորաց վառելոց և ընտիր այրուձիոց: Եւ երթայր աներկիւղ համարձակութեամբ, քաջալերեալ ի միտս և ի խորհուրդս իւր[×] ըստ պնդութեան ար[375]ութեան իւրոյ քաջ նահատակն Ապումուսէ:

(ԺԱ)

## ԹԷ ՈՐՊԷՍ ՕՐԻՆԱԿԱՒ[×] ՎԿԱՅԵԱՑ ՄՈՒԿԱԹԼ Ի ՎԱՆԱՆԴ ԳԱՒԱՌԷ:

Եւ եղև զի անցանէր ընդ այն Մուկաթլ ոմն ի Վանանդ[1] կոչեցեալ ազատութենէ, ըստ սովորութեան ծանօթացուցանել զիւրաքանչիւրոց առանձնաւորութիւն և զպատուոյն զերակայութիւն, կամ ի ծննդեան կամ ի տեղւոյ կամ ի գաւառէ կամ յազգէ կամ յարիութենէ կամ ի պատահմանէ սկիզբն առ: Սովորութիւն է գրոց, որպէս զիրն նոյնպէս և զտեղին վերաբերեալ, կամ ըստ ծանօթութեան, կամ ըստ պատուոյ: Զսա ըմբռնեալ զօրաց Տաճկաց ածին առ զօրավարն. և բազում վնասս ի գործս արքունի կուտեցին ի վերայ նորա և ստութեամբ առաւել քան թէ ճշմարտութեամբ պարտաւորեցին զնա: Եւ մինչ կարի և ահագին սաստիկս կուտեցաւ ի վերայ նորա ամբոխն, և ամբաստանքն[××] միաբարբառ զաղաղակ բարձեալ առաջի բռնաւորին զօձիս պա-

---

[375] ×) Այլ օր.՝ եղանակաւ: ××) Այլ օր.՝ ապաստանքն:

տառեալ ասէին, «մահապարտ է, չէ պարտ դմա կեալ, և ոչ առնուլ տեղի պատասխանւոյ», [376] և յայնչափ սաստիկ և անհուն ամբոխին սուտ վկայութեանն զբոլոր բարկութիւն բռնաւորին զարթուցին ի վերայ առնն, որպիսի ոչ ի միոյ ուրուք վերայ այնքան ժամանակս եհեղ զբարկութիւն իւր զօրավարն Բուհայ: Եւ հրամայեաց ածել զնա յատեանն, ուր կային միաբան ժողով զօրագլխացն: Եհարց սաստիւ կամ թէ հրամանաւ տէրութեան իւրոյ, «ի բաց լեր, ասէ, ի հաւատոցն Քրիստոսի, և իմ թողեալ քեզ զբազում վնասսն× զոր գործեցեր, և կեցցես և վայելեսցես ի պատիւս և ի պարգևս թագաւորին, և մի ի վերայ մեծ յանցանացն զոր յանցեար, որպէս լսեմդ զոր ինչ ամբաստանեն զքէն՝ յայդ ևս յաւելուր, յամառել պնդել ի հաւատսն Քրիստոսի զոր պաշտեսդ, և ի ձեռն չարաչար տանջանաց ելանել ի կենաց աստի, զի ոչ ևս ունիմ շատ խօսիլ ընդ քեզ»:

Ետ պատասխանի երանելի Մուկաթլ լի հաւատովք և ճշմարիտ խոստովանութեամբ ի Հայր և յՈրդի և ի Հոգին Սուրբ, ասէ. «և ո՞վ տայր ինձ վկայել ի վերայ ճշմարտութեանն և [377] մեռանել վասն անուանն Քրիստոսի, և զարիւն իմ փոխանակ արեանն Քրիստոսի հեղուլ և զմարմին իմ փոխանակ մարմնոյ նորա ի մահ մատնել և զչարչարանս իմ ընդ նորա չարչարանսն խառնել, զի և ընդ նմա փառաւորեցայց. նա է տէր տերանց և թագաւոր թագաւորաց և իշխան կենաց և մահու, Աստուած յաւիտենական Յիսուս Քրիստոս: Իսկ սպառնալիք քո և չարչարանք, զոր ասես ի վերայ իմ հասուցանել՝ խաղ մանկտոյ կամ զառանցելոց թուի յաչս իմ, և բանք քո նոյնպէս, որպէս առն անմտի և խելագար և ցնորեալ ծերոյ»:

Յայնժամ բարկացեալ բռնաւորն հրամայեաց նախ զլեզուն հատանել զսրբոյն, զի մի յանճախիցէ առ հասարակ զթագաւորն և զօրէնսդիրն ինքեամբ հանդերձ անարգել. ապա հրամայեաց զերկոսին զձեռսն և զերկոսին զոտսն

[376] ×) Այլ օր.՝ վնասսն քո:

հատանել, ապա ետ հրաման և փորեցին զաչս երանելւոյն, ապա անդամ անդամ յօշեցին զնա, որ մատոյց զինքն պատարագ կենդանի որդւոյն Աստուծոյ. և կայր դեռ ևս [378] մեծաւ ուժով, և գոհութեամբ ընդունէր զեկեալ ի վերայ նորա չարչարանս վասն սիրոյն Քրիստոսի: Մինչդեռ կայր ևս կենդանի՝ ետ կանգնել փայտ մի մեծ և բարձր յոյժ, և դնել զնա ի ծայր փայտին, ունել ի բարձրաւանդակ տեղւոջ. և իջուցեալ ի փայտէն հատին սուսերաւ զգլուխ նորա. և դարձեալ եդին ի վերայ ի տեղւոջ վկայութեանն նորա, ի Գոռոզու մերձ ի լեառն Քշիթ, ուր էր բանակ այլազգեացն: Եւ այսպէս կատարեցաւ սուրբն ամենայաղթ նահատակն Քրիստոսի Մուկաթլ փառաւորապէս ի Հայր և յՈրդի և ի Հոգին Սուրբ, որում փառք յաւիտեանս ամէն:

Նմանապէս կամ թէ ևս հրաշափառագոյն երիցս երանելիք Սողոմոն, որ Սևորդին ճանաչի[2], և Կախայ վերին աշխարհեցին[3] ոչ խոտորեցան ի բանս թագաւորին և ոչ եղեն ունկնդիր մաղձահամ և ժախահոտ բանիցն[x], իբրև ի փեռեկեալ գերեզմանէ զնեխահոտութիւնն արտաքս հատանելոյ. որով զբազումս դրդւեցոյց ի յաստուածային օրինացն և յերկրպագութենէ Աստուծոյ որդւոյն: [379] Այլ նահատակեցան արիաբար և ետուն պատասխանի թագաւորին մեծաւ համարձակութեամբ, յուսացեալ ի մին միայն ի թագաւորն թագաւորաց և ի տէրն տերանց, ի Քրիստոս յորդին Աստուծոյ: Եւ ասեն ցթագաւորն, «լաւ է մեզ մեռանել վասն անուանն Քրիստոսի, քան վայելել ընդ քեզ. որով մահուամբ և կամիս՝ պատրաստ եմք յամենայն հնարս չարչարանաց մտանել, զոր ուսոյց քեզ վարդապետն չարեաց հայրն քո սատանայ. մեք ոչ ի բաց կամք ի սիրոյն Քրիստոսի և ոչ մեկնիմք ի կենացն յաւիտենից և ոչ լինիմք ժառանգորդ յաւիտենական տանջանացն»:

Յայնժամ բարկացեալ բռնաւորն իբրև զգազան մի կա-

---

[378] x) Այլ օր.՝ ժահահոտ բանից նորա:
[379] x) Այլ օր.՝ չնորհացն: Երկու օր.՝ զառատշնորհս:

տաղեալ, յարձակեալ ի վերայ գառանց գէշ արկանել զնոսա՝ Հրամայեաց պնդել զնոսա ի ցիցս կապեալ ոտիւք և ձեռօք. և ետ բերել քուքս և տանջել զնոսա քքովքն յերկար, մինչ կարծել ի նմին վախճանել, և նոքա կային մեծաւ ուժով և գոհանային զանբաւ և զառատաշնորհ^x պարգևացն Քրիստոսի, որ արժանի արար զնոսա մեռանել վասն [380] անուանն Քրիստոսի և առնուլ զմարտիրոսական պսակն:

Եւ մինչդեռ կային կենդանի և գոհանային զՔրիստոսէ զանյաղթ զօրութենէն, որ զօրացոյց զսուրբսն մեծ ասպարիսին ի Հոգևորական պատերազմին՝ ևս առաւել բարկացեալ Թագաւորն՝ իբրև զՀնոց վառեալ բորբոքէր. ետ բերել փայտս, և եդեալ ի վերայ փայտին զերանելին Սողոմոն՝ և մօտ առ փայտն կացուցին զսուրբն ԿաՀայ, զի գոնեայ մինն ի միւսոյ տանջանացն երկուցեալ Հնազանդիցի Հրամանի Թագաւորին: Իսկ նոքա առաւել քան զառաջինն դիմեցին ընդդէմ չարչարանացն խաչակից լինել Քրիստոսի. ուրացան զանձինս և առին զխաչն Քրիստոսի և գնացին զՀետ կոչողին, կորուսին զանձինս, այսինքն զկեանս աշխարՀիս, զի զյաւիտենիցն գտցեն զկեանս. մեռան ընդ Քրիստոսի, զի ընդ նմին Թագաւորեսցեն:

Նոյն ժամայն ել Հրաման յարքունուստ, զի զսուրբն Սողոմոն ի նմին փայտի սպանցեն, նետաձիգ լինել ի նա: Եւ ըստ [381]Հրամանի բռնաւորին դաՀճացն ձգեալ ի նա նետս շուրջանակի՝ աւանդեաց զոգին ի փառս Աստուծոյ երանելի նաՀատակն Քրիստոսի: Իսկ զսուրբն ԿաՀայ Հրամայեաց սրով սպանանել. և առեալ դաՀճին զսուրն՝ եՀար զերանելին և եՀատ զգլուխ նորա, և նոյնժամայն աւանդեաց զոգին ի ձեռս Աստուծոյ: Այսպէս վկայեցին երանելիքն ի փառս սուրբ Երրորդութեանն յաւիտեանս յաւիտենից:

Էր ընդ գերեալսն ի լեռնէն Խութայ Յովնան անուն. սա այն է, որ մինչ^x յելանելն ԲուՀայի ի սկզբանն մտանելոյ նո-

---

[381] x) Ա (1/2-ԺՆ)՝ սա այն մինչ որ xx) Ա (2/12)՝ տարան ի տուն: xxx) Այլ օր.՝ ածել զառաջի և Հարցանել: xxxx) Ա (2/2Ն)՝ աղագս և վասն:

րա ի Հայս՝ եկաց ընդդէմ նորա բնակչօք լերինն և Հարուածս մեծամեծս Հասոյց ի վերայ զօրացն արքունի. իսկ իբրև ընդդէմ կացին լեռնայնոցն գունդքն Տաճկաց և Հարին զլեռնայինսն՝ ձերբակալ արարեալ զերանելին Յովնան տարան ետուն[xx] կապանօք ի բանդ արքունի:

Եւ յաւուր միոջ Հրաման ետ Թագաւորն ածել զառաջեաւ. և Հարցեալ[xxx] ցնա յաղագս մաՀուանն Յովսէփու ի վրէժխնդրութեանն աղագս[xxxx] երկրորդ նաՀատակութեան [382] նորա, որ եկաց ընդդէմ զօրավարին, յուշ առնելով նմա զապստամբութենէ և ընդխառնելոյ նորա ի վնասս արքունի, միանգամայն սաստկացուցանէր ի վերայ նորա զաՀարկութիւնն, զի գոնեայ այնու կարասցէ արդեօք վրիպեցուցանել[x] ի ճշմարիտ Հաւատոցն որ ի Հայր և յՈրդի և ի Հոգին Սուրբ. և իբրև եդ առաջի զվնասուցն որով կարծէր արկանել զնա ի Հաղբս[xx] կորստեան՝ ասէ ցերանելին, «եթէ կամիս կեալ ընդ իս և վայելես ի կեանս աշխարՀիս, և ընդունել պարգևս և պատիւս յինէն՝ Հաւանեա Հրամանի կամաց իմոց և ի բաց լեր ի Հաւատոց քրիստոնէութեանդ, զոր պաշտես, և ծառայեա ճշմարտութեան օրինաց և Հաւատոց, զոր ուսաք ի մարգարէէն ՄաՀումաթայ. ապա թէ ոչ՝ զնորին Հակառակն ընկալցիս, տանջանս և մաՀ, և ելցես ի կենաց աստի չարաչար մաՀուամբ»:

Իսկ սուրբն գեղեցիկ խորՀուրդ ի մէջ առեալ՝ ասէ ցբռնաւորն. «ընդէ՞ր որպէս մանուկ տղայ Համարիս, արկանել առաջի իմ զպատրանս, սնոտի, առասպելաբան, խաբե[383]բայ[x] և պատիր յոյս խոստանալով ինձ՝ Հանել զիս ի ճշմարիտ յուսոյն, զոր ի մանկութենէ ի վերայ Հասեալ ճշմարտութեանն»:

Ասէ Թագաւորն. «մի արՀամարՀեր զթագաւորական բանքս իմ և կորուսաներ զկեանս քո, և լինիցիս իբրև զմի ի մաՀապարտաց, որ անձամբ զանձինս Հերքեցին ի կենաց

[382] x) Այլ օր.՝ կարասցէ վրիպեցուցանել զնա: xx) Այլ օր.՝ ի Հաղբս բանսարկուին:

[383] x) Այլ օր.՝ խաբէութեան: xx) Ա $(^2/_7)$՝ անագեցից:

վտանգաւոր մաՀուամբ, որպէս և քեզ պատրաստեալ է, եթէ կացցես ի նմին յամառութեան ի Հաւատսդ Յիսուսի որդւոյն Մարիամայ կնոջ Հրէի»:

Ասէ երանելին. «տեսանեմ զքեզ որպէս զմի ի զառանցելոց խելագարեալ որպէս խօսիսդ. ես վաղ անարգեցի[xx] զքեզ, և ոչ փոքր ինչ երկիւղ կալայ ի սրտի իմում վասն քո, զի քամաՀելով ի վերայ քո՝ զզօրավարն քո Հանդերձ զօրօքն ի սուր մատնեցի, և զաւար նորա բաշխեցի, և յերկրորդումն ոչ փոքր նախճիրս[xxx] Համարեցի զօրացն քոց. արդ ընդ արութիւնս իմ վատութի՞ւն խառնիցեմ[xxxx] և ընդ երկիւղիւ մաՀու անկանիցի՞մ: Վասն մարմնաւորացն այնչափ նաՀատակեցայ, որպէս գիտաց[384]երն և որպէս այժմ լսես յինէն, վասն Քրիստոսի և վասն յաւիտենական կենացն ո՞չ մեռանիցիմ, կամ արդեօք ի քէ՞ն երկնչիցիմ. քա՛ւ լիցի. աՀաւասիկ կամ, մի դանդաղիր կատարել՝ զոր ինչ կամիս առնել»:

Իբրև լուաւ զայսքան և առաւել քան զսոյնս յանդուգն և առանց երկիւղի զընդդէմ պատասխանատրութիւնն մեծաւ Համարձակութեամբ՝ ապա Հրաման ետ փութով ի կենաց բառնալ զգլուխ նորա սուսերաւ: Եւ առեալ դաՀճացն զերանելին՝ ածին ի տեղի սպանմանն. և նորա Համբարձեալ զձեռս իւր յերկինս յաղօթս կալ, զի կարասցէ յաղթել նաՀատակութեամբ, և մատուցեալ զպարանոցն առ դաՀիճն՝ եՀատ զգլուխ նորա, և աւանդեաց զոգին երանելին Յովնան ճշմարիտ խոստովանութեամբ ի Հայր և յՈրդի և Սուրբ Հոգին, որում փառք յաւիտեանս:

Եւ եղև իբրև արար և կատարեաց ԲուՀայ զոր ինչ խորՀեալն էր ի վերայ աշխարՀիս Հայոց, զբարձումն յաշխարՀէս մեծամեծացն Հայոց՝ յաւել և զայս ևս, զի մի ամենևին ոք կայցէ [385]յակաստանի, մանաւանդ զի ոչ ոք տևեաց ընդդիմանալ ձեռին նորա. գրէ յականէ յանուանէ առ որ մնացեալն էին յաշխարՀս յամուրս իւրեանց, զի փութով յիւրաքանչիւր տեղեաց առանց կասկածանաց և երկիւղի առ

---

xxx) Այլ օր.՝ նոճիրս: xxxx) Ա (2/5ն)՝ խառնեցեր:

[385] x) Այլ օր.՝ առնն չարի:

նա Հաասանիցեն և կալցին զիւրաքանչիւր իշխանութիւն և վայելեսցեն ի պարգևս և ի պատիւս արքունի և կացցեն ի Հնազանդութեան Թագաւորին: Եւ ելեալ յիւրաքանչիւր տեղեաց մի քան զմի յառաջանալ ի կոչումն Բուխայի, և ժողովեցան ի մի վայր և եկին կացին առաջի զօրավարին Տաճկաց: Իսկ նա փոքր ինչ ժամանակ ներեաց նոցա դիմօք սիրոյ խաղաղութեան, մինչև ի գլուխ ելին որ ինչ յաղագս Ապումուսէին էին Հանդէսք. իսկ իբրև նա ըմբռնեցաւ, և գիտաց զօրավարն եթէ ոչ ոք այնուՀետև յիշխանացն Հայոց մնաց, որ ոչ Համագունդ ժողովեալ են առ նա՝ մերկացաւ յայնժամ զպատրուակ կեղծաւորութեանն, զոր սերմանեալ էր սատանայ ի սիրտ առնն[×]: Եւ ըստ տոՀմս ազգաց, [386] ըստ Թուոյ տերանցն Հայոց, կազմեաց գունդս վառեալս զօրականաց, զինեալ և պատրաստեալ. և ընդ այգն ընդ առաւօտն, մինչ նոքա ննջէին յիւրաքանչիւր վրանաց օթոցի՝ և զօրքն շուրջ փակեցին սուսերօք և վաՀանօք և նիզակօք և վառեալ մոմեղինօք, և մտեալ ի ներքս ըստ Հրամանի զօրավարին իւրեանց՝ եդին զոտս նոցա ի կապանս երկաթիս և բարձին ուղտուց և խաղացուցին ի Սամառայ. որոց անուանք ճանաչի սոցա՝ տէր Սմբատ սպարապետ Հայոց, և Գրիգոր Քուրդկայ որդի Մամիկոնէից տէր[4], և Ատրներսէհ Աղուանից իշխան[5], և Գրիգոր Սիւնեաց տէր[6], և ՄաՀլ Սմբատայ որդի[×] Շաքեոյ տէր[7], որ զԲաբանն կալաւ[8], և իշխանական Վասակ Վայոց ձորոյ տէրն[9], և Փիլիպպէ իշխանն Սիւնեաց[10], և Ներսէհ իշխան Գարիթայանից[11], և ապա Եսայի Ապումուսէ, որ զշատ պատերազմունսն եՀար: Մնաց միայն Աշոտ որդի սպարապետին և Մուշեղ և Սմբատ եղբայր Աշոտոյ, զորս եթող ԲուՀայ տիրել աշխարՀին իւրեանց յաղագս յառաջագոյն [387] մտերմութեան Հօրն նոցա առ Թագաւորն և առ զօրավարն, զի գնաց ըստ կամաց նոցա յամենայն ուժոյ զօրութեան մտաց իւրոց: Իսկ ի Վասպուրական տէրութեանն ի տեղւոջ զօր արութեան× մնաց Գուր-

[387] ×) Ա (1/8)՝ զաւր արութեան. Թերևս՝ զօրավարութեան (II, ծն. 2):

գէն[12], և այլ տոհմք Արծրունիք[xx]: Եւ եբարձ զամենայն արս զօրութեան յերկրէս Հայոց, և ինքն գնաց անտի և եմուտ ի Պարտաւ՝ ձմերել անդ, և տեսանել վասն յետին կատարածին աշխարհիս Հայոց, թէ ո՛րպէս ի գլուխ ելանիցէ[xxx]. և մեկնեաց յինքենէ զԱբրահիմ ոմն և յղեաց զնա հազարապետ Հայոց, և վերակացու ի վերայ հարկաց արքունի, և տիրել փոխանակ իշխանաց սորա[13]:

(ԺԲ)

## ՈՐ ԻՆՉ ՋԿՆԻ ԱՆԻՇԽԱՆՈՒԹԵԱՆ ԳՈՐԾԵՑԱՒ ԵՒ ՊԱՏԵՐԱԶՄԱՑՆ:

Յետ բառնալոյ իշխանութեանն ի Վասպուրական երկրէն մնացին տոհմք Արծրունեաց ըստ ազգս ազգս՝ քաջն Գուրգէն և Մուշեղ եղբայր իւր և Ապուջափր և Ապումքդէմ և Վասակ և միւս Վասակ և դարձեալ այլ Վասակ և Մուշեղ և Աշոտ և Սահակ, և այլք ի տանէն Արծրունեաց և ազատք նոցա: Եւ սկսան յաւելուլ ի վերայ [388] չարեացն այլ չարիս. զի ընդ միմեանս մարտ և կռիւս դնէին յաղագս իշխանութեանն ցանկութեան, և ճեղքեցան ի միմեանց և զօրս գումարեցին ի զերծելոցն ի սրոյն և ի գերութենէն Բուհայի. կէսքն զԳուրգէն յառաջ ածեն ի պատիւ իշխանութեանն, և այլք զԱպուջափր, ոմանք զՎասակ. ըստ այնմ զոր մարգարէն Եսայի ասաց, «յաւուր յայնմիկ բուռն հարկանիցէ այր զեղբօրէ կամ զազգակցէ իւրմէ, և ասասցեն՝ լեր մեր իշխան, և կերակուր մեր ընդ քեզ լիցի»[1]. և չփոթեալ լի աղաղակաւ երկիրս, և ուր հասանէին՝ աւերէին ասպատակաւ և աւարաւ և յափշտակութեամբ. և այր եղբօր իւրում ոչ ողորմէր, ըստ այնմ զոր ասաց դարձեալ Եսայի, «անկցի, ասէ, այր ընդ այր, և այր ընդ ընկերի իւրում, ընդհարցի մանուկն ընդ ծերոյն և անարգն ընդ պատուականին»[2]. քանզի ըստ օրինակի խսրայէլականումն, որ յաւուրս անիշխանութեանն

xx) Այլ օր.՝ Արծրունեաց: xxx) Այլ օր.՝ ելանէ:

էին անկարգութիւնք, և այր իւրաքանչիւր զհաճոյս աչաց իւրոց առնէր՝ սոյնպիսիք և այժմուս եհաս լինել. քանզի [389] նուազագոյնքն և տկարք՝ թափառեալք աղքատութեամբ վտանգէին, իսկ կարողագոյնքն և բռնաւորք ըստ բնութեան գազանաց վայրենամիտք լեալ, անամօթ և անարգել յափշտակութեամբ վրդովէին զբոլոր երկիրս:

(ԺԳ)

## ՅԱՂԱԳՍ ԳՈՒՐԳԻՆԱՑ ՄԻԱՑՆ ՄՆԱԼՈՑ, ԵՒ ՇԱՏ ՊԱՏԵՐԱԶՄԱՑՆ ՅԱՇԽԱՐՀԻՍ:

Յաւէտ խրախճանութեամբ բուռն հարկանել ախորժելի է ինձ զպատմութենէ քաջատոհմիկ և բարեփառ բարեյաղթ նահատակէն, զԳուրգինայ ասեմ, զյոյժ փառացի և ճոխ և նազելի զնախագահ նստեալ զարմէ, յերկուց թագաւորազանց զաճմանն սեռի բերելով զբողբոջս զՍենեքերիմայն և զՄամգունեաց ճենազնւոյ[1], ի միասին զզուգամասն պայազատեալ գահընկալ թագաւորական զարմ, ի հօրէ[x] զՍենեքերիմայն և ի մօրէ զՄամգոնեացն, ըստ ծննդաբանութեան գալ հասանել՝ մինչ յորում եմքս հասեալ ժամանակ, յաճախագոյնս վասն Գուրգինայ վայելէ զդրուատեացն, կարևոր է բազմաձեռն աճմամբ զդրու[390]ատեացն յերկարագոյնս հաստուցանել զճարտասանութիւնս. բայց քանզի պատմագրութեան է ժամս և ոչ գովասանականութեան[2] արտաքոյ եղէց յոլովից բանբասանաց. մանաւանդ զի ոչ բաւականանամ իմով աղքատիմաստ բանգիտութեամբ[x] զսորայս բացայայտել զչափ ներբողականին՝ այլոց ուժեղագունից և մտահարուստ արանց թողի, և զերծի զիս ի պարսաւանաց բարձրագունից: Բայց ինձ ոչ դանդաղելի կամ պատկառելի կամ մեղանչելի է զուգակշիռ նահատակելոցն նահատակակից

---

[389] x) Ա ($^{2}/_{11-12}$)՝ թագաւորական զարմ ի հաւր է ըստ Սենեքերիմայն:
[390] x) Այլ օր.՝ բանիւք գիտութեամբ: xx) Այլ օր.՝ սրբոյ: xxx) Այլ օր.՝ նմանակերպ պատկերակից եղեալ:

վարկանել զսա և մարտիրոսականաւն զսորայս դրուատել ճգնողական մրցմունս, ընդդէմ արաբացի ասպատակողացն յարիւն և յապաժոյժ ի վերայ Հայրենի աշխարհի մարտուցեալ և զհոգի և զմարմին փոխանակ սրբոց[xx] եկեղեցեաց Քրիստոսի և ի նոյն հաւատացելոց ի Հայր և յՈրդի և ի Հոգին Սուրբ, առ գնոսա ամբողջ և անբիծ պահելոյ, իբրև զքաջ հովիւ եդեալ զանձն ի վերայ խաչանց մեռանել, նմանակերպեալ պատկերակից լինել[xxx] որդւոյն Աստուծոյ, որպէս [391] Պօղոսի հաճոյ թուի ասել, թէ «զորս յառաջն ճանաչէր՝ յառաջագոյն հրաւիրեաց կերպարանակից լինել պատկերի որդւոյ իւրոյ»[3]: Եւ այս բաւականասցի տրամամիտ մտառուացն, և մեք զպատմողականն համառօտաբար յառաջ վարեսցուք հարկաւորութիւն:

Բայց մի ինձ մեղադիր լինիր, ո՜վ ուսումնասէր դու, սակս ոչ զբովանդակ սորա գործս չարել ի ճառս մանրապատումս: Վասն զի այլոց գործք մի կամ երկու կամ այլս ևս գործք գործեալ է. իսկ սորայս՝ գերազանցեալ յաճախեաց քան զբազմացն իրողութիւնս. վասն այնր առ այժմ համառօտեալ ի նշանագիրս սուղոյ բանից, որպէս Պօղոսի հաճոյ թուի գրել յառ Եբրայեցիս թղթին, թէ «չէ բաւական ժամանակս պատմելոյ» վասն դատաւորացն Իսրայէլի և սրբոց մարգարէիցն, միայն յայս բան բովանդակեալ ասէ, «որք հաւատով պարտեցին զթագաւորութիւնն»[x4]: Որգունակ և յաղագս փրկչական տնտեսութեանն գրէ Յոհաննէս ի կատարածի աւետարանակ[392]ան չարագրածին[5]:

Գուրգէն որդի Ապուպելճի Վասպուրական իշխանի, ի շփոթի ժամանակին Բուհայի և ի հայրապետութեանն Յովհաննու Հայոց կաթողիկոսի, իմաստութեամբ գործեալ՝ ոչ եկաց հակառակ չարին. այլ իբրև եմուտ Բուհայ յաշխարհս Վասպուրական՝ ել գնաց Գուրգէն առ Քուրդիկ Մամիկոնէից տէր ի Բագրևանդ գաւառ, և անդ լինէր, զի էր Քուրդիկ քեռի Գուրգինայ:

---

[391] ×) Ընթեռնելի է՝ զթագաւորութիւնս: Եբր. ԺԱ, 33: (II, էջ 194, ծն., 1):

Եւ եղև իբրև կատարեաց Բուհայ զանցս անցից ընդ Վասպուրական աշխարհս և խաղաց յարևելս կոյս՝ ել գնաց Գուրգէն ի Սպեր գաւառ. և էր յայնժամ առեալ Յունաց զաղաբար Իշխանիկ կոչեցեալ ի տոհմէ Բագրատունի՝ զբերդն Արամանեակ կոչեցեալ[6]. և ընկալեալ ի նմանէ մեծաշուք պատուով: Եւ արևելեաց զօրավարին եկեալ պատերազմել ընդ իշխանականն[7] առնուլ զամրոցն, և անդ Գուրգէն բազում արութիւն ցուցեալ ընդդէմ յունական զօրացն, ոչ միանգամ այլ բազում անգամ, և ի [393] արամբք ի դիմի հարեալ հազարի միոյ՝ սպան զբազումս ի նոցանէ զընտրելոցն Յունաց, և մերկ կապուտ կողոպուտ առնէր զնոսա, մինչև զարմանալ զօրավարին ընդ սորայս քաջութիւն՝ գրէ առ Միքայէլ թագաւորն Յունաց զեկուցանելով վասն նորա:

Իսկ թագաւորն գրէ առ զօրավարն թերևս կարասցէ հաւանեցուցանել զԳուրգէն՝ երթալ ի թագաւորական քաղաքն առ կայսր, և մեծաց պարգևաց և պատուի և գահու յառաջաձգութեամբ ընկալցի պարգև ի թագաւորէն: Ընդ որ ոչ հաճոյացեալ Գուրգէնայ երթալ ի Յոյնս. բայց հաւանեցուցեալ զԳրիգորն տալ զբերդն ցզօրավարն, և հաճեցի զմիտս թագաւորին: Եւ զօրք Տաճկաց ի զօրացն Բուհայի եկեալ էին ընդ զօրս Յունաց պատերազմել ընդ ամուրսն. և Գուրգէն ելեալ ընդդէմ նոցա բազում անգամ՝ ոչ սակաւ օճիրս գործէր ընդ զօրս Տաճկաց: Եւ ինքն անցեալ գնայր առ Իշխանիկն ի յամուրն Աշխարհաբերդն[8] կոչեցեալ. և անտի արիաբար [394]բար քաջասրտագոյն դիմեցուածով ելեալ գնաց դարձեալ առ սպարապետն Սմբատ:

Եւ նորա զեկուցեալ վասն նորա Բուհայի՝ ասէ. «այրս այս Գուրգէն ի տոհմէն Արծրունեաց, այր քաջ և պատերազմող, ի յահէ քումմէ անցեալ գնացեալ զկողմամբքն Յունաց, և յարձակեալ բազում անգամ ի վերայ յունական զօրուն որք ընդդէմ զօրաց քոց պատերազմէին՝ և անդ ոչ սակաւ հեղմունս արեանց արարեալ փոխանակ զօրաց քոց ի զօրացն Յունաց. և արդ աւասիկ հասեալ կայ և մնայ քո հրամանի. արդ հաճոյ թուեսցի քեզ, քաջ զօրավար, զսորայս գործեցեալ քաջութիւն ի վերայ զօրացն Յունաց»: Եւ Բուհայ հրամա-

*յեաց սպարապետին, զի աներկիւղ կացցէ մնասցէ Գուրգէն առ սպարապետին մեծաւ շնորհակալիւք:*

*Ի սոյն աւուրս որք մնացեալ էին ի տանէն Արծրունեաց իբրեւ լուան զպարտումն զօրացն արքունի ի Տանարացն՝ ի մի վայր եկեալ գունդ կազմեալ հետեւ[395]ազօրքն մարտակցօք հանդերձ խառնաղանջ ամբոխիւ՝ լինին[x] թուեալ արք Տ, եւ առաջնորդ կացուցանէին իւրեանց զԱպուջափր Արծրունի, եւ ընդ նմա Սահակ Ապումկդէմ քեռորդի Ապուջափրի, այր քաջ եւ պատերազմող: Եւ ասպատակեալ ի Ծուաշ եւ ի Թոռնաւան գաւառ[xx] յաւարի առնուն: Եւ քանզի հաւատացեալ էր զգաւառսն Բուհայի ի ձեռն[xxx] սպարապետին Սմբատայ՝ գրէ առ ամիրայն Նախճաւանու Աբրահամ անուն, զեկուցանելով նմա զզօրացն Վասպուրականի. նորա փութանակի հասեալ ի քաղաքն Բերկրի, եւ միաբանութեամբ քաղաքացուացն ելեալ պատահեն զօրացն ի զօրագլխացն Վասպուրականի ի գեօղն որում Խոզաղբերքն[9] ասեն. զի[xxxx] եւ այլազգիքն տեղի ետուն եւ փախեան յերեսաց Ապումկդէմայ. եւ եհար սատակեաց Ապումկդէմ ի միում ասպատակի Ը այր, եւ զերիվարս նոցա եւ զէնս եւ զզարդ մերկեաց ի նոցանէ, եհար զայլազգիսն ի հարուածս մեծամեծս եւ ինքն դարձեալ ասպատակ[396]եաց զկնի նոցա: Եւ մինչ երթայր եւ խորհէր՝ խոցեալ նորա երիվարն, եւ յանկարծակի այն ինչ ոտն երիվարին շաղեալ ընդ փոքր թուփ մի, որպէս ասեն, եւ զուլամբեալ[x] ի վերայ գլխոյն, ջարդեալ զողն ու լարն[xx] ի բաց ընկէց զհեծեալն զքաջ զօրավարն Ապումկդէմ: Եւ հասեալ ի վերայ նորա թշնամիքն՝ հարին[xxx] սրով: Եւ մի ոմն մերկանայր զկօշիկս ոտիցն նորա. եւ հարեալ աքացի զվատ*

---

[395] x) Այլ օր.՝ լինէին: xx) Ա (1/9ա)՝ Թոռնաւան, ոչ Թոռն աւան (տե՛ս I, 319, ծն. 2: II, 195, ծն. 2): xxx) Ա (1/5ա)՝ ի ձեռս: xxxx) Ա (2/9)՝ զի մի եւ:

[396] x) I (220), II (195), III (304)՝ զուլումբեալ: Ա (1/7-8)՝ զուլամբեալ (տե՛ս նաեւ Նախն., 37): xx) I (220)՝ զողնուլարն: II (195-196)՝ զողն ու լարն: Այլ օր.՝ զուղնուզարն: xxx) Այլ օր.՝ հարին զնա սրով:

*այրն հանդէպ սրտին՝ և սպան զնա: Յայնժամ դիմեցին ի վերայ նորա և ի բաց առին զգլուխ նորա և տարան ետուն առ զօրավարն իւրեանց Աբրահամ և քաջալերեցան դարձեալ ի վերայ գնդին Հայոց, և հարեալ ի հարուածս մեծամեծս: Բայց տէր Ապուջափր և որ ընդ նմա՝ քաջապէս մարտեան ընդ այլազգիսն և առին:*

*Իսկ իբրև գիտացին եթէ սպանաւ զօրավարն, և խորտակեցաւ բազուկ աջոյ ձեռին, եղեալ ի փախուստ դարձան, և քակեցին զռազմն և աւերեցին զճակատն և լքին [397] զմիմեանս, և թողին զպատերազմն և գնացին փախստական ամենայն այր յո՛վ և կարաց զերծանել. մնաց միայն զօրքն հետևակազօրքն լքեալ առանց առաջնորդի: Յորոց վերայ սուր եդեալ կոտորեցին, և լցին դիակամբք սպանելոցն զղաշտաձև հովիտն: Եւ աղբերքն որ ի տեղւոջն և այլ ջրոցն քամուածքն ի ծործորացն ի վայր՝ յարիւն դարձան: Եւ ինքն Աբրահիմ եկն անց յայնկոյս յոստանն Ուշտունեաց և անդ լինէր: Եւ դարձեալ դարձաւ ի տեղի իւր ի Նախճաւան: Իսկ Ապուջափր անցեալ ի կողմն Աղբագոյ՝ և ժողովեցան առ նա գունդք գունդ յամենայն կողմանց: Եւ դարձան մտին յոստանն Ուշտունեաց և կացուցին յանձանց իւրեանց իշխան զՎասակ Կովակեր, եղբայր Վահանայ:*

*Լուր եղև այս առ քաջն Գուրգէն պարտուսմն Վասպուրականի ի Տաճկաց և իշխանանալն Վասակայ: Ելեալ փութանակի եկն եհաս յաշխարհս Վասպուրական սպարապետին կամակցութեամբ: Եւ [398] այն ինչ ընդ մտանելն՝ երագապէս հասեալ ի վերայ ամրոցացն Ջղմար և Սրինդ կոչեցեալ՝ յինքն գրաւէ զամրոցն, և կալեալ զՎասակ՝ յինքն գրաւեաց զզօրավարութիւնն բոլոր Վասպուրական տէրութեանս: Եւ սկսաւ շրջել կարգաւ ընդ բոլոր աշխարհս, յորում բնակեալ էին Տաճիկք, որ մնային ի սմա ըստ հրամանին Բուհայի: Եւ առնէր հարուածս մեծամեծս այլազգեացն. և սատակէր զնոսա սրով և աղեղամբ, և եբարձ զամենայն ազգս Տաճկաց, որ*

---

*[398] ×) Ա (2/4ա)՝ ձորոյն Հացոց: Այլ օր.՝ ձորոյն Հայոց:*

բնակեալ էին ի Վասպուրական տէրութեանն:

Յայն ժամանակս գայ ոմն Բուտել անուն ի զօրացն արքունի հրամանաւ Բուհայի, հասանել ի վերայ Գուրգինի, և ընդ նմա քաղաքացիքն Բերկրոյ որ Ութմանիկքն կոչէին, և յազատացն Վասպուրականի որ միաբանեալ էին ընդ զօրսն արքունի, արք իբրև Ս, և հանդիպեցան միմեանց յՈրդոք գեօղ, ի գլուխս ձորոյն Հայոց×, որ հանէ յԱրուանթունի գաւառն: Եւ Գուրգէն յանհոգս անկասկած բնակէր [399] անդ Ն արամբք: Եւ այն ինչ ընդ այգն ընդ առաւօտն× յեղակարծում հասին ի վերայ զօրք Տաճկաց, և աճապարեալ Գուրգէն հեծեալ յերիվարն. և կարգեցին ճակատս և ռազմ բոլորեցին, և վահանաւորքն փակեցին զառաջակողմն ճակատուն և կացին ի թիկանց հետևակազօր նահատակացն. և արիաբար հանդիսացեալ գնդին Հայոց՝ ճակատեցան ընդ այլազգիսն հարուստ և ձիգ ժամս և հարին ի հարուածս մեծամեծս զբանակ այլազգեացն: Եւ ապա փոքր մի կազդուրեալ գնդին Տաճկաց՝ կացին յոտն: Յայնժամ տէր Գուրգէն առ չժուժել×× սրտին, մտրակեալ զքաջ երիվարն յորում նստեալն էր՝ և եհար զգունդն զձախակողմն Տաճկաց և պատառեաց զռազմն և դարձոյց զերեսս նոցա. և փախեան այլազգիքն յերեսաց Գուրգէնի մի կողմն: Եւ երթայր զհետ և սատակէր զնոսա անչափ զօրութեամբ. և բազումք այն էին որ մեռանն ի սրոյն Գուրգինի քան որ մնացինն. և զօրքն [400] զհետ մտեալ մնացելոցն հանին յերկրէն իւրեանց: Իսկ աջ թևն Տաճկաց չարժեցին զզօրութիւնն Հայոց, և փախստեայ գնացին զհետ մինչ ի սահմանս իւրեանց. և ինքեանք դարձան անդրէն. կարծէին ի սպառ հարկանել զգունդն Հայոց. բայց պարտեալ եղև գունդքն Տաճկաց ի քաջէն Գուրգինայ և բեկաւ զօրութիւն նոցա: Եւ ոչ ևս այնուհետև համարձակ ելանէին և մտանէին յաշխարհս Վասպուրական զօրքն Տաճկաց. զի անկաւ ահ սաստիկ ի վերայ նոցա:

---

[399] ×) Ա ($^{1}/_{1-3}$), I (222), և այնինչ ընդ այգն ընդ առաւօտն: II (197), III (306) չիք՝ ընդ այգն:
××) Ա ($^{2}/_{5-6}$)՝ առ չժուժկալ սրտին: Այլ օր.՝ առ ի չժուժկալ:

Իսկ ի վերայ բազում հինիցն եկելոց ի վերայ Գուրգինի և սաստիկ պատերազմացն զոր պատերազմեցաւ յաղթող նահատակութեամբ, ոչ միայն յարտաքին թշնամեացն որ շուրջանակի պաշարէին, բազում այն էր որ ի ներքին ընտանեաց հարազատաց, ազգականաց դրժողաց, ուխտազանցաց, ստոց և ստերդմանց յուզէին աղմուկք: Իսկ նորա անմեկնելի զյոյս իւրեանց ի Քրիստոս ունելով, բնաւից գերագոյն և հոյակապ ան[401]ուն ստացեալ, զյաղթութեան նշանակ կանգնեալ. և Տէր ամենակալ էր ընդ նմա ամենայն ուրեք ուր և ախորժէր:

Այս լուր քաջութեան և քաջախորհուրդ զպատերազմացն մղելոյ զյարձակմունս եհաս առ զօրագլուխն Բուհայ. և դարձաւ սիրտ նորա ի վերայ նորա սիրով խաղաղութեան. և ետ բերել նմա ըստ օրինի գլխապետութեան սուսեր իշխանական ընդ մէջ արկեալ և գօտի արիական շրջապատեալ զմիջաւ, քուքք խիզախողք և երիվար բարձրավիզ, ոտնատորոփ խրոխտալիր, յարմարական առ ընթացս պատերազմականս: Եւ կացոյց զնա իշխան յիւրում հաւատարիմ տեղւոջ, և այնպէս բարեձևագոյն ճոխացոյց զայրն երևելի[10]: Այլ ներքին և արտաքին յարձակմունքն ոչ կարէին ի ներքս դիմել մարտնչել ընդ անյաղթ զօրութեան զօրացելոյն ի Քրիստոսէ: Բայց ես յանհունս ձգեմ զզարմացմանն յեղանակս, թէ զիա՞րդ բաւել տոկայր, անձանձրանալի բերելով զաշխատութեանն աճմունսն. և նախ քան զմտացն [402] յօժարագոյն առ հանդէսն յառաջանալ՝ զմարմնոյն պնդութիւն անհանգիստ առ ճակատամարտսն յարատևել: Բայց արդ որպէս յառաջագոյն հատուցի զարտաքոյ պարսաւանաց զիս ներքոյ գրել, վասն ոչ ոճով զսորայս կարգել դնել ի շարի աստ զշարագրածս, վասն ոչ բաւելոյ զանչափութիւնն ի մի վայր գումարել յանմասնաւորաբար նշանակութեամբ, մանաւանդ զի յառաջագոյն քան զմեզ այլոց ոմանց բանակարգեալ գրեալ հաւաքեալ է ի մի շար:

Յետ անցանելոյ չորից ամաց, յորում ժամանակի տէր Զաքարիայ ունէր զաթոռ հայրապետութեան Հայոց կաթողիկոսութեան[11] դարձեալ Գրիգոր եղբայր Աշոտի Վասպու-

րական իշխանի յԱփհազաց աշխարհէն՝ նոցուն օգնականութեամբ և Վրաց զօրու ընտիր գոլով՝ եկն եմուտ յաշխարհս Վասպուրական՝ տալ պատերազմ ընդ Գուրգինայ. բայց իբրև գիտացին զօրքն որ ընդ նմա եկեալ էին զնորա քաջակարծրագոյն արիութիւնն՝ և պատճառանօք այս ինչ այն [403] ինչ դարձեալ դարձան յանցնիւր տեղի: Իսկ Գրիգորի ոչ բերելով զընդդիմակացսն նորա կատարել՝ խօսի ընդ նմա սիրով խաղաղութեան, և բաժանել զաշխարհս յերկուս՝ տեղի եւուն միմեանց ի խաղաղութիւն: Բայց խռովիչքն ատեցողքն խաղաղութեան ոչ դադարէին նիւթել զհակառակս բարւոյն և զաճմունս չարին. մանաւանդ Վասակ որ զկարծեալ իշխանական անունն յինքեան բերէր: Բայց Գուրգէն թէպէտ և գտանէր զնենգիչսն իւր՝ ոչ ումեք զփոխարէն չարին հատուցանէր. բայց զՎասակն յամենայն ժամ իբրև ընդ խաղ ի բուռն առնելով արձակէր խաղաղութեամբ:

Ընդ նոյն ժամանակս եկն Վահան Աշոտի որդի, հօրեղբօրորդի Սահակայ[12] ի գերութենէն՝ նուաճել զաշխարհս, և գունդ կազմեալ ընդդէմ Գուրգինայ՝ և ինքն զպարտութիւն քան զյաղթութիւն յինքն կրէր: Եւ Գուրգէն նստէր յոստանին Ոշտունեաց յամրաձև բերդին. և Վահ[404]ան հասեալ յանկարծուստ ի վերայ նորա, այն ինչ ընդ միտ ածելով ստնանե[x]լ ինչ Գուրգինայ. և նորա ելեալ սակաւ արամբք՝ իբրև ջուր ընդ զառ ի վայրն հոսեալ՝ արար հալածական զՎահան և զզօրս նորա. և իջեալ ի դաշտավայրն[xx], խումբ արարեալ, ճակատ կազմեալ ընդխառնեցան ի պատերազմ. և զբազումս դիաթաւալ[xxx] կացուցեալ, ընդ որս էր Շապուհ նահապետն Ամատունեաց յանկելոց վիրաւորացն: Եւ այն ինչ պատահեալ Գուրգէն հարուստ գնդի Վահանայ ի յառուամէջս մուրին՝ ի բազում քան թէ սակաւ սուսերս ծեծեցին զնա, մինչև ոմն Ջուանշէր անուն յետուստ յանկարծ հարեալ վիրաւորեաց զԳուրգէն. իսկ նա առ երագութեան

---

[404] x) Այլ օր.՝ ստանանալ: xx) Այլ օր.՝ ի դաշտաձև վայրն: xxx) Ա (1/6-7ւ)՝ դիթաւալ:

*ձեռին ձգեալ զսուսերն՝ եհար զերեսս Ջուանշիրայն, և խլեաց զաչս նորա, և ինքն դարձաւ մեծաւ յաղթութեամբ, եմուտ յամրական տեղիսն: Եւ նոքա յո՛վ և աճապարեցին:*

*Եւ յետ աւուրց ինչ դարձեալ դառնայ Վահան ի Սամառայ, զեկուցանել [405] Աշոտի որ ինչ գործեցաւն: Բայց Գրիգոր կեցեալ յետ դարձին իւրոյ զմի ամ՝ մեռանի իւրով մահուամբ: Եւ տարեալ հանգուցանեն զնա ի վանս սուրբ Խաչին յԱղբագ գաւառի:*

*Իսկ Գուրգէն ընթացեալ զհետ հանդիսի պատերազմող նահատակութեանցն, անդուլ լինելով զցայգ և զցերեկ հանդերձ որ ընդ նմա միաբանեալ ազատագունդ զօրացն, և ոչ ըստ տեղիս տեղիս ցուցանէին զհանդէս մարտիցն և զյաղթութեանն քաջութիւն, այլ բոլորովիմբ ամենայն ուրեք ախոյեանայարձակ սլացմամբ ընթանայր. և իբրև զմի անձն, վառեալ ի զէն և ի սուր և ի ճակատամարտ՝ հասեալ յամուրս՝ տապալէր զզօրութիւն նոցա սրով և աղեղամբ, ի փայլիւն սուսերի և նիզակի և ի գիշերամարտ նահատակութեանց, ըստ նմանութեանն քաջ զօրավարին Իսրայէլի Յեսուայ[13] կամ Գէդէովնի[14] կամ թէ նոյն ինքն նահապետին Աբրահամու[15], ի վերայ հասեալ Քանանացւոց, զյաւէտ յաղթութեան նահատակութիւն նահատակեալ՝ և դառն[406]այ մեծաւ յաղթութեամբ: Նմանապէս, կամ թէ ևս հրաշափառագոյն զյաղթութեան մարտն յօրինեալ յարդարեաց զպարտութիւն ի վերայ ազգին Իսմայէլի մեծ զօրավարն Գուրգէն, և իսպառ կանգնեաց զնշանակ յաղթութեան ամենևին ամենայն ուրեք ընդ ամենայն տեղիս. և իբրև զքաջ հովիւն դրուատեալ[×] ի Փրկչէն՝ զանձն իւր եդ ի վերայ խաշանց ընդդէմ ապականարար գայլոցն, յարձակեալ յանխնայ դիմեցուածովք, յարիւն և յապաժոյժ, ի սատակումն և ի ծախումն սրոյ մատնեաց բոլորովիմբ զյարձակեալս նեղիչս աշխարհիս. և օրհնեցաւ և դրուատեցաւ ի հեռաւորաց և ի մերձաւորաց, բնակաց և եկաց աշխարհիս: Եւ խռովեցան առ*

---

*[406] ×) Այլ օր.՝ դրատեալ: ××) Ա (2/7-8ն.)՝ զի զզաւրհասն:*

Հասարակ ազգքն տանճկականք յերեսաց նորա և աՀիւ մեծաւ ըմբռնեալք լինէին. զի զօրՀասն[××] ի վերայ ինքեանց առանց երկբայութեան Հաստատեալ տեսանէին: Եւ սրբեալ զերկիրս ի պղծութենէ և ի նենգութենէ նեղութեանցն, իբրև զՅ[407]ուղայ Մակաբայեցի[16] զԱնտիոքայն սրբելով զանաստուածութիւնն յԻսրայէլէ՝ արար խաղաղութիւն նոցա որոց տիրէին:

(ԺԴ)

## ԴԱՌՆԱԼ ԴԵՐԱՆԿԻՆ Ի ՀԱՅՍ, ԵՒ ՍԿԻԶԲՆ ԴԱՐՁՈՒՑԱՆԵԼ ՏԵԱՌՆ ԶԳԵՐՈՒԹԻՒՆ ԻՇԽԱՆԱՑՆ ԲՈԼՈՐ ՀԱՅԱՍՏԱՆԵԱՑՑ:

Եւ եղև ի լնուլ վեցերորդ ամի գերութեանն Հայոց որ է ՅԶ ամ ըստ թուոյ Հայերէն տումարին, և ունի յոբելեանք Զ և ոլոմպիադր և ընդիքտիոնք, և Գ ամ Հայրապետութեան Հայոց կաթողիկոսի տեառն Զաքարիայի, և մուտ եօթներորդ ամի, յորում կային յարքունիսն իշխանքն[1], ըստ եօթնեկի չափոյ չարժման ժամանակաց. որպէս սաՀմանեաց Աստուած ի վերայ ժողովրդեանն Իսրայէլի գերելոցն ի Բաբելոն, որպէս գրեալ է ի մարգարէութեանն Երեմիայի, «զ-Հէ-երորդսն աւէ գիտասցես, և խելամուտ լիցիս յելից բանին տալ պատասխանի. մինչև յօծեալն եօթներորդ է և եօթնեբորդք ԿԲ»[2]. նմանապէս զնոյն ընծայեցուցանէ Դանիէլ:

Արդ նոցա այնքան, իսկ մեզ ի մասնէ զբոլորն Համառօտեալ ի թիւս միակաց լրման [408] և զբովանդակութեան ամաց ըստ տասանց եօթներորդացն որ թուոցն է լիագոյն է՝ ժամանակս կարգեաց Համառօտեաց ի[3] վերայ նոր Իսրայէլի, այսինքն Հեթանոսաց: Եւ զայս առատապէս Հեղեալ զգութ արարչական խնամոցն առ արարածս իւր, ողորմեալ[×] մարդասիրապէս բարեխօսութեամբ սրբոցն, որք Հեղին զարիւնս իւրեանց վասն ուղիղ և անբիծ դաւանութեանն ի Քրիստոս, և վասն ճգնութեան երանելւոյն Գրիգորի Արծ-

---

[408] ×) Այլ օր.՝ ողորմելով: ××) Այլ օր.՝ Արծրունեաց:

րունոյ[xx4] քաջ նահատակին, յաղթող վկային, խոստովանողին Քրիստոսի, և ի ձեռն հովուապետին սրբոյն Յովհաննիսի եպիսկոպոսի և ճգնաւոր քահանայի Գրիգորի, որք միշտ զողորմութեանց խնդրուածս վասն ժողովրդեանն տեառն ի վեր առաքէին, զոր օրինակ և հրեշտակն տեառն աղերսէր Աստուծոյ, ասէ, «մինչև յե՞րբ ոչ ողորմեսցիս Երուսաղէմի և քաղաքացն Յուդայ. այս Հ երորդ ամ է»[5]: Եւ յոր կոյս կամի հայեցուցանէ զնոսա:

Եւ լուաւ տէր աղօթից նոցա, և դարձաւ ի բարկութենէ սրտմտութեան իւրոյ գթութեամբ և ողորմութեամբ, որպէս գրեցին երանելի մարգարէքն:

[409]Եւ եղև յետ աւուրցն այնոցիկ, յորժամ ուրախ արար թագաւորն զնախարարսն Հայոց ի տաճարի խրախից, և խոստացաւ տալ իւրաքանչիւր ումեք զերկիր ի ժառանգութիւն՝ յայնժամ հրամայեաց ածել առաջի իւր զԱշոտ և զորդի նորա Գրիգոր: Եւ զգեցոյց նոցա հանդերձս և կանգնեաց նշանակ իշխանական և էած սուսեր ընդ մէջ և կամար ականակապ և երիվար ընտիր մեծազարդ. և եհան զնոսա յատենէն հոյակապ և շքեղ և երևելի պատուով[x] ի ձայնս երգոց և ի հնչիւնս փողոց. և քարոզքն բարձրացուցանէին զերգսն մեծ և սաստիկ գոչմամբ, եթէ տուաւ իշխանութիւն Վասպուրական աշխարհին Աշոտոյ և որդւոյ իւրոյ Գրիգորի. և հրովարտակ արքայի ի ձեռս քարոզչացն, թէ յղեաց արքայ զԳրիգոր որդի Աշոտոյ յերկիր իւր՝ տիրել աշխարհի իւրոյ փոխանակ հօր իւրոյ[6]:

Յայնժամ ելեալ իշխանն Գրիգոր յերեսաց արքայի մեծաւ ուրախութեամբ և անպատում խնդութեամբ՝ և եկն եմուտ յերկիր իւր յիշ[410]խանութիւն Վասպուրական կոչեցեալ: Եւ տիրեաց երկրի իւրոյ իշխանական ճոխութեամբ: Եւ էր ամաց իբրև տասանց յորժամ նստաւ յաթոռ տէրութեան հօր իւրոյ:

Յութերորդ ամի գերութեանն դառնայ Գուրգէն եղբայր

[409] x) Այլ օր.՝ ճոխութեամբ և պատուով:
[410] x) Այլ օր.՝ կամէին:

*Աշոտի[7] միապետել զիշխանութիւն տէրութեանն և յարդարել կարգել յօրինել զկարգս շփոթեալ աւերեալ երկրիս: Զի թէպէտ և Գուրգէն[8] մեծաւ զօրութեամբ ունէր զդէմ յարձակելոցն ի վերայ, որոց զիշխանականն ճեպէին[×] հասանել գահ, կամ որ արտաքին տաճկական պատերազմունքն բռնաբար ի ներքս դիմէին՝ սակայն ոչ յապահովանայր դեռ երկիրն: Այլ հինից ասպատակքն, սովոյն բռնութիւն, գերիվարացն տառապանք, գազանաց յարձակմունքն, ներքին և արտաքին վրդովմունքն հոլանի առնէին զաշխարհս:*

*Իսկ իբրև եկն Գուրգէն երկրորդ՝ փութացաւ գնաց հասանել ի վերայ առաջնոյն Գուրգինի. զի բռնացեալ բնակէր յամուրսն Սրինգ և Ջղմար. և ի հասանելն նորա անդր թողեալ զ[411]հակառակաբար մարտն՝ խօսին ի խաղաղութիւն, առաջի եդեալ զհրամանն արքունի, զգլխաւորին Տաճկաց, և Աշոտի հաւատալ զբոլոր տէրութիւնս Վասպուրականի: Որում ոչ անհնազանդ գտեալ՝ իմաստնախորհ զօրութեամբ ելանէ յամրոցացն: Եւ Գուրգէն երկրորդ հրեշտակս յղէ առ նա զայս օրինակ, եթէ «ընդ իս հաստատեա զանզրաւ կապակցութիւն ուխտի խաղաղութեան, և ես ապստամբեցայց յԱշոտէ, և ի միասին բաժանեալ զերկիրս կեցցուք[×] յապահովս»:*

*Բայց ոչ ետ տեղի Գուրգէն[××] այսմ՝ յերկուց պատճառաց, մի՝ զի մի՛ ապստամբ երևեցայց Տաճկաց բռնաւորին, զորոյ լուեալ էր զբազմաց այլ պատերազմացն[×××] արիութիւն, և զհարուածս զօրացն Տաճկաց, կասկած ունելով որ ինչ գործեացն ընդ Աշոտ: Երկրորդ՝ զի և ոչ հաւատայր Գուրգէնի՝ ամբողջ պահելով, զոր ինչ միջնորդեն երդմամբ, զհօրն իւր կիրսն ի նորայն հօրէն կրեալ յուշ առնելով: Այնուհետև ել գնաց դէմ եդեալ զյունականօքն [412] շրջել զկողմամբքն, յանձն արարեալ զհոգս իւր շնորհացն Աստուծոյ. զի կատա-*

---

[411] ×) Այլ օր.՝ կացցուք: ××) Այլ օր.՝ Գուրգէն տեղի: ×××) Ա $(^{2}/_{7})$՝ պատերազմոյն:

[412] ×) Այլ օր.՝ նոցա: ××) Ա $(^{1}/_{7})$՝ պատութեան. «Յիւ»-ն գրած է վերևը գունատ թանակով: ×××) Այլ օր.՝ առնէին:

րեալ էր սիրտ նորա ընդ տեառն Աստուծոյ ամենակալի:

Եւ ի հասանելն նորա ի Թէոդոսի քաղաքն ի Կարին գաւառ՝ եհաս լուր նորա[×] առ կայսր Միքայէլ Թագաւոր Յունաց. և փութացոյց վասն նորա զի անյապաղ առ նա հասցէ, և ի մեծ պատիւս հիւպատութեան[××] հասուցէ զնա, և խաչանշան դրօշիւք ճոխացի: Եւ մինչդեռ այս գործ խորհրդածէր՝ հասին ի վերայ նորա քաղաքապետք երկու, անուն միոյն Բշիր և երկրորդին Ջքրի, և կալան զնա տանել առ Աշոտ որդի սպարապետին: Նա թէպէտ և զչարացաւ ընդ եղեալսն՝ սակայն զանգիտեաց թողուլ զնա երթալ, ակնածելով ի չարայոյզ ազգէն Իսմայէլի, զի դեռ ևս տիրէր բռնութիւնն, և գերեալքն և հայրն իւր սպարապետն յարքունիս էին: Ազդ առնէ[×××] քաղաքապետին Տփղեաց. և խնդրեալ զնա առ ինքն՝ ստիպէր տագնապէր ահս արկանելով, թողուլ զօրէնս քրիստոնէութեան և յանդորր [413] ելանել: Նորա ծաղր արարեալ զնովաւ՝ ընտրեաց զկապանս և զբանդ, նաև զմահ քաջութեամբ վասն անուանն Քրիստոսի, քան զկեանս խղճիւ: Որոց կապեալ զԳուրգէն երեքկին կապանօք և դարձեալ ի պարանոցն եդեալ շղթայս՝ յղեն ընդ Ատրպատական Պարսից և տան ի բանդ ընդ կապեալսն. առ որ յղեալ բազում անգամ պէսպէս սպառնալեօք և ողոքական բանիւք հաւանութեամբ[×] թողուլ զօրէնս քրիստոնէութեան և հաւասարակցել[××] այլոց ուրացողացն զՔրիստոս. որ ոչ և փոքր մի խոտորեցաւ ի բանս բռնաւորին, վասն սիրոյն Քրիստոսի:

Դարձեալ զՍողոմոն Բագրատունի[9] վառեալ ի զէն սատանայական՝ յղէ առ նա բազում անգամ զնոյն խորհելով. և նա դարձուցանէր զնա կսկծեցուցանող բանիւք իբր զաբանեակ սատանայի:

Երևեալ նմա յայնժամ[×××] ի բանտին այր մի գեղեցկատեսիլ ի կերպարանս ալևորի, լուսակիզն փայլմամբ՝ ասէ ցԳուրգէն, «զգոյշ լեր, արիաբար մարտեաց, [414] քաջապէս

---

[413] ×) Ա ($^{Ա}/_{5-4Ն}$)՝ և ողոքական հաւանութեամբ. չիք՝ բանիւք: ××) Այլ օր.՝ և հասարակցել: ×××) Այլ օր.՝ երևեալ յայնժամ:

[414] ×) Այլ օր. Դերանկին: ××) Այլ օր.՝ գոռթ:

*վառեաց, Քրիստոսի զինուորեաց: Մի՛ խոտորիցիս ի մոլար օրէնս վրիպելոցն ի ճշմարտութենէն, ազգին Իսմայէլի, որպէս որք վրիպեցանն գերեալքն Հայոց»: Եւ նա եւս քան զեւս պնդեալ հաստատեալ կայր ի հաւատս, ի սէր և ի յոյսն Քրիստոսի. և մտեալ ի խորագոյն բանտ, տարեալ յամենայնի գոհութեամբ վասն անուանն Քրիստոսի, սովով և ծարաւով ժուժկալութեամբ մեծաւ:*

*Բայց Գուրգէն զմի ամ կեցեալ փոխի յաշխարհէս, դարձեալ յուրացողական ամբարշտութենէն: Եւ տարեալ հանգուցանեն ի տեղւոջ հանգստարանացն իւրեանց ի սուրբ Խաչի վանս*[10]*:*

*Եւ Դերենկին*[x] *զօրացեալ զօրութեամբ Քրիստոսի, և հոյակապ և անուանի եղեալ ընդ բոլոր աշխարհ Հայաստանեայց՝ և խաղաղանայր երկիրս ի չփոթմանցն ի վերայ եկելոցն: Եւ սկսաւ երկիրս առնուլ զնորոգումն, և եկեղեցիքն պայծառանալ ի զարդ և ի պաշտօնս չքեղութեան, և ցրուեալքն դոռթ*[xx] *տուեալ դարձան յիւրաքանչիւր տեղիս՝ շինել, տնկել, մոռ[415]անալ զցաւսն և զտրտմութիւնսն զոր կրեցին:*

*Ընդ ժամանակսն ընդ այնոսիկ մինչ ճոխացեալ մեծամեծս փքայր Ջափրմոթոքլ ի վերայ քրիստոնէից, որպէս Սենէքերիմ նախնին մեր ի վերայ Երուսաղէմի և ժողովրդեանն Իսրայէլի՝ յեղակարծում հասեալ ի վերայ նորա որդին իւր Մոթէին*[x11] *սպան զնա, և ինքն թագաւորեաց փոխանակ ընդ հօր իւրոյ, և յետ Զ ամսոց մեռանի: Եւ թագաւորէ ընդ նորա որդի հօրեղբօր նորա Մուհթիս*[xx]*, և կացեալ ամիսս Գ մեռանի*[12]*:*

*Եւ իշխանքն Հայոց կային*[xxx] *ի տագնապի և խնդրէին զելս իրացն գտանել ի Քրիստոսէ, յորմէ լքեալն էին: Բայց յետ աւուրց բազմաց անցանելոյ չփոթմանցն՝ Գուրգէնի ընդարձակեալ նախախնամութեամբն Քրիստոսի և ելեալ փր-*

---

*[415] x) Այլ օր.՝ Մութէին:*
*xx) Այլ օր.՝ Մութիս: xxx) Ա (2/Ձ)՝ կացին: xxxx) Ա (2/Ռ)՝ ընդ վազս փռնգալէր:*

ծեալ ի բանտէն՝ եկն եմուտ յաշխարհ իւր: Եւ իբրև ազդ եղև Դերենկին՝ գնաց ընդդէմ նորա պատերազմաւ, և դառնայր փախստեայ: Եւ դարձեալ ուժեղացեալ դարձաւ ընդդէմ Գուրգինի. և երիվարին ընդ վազս փոնգալիր[xxxx] [416] խռոխտանացն փրծուցեալ զնա ի ցաւոցն, քանզի այն ինչ կազդուրեալ էր Գուրգէն ի հիւանդութենէ և ի կրից աշխատութեանցն և ի տառապանաց բանտին. հասեալ կալան զնա և տարան եդուն ի բանտ երկաթից ի քաղաքն Հաղամակերտ[13]: Եւ ծառայ մի Դերենկին որ բանտապանն էր՝ լուծեալ զնա ի կապանացն՝ և տարեալ մուծանէ ի սենեակն ուր ննջէր Դերենիկն. և ծառայն զչարիս խորհեալ սպանանել զԴերենիկն և զաշխարհս նուաճել զիշխանութիւն Գուրգինի, զի և դիպող էր ժամն: Բայց Գուրգէն ընտրեաց զսէրն Քրիստոսի, քան զսէր փոքրամեայ աշխարհիս. ոչ խնդրելով զվրէժ արեան սպանելոյ հօր նորա ի պապոյն նորա, ձայն բարձեալ արտասուալից առ Դերենիկն, և զսուսեր մերկ ի ձեռին ունելով, և վաղր և սակր մի՝ ասէ. «որդեա՛կ իմ Դերենիկ, ողջոյն քեզ, ողջոյն քեզ. ես ելի գնացի ի յաշխարհն Յունաց»: Եւ նորա առ ահն պակուցեալ, ասէ. Հայր իմ, խնայեա յիս. և [417] այլ ոչ զօրեաց բարբառել ինչ:

Եւ Գուրգէն ելեալ գնաց փութանակի անյայտ առնել զինքն, մինչև յաջողեսցի ըստ կամաց Քրիստոսի յո՛վ և երթիցէ: Եւ երթեալ հասանէ ի գիւղակ մի Երագանի անուն առ մոնազն մի, որ էր երէց վանիցն: Զնա որպէս զերկիւղած[x] Աստուծոյ ապաստան յինքեան արարեալ՝ խնդրէր պահպանել նմա. և նորա արկեալ զնա ի փոքրագոյն տեղի մի նեղ, և ինքն փութացաւ զոյժ ետ վասն նորա՝ մահու պատահել, լի անմտութեամբ մոլի աբեղայն, որում ոչ հրամայեցաւ. այլ նա ըստ կամս իւր կատարեաց ի վերայ իւր զարենապարտն լինել, որ տալոց է հատուցումն վրիժուց յաւուր դատապարտութեան իւրոյ:

---

[417] x) Այլ օր.՝ զերկիւղ: xx) Ա (2/են)՝ առ ձեռն. I (232), II (206)՝ այլ ձեռն. III (320), Նախն. (155)՝ առձեռն:

*Բայց Դերենիկն կալեալ զնա պահէ ի զգուշութեան, ոչ ինչ ստնանել նմա, բաց ի կապանացն յորս արկեալ էր զնա, ըստ հատուցմանն բարւոյ. առ ձեռն[xx] պատրաստ կշռեաց նմա և օրհնեցաւ ի սրբոյն Զաքարիայէ:*

*Քանզի իբրև լուաւ երանելին Զաքարիայ, [418] եթէ ըմբռնեցաւ Գուրգէն՝ փութացաւ և եկն հանդերձ եպիսկոպոսօք աշխարհին. և էր ընդ նմա Աշոտ իշխանաց իշխան, և աղերսեալ զիշխան Դերենիկ, զի լուծցէ զնա ի կապանացն: Որում ունկնդիր եղեալ իշխանն՝ կատարէ զասացեալսն: Եւ դաշնաւորեալ ի մէջ երկոցունց՝ մնալ առանց կասկածանաց. և զՄարդաստան գաւառն զբուն բաժին Գուրգենայ դարձոյց առ նա Դերենիկն: Բայց Գուրգէն կասկած ունելով յԱշոտէ, թէ իբրև զապստամբէ ումեմնէ զեկուցանիցէ զնմանէ առաջնորդին Տաճկաց՝ ել գնաց կեալ շրջաբերական յեղափոխմամբ, արիական քաջասրտութեամբ, սիրեցեալ ընդ բնաւ աշխարհաց:*

*Բայց քանզի հաւատացեալ էր վերակացութիւն աշխարհիս Հայոց Աշոտի, որ իշխանաց իշխան՝ ձեռն ի գործ արկեալ նուաճել զիշխանս Հայոց, զՎրաց և զԱղուանից, որ եղև իսկ: Եւ զօր գումարեալ եկն եմուտ ի Վանտոսպ, և Դերենիկն [419] յանդիման եղև[x] նմա. և նորա կալեալ զնա և ի կապանս մատնեալ որպէս զանհնազանդ ոմն՝ և եկն անց յՈստանն Ռշտունեաց:*

*Ազդ եղև Գուրգենի վասն Դերենկին, և զիա՛րդ ըմբռնեցաւ. փութացաւ ի կողմանցն Տարունոյ երագագոյն ճեպ զճեպի. և բանակեցան Ն արամբք, վառեալ ի զէն և յասպազէն, ի Նորագեօղ Ռշտունեաց[13]: Եւ գրէ առ իշխանաց իշխան՝ ի բաց լքանել եթէ ունիցի ինչ անօգուտս խորհել, ապա թէ ոչ՝ տեսից զքեզ, ասէ, ի զէն և յասպազէն և ի ճակատամարտ. և խորհէր յեղակարծում ի գիշերամարտս հասանել ի վերայ Աշոտի: Բայց առոգացեալ իմաստութեամբ իշխանաց իշխան՝ փութացաւ առ կատարումն գրելեացն*

---

*[419] x) Ա (Ր/Վ)՝ հանդիման եղեալ նմա: xx) Այլ օր.՝ ի կնութիւն:*

Գուրգինի: Եւ քանզի այն ինչ վախճանեալ էր կին Դերենկին՝ գրէ Գուրգէն առ Աշոտ, ասէ. «և այս ևս քաջահաճոյ թուիցի քեզ, վեհդ և ամենեցուն գիտելիդ. և զի եղիցի ի մէջ քո և Դերենկիդ անկասկած միաւորութիւն՝ զդուստր քո տացես կնութեան** Դե[420]րենկիդ, տիկնութեան Վասպուրականի»: Եւ անյապաղ գլխաւորեալ խորհրդոցն՝ առնու ընդ իւր զԴերանիկն, և էանց գնաց ի տուն իւր ի Բագարան: Եւ արարին նաւակատիս մեծ հարսանեաց փեսայութեան Դերանկին, ի թուականութեան Հայոց ՅԺԱ-երորդ ամին:

(ԺԵ)

## ԴԱՐՁ ԳԵՐՈՒԹԵԱՆ ԻՇԽԱՆԱՑ:

Ընդ նոյն ժամանակս ընդարձակեալ բարերարին Աստուծոյ իշխանացն Հայոց՝ դարձան յիւրաքանչիւր բնիկ տէրութիւնս. և կէին յապահովս խաղաղացեալք և հնազանդեալք ընդ պետութեամբ իշխանաց իշխանի[1]:

Ընդ նոսին և երանելի եպիսկոպոսն Յոհաննէս և ճգնաւոր քահանայ Գրիգոր, մարտիրոսական հանդիսիւ ամբողջ գխոստովանողականն բերելով զանուն՝ գերծեալ ի բանտէն յոր տուանն՝ և գան հասանեն յերկիրս այս մեր, բերելով զաւետիս արձակման գերելոցն, որգունակ Խորէն և Աբրահամ խոստովանողքն Քրիստոսի, ի պարսկայինն գերծեալ ըկանաց դառնագոյն կրիցն՝ զընդարձակութենէ նախարար[421]ացն Հայոց մատուցին ողջոյնս աւետաբերս՝ դարձուցանել տեառն զգերութիւն ժողովրդեան իւրոյ:

Իսկ երանելի եպիսկոպոսին Յոհաննու ընտրեալ իւր առանձնակ միայնաստան տեղեակ, աղօթից միայն պարապեալ, ի բաց կալով յեպիսկոպոսական հովուապետութենէ: Յորոյ տեղի մատուցին զՅոհան ոմն, այր հեզ և բարեպաշտօն, լցեալ երկիւղիւ Տեառն, պատշաճ առ վերակացութիւն եկեղեցւոյ Քրիստոսի:

Բայց սպարապետն Սմբատ և տիկինն Վասպուրական Հռուփսիմէ անդէն մնաց, և յաւելան ի մարտիրոսական հոլովսն: Քանզի հարցեալ և բռնադբօսեալ զերկոսին գլխաւո-

*րին Տաճկաց, անունկնդիր լինելով ասացելոցն, և ի տեսչութենէ Աստուծոյ թողացուցեալ նոցա առանց վտանգից՝ որպէս հաճոյ թուիցի կեալ ի հաւատսն Քրիստոսի համարձակաբար. մեռան նոքա անդ և թաղեցան փառաւորապէս ըստ օրինի քրիստոնէից յուխտէ Յակոբկաց, որ անդ են հաւատացեալ ժողովուրդք, և զ[422]խոստովանողական անուն ստացեալ փառաւորեցան յերկրի և պսակելոց են ի Քրիստոսէ ընդ ամենայն սուրբս. ամէն:*

*Իսկ Գուրգէն օր ըստ օրէ աճէր զօրութեամբ ի բազում քան թէ ի սակաւ տեղիս, զոր ի Տարօն և զոր յԱնձաւացիս և զոր յԱրզն[x] և զոր առ ամենայն ուրեք, որպէս ցուցանեն յիշատակարանքն որք յառաջ քան զմեզ հոգացան, զոր ինձ աւելորդ թուի երկրորդել: Բայց յետ բազում յուզիցն և պատերազմացն եհաս տիրել նմա Անձաւացեաց տէրութեանն զայս օրինակ:*

*Մուշեղ Անձաւացեաց տէր հիւանդացեալ զյետին կեալն, ունելով որդի ստնդեայ. և Դերանիկն խորհէր տիրել աշխարհին: Եւ ձեռագրեալ Մուշեղայ զամրոցաւն Նորաբերդ[2] և շուրջ զսահմանսն՝ Դերանկին հաւատալ, և զայլ ևսն՝ որդւոյ իւրում ժառանգեցուցանել: Եւ եղև ընդ մեռանելն տեառնն Անձաւացեաց, նորին[xx] տիկին Հեղինէ գրէ առ Գուրգէն, «եթէ հաճոյ թուիցիմ քեզ կնութեան, և կամիցիս քեզ զտիրելն Անձաւացեաց՝ մի վեհերեալ յապաղելով դանդաղկոտ լինիր և վերջ[423]անար զփութալն». և հաճոյ թուեցաւ Գուրգինայ խորհուրդք տիկնոջն Հեղինէի[x]: Եւ ելեալ գնաց եմուտ յամուրն[xx] Կանգուար, և կատարեալ զոր ինչ ախորժեացն՝ տիրեաց Անձաւացեաց մեծաւ զօրութեամբ:*

*Իսկ Դերանիկն գործ առնէր ի գիւտս հնարիմացութեան, և տարուբերէր յանձն իւր՝ գտանել զելս իրացն, որով կարիցէ հանել զամուրսն ի Գուրգինայ և տիրել աշխարհին: Եւ ի բազում յուզիցն և ի խնդրոցն և զօրաժողովն լինելոյ և*

---

[422] x) Այլ օր.՝ յԱրզն: xx) Այլ օր.՝ տիկինն նորին:
[423] x) Այլ օր.՝ Հեղինեայ: xx) Այլ օր.՝ ի յամրոցն:

*պատերազմ ընդդէմ վառելոյ[xxx] և զձև ամրական մաքառմանցն յարդարելոյ և բռնալիր ուժեղագոյն մեքենային բախմանց քարաձգութեանցն, զոր[xxxx] և ընդունայն աշխատութեամբ վարանեալ, անստնանելի[xxxxx] մնալով ամրոցին՝ դառնայ յիւր իշխանութիւնն: Բայց զերկրորդ մասն Անձաւացեաց Հանդերձ Նորաբերդ ամրոցաւն Դերանկին նուաճեալ ընդ իւր գործակալօք, և զՄարդաստան գաւառ զբուն բաժին տուեալ ցԳուրգէն, և նորա զիւր գործակալս թողեալ անդր: Եւ զի ստեալ Դերանկին [424] Գուրգենայ եհան անտի զգործակալսն՝ նոյն գունակ[x] Գուրգէն Հնարաւորեալ առնու զամրոցն և Հանէ զնորա գործակալսն և միապետէ զտէրութիւնն Անձաւացեաց և խաղաղեցուցանէ զերկիրն և բնակէ յանՀոգս յապաՀովացեալ ի Հինից. շինէ եկեղեցիս և կատարէ տօն նաւակատեաց խաղաղութեան:*

*Այս Զ ամ էր գերութեանն Հայոց, և ՅԶ նորուն թուականութեան: Ի ՅԷԺ ամի[xx] Հայոց թուականութեանս եկն Աշոտ Վասպուրական իշխան ի գերութենէն:*

*Խոստացայ վերագոյնն գրել վասն Բուխայի մանաւորաբար զվրիժուցն Հատուցանել զպարտիս, այլ ոչ զբովանդակն:*

*Ի դառնալն Բուխայի յարքունիսն, և կայր զյօնսն պոզտեալ[xxx], փքացեալ ուռուցեալ[xxxx] լի ամբարտաւանութեամբ՝ կոկոզաբանէր ի վերայ մեծամեծ գործոցն գործելոց, կարծէր իւրով զօրութեամբ զօրանալ ի վերայ կործանմանն Հայոց, և մոռացօնս եղեալ Հատուցումն մեղաց մերոց ի ձեռանէ Տեառն, որպէս [425] Իսրայէլին ի Հնումն առ Սենեկեաւ զնաբուքոդոնոսորայն: Կինն ՍաՀակայ որդւոյ Իսմայէլի, զորոյ զՀանգամանսն ցուցաք, զմեռանելն ՍաՀակայ և*

---

xxx) Այլ օր.՝ վառել: xxxx) Ա ($^{2}/_{5-6}$)՝ զոր և ընդունայն. ուղղ.՝ զուր և ընդունայն (Նախն. 247): xxxxx) Այլ օր.՝ անստանալի:

[424] x) Այլ օր.՝ նոյնպէս: xx) Ա ($^{1}/_{3a}$)՝ ի ՅԺԷ ամի: I (236), II (209), III (326) չիք՝ Ժ: xxx) Ա ($^{2}/_{11}$)՝ I (236), III (326)՝ պոզտեալ. II (210)՝ պըըզտեալ: xxxx) Ա ($^{2}/_{12}$), I (236), II (210)՝ փքացեալ ուռուցեալ: III (326) չիք՝ ուռուցեալ:

զկնոջն հրապարակագոյժ լինել, վասն որոյ պատճառանաց սպանանի այրն նորա. զորոյ ցուցականութիւն պատմեալ գլխաւորին Տաճկաց Ջափրի: Իսկ նա ըստ սովորակի ցանկաւէր պղծալից անյագութեանն՝ խրոխտացեալ մրմռեալ յանձն գազանեղէն թունիւք առաւելեալ, բորբոքեալ տապախառն բոցով հեղուլ զմահածին թոյնսն ի վերայ Բուհայի. և յայտնի ոչ վայելչանայր կատարել զոր կամէրն, մի՝ վասն յաղթող մեծանուն գործոյն, նախատ անձին համարելով, երկրորդ՝ վասն վաշտիցն զօրութեան: Ապա յղէ զնա ի Խորասան, և նմա հաւատաց զվերակացութիւն աշխարհին. և ինքն Ջափր գործ առնէր առ սակաւ սակաւ մեկնել ի նմանէ զզօրսն՝ դիմօք յաշխարհս աշխարհս ապատակ սփռելոյ: Եւ նոյնժամայն հրաման հասեալ յափփուսոփս յոմանս ի գաղտն[426]իս՝ զրաւ առնել կենացն նորա. և իսկ և իսկ հրամայեալքն զկատարումն առնուին[3]:

(ԺԶ)

## ՎԱՍՆ ԴԱՌՆԱԼՈՅ ԱՇՈՏՈՅ ԻՇԽԱՆԻՆ Ի ԳԵՐՈՒԹԵՆԷՆ ԵՒ ՎԱՍՆ ՎԱՀԱՆԱՅ ԱՐԾՐՈՒՆՒՈՅ:

Ընդ այն ժամանակս ապստամբեալ ի պետութենէն Տաճկաց քաղաքացիքն, որում Կզուինն ասեն[1]: Իսկ առաջնորդին Տաճկաց զօր գումարեալ, այրուձի կազմեալ յընտրելոց զօրաց Ասորեստանի և Արաբացւոց, ընդ որս էր և քաջն մեր Աշոտ ախոյեանայարձակ զօրութեամբ և ելեալ զհետ արքունի զօրուն. և զօրագլուխ կացեալ էր Մուսէ որդի Բուխայի: Նորա խոստացեալ էր առնել դառնալ Աշոտի յիւր բնիկ տէրութիւնն, ժամ տուեալ ի գլուխ հանել, յոր չոգանն՝ զգործ պատերազմին:

Իբրև հասին ուր հանդերձեալն էին՝ և երկոցունց զօրքն անհուն բազմութեամբ յանդիման եղեն միմեանց, և ճակատ առ ճակատ զգործս պատերազմին յարդարէին, և քաջքն և հոյակապքն ելեալս զմիմեամբք առնէին ախոյեանայարձակ խրոխտանօք: Անդանօր [427] քաջն մեր Աշոտ զհիւանդութիւնն կեղծաւորեալ ի տեղւոջ օթոցին անկեալ դնէր, մինչ

ակն ունէին յառաջանալ ի գործ պատերազմին: Եւ ինքն զօրավարն Մուսէ ճեպէր շտապէր՝ փութալ առ պատերազմնն վառել, և նա ևս քան զևս զկարծեցեալ հիւանդութեանն անճեցուցանէր զխստութիւն ցաւոցն ծանրանալն նմա: Եւ մինչդեռ յայնմ մահիճսն կարծեալ հիւանդութեանն կեղծաւորէր՝ և ախոյեանարձակքն զմիմեամբք շութափէին, և ահեղ որոտումն և ահեղ թնդիւնք և բախմունք խուռն յարձակելոյ իբրև յամպոյ ճայթիւնք կարկտաբերք հրձգութեանց կերպաձգէին: Եւ ուժեղացեալ ղաշիկն քաղաքային ի վերայ Մուսէի զօրուն, մինչ ածին արկին զբուն բանակաւն ուր և Աշոտն մեր թուէր գոլ խօթացեալ. մտեալ Վահան աղերսէր համոզէր՝ մի կալ մնալ, մինչ զքաջանունութիւնն ընդ վատասրտութիւն կարծել յոմանց խառնել, թէպէտ և անկարծ վարկանէր զկեղակարծն: Նոյն[428]ժամայն անճապարեալ աշտանակեալ ի Նիւս Նժոյգ[x] երիվարին, զէն զանձամբ արկեալ, նիզակ ի ձեռն առեալ, խրախոյս ի ձայն բարձր բարձեալ առ իւր ազատագունդ վաշտն՝ ասէ. «Հա՛պա, քաջք Հայոց, և յայսմ ծանիցեն զմեզ և զարիանալն մեր»: Եւ յանդուգն դիմեցուածովն[xx] ի վեր քան զզարմանս՝ այն ինչ ի քթթելական դարձուցին զխրոսակսն[xxx], և զռազմն ղաշիկ քակեցին և զյառաջագահ ախոյեանսն փայլակնահար արարեալ դիթաւալ կացուցին և իբրև հողմ հոսեալ զփոշի ամարայնոյ՝ այնպէս արագապէս զպատերազմին զխաւորեցին նահատակութիւն: Եւ ամենայն խորհուրդք Մուսէի առին զկատարումն ի վերայ թշնամեացն: Բայց Մուսէ ոչ հաստատնագոյնս վասն Աշոտի զխոստմանն բերելով յանձնառութիւն, արձակել զնա յիւր իշխանութիւնն, զայս խորհելով թէ զայսպիսի քաջ այր և պատերազմող ոչ պատշաճ վարկանելի է ի հեռաբնակ վայրս ի դրանէ արքունի կացուցանել: Բայց Աշոտ [429] վերջոտ-

---

[428] x) Ա ($^{Ա}/_{2-3}$)՝ և այլ օր.՝ ի նիւսն շոգ երիւարին: xx) Ա ($^{Ա}/_{9-8ա.}$)՝ դիմացուածովն: xxx) Այլ օր.՝ զխրոսական: xxxx) Այլ օր.՝ խորհեալ:

[429] x) Այլ օր.՝ վերջնոտեալ: xx) Այլ օր.՝ խաղաղանալ: xxx) Այլ օր.՝ առ Բլտակին: xxxx) Ա ($^{Ա}/_{9}$, $^{1}/_{15-16}$, $^{2}/_{9}$)՝ անձաւացեաց, ոչ թէ անձաւակաց (տե՛ս I (239, ծն. 4), II (212, ծն. 5): xxxxx) Այլ օր. չիք՝ ոչ:

*նակի փակեցին ի ներքս զբանակս, սրով և աղեղամբ վէրս մահաբերս ի վերայ եդեալ՝ յոլովք անկան ի զօրուէն. և ինքն Աշոտ ճողոպրեալ× միածի ելեալ ենաս փախստեայ մինչ յաստանն Ուշտունեաց, թողլով զբուն բանակն ի նմին տեղւոջ. և այլքն ցրուեցան յո՛վ և անապարեաց ոք. և ընդ այգն ընդ [431] առաւօտն առին յաւարի զբանակն հանդերձ ախիւն և զտուևս գանձուցն զորս առ ինքեանց:*

*Բայց իշխանն Դերենիկ անգիտացեալ զեղեալսն՝ ի նմին աւուր եկն բազմաձեռն զօրու բանակեցաւ ի Հարաւ կողմն բերդին, և իբրև զեկուցաւ նմա եղեալքն՝ դարձաւ անդրէն գնաց յիւր ճանապարհ:*

*Եւ դարձեալ գումարեալ հեծեալս Ր, զՍահակ Բագրատունի զորդի իշխանաց իշխանի և զՍմբատ և զՇապուհ և զՄուշեղ Մոկաց իշխեցողք[1] և զԱրգնոյ զօրսն[2], և եկեալ կացին մօտ առ Կանգուար բերդ, և պատերազմեալ զամիսս Բ՝ ոչ ինչ գործ ի գլուխ ելեալ× ըստ ախորժման. ապա համոզեալ Սահակայ և Սմբատայ այլովքն եւ՝ բարձին ի միջոյ զաղմուկն, և սէր բարեկամութեան ի մէջ երկոցունց հաստատեալ՝ գնացին յիւրաքանչիւր տեղիս: Եւ Գուրգէն և Աշոտ առանձին միմեանց պատահեալ ետուն ողջոյն միմեանց և ուխտեցին ուխտ խաղաղութեան մինչև ցայսօր ժամանակի:*

(ԺԸ)

## [432] ՎԱՍՆ ՄԱՔԱՌՄԱՆ ԱՇՈՏ ԻՇԽԱՆԻ ԸՆԴ ՈՒԹՄԱՆԻԿՍՆ ԵՒ ՏԵՂԱԹԱՓՍ ԱՌՆԵԼՈՅ ԶՅԱՓՇՏԱԿԵԱԼՍՆ Ի ՆՈՑԱՆԷ:

*Բայց Աշոտ գնացեալ տայ պատերազմ ընդ ծովեզրեայսն որք Ութմանիկ կոչին, որք ամրանային ի յԱմիւկ անկասկածելի քարանձաւին. վասն զի ըստ Պտղոմեայ և Աղեքսանդրի[1] սահմանագրութեանն, կամ թէ մեր Արատոյեսի որդւոյ*

---

[431] ×) I (240), II (213) գործ ի գլուխ եղեալ: Ա. ([illegible]), III (330), Նախն (193) գործ ի գլուխ ելեալ

Սանատրկոյ՝ ի Վասպուրական գաւառացն Համար Թուեալ է գաւառն այն, զոր Ճ ամօյ յառաջ Հանեալ էր բռնակալութիւնն Տաճկաց ի Վասպուրական պետութենէ[2]:

Իսկ ընդ աւուրսն ընդ այնոսիկ սպանեալ էր Ուխմանկացն, որ յամուրսն նստէին՝ զՈստոմ Վարաժնունի[3], որ զտանուտերական պատիւն յայնժամ ունէր զՎասպուրական աշխարՀիս. և ի վերայ նոցա զօրաժողով եղեալ Աշոտ և որդի իւր Դերանիկն, առնել մարտ պատերազմի ընդ ամրոցին:

Բայց քանզի անպատերազմելի էր ամրոցն, միայն բաւականաւն ռոճկաց մի վատնիցի՝ առեալ իշխանին զՎարազ ի ձեռանէ Տաճկացն, [433] զի[×] յինքեանս գրաւեալ ընդ Հարկաւ ծառայեցուցանէին զպաշտօնեայս սրբոյ Խաչին, մանաւանդ զի և զգլխաւոր վանացն զՀայրն, որում Գրիգոր անուանէր՝ զնա կալեալ եդեալ ի խորափոր խաւարային բանտի: Որում որոնել[××] փրծանել ի վտանգաւոր բանտէ: Եւ անտի դարձեալ դառնայր Աշոտ ընդ միւս ևս ամրականն ընդ ոստոզերծ[×××] քարանձաւի, ի յարևելից կուսէ լերինն Վարագայ, ի վերայ գեաւղջն Կոխպանից[4], Հանդէպ եկեղեցւոյն սրբոյն Հռիփսիմեայ, զոր շինեալ էր սրբոյն Գրիգորի ի վերայ գեաւղջն ԱՀևականից[5] ի կատարածի լուսաւորութեանն Հայոց: Քանզի էր ի տեղին այն յառաջագոյն տեղի մեՀենից[××××] ՎաՀեավաՀանի: Այլ իբրև այն ինչ մերձ լինէր ամրոցն ի պաշարումն՝ Ամդայինն Յիսէ, որ ՇեՀի[×××××] որդին[6], որ զզօրապետութիւնն Հայոց ունէր, ճանաչէր՝ ի Հրապոյրս Մանազաւեան[××××××] պետոյն և ուխմանացն ելեալ՝ երագապէս եկն եՀաս ի վերայ Աշոտի ԺԵ Հազարաւ Հեծելօք վառելովք. որոց Թողեալ զգործ պատերազմի [434] ամրոցին՝ դար-

---

[433] ×) Այլ օր. չիք՝ զի: ××) Ա ($^1/_{11}$)՝ արոնել: ×××) Ա ($^1/_{ԺԵ}$)՝ ոստզերծ: ××××) Այլ օր.՝ այնմիկ յառաջագոյն տեղի մեՀեննեաց: ×××××) I տպ. ամենայն ուրեք՝ չեխի, չեխայ: ××××××) Այլ օր.՝ մանազօնեան:

[434] ×) Ա ($^1/_4$)՝ աւժնդակ. ուղղ.՝ աւժանդակ (Նախն. 16): ××) Այլ օր.՝ Լեղուոյ գեղջն: ×××) Ա ($^1/_{ԺԵ}$)՝ որ զաւրացն գեղեցիկ. ուղղ.՝ ուր զԱրայն Գեղեցիկ (Նախն. 363): ××××) Ա ($^1/_{3Ե}$)՝ խողացեալ: ×××××) Ա ($^2/_{3-4}$)՝ զաւր ասպազինեալ երիւարն. Թերևս՝ զիւր սպա-

ձաւ գնաց աներկիւղ քաջասրտութեամբ ընդդէմ նորա օժնդակ[x] զօրու Գուրգինի, և ղաշիկ արարեալ յայնկոյս քան զՎանտոսպ, ի տեղւոջն արձանաշար քարակարկառ գոգաձև միջոցի երկուց բլրակաց, որ հայի յԵրիվարաց արկման դաշտն, ի վերայ Լեզուոյ գեաւղջն[xx], որ զԱրայն գեղեցիկ[xxx] առասպելաբանեն սպիանած վերայն սպանելոցն ի մանկանցն Շամիրամայ: Եւ ամիրայն Յիսէ խաղացեալ[xxxx] բազմաձեռն զօրուն՝ յառաջ խաղայ ընդ Աքաղայու կատար ասացեալ բլուրն:

Իսկ Աշոտ մտրակեալ զիւր ասպայզինեալ երիվարն սպառազէն[xxxxx] կազմեալ ի մարտ պատրաստել[xxxxxx], չահատակելով գունակ ի խաղս գնդակաց, զսակաւաւորութիւնն իւր հազարաւորս համարելով, քանզի ոչ ունէր աւելի քան զերկու հազարս հեծելոց:

Յայնժամ Վահան հայր Գագկայ Ապումրուանայ[7] և ինքն Գագիկ առնէին համոզել ի մէջ նոցա: Եւ առ չանսալն՝ յետուստ[xxxxxxx] կողմանէ Վահան հարեալ ի գաղտնիս զգարշապար երի[435]վարին՝ արար կաղանալ նժոյգ ասպարակոզին. յորում և ոմն հաւատարիմ Յիսէի Սէմ անուն յառաջ խաղացեալ՝ պատահէ իշխանին, ընդ Վահանայ խորհրդակցեալ խորհել զխաղաղութիւն և զմարտն գրգռեալ ցածուցանել և զվառեալ պատերազմն շիջուցանել. զոր ոչ անունկնդիր լեալ Աշոտ՝ վերջոտնեալ եկն բանակեցաւ յԱրտաշեսեան աւանին[8], և Յիսէ ի Վան քաղաքի: Նոյնժամայն գնացին Դերանիկն և Գագիկ մտին առաջի Յիսէի, խօսեցան բանս խաղաղութեան[x], ետուն պատանդս յանձնառութեամբ հարկացն արքունի, և դարձուցին ընդ նոյն ճանապարհ ընդ որ եկեալ էր, ոչ թողացուցին նմա ելանել ընդ աշխարհն Վասպուրական. և դարձեալ գնաց եհաս ի Պարտաւ յաշխարհն Գարգարացւոց: Եւ իշխանքն մեր ստացան ճոխագոյն հոյակապ անուն ի մէջ Հայաստանեայց, և այլ ոչ ես

---

ռազինեալ երիւարն (II, 215, ծն. 6) xxxxxx) Այլ օր.՝ պատրաստեալ: xxxxxxx) Ա ($^{2}/_{3}$)՝ յերուստ. ուղղ.՝ յետուստ. (Նախն., 147):

[435] x) Այլ օր.՝ խաղաղականս:

այնուհետև համարձակ յանձն առնոյր մտանել ընդ աշխարհս Վասպուրական:

Արդ Աշոտի կեցեալ ամս ԺԹ, տևեալ իշխ[436]անական ճոխութեանն ԺԶ ամ յառաջ քան զգերութիւնն Հայոց, և Ե ամ[9] ի գերութեանն արարեալ, և Զ ամ կեցեալ յետ գերեդարձն[×10] լինելոյ, և մտեալ յաշխարհս՝ համարձակ զքրիստոնէութեանն ունելով զկրօնաւորութիւն, և ի զղջել յապաշաւ ի վերայ ուրացութեանն զՔրիստոս լինելով:

Բայց զի՞նչ աստանօր ինձ ասելի է[××], զի թէպէտ դառնալով դարձան յայտնապէս յերկրպագութիւնն Քրիստոսի Աստուծոյ մերոյ՝ այլ զկանոնական սահմանադրութիւնսն ոչ բերելով ուղղակի, ոչ միայն Աշոտ, այլ և ամենայն իշխանքն Հայոց, որք գերեդարձքն[×××] եղեն. զուրացութեանն ի բաց դնելով զվատթարութիւն, սակայն կանոնական սահմանադրութեանն արտաքոյ մնացեալ, զայթ ի գայթս զքրիստոնէութեանն վարս բերելով անառակութեամբք և արբեցութեամբ, խառն անկողնօք[××××] և պղծութեամբք, աղտապիղծ սարսափելի և գարշելի խառնակութեամբ արուապղծութեամբք, որ անցուցանէ[×××××] զանցանէ զանասնական խառնակութեամբքն երիքովեան և սոդոմական լրբութեամբ, [437] անամօթաբար այր զարամբք բորբոքեալ, դեզադէզ զհրացանն բերելով յերկնուստ զանզրաւ կիզումնն, անցուցեալ զանցուցեալ զսատակչական կործանմանն ջրհեղեղին: Զի նոքա վասն ի կանայսն մոլելոյ ընդ դստերսն Կայենի խառնակելով[11] ջրով կործանեցան. իսկ որք արուք ընդ արուս զխայտառակութիւն գործէին՝ ծծմբախառն[×] հրով բորբոքեցան, զյաւիտենական հրոյն զառհաւատչեայս յինքեանս կրելով, և յերկրորդումն հանդերձեալ են վերստին մտանել ի տանջանս յաւիտենականս, «ուր որդն ոչ վախճանի և հուրն ոչ շիջանի»[12]: Արդ եթէ Սոդոմայեցիքն, որք հրով զվրիժուցն հատուցին փոխարէնս, և դարձեալ տանջելոց են՝ որք բովանդակ չարիւք անդր երթալոց են ո՞րպիսի ակնկա-

---

[436] ×) Ա ($^{1}/_{6}$)՝ գերադարձն, ուղղ. գերեդարձն (Նախն., 6): ××) Այլ օր.՝ ասելի է ինձ: ×××) Ա ($^{2}/_{7}$)՝ գերադարձքն. ուղղ.՝ գերեդարձքն (Նախն. 6): ××××) Այլ օր.՝ անկողանօք: ×××××) Այլ օր.՝ անցանէ:
[437] ×) Ա ($^{1}/_{6-7}$)՝ ծծմախառն:

*լուԹիւն տանջանաց զանց արասցէ զնոքօք. արդ տես, մեղք քան զմեղս և տանջանք քան զտանջանս:*

*Բայց Աշոտ, իբրև եհաս ժամ ելիցն իւր յաշխարհէս՝ յանհունս բերեալ զգեղջ և զապաշաւանս յորդ[438]ահոսան արտասուօք զխոստովանողականն ի դիմի հարեալ միջնորդուԹիւնն, յուսացեալ ի մարդասիրուԹիւնն Քրիստոսի[13], զմաքսաւորին և զաւազակին զյետնորդսն բարբառեալ, և զփրկական մարմին և արիւն որդւոյն Աստուծոյ հայցեալ հաւատով ի Թողութիւն մեղաց, յուսացեալ ի քաղցրուԹիւնն Աստուծոյ: Զոր և ես ոչ արհամարհելով այպանեմ զզղջմանն և զապաշաւանացն, զի «որ կարդասցէ զանուն Տեառն կեցցէ»[14]: Բայց անյայտք են եԹէ կատարելանան, զի հազիւ ապիքն գան, ըստ որումն սրբազանի տրամաբանուԹեան: Բայց ի տան հօրն Քրիստոսի օԹևանք բազում են. Թերևս արտաքոյ տանջանացն կայցեն մնայցեն, Թէպէտ և ոչ ընդ փեսային վայելեն ի հարսանիսն: Եւ այս արտաքոյ անյուսուԹեանն ելանելով, հայեցեալ ի քաղցրուԹիւնն Աստուծոյ:*

*Եւ կատարեալ Աշոտ զկեանս իւր՝ մեռաւ ի Վանտոսպ գաւառի*ˣ ՅԻԳ *Թուականութեանն Հայոց, յամսեանն հոռի, որ օր Զ էր ամսոյն, յաւուր հինգշաբաԹոջ. և տարեալ համգուցան[439]են ընդ եղբարս իւր ի վանս սուրբ Խաչին յԱղբագ գաւառի:*

(ԺԹ)

## ՎԱՍՆ ԾՆՆԴՈՑ ԴԵՐԱՆԿԻՆ:

*Իսկ Դերանիկն առաւելոյր և առատանայր օր ըստ օրէ առ շինուԹիւն և խաղաղուԹիւն աշխարհիս, շինել և տածել և խնամել զաշխարհս: Եւ դադարումն*ˣ *լինէր յաւուրս սորա հինից և ասպատակաց ի վերայ երկրիս, և քաջավայելչապէս բարեձևանայր կարգք սրբոյ եկեղեցւոյ Քրիստոսի, և երկիւղ և կասկած և ոչ ուստեք*ˣˣ*: Եւ ծնան նորա երիս որդիս, Սար-*

---

*[438] ×) Ա (²/₆ₑ)՝ չիք՝ գաւառի:*
*[439] ×) Ա (¹/₁₁)՝ գադարուն. ××) Այլ օր.՝ և ոչ ուստեքէ:*

գիս որ և Աշոտ՝ ՅԻԶ թուականութեանն Հայոց, Խաչիկ որ և Գագիկ ՅԻԸ, և Գուրգէն, մանկունք կայտառք և գեղապանծք և բարենշանք և ամենեցուն ցանկալիք. ծնաւ և երկուս դստերս:

Ընդ այն ժամանակս տէր Զաքարիայ հանգեաւ ի Քրիստոս, կեցեալ ի հայրապետութեանն Հայոց ամս ԺԸ, և յաջորդէ փոխանակ նորա տէր Գէորգ[1]:

Բայց որդին Շեհայ ի մտանելն ի Պարսաւ՝ եթող անդ քաղաքապետ զմի ի հաւատարմաց իւրոց Յամ[440]անիկ ոմն[2]: Նորա ի բաց կացեալ ի հնազանդութենէ իւրոյ պետականին հանդերձ քաղաքային գլխաւորօքն. և Յիսէ տուեալ պատերազմ ընդ քաղաքին×, զտարի մի հանդերձ ամենայն×× նախարարօքն Հայոց, անգամագիտ լինելով՝ դառնայ յԱսորիս. և այս եղև երկիցս անգամ[3]: Իսկ Յամանիկն ի վերայ Հայոց խորհէր ելանել, կամելով և տիրել Հայոց. զորոյ ձախողակի իմացմունս ծանուցեալ իշխանացն Հայոց՝ միով հաւանութեամբ գրեն յարքունիս և խնդրեն զԱհմաթ որդի [441] Հալթի[4]. զի Յամանիկն թուղթս և դեսպանս մի զմիոյ կնի առնելով առ իշխանս աշխարհիս՝ զինքն յառաջանալ ի վերակացութիւն Հայոց, քող արկեալ զդաւաճանող կեղծաւորութիւնն, զբարձումն բոլոր իշխանացն Հայոց, մանաւանդ զնախագահանստեալն զԱշոտ իշխանաց իշխան: Բայց խնդրոյն Հայոց զկատարումն առեալ յառաջնորդէն Տաճկաց՝ յղէ ի Հայս զառաջասացեալ զԱհմաթ որդի Հալթի: Եւ եղև ի մտանելն նորա ի Դատուան աւանն, զոր իւրեանց սեփհական համարէին ժառանգութիւն՝ ելեալ իշխանքն Հայոց յանձնիւր տեղեաց գնացին յանդիման լինել նմա, Դերանիկն, տէր Գագիկ և տէր Գրիգոր և միւս այլ տէր Գրիգոր Վասպուրական իշխան, Աշոտ կորապաղատ Հայոց իշխան, Մուշէղ իշխանն Մոկաց, Շապուհ եղբայր իշխանաց իշխանի և Ապլբառ Կայսիկ Ապահունեաց բռնաւորն[5] և այլք ոմանք:

---

[440] ×) Այլ օր.՝ քաղաքային: ××) Այլ օր. չիք՝ ամենայն:

[441] ×) Ա (²/₅)՝ առաւել:

*Սոքա անեննքեան վառեալք սպառազէն պատրաստութեամբ և բազմաձեռն առատալիր պատարագօք՝ գնացին, զի առեալ տարցեն մուծցեն զնա ի Դուին քաղաքն: Բայց Ցամանիկն և Աճմատն և Ապլբառն և այլ ևս Տաճկաց միաւորութեամբ զնոյն չարիս երկնէին գային: Եւ գրեն թուղթ առ Ցամանիկն, եթէ «ի մտանելն իմ ի Դուին քաղաք և զհարկս արքունի յիս գրաւել՝ և յանկասկած առեալ*[×] *զիշխանս Հայոց՝ և եկեսցեն առ իս. դու դիմօք մարտի առ իս զօր գումարեա և եղ ընդ[442]դէմ իմ ի պատերազմ, և ի միասին մխեսցիս զձեռս ի սոսա և բարձիցս զսոսա ի պետութենէ Հայոց»:*

*Իսկ առաւելեալն իմաստութեամբ Աշոտ ոչ յանհոգս և յաներկիւղս կայր մնայր, այլ զգուշանալ հրամայէր ի խելս կամրջաց և յանապատս և ի կիրճս ձորոց: Աստ լինէր յումանց գրուչմն անյայտիցն, թէ «այս ոմանք այսօրակ երիվարօք յայս նիշ նիւս կեղթում, ի մէջ բդեդի պահարանեալ նամակ տանին ընդ կողմն Ապահունեաց. արդ զգուշացիր ճանապահիդ». որ և ըստ ազդեցութեան զկատարումն առնոյր գործն: Եւ կալեալ զդեսպանսն հանին զթուղթսն, և զարսն պահեցին ի զգուշութեան, ոչինչ ումեք զգացուցանելով*[×] *որ ինչ եղև:*

(Ի)

## ՎԱՍՆ ՈՒՆԵԼՈՑՆ ԴԵՐԱՆԿԻՆ ԶԿՈՐԱԳԱՂԱՏՆ ԻՇԽԱՆ ՏԱՐՈՒՆՈՑ, ԵՒ ԶԴԱՒԻԹ, ՈՐ ԱՐՔԱՅՆ ՃԱՆԱՉԷՐ՝ ԻՇԽԱՆԱՑՈՒՑԱՆԵԼՈՑ:

*Եւ եղև մինչ կային իշխանքն ի միաբանութեան առանց կարծեաց կասկածանաց ի հպատակութեան ելեալ յարքունուստ Հազար[443]ապետին որդւոյն Հալթի, և զմիաբանական սիրոյն շաղկապ ի միասին յօդեալ պնդեալ անքակ պա-*

[442] ×) Ա (2/գ10)՝ ոչինչ ումեք զգացուցանելով: I (246), II (219), III (340)՝ ոչինչ ումեք զգուշացուցանելով:

[443] ×) Ցայլ օր.՝ չիք՝ ի մէջ: ××) Թերևս՝ այգորեալքն (II, 220, ծն. 2):

հէին՝ բանսարկուք ոմանք հրապոյրս պղտորս քսութեան ածէին տանէին ի միջէն առ միւսն, որպէս թէ զչարիս իրերաց առ Հազարապետն խորհել նիւթել յայտ ածէին և զպատճառն զմիմեամբք արկանէին ի գաղտնիս քրթմնջելով: Եւ այլք մերձ կացեալ առ Դերանիկն՝ ամբաստան լեալ զԱշոտոյ կորապաղատէ, որպէս թէ նախանձու լցեալ, և քսութեամբ վարէր ի մէջ[x] Հազարապետին, և թէ արկանել ևս ջանայր զնա յիշխանութենէ անտի նորա[1]: Բայց չարեացն այսորիկ հաւատարմութիւն յայտ եղեալ հաստատեցաւ ի վերայ Կայսկին Ապլբառայ:

Եւ այն ինչ ընդ ջեռնուլն արեգականն, մինչ ազևորեալքն[xx] մտանէին զառաջեաւ ամիրային, որպէս որսոյ ինչ պատճառանօք հեծեալ յընտիր երիվարս հանդերձ մերձաւոր հարազատօք իւրովք և ազատովք [444] յընտրելոցն Վասպուրականի՝ ելեալ մեկնեցաւ իբրև վտաւանս երկուս. և հեծելազունդ զօրացն Կայսկին ելին զկնի նորա, զգացեալ զպատճառ ելիցն նորա ի բանակէն. որում ոչինչ գամագիտ կարացեալ լինել՝ դարձան ամօթալից կորակնեալք, յանդէտս համարեալ զինչ գործեցինն:

Նոյնժամայն ելեալ զհետ Դերանկին կորապաղատն ի նոյն աղագս ի բաց մերկել ի դիմաց Հազարապետին, գիտելով զոր ինչ խորհեալն էր յաղագս նախարարացն Հայոց եկելոյն[x] առ նա, և մեկնեալ լինէին ի զօրացն անտի ասպարէզս Ե, և զմտաւ ածեալ զքսութիւնն զոր զեկուցին զԱշոտոյ կորապաղատէ առ Դերանիկն, եթէ ստութեամբ և եթէ ճշմարտութեամբ՝ մեզ չէ յայտ: Բայց հրաման ետ Դերանիկն Գրիգոր հարազատի իւրոյ ի նոյն տանէ Արծրունոյ, և կալաւ զնա և եդ ի յամուրսն Սևան. և հրամայեաց Հասանկան քեռորդւոյն իւրոյ՝ պահել զնա յընդարձակի:

Բայց յաւելեալ [445] լինի պատճառ ունելոյն զնա զայս օրինակ, եթէ էր փեսայացուցեալ զԴաւիթ[2] զեղբայր կորա-

---

[444] x) Այլ օր.՝ յաղագս եկելոյն նախարարցն Հայոց:
[445] x) Այլ օր.՝ որ է:

պաղատին ի քոյր իւր Մարիամ. վասն նորին իրաց ասեն կալաւ, զնա հաճոյանայր կացուցանել իշխան Տարունոյ, որ ասի[×] Հայոց իշխան, որ և եղև իսկ: Զի հրամայեաց Դեբանիկն ազատագունդ զօրացն իւրոցն դառնալ զկնի արքային տիրել բոլոր աշխարհին հանդերձ ամրոցօքն: Եւ գրել Դեբանիկն առ որդին Հալթի հաստատել զնա իշխան իւրով հրամանաւ. որ կացեալ իշխան ի վերայ Տարունոյ ամս Է[Յ] յաւելաւ առ հարս իւր, թողեալ զաւակ իւր Աշոտ անուն:

Բայց զաշխարհն Յիսէ որդին Շեհայ բռնազբօսեալ յինքն գրաւեաց և կացոյց ի վերայ նոցա զիւր գործավարս:

Եւ եղև յելանել նախարարացն Հայոց յերեսաց ամիրային՝ մնայ առ նմա միայն Մուշէղ Մոկաց իշխեցողն, այր քաջայայտ և բարձրագահ, և ընդ նմա Գրիգոր որդի Վասակայ, և սա նմանապէս ողեզուարճ[××] իմաստ[446]ութեամբ առ լցեալ հոյակապ և անուանի ի մէջ Հայկականացս և ցանկալի լուղացս և ուրախարար տեսօղաց. սա առաւելեաց յամենայն հոգածութիւնս ի գիտս իմաստութեան ուսումնասիրութեան և այլն ամենայնի՝ քան զհարս և զհաւս իւր: Եւ էին ի կասկածի ի մէջ բանակին ի հազարապետէն, զի յայտնի երևեալ լինէր զոր խորհէրն վասն նոցա Աճմատն: Որոց դիպօղ ժամ գտեալ՝ արտաքս ելեալ ի բանակէն, զերծեալք իբրև զայծեամն ի հնարից որսորդաց՝ գնացին խաղաղութեամբ յիւրեանց տեղիս և զնա թողին լքեալ ամօթալից:

Զկնի այսորիկ յառաջ խաղացեալ Աճմաթ և որ ընդ նմա կայսկազենիցն գունդք, երթեալ մտանել ի քաղաքն Դուին, թերևս կարասցէ ի կատարումն՝ զոր ինչ խորհեցաւն՝ հասուցանել զչարիսն: Եւ ելեալ իշխանաց իշխանն, որ բարձրագոյն և հանճարեղագոյնն էր քան զբնաւ Հայաստանեայս և զընդհանուր կացեալս ի ներքոյ երկնից՝ եկն [447] առ նա մեծաշուք պատուադրութեամբ, և պարգևս և պատիւս ոչ սակաւս նմա յառաջաբերեաց. այլ նա ի նոյն միտս չարա-

---

××) I (248), II (221), III (342)՝ ողեզուարճ. Ա ($^{2}/_{18}$)՝ առ ողեվարճ. ուղղ.՝ հոգեզուարճ (Նախն. 71-72):

[447] ×) Այլ օր.՝ ելանելոյ: ××) Թերևս այգորեալքն (II, 222, ծն. 1):

խորհրդութեան յամառեալ պնդեալ կայր: Եւ ջանայր զպարիսպն պղնձի կործանել, զգաւազանն երկաթի խորտակել, զհովիւն մատնել ի կորուստ և զհօտսն յապականութիւն:

Բայց իշխանաց իշխանն Աշոտ անհանդուրժելի մնալով խորհրդոց չարին ի գլուխ ելանել[×] յաւուր միում մինչ այնքան չքեղութիւն մեծարանօք յղփացեալ յօրացեալ կայր հազարապետն՝ ետ հրաման իշխանն առնն կորովի եղբօր իւրոյ Աբասայ Հայոց սպարապետի՝ վառել պնդակազմ պատրաստութեամբ, զօրու և զինու և զարդու ամենայարդար հնարաւորութեամբ, որպէս օրէն է նահատակաց քաջ արանց, և երիվարաց պատրաստել, ի նորա չար խորհրդոցն ի բաց վազել: Եւ ի ժամու մինչ ազատորեալքն[××] կամէին մտանել զառաջեաւ, [448]և նա ակն ունէր մեծ իշխանին մտանել առ նա՝ յայնժամ շուրջ կացեալ զվրանաւն մեծ սպարապետին զկազմեալ գնդաւ վահանաւոր և նիզակաւոր ամրափակ պնդութեամբ, և մտեալ մատոյց զթուղթն, զոր էր գրեալ առ Յամանիկն ի քաղաքն Պարտաւ Ահմաթայ նենգութեամբ: Նորա զերկիր նկատեալ՝ ոչ ունէր նայել ի վեր, կայր կորակնեալ, ոչ ունել ոյժ պնդութեանն, զօրհասն ի վերայ իւր գուշակէր եկեալ հասեալ: Բուռն հարեալ սպարապետն զձեռանէ նորա և հանեալ արտաքս, քաջալերելով[××] լինել առանց երկիւղի. և ելեալ նստաւ ի ջորւոյն, զոր պատրաստեալն ունէին անդէն առ դրան վրանին, և հանին արտաքոյ ղաշիկ բանակին՝ դարձուցեալ դառնալ ընդ նոյն ուստի եկն: Եւ մեկնեալ զզօրսն ի նմանէ ընդ կողմն Ապահունեաց, մերկ ի զինէ և յասպազինէ թողեալ, ոչ առնել այլ կողոպուտ, գնացին աղխիւ[×××] և երիվարօք իւրեանց: Իսկ [449] զԱհմաթ ընդ Վասպուրական աշխարհն անցանել[×] գնալ՝ ելեալ զհետ նորա

[448] ×) Այլ օր. զօրահասն: ××) Այլ օր.՝ քաջալերելով գնա: ×××) Այլ օր.՝ ախիւ:

[449] ×) Այլ օր.՝ ընդ անցանելն գնալ Վասպուրական աշխարհն: ××) Յայլ օր. չիք՝ գնա: ×××) Այլ օր.՝ ամբառշտին Վասակայ: ××××) Այլ օր.՝ բազում թղթովք աղաչեալ ոչ առնոյր: ×××××) Այլ օր.՝ Քրիստոսի: ××××××) Այլ օր.՝ լեալ, ժԵ, ամաց:

Շապուհ որդի Աշոտի, մինչ տանել հասուցանել զնա[xx] ի մուտս Ասորեստանեայց ճանապարհին:

Այլ կորապաղատն Տարունոյ կայր յամրոցին Սեւան, որ ի ձեռին Հասանայ որդւոյ Վասակայ ամբարշտի[xxx], եւ ոչ ուրեք գտանէր հնար ելիցն ի վտանգաւոր արգելանէն, թէպէտ եւ բազմաց հոգ յանձին կալեալ վասն առն պատուականի, մանաւանդ մեծ կաթողիկոսն Հայոց Գէորգ պաղատանս առնէր առ Դերանիկն, զի ընդարձակեսցէ նմա: Բազում անգամ թղթովք աղաչեալ զնա, ո՛չ առնոյր[xxxx] յանձն. ինքն իսկ փոյթ յանձին կալեալ՝ ել գնաց մեծաւ հոգաբարձութեամբ, լուծանել զնա ի տառապանաց արգելանին. սակայն եւ այնպէս ոչ կարաց գտանել զելս իրացն վտանգի առնն: Թողեալ այնուհետեւ ի խնամս Արարչին, յանձն արարեալ շնորհացն Աստուծոյ[xxxxx]: Քանզի յոյժ պատկառ կայր ի պաշտօնատարութիւն հայրապետին իշխ[450]անն Տարունոյ, եւ նա սաստիկս հոգայր վասն նորա, թէպէտ ոչ օգտէր յիրին յայնմիկ: Այնուհետեւ սկսաւ կորապաղատն արկանել բանս խարդախութեան ի մէջ Դերանկին եւ Հասանայ, որ էր որդի քեռն Դերանկին, որպէս թէ ոչ ուղիղ նայի ընդ նա Դերանիկն, այլ թէ՝ եւ հանել ի նմանէ զամրոցն եւ զաշխարհն նկրտել. «բազում անգամ, ասէ, եւ իմ ստուգեալ զայդ ի հաւատարմաց խորհրդականացն նորա. արդ դու մի անփոյթ յանհոգս յաղագս այդր մնայցես, անյապաղ հնարիցիս գտանել զխորհրդոցն նորա դատարկութիւն»: Եւ քանզի յոյժ անկասկածելի էր ամրոցն, եւ զանձս ոչ սակաւս մթերեալ ի նմա ի բազում ամաց, եւ ինքն մանկագոյն տիովք, ի ժամանակի անձիշխանութեան լեալ[xxxxxx] ամաց ԺԵ, զի «մանկութիւն եւ անմտութիւն ընդունայնութիւն է»[4], որպէս գրէ Սողոմոն, եւ ելեալ ի հրապոյրս ցոփութեան ըստ խրատու առնն՝ յուսացեալ յամրոցն եւ ի [451] զանձսն, եւ ի ցանկութիւն իշխանասիրութեան համբարձեալ զաչս՝ զօր գումարել, այրուձի կազմել, մեծամեծաց աշխարհատերանց պարգեւս տալ, ի թի-

---

[451] x) Այլ օր.՝ յօգնականութիւն:

կունս և յօգնութիւն[×] զամենեսեան կոչել, զի ըստ յանձնառութեան խրատու նորա նոյնպէս և գործեսցէ: Եւ յայտ յանդիման ի վերայ հասանել ոչ կարէր. գունդ կազմել և ճակատ պատրաստել ընդդէմ՝ անվայելուչ էր. ապա հնարաւորեալ պատիր խաբէութեամբ ի կատարումն հասուցանել զխորհրդոյն զանհաստատ իմացմունսն, և գնաց եմուտ յամրոցն, և զհիւանդութեան կեղծաւորութիւն մերձ առ մահ եդ առաջի:

Ցղէ առ իշխանն, զի առանց և ոչ մի ինչ յապաղանաց փութացեալ հասցես այսր: Եւ ելեալ գնաց զհետ կոչնականացն ի գութ հարազատութեան, և ի կարծիս սաստիկ հիւանդութեան, թէ մերձ ի մահ անկեալ դնիցի, ըստ ստուգելոյ կոչնականացն: Եւ իբրև գիշերն տարածեցաւ և խաւարն [452] թանձրացաւ և սկսան ամենեքին մտանել ի քուն յանձնիւր օթանոցն՝ յանկարծակի փայլիւն սուսերաց և մոմեղինաց վառելոյ և գունդք խորհրդականացն և Հասան ընդ նոսա. և բախեցին արտաքոյ զդուռնն ուր մտեալ էր իշխանն, և կալեալ զնա հանին ի բարձրագոյն տեղիս ամրոցին, և եդին ի բանտի ի ներքսագոյն սենեկացն. և կորապազատին ընդարձակեաց ելանել, զի երթիցէ ուր և կարասցէ հասանել ըստ յաջողելոյ իւրին:

Յայնժամ իսկ և իսկ փութացեալ եհաս գուժկանն առ հոյակապն իշխանաց իշխան, զեկուցանելով նմա որ ինչ գործեցաւն: Եւ զի էր պաշարեալ նորա յայնժամ զքաղաքն Մանազկերտ Ապահունեաց աշխարհին, որ ի ձեռս Աբլբառայն էր, և ածեալ հասուցեալ մերձ ի պաշարումն. և ի հասանել գուժկանացն եթող զնոսա, տալով նոցա հրովարտակս ի խաղաղութիւն: Եւ Գուրգէն Արծրունի և Մուշեղ Բագրատունի, և ինքն փութացաւ հանդ[453]երձ կաթողիկոսիւն, եկն բանակեցաւ յամուրն մերձ, ուր էր արգելեալ Դերանիկն: Եւ իմաստուն և հանճարեղ խորհրդովք, քաղցր և կակուղ բանիւք ողոքեալ զմանկագոյն Հասան, առաջի արկանելով նմա զարժանի ալեացն պատուականութիւն և զիշխանական ճոխութեան զբարձրագահութիւն և որ ինչ այդմ հետևէր. միջնորդեալ հայրապետին երդմամբ ուխտի խաղաղութեան՝

ի բաց լքանել անյիշելի մոռացմամբ զչարեացն գործելոց զվնասս. և ըստ խնդրելոյ աղերսանաց իշխանին և մեծ Հայրապետին՝ զկատարումն առին ասացեալքն. և հանին զնա յարգելանէ բանտին, պատանդ թողեալ նմա զԳագիկ որդի Դերանկին և որդի Գրիգորի Արծրունոյ[5]:

Նոյնժամայն մատուցեալ ոմանց առ Դերանիկն՝ ստուգագոյնս քսէին վասն Գագկայ Ապումրուանայ, խորհել ընդ կորապաղատին, զոր ինչ գործեաց Հասան զանօգուտսն. բայց եթէ ստութեամբ և թէ [454] ճշմարտութեամբ՝ մեզ չէ յայտ, և զոչն ստուգեալ՝ և ոչ գրել լաւ համարեցայ: Բայց ինքն Դերանիկն ստեաց երդման ուխտի խաղաղութեանն, զոր եդ ի մէջ իւր և ի մէջ Հասանայ, և կալեալ զնա եդ ի բանտի ի Նկան բերդի և զամրոց նորա եհան ի նմանէ, և կացոյց զհաւատարիմս իւր պահել զնա. և զտունն և զստացուածս[x] հանեալ ի նմանէ՝ և կացոյց ի վերայ աշխարհին[xx] զիւր գործակալս:

Բայց Յամանիկն իբրև լուաւ ի դարձուցանելն Աշոտի զԱհմաթ լի անարգանօք, և զխորհուրդն զոր խորհեալ էին ի վերայ Հայոց ցրել՝ զօրհասն ի վերայ իւր համարեցաւ տեսանել. և սկսաւ ոգորել եղջիւր ածել ի վերայ Աշոտի յայտնի և ոչ ի ծածուկ. և նա ձեռնամուխ եղև զընդ նուաւ հնազանդեալս ի բաց կորզել քեցել ի նմանէ շրջաբերական Թղթովք, զիշխան Վասպուրական զԴերանիկն, զԱպլբառ Կայսիկ զբռնաւորն Ապահունեաց, նմանապէս և զայլսն զոր [455] և կարաց հրապուրել. և ինքն Յամանիկն գրէր առ Աշոտ զԴերանկէն՝ լի ապիրատութեամբ խորհել վասն Աշոտի: Եւ արար՝ մինչ ճեղքեաց խզեաց զմիաբանութիւնն Հայոց:

Բայց Դերանիկն խօսի ընդ Հասանայ զխաղաղութիւն, խոստանայ առնել զդարձ ամրոցին Սևանի և աշխարհին նորա. «միայն, ասէ, զԳագիկ Ապումրուան առ իս ածցես հնարաւորեալ վասն նորա». զի Գագիկ անցեալ ամրանայր ի Ճախուկ բերդի, ի կասկածի կալով ի Դերանկէն, ըստ զե-

---

[454] x, xx) Այլ օր.՝ յաւելու աստ՝ նորա:

կուցմանն զոր ինչ գործեաց Հասան առ Դերանիկն: Իսկ Հասան ըստ յանձնառութեանն գնաց մեկնեցաւ ի Դերանկէն, եմուտ առ Գագիկ յամուրն և զտրտունջն զԴերանկէն Հաւատարմացոյց առաջի Գագկայ, որ դիւրաւ առ Հաւատալն Հաստատնագոյն երևէր. և ըստ օրինակի կեղծաւորական Հիւանդութեանն, զոր առ Դերանիկն Հնարաւորեցաւ՝ զնոյն և առ Գագիկ գլխաւորեաց: Եւ եղև իբրև ննջէր Գագիկ յան-[456]Հոգս յանկասկածս՝ Հասեալ Հասան ի գիշերի սուսերամերկ վառեալ փոքր գնդաւ, մոմեղինօք վառելովք՝ և կապեաց զնա կապանօք երկաթի: Եւ փութացաւ գալ առ նա Դերանիկն. որոյ գնացեալ առնու յինքն զԳագիկ և յղէ սպառազէն պատրաստութեամբ ի Վանտոսպ առ տիկինն Վասպուրական, և պաՀել ի զգուշութիւն: Եւ յետ սակաւ աւուրց եղ գնաց Դերանիկն ի Ճուաշ գաւառ՝ ձմերել յաւանին Մառական:

Աստանօր ոչ Հեշտալիր թուին ինձ պատմութիւն ճառիս շարագրութեան: Ցապուշ կրթին միտք իմ զմտաւ ածել զաղետիցն, խորՀրդածել գրել յիշատակարանս. լքեալ լինին ընթացք ձեռացս առ կորովութիւն գրաւորականիս. երկունք իբրև ծննդականի ի վերայ իմ Հասեալ լինին՝ մատենաւորել զայսր աղետաքեր Համբաւուց[x] ցոյցս. ցաւ է ինձ[xx] ի վերայ բեկմանն որ ի նախատորդէն խորտակեցայ: Պղպջաձիգ արտօսր իբրև յեռանդնոտ[xxx] կատսայէ ի վեր յորձանախա[457]ղաց սաՀին. տարակուսանք անյուսալի շուրջ զինև պարագրին ի վերայ եղելոցն: Եւս առաւել քան զանդնդականն յուզմանցն բռնալիր Հողմոցն զծիրանեգոյն ալիսն, զլեռնաձև կուտակսն և զվիշապաձայն գոչմունսն՝ ևս յաւէտ աՀագնակի վրդովմամբ զմրրիկ անձանց ի մէջ եռաշարժ ընթացմանցն, ի Հոլովմանց խռՀարանի իշխանական սրտին ի ներքս Հարկաւորաբար բռնազբօսեալ ձգեն: Ցոքունց կամ

[456] x) Այլ օր.՝ զայս աղետալի և աղետաքէր Համբաւոց: xx) Ա ($^{2}/_{6ա}$)՝ ցաւ է ինձ ուղղ.՝ ցաւէ ինձ (Նախն. 402): xxx) Այլ օր.՝ յեռանդոտ:

[457] x) Այլ օր.՝ զօրաւարաց: xx) Այլ օր.՝ անձանց:

*թէ բնաւից կարօտանամ իմաստասիրաց գումարից ի մի վայր հասելոց՝ զողբերգականացն ճոխաբանել ճարտասանութիւնս. վասն զի իմ ոչ բերեալ ոյժ առ այսքան եկեալ հասեալ աղետիցս զդամբանականն երգել երգս: Այսր աղագաւ արտաքս վազեցի զմեծս զայս բանգիտութեան ընթանալ ասպարէզ, զօրաւորաց[x] մտահարուստ արանց կարօտացեալ, բաւականանալ իմով անհեդեդ պատմողական հանդիսիւ՝ զկարգին յառաջ վարել զպահանջումն, թերեւս արդեօք գործ[458]ակցօք յանդգնեցայց վարել առ ողբերգակս:*

*Եւ եղեւ ի գնալ Դերանկին ի ձմերոցս Վասպուրական իշխանացն, ճանապարհ արարեալ ընդ ձորն Ընծայից[x], որոյ ելքն ընդ գաւառն Հեր քաղաքի: Եւ յարգելուլ զնա ազատագունդ վաշտիցն՝ չանսայր, քանզի լուեալ էր նոցա, եթէ շրջաբերական թղթով դարան գործեալ էր նմա Աշոտոյ իշխանաց իշխանի: Ասեն. թո՛ղ տեսցուք զելս այսր համբաւոց: Իսկ նա առ չանսաւորութիւն անխոնարհելի մնացեալ, և անցեալ օթագայեցեալ[xx] ի գեօղն Փեռոտակ յանդիման քաղաքին: Իսկ քաղաքապետն որում Ապլբերս կոչէին, ձեռնտուութեամբ պարսկային զօրու սպասէր նմա ի չարիս ի բազում աւուրց. և զօր գումարեալ ել ընդ առաջ նորա: Եւ կոչնականքն ընդ այգն ընդ առաւօտուն փութացուցեալ ասեն, «եկ, տեսցուք զմիմեանս սիրով խաղաղութեան». և յարգելուլ զնա ազատանւոյն՝ չանսայ բնաւ ումեք: Եւ զի հուպ առ հուպ են խառն աշխարհք երկոցունցն, [459] և քաղաքն ի հովտաձեւ դաշտին՝ նպաստաւորէր խոշոշ վիրագին քաջարտագոյնս լինել: Յղեաց զկոչնականսն զպատահմանն տանելով առ նա զպատասխանիսն. և լրտեսք քաղաքապետին փութացեալ ասեն, «ահա մեկնեալ ի զօրացն զհետ որսոց ինչ յանհոգս յանզգուշութեան գայ ընդ այս ինչ տեղի. արդ փութա պատահեաց նմա, զի մատնեաց զնա Աստուած ի ձեռս քո»: Նոքա վազս առեալ ճեպով խուռն յարձակմամբ սպառազինեալ այրուձիոց. և Դերանիկն ճեմս առեալ սիգա-*

---

*[458] x) Ա ($^{1}/_{7-8}$)՝ ընդ ձորն Ընձահից: xx) Ա ($^{2}/_{4}$)՝ օթագայեալ:*

քայլ երիվարաւն եհաս Հանդէպ ճակատու գնդին վառեալ, միայն և առանձինն ի յառուամէջ տեղւոջ. և ճեղքեալ զօրու թշնամեացն յայսկոյս և յայնկոյս՝ արարին մտանել նմա ընդ մէջ զօրուն: Եւ նոյնժամայն շուրջ փակեալ բազմութեան՝ արգելին զնա իբրև յամուրս անձաւաց, զվարմ մաՀաբեր շուրջ ձգեալ ի կործանումն քաջ նաՀատակին: Տուեալ էր նշան քաղաքապետին, իբրև զՑուդային ի տէրուն[460]ական Համբոյրն, ասէ. «յորժամ զայս նիշ Համբոյր մատուցեալ Համբուրեցից զնա՝ դուք զագդոյ վէրս ի զօրութիւն նիզակի Հարջիք զնա»:

Եւ նոյնժամայն սուսերամերկք խուռն նիզակօքն ի վերայ յարձակեալ իբրև զգազանս արիւնարբուս մարդախանձս՝ սրախողխող արարեալ սպանին զնա, և արարին խաւար Վասպուրական աշխարՀիս, որ կեցեալ իշխանին×. և էր ամաց Խ յորժամ մեռաւ: Յայնժամ ողորմագին զաչսն շրջշրջեալ առ քաջ նիզակակիցսն իւր, թէ ո՛վ ոք արդեօք թերևս յօգնութիւն ինչ նմա Հասանիցեն. բայց քանզի տէր մատնեաց զնա ի ձեռս նոցա, որպէս ասաց Դաւիթ «և եղև աՀ տեառն ի վերայ ամենեցուն»[6]. այր իւրաքանչիւր մազապուր զերծեալ փախստեայ գնացեալ Հասին յաշխարՀն իւրեանց: Բայց միայն զնաՀապետն Ամատունեաց զԱպուսակր ձերբակալ առին գնացին ի քաղաքն, բարձեալ և զդին սպանելոյն տարան ընդ իւրեանս ի [461] պարծանս իւրեանց[7]:

Յիշեցեալ լինին աստանօր սողոմօնեան բանագործութիւնքն զկատարումն առեալ, զի ասէ, «որ աներկիւղն է՝ անկանի յորոգայթս և ի վիՀս, և ի տեղիս ուր× ոչ եղիցի այցելութիւն յաւիտենից»[8]: Եւ առ վատացի քաջութեան աղագս զդէմ տանին բերեալ ասէ, «զվատ երկիւղ ապրեցուցանէ»[9]: Իսկ եթէ վատացն՝ արութի՛ւն զերկիւղն Համարելի է, ո՞րչափ ևս առաւել քաջացն քաջութիւն ստացեալ երկիւ-

---

[460] ×) Այլ օր.՝ որք կեցեալ յիշխանին:
[461] ×) Այլ օր.՝ որ: ××) Այլ օր.՝ ընդ աներկիւղի ի ճանապարՀ մի երթայցես: ×××) Այլ օր.՝ ճշմարտագոյնք Սողոմոնեանքն, զի վաՀ միոյն ի ճանապարՀի, զի եթէ:

ղիւն պատսպարել իւրեանց: Որպէս և Դաւիթ ասէ, «պատրաստեցայ և ոչ խռովեցայ»[10]. և այլ ոմն յարտաքին իմաստնոց[11] ասէ, ընդ աներկիւղ××[12] ի ճանապարհ մի երթալ: Այլ ճշմարտագոյնք են Սողոմոնեանքն, զի ասէ, «վայ միումն. յորժամ××× գլորիցէ, ո՞ յարուցանիցէ զնա»[13]. և եթէ «լաւ են երկուք քան զմի, զի եթէ միոյն գլորիցի ոք՝ կանգնեսցի»[14]:

Եւ խնդրեալ զդի նորա վաճառականաց՝ պատեցին զնա ի ձեռս եպիսկոպոսին Դաւթի նորուն գաւառի և եդին ի տապանի [462] յեկեղեցւոջն որ ի Նմա: Եւ յետ անցանելոյ աւուր, գնացեալ Աշոտ որդի Դերանկին, առեալ զդի նորա՝ տարեալ հանգոյց× առ հարս իւր յԱղբատ գաւառի ի վանս սուրբ Խաչին: Եւ ժողովեալ աշխարհն Վասպուրական՝ զամիսս Ժ արարին կոծ մեծ ի վերայ նորա:

Եկն այնուհետև Շապուհ որդի Թագաւորին Աշոտի և ետ զիշխանութիւնն ի ձեռս Աշոտի որդւոյ Դերանկին, փոխանակ հօր իւրոյ: Եւ զԳագիկ որ և Ապումրուան՝ զնա ոստիկան կարգեաց ի վերայ աշխարհին, տեղապահութեամբ տիրել, զի կարի մատաղօրեայք էին որդիք Դերանկին. Աշոտ էր Թ ամաց, յորժամ մեռաւ Դերանիկն, Գագիկ էր Է ամաց, Գուրգէն Ե ամաց: Եւ թէպէտ և տածէր և խնամէր Գագիկ աշխարհիս՝ այլ ոչ ուրախ լինէին ի նա ազատատերանցն գրոխք, և կացին ի տարակուսի: Այլ քանզի յոյժ առաւելեալ էր իմաստութեամբ Գագիկ՝ տեղի տայր բովանդակ գաւ[463]առապետաց զօրագլխաց աշխարհիս, գնայր ընդ նոսա իմաստութեամբ խորագէտ հնարաւորութեամբ, ըստ անձնիւր գահու մեծարեալ պատուադրութեամբ հաճոյանալ ախորժէր նոցա:

Զկնի այսորիկ եկն Աշոտ Թագաւորն Հայոց մխիթարել զդուստր իւր և զթոռունս, և ևս առատանայր զհաստատութիւն իշխանութեանն Աշոտի և զոստիկանութիւնն Ապումրուանայ:

Բայց Տիկինն Սոփի կեցեալ× յետ մահու Դերանկին զատա-

---

[462] ×) Այլ օր.՝ հանգոյց զնա:
[463] ×) Այլ օր.՝ կացեալ: ××) Այլ օր.՝ մահուան:

րի մի և զամիսս Ը՝ յաւելաւ առ հարս իւր. և տարեալ հանդուցաննեն ի նոյն վանս սուրբ Խաչին:

Եւ յետ այսորիկ որդիք նորա Գագիկ և Աշոտ և Գուրգէն կանոնեցին զյիշատակութիւն նոցա ի տօնի սրբոյ Խաչին, և ետուն ի սուրբ եկեղեցին Դ ագարակս, զվանքն Փշոց և զագարակն Ահավանք, յանդիման եկեղեցւոյն որ ի կղզին, և զքարն Մանակերտ, որ է հանդէպ հարաւոյ կուսէ, և զԲերկրի և այլ բազում տեղիս, զոր աւանդեցին որդիք թագաւորին յետ մահու[xx] [464] հօր և մօր իւրեանց ի պէտս սուրբ Խաչին Աղթամարա[15], և են հրամանք սոցա[x] իբրև զվէմ հաստատուն[16]. և թէ ոք խախտել ջանայ՝ ի հրամանէն Աստուծոյ ոչ ժառանգէ նա զաթոռ իւր և զթագաւորութիւն: Եւ թէ հաստատել ոք կամեսցի՝ անսասանելի կացցէ նա[xx] յայսմ աշխարհիս. ամէն:

(ԻԱ)

## ՓՈԽԱՆԱԿ ԱՇՈՏԻ ԹԱԳԱՒՈՐԵԼ ՍՄԲԱՏԱՑ:

Ընդ ժամանակսն ընդ այնոսիկ Աշոտ թագաւորն Հայոց փոխի յաշխարհէս ի բարիոք ծերութեան, փափկացեալ և յղփացեալ խրախութեամբ, ձեռն նորա յամենեսին և ամենեցուն ձեռք ի նա[1], քաջավայելչագոյնս զթագաւորութեանն կատարելագործեալ զժամանակն, Ե ամ յիշխանական ճոխութեան, ԻԵ ամ յիշխանաց իշխանական պետութեանն, Դ ամ ի թագակապ շքեղութեանն. և մեռաւ ՅԼԹ թուականութեանն Հայոց, և ի ԺԵ ամի հայրապետութեանն Գէորգեայ Հայոց կաթողիկոսի[2]: Եւ փոխանակ նորա թագաւորէ Սմբատ որդի Աշ[465]ոտի, այր քաջայայտ և հանճարեղագոյն, լի և առոյգ յամենայն իրողութիւնս՝ որ ինչ ընդ երկրաւս համառօտաբար լրութիւն պատկանաբար պիտանան, հաճոյ Աստուծոյ և ընտիր մարդկան:

---

[464] ×) Այլ օր.՝ նոցա: ××) Այլ օր.՝ նա ոչ ժառանգէ:

[465] ×) Ա ($^{2}$/[illegible])՝ քաղաքին Արտաշամու: I (259), II (230), III )358)՝ Արտաշատու:

(ԻԲ)

## ԿՈՐԾԱՆՈՒՄՆ ՔԱՂԱՔԻՆ ԴՈՒՆԻ Ի ՍԱՍՏԻԿ ՇԱՐԺՄԱՆԷՆ:

*Ի սորա յերրորդ ամի թագաւորութեանն ի վերայ Հայոց[1] աստուածատուր բարկութեամբ անդնդաշարժ վրդովմամբք ներքնագոյն խորոցն պատահեալ միմեանց սահանախաղաց դղրդմամբ, հիմնաշարժ տապալմամբ, ներքսագոյն երկրի թուլացեալ պնդափակ աղխեալ սանդարամետական սահմանին, բարկութեան հողմոց շնչեալ ընդ ջրոցն խաւարայնոց, ի կոխակս անդնդաքակս զթանձրայատակ երկրի զկարծր և զծանրալիր անկշիռ անբաւութիւնն տատանեալ, մինչ յերեսս երկրի ի վեր մղեալ հանդէպ քաղաքին Արտաշատու[x], որ Բլուրն Նորուն ասի, յորում շահաստանն Դուին, մարդախիտ պարսպաւոր պատնիշօք պատուարեալ և տուրևառիկ վաճառ[466]ականութեամբ և ազգի ազգի պղծութեամբ յափրացեալ յղփացեալ՝ զնա ի հիմանց տապալեալ. բերանաբաց դժոխաբար լայնեալ զբերան իւր՝ յօգունց քան թէ սակաւուց արար վիժել յանդունդս, որոց ոմանք և տունք նոցա գերեզմանք նոցին եղեն: Գունակ Կորխային բանակին յանդնդաքակ տունսն զբնակութիւնսն արարին[2], անխայեալ ի Նինուէականն ստրջացեալ[3] նախ անդ ո՛չ անխայեալ առ քարեղէն սիրտ քաղաքացւոցն Դունայ: Նա և տեղիք սրբութեանց տունք աղօթիցն զշարժմանն կիրս կրեալ, պատառմամբ որմաշարժ լինելով, որպէս յայնժամ ի մահուն Ոզիայ արքայի, յաւուրս Եսայեայ մարգարէի՝ ի ձայնէ սրովբէից շարժեալ տաճարին տեառն, մինչ բարձրանալ դրանդեացն[4]: Որպէս և առ Զաքարիայիւ մարգարէիւ շարժեալ մինչ ի լեառն Ձիթենեաց[5]: Եւ ասի լինել թիւ մարդկանն ապականելոց ի շարժմանէ՝ ոգի առաւել քան ՀՌ: Այս շարժումն սաստկագոյն քան որ եղև յամս Զաքար[467]իայի Հայոց կաթողիկոսի, յետ Է ամի գերութեանն Հայոց[6]:*

---

*[467] ×) Ա (Ա/ը)՝ վաստ. ուղղ. վաչմ (Նախն. 13): ××) Այլ օր.՝ իւրայնովքն: ×××) Այլ օր.՝ կործանումնն:*

Անդ հանդիպեալ լինէր և երանելի եպիսկոպոսն Գրիգոր Ուշտունեաց վաէմ[x]. ոչ կարաց իւրայովքն[xx] զերծանել, իբրև յայնժամ առողջեալ ի լեառն: Եւ նորայքն ոմանք ի նմին չարժամանէ գերեզմանացան ի նմին:

Բայց երանելի հայրապետն Տէր Գէորգ սաստկագոյն քան զտիեզերական կործանմանն[xxx] առ Նոյիւ բերելով զտրտմութեանն թախիծս, հանդերձ եպիսկոպոսիւն Գրիգորիւ՝ զաբրահամեանն վաղնջուց աղաչանսն ի կործանմանն Սոդովմայ[7] յառաջաբերեալ մարդասիրին Աստուծոյ. և թողեալ զբնակելն ի Դուինն՝ ելեալ բնակեցաւ ի Նոր քաղաքին[8] ի մեծ եկեղեցւոջն որ յանուն սրբոյն Գրիգորի շինեալ էր երանելւոյ տեառն Ներսիսի Երկրորդի Հայոց կաթողիկոսի[9]:

Յետ այսր՝ յերկրորդ ամի պաշարեն զԿարնային քաղաքն զօրքն Յունաց. և դարձեալ անդրէն ի կամս իւրեանց թողեալ գնացին[10]: Եւ ի նմին ամի մեռաւ արքայն իշխան Տա-ր[468]ունոյ, և բռնազբօսեալ զաշխարհն Ահմաթ որդի Յիսէի Շեհայ յինքն նուաճել. և սպանանի Գուրգէն իշխան որդի կորապաղատին նենգութեամբ ի զօրագլխացն Ահմաթայ, այր քաջ և երևելի և քաջայայտ ի մէջ Հայաստանեայցս[11]:

Բայց որդիքն Դերանկին, Աշոտ և Գագիկ և Գուրգէն, զըստ մարմնոյ աճմանն չափ առոգ և բարձրաբերձ ձգմամբ յառաջ տանէին[x], նա և զմտացն ոչ սակաւ հաստանալ յայտարարական բերմամբ առ հանճարեղութիւնն զուգընթաց բողբոջմամբ կատարելագործէին. և զուարճ և զուարթ խրախութեամբ յուսակցէին առ տիրական նախախնամօղ հոգաբարձութիւն շինութեան աշխարհիս, և զուգ և զտրտմութիւն, զոր կրէին աշխարհս յաղագս մահուանն Դերանկին՝ յուրախութիւն և ի խնդութիւն տրամադրէին. և առ եղբայրականն զհնազանդութեանն չափ ցուցանելով, անկշիռ վայելչութեամբ զմիմեանս լաւ համարելով քան զանձինս, հասարակ [469] զճոխութիւն իշխանական զահընկալու-

---

[468] x) Ա (¹/4-5ն)՝ յառաջ տանէին:
[469] x) Այլ օր.՝ ի ձեռս Աշոտի:

*թեանն վարկանելով, միայն ըստ ամացն ծննդաբանութեան Հաւատացին Աշոտի գիշխանականն տալ պատուադրութիւն, և անհակառակող գտեալ բարուք՝ բաժանեն զաշխարհս յերիս մասունս. տալով Աշոտի[x], որպէս ասացաք յառաջագոյն՝ զգահն նախնական իշխանութեան այլովք յոլովագոյն միջոցօք աշխարհիս, մինչև յամուրն Նախճաւանու: Իսկ Գագիկ զկողմանս Ռշտունեաց այլովք մօտակայիւք գաւառօք, և որքան իցէ հասումն ուժոյ՝ անդր ևս յաշխարհն Մոկաց: Եւ Գուրգէն զկողմանս արևելից, յելից Աղբագոյ և որ շուրջ զնովաւ ամենայն Պարսկահայք մինչև ի մուտս Կորդաց, և ուր և ըստ այնմ իցէ հնար ածել զձեռամբ: Եւ այսորքիկ այսպէս:*

*Իսկ Ապումրուանայ ի պատճառ ոստիկանութեան զմանկականն նոցա պատճառելով խաժութիւն հասակի՝ առ սակաւ սակաւ սկսաւ զամուրսն յինքն գրաւել, զհետ [470] իշխանական ցանկութեանն զերասանակ մտացն ձգեալ, զամուրն Նկան ի Թոռնաւան գաւառի, և զամուրն Կոտոր ի ձորն Ընծայից, զամուրն Սևանի ի փորն Լմբայ[12]: Եւ այլ ամբաքնակ ազատորերոյն[x] պարգևս և պատիւս օր ըստ օրէ բաշխէր, և ինքն[xx] յանգուցանել ախորժելով վարէր ընդ նոսա: Զորոյ իմացմանց հանգամանս իմացեալ ազատացն Վասպուրականի՝ ոչ հաճոյանայր նոցա թևակոխելն Գագկայ, և զելս իրացն ջանային գտանել, առանց խռովասէր հանդարտութեան. ոմանք զայս ինչ, ոմանք զայն ինչ տանէին ածէին խորհրդածութիւն: Բայց բազմաց այլ[xxx] իմացմունքն յայտնոսիկ առ վայր մի առին զկատարումն:*

*Որդին Ապուսեճի Աւշին, որ զպարսկային հարստութիւնն հզօրապէս յաղթութեամբ ի գլուխ եհան՝ ձեռնամուխ ախորժեաց լինել ի վերայ Հայոց, զհարստահարութիւնն բացաձգել, և զթուղթս առ մի մի յիշխանացն յղել յաճախէր, յոլովագոյն առ իշխանն Աշոտ և առ եղբարս իւր. որք [471] ծա-*

---

[470] ×) Ա (Լ/9-10)՝ ազատորերոյն. ուղղ.՝ ազատ որեար (Նախն., 413): ××) Ա (Լ/10)՝ յինքն: ×××) Ա (Լ/5-6)՝ բազմաց այլ. ուղղ.՝ բազմացեալ (Նախն. 406):

նուցեալ զբռնանալն նորա ի վերայ պարսկական պետացն և զինչ կրեցինն, զմտաւ առեալ և զխառն ընդ աշխարհիս զդրակցութիւնն, և թէ գուցէ զպարսկայինն հասանիցէ մեզ կրել և աշխարհիս մեր՝ ձեռն ետուն հաւանութեան ի նորայն կալ մնալ հպատակութեան:

Եւ եղեալ Աշոտ զհետ կոչնականաց Աւշնի՝ գնաց աներկիւղ համարձակութեամբ: Իսկ թագաւորն Հայոց Սմբատ անպատկան վարկանելով զերթալն Աշոտի առ Աւշին, մի՛ գուցէ արդեօք և այլք դրդուեցին յիշխանացն զնորայն հետևել ուղևորութիւն, և յարգելուլն զԱշոտ՝ չանսաց ումեք: Նոյնժամայն ի բարկութիւն ցասմամբ մեծաւ շարժեալ թագաւորն Սմբատ՝ գրէ առ Գուրգէն Անձաւացեաց տէր և առ Գագիկ Ապումրուան, ասէ. «բնութեամբ ճշմարտութեամբ աշխարհդ Վասպուրական ձեր լեալ էր ժառանգութիւն, և զձեզ արտաքս հանեալ թողեալ են նախնեացն Աշոտի: Արդ ելէք ի վերայ աշխարհիդ զօրացեալ [472] զօրութեամբ, և ձեր լիցի երկիրդ ի ժառանգութիւն»: Որոյ հրամանն փութով զկատարումն առնոյր[x] ըստ ցանկութեան իշխանասիրութեան նոցա. և ելեալ ի վերայ աշխարհիս՝ յերկուս բաժինս հատին զաշխարհս:

Եւ եկին տալ պատերազմ ընդ ամրոցին Վան քաղաքի, և զի ի գնալ Աշոտի թողեալ էր անդ զտիկինն Վասպուրական զՍեռայ[13], և զպատրաստութիւն պատերազմողական մարտի ամրոցին հաւատացեալ էր Յիսէի եղբօր Թադէոսի, որոց Շերեփայ որդիք անուանէին, ի յԱկէացի տոհմէ, քաջամարտիկք և հմուտք պատերազմողական յարդարմանց՝ և ետուն պատերազմ անդ զաւուրս Լ, և ոչ ինչ կարացին ստնանել. այլ զպարտութիւն քան զյաղթութիւն յինքեանս ձգէին ի ձեռանէ Յիսէի, մինչ պակասել պատրաստութեանն բերդին, մանաւանդ ջրոյն սակաւաւորութիւն. որք յակամայ կամս լքին զմարտն և ցածուցին զպատերազմն և ետուն զամուրն ի Գագիկ:

Եւ մինչ այսպէս կայր [473] աշխարհս յանկարծ խաղա-

---

[472] x) Այլ օր.՝ զկատարումն առնոյր փութանակի:

ղութեան՝ եհաս լուր գործոյն առ Աւշին և առ իշխանն Աշոտ, եթէ «վրդովեալ է երկիրն, և կան ի տարակուսի՝ որք զամուրսն քո ունին. արդ փութա անյապաղ վճարել զբռնահարեալ գործ միաբանութեան նոցա քակտել»: Որոյ ոչ զպատաղումն բերելով՝ գայ զօրու Աւշնի հասանէ ի վերայ նոցա: Զորոց տեղի տուեալ գնացին յամուրս իւրեանց, և զօրացն Վասպուրականի դարձեալ զկնի Աշոտի:

Բայց Գուրգէն խոկայր զմասն աշխարհին յինքն գրաւել, մանաւանդ զՈստանն Ռշտունեաց, որ էր տեղի սպանման հօր իւրոյ, գինս արեան զնա համարելով: Բայց Ապումրուան պատճառելով Աշոտի՝ ասէ. «վասն այնր ելի յաշխարհս, զի մի Գուրգէն բռնաբար յինքն կորզեալ ձգիցէ զամուրս աշխարհիս, և յինքն բռնաբար զզօրս քո յանգուցանիցէ: Արդ խօսեաց ընդ իս ի խաղաղութիւն, զպատրուակ կեղծաւորութեան ի միջոյ երկոցունց ի բաց պարուրեալ»: Բայց քաղցր[474]աբարոյ իշխանն Աշոտ, հեզն և ամենայն բարեօք յղփացեալն, տեղի ետ ասացելոյն: Եւ հասեալ ի մի վայր գան Հովիտն Կուղան, ուր Գուրգէն բանակ արարեալ էր ի Կարկինեանս տեղւոջ բազմաձեռն զօրու. խօսի Գուրգէն ընդ Աշոտի յայտնապէս զոր խորհէրն. և առ չանսալ իշխանին՝ անդէն նոյն ժամայն ի մարտ պատրաստին: Բայց Աշոտ թէպէտ և նուազագոյն զօրու ընդ իւր լինելով, ոչ թիկըն ածեալ[×] վերջացաւ առ պատերազմն յառաջանալ: Յորոց միջի կացեալ Ապումրուան համոզեալ նոցա ցածոյց զճակատ առ ճակատ վառեալ պատերազմն, և Գուրգէն դարձեալ գնաց յաշխարհն իւր յամուրն Կանգուար: Եւ յետ սակաւ աւուրց վախճան առեալ կենաց նորա, ձիոյ խրոխտացելոյ զանձն ամբերթեալ ելոյծ ի կենաց զքաջարանցն զմեծն տերանց զքաջ զօրավարն և զզօրագլուխն Հայոց մեծաց[14]:

Բայց Ապումրուան երկնէր գայր զիշխանասիրականն ծնանել [475] զահակալութիւն ի վերայ աշխարհիս: Եւ քանզի էին երեքին սոքա անքակ անխզելի առ միմեանս, զմիա-

---

[474] ×) Այլ օր.՝ ոչ թիկնածեալ:
[475] ×) Այլ օր. անդոյլ: ××) Ա ($^{2}/_{4-5}$)՝ որոց:

*բանական կապակցութիւն շաղկապեալ, Աշոտի և Գագկայ և Գուրգինայ, որդիք Դերանկին, յեցեալ յուսացեալ առ միմեանս, իբրև զքաղաք ամուր իբրև զպարիսպ պղնձի՝ ոչ կատարելանայր առ ւարտումն հասանել խորհրդոյն. և բազմածուփ ալեացն ներքսագոյն չտեմարանեալ ցանկասիրութեանն՝ անդուլ[x] առնէր զնորայն իմացմունս. ապա նոքա մերկացեալ զկեալն կասկածանօք առ Ապումրուան՝ գան առ նա առանց ակնածութեան. որոյ[xx] դիպօղ ժամ գտեալ ի միասին կալով նոցա՝ կալեալ զնոսա տայ յամուրս աշխարհին, կապեալս կապանօք երկաթեօք. զԱշոտ տարեալ յանկասկածելին Նկան, զԳագիկ յամուրն Սևան, զԳուրգէն ի Կոտորն բերդ: Եւ դարձեալ զՍևան բերդ տայ ի ձեռս Հասանայ որդւոյ Վասակայ ամբարշտի:*

*Զնոյն տեսեալ ազատացն Վասպուրականի, անտանելի մնալով առ դիպուածն [476] զոր ինչ գործեաց Ապումրուան՝ ելին գնացին առ Ատոմ որդի մեծին Գուրգինայ[15] յամուրն Կանգուար, գտանել զելս իրացն, Յիսէ Տրունեաց[x] տէր որդի Հոնաւարայ, Վարազշապուհ Աբելինից տէր, Թադէոս Ակէացի Շերեփայ որդի, և այլք ընդ նոսա: Սոքա ամենեքին աղխիւ և ընտանեօք իւրեանց թողին զտունս բնակութեան իւրեանց և զհայրենիս իւրեանց, ի վերայ մտերմութեամբ հպատակութեան որդւոցն Դերանկին. լաւ համարեցան զկեանս պանդխտութեան յօտարութեան առնել, քան տեսանել կապեալս արգելեալս ի բանդի զորդիս իշխանին իւրեանց, զիշխան աշխարհիս. որոց սրտի մտօք ի մանկութենէ զհարկ ծառայութեան հաստուցեալ էին ըստ օրինի վայելչութեան հնազանդողաց և հնազանդելոց, ըստ յորդորման հեթանոսաց վարդապետին[16]:*

*Անդանօր եկեալ Շապուհ եղբայր թագաւորին, և կացուցանէ զԳագիկ՝ իշխան Վասպուրական տէրու[477]թեանն. մանաւանդ ցի փեսայացուցեալ էր Շապհոյ զԳագիկ ի դուստր իւր[17]. բայց Ատոմ յամր առ փոյթն լինելով վասն թագաւորին ակնածութեան: Եւ ելեալ ազատացն Վասպու-*

---

[476] ×) Այլ օր.՝ տերունեանց:
[477] ×) Այլ օր.՝ համր:

*բականի դէմ եղեալ տարադէմ գնացին յԱմդացւոց[xx] քաղաքն առ Ահմաթ որդի Յիսէի Շեհայ, որ մեծաւ ախորժանօք յանդուցանէ[xxx] առ ինքն զնոսա իբրև արս պատուաւորս և քաջամարտիկս զօրաւոր զօրութեամբ, և մանաւանդ զի բազում անգամ զանուն յաղթութեան ստացեալ ունէին: Իսկ յառաջագոյն և նա գիտէր ի համբաւուց, և յօժարագոյնս եղև ընդունել զնոսա. որ և զկողմանս Տարունոյ յինքն կորզեալ՝ թիկնածէր բնաբանապէս ամիրայապետել ամենայն Հայոց: Զի և տուն Հայոց անուանեալ առաջին ասէին[xxxx] զՏարօն: Եւ զայսոսիկ Ահմաթայ յինքն առեալ արկանէր ի կամս ևս յառաջանալ, զի և զնախարարս Հայոց գրաւեսցէ մեծապատիւ սիրով, ի ձեռն այնր հաստատագոյնս լինել ի կասկածաւոր [478] պատգամացն, զոր հանապազ յղէր առ նա Սմբատ թագաւորն Հայոց:*

(ԻԳ)

## ՎԱՍՆ ԶՕՐԱԺՈՂՈՎՆ ԼԻՆԵԼՈՑ ՍՄԲԱՏԱՅ ԹԱԳԱՒՈՐԻՆ ՀԱՅՈՑ Ի ՎԵՐԱՅ ԱՀՄԱՏԱՅ ԱՄԴԱՑԻՈՑՆ, ՎՐԱՅ ԵՒ ԱՂՈՒԱՆԻՑ ԵՒ ԲՈԼՈՐ ՀԱՅՈՑ ԻՇԽԱՆՕՔՆ, ԵՒ ՊԱՐՏՈՒԹԻՒՆ ՍՄԲԱՏԱՅ ՅԱՀՄԱՏԱՅ Ի ՍԱՀՄԱՆՍ ԱՂՁՆԵԱՅ Ի ՎԵՐԱՅ ԳԵՏՈՑՆ ԹՈՒԽ ԿՈՉԵՑԵԱԼ, ՈՐ ԻՋԱՆԷ Ի ԾՈՎՆ ԲՋՆՈՒՆԵԱՅ:

*Որպէս վերագոյնն յիշեցաք սակաւուք վասն Ահմատայ՝ յինքն գրաւել զաշխարհն Տարունոյ, հանեալ ի Հայոց պետութենէ: Գրէ բազում անգամ Սմբատ առ Ահմատ՝ թողուլ անդրէն զաշխարհն, տալ ի ձեռս Աշոտի որդւոյ իշխանին Դաւթայ. և խոստանայր նմա զհազարապետութիւնն Հայոց յարքունուստ հրամանէ հնազանդութեամբ Հայոց: Բայց Ահմատ ոչ խոնարհեալ ունկն դնել ասացելոցն, արհամարհեալ զառաքեցելովքն:*

---

xx) Այլ օր.՝ Համդացւոց: xxx) Այլ օր.՝ հանդուցանէ. (տե՛ս նաև Նախն. 91): xxxx) Այլ օր.՝ անուանեալ զնա ասէին առաջին զՏարօն:

[478] x) Ա ($^{c}/_{\text{ա}}$)՝ եկին հասին:

Յայնժամ Թագաւորն դեսպանս արարեալ յամենայն սահմանս տէրութեանն Հայոց, Վրաց և Աղուանից, և առ քաղաքացիսն և հազարապետս և գաւառակալս, և որք սիրողաբար առ նա զհնազանդութեանն հարկ հարկանէին: Եւ եկն եհաս[x][479]առ նա Ատրներսէհ իշխանն Վրաց: Եւ որպէս ասեն՝ եղև թիւ զօրուն գումարելոյ իբրև ՃՌ-աց[1]. և գնացեալ ընդ եզր ծովուն Բզնունեաց, ընդ կողմն Ապահունեաց՝ և բանակեցաւ յափն գետոյն[2], որ իջանէ յԱղձնեաց խոխոմացն: Զորոյ իրազեկ եղեալ գալուստ նորա առ Ահմատ[xx], և նորա գումարեալ առ ինքն զզօրս իւրոյ նահանգին և Միջագետաց և զԳեթացիսն՝ և եկն եհաս յանդիման նմա: Եւ իսկոյն անյապաղ յական քթթել սպառազինեալ այրուձի պնդակազմ պատրաստութեամբ, ռազմ բոլորեալ ղաշիկ դիմեցուածով[xxx] զմարտն գրգռեալ, ախոյանայարձակ լինելով քաջացն Վասպուրականի, զորոց անուանքն վերագոյն անդ յիշեցաք, և փակեցին զբանակն և դարձուցին զզօրագլուխսն, և իբրև հողմ զպրակս եղեգան տատանեալ՝ սասանեալ խռովեցուցին զբազմութիւն զօրացն:

Իսկ Թագաւորն իբրև գիտաց զընդխառնել ընդ միմեանս զօրացն, կամեցաւ մի՛թէ արդեօք կարասցէ դադարեցուց-[480]անել զմաքառումն. ի սաստ մատուցեալ գնդին իւրոյ պատերազմողացն՝ և ոչ կարաց զբորբոքեալ հնոց դէգադէգ կոխակացն սրախողխող սատակմանն ցածուցանել: Նոյնժամայն դարձուցեալ զերասանակ երիվարին ի պատերազմ յառաջանալ, և անդ բազում արութիւն նահատակութեան ցուցեալ, սակայն ոչինչ օգուտ բերեալ: Այլ ելեալ արտաքս ի ռազմէն՝ դարձաւ փախստեայ ընդ ճանապարհն Հողցայ[x]. և Ահմատայ ընդ մէջ փակեալ զղաշիկն՝ յանխնայ հարուածովք հարին, մանաւանդ զհետևակազօր գրոհսն և զգռեահսըն որք ընդ նոսա. և որպէս ասեն՝ աւելի քան ԵՌ լեալ թիւ

---

[479] x) Այլ օր.՝ բնակեցան: xx) Զորոյ... առ Ահմատ ուղղ.՝ Որոյ գալուստ նորա իրազեկ եղեալ առ Ահմատ (Նախն., 381):
xxx) Ա (²/₃₄)՝ դիմացուածով ուղղ.՝ դիմեցուածով (Նախն. 6):
[480] x) Այլ օր.՝ Հաղցայ:

սպանելոցն. և զտարի մի կացեալ մարմինք սպանելոցն անյօշելիք ի գազանաց և ի թռչնոց: Անկեալ էր յայնժամ ի պատերազմին Աշոտ Հայկազնեայ Գեղաքունեաց իշխան, որ Սուփանայ որդին ճանաչէր. և տիկինն սպարապետական ի Տարունոյ եկեալ և նշանացի զդի նորա գտեալ՝ տարաւ ի Պորպ յիւր աւան և եդ ի գեր[481]եզմանի[3]:

(ԻԴ)

## ՎԱՍՆ ՄԱՀՈՒԱՆՆ ԱՊՈՒՄՐՈՒԱՆԱՑ[x]:

Բայց Ապումրուան զԳագիկ որդի Դերանկին պահէր ընդարձակի, հանեալ ի կապանաց բանտին: Նորա խորհեալ հաստատնագոյնս վասն Ապումրուանայ՝ քաջասրտագոյնս լինել ի սպանումն. և որք ի տանէն Ամատունեաց՝ Շապուհ և Վահան և Սարայ եղբարք միմեանց, Ապուսակր Վահունի և այլ ընդ նոսա, միաբանական խորհրդակցութեամբ խորհրդածեալ[xx] ընդ Գագկայ առ ի սպանումն Ապումրուանայ, որով առնիցեն ելանել ի կապանաց իշխանին Աշոտի և Գուրգէնի, և դարձուցանել զիշխանութիւնն անդրէն առ իւրեանս. իսկ իբրև եկն Ապումրուան զհետ փախստէիցն ի Վանտոսպ զկնի Թագաւորին՝ և խորհուրդն Գագկայ հաստատնագոյնք զկատարումն առին:

Իբրև հեռացաւ Թագաւորն զերկուց աւուրց ճանապարհ՝ Ապումրուան ելեալ ի ձիընթացիկ ասպարէզն զգնայր. և ազատացն յետուստ կողմանէ սուր ի գործ [482] արկեալ սպանին զնա, և զգլուխ նորա հատեալ առ բերդայինսն յղէին[1]: Եւ հանեալ զԱշոտ և զԳուրգէն ի կապանաց՝ տիրեցին զօրութեամբ մեծաւ իւրեանց բնիկ իշխանութեանն, և կէին յանհոգս յանկասկածս այնուհետև: Եւ առեալ զմարմին նորա տիկնոջն Սեդայի կնոջն Աշոտի և եդ ի գերեզմանի, ի տեղւոջն որում Զորոյ վանքն ասեն, ի վերայ գետղջն Ահաւականից:

---

[481] x) Այլ օր. յաւելու՝ ի Գագկայ: xx) Այլ օր.՝ խորհրդակցեալ:

Եւ իբրև եհաս առ Թագաւորն որ ինչ գործեցաւն՝ ոչինչ գոյր տեղի այլ պատասխանւոյ. բայց ասէ, «արժանապէս այն գործ նոյն գործեցաւ»:

Իբրև եհաս Թագաւորն յաշխարհն իւր՝ ետ բերել պարգևս և պատիւս Աշոտի ըստ իշխանական յօրինուածի, և զԳագիկ ձգեալ ի պատիւ զօրավարութեան Հայոց մեծաց, ըստ օրինի Թագաւորացն Յունաց՝ տալ առաջի նորա նշանակս խաչադրօշս: Եւ Գուրգինի նորին եղբօրն զպատիւ մարզպանութեան գահակալութեան հաւատացեալ, ըստ կարգի բարձաբերձութեան Թագաւորացն Հայոց, մանաւանդ մեծին Տրդատայ Թագաւորի[2]:

(ԻԵ)

## ԵԹԷ ՈՐՊԷՍ ԿԵՂԾ[483]ԱՒՈՐԱԿԱՆ ՍԻՐՈՎ ՆԻՒԹԷՐ ՉԱՐԻՍ ԱՒՇԻՆ Ի ՎԵՐԱՅ ՀԱՅՈՑ ԵՒ ԻՇԽԱՆԱՑ ՆՈՑԱ:

Բայց Աւշին որդի Ապուսեճի, քանզի էր այր խռովասէր, ատեցող զխաղաղութիւն, անյագ առ արբումն արեան մարդկան, և զայն բարգաւաճանս անձին քաջ լաւ համարէր. զաւերումն աշխարհի քան զշինութիւն կարևոր համարէր, և ոգորել ընդ բնաւ[x] աշխարհս անդուլ շրջաբերութեամբ, անհանգիստ մնալով, և կեղծաւորական սիրով ընդ Վասպուրական աշխարհիս և ընդ նոցուն պետացս, համարէր լինել կատարելանալ առ սէր. և մի զմիոյ հետ ստիպէր՝ փութալ միոյ միոյ ի նոցանէ յանդիման նմա հատուցանել ծառայական սպասաւորութիւնս, զոր և արարին իսկ Աշոտ և Գագիկ և Գուրգէն, կամաւոր և ակամայ զնորայն կատարելով հրամայեալս, և երթային մի մի նոյնպէս և դառնային:

Իսկ ի միում յաւուրս անցեալ գնացեալ Գուրգէն՝ հանդիպի նմա ի քաղաքին Պարտաւ, և արարեալ անդ յոլովագոյն աւուրս իբրև տարւոյ միոյ. բարիատեացն և չարասէրն

---

*[483] ×) I (269), II (239)՝ զբնաւ. Ա (1/ռ)՝ III (370)՝ ընդ բնաւ:*

Աւշ[484]ին նիւթէր գայր ի վերայ Գուրգինի հաւուցանել[x] չարիս մեծամեծս, արկանել զնա ի կապանս և ի տանջանս մահաբերս, զամուրսն յինքն գրաւել, զաշխարհն տալ ի ձեռս իւրոյ գործավարացն, ըստ պարսկայնոցն հատուցմանց հատուցանել նոցա: Իբրև զեկուցաւ նմա յոմանց զոր ինչ խորհի վասն նորա Աւշին, մանաւանդ թէ նախախնամօղ և պահպանական աջն Քրիստոսի հովանաւորեալ առ ապրուստ հրածին կարկտաբեր հասեալ կորստական դիպուածին, օգնութիւն հասեալ յԱստուծոյ՝ քաջասրտագոյնս զնա գործեաց և շութափեալ[xx] զնա ի ժանեաց գազանին՝ ելեալ գնաց մեկնեցաւ օգնութեամբ ի վերայ հասեալ գիշերոյն, և ընդ նմա Շապուհ յԱմատունի տոհմէ, այն որ գործակիցն եղև Գագկայ առ սպանումն[xxx] Ապումրուանայ, զոր վերագոյնն յիշեցաք, և եկին մտին յաշխարհն իւրեանց: Եւ խնդութեամբ մեծաւ լցեալ զաշխարհս, որպէս զոք ի մեռելոց եկեալ տեսանիցեն:

Իսկ Աւշին դատարկացեալ ի խորհրդոցն զոր խորհեցաւն՝ յաւել զայս [485] օրինակ կատարել զկամս չարագոյնս: Ելեալ խրոխտ և դառնաշունչ փռնկալով մռմռեալ յանձնիւր գազանեղեն զայրացմամբ յարձակեալ յեղակարծում եկն եմուտ ի քաղաքն Շամիրամայ ի Վանտոսպ: Իսկ իշխանն Աշոտ և եղբարք իւր խոյս տուեալ զկողմամբքն Փոքր Աղբագոյ, մերձ առ յամուրսն Ջղմար և Սրինգ: Եւ Աւշնի հաւատացեալ զաշխարհս ծառայի ումեմն Սափի անուն[1] ի գեբելոցն Յունաց ներքինի, թողեալ զհաւատսն որ ի Քրիստոս, մալիմանակ[x] դեն ստացեալ, արիւնարբու ուսմամբ բնաւորեալ. և տարածեալ սփռեալ գործավարս յամենայն երկիրս, բայց միայն յամուրսն ոչ կարացին լինել գամագիտ: Եւ այնպէս յանհոգս աներկիւղս հարկապահանջ գործակալօք վարէին: Գունդ մի հարուստ անցեալ մնացին ի Համ-

[484] x) Այլ օր.՝ հաւուցանել նմա:
xx) Այլ օր.՝ շուտով թափեալ: xxx) Այլ օր.՝ ի սպանումնն:
[485] x) Ա (Ը/1-2ա)՝ մոլիմանակ փխ.՝ մալիմանակ:

բոյրազան աւանի Մարդաստան գաւառի, ուր եպիսկոպոսական աթոռ մարդպետականին յայնժամ փոխեալ դնէր ի Նախճաւան քաղաքէ. անդ հասեալ քաջացն մերոց եղբարցն երեց[486]ունց ազատագունդ սակաւաձեռն գրոխիւ ի ձմեռնային ժամանակի. և ընդ լրթնատեսիլ լուսոյն վազս ի վերայ եդեալ՝ հանին ընդ սուր[x] յոլովս քան թէ սակաւս: Բայց քանզի խոնջեալ երիվարացն ի յերկայնագոյն ընթացիցն և վասն թանձրամած ձեանն[xx] կուտակմանց պակասեալ ուժոյ երիվարացն՝ և թշնամիքն հանգստեամբ ելեալ ի վերայ նոցա ի լիճս աղեղանց և նիզակաց ձեռբակալ արարեալ զոմանս. և զկէսն մահու դատապարտեալ, զգլուխս նոցա հատեալ ի փայտի բարձրացուցանէին ի վերայ դրանդեաց պարսպին: Իսկ զձեռբակալսն յղեցին առ Աւշին ի Պարտաւ, որք տուեալ ի կապանս բանտի և դատապարտեցան ի մահ, սրախողխող միջակտուր արարեալ: Այսպէս և զամենայն ըմբռնեալսն վտանգաւոր մահու տառապեցուցանէին ընդ մէջ կտրելով. աճարկուս տեսողացն զնոցայն վտանգսն կացուցանելով: Բայց միայն զԱրշակ ոմն ի տոհմէն Վարաժնունեաց խնդրեալ դստերն Շապհոյ Բագրատունոյ, [487] զոր առեալ յայնժամ Աւշնի կնութեան յանօրէն ամուսնութիւն. զսա աղերսեալ տիկինն Վասպուրական Սեդայ, կին Աշոտի և դուստր Ապումրուանայ՝ զերծին զնա ի սրոյն Աւշնի:

(ԻԶ)

## ԵԹԷ ՈՐՊԷՍ ԱՍՏՈՒԱԾԱՍԱՍՏ ԲԱՐԿՈՒԹԵԱՄԲ ՍԱՏԱԿԵՑԱՒ ԱՒՇԻՆ ԵՒ ՀԱՄՕՐԷՆ ԶՕՐՔ ԻՒՐ:

Բայց յո՞վ ոք կամ ո՞ր աշխարհ, զոր ոչ կործանեաց Աւշին պէսպէս յլկանօք հինի ասպատակաւ, աւարառու յափշտա-

[486] x) Այլ օր.՝ ի սուր: xx) Այլ օր.՝ ձեանց:
[487] x) Այլ օր.՝ ունել զԱստուած ի գթութեան:

կութեամբ, սպանմամբ սրոյ և սովոյ: Քանզի այնչափ թանձրացաւ յաճախութիւն սովոյն՝ որ ոչ միայն անսուրբ կենդանիս ուտէին ըստ սրբութեան կարգի, այլ և զսարսափելի և զդժնդակ, որ զգազանայինն անցուցանէ զվայրենամտութիւնն, զմարմինս մեռելոց առանց խղճելոյ ուտէին, ի գերեզմանացն հանեալ զհետ միոյ և երկուց ամաց թաղելոյ: Եւ պատճառ այսորիկ զի՞նչ, եթէ ոչ այն զոր Պօղոսն ասաց, եթէ «վասն զի ոչ ընտրեցին զԱստուած ունել ի գիտութեան×× մատնեաց զնոսա ի միտս անարգութեան գործել զանարժանս»[1]: Զոր և մարգարէն առ գերութեամբն Բաբելացւոց [488] ասէ, «կերիցեն հարք զորդիս, և որդիք զհարս»[2], որպէս և առ Վեսպիանոսիւն եղև: Բայց քանզի յերկնուստ էր հասեալ վտանգն, և աստուածառաք էր բարկութիւնն՝ և ոչ ոք զօրեաց և եկաց ընդդէմ նորա ելանել ի պատերազմ, այլ որ եհարն՝ նոյն և բժշկեաց: Զի մինչ այսպէս կայր աշխարհս ի տարակուսի, և ակն ունէին գթութեանցն Աստուծոյ առատանալ, որպէս սովոր է Աստուած ի բարկութեան զողորմութիւն յիշել. Յովսէփ անուն ի Յունաց ազգականութենէ ի ծառայութիւն հասեալ Աւշնի, ներքինի, թողեալ զքրիստոսական պաշտօնն, մոլորութեանն Մահումաթայ հաւատացեալ×, այր գազանաբարոյ, վայրենամիտ, առատաձեռն առ արբումն արեան մարդկան, այլ զօրաւոր զօրութեամբ ի գործս պատերազմաց, ահարկու ազանց, կարողութիւն և ուժեղութիւն Աւշնի ի սորա ձեռս բաւականացեալ: Այլ որ փոփոխէ զսիրտս իշխանաց նախախնամօղն Աստուած՝ քակեալ բաժանեաց ճեղքեաց զՅովսէփ ի յԱւշնէ. և թողեալ [489] զքաղաքն Պարտաւ՝ առնու զզօրս իւր երագապէս անցեալ գնացեալ ի յաշխարհն Ատրպատանի: Զոր լուեալ× Աւշնի ի կոր կործանեցաւ. և փութացաւ գրեաց առ Սափի որ ի Վանտոսպ նստեալ և ճոխանայր Վասպուրական տէրութեամբն. որ առանց յապաղանաց

---

[488] ×) Ա ($^{2}/_{46}$)՝ Մահումաթայ մոլորութեան հաւատացեալ.
[489] ×) Ա ($^{1}/_{5}$)՝ լուաւ: ××) Այլ օր.՝ Սափին. և՝ զստակչական դեղն արբեալ:

զփոյթն յառաջաբերեալ՝ գնաց եհաս առ Աւշին ի Մարակայ քաղաք: Եւ ըստ արժանի վրիժապարտութեանն լցեալ սուր տեառն բարկութեամբ խաղաց ի վերայ Աւշնի և բանակի նորա առ Հասարակ, Հրեշտակի Աստուծոյ Հարեալ ի Հարուածս անբժշկականս ըստ օրինի Հերովդիայ ախտակրութեան, տորմեալ խղխայթմամբ, չարալլուկ ուռուցմամբ զտրորումն առնոյր արիւնալից արիւնապարտ մարմինն գազանեղինին. և նախ յառաջ Սափին կարի յոյժ սիրեցեալն իւր, զսատակչական դեղն արբեալ[xx], անբուժելի կեղով վառեալ յոսկր և ի մարմին՝ և առաջի Աւշնի զրաւ առնոյր ի կենացն: Նոյնպէս և ամենայն զօրք և զօրագլուխք Հանդերձ բազմակոյտ կարաւանին զկորստե[490]ան[x] ընկալան զվճիռ. նաև երամակ ձիոցն և իշոցն և ուղտուցն նովին կեղով վառեալ սատակեցան: Եւ ինքն Աւշին զտանջանացն փորձական[xx] կիրս կրեալ, դառնագոյն քան զլեղի իժի ճաշակս ճաշակեալ՝ գնաց զկորստական ճանապարՀն. «և դժոխք ի ներքուստ դառնացան ի պատաՀել նմա»[3] զանբաւութիւն չարեացն ընդ իւր տանելով:

Իսկ աշխարՀս ոգի առեալ բնակեցան խաղաղութեամբ իւրաքանչիւր ըստ չափոյ Հասակի ի մեծամեծաց մինչ ի փոքունս, և գոՀացեալ զգթութեանցն Աստուծոյ. և Հիացմամբ առ նորայն Հայելով, թէ ո՛վ ոք էր, և ո՛րպիսի, և ո՛րպէս կորեաւ՝ ասեն, «զիա՛րդ դադարեաց պաՀանջողն, Հանգեաւ տագնապօղն. եթէ ո՛րպէս իջին ի դժոխս փառք նորա»[4]:

Գործեցաւ այս ՅԽԷ թուականութեանս Հայոց, յորում ամի և տէր Գէորգ Հայոց կաթողիկոս փոխեցաւ[5]: Եւ յաջորդեալ փոխանակ նորա կացեալ յաթոռ սրբոյն Գրիգորի երանելին Մաշտոց, ելեալ[xxx] ի կղզոյն Գեղաքունի լճէն, զՅօՀաննու Կարապետին [491] զվարուցն բերեալ զօրինակ. և թէ ոչ այպանել ախորժէք զբանիւք իմովք՝ ոչ ընդՀատ կամ

---

[489-490] ×) Ա ($^{3}/_{1ա}$- $^{1}/_{բ}$)՝ զկորստեանն: ××) Այլ օր.՝ փորձագոյն: ×××) Ա ($^{2}/_{4-3ա}$), I (273), II (243)՝ Մաշտոց եղեալ: III (376), Նախն. (193)՝ ելեալ:

[491] ×) Այլ օր.՝ զսա:

*պախարակելի թուիցի կոչել գնա[×] նովիմբ անուամբ. այլ Մկրտչին հրամայի՝ մի ըմպել գինի և օղի. սա ոչ միայն գինով ոչ գկծէր, այլ և ոչ ջրով զծարաւոյն պէտսն կատարէր, սակաւապետութեամբ ընդովք թրջելովք, և խստավայել բանջարովք առ քաղցն վայելելով: Այլ և ուսումնական բանգիտութեանն քաջահմտագոյն, անընչասիրութեամբն մեռելագոյն. առատաձեռնութեամբն կենդանագոյն: Սա կեցեալ ամիսս Ը կամ Թ յաթոռ Հայրապետականին՝ փոխի յաթոռ առաքելական պատուադրութեանն ի Փրկչէն մերմէ խոստաբանեալսն[6]:*

*Եւ փոխանակ նորա ժառանգէ զաթոռ Հայրապետական երանելին տէր Յօհաննէս[7], որ և սնեալ և ուսեալ առ ոտս սրբոյն Մաշտոցի. նորին հրահանգեալ կրթարանի ուսումնասիրութեանն վարժիւք ոռոգացեալ, այր քաղցրաբարոյ և հեզահայեաց, հասարակաբար առ հասարակ զինքն* [492] *վարկանելով, արտաքոյ ամբարտաւանական բարձրայօնութեանն՝ կալով յաշտիճան հեզոցն, դրուատեալ ի Փրկչէն մերմէ Յիսուսէ Քրիստոսէ:*

(ԻԷ)

## ՎԱՍՆ ՍՔԱՆՉԵԼԵԱՑՆ ՈՐ ՑՈՒՑԱՒ ՑՈՍՏԱՆՆ ՌՇՏՈՒՆԵԱՑ ՑԱՄՍ ԶՕՐԱՎԱՐՈՒԹԵԱՆՆ ԳԱԳԿԱՑ:

*Յանձն առի պատմել ստուգապէս զսքանչելագործ յայտնութեանն հրաշիցն, որ ցուցաւ ի զօրավարութեանն Գագկայ. և ապաշաւանք ոչ սակաւք դիմեցին հոլովեալ[×] ի վերայ իմ. զոր արդ այժմ համառօտաբար հատուցից զհարկ պարտեաց շարագրութեանս:*

*Նշանն քրիստոսեան քառածրագիծ փայտիւ արուեստագործեալ ճարտարապետի ումեմն հիւսնեալ, և արծաթագործ* [493] *եօթնփորձեան հրաբորբոք ճարտարապետն ի բովս*

---

[492] ×) *Այլ օր.՝ յալովեալ:*
[493] ×) *Այլ օր.՝ վատամիրհ:*

Հալոցացն զուտ և վճիտ արծաթ ընտրելով, արծաթեղինաւն զփայտեղէնն պատեալ արտաքուստ, որդունակ քաւութիւնն և այլ կահ սպասու խորանին ի Մովսիսէ օրինադրեալ ի ձեռն ճարտարապետացն Եղիաբ և Բեսելիէլ խորանայարդարք[1]: Նոր ոմն Նաբուզարդան[2] կամ Զամրի[3] յայտնեալ ի յաղանդոյն Նեստորի, երեքթշուառեան վատաչուէր, վատմիրհ[x], զագահութեանն չարիս ախտացեալ՝ սպրդեալ եմուտ ընդ մութ գիշերին յամրական պարսպեալ բլուր, և անցեալ ի սուրբ կոչարանին օթագացեալ. մինչ քաղցրատենչ քունն ի վերայ հասանէր որ զպահպանութիւն գիշերոյն պահէին՝ նորա ամբարձեալ զպղծալից ձեռն ի սրբութիւն սրբոցն և առեալ զսուրբ նշան խաչին Քրիստոսի և ընդ պատուհանն արտաքս ելեալ, որջացեալ ի մուտս կոյս յափն ծովուն ի փապար յարձանախիտ քարին և մանրեալ զարծաթեղէնն ընդ փայտեղինին. և իսկոյն հարեալ զնա այսոյն պղծոյ և [494] ընդ զառիվայր լերինն թաւալագլոր խաղացուցեալ հարուստ ձգմամբ մինչ ի դաշտավայր տեղին ուր այգեստանքն: Իբրև ստուգեցաւ որ ինչ եղեալն էր՝ փութացան խնդրել ի քաղաքին և ի կիրճս ճանապարհին, յոր կողմ և աճապարեաց ոք, մինչ անցեալ գտին զհարեալն դիւի չարի, զի կայր դեռ կիսամեռ: Եւ առեալ զմանրեալ և զխորտակեալ ի մասունս զԽաչն՝ բերին առ զօրավարն, լուացեալ զարիւն պղծոյն, որ ի վերայ խաչին շաղախեալ կայր ի գլորմանէ այսահարին: Եւ հրամայեաց ածել ոսկերիչ և նորոգեալ նորացոյց զանյաղթ փայտ խաչին Քրիստոսի, մատուցեալ զբեկորսն առ իւրաքանչիւր յօդս, պատեալ մաքուր արծաթով վայելչագոյն քան զառաջինն, ի պարծանս քրիստոնէից և յամօթ և ի նախատինս թշնամեաց խաչին Քրիստոսի: Իսկ թշուառականն զսատակմանն ընկալաւ զվճիռ, և ի հանդերձելումն զխաչահանուացն հատուցանել զպարտիս:

Բայց մի՛ ինձ բասրանս [495] դիցես՝ զօրինականին առ

---

[495] x) Այլ օր.՝ վկայից մեռանէր: xx) Ա (2/1)՝ I (276), II (245)՝ երկեցունց: Այլ օր.՝ երկոցունց:

*ւետարանականս դնել համեմատութիւն, զոր և ոչ ես անգիտանամ զմեծն և զփոքրն, զօրինակն և զճշմարտութիւնն: Որպէս Պօղոս ուսուցանէ. «արհամարհեալ, ասէ, ուրուք զօրէնըս Մովսէսի՝ մեռանէր, ի բերանոյ Բ կամ Գ վկայիւք. քանի սաստկագոյն պատժոց համարիմք զայն, որ զորդին Աստուծոյ առ ոտն եհար»[4], և որ ի կարգին է:*

(ԻԸ)

## ՎԱՍՆ ԱՊՍՏԱՄԲՈՒԹԵԱՆ ՏԱՃԿԱՑՆ ՈՐ ԿԱՅՍԻԿՔՆ ԿՈՉԻՆ ԵՒ ԻՇԽԱՆԻՆ ՍԻՒՆԵԱՑ Ի ԹԱԳԱՒՈՐԵՆ ՍՄԲԱՏԱՅ, ԵՒ ԴԱՐՁԵԱԼ ԵՐԿՈՑՈՒՆՑ[xx] ՀՆԱԶԱՆԴՈՒԹԻՒՆ:

*Ընդ այն ժամանակս[1] զօրաժողով եղև թագաւորն Հայոց Սմբատ ի վերայ Ապահունեաց աշխարհին: Զի որդիքն Աբդռհամանի[2], որ Կայսիկքն անուանին՝ ապստամբեալ էին ի պետութենէ թագաւորին, տալ հարկս և զինուորել որպէս օրէն էր: Եւ գրէթէ ամենայն իշխանք Հայոց, Վրաց և Աղուանից եկեալ էին ընդ զօրս Հայոց ի վերայ աշխարհին Ապահունեաց. էր ընդ իշխանսն և մեծ իշխանն Վասպուրական Աշոտ, որդի [496] Դերանկին, և ընդ նմա Գրիգոր իշխանն Մոկաց և զօրքն Անձաւացեաց: Վասն զի իշխանն Մոկաց և իշխանն Անձաւացեաց նուաճեալ էին ընդ ձեռամբ Վասպուրական իշխանութեանն: Եւ անցեալ բանակեալ էին զօրքն Հայոց ի դաշտին Օշական ի Մանազաւեան նահանգին:*

*Իսկ որ տիրէր աշխարհին Ապահունեաց Կայսիկն՝ զիւր զօրսն առ ինքն գումարեալ և որ շուրջ զնովաւ քաղաքայինք և ասպատակքն Պարսից, որք ի Յունացն վերայ առնէին արշաւանս: Գրէ Կայսիկն առ թագաւորն՝ խնդրել զխաղաղութիւն, և զոր միանգամ կամիցի՝ եղիցի. յայտնիքն այսպէս, իսկ ծածուկքն՝ որպէս յայտնեցաննն: Եւ թագաւորն յանձն առնոյր զխաղաղութիւնն: Իսկ Կայսիկքն և որք ընդ նոսա և զօրքն Պարսից զմարտն ի գաղտնիս գրգռէին, և երագապէս աճապարեալ հասին հանդէպ զօրուն Հայոց. մինչ նոքա յանհոգս յապահովս բնակէին՝ նոքա զռազմն*

կազմեալ վառեցին զճակատն. և Թագաւ[497]որն յանկասկածս լինելով՝ փութացան ելին ի բանակէն փախստեայ Հարուստ ասպարիսօք:

Իսկ իշխանն Աշոտ և իշխանն Մոկաց և զօրքն Անձաւացեաց քաջագոյնս արիացան կացին յոտնկայս. և վառեալ ի զէն և յասպազէն՝ արձանացան իբրև զմի այր, և յանդուգն դիմեցուածով խուռն յարձակմամբ հարեալ ի դիմի, ուր քաջքն այլազգեացն ճակատէին ընդ աջաթև կողմն. և պատառեցին զգունդն, և պարտեցին զախոյեանսն. և այն ինչ ի քթթել ականն դարձուցին զզաշիկն[xx], և զհետ մտեալ փախստէիցն սուր ի գործ արկեալ՝ դիթաւալ կուտակս կուտակս արկանէին. և մնացեալքն փախստեամբ ի Մանազաւեանն անկանէին քաղաք: Եւ գոյժն աւետաբեր եհաս զկնի Թագաւորին, և դարձան եկին պաշարել զքաղաքն: Իսկ որք էին արգելեալք ի քաղաքն՝ աղօթականս և պաղատանս առ մեծ իշխանն Աշոտ յղէին, զի համոզեսցէ ի մէջ նոցա զխաղաղութիւն. զոր ոչ անփոյթ արարեալ [498] լի բարեմտութեամբ յղփացեալն Աշոտ՝ խօսի ընդ Թագաւորին զխաղաղութիւն. զոր ոչ անունկնդիր լեալ ընդունի զհայցելին, առնլով հարկս և պատանդս, և զբերդն Երիկաւ Հաղացովտի, զոր հանեալ էր մանազաւեցոյն ի բերկրացոյն. նոցա հանեալ էր ի Գինունի ազգէն, ի զարմէ Մեժեժի Գնունոյ, ի Վասպուրական բաժնէ, նաև Բերկրի բաժին եղեալ էր Վասպուրականի. և դարձուցանէ անդէն առ բերկրացիսն, և ինքեանք դառնային մեծաւ յաղթութեամբ անպայման խնդութեամբ: Գործեցաւ այս ՅԾԱ Թուականութեանս Հայոց և ի Դ ամի հայրապետութեանն Յօհաննու Հայոց կաթողիկոսի:

Եւ եղև ի գալ միւսոյ տարոյն՝ Սմբատ իշխանն Սիւնեաց ի բաց եկաց ի հնազանդութենէ Թագաւորին Հայոց, արգել առնելով հարկացն տալ Թագաւորին, Թևակոխելով Պարսից բռնաւորին հատուցանել զհարկս և զհաս. և ինքն ժողո-

---

xx) Այլ օր.՝ զղօշիկն:

վեալ զզօրս իւր ԺՌ արանց զօրաւորաց՝ եկն եմուտ [499] յամուրսն Վայոց ձորոյ: Յայնժամ Թագաւորն փութացոյց դեսպանս մի զմիոյ կնի առ իշխանն Աշոտ, զի անյապաղ երագութեամբ հասցէ առ նա: Եւ էր գրեալ ի միում թղթի անդ, յիշեցուցանելով զոր ինչ գործեաց Աշոտ ի զօրսն Ապահունեաց զյաղթանակ պատերազմին և զհոյակապ անուն ստանալոյն՝ ասէ, «և այս ևս գործ կամ խաղաղութեան կամ պատերազմօք և ելցեն ի գլուխ[x], միայն զյապաղանացն ի բաց լքցես[xx] զդեգերանս». և խոստանայր տալ նմա քաղաքս, գաւառս, գեօղս և ագարակս: Քանզի և զոստանն Նախճաւան տուեալ էր ի կալուած զյաղթութեանն մանազաւենին Կայսկի[xxx]: Եւ ինքն Թագաւորն ժողովեալ զօր հարուստ աւելի քան զհազարաց հնգից և քսանից, և եկն անց յայնկոյս գետոյն Երասխայ, և բանակեցան ի տեղւոջն:

Իսկ իշխանն Վասպուրական, այն ինչ հուպ ընդ հուպ եկն ի ժամադրեալ տեղին. ընդ որ յոյժ ուրախացեալ Թագաւորն, իբրև զերծեալ ի կասկածան[500]ացն, զոր ունէր յիշխանէն Սիւնեաց: Եւ այգուն անցեալ ընդ գետն Երասխ յայնկոյս ի դաշտն Շարուր՝ բանակին զգետովն: Եւ իշխանն Աշոտ գրէ առ իշխանն Սմբատ, անօգուտ զապստամբութիւնն համարելով. համոզեաց ի մէջ երկոցունց և գլխաւորեաց զխաղաղութիւն առ նոսա, մինչ գալ Սահակայ եղբօր իշխանին Սիւնեաց, ընդ իւր բերելով զհարկսն: Եւ դառնայ մեծաւ պարգևօք և անհամեմատ խնդութեամբ:

(ԻԹ)

## ՎԱՍՆ ՄԱՀՈՒՆ ԱՇՈՏԻ ՎԱՍՊՈՒՐԱԿԱՆ ԻՇԽԱՆԻՆ Ի ՆԱԽԱՃԱՒԱՆ ՔԱՂԱՔԻ:

Յայսմ վայրի ոչ մտադիւր ախորժակօք գրեմ զճառս

[499] x) «և այս գործ... ի գլուխ» ուղղ.՝ «և այս գործ կամ խաղաղութեամբ կամ պատերազմաւ ելցէ ի գլուխ»: (Նախն.՝ 470): xx) Այլ օր.՝ լքիցես: xxx) Այլ օր.՝ կայսիկի:

*պատմութեանս, որ տրտմականքն, քան թէ ուրախականքն յառաջանան տիրել ինձ: Թախիծք անզրաւք, քան թէ խնդութեանցն աճեն բողբոջք. արտօսր յորդառատ վտակաց ծաւալին յաչաց, քան թէ ծաղուն խողխոջեն խինջիւնք. գլորումն, քան թէ կանգնումն յառաջատեն. բեկումն սրտի, քան թէ քաջութիւն պնդութեան [501] ի ներքս դիմեն. կեանք ցաւագինք, քան թէ առողջութիւն ընդդիմակ մահու յաջորդին[x]: Է՞ր աղագաւ կամ վասն ո՞յր պատճառանաց. զի ի քաջէն իմմէ[xx] և ի մեծ իշխանէն, ի քաջատոհմիկ և ի բարեփառ գլխոյն իմմէ զրկեալ լինիմ: ԶԱշոտէ ասեմ զնազելի[xxx] և զբարձրագահ ճոխացելոյ վսեմապետէ[xxxx], յընդհանուր նախագահնստեալ ի մէջ բոլոր Հայաստանեայցս:*

*Քանզի ի գնալ նորա զօրացուցանել զքեռին իւր զթագաւորն Հայոց, իսկոյն յելանելն նորա ի տանէ իւրմէ ի Վան քաղաքէ՝ տիրէ ի վերայ նորա ցաւք հիւանդագինք կարապետք մահու, անմերձենալիք ճարտարաց բժշկական[xxxxx] ձեռնարկութեանն: Եւ ազատորերոյն[xxxxxx] Վասպուրականի աղերսեալ՝ մի երթալ զայն ճանապարհ, առաջի դնելով զախտակրելն՝ նորա ընտրեալ զմահ ի վերայ քեռոյն իւր[xxxxxxx], քան զկեանս կեղակարծ ինչ խորհել զնմանէ: Եւ ուժեղացեալ ցաւոցն խստութեան որովայնացաւածութեան՝ երթայ մտանէ ի քաղաքն Նախճաւան, և տևեալ [502] անդ զաւուրս Խ՝ փոխի յաշխարհէս ամենեցուն պատկառելին, մանաւանդ թէ ընդհանուր ցանկալին և սիրելին ճոխից և անազգեաց, աղքատաց և փարթամաց, մեծամեծաց[x] և փոքունց: Սորա ամք ձգեալ լինին յՅԻԵ թուականէն[xx] Հայոց. լեալ ամաց ԻԹ՝ փոխի յաշխարհէս յամսեանն արեգ, որ օր Դ էր*

---

*[501] x) Այլ օր.՝ յաջորդէն: xx) Ա ($^{1}/_{7}$)՝ իմ: xxx) Այլ օր.՝ զնազելւոյ: xxxx) Ա ($^{2}/_{8\text{-}9ա}$)՝ վսամապետէ: xxxxx) Այլ օր.՝ անմերձելալի ճարտարաց ի բժշկական: xxxxxx) Ա ($^{2}/_{8}$)՝ ազատորերոյն. ուղղ.՝ ազատ որեար (Նախն, 413): xxxxxxx) Այլ օր.՝ իւրոյ:*

*[502] x) Այլ օր.՝ մեծաց: xx) Այլ օր.՝ թուականութենէն: xxx) Այլ օր.՝ ի յաւուր երեքշաբաթօջ: xxxx) Հարկաւորէր. ուղղ.՝ հարկաւոր էր (Նախն., 426):*

ամսոյն յաւուր երկշաբաթւոջ[xxx] ի յիններորդ ժամու աւուրն[1]. և տիկինն Սեդայ առեալ զդի նորա տարեալ հանգուցանէ ի յԱղբագ ի գեօղն Օսի, ի վանս սուրբ Խաչին:

Յերկարագոյնս վասն սորա աճեցուցանել հարկաւոր էր[xxxx] զողբերգականացն ճարտասանութիւնս: Բայց քանզի ոչ բաւէ աղքատիմաստ իմոց խոհարանաց շարժումն պատկանաբար առ ողբոցն վարել բանակարգութիւն՝ թողի այժմ այլում զօրաւորի կամ այլում ժամանակի: Եւ ինձ ի վերայ տրտմականացն դէմ եդեալ առ կատարելագոյն և առ անզուգական անհամեմատ խնդութիւնն դեգերել, առ հոգևորական [503] ուրախութիւնսն ընթանալ յետ մարմնական[x] տրտմականացն յաճախութեանցն: Քանզի թէպէտ և տարաժամ լրմամբ ժամանակի չափաբերեալ կենացն Աշոտի՝ հաստատնագոյն և անվրէպ լուծման կենացս առ հոգևորսն և յաւիտենականսն և անվախճան կենացն առաւելութիւնն անցեալ գնացեալ ժամանեաց, յապաշաւանս և ի գիղջ[xx] առեկեալ ի վերայ երիտասարդական դիւրահոս արագավէժ առ չարեացն միտեալ խակութիւն[xxx]: Զի ի հասանել ի վերայ նորա ցաւոցն մահաբերաց՝ ոչ հոգացաւ զմանկականն իւր տարաժամ ելսն յաշխարհէս, թողուլ լքանել զաշխարհս բազմագաւառս, զամուրս անկասկածելիս, մերժել հեռանալ ի ճոխ և ի նազելի եղբարցն պատուաւորաց, ի պարոյ կացեալ ազատագունդ ազգի ազգի պերճութենէ, և որ այլ քաղցրագոյն վայելք ընդ երկնաւս ի վերայ երկրի, պայծառ գեղ արեգական և լուսնի, հանդերձ աստեղացն ճոխագործութեամբքն ընդ տարբեր երկնի յեղյեղլով, ծովու և այլոց ցամաքայնոց, [504] և ջրայնոցն բարեփառ հոլովմանցն հրճուանաց, և որ ինչ ընդ այլք[x] ընդ դոքօք պատկանին յարմարաբար տնտեսութիւնք առ սկզբնատիպն պատկերակերպութիւն: Զայսոցիկ և որ առաւելն քան զսոյն իրողութեանց ցոյցք մոռացմամբ սուզեալ՝ առ երկնաւորսն և առ երկնից

---

[503] ×) Այլ օր.՝ մարմնականացն տրտմականացն: ××) Այլ օր.՝ և ի գիղջս: ×××) Այլ օր.՝ խակութիւնս:

[504] ×) Ա (¹/₃)՝ և որ ինչ այլք:

թագաւորն թևակոխեալ, վասն հանդերձելոցն հոգացեալ, առ կղերս եկեղեցւոյ սրբոյ խոնարհեալ՝ կոչեաց զերիցունսն նորոյ կտակիս, զեպիսկոպոսս և զքահանայս, առաջի արկեալ զհաւատոցն կատարելաբանութիւն, զմկրտութեանն լուսաւորութիւն. զառեկելոցն յապաշխարութիւն, զյոյսն յետ վախճանին, զմարդասիրելն Քրիստոսի, զառհաւատչեայսն առաջաբերելով ի փոքր ժամանակի զմեծամեծսն կշռեալ, զպոռնիկն, զմաքսաւորն, զաւազակն և որք այսպիսիք, և առաջի արկեալ զհառաչանսն, զարտասուսն, զխոստովանութիւնն, զողորմագին պաղատանսն, մինչ ի մահ զտրտմելն[1], զկենաց դեղն հայցել, զմարմին և զարիւն որդւոյն Աստուծոյ [505] ի թողութիւն մեղաց, զվայն և զեղուկն անյարմար հառաչմամբ[x], մեծակական ողբովք առ Քրիստոս ամբառնալով: Վէմս զերեսօք արկեալ արտօսր յորդառատս ի խտղտելի[xx] աչաց ի վայր հեղեղատելով, զնորափթիթ ծաղկազարդ ոսկեճաճանչն մուրուացն[xxx] ճիրանամբքն զլխըզումնն, և որ առաւելեալն քան զսոյն զապաշաւանացն զանյագութիւնն: Նաև սրբոց հրեշտակացն ի տեսաւորութիւն ձևացեալ, որոց սարսափմամբ առ նորա զնայեցած յապուշ միտքն կրթեալ, շուրջ փակեալ զնայեցածն՝ ի հարց մատուցեալ ասէ, «գո՞յ թողութիւն իմոց չարեացն գործելոց, թողո՞ւ Աստուած զիմ պարտեացն յանճախութիւն. ասացէք ինձ, տուք ինձ պատասխանի»: Զայս ասելով, և յերեսն[xxxx] ի վայր ի վերայ մահճացն զգետնեալ՝ ի վայն և յեղուկն զողբոցն խառնուածսն յանճախագոյնս մանուածէր: Ես իսկ առ ընթեր գոլով[xxxxx] անվրիպագոյն իրազեկ եղէ բովանդակ նորա հաստատնագոյն առ յոյսն կազմեալ փրկութիւն. ճաշակեալ [506] ճաշակս զհացն կենդանի, և զաղբիւր արեանն կենդանի և կենդանարար որդւոյն Աստուծոյ՝ աւանդեաց զհոգին ի ձեռս սրբոց հրեշտակաց, համարձակապէս ան-

---

[505] x) Այլ օր.՝ յառաչմամբ: xx) Այլ օր.՝ խտտելի: xxx) Ա ($^{1}/_{12}$), I (281), II (250)՝ մուրուացն: Այլ օր., III (386)՝ մորուացն: xxxx) Այլ օր.՝ զերեսն: xxxxx) Այլ օր.՝ կալով:

[506] x) Այլ օր.՝ ի միոյ:

ցանել գնալ «ընդ իշխանութիւնս և ընդ պետութիւնս, ընդ աշխարհակալս խաւարիս այսորիկ»[2], որ անհաւատից քան եթէ հաւատացելոց ոգւոց և ապաշաւելոց զտիրելն բռնաձգեալ կորզեն յինքեանցն կորուստ:

Յետ մահուանն Աշոտի և կատարելոյ զաւուրս սգոյ նորա առնու զիշխանութիւնն Վասպուրական տէրութեանս Գագիկ եղբայր նորին. և եկեալ ի մի վայր Գագիկ և Գուրգէն եղբարք համահարք և միոյ[x] մօր ծնունդք, յերկուց քաջատոհմիկ գահակալութենէ Սենեքարիմայ և Դաւթի, և անհակառակող հաւանութեամբ հեզահայեաց առ միմեանս սիրոյ յօրդորմամբ արտաքոյ վատթարին խռհականաբար մնալով, քաջախորհուրդ առատաբուղխ խաղացմամբ իմաստութեանն զմիմեանս բռնահարելով, զօտարոտին [507] ի բաց վարատելով զբղջախոհութեան անհանճարութիւն՝ զլաւն և զյոյժ օգտակարագոյն ընտրութեամբն զիրկս արկին, զշինութեան և զխաղաղութեան հայրենի աշխարհի երկասիրաբար հոգ յանձին տանել. ստացան բարեկարգաբար զարդարել զմերկացեալն ի բարեզարդութենէ[x], զմերժեալն և զհեռացեալն ի հայրենեաց և ի տանց՝ յանձնիւրս առնել դարձումն, և զշփոթեալ և զվրդովեալ կարգս աշխարհիս յօրինել առ հանդարտութիւն և խաղաղութիւն յառաջանալ, և ամենայն ուրեք ամենեցուն բնակաց աշխարհիս անդորրեալ յանհոգս և յապահովս լինիլ ի ներքին և յարտաքին հազմարարաց:

Եւ զբոլոր երկիրս իւրեանց տէրութեանն բաժանեցին յերկուս մասունս: Յելս կոյս և ի մուտս որ առ հիւսիւսի զհաջեցածն բերէ՝ առեալ էր ի բաժնէ Գագիկ իշխանի[3], զԾուաշ գաւառն և զԹոռնաւան, Արտազ, Մարդաստան, Դառնի[xxx], Առբերանի, Աղանդռոտ, Բառիլովիտ, [508] Պալունիք և Մե-

---

[507] x) Այլ օր.՝ ի բարեզարդութենէ զարդարել:
xx) Ա ($^{2}/_{19}$), I (282)՝ Նախն. (333)՝ Դառնի: II (251), III (388)՝ Գառնի:

[508] x) Այլ օր.՝ Մեժնունիք: xx) և վեր անդ փխ.՝ ի վեր անդ (Նախն., 198):

ծնունիք[x], Տոսպռշտունիք, Բոգունիք, Գուգան գաւառ Արտաշէսեան[4]: Այսոքիկ գաւառք անուանիք, զոր յառաջին ժամանակս իւրոյ իշխանութեանն սեփհականս իւր արարեալ ունէր հայրն նենգութեան Մարդպետն կոչեցեալ, զոր և վեր անդ[xx] յիշատակեալ ցուցաք զորպիսութիւն, և մանաւանդ քաղաքն Շամիրամայ հռչակելին և յոյժ փառաւորագոյնն յամենայն կողմանց Վասպուրականի:

Իսկ Գուրգինի մարզպանի Հայոց առեալ էր ի բաժնի յելս կոյս և որ ելանէ ի հարաւակողմն, զԱնձահից ձոր, զԿրճունիս, զԿկուղան ովիտ, և զբուն զՄարդաստան գաւառ, զԱրճիշակովիտ, զոտն Առնոյ, զԱղբագ[xx] Մեծ և զՓոքր, Ակե, Տամբէր, Տագրեան, Ըռնայ, Ջարեհաւան:

Բայց զՏամբէր և զԸռնայն և զՋարեհաւան գաւառ հանեալ էր ի Պարսկահայոց, իսկ զՆախճաւան քաղաք և զԳողթն գաւառ հանեալ էր ի Վաս[509]պուրականէ բազում ժամանակօք յառաջ, ՄԺԱ ամօք[5], յամի այրման[x] եկեղեցւոյն Գրիգորի և վտանգաւոր մահու զօրացն Հայոց: Իսկ զԳողթն գաւառ ի ժամանակի կատարման սրբոյն Վահանայ, յամի ՃՁՁ թուականութեանց, յորում ամի կատարեցաւ սուրբն Վահան, որ էր որդի Խոսրովայ Գողթան տեառն:

Եւ սկիզբն արարեալ շինութեան և խաղաղութեան աշխարհիս իրաւադատութեամբ, վերակացութեամբ որբոց և այրեաց, աղքատսիրութեանն լրջմտութեամբ, եկեղեցւոյ զարդարմամբ. շինեաց Գագիկ պարսպաւոր ամրափակութեամբ զբլուրն յՈստանին Ռշտունեաց զաւերեալն ի բազում ամաց, շինեալ նորոգեաց և զեկեղեցին որ ի նմա յանուանակոչութիւն սուրբ Աստուածածնին Մարիամայ և զարդարեաց զնա մեծագանձ սպասուք և եդ ի նմա զԽաչն, զոր յիշեցաք վերագոյնն, յորոյ ձեռն ծանուցաւ զօրութիւնն Հրաշագործ: Շինեաց և եկեղեցի մի յԱմրական քարանձաւի, ի կատար քարանձաւին, [510]յանուն քաջամարտիկ զօրավարին սրբոյն

---

xxx) Այլ օր.՝ զԱղբակ գաւառ:

[509] x) Ա $(^{1}/_{3\text{-}4})$՝ յամի այր եկեղեցւոյ:

[510] x) Ա $(^{2}/_{8\text{-}11ն})$՝ խորհրդածութեան աւանդութեան նորոյ ուխտի

Գէորգեայ և նոյնգունակ զարդու զարդարեաց զնա բու-րուառօք արծաթեղինօք և ընտիր և փորձ արծաթագործ դրոշածօք նշանի խաչին Քրիստոսի: Իսպառ ստորև ամրա-կանին ի գոգաձև տեղւոջն, որ առ Հիւսիսի առ ի չեղ տե-սանի՝ շինեաց եկեղեցի Հրաշագործ Հրաշազան յօրինուածով եկեղեցի[6] ի տաշեալ քարանց ի մանազաւեան քաղաքին ի Վանտոսպ, և Հիմնեցուցեալ յանուն սրբոյն Սիօնի, որ ի սուրբ քաղաքն Երուսաղէմ. և յաջմէ սեղանոյն շինեալ ընդ-նովիմբ Հիմամբ ի տեղի յիշատակարանի խաչելութիւն տեառն Գողգոթայ տեղւոջ, և ի վերայ նորա շինեաց եկե-ղեցի զվերնատանն խորՀրդական խորՀրդածութեանն աւան-դութեան նորոյ ուխտի×: Իսկ ի յաՀեակ կոյս սեղանոյն շինեաց եկեղեցի ի յիշատակ յարութեանն Քրիստոսի յեռօ-րեայ թաղմանէն վերելեկեալ աւարառութեամբ դժոխոցն, և ի վերայ նորա շինեաց [511] եկեղեցի զՀամբարձմանն ի յեր-կինս ի Հօրն գաՀակցել աթոռ, և զերկրորդ գալստեանն զյի-շատակ ունելով, որ գալոցն է Հայրենի փառօք ըստ Հրեշտա-կացն առ առաքեալսն զմխիթարականն և զքաջալերականն աւետիս նոցա առբերելով: Շինեաց և ի վերայ Ամրական քարանձաւին յելս և ի մուտս կոյս տունս խրախիցս ոսկե-զօծս պատեշգամեալ, յաւելլով ի յառաջագոյն ի Հօրէ նորա Դերանկէն շինեալ: Իսկ ի Հարաւակողմն կուսէ ի ջրամբար× արձանագործ քարեղինէն ճանապարՀ աշտիճանեալ ներ-քուստ ի վեր մինչ ի կատար անձաւին Հեշտալիր զեղ և զէջս յօրինեալ, քարագործ աւազամած կրագործութեամբ: Այլ և պատկանաբար իմաստութեամբ պատրաստեաց ջրմուղ ներ-քսագոյն երկրի ի քարանց տաշելոյ փողոցս գնացից ջրոյն կազմեալ, գալ իջանել յելից ի ստորոտէ լերինն Վարագայ առշեղեալ ի Հարաւոյ ի Հիւսիսի ի խաղաղ ընդլայնանիստ [512] գոգաձև դաշտականացսն, ելանել ի գագաթն× Ամրա-

---

աւանդութեան: I (284), II (253), III (390)՝ խորՀրդածութիւն աւանդութեան նորոյ ուխտին:

[511] ×) Այլ օր.՝ ի ջրամբարձ:

[512] ×) Այլ օր.՝ ի գագաթան: ××) Այլ օր.՝ պալատի: ×××) Այլ օր.՝

կան անձաւին զբօսնուլ նովաւ առ վճարումն բաւականութեան, ըստ մասանց պիտոյից օժնդակութեան քաղաքայարդար ապարանից թագաւորական պաղատի[xx] իւրոյ ձեռակերտին, առ Հօրն յաւելադրելով շինուածս իւր: Դարձեալ վերակնեալ յառաւօտինս կոյս խաղացեալ ի Ծուաշռոտ ի Գետս աւան՝ չինէ անդ զվայելչական տեղի խրախից, բլուր մի պարսպեալ տաճարախիտ շինուածովք, որոյ Հայեցածն առ դաշտակողմն ի վայր կոյս բերի, ի խաղս գետոյն Երասխայ, ուր Հոյլքն երէոյն խայտան և վայրեննացն խոզից և առիւծուցն մորիքն և երամակք ցռոց պատրաստական առ որսոյն Հրճուանք առ ձեռն պատրաստ Հոլովին[xxx], ընդդէմ նայելով լերանցն Այրարատեան ազատն Մասեաց, ուր Արտաւազդն Արտաշէսեան քարավիժեալ խոՀամանայր ի կոշտն[xxxx] կոՀակին[7]: Իսկ վայր խաղացեալ ի Մառակ[513]անն աւան, առ Կարմիրն կոչեցեալ գետով, որ իջանէ ի գետն Երասխ՝ չինէ և անդ ամրական տեղի, դժուարամատչելի ասպատակող Հինից, դնելով ի նմա նմանապէս ապարանս փողոցայարդարս, տաճարակերտս սենեկագործս, բաւական ի պէտսն պատրաստեալ, փոքր ինչ ի վայր խաղացեալ ի տեղին որում Ձորք ասեն: Եւ անդ գտեալ ամրագոյն անձաւ տեղի անկասկածելի ի պատերազմական գործոց և զնա պարսպեալ պատուարօք շուրջանակի՝ և յօրինեաց պատրաստեաց ապարանս պատուաւորս գեղազարդս խրախճանական կարգադրութեանց դրուագս, և այնպէս անկարօտս առ պիտանացուս Հոգ տարեալ՝ գլխաւորեաց որ ինչ շինութեան և խաղաղութեան աշխարՀիս նպաստաւոր առ օգտակարագոյնսն պաՀանջէր գործառնութեան եղանակք, որպէս օրէն է թագաւորաց և թագաւորազանց աշխարՀաշէն խնամողաց յանձանձել ըստ վերակացութեանն յԱստուծոյ նոցա Հաւատացելոց: Ձի ոչ [514] միայն առ շինութիւնն՝ այլ և յարիւն և յապաժոյժ առաքինաբար զանձինս եդեալ ի վերայ խա-

---

յոլովին: xxxx) Այլ օր.՝ ի կուշտն:

[514] x) Այլ օր.՝ սուրբ փայտն: xx) Այլ օր.՝ քարակրագիծ:

*չանցն մեռանել իբրև գքաջ հովիւ, գլխաւորագոյն և բարձրագոյն յիշատակ արձանացուցեալ անջինջ կտակ առ բազմախաղաց ժամանակս տրամադրեաց: Փութաճեմ ընթացող արշաւանս ի վերայ ձգեալ՝ հասանել ի լեառն տեառն և ի տուն Աստուծոյ մերոյ, ըստ յորդորման մարգարէիցն[8], և ճախր առեալ ի Ներքուստ ի վեր ի լեառն Վարագ և երկրպագել աստուածազարդ քրիստոսապսակեալ փայտի խաչին Քրիստոսի, պատուանդանի ոտիցն Աստուծոյ, որով պարծի և պսակի ի Քրիստոս հաւատացելոց թագաւորաց երամք: Եւ ոսկեգործ ականակապ կազմեալ՝ պատեաց ոսկով գփրկագործ սուրբ խաչն, և ընդելուզեալ մարգարտով զարդարեաց զսխրագործ փայտն[×], հիւսնեալ ի մէջ անուշահոտ փայտից, թողեալ մասն ինչ արտաքս ոսկեպատ պահարանին, յառաջնում իւրոյ քառածրագիծ[××] խաչակերտ փայտեղէն գզրոցկանն[9]: Այս այն խա[515]չ է զոր վերագոյնն գրեցաք վասն սորա, ՄԾԹ ամօք յառաջ զսորայս բացայայտեալ զցոյցս յայտնութեանն, յամս Ներսեսի Երկրորդի Հայոց կաթողիկոսի և Վարդանայ Ռշտունեաց պատրկի և յամի ունելութեանն Տաճկաց զհայկական աշխարհս[10]: Եւ յետ խաչայարդար պայծառութեանն իջեալ ի լեռնէն Գագիկ ի ստորոտ լերինն, ուր աբեղայիցն բնակէին սքեմաձևքն:*

*Իսկ ի տիրական զօրավարութեանն Գագկայ սկզբնաւորեալ ձեռակերտ իւր՝ շինեաց զհողաբլուր բարձրաւանդակն ի Մահռաշտ գեօղ[11] յափն գետոյն յելս կոյս, որ հայի յՌստանն Ռշտունեաց, յորում տեղւոջ յառաջագոյն ապարանք պարսպաւորք եղեալ էր Վարդ պատրկի Ռշտունւոյ հայկազնոյ, և վերակացու նմա թողոյր[×] զՅովհաննէս ոմն քահանայ ի Բոգունի գաւառէ ի յԱնստան գեղջէ: Յորում տեղւոջ բանակ կրօնաւորաց կարգեաց, և հաւատաց զառաջնորդութիւնն նախասացեալ քահանային, որ էր այր հեզ, ցածուն [516] և պատուական վարուք և պատշաճագոյն յոր կո-*

---

[515] ×) *Այլ օր.՝ թողոյր նմա:*

[516] ×) *I (287)՝ մակաձայնել բառից հետո բազմակետով նշանակված են 2-րդ սյունակի (2 տողից) շարունակությունը և 517 էջի ողջ 1-ին սյունակը ու 2-րդ սյունակի առաջին 10 տողերը:*

չեցաւ. և զատուցանէ զօրավարն վանիցն գեօղս բաւական առ ընկալումն Հիւրոցն և ի տեսչութիւն աղքատացն:

Շինէ անդ եկեղեցի վայելչապէս պայծառութեամբ և անուանէ զնա յանուն սուրբ Պետրոսի առաքելոյն անպարտելի դժոխական առաջնորդի: Եւ յաջմէ և յաՀեկէ սեղանոյն այլ ևս Բ եկեղեցիս: Նախ յառաջ ախորժական թուէր Գագկայ անուանել զեկեղեցին փրկչական անուանակոչութեամբն մակաձայնել[x] ոչ ուղղակի առ Հաւատն մատուցեալ, զի Նեստորականացն և Քաղկեդոնականին է այս իմացմունք այլովքն ևս երկաբնակօք, որք բանին՝ տուն և տաղաւար զառ ի կուսէն առեալ մարմին դանդաջեալ ասացին, և ոչ միութեամբ բնութեամբ բանին մարմին լինելով. այլ տուն Քրիստոսի սուրբ առաքեալքն են և ասին այլոց սրբոց գրոխիւք. որպէս ասաց Պաւղոս, եթէ «դուք տաճար էք Աստուծոյ կենդանւոյ»[12], և դարձեալ ասէ, թէ «տուն Աստուծոյ մեք եմք»[13]. և դարձեալ մարգարէիւն ասէ, [517] «բնակեցայց ի նոսա և գնացից ի նոսա»[14]: Այլ Քրիստոս իւր ոչ տուն ոչ տաղաւար ասի, այլ մի տէր Յիսուս Քրիստոս, յԱստուծոյ և ի մարդկանէ կատարեալ. ապա եթէ ոչ՝ պաշտելիք եղիցին եկեղեցիքն, որ փրկիչն անուանին և երկրպագելիքն աստուածային երկրպագութեամբքն. որ է յոյժ ծիծաղելի. և պարզապէս յայտնի առանց կասկածանաց ասի աստուած՝ եկեղեցին և մարմին բանին. և ևս յաւելցի ծիծաղելն. և կերիցեն քարինք և փայտք և այլ կաՀք երկաթեղէնք, որպէս և զայն որ ի նմայն պատարագի մարմին և արիւն որդւոյն Աստուծոյ, մանաւանդ թէ ինքն իսկ ճշմարտապէս որդին Աստուծոյ. և դարձեալ յոյժ ծիծաղելի է: Եւ այս առ այժմ բաւականասցի մտառու ուսումնական[xx] անձանց, զանմտացն ի բաց լքանելով զիմեցմունս:

Դարձեալ շինէ զօրավարն Գագիկ ի գլուխս Օձ ձորոյ, որ վասն խստութեանն սաստկաշունչ դառնալիր մաՀածին Հողմոյն[xxx] շնչելոյ այսպէս անուանէն, փոխէ անդ գեօղս և շինէ[xxxx] զբլուրն, որ տեղի բանակի ղաշիկ առնելոյ էր [518]

---

xx) Ա ($^{2}/_{7-8}$)՝ մտառուսումնական: xxx) Այլ օր.՝ օդոյն: xxxx) Այլ օր.՝ շինէ անդ:

[518] x) Այլ օր.՝ գիւղից: xx) Ա ($^{1}/_{3ւ}$)՝ զըքարանցն տաշելոյ. ուղղ.՝ տչե-

տանն Արծրունեաց, և անուանեաց յանուն իւր զձեռակերտն Գագկակերտ, և դարձոյց անդ զսահմանս անդր փոխելոյ զեօղիցն[x]: Զուգակշիռ հաւասարութեամբ մարզպանն Հայոց Գուրգէն հրաշազան յօրինուածով շինէ զեկեղեցին ի քաղաքին յԱղամակերտ ի մեծն Աղբագ, ի բուն իշխանական սեփհականութեանն իշխանութեան զարմին Արծրունեաց, հարուստ մի հեռի զքարանցն տաշելոյ[xx] զհոլովումն բրելով[xxx] առ տրամադրութիւն կոչարանին իբրև ասպարիսօք երիւք, զբացագոյնն մօտագոյնս գործելով սայլիցն հոլովմամբ. բարձրաճիչ աղաղակաւ քարոզեալ, իբրև բանիւ զբարբառ հնչեցուցեալ ազդեցուցանօղ իմացունակութեամբ, զգայական ազդարարութեամբ՝ զեկուցանել զպատրաստութիւն նիւթոյն առ կատարումն սրբոյ եկեղեցւոյն աւարտագործեալ: Որգունակ հնչումն տաշելոյ փայտիցն առ Նոյիւ ազդեցութեամբ հիւսնական գործեացն զհեղեածուփ [519] անդնդաձիգ սահանացն երկնահոս զուգաճանապարհորդութեանն յապրուստ հաւատարիմ առնն յԱստուած յուսացեալ համամիտ ընտանեացն գործակցութեամբ: Որկեն և եղեցանն առ նորա բերեալ[x] բացայայտ ի խորհուրդ տապանին, ի Փռիւգացւոց ապարասանութենէ[15] ի մեզ ճախրեալ ապրուստն, ի տունն Աստուծոյ զընթացսն քաջայարմարագոյն հաւատով բերեալ: Իսկ Գագիկ իշխան ի վերայ մկանաց կոհակալիր ձորաբաժին անդնդապտոյտ կուտակմանցն նաւամարտիկ ընթացս կազմեալ, դուզնաքեայ երասանակալ փայտիւն վազս առեալ սիգաքայլ ճեմարանօք ընդ կապուտակաձև երկնագոյն լեռնային և դաշտական ասպարէզս, քարինս տաշահոս հոլովեալ ի նիւթ եկեղեցւոյն ի Մանազաւեանն նահանգէ ընդ Բզնունական ծովն բերեալ մատուցանէ[xx] առ կատարումն հրաշագեղ դիտանոցին սրբոյն Սիօնի, այլովքն սրբական անուանակոչութեամբ տեղեաց տնտեսա-

լոց (Նախն. 185): ×××) I (287), II (256)՝ բերալով. ծն 5 հին օր. (Ա, $^{1}/_{2ն}$)՝ բրելով:

[519] ×) Ա ($^{ր}/_{ձց}$)՝ որկեն... բերեալ. Թերևս՝ որ և եկեղեցաւն առ նորա բերեալ (II, 257, ծն. 1, Կ. Պ.) ××) Ա ($^{ի}/_{14}$)՝ մատուցէ առ:

կանխն բանին Աստուծոյ մարդ եղելոյ: Սապէս [520] և Գուրգէն կատարելագործեալ ի բարձրաւանդակ ի սարաւանդակ տեղւոջն բարեձևագունի վայելչացուցեալ զհրաշակերտ յաջմէ և յահեկէ սեղանոյն երկուս ևս եկեղեցեօք: Զոր հրաշազարդեալ մեծագանձ սպասիւք, ոսկեկերտ խաչադրօշեալ ընդելուզեալ մարգարտով և ականբք պատուականօք հրաշագործեալ:

Այլ թերևս զայս տարակուսիցիս առ իմաստն՝ յանդիմանակացոյցս առնել զԳուրգէն ընդ աշխատութեան յօժարագոյն առ մարմնական զինուորութեամբն լինել: Յաւելում պատկանաբար գրել քեզ զարիական նահատակութենէն հանդիսական ժուժկալութեամբ ողջախոհաբար կրթութեամբ զզինուորական երկասիրութեամբն յօժարաբար դեգերել զմարզպանութեանն արդիւնաւորել անուանակոչութիւն: Զոր հոյակապն Տրդատ կարգադրեալ վայելչապէս հոգաբարձութեամբ զպատերազմականն հարկանել հարկս ընդդէմ հինից արշաւանաց. զոր կարգապետութիւն [521] և առ սուրբ հրեշտակն գտանեմք յարարչական նախախնամութենէն, զաշխարհի զօգուտն բերելով: Որպէս ընթեռնուս ի գիրս մարգարէականս զհանգամանս այսոցիկ. որպէս և ի վեցերորդ տեսլեանն Դանիէլի[16] և Զաքարիայի բանագործութե։սնն[17], զոր և Պօղոս հոգացաւ բացայայտել զ-Է աշտիճանեան մասունս ի Հոգւոյն սրբոյ աւանդեալ եկեղեցւոյ սրբոյ[18]:

Եւ եղև յետ մեծ պատերազմին, որ յառաջ քան զգրուցացդ գրելոյ ելին, ի գլուխս Մանազաւեան[×] նահանգին և Ծուշոյ դաշտին, և զխռովարարս քաղաքացն ի մի վայր գումարելոյն, որք և յունայն ապստակէին աշխարհ, և անդ նորա զդատավճիռն ընկալան ի սրոյ քաջացն Վասպուրականի, որպէս գրեցաքն՝ իսկ և իսկ եհաս գուժկան անկելոյն ի պատերազմին ի պարսկական քաղաքն և յԱտրպա-

[521] ×) Ա ([illegible])՝ գրելոյ ելին ի գլուխս Մանազաւեան. ուղղ.՝ գրելոց եղեւ ի գլուխս Մանաւազեան (Նախն. 192):

տական սահմանսն. և նոքա ըստ ձախողակի սովորութեանն իւրեանց օրինադրութեանն, արիւնարբու առանց բարւոյ բարեգործու[522]թեանցն, մանաւանդ թէ լցեալք սատանայական չարութեամբք՝ ձայն արկեալ յամենայն քաղաքսն, խռովեալ ըստ գազանեղէն իւրեանց մոլեգնութեանցն և գոռթ տուեալ յանձնիւր որջարանաց զօրէն մեղուացն ի մեղուանոցացն արտաքս դիմեալ ի ժամանակս խաղացման ծննդոցն, առաջնորդութեամբ իւրեանց որդնածին առաջնորդին, և առ զայրուցն առ մարդկայինն դիմեալ ազգ՝ կարծել նոցա ստանէր, յինքեանք ձգել կորզել զսատակչական դարձուածէ. սագունակ հասեալ ի վերայ Վասպուրական աշխարհիս պարսկական խուժանն ըստ ազգս ազգս և ըստ քաղաքս քաղաքս ի Մարաց և ի Պարսից, յՍպահանայ և ի Խուժաստանէ, ի Կրմանայ˟ և ի Մուկանայ, ի Թուրքաստանէ և ի Խորասանայ, և յեղակարծում հասին ի Հուայն գաւառ՝ զսուրբ եկեղեցիս, զտունս աղօթից քրիստոնէից այրել աւերել հիմն ի վեր տապալել, զքահանայսն նորոյ ուխտի ի սուրս իւրեանց մաշել, [523] զծերս և զպառաւունս մահու սրոյ սպանանել, զերիտասարդս և զկուսանս խաղացուցանել˟ ի գերութիւն, զստացուածս և զինչս վառնել աւարառութեամբ. և կայր երկիրն ի մեծ տարակուսի, լցեալ կակածանօք չարեացն:

Յայնժամ ամրացեալ նստէր ի Շամիրամ բերդին Թաղէոս անուն ի յԱկէացի տոհմէ[19], Շերեփայ որդի ծանօթացեալ, զոր վերագոյնն յիշեցաք յայլում վայրի ի մեծ պատերազմին ի սահմանս Աղձնեաց: Սա իբրև զկորիւն առիւծու ի մորւոջ իւրում նստէր փարանեալ. գրէ առ սուրբ եպիսկոպոսն Գրիգոր Ամատունեաց տանն, որ նստէր ի Հանգստի սրբոյն Թադէոսի առաքելոյ յԱրդազական˟˟ գաւառի՝ գտանել զելս իրացն եկեալ հասեալ հինին. որոյ պատասխանին

[522] և, Այլ օր՝ ի Կարմանայ

[523] ˟ I (290), II (258) խաղաղացուցանել (Ա, ծն 2, Կ Պ թերեւս խաղացուցանել) Ա. Ը [illegible], III (194) խաղացուցանել

˟˟ I (290) յԱարդագական Այլ օր՝ յԱրդողական

դարձուցեալ լի քաջալերական խրատու յորդորմամբ մար-
տիրոսական ակնկալութեան պսակաց, և թէ ի պատերազմին
յայնմիկ հասանիցէ զմահուն ընդունել զվճիռ՝ իսկ ըստ յաղ-
թութեանն զխոստովանողակ[524]անն ժառանգել անուն, զօ-
րանալ զօրութեամբ ի զօրութիւն խաչին Քրիստոսի Աստու-
ծոյ մերոյ: Որ անսայթաք հաւատով յառաջացաւ առ ասպա-
րտուսն պատերազմին փութացեալ, և ելեալ յամրական տեղ-
ւոյն սակաւաձեռն զօրականաւն, որ պահէին զպահպանու-
թիւն Շամիրամ բերդին, և սլացեալ իբրև զարծիւ ի վերայ
որսոյ՝ պատահէին անհուն բազմութեանն ի Փայտակշտան
գեօղ[20], և անդ ընդ փոքր զառ ի վայրն իբրև զհեղեղատ յո-
րդեալ հոսեալ հասաւ ի վերայ նոցա, ի Քրիստոս խրախու-
սեալ, յական քթթել ելից դիակամբք սպանելոցն և վիրաւո-
րացն զերեսս դաշտին. և մնացեալքն կէսքն փախեան հան-
դէպ երեսաց յո՛վ և կարաց ոք զերծանել, և այլքն զաղաղակ
բարձեալ ի ճայնարկու աշխարանս՝ խնդրեցին զապրուստ ի
սրոյ քաջամարտիկ ախոյանէն Շերեփեանն Թադէոսի: Եւ
յանդորր ելեալ աշխարհս Վասպուրական կեցին յապահովս
յանհոգս. և այլ ոչ ևս յաւելին [525] ելանել ի վերայ աշ-
խարհիս ասպատակաւորք հինիցն պարսկայնոցն:

Քանզի խառն դրակցութեամբ սահմանին առ միմեանս
փոքր Աղբագ և աշխարհն Կորճէից և Պարսկահայոց՝ և հա-
նապազ առ միմեանս զգժտութիւն կեղծաբերէին, մարզ-
պանն և որ զԿորճէիցն ունէին զգործավարութիւն. ելանէ
մարզպանն ի վերայ նոցա և յինքն հանէ զՏամբեր և զԸռ-
նայ գաւառ և որ ասի Ապուջափրի բերդ, ի Վհրի[x] քաղաքին
Կորճէից զիւր կացուցանէ ոստիկանս ի պահպանութիւն ամ-
րոցին: Իսկ Պարսկահայոց գռեահն[xx] խուժան ածեալ, գաղ-
տագնաց եղեալ ընդ անկոխ ճանապարհս՝ գան հասանեն ի
Մարդաստան գաւառ յաւանն Վիտահոտ, հանեն ընդ սուր,
վարեն ի գերութիւն և առնուն աւար, և ի յանցին դառնան
ի Ձուաշ և ի Թոռնաւան գաւառ, անցեալ ընդ Կրճունեաց
գաւառն: Եւ վարեն ի գերութիւն աւարառութեամբ զՆեկ և

---

[525] ×) Այլ օր.՝ ի Վճրի: ××) Այլ օր.՝ գռեայն:

զԱղզի և զԿրերեացն և ի Ճախուկ գաւառէ: [526]Ազդ եղեալ Շապհոյ եղբօր Թադէոսի Շերեփեանց. և ելեալ ի վերայ Պարսկահայոց գռեհացն[x] և անդ բազում քաջութիւն նահատակութեան ցուցեալ՝ յոլովից գերելոցն ընդարձակեաց, հանելով և զաւարն ի ձեռաց նոցա, և ինքն վիրաւորեալ սրով մեռանի ի գեօղն Գիւղիկ ի Ճուաշ գաւառի, մարտիրոսական հասեալ նահատակութեան, ի վերայ խաչանցն Քրիստոսի տուեալ զանձն ի մահ: Իսկ այլազգեացն անցեալ գնացեալ մտին ի Թրաբ գաւառ և ի Շնաւհ:

Իբրև եհաս գուժկան առ մարզպանն Հայոց Գուրգէն՝ ելեալ զհետ նոցա Ռ արամբք, վառեալ ի զէն և յասպազէն, և գնացեալ եհաս յԱյլի գաւառ. որոյ գալուստն ազդ եղեալ գնդի այլազգեացն՝ փախեան գնացին բացագոյն, կալան զամրական տեղիս, ցրուեալ ընդ լեռնայինսն անյայտ թաքստեամբ:

Իսկ ի գալ միւսոյ ամին, մինչ նոքա յանհոգս յապահովս մնացին յերկիւղէ մարզպանին, առեալ զօրականս այրու[527]ձի կազմութեամբ իբրև Ն՝ խաղաց գնաց երկայնագոյն հեռաւորութեամբ հասանել ի վերայ բանակին պարսկական աղխին, և ելեալ ի Ցաղամակերտ քաղաքէ ի Թ ժամու ուրբաթու աւուրն, և անցեալ ընդ ծովակն Ցըմբեայ, և ընդ վարազի Զարևհաւանի. և ընդ այգն ընդ առաւօտն՝ յԸռեննայ Ցամաց գեօղ, և գիշերագնաց հասեալ մինչ ի Տարօնայ կոչեցեալ գետ[21]: Եւ ի միւսում առաւօտին հասին ի վերայ բանակին խոնջեալ երիվարօք, անզգուշութեամբ առ մուտն պատրաստեալ, և անկան ի նմին ժամու Բ ոմանք, Վլիթ և Մարաճայ. և երիվար մարզպանին պակասեաց առ վազսն, պատշաճագոյն զպատերազմին խրոխտական բարձրավզութեամբ վանել զախոյեանսն, և առեալ զբանակն յաւարի, և ընդ սուր հանեալ յոլովս քան թէ սակաւս, հասին ի գոգ տեղի մի ի Մղունիս գեօղ: Եւ քանզի որպէս ասացաւ՝ ի յերկարագնացս աշխատութեանց երիվարացն և հեծելոցն ծանրութիւն ի տքնու[528]թենէն ի վերայ հասելոյ, և տօթն արե-

---

[526] ×) Այլ օր.՝ գռեհացն:

գակնակէզ տապախառն ջերմութեանն, և թանձր ծարաւոյն պասքեցելոց երիվարացն հանդերձ հեծելովքն՝ յեղակարծում հանգստեամբ դիմեալ ի վերայ նոցա, քանզի նոքա կային յանհոգս, և գունդ անհաւատից դառնացեալ ոգւով ի վերայ կանանց և որդւոց իւրեանց և ազգականաց՝ յարձակեցան ի վերայ նոցա ուժգին սաստկութեամբ և սուր ի գործ արարեալ յանխնայ կոտորեցին. և անհնարին բեկմամբ խորտակեցաւ գունդն Հայոց, մինչև ի բազմացն սակաւուց հազիւ ուրեմն մազապուր զերծեալ՝ անկան յաւուր յայնմիկ ի տարապարտ պատերազմին արք անուանիք իբրև Ռ, որ և ոչ տեղի գերեզմանի անգամ երևեցաւ նոցա մինչև ցայսօր: Եւ նոքա էին արք փառաւորագոյնք ի տանէ Արծրունեաց և յայլոց նախարարաց, որոց Տէր եղիցի այցելու[22]:

Եւ յայնմհետէ համարձակութիւն առեալ անօրինացն՝ սկսան գունդս ռամկականս ժողովել [529] ըստ օրինակի մարախոյ անչափ բազմութեամբ, այնոքիկ որ Շեխեաիքն[x] կոչէին. և այլ որ ուստեք ուստեք ի հեռաւոր աշխարհաց Պարսից, ի Ժանգանայ և ի Ջուրջանայ և որք ի Վարառատ գաւառէ, և եղեն բանակք մեծ ի գաւառին Զարևան: Որ կամէին դառնաբեր քինահանութեամբ[xx] ելանել ի վերայ աշխարհիս առ հասարակ յապականութիւն դարձուցանել: Իսկ կատարելագոյնքն և ծերքն ի նոցանէ սպուժէին առ այս, և մանաւանդ որք հաւատարիմքն կոչէին ըստ հաւատոյն նոցա որք Կուռայքն անուանէին, գլխաւորն ի նոցանէ Համիս, և միւսն որ ի կողմանց Ժանգանայ՝ ոչ իրաւացի ըստ պատգամաւորին իւրեանց ասացին առնել զայս: Այլ և իշխանն Գուրգէն հանապազ գրէր աղաչանս առ ծերսն և առ աւագագոյնսն նոցա, իբրև փորձութիւն և դիպուած համարէր զեղեալսն, և ոչ իսպառ քինահանութեամբ[xxx] վարիլ առ հարկատուսն և առ հնազանդս իւրեանց: Եւ մեծի փորձութեանցն հասելոց լինէր ի վերին հրամանէն հանդարտութիւն...[xxxx]

---

[529] ×) Ոlqq.՝ Ջեխեաիկ (Նախն., 337):
××), ×××) II (261), III (404)՝ քինահարութեամբ: Ա $(^{2}/_{13-14})$, I (293), քինհանութեամբ: ××××) Ա $(^{2}/_{20-22})$՝ աւաղ յաւրինակս թուղթ է կտրեալ յայս տեղս բանն պակաս կուգայ:

# (ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ԱՆԱՆՈՒԱՆ)

## (Ա.)

*[530]... Տուեալ եղև նմա ի տեառնէ և այլ ևս որդի մի, զոր անուանէ յանուն հօրեղբօր իւրոյ Գուրգէն: Նաև զբազում գործս արուեստեան ցուցանէր, որում և ձեռնտու լինէր Աստուած, կատարելով ի վերայ նորա զհոգենուագ մարգարէութիւն դաւթեան երգոցն, եթէ «զամենայն զոր ինչ արասցէ յաջողեսցի նմա»:[1]*

*Սա դարձեալ վերստին սեփհականեաց իւր և ինքեան զկնի եկելոց զգաւառն Սղգայ ի Տոսպ գաւառէ, որ առ ստորոտով լերինն Վարագայ, զոր ի վաղնջուց յափշտակեալ էին ամենաչար ազգին Իսմայէլացւոց. վասն որոյ և նախնիք սորա ջանահնար եղեալ՝ ոչ ինչ օգտեցան: Իսկ մեծանուն և քաջամարտիկ իշխանն ջատագով եղեալ հաւրց իւրոց ամենիմաստ հնարիւք, մանաւանդ թէ օգնականութեամբն Աստուծոյ խրախուսեալ՝ մեծաւ արութեամբ ի գիշերի առնու զամրոցն և տիրէ գաւառին: Նաև զգաւառն Ըռնայ, զոր այնքան վաղագոյն այլազգեացն յափշտակեալ էին, զորոյ և ոչ զհամբաւն ոք դարուց ի դարս յիշատակել կարողանայ [531] առ նա հասելոցն՝ բռնաբար կորզէ ի ձեռաց այլազգեացն. ընդ նմին և զայլ բազում քաղաքս յԱտրպատականէ, որոց և տիրէ մեծաւ ճոխութեամբ: Եւ այսքան և այսպիսեօք բարձրանշան յաղթութեամբք հռչակաւոր և երևելի ի մէջ Հայաստանեայց այրն լինէր:*

*Իսկ չարարուեստ բանսարկուն սատանայ, որպէս երբեմն ի նախնումն ազդեցութեամբ կնոջն դաւաճանեալ, դիւրահաւան զնախահայրն առ պտղոյն առնելով ճաշակումն, զանմահս մահացոյց ի կենաց, զոր ունէաք ի դրախտին զբնութիւն՝ նմանապէս և աստ ի վերայ քաջի և մեծանուն իշխանին զնախանձուն վառեալ հուր՝ ոխս մախանաց արկանէր ի սիրտս ոմանց Հայաստանեայց, գործակից նոցա լինել. բորբոքէր և զթշնամիս խաչին Քրիստոսի. որք զարիւնարբու գազանաց բերելով զօրինակ՝ կրճտէին զատամունս*

իւրեանց ի վերայ նորա, և ի խորս իջեալ չարութեան միմեանց ազդ առնելով խորհուրդս յուզէին ճարակ [532] գտանել, գաղտնի նենգութեամբ միանգամայն և կեղծաւորական սիրով յաղագս ելից հնարել խոկային: Այլ ոչ ուրեք երբէք յայտնել իշխէին յայսպիսեաց աստի, «գուցէ լուիցէ, ասէին, և սլացեալ խոյասցի ի վերայ մեր իբրև զարծիւ յերամս հաւուց, և կերակուր սրոյ զանձինս մեր առնիցէ»: Եւ մինչդեռ այս ամենայն գաղտնի խորամանկութիւնք ի խմորս չարութեան պատրուակեալ կային՝ և իշխանն յանհոգս եղեալ վայելէր ի խորին խաղաղութեան, ըստ տուեցելոյ նմա ի վերուստ շնորհացն:

Աստանօր նախապատուէ զիւր ազգային ոմն որում անուն էր Գագիկ[2], տալով նմա զբերդն Ագարակայ[3] և զգաւառն Ծախուկ, և զօրագլուխ զնա ի Պարսիցն կացուցանէ մարզի: Իսկ նորա ճարպոյ զակամբ եկեալ, ըստ նմանութեանն կուրացելոյ Իսրայէլի[*] ապաշնորհ առ պարգևատուն գոլով՝ զթիկունս դարձուցանէ յիշխանէն, ապստամբութեանն յաղթեալ ախտիւ. և զայն տեսեալ ամէնիմաստ [533] հզօրին՝ խորհուրդ բարձրագոյն ի մէջ առնու, ի հատուածի պատճառս առաքէ առ նա զքեռորդի իւր զՀասան: Եւ քանզի առեալ էր Գագկայ զքոյրն Հասանայ կնութեան՝ վասն այնորիկ և սիրով խաղաղութեամբ ընդունի զնա յամրոցն: Եւ ի պատեհս գտեալ Հասանայ առնու զամրոցն: Գրէ և առ իշխանն ըստ օրինակի և ըստ պատշաճի գործոյն եղելոյ. ուր և անդէն վաղվաղակի ժամանէ իշխանն և շղթայակապ արարեալ յղէ զնա յաւանն Վան և ի մեծաղս բնակեցուցանէ ի նորին ամրոցի:

Այլ որպէս յառաջագոյն ասացաք՝ դաւողք ոմանք Ատրպատականու, նմանապէս և որք ի Հայաստանն էին տանէ, որոց մասնակից էր և Գագիկս այս ապստամբ՝ միշտ խոկային զխաւարայինն իւրեանց կատարել զխորհուրդ: Եւ քանզի ոչ ինչ քաջին կարէին ստնանել յայտնապէս՝ ձեռն տուեալ յայր մի որ էր յոյժ սիրեցեալ իշխանին, որդի Ապումսա-

րայ[5] ի Խեր [534] քաղաքէ, արտասուս և հառաչանս առաջի նորա արկանէին, յուշ առնէին և զնախանձն հայրենի, զյափշտակութիւն քաղաքաց և ստացուածոց, զառումն տանց և զքանդումն ամրոցաց, զխորտակումն զօրաց և զբազում արեան հեղմունս[x] ի սրոյ հզօրին, և զմոլար օրէնադրութիւնն կրօնիցն Մահումաթայ դաշն առաջի արկանէին. և այլք ոմանք Հայաստանեայք ինչս և պարգևս խոստանային: Այլ զոր օրինակ ի բազում փայտից զուարճանայ հուր՝ սոյնպէս և այրս այս ի խոստմանց և յուխտից աստի, մինչև հրապուրեցին, և նովաւ դաւաճանեալ զմահուն գործեցին դարան:

Իսկ ապա այսոցիկ այսպէս եղելոց, ըստ փոփոխման եղանակաց, որ ընդ արեգական բերմամբ մարդկայինս չափին կեանք՝ ձմեռնայինն կանխեաց ժամանակ: Եւ մեծանուն իշխանն ըստ նախնական սովորութեանն չու արարեալ ընդ ձորն Անձահոյ՝ եկն էջ ի [535] Խերականն[x] կոչեցեալ դաշտ, և կամէր փութապէս անցանել ի ձմերոցսն[xx] արքունի, ի գաւառն Ծուաշ յաւանն Մառական:

Յայնմ ժամանակի ընդ առաջ ելեալ այրն անօրէն, սիրելին նենգաւոր, կեղծաւոր բարեկամն, յղին անօրէնութեամբ, ծնօղն զկորստեանն պահակ, մահացու խորհրդոցն չարամայր ստնտուն, դայեակն խաւարի, արեան մտեալ սատարն, խրատեալն ի սատանայէ, անհամբոյրն ի բարեաց, արբանեակն չարին, բանալին դժոխոց, հնոցն մեղաց, վառեալն հրով նախանձու յիւրոցն գործակցաց, տիղմն խաւարին, որ զծովային մարգարիտն լուսաւոր յիւր կորստեանն ընկլոյզ խորխորատ. սա ի ձեռն կոչողաց չարին աղաչէ զմեծանուն իշխանն Վասպուրական, զի ըստ սովորական սիրոյն՝ առ իւր ագցի. զոր ոչ առնոյր յանձն իշխանն, վասն փութալոյ յիւրականն գաւառ: Իսկ նա զցրեալ ուխտ սիրելութեանն առաջի արկանելով՝ [536] ստիպէ զիշխանն, զի գոնեա փա-

---

[534] x) Այլ օր.՝ հեղումնս:
[535] x) Իմա՝ ի Հերականն: xx) Այլ օր.՝ ի ձմերոցն:

ռազմարդ երեսացն տեսող արժանի լինել հրամայեսցէ. և գտեալ զպարգևն մահառիթ գայ ի հանդիպումն Հզօրին: Եւ կացեալ ի հանդիպոջ՝ ոչ կարէին ընդ գիրկս խառնել միմեանց: Վասն զի ի պատճառս որսոյ ելեալ շրջէր իշխանն Թափուր յիւրոցն զօրացն, միանգամայն և մերկ ի զինուց. և վասն զի առուամէջ այգեստանեայց էին տեղիք դժուարինք, անջրպետեաց ի մէջ նոցա առու մի սահանակարկաջ յորդահոս յոյժ խորագոյն. ընդ որ ոչ այլազգին այն և ոչ ի մերոցն ոք դիմագրաւեաց անցանել զօրացն, խոստովանեալ զվհատութիւն սրտից և զպաշարումն երիվարացն. մանաւանդ թէ և ոչ իշխանն իսկ ոչ թողացուցանէ ումեք զկնի իւր անցանել: Անդ քաջին և հզօր իշխանին մտրակ ի կուշտ արարեալ երիվարին՝ արագ ընդ դժուարինն անդր անցանէ յորձան:

Իսկ զայլազգին այն պիղծ, քանզի ոչ կարէր անձ[537]ամբ զդէմ ունել[x] Հզօրին, յառաջագոյն խրատեալ յիւրոց գործակցացն՝ առեալ ունէր ընդ իւր և արս ուժեղս ըմբշամարտիկս զինուք ի ծածուկ: Մօտ գայ յիշխանն, և գիրկս զպարանոցաւն արկեալ տայ զյուղայեանն համբոյր: Եւ զօրացն մերձ կացեալ զբռամբ ածին զերեսանակս[xx], ի ձեռն միանգամայն և զքաջահատ սուսերն պողովատիկ, զի մի կարասցէ քաջն աճապարել ինչ ուրեք[xxx]. և հարեալ գեղարդեամբն՝ զրաւ կենաց քաջին առնէին: Եւ քանզի մանկունք տղայք և անկատարք էին սերեալքն ի նմանէ, Աշոտ և Գագիկ և Գուրգէն, որ չև ևս յարբունս հասեալ էին՝ և վասն այնորիկ ոչ ոք էր որ վրէժխնդիր լինէր արեան հեղլոյ անարգապէս:

Եւ արդ ոչ ներէ մեզ բանս առանց մեծի և արժանապէս ողբոց թողուլ զյիշատակ կորստեան ամէնօրհնեալ Հզօրին: Վասն որոյ զմարգարէին գոչեմ զԵրեմիայի ժիռ մատ[538]ռուակին, և ասեմ, «ո՞ ոք առնէր զգլուխ իմ շտեմարան

---

[537] x) Այլ օր.՝ զդէմս ունել: xx) Ա (Ի/ՑՂ)՝ զերեասանակս: xxx) Այլ օր.՝ ուրեք ինչ:

ջուրց. և զաչս իմ յորդահոսանս վտակս աղբերաց, զի անդադար լացից զօր բեկման նորոյ Իսրայէլի»[6]: Ոչ դանդաղիմ կոչել երգակից ողորմելի ողբոցս զմեծ մարգարէն զզարմանալին Զաքարիաս, և նովաւ հանդերձ ելանել ի բարձր դիտակս, ձայն տալ ընդհանուր ազգաց և ասել, «լացէ՛ք, լացէ՛ք, արևելք առ արևմուտս, հիւսիս առ հարաւ, ազգք առ ազգս, ժողովուրդք առ ժողովուրդս»: Վասն զի ելիք օգնականն, լռեաց զօրավիգն, և առաջնորդն մեծ իշխանական ճոխութեամբն առաւ այսօր ի գլխոյ ձերմէ: Երկինք ի վեր և երկիր ի խոնարհ զծառայակցին ողբացին զկորուստ: Ո՞ ոք զօրն զայն ոչ ողբասցէ, ո՞յր ուրուք ոչ գելուցուն աղիքն, որ զայսպիսի ծանրատաղտուկ աղէտս տեսանել և կրել արժանացաք դառնապէս»[7]:

Վասն զի ազատագունդ զօրքն տիրակորոյսք ցրուեալք ի լերինս և ի դաշտս, վայ[539]իւք և ողբովք և յորդահոս արտասուօք զերկիրն լրացուցանէին դառնութեամբ, և ի խորովակսկիծ կիզմանէ աղեացն դիթաւալ յերկիր կործանեալ թմբրեալք լինէին ի դառնաճաշակ մահարբոյց բաժակէն: Եւ մանկունք ձեռասունք թիկնապահք և յորս յենոյր իշխանն ձեռօք իւրովք՝ խեղդ զպարանոցաւն արկեալ զարիւնս անձանց փութային հեղուլ, լաւագոյն զմահ քան զկեանս համարելով: Նաև չունք տիրասէրք ի տեղւոջ սպանմանն հոլովեալք և գիշերապահ վառմամբ կատաղեալք՝ ընդերկնահաչ ողբովք հալածականս առնէին զգազանս անապատի, մինչև ցայտմունք արեանն պատուականին յերկիր անկելոյ յարեգակնային տապացաւ կիզմանէ:

Իսկ համբաւ հզօրին կորստեան, իբրև զամպ թանձրամած խաւարային լցեալ սաստկութեամբ՝ ելեալ տարածեցաւ ի վերայ Հայաստանեայցս, մանաւանդ ի վերայ բարձրագոյն և սեփական Վասպուրականն [540] կոչեցեալ նահանգի. յորում տիկնայք և աղախնայք թողեալ զկանացի[×] բնութեանն պատիւ՝ ի գռեհս և ի փողոցս բացագլխաւ ընդ երկիր զան-

---

[540] ×) Ա (Ր/Ձ)՝ զկանանցի:

ձինս իւրեանց քարշէին։ Որք յանհնարին սգոյն դառնութեան՝ մատաղ մանկտոյն զսովորականն մոռացան դիեցուցանել զկաթն, ողբոց միայն պարապեալ միմեանց ձայնակցելով։ Ուստի և ի կրծաքախ ճակատահար ճայթմանցն և ի բարձրաճիչ աղաղակացն հնչեաց դուռն դարպասու արփիագեղ տիկնոջն մեծին Սոփեայ։ Որք յաշխարելն իւրեանց ասէին այսպէս, «վա՛յ, կորեաւ մեծանուն իշխանն, և անտերունչ մնաց երկիրս Հայոց»։

Իսկ տիկինն խիզախեալ յանպարտելի զօրութիւն հզօրին՝ ասէ, «զի՞ դուք, ո՛վ մարդիկք, և ընդէ՞ր գործել զայդ յանդգնիք· չի՛ք ուրեք թշնամիք· ո՛չ ուստեք պատեալ պատերազմ։ Ո՞վ ոք զայդ գործել համարձակեցաւ[××], ո՞վ ոք զոսկեփետուր ախոյանարձակ քաջազգի վարուժանն իմ հաւահար առնել կամ ի ծուղակ ըմբռնել [541] կարողանայր, և ոչ ինքն օձտեալ ի նմանէն մեռանէր· ո՞վ ոք զբարձրաթիռ[×] արծիւն քաջահնչօղ և ահարկու ձայնիւ ի խոնարհ սուզել լինէր ձեռնհաս· ո՞վ ոք զանյաղթ վիշապն սանձել մերձենայր, և ապրեալ լինէր ինքն»։ Զայսոսիկ և ևս յաւէտ քան զսոյնս ասէ տիկինն ընդդէմ լալականացն։

Իսկ իբրև ստուգեցաւ իրն և համբաւն ճշմարտեցաւ կորստեան՝ ապա այնուհետև յերկիր անկեալ զերեսս ի գետնի դնելով, մոխիր ի վերայ ցանելով գլխոյն, և խաւար ձեռագործ յօդս ցնդէ տաճարին։ Եւ ի բաց ընկեցեալ զպատուադիր քողն մարգարտահիւս զարդուն, զգեցեալ զսեաւս ի զգեստից, և պատրաստեալ գլխոյ իւրում արկանելիս թխակերպս, և յառաջ կոչեալ զդստերս՝ սգոյ ողբոց յօրինէ կարգս, կարգեալ կացուցանէ դասս դասս՝ պարաւորս եբրայեցիս և զթագաւորացն Իսրայէլի նուագել տայ զողբս։

Յայնմ աւուր սուգ առ[542]ին սուրբ եկեղեցիք և դասք պաշտօնէից։ Ի բաց առան ի դրաց[×] սեննեկացն ոսկեհուռն կամարաձև երանգոցն տարազք, և սեաւք խոշորագոյնք և

××) Այլ օր.՝ յանդգնեցաւ։
[541] ×) Այլ օր.՝ զբարձրաթռիչ։
[542] ×) Այլ օր.՝ ի բաց առին ի դրանցն։

յոյժ տխրալից զտեղին փոխաբերեցին. և ընթացեալք այսր անդր սուրհանդակք լալականացս՝ խցին զլուսանցոյց պատուհանս հրաշակերտ ապարանիցն, հրամանաւ տիկնոջն. «զի մի, ասէ, արեգակն յանհաս բարձրութեանն երկնից ճեմեսցի կամար. և զճառագայթս ի խոնարհ արձակելով՝ զիմս լուսաւորեսցէ խաւար. և կամ լուսինն ի լրմանն ժամանեալ ամանակ, արուսեկիւն հանդերձ և բնաւ զարդուն աստեղաց՝ զիմս փարատեսցէ մէգ, մինչև տացէ ինձ Աստուած յորդւոց իմոց այրասիրտ նման հօր իւրոյ, որ ի կեանս իմ կամ թէ զկնի կենաց իմոց ի վերայ գերեզմանին տացէ աւետիս՝ առեալ վրէժ հեղման արեան հօր իւրոյ ի գլխոց այնոցիկ, որք զայս ինձ հատուցին խաւար»:

Զայս մեզ ընծայեցին՝ որք տեսօղք լեալ էին գործոցն և որք ի գիրկս զմանկունքն կրէին, եթէ զայսոսիկ ասելով տիկն[543]ոջն՝ ձգեալ լինէր զձեռսն ի վերայ ուսոյ հրաշազարդ մանկանն Գագկայ, ոչ գիտեմ հանդէ՛պ գոլով, կամ թէ մարգարէաբար խսկ զայս առնէր մեծ օրիորդն Սոփի, երջանիկն ի տիկնայս: Յաւուրս դառնութեան ազոյն այնորիկ ձեռք երկրագործաց և արուեստականացն լքեալ յիւրաքանչիւր վաստակոցն՝ եղեալ ծնկաց և ծնօտից՝ լային դառնապէս. տեարք և ազատք ի միասին հաւաքեալ, չար ողբովք զմիմեանց ճմլեցուցանէին զսիրտս: «Ո՛ւր, ասեն, լքեալ կորուսաք զպատուական մարգարիտն, զպարծանքն Հայոց, զքաջն անպարտելի, որ զմեծ պատերազմունս դիւրաւ մղէր, և անուն բարձրագոյն ինքեան և մեզ ստանայր: Ո՛ւր է բարեժմիտ չրթանցն ժպտումն, որ բազմերանգ բազմականս ոսկեզարդ գահոյիցն միշտ զմեզ ուրախարարն զմայլեցուցանէր բաժակաւ: Ո՛ւր առատ ձիրք ձեռինն պարգևաբաշխ, որ երևելի զարդու՝ ցանկ զմեզ չքեղացուցանէր: Վա՜յ և աւա՜ղ մերոյս կենդանու[544]թեան: Ընդէ՞ր ոչ պատահեաց մեզ օրն այն ի մեծ պատերազմի ի մէջ նիզակախուռն զօրաց. թերևս և մերոց լինէր բարձումն կենաց»: Աստ ի մէջ կացեալ հայրապետաց և ճգնաւորաց դասք զարթուցանէին զմիտս կնոջն և զայլոց կոծողացն յերկիւղն Աստուծոյ, և առ սակաւ մի փարատէին աղէտ ազոյն դառնութեան:

Եւ արդ սիրելի էր ինձ ևս հրաշափառագունիւ անցանել բանիւ ընդ ողբերգականացս հանդէս. այլ զի մի լռողացն խռովեսցին միտք՝ լռեսցի որ ինչ վասն այսոցիկ է բանս, և մեք ի պատմութեանցն փութասցուք ասպարէզ, թերևս յաջողեսցէ մեզ Աստուած ծայրագունին հանդիպել լրման, բազմավէպ զրուցատրութեանց քաջի արանց տանն Արծրունեաց:

Կատարեցաւ կարգ ծննդաբանութեան երից որդւոց մեծանուն և քաջամարտիկ իշխանին Գրիգորի. յորում և գործք նորին ամենայաջողակք և զրաւ նորուն ի դաւելոյ ոմանց Հայաստանեայց և Պարսից և ողբք ի վերայ նորին[8]:

(Բ)

## [545]ԱԹՈՌԱԿԱԼՈՒԹԻՒՆ ԱՇՈՏԻ ՈՐԴՒՈՅ ՆՈՐԻՆ ԱՆԴՐԱՆԿԱՆՆ: ԵՒ ՓՈԽՈՒՄՆ ՏԻԿՆՈՋՆ ՍՈՓԵԱՅ ԵՐՋԱՆԿԻ ԵՒ ԲԱՐԵՊԱՇՏԻ

Բայց զկնի մահուան երջանիկ իշխանին հաստատի յաթոռ հօր իւրոյ անդրանիկն Աշոտ որդի ամաց իբրև երկոտասանից[1]: Եւ մեծանուն տիկինն Սոփի, հայելով ի մանկանցն բարենշան յառաջադիմութիւնն, մանաւանդ ի մանկանն Գագկայ, զի անդստին ի տղայական հասակէն հրաշազարդ փառօք փայլէր ի մէջ եղբարց իւրոց. առ որ նայեցեալ տիկինն՝ յուսացեալ արժանացուցանէ զսիրտ իւր[×], և առնաբար ունի զիշխանութիւն, օգնականութեամբ հօր իւրոյ Աշոտոյ թագաւորին Հայոց:

Եւ քանզի որդի քեռ էր Ապումրուան տիկնոջն Սոփեայ՝ վասն այնորիկ արժակէ զնա ի կապանաց հրամանաւ հօր իւրոյ: Եւ ինքն Սոփի անհամեմատն ի կանայս, ըստ նմանութեան ամուսնասէր տատրակի, հրաժարեալ յամենայն վայելչութեանց կենցաղականս՝ խանդակաթ[××] լինելով, ոչ

---

[545] ×) Այլ օր. չիք՝ իւր:
××) Ա ($^{2}/_{2-1ա}$)՝ հանդակաթ:

[546] ժուժեալ սրտին նեղութեան՝ զկնի Է ամսոյ փոխի յաշխարհէս խաղաղութեամբ ննջեալ ընդ հարս իւր, թողեալ զմանկունսն տղայս և անկատարս հասակաւ:

Աստ բազմաց մրմռեալ ազգականաց սոցա, որք և ստանալ ինչ մանկանցն խորհէին, այլ ոչ իշխէին յերկիւղէ մեծին Աշոտոյ թագաւորին Հայոց: Յետ այսորիկ կեցեալ թագաւորն Աշոտ ամ մի և կէս՝ փոխի յաշխարհէս, փառօք ի փառս յուղարկեալ: Աստ ապա ի պատեհս գտեալ հարազատաց սոցա՝ սկսան յափշտակել զտեղիս տեղիս ի ձեռաց մանկանցն: Յայնժամ Ապումրուան յառաջ մատուցեալ, խորհուրդ ի մէջ առեալ, կամեցաւ տիրել իշխանութեանն Վասպուրականի, յինքն գրաւէ զմիտս տերանց և ազատաց աշխարհին, ասելով օրինակ զայս. եթէ ի դէմս Աշոտոյ առնեմ տեղապահութիւն աշխարհիս, և համոզեալ հաւանեցուցանէ զբնակիչս աշխարհին: Եւ յարքունս հասեալ Աշոտ՝ կայր ըստ սովոր[547]ութեանն ահիւ ընդ ձեռամբ Ապումրուանայ, զի և փեսայացեալ իսկ էր նմա:

Եւ ապա իբրև աւուրք ինչ լինէին պարապոյ՝ կոչէ զԱշոտ եղբարբքն հանդերձ ի բերդն Կոտորոց, պատուասիրութեան ինչ աղագաւ: Եւ անդէն ի միում գիշերի կալեալ կապէ զնոսա, և յղէ զԱշոտ և զԳուրգէն ի բերդն Նկան կոչեցեալ, և տուեալ ի բանտ՝ պահէ մեծաւ զգուշութեամբ: Իսկ զԳագիկ խաղացուցանէ ի Ծուաշ գաւառ, յամրոցն Շամիրամ. քանզի իբրև զմանուկ տղայ խաբեալ էր զԱշոտ, տալով նմա զբերդն Ագարակայ հանդերձ Ծախուկն կոչեցեալ գաւառաւ, փոխանակ իւր առնելով զբերդն Նկան և զԹոռնաւան և Ծուաշ գաւառք, ուր և շինեալ զՇամիրամն պարսպէ յիւր անուն:

Դարձեալ և այլ իմն օրինակ խաբէութեան համբաւէ ի մարդիկ, ասելով այսպէս. «ես այր մի անժառանգ եմ, բայց միայն ի դստերէն զոր առեալ էր Աշոտ իւր կնութեան. եր-

---

[547] ×) Այլ օր.՝ հպարտանայցէ:

*կնչիմ գուցէ հպարտասցի[×] ի վերայ իմ Աչ[548]ոտ»: Եւ այսուիկ համոզեալ հաւանեցուցանէ զլսօղսն. և ինքն ի կասկածի լինելով, տարակուսելի ըմբռնեալ[×] խորհրդովք՝ երբեմն հանէ զԳուրգէն կրտսերն, և ածեալ ընդ ինքեան շրջեցուցանէ, և դարձեալ տայ ի բանտ կրկին անգամ. և ապա հանէ զԳագիկ. և ածեալ զմտաւ վասն նորա՝ ոչ գիտէր զինչ առնիցէ. զի բեկեալ էր սիրտ նորա առ ուշի մանկանն, և սպասէր գաղտ կորուսանել զնա: Այլ Աստուած ոչ ետ թոյլ ձեռին նորա մխել յարիւն արդարոյն:*

**(Գ)**

## ՓԱՅԼՈՒՄՆ ՓԱՌԱՋԱՐԴՈՒԹԵԱՆ ՄԻԱՆԳԱՄԱՅՆ ԵՒ ԵՐԵՒՈՒՄՆ ՇՆՈՐՀԱՑՆ ԱՍՏՈՒԾՈՅ Ի ՎԵՐԱՅ ՄԱՆԿԱՆՆ ԳԱԳԿԱՅ, ԵՒ ՍՊԱՆՈՒՄՆ ԱՊՈՒՄՐՈՒԱՆԱՅ Ի ՁԵՌԱՅ ՆՈՐԱ ՄԵԾԱՊԷՍ ԱՐՈՒԹԵԱՄԲ, ԵՒ ՈՐ ԻՆՁ ՁՆՄԱՆԷ ԵՆ ԳՈՎԵՍՏՔ:

*Քանզի կանխագիտութեամբն իւրով ամենաթագաւորն Քրիստոս յառաջագոյն նկատեալ զերջանիկ մանուկն Գագիկ, անօթ ընտրութեան արժանի իւրոցն լինել[××] շնորհաց, և [549] գիտելով զնա թէ այսպիսի լինելոց է՝ ետ նմա հոգի զօրութեան և իմաստութեան. կատարելով ի վերայ նորա զասացեալն ի մարգարէէն, թէ «Թագաւոր արդար կանգնէ զաշխարհ»[1]: Որով և փրկեաց իսկ զհայաստան աշխարհս ի ծանր ծանր աղետից, կուռ զկնի միմեանց եկելոց, և ի բազմախուռն պատերազմաց եղելոց ի նորայն դարս: Որ և անդստին իսկ ի տղայական հասակէն արմատ բարութեան ի[××] վեր երևէր: Ուստի և զարմանք մեծամեծք են ինձ ի վերայ մանկանն, զի ոչ պարգևս կամ ինչս շնորհել ումեք ձեռնհաս էր, և ոչ իշխանական ինչ հրամանաւ հարկեցու-*

---

*[548] ×) Ա (ա/ե)՝ ըմբռնել:*
*××) Ա (բ/ժա)՝ չինել:*
*[549] ×) Այլ օր.՝ աշխարհս: ××) Այլ օր. չիք՝ ի:*

ցանել զոք կարէր. և տեարք և ազատք աշխարհին միշտ զնորայն սիրովն գային, զի իմաստութիւն ի շրթանց նորա բղխէր առաւել քան զոսկի ընտիր, և համեստութեան քաղցրութեանն, միանգամայն և քաջապէս արութեանն շնորհք ի վերայ նորա բացափայլեալ՝ զամենեցուն յուսով լնուին զսիրտս:

Ուրանոր արիաբար վառեալ, այն ինչ մինչդեռ չև ես եղեալ էր [550]ամաց հնգետասանից[2] արկ ի միտս իւր զխորհուրդս առն պատերազմողի, սպանանել զԱպումրուան: Եւ իբրև ժամ մի լինէր պարապոյ՝ առեալ ընդ իւր զխորհրդակիցս իւր եհաս ի վերայ նորա, և սրախողխող արարեալ զնա ի Վան աւանի յասպարիսին տեղւոջ՝ ընկեցին առնէ յոտս երիվարին. և հատեալ զգլուխն բարձեալ տանի յամրոցն Աշխնոտ[3], ուր էրն Գուրգէն, նմանապէս և ի բերդն Կոտորոց ի ձորն Անձախոյ[x], յորում էրն Աշոտ, որք անյուսացեալ էին փրկութեան անձանց: Եւ հանեալ զնոսա անտի՝ տայ զմատանի ի ձեռս Աշոտոյ և տիրեցուցանէ սեփհական ժառանգութեանն հանդերձ իշխանական ճոխութեամբ:

Սա, որպէս կարծեմ՝ թոյլ տալով Աստուծոյ առնու զվրէժ արեան հօր իւրոյ ի գլխոյ Ապումրուանայ: Վասն զի և նա մի էր ի գործակցաց չարին, զոր վերագոյնն ասացաք, ուր և ստէպ ստէպ միշտ զսորայս ոչ դանդաղիմ դրուատել զշնորհըս: Ցաղագս սորա հաւաստապէս և յոյժ ըղձալի [551] է ինձ առնել բանից դեգերանս ի սմա և ի սորին գործս և գովեստս, քանզի սա ազգի նսեմացելոյ ջահ վառեալ եղեալ ի բարձրադիտակ անառիկ ամրոցի[x], շուրջանակի պարսպեալ զօրութեամբն Աստուծոյ՝ աննուաղ պահեցաւ ի չորեքծագեան սաստկագոյն հողմոց թշնամեաց ի սա հնչելոց. որ ոչ միայն ինքն ոչ աղօտացաւ, այլ և ի ձեռն պնդակազմ հաւատոյ ճոճ առեալ ցոլացեալ կիզեաց զթշնամիս տան հօր իւրոյ:

Սա աշտարակ բարձրաբերձ զօրաւոր վիմօք, կապարայօդ

---

[551] x) Այլ օր.՝ և անառիկ տեղւոջ ամրոցի:

հիւսմամբ չարադրեալ իբրեւ զպարիսպ պղնձի, հաստահեղոյս բեւեռմամբ, անխրամատելի ի թշնամեաց, միանգամայն եւ իբրեւ զսիւն երկաթի, ի մէջ հարուստ խարսխաց, աստուածայոյս եւ անհաս զօրութեամբ[4], կանգնեալ ի բարձր տէրութեանս Հայոց՝ տեղի ապաւինի գոլով ամենայնի[5], որ ի թշնամեաց ոք փախիցէ յերեսաց: Սա սուսեր բանաւոր, երկնայնոցն հրացեալ զօրութեամբ, հատանօղ եւ ճառագայթարձակ փայլատակեալ ի վերայ [552] գլխոց թշնամեաց, ահափեռ[×] արարեալ դադարեցուցանէ զխրոխտացեալսն ի վերայ եկեղեցւոյ եւ որ ինչ եկեղեցւոյ են կարգք: Սա ի համբակ հասակէ տղայական տիոցն իբրեւ զկորիւն առիւծու յարուցեալ սիգաքայլ նազելի ճոխութեամբ, ամբարձեալ զբազուկս ի վերայ թիկանց թշնամեաց, խորասոյզ առնելով զղարանակալս ի չաւղաց ոտից իւրոց, եւ ահարկու ձայնին գոչման ի ձեռն հրեշտակաց եւ հրովարտակաց յինքն ձգեալ կորզէ զբազում գանձս եւ զմթերս յօտար ազգաց, տիրելով բերդից եւ գաւառաց նոցա առաւել քան զհարս իւր:

Եւ արդ քանզի չէ եւս է ժամանակ գովասանութեան, այլ պատմութեան՝ առ նոյն անդր փութասցուք կարգ:

Իսկ իշխանն Աշոտ օժանդակեալ ի շնորհաց եւ ի բարձր բազկէ քաջի եւ արիացելոյ մանկանն Գագկայ՝ ըստ ասացելոյ իմաստնոյն, թէ «եղբայր յեղբօրէ օգնեալ եղիցի իբրեւ զքաղաք ամուր»[6] սկսաւ պայծառանալ օր ըստ օրէ յաթոռ հօր իւրոյ ամ[553]ենաջողակ փառաւորութեամբ: Զոր տեսեալ Սմբատայ թագաւորին Հայոց՝ առաքէ զեղբայր իւր զԴաւիթ եւ աղաչէ զիշխանն Աշոտ՝ մի մեկուսանալ ի նմանէ եւ մի ոխս պահել վասն ունելոյն զնա Գագկայ որդւոյ Վահանայ:

Զայս խնդրէ Սմբատ պարգեւս յԱշոտոյ քեռորդւոյ իւրոյ, ի կասկածի եղեալ, գուցէ գնասցէ Աշոտ միւսանգամ զհետ կոչողաց Ափշնի ըստ առաջնում նուագին, զոր վերագոյնն

---

[552] ×) Այլ օր.՝ ահաբեկ:
[553] ×) Ա ($^{2}/_{12}$)՝ անցից:

տասցաք[7]: Վասն զի բազում խոստումն պարգևաց և դաշինս ուխտից առաջի Աշոտի Ափշին արկանէ. որում ոչ հաւանի Աշոտ, փոխադարձելով նմա վասն անփոյթ առնելոյ զնա յաւուրս բանտին: Եւ երթեալ գնայ առ Սմբատ սիրով խաղաղութեամբ. ուստի և բազում փորձութիւնք անցին[x] զմեօք վասն ոչ երթալոյ իշխանին առ ամիրայն Ափշին:

Իսկ Ափշնի ելեալ յերկիրս Հայոց անհուն զօրու և զինու՝ և գայ հասանէ ի վերայ Սմբատայ, և փախստական արարեալ մազապուր ընկենու յաշխ[554]արհն Վրաց: Եւ անտի դարձեալ պաշարէ զբերդն Կարուց[x], և բացեալ զմթերեալ տունս գանձուց՝ առնու աւար բազում:

Յայնժամ Աշոտ իշխանն Վասպուրական ճանապարհ արարեալ ընդ գաւառն Բագրևանդ՝ արագ յիւրն անցանէ աշխարհ: Իսկ Սմբատ թագաւորն Հայոց հրեշտակ առաքեալ՝ աղաչէ ի խաղաղութիւն զԱփշին[xx8], և գրաւական տալով զորդին իւր զանդրանիկ. և նորա առեալ դառնայ և դիմէ ի վերայ Աշոտոյ մեծաւ սպառնալեօք, ոխս պահեալ վասն զնորայն արհամարհելով կոչումն, և եկեալ հասանէ ի գաւառն Թոռնաւան յաւուրս ձմերայնոյ:

Իսկ իշխանն Աշոտ եղբարբք հանդերձ և ամենայն տիրակոյտ[xxx] ազատագունդ զօրօքն խորհուրդ արարեալ ասեն, «աւուրք սաստկութեան են և գործ պատերազմի, ո՞վ գիտէ ո՛յր ուրուք յաղթութիւնն լինիցի»: Եւ խնայեալ ի սուրբ եկեղեցիս և ի հաւատացեալս՝ ել գնաց առ Ափշին, գրաւ մահու զանձն եդեալ, ուր և սիրոյ մեղադրանօք ել և ելս առն[555]ելով՝ պատճառեն միմեանց զինչ հաճոյ է կամաց: Եւ դարձուցեալ զիշխանն Աշոտ մեծաւ պատուով և բազում և երևելի պարգևօք. բայց քանզի կասկած ի սրտից երկոցունցն ոչ մեկնեցաւ՝ գրաւականս խնդրէ Ափշին. և նորա տուեալ զեղբայրն զԳագիկ, և զկնի Է ամսոյ առաքէ զԳուրգէն զկրտսերն և դարձուցանէ զԳագիկ:

---

[554] x) Այլ օր.՝ կարոց: xx) Այլ օր.՝ աղաչէ զԱփշին ի խաղաղութիւն: xxx) Այլ օր.՝ տիրագունդ:

Իսկ ի գալ գարնայնոյն փախստեայ եղեալ Գուրգէն ի ձեռաց Ափշնի՝ գայ հասանէ առ եղբարս իւր ցրեալ զդաշինս սիրոյ. և նորա հետամուտ եղեալ ընդ քաղաքն Տփղիս, ոչ սակաւ հարստահարութիւն արարեալ գլխոյ Սմբատայ՝ առնու հարկս բազումս[9]: Եւ անտի յառաջ մատուցեալ գայ հասանէ մինչև յաւանն Վան յաշխարհն Վասպուրական անթիւ բազմութեամբ: Իսկ իշխանն Աշոտ եղբարբքն հանդերձ և ամենայն զօրօքն խոյս տուեալ ամրանայ ի ձորն Որսիրանից:

Յայնժամ Հասան որդի Վասակայ դենադարձի, զոր վերագոյնն [556] ասացաք[10], այրն անօրէն, ժանտ և ապարասան, աւազակաց հայր, սպանողաց մայր և ամենայն անօրէնութեան ծնօղ, դարձեալ մոլեգնի հայրենի չարեօքն յաղթեալ, զխոստովանութիւնն հազիւ թէ պահեալ ամբողջ, ձեռն տայ յամիրայն Ափշին, և բազում վնասս կործանման ստանայ հաւատացելոց և սուրբ եկեղեցեաց. անձնամատն եղեալ դուռն բանայ չարեաց, դարանս մահաբեր գործէ սատանայի զգածեալ հնարիւք:

Իսկ ամիրային թողլով երկուս ոստիկանս ներքինիս բազում հեծելովք ի մեծն Վան և յՈստանն աւան[11], որոյ անուն ճանաչիւր առաջնոյն Սափի. և ինքն երթեալ ի գաւառն Աղբագ՝ դադարէ ի Յաղամակերտն աւանի: Եւ առաքէ զայր մի ներքինի, որում անուն էր Յիւսր[12] զօրօք բազմօք, զի երթեալ պատերազմեսցէ ընդ իշխանին: Եւ քանզի նոքա ամրացեալ էին ի դժուարս Կակենից գեաղջ[13] դառնայ ներքինին մեծաւ ամօթով, ոչ ինչ կարացեալ ստնանել× նոցա վասն [557] տեղւոյն ամրութեան և զօրացն քաջամարտիկ լինելոյ:

Իսկ ամիրայն այնուհետև անց գնաց յԱտրպատական մեծաւ փութով, մնալով երկոցունց ներքինեացն յերկոսին աւանսն, զոր վերագոյնն ասացաք:

---

[556] ×) Ա ($^{2}/_{18}$)՝ ստանալ:
[557] ×) Այլ օր.՝ կացուցեալ էր: ××) Այլ օր.՝ կեղեւով:

Եւ ի գալ գարնանւոյն այր մի ներքինի զոր կարգեալ էր[x] ի վերակացութիւն քաղաքին Պարտաւայ, զօրաժողով եղեալ ապստամբի յԱփշնէ. և անցեալ գնայ մինչև յերկիրն Շամայ[14]: Եւ զայն լուեալ ամիրայն՝ ակամայ կամօք կոչէ առ ինքն զարսն զորս թողեալ էր տեղապահս Վասպուրական աշխարհին, և ինքն աճապարեալ հասանէ ի քաղաքն Պարտաւ: Անդ պատահեալ վրէժխնդրութեանն զոր ինչ արար չարիս ընդ Հայաստան աշխարհս, որում ոչ ներեալ Աստուծոյ՝ հարկանէ զնա չարաչար կեղով[xx] ի ձեռն հրեշտակի սրբոյ, որպէս երբեմն զՎաղէս կայսր ի ձեռն Քրիստոսի քաջ նահատակացն տեսլեամբ Թեկղեայ սրբոյ[15]. զոր ընծայեաց մեզ հաւաստեաւ [558] Բիւզանդն պատմօղ. ուր և անդէն իսկ երկուք յորդւոց իւրոց, ևս և բազումք ի զօրաց անտի չարամահ սատակեցան առաջի երեսաց նորա, որոց զկնի և ինքն չարաչար դառնութեամբ ընդունի զվախճան: Յետ այսորիկ խաղաղանայ երկիրս Հայոց ի հինից չարահնար իսմայէլական ազգին:

Աստանօր յիշէ իշխանն Աշոտ զչարաբարոյ արբանեկութիւնն Հասանայ որդւոյ Վասակայ դենադարձի, զոր արար առ ամիրայն Ափշին: Եւ արձակեալ զօր պաշարէ զբերդն Սևան, զոր յափշտակեալ էր Գագկայ որդւոյ Վահանայ և տուեալ ի ձեռս Հասանայ, մինչդեռ ի կալանսն էր Աշոտ: Եւ քանզի աւուրք ձմերանի[x] էին, յորում ոչ գոյր հնար ձիական ասպարիսօք կատարել զհանդէս պատերազմաց՝ գունդ կազմեալ Հասանայ գնայ ի[xx] հետիոտս ճակատել ընդ զօրաց իշխանին որ էին ի գեօղն Պղուանս, ի գաւառին Լումբայ կոչեցեալ Փորակ[xxx]: Եւ հասեալ ի վերայ ի մէջ գիշերի կարծէր յաղթել, ոչ իմաց[559]եալ զիմաստնոյն՝ թէ «ոչ յաջողեսցի մարդոյ յանիրաւութենէ»[16]:

Իսկ զօրութիւն վերին խնամոցն ի թիկունս հասեալ օգնականութեան[x] զօրաց իշխանին, թէպէտ և նուազունք էին,

---

[558] ×) այլ օր.՝ ձմերայնի: ××) Այլ օր. չիք՝ ի: ×××) Ա ($^{2}/_{4-3ն}$)՝ Փարակ:
[559] ×) Այլ օր.՝ վերին հասեալ ի թիկունս օգնականութեան: ××) Այլ օր. ճիւաղեալ սրտին: ×××) Ա ($^{2}/_{4-3ն}$)՝ զոր գործեաց:

և Հարեալ սաստկմամբ լքին զգիշերամարտ դասս անկարգ խռովակին Հասանայ. ուստի և առ ի չժուժել ճիւաղեալ[xx] պրշակաց տան միոջ, զգօղ առեալ ձեղունն, լինելով նմա անզերծանելի ծուղակ՝ սուզեալ ընկենու զնա ի ձեռս արանց քաջանց. զի կատարեսցի ասացեալն ի մարգարէէն, թէ «զգուբն զոր փորեաց՝ անկցի ի խորխորատն զոր և գործեաց»[xxx17]: Եւ անդէն ձերբակալ արարեալ կրկին կապանօք քարշեն ի դուռն բերդին Սևան կոչեցեալ. անդ վաղագոյնս աճապարեալ Հասանէ ի ձեռն աւետաւոր Հրեշտակաց և իշխանն Աշոտ եղբարբքն հանդերձ. և նստեալ շուրջանակի սակաւ աւուրս՝ ապա փորեցին զաչս Հասանայ և առին զամրոցն:

Աստ ի մէջ կացեալ բազմաջան լինի Գագիկ եղբայր իշխանին՝ թա[560]փել զՀասան ի պատուհասից խաւարմանն, և ոչ հասանի խնդրոյն. և Հասանայ զրկեալ ի զգալի լուսոյն՝ ոգւոցն բացան աչք. և իսկոյն կրօնաւորեալ կեայր սրբութեամբ մինչև ցօր վախճանի իւրոյ[18]:

Բայց ամք իշխանութեանն Աշոտոյ ոչ խաղաղացան ըստ կամս իւր, երբեմն յեղբարց իւրոց և երբեմն յայլոց բազմաց:

Զայսով ժամանակաւ գայ Հասանէ Սմբատ թագաւորն Հայոց ի գաւառն Ապահունիս, հարկս պահանջել ի գլխոց Կայսիկն կոչեցեալ ազգէ. և նոցա ի դիմի հարեալ զպատերազմի նշանակէն հանդէս: Յայնժամ ի թիկունս օգնականութեան կոչէ զիշխանն Աշոտ թագաւորն Սմբատ. և նորա յիշեալ զգութ արեան հարազատութեանն՝ գայ Հասանէ մեծաւ փութով. և ի խմբել պատերազմին՝ փախստական լինի Սմբատ զօրօքն հանդերձ յերեսաց այլազգեացն: Աստ ի մէջ կացեալ Աշոտ իշխանն Վասպուրական սակաւ զօրօք, և բազում օգնական[561]ութեամբ բարձրելոյն պարտէ զթշնամիսն մեծաւ յաղթութեամբ, և ինքն դարձեալ երթայ ի քաղաքն Նախճաւան, զոր ընդ իւրումն կարգեալ էր իշխանութեամբ. և անկեալ յախտ հիւանդութեան մահու՝ փոխի յաշխարհէս ամաց իբրև ԻԹ:

---

[561] x) Այլ օր.՝ աղբերաց

(Դ)

## ՍԿԻԶԲՆ ԻՇԽԱՆՈՒԹԵԱՆՆ ԳԱԳԿԱՅ ԶԿՆԻ ԵՂԲՕՐ ԱՇՈՏԻ, ԵՒ ԳՈՐԾՔ ՆՈՐԻՆ ՔԱՋՈՒԹԵԱՆ:

*Զկնի այսորիկ յաջորդէ զաթոռ իշխանութեանն Գագիկ եղբայր Աշոտոյ, ըստ նմանութեան երկուց ակնավճիտ աղբերց[x] մերձակայից, յորոց մի ոմն նուազեալ՝ միւսն ևս յաւէտ ի վեր զբղխումն արձակիցէ. զոր օրինակ և երկուց վիշապաց կամ կորեանց առիւծուց[xx], մինն ղուղեալ՝ միւսն բարձրագոյնս խրոխտայցէ. կամ թէ ևս հրաշափառագոյն ասացից՝ ըստ նմանութեան իշխանականին գիշերոյ, որ ընդ թանձրութիւն ամպոց շրջագայեալ զաւուրս ԺԵ անյայտ ի մարդկանէ՝ զբոլորն մաշիցէ արփի. և անդէն ի նոյնն ժամանեալ կարգ ծագողութեանն՝ յական քթթել զլուսոյն յինքն զգենուցու զզօրութիւն, և հրամ[562]անաւ վերին կառավարութեանն մաքրեալ զօղոցն դաժանութիւն՝ զուտ զլուսոյն յերկիր ծաւալեսցէ ճառագայթս, որում ցանկացեալ ոմն ի սրբոցն՝ ասէ, «քաղցր է արև յետ ամպոյ, որպէս և քաղցր է հանգիստ յետ աշխատութեան»[1]:*

*Զսոյն օրինակ և խոհական հանճարեղութեամբ Գագիկ իշխանն Վասպուրական յինքեան բերելով զլրումն օրինակացս, զոր վերագրեցաք ըստ մերումս բանազարդութեան ըստ օրինակի պատմողաց՝ հանգուցանէ զշփոթեալ և զաշխատեալ երկիրն Վասպուրական ի բազում վրդովմանց դրացեաց և սահմանակցաց ազգաց օտարաց միանգամայն և բնակչաց աշխարհին...[2] կոչեցեալ ազգէ, որք էին արք ապստամբք, գողակիցք գողոց, ապականիչք աշխարհի և արհամարհողք տէրութեանն: Յորոց մի էր Շապուհ որդի Մայմանկին, որոյ չարահնար նենգութեամբ առեալ էր զբերդն Ագարակայ և զգաւառն Ճախուկ[3], և կոկոցավիզ յինքնահայեաց ամբարտաւան[563]ութեամբ նստեալ յամրոցին, մեծ*

xx) *Այլ օր.՝ առիւծոց:*

[563] x) *Ա ($^{2}/_{4}$)՝ զարիւնն իւր. ուղղ.՝ զարեւն իւր (Նախն. 176):*

*ոմն զինքն կարծելով: Ի սոյն աւուրս զնոյն օրինակ ապստամբութեան բերեալ և Գրիգորի որդւոյ Վասակայ, որոյ Ապուհամզայն անուն ճանաչիւր, որ բունեալ որջացեալ էր յԱրճուճոն անուանեալ ամրոցի*[4]*:*

*Իսկ քաջին և իմաստնոյն Գագկայ Վասպուրական իշխանին տեսեալ զդարանակալացն երկոցունց լեալ ի միում ժամանակի զգործսն՝ դիմեալ ի վերայ Շապհոյ պաշարէ զբերդն անճողոպրելի զգուշութեամբ. զոր տեսեալ Շապհոյ զքաջազօրն պնդութիւն ամենիմաստ հզօրին և զփայլումն շնորհացն աստուածայնոց ի վերայ նորա օր ըստ օրէ, իմացեալ և զիւրն և զիւրոց գործակցաց նեղութիւն՝ յանկարծօրէն, իբրև զպտուղ մի ինքնահաս ի բարձր ոստոց ի գոգս անկեալ թափողի՝ այնպէս յանմերձենալի ծայրից ամրոցին ստորիջեալ անկանի առ ոտս երջանիկ իշխանին Գագկայ, և խնդրէ զաբեւն*[x]* իւր և զիւրոյ ազգին՝ պարգևք և գինք վարձուց ծառայութեան յաւիտենականի, [564]և աննենգ կալ ի դրան արքունի: Եւ առեալ զպարգևն և բան*[x]* արեան իշխանին՝ զան բոլոր ազգն ի ծառայութիւն հնազանդել առ ոտս հզօրին. բայց սակայն սիրտք նոցա ոչ էին ուղիղ*[xx]*, ոչ միայն առ իշխանն՝ այլ և ոչ առ տէրն Քրիստոս:*

*Եւ հասեալ լուր համբաւոյ յականջս Գագկայ Վասպուրական իշխանի, եթէ ելեալ համարձակաբար շրջի Ապուհամզա որդւովքն իւրովք յիւրումն կործանեալ գաւառի. և առաքեալ զօրս ի վերայ նոցա՝ ըմբռնեալ ածեն որդւովքն հանդերձ առաջի նորա. և նոցա զաղաղակ բարձեալ՝ արտասուս և հառաչանս առաջի արկանէին ասելով, մի՛ խպառ մերժեր զմեզ ի ժառանգութենէ մերմէ:*

*Իսկ քաջին և հեզոյն և ամենաջողակ հզօրին լուեալ աղաչանաց նոցա, մանաւանդ զի առ ուժգին քաջութեան անպարտելի սրտին զօրեղութեան ոչ ինչ երբէք ածէր զմտաւ զառ ի նոցանէն զանգիտելն, զոր օրինակ առիւծ յագեալ յորսոց ոչինչ փոյթ առնիցէ զանզէն [565] էրէոց, սոյնպէս և*

[564] x) Այլ օր.՝ զբան: xx) Ա (¹/₉)՝ ուղեղ:

հզօրին գթացեալ ի նոսա, մի՝ վասն զի ողորմած էր և յոյժ բարեգութ առ սիրելիս և առ թշնամիս, և մի՝ զի առեալ էր զդուստրն Ապուհամզայի իւր կնութեան[5]. խնայեաց ի նոսա, և ի հիմանց տապալեալ զշինուածս ամրոցին՝ հաստատէ նոցա զժառանգութիւն իւրեանց գաւառին, և բնակել աներկիւղ յերեսաց հզօրին: Եւ զայս ամենայն յաջողեալ նմա շնորհացն Աստուծոյ՝ խաղաղանայ երկիրն Վասպուրական:

Յետ խաղաղանալոյ երկրին գթասիրաբար և ուրախալից սրտիւ կոչեալ մեծանուն իշխանին Գագկայ զեղբայր իւր զԳուրգէն՝ և տայ նմա բաժին զԱռնիոտն, և ի ձորոյն Ընձահից մինչև ցերկուս ամրոցսն Սրնգայ և Ջղմարայ. զի յոյժ խանդաղատական և զուարթագին ոգւով իւրով սիրէր զնա, և հնարիմաց վերակացութեամբ որպէս հայր ի վերայ որդւոյ գթայր և դռնբաց լինէր նմա հանդերձ օգնականութեամբ՝ ասպատակել և բանալ զաղխեալն [566] ի Հագարեանն ազգէ: Որով և առ իսկ զգաւառն Ելի, և վանեալ զբնակիչս նորա սպառ սպուռ ջնջեաց զյիշատակս նոցա յերկրէ, զի էր այր խիստ և քաջասիրտ և յոյժ հնազանդ եղբօր իւրում Գագկայ Վասպուրական իշխանի: Եւ ի վերայ քաջասէր առ միմեանս լինելոյն՝ և զշինողութեան երկրի առնեն փոխադարձութիւն գաւառաց և բերդից[x] ի մէջ երկոցունց: Եւ տուեալ Գագկայ Վասպուրական իշխանի զբերդն Ագարակայ և զգաւառն Ծախուկ՝ առնու զբերդն Ջռէլ և զգաւառն կոչեցեալ Ջերմաձոր, որ է մասն երկրին Մոկաց. զի իցէ նորայն նմա մերձաւոր, և սորայն նմա յարակից:

Եւ Գագիկ իշխանն Վասպուրական երթալով երթայր և մեծանայր, և Տէր Ամենակալ էր ընդ նմա: Սա զօրութեամբն Աստուծոյ զամենայն դրացիս և որք շուրջ զկողմամբ իւրոյ էին տէրութեանն նուաճեալ ընդ իշխանասաստ հրամանաւ՝ ի ծառայութիւն գրաւէ իւրոյն[xx] տէրութեան. զոր տեսեալ տէրանցն Մոկաց, եթէ բարձրացաւ ձեռն Գագկայ ի վերայ

[566] x) Այլ օր.՝ շինողութիւն... բերդից և գաւառաց: xx) Այլ օր.՝ իւրոյ:

ամեն[567]եցուն՝ յամուրս իւրեանց ապաստանեալ՝ արգելին ի տալոյ զՀարկս, պակուցեալք ի սպառնալեաց Գագկայ իշխանին մեծի: Իսկ մեծանուն իշխանն վաղվաղակի զօր գումարեալ ասպատակեալ յերկիրն Մոկաց յաւուրս ձմերանի[x]:

Աստանօր զարմանք են ինձ ի վերայ քաջութեան ամէնօրՀնեալ և մեծանուն իշխանին, զի զերկուս իրս դժուարինս դիւրաւ յաղթեալ վանեաց քաջապէս. մի՝ զի լերինս բարձրաբերձս և փապարս անտառախիտս ունի երկիրն Մոկաց. և մի՝ զի ձիւնապատ սառնասոյր[xx] առՀասարակ պաղեալ էր երկիրն ամենայն: Իսկ սորա մտեալ՝ զբարձրագագաթունս[xxx] լերանցն իբրև զՀարթս կոխեաց ճանապարՀս, և տեարք և ազատք աշխարՀին ամենայն բնակչօքն Հանդերձ փախստեայ եղեալ մազապուր մնային յամրոցս բերդիցն, ոչ կարացեալ ի դիմի Հարկանել Հզօրին: Եւ առեալ զկապուտ երկրին՝ դարձեալ գայ ի գաւառն անուանեալն Երիւարկ, առնու և անդ զբերդն [568] Պաղայ, և զՓարՀուաց[x]. գայ և ի ձորն Առուանից, առնու և զայն ևս ամրոցն և տիրէ գաւառացն:

Իսկ զգաւառն ծովեզրի, յորում է սքանչելի և անառիկ բերդն Ամիւկ, զոր բազում ժամանակօք յափշտակեալ էին այլազգեաց, բազում և անՀուն պատերազմօք յարձակեալ ի վերայ աստուածասէր իշխանաց մերոց առաջնոց. դեռ ևս ցայն ժամանակս անդ յղփացեալ ամրացեալ կային մարդիկ դարուն Ութմանիկք կոչեցեալ ազգաւ: Ընդ որոց մեծ ջանիւ աշխատեալ տանն Արծրունեաց, ոչինչ ստանանել նոցա կարացեալ, մանաւանդ քաջն և յաղթողն մեծանուն իշխանն Գրիգոր, անուանեալն Դերանիկ, որ Թարգմանի՝ ուխտիւք խնդրեալ ի տեառնէ, որ բազում կրեալ աշխատութիւն՝ խանդակաթ մեռանի, ոչ Հասեալ խնդրոյն: Եւ մնացեալ բերդն[xx]

---

[567] ×) Այլ օր., III (434)՝ ձմերայնոյ: Ա ($^{1}/_{11}$)՝ ձմերանի: ××) Սառնասոյր փխ. սառնասոյզ (Նախն. 269): ×××) Ա ($^{2}/_{6-7}$)՝ բարձրագագաթունս:

[568] ×) Այլ օր.՝ ՓարաՀուաց: ××) Յայլ օր. չիք՝ բերդն:

Ամիւկ իւրական գաւառաւն վէր մեծ անբժշկելի ի սիրտս իշխանաց Վասպուրականի, որում ոչինչ սպեղանիք առաջնոցն ազդեցին. որ տևեաց եկն [569] եհաս իբրև Ծ ամօք, մինչև ի ժամանակս քաջին Գագկայ:

Իսկ առ սա հասեալ նախանձն հայրենի՝ վառի ընդդէմ նոցա պատերազմօք, նեղի ի նոցանէ և նեղէ զնոսա. և ապա հնարեալ խորհուրդ մեծ՝ ի գիշերի գողանայ զամրոցն, և սրախողխող արարեալ զբնակիչս բերդին՝ բնաջինջ բառնայ յերկրէ: Իսկ զգլխաւորսն խազմարարս՝ քարավէժս արարեալ ի խորս խաղացուցանէ սրտից ծովուն. անդ կալցեն գերեզմանս անյայտս մինչև յազդեալ ձայնի փողոյն յետնոյ, ուր պատրաստեալ են դատիլ զգործս իւրեանց: Իսկ զբերդն Ամիւկ զզարմանալին զամրոցն, զոր երկնապիչ և պարանոցատանջ իմս գիտէ անուանել բան՝ բազում ծախիւք և բազմագումար արուեստաւորօք յերևելիս հրաշակերտէ շինուածս: Ի ծայրից անտի գագաթանն ի խոնարհ մինչև ցեզր ծովուն լի և լի պարսպաւորէ անմերձենալի ամրութեամբ: Եւ զայն լուեալ չարահնար ազգին Իսմայէլացւոց, Մարաց և Պարս[570]ից և բոլոր Ատրպատականի արանց պատերազմողաց՝ առհասարակ խաղացին պատերազմունք ի վերայ քաջին Գագկայ իշխանին մեծի: Եւ իբրև զգազանս արիւնարբուս[x] մրմռեալ՝ գան հասանեն մինչև ցքաղաքն Սաղամաս: Երդմունս ուխտից դնեն առ միմեանս՝ վրէժս առնուլ, քանդել աւերել զերկիրն Վասպուրական, մինչև առցեն զԱմիւկ և խնդրեսցեն զքէն արեան ազգին Ութմանկայ[xx]:

Իսկ քաջարին և երբերջանիկ իշխանն Գագիկ գումարեալ զօրս բազումս՝ գայ ի գաւառն Մարդաստան և առաքէ զեղբայր իւր զԳուրգէն ի քաղաքն Ցաղամակերտ, երկոքումբք վառեալ ընդդէմ նոցա, պահել զկիրճս[xxx] ճանապարհաց. Թերևս յաջողեսցէ Աստուած ի ձեռն նոցա զգործ պատերազմին յաղթութեամբ: Կարգեալ էր և զօրագլուխ մի մեծի-

---

[570] x) Յայլ օր. չիք՝ արիւնարբուս: xx) Ա ($^{1}/_{3ռ}$)՝ ութմանայ: xxx) Ա ($^{2}/_{9}$) զկիճս:

մաստ յառաջատես իշխանին Գագկայ ի վերակացութիւն գաւառին Ծուաշայ և Շամիրամն կոչեալ բերդի, զոմն ի տանէն Ակէացւոց, այր միամիտ և քաջասիրտ, որում [571] անուն էր Թադէոս, որոյ բազում գործս արութեան ցուցեալ ի պատերազմունս, պայծառ և երևելի եղեալ փայլէր ի մէջ զօրաց Հայաստանեայց: Սա էր լի գործովք բարեաց, ի տուրս աղքատաց զուարթառատ սրտիւ, ժրագլուխ և փոյթ ի զարդ և ի շինութիւն եկեղեցեաց, ընդունող որբոց և այրեաց և Հանգուցիչ ամենայն աշխատելոց, որ ոչ միայն ի զէն զինուորութեանն իւրոյ լինէր յուսացեալ՝ այլ ի զօրութիւնն Աստուծոյ: Առ սա Հասեալ լրտեսաց՝ ասեն, «աՀաւասիկ զօր այլազգեացն անցին յաշխարՀն մեր յայսմ գիշերի անթիւ բազմութեամբ»: Եւ նորա զՀետ մտեալ սակաւ զօրօք՝ Հասանէ նոցա ի դաշտին Գերատայ[×6], այն ինչ մինչդեռ մերձեալ էին այլազգիքն տալ բերանոյ սրոյ զբազում բանակս ժողովրդեանն տեառն: Յայնժամ առնն քաջի Թադէի զաչս յերկինս Համբարձեալ, յօգնականութիւն կարդալով զտէրն Քրիստոս, և ըստ գրեցելումն, թէ «պատրաստ գտանի Աստուած խնդրողաց իւրոց»[7] վաղվաղակի ի թիկունս Հասանէ զօրութիւնն Աստուծոյ [572] գնդին Հայոց, թէպէտ և յոյժ էին նուազունք. և սուր ի վերայ եդեալ կոտորեցին և լցին զբերան դաշտին յանկելոց դիակացն յոյժ խտացեալ առ միմեանս, և զբազումս ձերբակալս՝ արարեալ ածեն առաջի իշխանին մեծաւ յաղթութեամբ: Իսկ մեծանուն իշխանին Գագկայ բազում և երևելի պարգևօք չքեղացուցեալ նախապատուէ զյաղթօղ այրն Թադէոս:

Եւ տեսեալ այլազգեացն զեղեալսն՝ ասեն, «որովՀետև ի փոքունցս զայս կրեցաք, զի՞րդ բազմացն կարասցուք ի[×] դիմի Հարկանել զօրաց իշխանին, մանաւանդ ուր և ինքն իշխանն իցէ յարդարիչ պատերազմին». և զաՀի Հարեալ դարձան ընդ կրունկ, և խափանեցան խորՀուրդք չարին նոցա:

---

[571] ×) Այլ օր.՝ Գերադայ:
[572] Յայլ օր չիք՝ ի:

Զայն տեսեալ Սմբատայ Թագաւորին Հայոց՝ մախացեալ ընդ իրսն՝ և զարթուցանել ջանայր զայլազգիսն կրկին անգամ ի վերայ իշխանին. և իբրև այնու ոչինչ կարաց ստանալ[xx] ապա պատրողական բանիւք և խոստմամբք դաւաճանէ զայրն զոր կարգեալ [573] էր յամրոցին Ամիւկ, որում անուն ճանաչիւր Ապուսակր, ի տանէն Վահունեաց. և նորա ըստ նմանութեան Յուդայի առեալ զգինս ստուածավաճառ նմանութեամբ՝ տայ զբերդն ի ձեռս Սմբատայ Թագաւորին Հայոց:

Եւ Սմբատայ առեալ զբերդն՝ դարձեալ վաճառէ իշխանին Գագկայ և առնու ի նմանէ զանձս բազումս[8]: Եւ յայնմ օրէ անկանի կասկած չարութեան յերկաքանչիւրոցն միտս, վասն որոյ և ոչ սիրով խաղաղութեամբ զմիմեամբք Թևակոխէին որպէս յառաջագոյնն:

Յայնմ ժամանակի զօրացեալ լինէր հարստահարութիւնն Տաճկաց ի վերայ քրիստոնէից. և ելեալ հրամանաւ արքունի ոստիկան ոմն մեծ ի վերայ Պարսից և Հայոց, որում անուն ճանաչիւր Յուսփ որդի Ապուսաճայ, այր խրոխտ և բարձրանշան և ահարկու քան զբազումս որ յառաջ քան զնա էին: Սա շարժեալ բարկութեամբ մեծաւ ի վերայ Սմբատայ վասն բեկանելոյ նորա զհարկս արքունի. և խաղացին ի մէջ նոցա դեսպ[574]անք հրովարտակաւորք ոչ սակաւք. և ոչինչ իրք խաղաղութեան առ նոսա պատշաճիւր: Իսկ ամիրայն Յուսփ քանզի լսելով լսէր զանուն և զգործս արիական քաջութեանն միանգամայն և զիմաստակիր խոհականութիւն հանճարեղ և մեծանուն իշխանին Գագկայ՝ ցանկայր ի[xx] բազում ժամանակաց տեսանել զնա: Ուր և անդէն իսկ վաղվաղակի դեսպանս առաքէ հրովարտակօք և բազում խոստմամբք, և իսպառ Թախանձեալ զիշխանն՝ կոչէ ի հանդիպումն իւր: Եւ նորա գնացեալ զկնի կոչողացն անյապաղելի և սիրով խաղաղութեան. որ ի հասանելն առ միմեանս՝

xx) Թերևս՝ ստանել (II, 282, ծն. 3):
[574] x) Այլ օր.՝ ոչ: xx) Ա (¹/₁₂₋₁₃)՝ ցանկայր և ի:

մեծաւ փառաւորութեամբ չքեղացուցանէ զիշխանն:

Եւ տեսեալ զպայծառազարդ հասակ մանկութեանն և զզարմանալի գեղ երեսացն վայելչութեանն՝ զարմանայր բանաւորն. և հարցափորձ արարեալ զնա խորին և անհետազօտելի իմաստակիր բանիւք՝ լսէր ի նմանէ զպատասխանիս բարձրագոյնս ծանուսն, միանգամայն և խորինս և դժուարիմացս, որովք առատապէս և [575] անարգել լուծանէր զհարցմունս նորա զգաղտնիս և բանայր առաջի նորա զդրունս աղխեալս և զանիմանալիս ի մարդկանէ, և լինէր նմա մայր հանճարոյ և դայեակ իմաստից: Եւ քանզի այր զօրաւոր էր մտօք արքայն Պարսից Յուսփ և տհաճ յամենայն որդիս մարդկան՝ վասն այնորիկ[×] և ի բովս քննութեան զմեծապարծ և զաստուածազարդ իշխանն արկանէր, և ամբարձեալ զաչս իւր արածէր զնա և չափէր զկայս նորա ի նստել և ի յառնել. և յամենայն մասունս թագաւորականս գտանէր զնա զուտ և նազելի համեստութեամբ զարդարեալ, իբրև զոսկի որ ի բազում բովս փորձեալ իցէ: Բանայր առաջի նորա զհրովարտակս արքունիս, յայտնէր նմա զխորհուրդս և զգործս տարակուսելիս և խնդրէր ի նմանէ յաղագս ելից, և նպաստաւորեալ առ ի նմանէ՝ ծայրագունիցն հմտանայր բղխելոց[××] ի նմանէ իմաստիցն: Ցուցանէր նմա զականս պատուականս և գեղեցիկ մարգարիտս լուսածինս, ելեալս յերկրէ և ի ծովէ, [576] ըստ օրինակի թագաւորաց, համբաւէր ի լսելիս նորա զգրուցաբանութիւն հնոցն թագաւորաց դարուց ի դարս, և զեղեալս առ նոքօք զպատերազմունս: Հարցանէր ի նմանէ զտունս և զաթոռս թագաւորաց և բարձրնկալ տոհմից և զսահմանս աշխարհաց զիւրաքանչիւրոցն, սկսեալ ի Մարաց և Պարսից, Հրէաստանի և Երուսաղէմի, Ասորոց և Եգիպտացւոց, Յունաց և Հնդկաց, զբոլոր Հայաստանեայս[×] մինչ[××] ի դրունս Աղանաց և Կաս-

---

[575] ×) Այլ օր.՝ վասն որոյ:
××) Այլ օր.՝ բղխեցելոյ:

[576] ×) Ա (Ա/Յն)՝ հայաստանեայց: ××) Այլ օր.՝ մինչև: ×××) Այլ օր.՝ ճարտար, և իմաստուն:

պից, որ է յոյժ վայելուչ Թագաւորաց. և գտանէր զնա ամենայնի ճարտարապետ[xxx] և յոյժ Հմտագոյն: Փորձեալ քննէր զանպարտելի քաջն և զՀրաշազարդ իշխանն ի պատաՀեալ պատերազմունսն, շուրջ զնովաւ ջոկադրեալ լրտեսս արս պատերազմողս. և գտանէր զնա իբրև զլեառն մի բարձր անշարժ ի Հողմոց պատերազմացն Հնչմանց. որոց և յաղթէր իսկ մեծաւ արութեամբ: Զայս ամենայն և ևս յաւէտ քան զսոյնս տեսանէր արքայն Պարսից Յուսփ, զերևեալ շնորՀս աստուածայինս ի վերայ [577] քաջի և աստուածազարդ իշխանին Գագկայ, և ուրախ լինէր յոյժ ի վերայ գալստեանն նորա առ նա:

Բայց ի Հասանել Համբաւոյն յականջս Սմբատայ, եթէ միաբանեաց Գագիկ Վասպուրական իշխան[x] ընդ Յուսփայ Պարսից արքայի՝ մախացեալ գոռայր ընդ նմա խորին չարութեամբ. և ինքն Սմբատ ոչ խնդրեաց երթալ զՀետ խաղաղութեան, տալ զՀարկս արքունի, որպէս Հրամայեաց տէր զսակ անդրանկացն ի ձեռն Պետրոսի ընծայել այնոցիկ որք զդիդրամայն պաՀանջէին, և ասէ, «տո՛ւք զկայսերն կայսեր, և զԱստուծոյն Աստուծոյ»[9], և այնքան արժանապէս նշանակեաց տալ զսակս արքունի՝ մինչ զի ի ծովն յղէ զՊետրոս և յանդնդաղուղակ կայտառին կեռեաց կորզեալ զստերն՝ զկամս Հաճեաց խնդրողացն[xx], զոր եւ ընդ արարչական գլխոյն և ընդ գլխաւորին Պետրոսի[10]: Զայս Հրաման տէրունեան յետս Հարեալ Սմբատայ՝ շարժեաց զբազում չարիս ի վերայ սուրբ եկեղեցւոյ և ժողովրդեանն տեառն:

[578] Վասն որոյ սրտմտեալ սաստկութեամբ Յուսփ[x] յարձակեցաւ ի վերայ Հայաստանեայցս անՀուն զօրու և զինու[11], և բազում անցս աղէտից ի վերայ մեր Հասին, զոր այլ զօրաւոր և մտաՀարուստ ոմն Հռետոր մեծ նախ քան զմեզ վերագրեաց և աւանդեաց ի գանձս արքունի[12]: Եւ իբրև ետես Սմբատ, եթէ ոչ գոյ Հնար նմա ընդդիմանալ արքային

---

[577] x) Այլ օր.՝ իշխան Վասպուրական: xx) Այլ օր.՝ խնդրողին:
[578] x) Այլ օր. չիք՝ Յուսփ:

Պարսից՝ փախստեայ եղեալ ամրանայր ի բերդին Կապուտայ. և բռնաւորին շուրջանակի պաշարմամբ պատեալ զամրոցն, և զկնի սակաւ աւուրց ըմբռնէ զնա իբրև զանզօր տղայ:

Եւ տեսեալ եթէ ոչ ոք է որ կարողանայ տիրել և ունել զաշխարհս Հայոց, բայց միայն Գագիկ, զորոյ զփորձ առեալ գիտէր զնա այսպիսի այր, զոր ոչ թողեալ ի կամս անձնիշխան կամացն՝ թագաւորեցուցանէ զնա ի վերայ ամենայն Հայոց: Եւ եդեալ թագ ի գլուխ նորա զուտ ոսկի բազմաբուեստ յօրինմամբ, հիւսեալ մարգարտովք և մեծագնի ականբք պատուականօք, զոր ոչ բաւեմ պատմել: [579]Եւ զգեցուցեալ ոսկեզարդ պատմուճան միանգամայն և գօտի սուսերաւ, հանդերձ ոսկեհուռն փայլեալ զարդու, որ ի վեր քան զմիտս և զբան անցանէ պատմողաց: Եւ հեծեալ յերիվարն քաջակազմ ոսկեհրաշ սարուցն փայլէր իբրև զարեգակն ի մէջ աստեղաց. և բազմութիւնք զօրացն սպառազինեալ յաջմէ և յահեկէ՝ թնդմունք ճայթմանց և փայլատակմունք սուսերաց, գոչմունք փողոց և հնչմունք եղջերաց, վանգիւնք սրնգաց և հեշտալուր քնարացն, տաւիղք հանդերձ դրօշիւք նշանաց առաջի և զկնի, և ի ձայնն ահեղ զհետ դղրդեալ բանակն արքունական զօրուն: Եւ այսպիսի փառաւորութեամբ հաստատեալ տայ ի ձեռս նորա զբոլոր Հայաստան աշխարհս հանդերձ մեծամեծ քաղաքօք և ամենայն վայելչութեամբք. զոր ես ոչ դանդաղիմ ասել զօծումն սորա× աներևութաբար լեալ ի Հոգւոյն Սրբոյ, ըստ առաքելոյն գոչման որ ասէ, «ոչ ուստեք է իշխանութիւն, եթէ ոչ յԱստուծոյ. և որ էն՝ յԱստուծոյ է [580]կարգեալ×»[13]:

Եւ արքայն Յուսփ ել գնաց յաշխարհն Պարսից ապստամբել յարքունուստ, և ստունգանեալ հրամանաց նոցա՝ առնու զքաղաքս բազումս, և փախստական արարեալ զզօրս արքունի՝ դեգերեցուցանէ ի դրունս նոցա:

---

[579] ×) Այլ օր.՝ սորա յԱստուծոյ:

[579-580] ×) Այլ օր.՝ և որ են յԱստուծոյ կարգեալ են:

Եւ գլխաւորին Տաճկաց, զորոյ զանուն Ջափր գիտելով ի նոցունց գրոց, և զմիւս ևս վերագրեալ անունն Մոկթդիր, իբրև գիտաց զթագաւորելն Գագկայ ի վերայ Հայաստանեայց՝ առաքէ նմա թագ և հանդերձս զարդուց զարմանալիս և յանձն առնէ նմա զհարկս արքունի:

Այս ինձ սխրալիք առ ի պատմել, այս ինձ զարմանալիք առ ի լսել, և վերագունից վերագոյն իմումս և այլոց պատմութեանց, զոր ոչ ի համբաւուց ոչ երբէք լուեալ և ոչ ականատես ուրուք եղեալ կարասցեն յայտնել. թագընկալ փառօք պատուիլ ումեք յարքունուստ, մանաւանդ քրիստոնէի և ուղղափառ հաւատացելոյ և որդւոյ թագաւորի, սեփհական և բնատուր տիրողի Հայոց. զոր ոչ յանդգնագոյն համար[581]իմ ասել երկրորդ անգամ, թէ ակամայ կամօք զայս բռնաւորն հարկեցաւ առնել ի կամաց և ի հրամանէ բարձրելոյն և բոլորիցն տեառն:

Բայց ի գնալն Յուսփայ ամիրային ի Պարս՝ գնաց և թագաւորն Գագիկ ի գաւառն Կոգովիտ, և պաշարեալ զանառն Դարիւնս՝ գողացեալ առնու ի գիշերի, ըստ յաջողելոյ նմա ի վերուստ. առնու և զբերդն Մակուայ. և անտի յառաջ մատուցեալ առնու զբերդն Ուղեոյ և տիրէ գաւառացն, սկսեալ ի Կոգովտէ մինչև ցմիջոց Ուղեոյ, և Մասեաց ոտն:

Զայսու ժամանակաւ առաքին յարքունուստ պատգոսք պատուաւորք զօրօք բազմօք, որոց հրաման տուեալ՝ անցանել յԱտրպատական: Սոցա բերեալ կրկին անգամ թագ և հանդերձս պատուականս յարքունուստ՝ և շքեղացուցանեն զթագաւորն Գագիկ կրկին փառաւորութեամբ[14], առաւելեալ քան զոր վերագոյնն ասացաք և խնդրեալ ի թագաւորէն բերանով արքունի, ի ձեռն սիրով լցեալ հրովարտակաց՝ զի ճանապարհ արասցէ նոցա անցան[582]ել ընդ աշխարհն Հայոց նորին օգնականութեամբ. և արքայ յուղարկէ զնոսա ըստ խնդրոյն արքունի. և նոցա երթեալ պատերազմեցան յարևելից կողմանն: Եւ փախստական արարեալ զզօրսն ամիրային Յուսփայ, ձերբակալ ևս արարեալ և զինքն՝ բառնան ի դուռն արքունի. և կացեալ ի բանտի զամս Ը[15] և դարձեալ արձակի հրամանաւ արքունի, տալով ի ձեռն նորա զբ-

նաւ աշխարհն Պարսից և զբոլոր Հայք, միանգամայն և զքաղաքսն մեծամեծս, զոր բռնութեամբ յափշտակեալ էր յաւուրս ապստամբութեանն, և զԽայ քաղաք և զմեծն Բասրայ: Եւ նորա յաղթեալ ի բազմութենէ քաղաքաց և աշխարհացն տուեալ ի ձեռս նորա՝ ոչ ժամանէ յԱտրպատական. այլ առաքէ ոստիկանս հաւատարիմս և տայ ի ձեռս նոցա. առաքէ և Թագ և հանդերձս երևելիս Թագաւորին Հայոց Գագկայ՝ հաստատել ի ձեռս նորա զՀայաստան աշխարհս:

Եւ ընդ այնր ժամանակս փոխի յաշխարհէս Գուրգէն եղբայր Թագաւոր[583]ին[16], խաղաղութեամբ ննջեալ առ հարս իւր. և եղև օր վախճանի նորա սուգ մեծ ամենայն Հայաստան աշխարհին: Եւ ելաց զնա արքայ լալիւն մեծ զաւուրս Խ. և ապա դարձեալ արծարծեալ զմիտս իւր յերկիւղն Աստուծոյ, իմացեալ զիմաստնոյն ասացեալն, թէ «իմաստնոյ սուգ զաւուրս է իսկ անմտի զամենայն ժամանակս կենաց»[17], եդեալ ի մտի զառօրեայ զապականացու և վաղազրաւ կենցաղոյս փոփոխումն, ամբարձեալ զմտացն աչս առ մշտնջենաւոր և անլուծանելի կենացն յարատևացեալ կայումնն, քաջապէս արութեամբ և լիակատար գիտութեամբ ինքն զինքն կանգնեալ՝ շնորհէ շինութիւն աշխարհի և նորոգումն սուրբ եկեղեցեաց և ուխտի մանկանց, որովք միշտ պայծառացուցանէր զոգի գնացելոյն յաշխարհէս. մատուցանէ և պատարագս և զոհս զենմանց, բազմաբիւր գանձիւք լրացուցանելով զդասս աղքատաց, որբոց և այրեաց, տնանկաց և տառապելոց, բիւրաւոր ամբոխից առ նա կուտելոց˟. ուստի և յորդառատ [584] բարեբանողացն մաղթական հայցուածոցն, ըստ իմում գիտութեան, մանաւանդ ըստ սրբոցն աւետարանութեան, կամ թէ գերագոյն ասացից՝ տէրունեան բանիւն՝ երթեալ այս պատարագ համահաւասար զոլոց երից արանցն արդարոց, Աբէլին, Նոյին և Աբրահամուն, ի ձեռն անմահ պատարագին էական բանին հօր, մարմնով վասն մեր պատարագեցելոյն՝ մատեաւ ընծայ հաշ-

---

[583] ˟) Այլ օր.՝ եկելոց:

*տութեան Հօր ի Հոտ անուշից: Եւ ոչ այսքանիւք միայն շատացեալ, այլ օր ըստ օրէ յիշելով զգուշ կենդանութեանն միանգամայն և զսէր կատարմանն՝ առեալ զմթերս գանձուց և զՀանդերձս պայծառազարդս և զծիս և զջորիս, զանդեայս արջառոց և զՀօտս ոչխարաց՝ ի չորեքծագեան կողմանս երկրի տայ ի վանս սրբոց և Հանդիսաւոր արանց, կարգեալ աւուրս նշանաւորս և քառասնօրեայ ժամանակս անխափան ուխտադրութեամբ և անմոռաց յիշատակօք՝ միշտ փառաց ի փառս վերածիլ գնացելում եղբօրն յան[585]վախճանն յայն և յանսպառ յաւիտենին. ի մտի եդեալ՝ թերևս դէպ լինիցի յետնումն յայն և յաՀեղ գալստեանն աւուր ընդ աջակողմանն գունդս աչալուրջ պայծառութեամբ ընդ գիրկս խառնել եղբօրն, և լսել ի նմանէ, թէ «ողջոյն քեզ, եղբայր ազատեցուցիչ ոգւոյ իմոյ ի դրաց դժոխոց, որ բարիոք մատակարարելով առ իս ի քում վերջամնացութեանն՝ ընդ իմումս և զքո ոգիդ վերածեր ի կեանս»: Եւ դարձեալ ինքն արքայ վառեալ ի զէն և ի զարդ անՀամեմատ քաջութեան, միապետեալ զբոլոր աշխարՀս Հայաստան, գետաՀետեալ Հոսանուտ բարեբուղխ ուղխիւք՝ իբրև զծով բազմացուցանէ զխաղաղութիւն ի Հայաստան աշխարՀի. զոր և մերս բան զարդարևն ասել ոչ զանգիտէ. յառաջ քան զսա այսպիսում Հանդիպել բարութեան երկրիս մերում ասել՝ ոչ է ի դէպ, և զկնի սորա լինել՝ Հանդերձեալ իմանալ ոչ է կարողութիւն:*

(Ե)

## [586] ՎԱՍՆ ԲԱՌՆԱԼՈՑ ՍԳՈՑՆ ՄԵԾԻ, ԽԱՂԱՂԱՑՈՒՑԱՆԵԼՈՑ ԱՐՔԱՑԻ ՋԱՇԽԱՐՀՍ, ԵՒ ՈՐ ԻՆՉ ՑԱՂԱԳՍ ՅՈՒՍՓԱՑ ՈՐԴԻՈՑ ԱՊՈՒՍԱՃԱՑ:

*Իսկ զկնի բառնալոյ սգոյն մեծի՝ խաղաղացուցանէ թագաւորն զաշխարՀն ի մրմռեալ պատերազմացն Պարսից և սևորդւոցն Հագարու որ զկողմամբք լերանցն:*

*Ընդ այնր ժամանակս դեռ ևս բռնակալութեամբ տիրէր Պարսից և Հայոց Յուսփ որդին Ապուսաճայ, որ ոչ կարացեալ Հանդուրժել քաջութեան և իմաստութեանն արքայի,*

*թողեալ զգազանաբարոյ գործս չարութեան՝ դառնայ ի խաղաղութիւն և ի սէր կատարման. և տայ ի ձեռն արքայի զաշխարհս Հայոց և Վրաց, և ուխտ խաղաղութեան եդեալ գնայ յերկիրն Պարսից: Եւ մինչդեռ կամէր զբօսնուլ ի կարծեալն իւրումն խաղաղութեան՝ վաղվաղակի գան առ նա հրեշտակք արքունի, հրաման տալով զի երթեալ տայցէ պատերազմ ընդ հարաւային զօրացն, որք ելեալ էին ի վերայ Բաբելովնի և սահմանաց նորա[1]: Եւ նորա գնացեալ անթիւ բազմութեամբ զօրու՝ թողու ոստիկան Պարս[587]ից զմի յիւրոց հոմանեաց, որում անուն էր Փէթք[2]. և ինքն հասեալ ի դուռն արքունի՝ առնու և անտի ևս զօրս բազումս յօգնականութիւն. և գան պատահեն միմեանց յՈսիտ աշխարհի, և ի ճակատելն գունդ առ գունդ՝ հարկանին իսպառ զօրքն Յուսփայ, ձերբակալ արարեալ և զինքն. և զկնի սակաւ ժամանակի սպանանի, ոչ գիտեմ ո՛րպիսում պատահեալ վիճակի մահու[3]:*

**(Ձ)**

## ՈՐ ԻՆՉ ՑԱՂԱԳՍ ԱՆԻՇԽԱՆՈՒԹԵԱՆՆ ՊԱՐՍԻՑ

*Եւ ապա զկնի այսոցիկ այսպէս եղելոց՝ անիշխանանայ երկիրն Պարսից: Այլ թէպէտ և յառաջ մատուցեալ կակայէին որդիք աղախնեաց և ծառայք տանն Ապուսաճայ, կարծելով զանձանց թէ իցեն ինչ, որք և վաղվաղակի ի միմեանց սատակէին[x], կատարելով առ նոսա ասացեալն յիմաստնոյն, «ւա՛ղ և եղո՛ւկ քեզ, քաղաք, որ թագաւորդ քո որդի աղախնոյ է»[1]. և դարձեալ յայլում տեղւոջ ասէ, «երիւք շարժի երկիր, և չորրորդին ոչ կարէ հանդուրժել. ծառայ եթէ թագաւորեսցէ՝ շարժէ [588] զերկիր, և անմիտ եթէ յագեսցի*

---

[587] x) *Այլ օր.՝ սատակին:*

[588] x) *Այլ օր.՝ ումեք:* xx) *Այլ օր. յաւելու՝ Հայոց:* xxx) *Այլ օր.՝ աւասիկ:* xxxx) *Այլ օր.՝ և ևս:* xxxxx) *Այլ օր.՝ խաղաղութեամբ:* xxxxxx) I (326), II (290), III (450)՝ *իբրև հայր և խնամածու:* Ա($^{2}/_{\text{գ-ցն}}$) *չիք՝ և:*

Հացիւ՝ նոյնպէս առնիցէ»[2]. որ արդարեւ շարժեցաւ երկիր, կարծելով թագաւորել ծառայիցս այսոցիկ: Եւ քանզի ոչ ոք ի սոցանէ արժանի յիշատակաց գործ գործեաց՝ և ոչ մեք[x] շար ի կարգի Հարեալ զանուանս նոցա Հիւսեցաք յասպարիսի աստ պատմութեան:

(Է[1])

ՑԱՂԱԳՍ ԱՇԽԱՐՀԱՇԻՆՈՒԹԵԱՆ ՄԵԾԻ ԱՐՔԱՅԻՆ[xx] ԳԱԳԿԱՑ ԵՒ ԲԱԶՈՒՄ ՏԵՂԵԱՑ ՆՈՐՈԳՄԱՆՑ ԵՒ ՀՐԱՇԱԿԵՐՏՈՒԹԵԱՆՑ ՈՍՏԱՆՆ ԱՒԱՆԻ:

Բայց ինձ աՀա[xxx] յոյժ սիրելի է աստանօր զբարձրագոյն իմն իրէ բուռն Հարկանել, առ ի յիշատակ թողլով զկնի եկելոց, ևս և[xxxx] ի պարծանս տանն Արծրունեաց, յիշատակեալ զիմաստակիր խոՀականութեան գործս մեծի արքային Հայոց Գագկայ, որ քաջութեամբ և աշխարՀաշէն խաղաղասիրութեամբ[xxxxx] Հոգաբարձէր իբրեւ զՀայր խնամածու[xxxxxx] ի վերայ աշխարՀիս Հայոց, որ և ի վերայ բարեխնամօղ գթութեանց որով զաղքատս դարմանէր, զգերեալս դարձուցանէր, զգրկեալս փրկէր, դատ առնէր որբոց և [589] տայր իրաւունս այրեաց, և զայն ևս աւարտ և գլուխ դնէր ամենայն առաքինասէր վարուց, ևս և մեծի գովութեանց արժանաւոր. զոր և ես քեզ սիրելի քաջ[x], և քաջի արանց նախնական, որ և զպատմութիւնս յինէն պաՀանջեցէր, ոչ իբրու[xx] յայլոց Համբաւուց տեղեկացեալ ընծայեալ արձանացուցանեմ քեզ ստայօղ բանից պաճուճեալ առասպելս, այլ ականատես և ականջալուր, և իմով իսկ ձեռօք[xxx] շօշափեալ՝ պատմեմ քեզ Հաւաստապէս զեղելոցն զարմանս:

Ամենեցուն իսկ ընթերցասիրաց յայտնի են պատմեալքս՝ զի այր արծաթասէր սրով գելուլ զպարանոցն լաւագոյն Համարի, քան եթէ դանգ մի տուժել յարծաթոյն. և եթէ զարեգակն տեսանիցէ արձակելով զճառագայթսն ի խնամս

[589] x) Յայլ օր. չիք՝ քաջ: xx) Այլ օր.՝ իբրեւ: xxx) Այլ օր.՝ ձեռամբ:

տիեզերաց ըստ հրամանի խնամողին Աստուծոյ՝ ընդդէմ նորա ասէ, ընդէ՞ր փոխանակ լուսոյդ ինձ ոսկի ոչ բղխես. և եթէ աղբիւր ակնավճիտ տեսանիցէ՝ ասէ, չեմ ծարաւի, և ոչ երբէք արբից ի քէն ջուր. մատոյ ինձ արծաթ: Իսկ բարք [590] անարծաթասէր գոլով թագաւորին, զուտ և մաքուր մնալով յայսպիսի մեծավէր ախտէ՝ խնամ ածէ ոչ միայն անձինն զբօսանաց, այլ և բնաւ աշխարհիս Հայոց. տայ զմթերս գանձուց ի ձեռս գործավարաց և արուեստաւորաց՝ պարսպաւորել ամրութեամբ զբլուրս գագաթնաւորս[×] և զանառիկ ամրոցս բերդից ի գաւառս և ի միջոցս երկրի, ի պէտս ապաստանի փախուցելոց ի հինից և ի խռովութեանց օտար ազգաց. յորոց ի բազում ամրոցաց պարսպելոց յիւր անուն՝ յերկուս տեղիս կարի իմն յոյժ հաճեալ նուաճէ ականակառոյց լինելով. մինն առ եզերբ ծովուն, որ է աւանն Ոստան[1] ի գաւառն Ռշտունեաց, որ է յոյժ բարեխառն, ի չորից ծագաց երկրի օդոյ առ հասարակ նա շնչելով. նաև ծառովք պտղաբերովք սաղարթեալ և այգեստ[××] բազմութեամբք յոյժ վայելչացեալ զարդարի. բղխեն և աղբիւրք բարեխառնք շուրջ զքաղաքաւն, օգնականութիւն մատուցանելով մարդկան ի բազում պէտս, այլ և ի հարաւակողմն կուսէ ամրոցին մերձ կայ բարձրաբերձ լեառնն [591] Արտօս, որ ի գարնանայինն հասարակութենէն մինչև ցաշնանային եղանակ ամբարեալ պահէ յինքեան զդալարութիւն արմատոց և ծաղկանց, և զձիւնահորս ամբարձեալ ի պէտս թագաւորաց, և ամենայնի որ ցանկասցի ոք առնուլ: Նաև ի գլխոյ լերինն հոսեալ իջանեն գետք սահմանակարկաջք յորդահոսք, որով ոռոգանի երկիրն առ հասարակ. որք և ի ծով անկանելով՝ բղխեն ձկունս մանունս առ ի պէտս վայելչութեան բնակչաց աշխարհին, և ամբարեն ինչս բազումս ի գանձս թագաւորաց, զոր և արքայի առեալ նուիրէ ի դարմանս աղքատաց: Եւ ինքն գագաթն ամրոցին է ծովահայեաց և յոյժ

---

[590] ×) Այլ օր.՝ գագաթաւորս: ××) այգեստ ուղղ.՝ այգաւէտ (Նախն., 12):

*վայելուչ. եթէ շարժեսցի ծով յուզեալ ի հողմոց՝ ծաղկաձև ալիքն զբօսացուցանողք և վայելուչք երևին. և եթէ մաքուր յօդոյ լինիցի՝ զամենեցուն աչս գրաւէ զիւրն տեսանել ծաւալումն. վասն որոյ և արքայի ձեռնարկեալ շինէ ի նմա տաճարս և սենեակս և փողոցս հրաշալիս պատկերակերպս և ազգի [592] ազգի յօրինուածս, զոր ոչ բաւեմ պատմել: Պարսպէ և զծովակողմն զօրաւոր վիմօք, դնելով զհիմունսն յանհնարին խորութեան, շինէ և ի գլուխ պարսպին ընդդէմ ծովուն տաճար մի ճեմարանոց ոսկեզարդ և պէսպէս պաճուճեալ դեղովք, արեգականհրաշ ճառագայթաձևս ի խտղտանս աչաց և յուրախութիւն սրտի ինքեան և իւրոց արժանեացն. իսկ զդրունս կազմեալ կամարաձևս, օդաքերս, զովացուցիչս, միանգամայն և լուսանցոյցս շողախաղացս, որք ի ծագել և ի մտանել արեգականն փայլատակելով ի վերայ ծովուն՝ շող գործեն ի սիրտս տաճարին, և յերփն երփն շրջշրջելով զդրօշեալ պատկերատիպսն և զզանազան յօրինուածսն՝ զմիտս հիացուցանէ զտեսօղացն, և ի վեր անդր անցանէ քան զպատմողաց գիտութիւն:*

*Իսկ մեր ի բազմաց զսակաւն յիշատակելով՝ ահա ասացաք որ ինչ յաղագս Ոստանն աւանի:*

(Ը)

## ՅԱՂԱԳՍ ՇԻՆՈՒԹԵԱՆ ԱՂԹԱՄԱՐԱՅ[1] ԵՒ ԹԷ Ո՞ՅՔ ՈՄԱՆՔ ՅԱՌԱՋ ՔԱՆ ԶՁԵՌՆԱՐԿԵԼՆ ԱՐՔ[593]ԱՅԻ ՍՈՒՂ ԵՒ ՈՉ ԱՐԺԱՆԻ ԻՆՁ ՅԻՇԱՏԱԿԻ Ի ՆՄԱ ԳՈՐԾՍ ԳՈՐԾԵՑԻՆ:

*Եւ արդ մեր բաղձալի սիրով բուռն հարեալ զգեղեցիկ պատմութեանց՝ զբազմօք զանց արարաք զրուցատրութեամբք, մանաւանդ որ անհուն շատաբանութեամբք իցեն լի, անօգուտ մեզ առ ի պատմել, և անշահ լսողաց առ ի լսել. ուստի և յայսցանէ ի բաց որոշելով զմեր միտս՝ յօգտակարն մեր փութասցուք պատմութեանցն հանդէս. և անվրէպ յայտարարութեամբք որ ինչ ի սկզբանց անտի շինութեան աշխարհիս Հայոց ի Հայկայ աղեղնաւորէ և ի նորուն զարմից և ցկաթոտ և վավաշոտ Շամիրամն տիկին Ասորեստա-*

նեայց և ի Նմանէ յայլս և յայլոց ևս յաւէտ ձեռակերտք և շինուածք յիւրաքանչիւրոցն յերկրիս մերում եղեն՝ մեր առ ամենայնն անձամբ հասեալ և աչօք տեսեալ, ձկտեալ և ի հեռաւոր աշխարհս, մինչև ցԿղարջս և Շուշեթացիս և առ լերամբն Կաւկոսա և յԱհիզ, մինչև ի մուտսն Գաղայ, և ընդ Տայաստան և ընդ ամենայն հիւսիսականս և ընդ արևելս ի հետիոտս [594] գնալով՝ տեսաք զգործ քաջաց և նախնեաց. միայն զմերս գրաւեաց զմիտս և զտեսութիւն հրաշակերտն և քան զբազումս նորանշանն և զարմանալին Աղթամար. որ թէպէտ և յառաջ քան զայսոսիկ ի Դաւթայ Սախառունոյ և յԽաշամայ Ռշտունւոյ և ի Բազափրանայ ասի առեալ շինութիւն, որ զՊաղեստինացւոց աշխարհն հանդերձ Հիւրկանեաւ[x] քահանայիւ գերեալ ած բնակեցոյց յերկրիս մերում՝ սակայն ամենեքեան սոքա իբրև ի տաղաւարի, և կամ որպէս ի հուղս մրգապահաց[2] բնակեցան յերևելի յայնմիկ կղզւոջ կոչեցեալն Աղթամար, մինչև յաւուրս մեծի արքային Հայոց Գագկայ, որ քաջակորով գիտութեամբ նայեցեալ ի տեղւոյն զբօսանս և ծանուցեալ զնա ապաստան լինել աշխարհի ի հինից թշնամեաց՝ ձեռնարկէ հիմն արկանել զնա ահեղ իմն և զարմանալի հիւացմամբ. հրաման տուեալ բազում արուեստաւորաց և անթիւ մարդկան զհատեալ վէմս ծանունս և դժուարակիրս հոսել ընկենուլ յատակս ծովուն անհնարին [595] խորութեանն. և ժամանակաւ ինչ այսպէս ջան յանձին կալեալ մեծի արքային՝ և յանկարծակի եկն եկաց կանգնեցաւ քարայատակն ամբարտակ կանգունս հինգ ի վերայ բարձրացեալ մկանաց ծովուն, որ մտացն աչօք իբրև ի ցամաքի շարայարեալ տողադրէ զհաստակառոյցն վիմաց կարգս. յորոյ վերայ լար եդեալ ձգէ զպարիսպն շուրջանակի իբր ձիարշաւանօք հինգ. և պարիսպն է հրաշակերտ, ահեղակերպ, բարձրաբերձ լայնանիստ բրգամբք և բարձրացեալ աշտարակօք զարդարեալ, անկիւնաւոր խո-

---

[594] ×) Այլ օր.՝ Հիւրկանու:
[595] ×) Այլ օր.՝ գահոյս: ××) Այլ օր.՝ զօրովք:

ռանանման տախտակաձև յինքեան ունելով գահոյք[x] զբօ-
սանաց, յորում Հանդերձ որդւովք և ազատակոյտ զօրօք[xx]
միշտ ուրախանայր արքայ: Իսկ և զգլուխս պարսպին ածեալ
ի կիրճս դժուարամածս քարանձաւին՝ ի Համբոյրս միմեանց
մերձեցուցանէ. ի շրթունս խորայատակ Հիմանց ծովուն դնէ
դրունս աՀաւորատեսս, ՀաստաՀեղոյսս, բևեռապինդս. որով
և զմասն ինչ ծովուն ի կղզին [596] կոյս Հատանելով՝ Հրա-
շալիս իմն ներգործեաց, բազում նաւաց յօրինեալ խաղաղ և
անքոյթ նաւաՀանգիստ, բարձրագոյն Հրաշակերտեաց քան
զԱղէքսանդրին ի Մակեդովն քաղաքի[3], և որպէս ինձ թուի՝
զանցոյց զարմանալեօք զՇամիրամեան փորուածոյ սենե-
կօքն և զամբարտակաւ գետոյն որ առ ստորոտով[x] լերինն
Վարագայ. զի նորայն գոնեա ի վերայ ցամաքի, իսկ սա ի
մեծ խորոց ծովուս արուեստակեալ՝ ՀարստաՀարէ զամենայն
միտս և զգործս իմաստնոցն առ ի քան զինքն եղելոց:

Եւ այնուՀետև ժողովեալ ի դուռն արքայի իշխանաց և
տերանց, ազատաց և ռամկաց, եպիսկոպոսաց և կրօնաւորա-
ց, զի ամենեքեան օն անդր փութապէս շինուածս և ձեռա-
կերտս Հաստատեսցեն, Հրաման տայցէ, զի լինիցի տեղի
ապաստանի ամենայն Հինից ի թշնամեաց եկելոց. և թագա-
ւորն զթացեալ ոչ արգելու զխնդրեալ պարգևսն. և զկնի
Հնգից ամաց յորմէ Հետէ սկսան շինել՝ պայծառացեալ բար-
ձրաց[597]աւ շինութիւն քաղաքին առաւել քան զառաւել:

Յայնժամ և իւր իսկ արքայի ամենիմաստ Հասողու-
թեամբն Հանդերձ բազում արուեստաւորօք զլար ճարտա-
րութեան ի ձեռն առեալ գծել, միանգամայն և գծագրել
նշանակել առ ստորոտով լերինն, որ է գագաթն կղզոյն,
զտեղիս զբօսացուցանողս[x] վայելչաւորս, ըստ արժանի կայե-
նից արքայական իւրոցն Հանգստեան ձգելով պարսպունս,
յարդարելով զփողոցս և դարս դարս դարաստանաց և գահս
ըստ գաՀից տէրութեանց և բուրաստանս և պարտէզս, բու-

---

[596] x) Ա $(^{l}/_{11})$՝ առ ստորոտաւ:
[597] x) Ա $(^{l}/_{13-14})$՝ զտեղիս սբուսացուցանողս:

*բաստանաց և ծաղկոցաց որոշեալ Հովիտս. զորս վաղվաղակի ածեալ ի կատարումն Հասուցանէ զամենայնն. ևս և ծառատունկ բազում, զոր ոռոգեալ արբուցանենն ի բարեհամ և անսպառ աղբերէն, որ ակնարկելովն խնամողին Աստուծոյ կայ ի մէջ քաղաքին:*

*Եւ քանզի էին ի դրան արքունի գումարեալք արուեստաւորք բազումք, արք պատուաւորք ժողովեալք յամենայն ազգաց յերկրէ, որք ոչ վրիպէին առնել [598] զոր խորհէր արքայ, այլ ըստ Հրամանին վաղվաղակի և գործն առնոյր զկատարումն՝ ումեմն ի նոցանէ ճարտարապետի առն իմաստնոյ և Հանճարեղի Հրամայէ թագաւորն շինել տաճար մի քառանկիւն, խ կանգնաւ ունելով զչափ լայնութեան և երկայնութեան, նմանապէս և ի բարձրութիւնն. որոյ որմոյն լայնութիւնն երիւք մեծաքայլութեամբ չափով ունի զպարզուածսն, գունդ անապակ կրոց և քարի, իբրև զհալուածս[×] կապարի և պղնձոյ ընդ միմեանս խառնեալ. և շինուած տաճարին ի Հիմանց անտի մինչև ցգլուխ նորին ի թուիչս կազմեալ՝ առանց սեան ունի զՀաստատութիւն. և է որ արդարև արժանի զարմանալոյ ի վեր քան զմիտս: Ունի և խորանս կամարակիցս և անկիւնս և շրջապատս գեղապաճոյճս, անթիւ մտաց և անզննելի աչաց. ունի և գումբէթս երկնաՀարթս ոսկեզարդս[××] և լուսաճաճանչս, յոր թէ նայել ոք կամիցի՝ իբր թագաւորի իմն պատիւ[×××] առնելով՝ նախ ի բաց առցէ զխոյր գլխոյն, և ապա տանջե[599]ալ զպարանոցն Հազիւ թէ նշմարել կարիցէ զզանազան դեղոցն կերպագրութիւնս:*

*Եւ է կարգ շինուածոյ տաճարին աՀեղ իմն և զարմանալի, և այնքան բարձրագոյն և անՀաս է մտաց՝ զոր օրինակ թէ իմաստուն ոք այր ընդ մի կարգ խորանի միոյ զբազում ժամս նայեսցի, արտաքս ելեալ ոչինչ յորոց[×] նայեցաւն պատմել ումեք կարասցէ: Վասն զի են ի նմա ոսկեզարդ*

---

[598] ×) Յօրինակսն՝ զՀաւուածս: Ա (¹/₂ₙ)՝ Հալուածս: ××) Այլ օր.՝ ոսկեզօծս: ××) Այլ օր.՝ պատիւս:

[599] ×) Այլ օր.՝ որոց: ××) Այլ օր.՝ զիւրև:

գաՀոյք, յորս բազմեալ երևի արքայ Նազելի ճոխութեամբ, շուրջ զիւրեաւ[xx] ունելով պատանեակս լուսատեսակս, սպասաւորս ուրախութեան, ընդ նմին և դասս գուսանաց և խաղս աղճկանց զարմանալոյ արժանիս. անդ էն և սուսերամերկաց Հոյլք և ըմբշամարտաց պատերազմունք. անդ և դասք առիւծուց և այլոց գազանաց. և անդ երամք Հաւուց զարդարեալք ի պէսպէս պաճուճանս. զոր եթէ զամենայնն որ ի նմա գործք ի թիւ ոք կամիցի արկանել՝ բազում աշխատութեան պէտք են անձինն և լսողաց:

Եւ է փառք տաճարին աՀեղ իմն և զարմանալի. [600] եղեալ են ի նմա դրունք Հատուածոյք մանր յօրինուածով[4] և Հրաշալի գեղգեղմամբ, ի բանալն իւրեանց երկբացիկք են, օղաբերք զովացուցիչք. իսկ Հուպ առ միմեանս գոլով՝ երևին իբրև զմի պատկեր:

Պատմեաց մեզ և Հաւատարիմ ոստիկան մի ի գործավարաց քաղաքին, եթէ եմուտ ի շինուած տաճարին երկաթ լտերս իբրև ՄՌ. և Հաւաստապէս ճշմարտութեամբ նուազեաց զասելն[x], քան թէ առատութեամբն յաւելեաց ի բազումս. իսկ և նիստ փառաց տաճարին յամենայն կողմանց գաւառին ի մէջ քաղաքին երևի իբրև զմեծ մի բլուր. ոչինչ նուազեալ բարձրութեամբ քան զքարանձաւ ծայր կղզոյն:

Պարսպէ անմերձենալի ամրութեամբ և զծայրս ամրոցին, և շինեալ ի նմա շտեմարանս մեծամեծս և Համբարանոցս, միանգամայն և տունս գանձուց և զինուց և ասպազինաց անՀուն բազմութեանց: Այլ եթէ զամենայն զզարդ շինուածոյն, զոսկեզարդ փողոցսն և զգումբէթակապ խորանս[601]յարկսն և զզանազան տեղիս գաՀոյիցն[x], որք առաւել այլակերպութեամբ մի քան զմի գերաՀրաշապէս փայլեն՝ և ըստ արժանեացն մանրամասնաբար գովասանել ոք կամիցի՝ կարծեմ թէ յանՀասութիւն ձկտեալ տատանի, որ և Հասանելոյ չէ կարողութիւն: Բայց մեր զդիպողսն և զպատշաճա-

---

[600] ×) Այլ օր.՝ ասելն:

[601] ×) Յօրինկսն՝ գոՀոյիցն: Ա (¹/₂)՝ գաՀոյիցն:

*ւորսն որքան է կարողութիւն՝ ի լրումն ընձայեցաք գեղեցիկ քոյոցդ ախորժակաց, ո՛վ քաջազգի և տան մեծի արգասաւոր և նախնական մեծ:*

(Թ)

## ՅԱՂԱԳՍ ՇԻՆՈՒԹԵԱՆ ԳԵՐԱՊԱՅԾԱՌ ԵՒ ՊԱՆԾԱԼԻ ՍՈՒՐԲ ԵԿԵՂԵՑԻՈՅՆ ՈՐ ՅԱՂԹԱՄԱՐ ՔԱՂԱՔԻ, ՈՐՈՅ ՆԻՒԹ ՆՊԱՍՏԱՈՐՈՒԹԵԱՆ[xx] ՔԱՐԱՆՑՆ ԲԵՐԱՒ ՅԵՐԿՐԷ ՀԵՌԱՍՏԱՆԷ. ԶՈՐՈՑ ՄԵՔ ԶԻՐՆ ԵՒ ԶՏԵՂԻՆ ՀԱՒԱՍՏԵԱՒ ՅԱՅՏ ԱՐԱՍՑՈՒՔ

*Ի ժամանակս շինութեան հոյակապ և հռչակաւոր և բարձրանշան քաղաքին Աղթամարայ բարձրացոյց փրկիչն մեր Յիսուս զբազուկս օծելոյն իւրոյ Գագկայ, հարստահարել զգազանաբարոյ ազգն Իսմայէլի. զորս կապեաց զձեռանէ իւրմէ հաստահիմն խորհրդովք և պատերազմական ուժեղ արութեամբք, իբրու դանդանաւանաւ[xxx] [602] իւիք զկզակս նոցա ճմլեալ թռչնացուցանէր, սկսեալ ի Մարաց և Պարսից զբոլոր Ատրպատական, մինչև ցԽուժաստան. որում կամէր աւանդէր, և յորոց ոչն կամէր ի բաց կորզէր, զայլս ի վերայ այլոց յարուցանէր, և զհազարս և զբիւրս ի նոցանէն իմաստութեան սրովն սատակէր. իսկ այլոց պատերազմաւ պատահեալ տայր բերանոյ սրոյ և յանխնայ կոտորէր, երբեմն անձամբ և երբեմն ի ձեռն զօրացն:*

*Եւ յառնելն արքայի զայսօսիկ յաճախեաց պատերազմաւ և ի վերայ Աստրեստանի և դաւառս բազումս ամրոցովքն հանդերձ յինքն ձգեալ կորզեաց: Եւ տեսեալ մերձ ի դրունս Աստրեստանի ամրոց մի յիշխանատանն Աղձնեաց ի գեօղն Կոտոմ կոչեցեալ, լինելով սեփհականաբար Զուրարեկն կոչեցեալ ազգի՝ սպառ սպուռ կորուսեալ ջնջէ զազգն, և զշինուածս ամրոցին ի հիմանց տապալեալ՝ զքարինս նորա բարձեալ բերէ ի վերայ մկանաց ծովուն, ընձայելով ի նիւթ*

---

*xx) Այլ օր.՝ սպասաւորութեան: xxx) Այլ օր.՝ դանդանաւանիւք:*

*շինութեան սրբոյ եկեղեցւոյն, կանգնելով փոխանակ բազ- նաձև [603] պղծալից յարկացն զտաճար փառաց: Աստանօր կատարի ասացեալն ի մարգարէէն՝ «որ Հանէ զպատուա- կանն յանարժանէն՝ իբրև զբերան իմ եղիցի»[1], ուր միշտ Հանգչի Հոգին Սուրբ, վերագրելով զմարդիկ յանստուեր լոյսն:*

*Եւ քանզի ճարտարապետ արուեստին էր Մանուէլն, զոր ի վեր անդր ցուցաք, այր[x] լի իմաստութեամբ և զօրաւոր ի գործս իւր՝ Հրաշակերտէ զեկեղեցին զարմանագործ արուես- տիւ. և զոր վերագոյնն ցուցաք կրօնաւորն ձեռն տայ նկա- րագրել զքարինսն ճշգրտագործ նմանաՀանութեամբ, սկսեալ յԱբրաՀամայ[xx] և ի Դաւթէ և մինչև ցտէր մեր Յիսուս Քրիս- տոս, զդասս մարգարէից և առաքելոց յօրինեալ ըստ իւրա- քանչիւր Հանդիսի զարմանագործ տեսլեամբ: Ստեղծագոր- ծեալ ջոկադրէ և ի կարգս եկեղեցւոյն զՀոլովս երէոց և զե- րամս Հաւուց, միանգամայն և զդասս գազանաց, խոզից և առիւծուց, ցլուց և արջոց, ընդդէմ միմեանց զարդարեալս, զկենդանականին նոցա յուշ առնելով զմարտ, որ է յոյժ ըղձալի իմաստնոց, [604] ածեալ զթիկամբք եկեղեցւոյն և շրջապատ պարունակ[x] մի պանձալի մանրամասն Հատուա- ծովք յօրինեալ, կերպագրեալ որթս խաղողաբերս այգեգոր- ծովք և գազանովք և սողնովք Հանդերձ Համակեալք. որոց և կերպարանքն այլ և այլ զանազանութեամբք ըստ իւրա- քանչիւր մասին առբերեն[xx] զտեսակս:*

*Իսկ ի չորից կողմանց ի վերայ գագաթան սրբութեանցն ճշգրտագործեալ զչորից աւետարանչացն պատկերս, որք և արժանաւորապէս իսկ են պսակ ուրախութեան սրբոյ եկե- ղեցւոյ և վերագոյն քան զամենայն սուրբս:*

*Նկարագրեալ է տեառնագրելով և զփրկչական պատկերս, որ վասն մեր զգեցաւ մարմին երևելով մարդ, և է ի կամարս արևմտական խորանին. նմանաՀան ճշգրտութեամբ յօրի-*

---

*[603] x) Յորինակսն՝ այլ: Ա (1/8ա) այր: xx) Այլ օր. յԱբրաՀամէ:*
*[604] x) Այլ օր.՝ բարունակ: xx) Ա (1/8)՝ առբերեն. ուղղ.՝ առբերելի (Նախն. 396) :*

նեալ է ընդդէմ Փրկչին և զփառազարդ պատկեր արքային Գագկայ, որ մեծապարծ հաւատով բարձեալ ունի զեկեղեցին ի վերայ բազկացն, իբրև զսափորն ոսկի լի մանանայիւն և իբրև զտուփ մի ոսկի անուշահոտութեամբ լցեալ, կայ առ[605]աջի տեառն, կերպագրեալ այնպէս, որպէս թէ զթողութիւն խնդրեսցէ մեղաց: Որ թէպէտ և մերս պատմութեանց իցեն բանք՝ սակայն թագաւորն ոչ վրիպի ի խնդրեալ պարգևացն, յուսացեալ առ հանդերձեալ հատուցմունսն:

Դարձեալ և ի հարաւակողմ կուսէ խորանին ի վերայ դրան եկեղեցւոյն յօրինեալ է ի տեղի գահոյից, ի բարձանց ի խոնարհ կամարաձև ատրճանօք զէջսն ունելով, որպէս զի իցէ տեղի աղօթից թագաւորին զուսպ և զերծ ի մարդկանէ, որով ի միտս իւր եկեալ անզբաղապէս ընդ Աստուծոյ խօսեսցի:

Իսկ ի ներքուստ կողմանէ զսրբութիւն սրբութեանցն հրաշալիս իմն յօրինէ նկարապաճոյճ դեղովք, դրամբք արծաթապատօք և լի ոսկեհուռն զարդիւք, ոսկեպատ պատկերօք և ակամբ պատուականօք և մարգարտահիւս զարդիւք և պէսպէս երևելի և պայծառ սպասիւք×, զոր հրաշափառապէս եցոյց մեզ երկրորդ Երուսաղէմ, միանգամայն և դուռն վերին Սիոնի××:

Աստանօր կատարին մարգարէութեանն [606] նուագք, թէ «ուրախ լեր, անապատ ծարաւի»[2], և դարձեալ՝ եթէ «ցնծասցէ երկիր, և ուրախ եղիցին կղզիք բազումք»[3]: Արդարև սա էր երբեմն անապատ ծարաւի, իսկ այժմ քաղաք մեծին Աստուծոյ գետահետեալ յերկուց մշտաբուղխ աղբերաց, ի սրբոյ աւազանէն և յանապական արենէ Որդւոյն Աստուծոյ՝ արբուցանէ զոգւով ծարաւիս:

Իսկ զօր նաւակատեաց սորա դասիւք եպիսկոպոսաց և իշխանաց շքեղացուցանելով տօն մեծ ուրախութեան կատարէ մեծապարծ պարծանօք յիշատակ ազգաց յազգս: Ահա ասացաք որ ինչ յաղագս սրբոյ եկեղեցւոյն:

---

[605] ×) Ա (Լ/8-7ա)՝ սպասուք: ××) Ա (Լ/4-3ա)՝ վերին Սիովնի:

## ՑԱՂԱԳՍ ՄԵԾԻ ՊԱՏԵՐԱԶՄԻՆ ԸՆԴ ԱՌՆՆ ԱՐԱԲԱՑԻՈՑ Ի ԴՐՈՒՆՍ ՄԱՑՐԱՔԱՂԱՔԻՆ ԴՈՒՆԱՑ, ԵՒ ՈՐ ԻՆՉ ԳՈՐԾՔ ՔԱՋՈՒԹԵԱՆ ՄԵԾԻ ԱՐՔԱՑԻՆ ՀԱՅՈՑ ԳԱԳԿԱՑ, ԵՒ ՈՐ ԻՆՉ ՅԱՂԹՈՒԹԵԱՆՆ ԳՈՐԾՔ:

*Եւ որպէս ի վեր անդր պատմեցաք վասն անիշխան լինելոյ երկրին Պարսից, ըստ գրեցելումն թէ «դատաւոր ոչ գոյր Իսրայէլի»*[1]*, և իւրաքանչիւր ոք զիւր միտս հաճէր: Ի սոյն ժամանակս այր մի արաբացի ազգաւ, այր հմուտ պատերազմաց և գործոց զինուորութեան. [607] սա կոկոզավիզ ամբարտաւանութեամբ յինքն հայեցեալ՝ կարծեաց ինքնագլուխ լինել: Ուստի և զօր գումարեալ յանկարծօրէն թևակոխեաց անցանել ընդ Գողթնաստան և ընդ աւանն Նախճաւան, զբռամբ ածեալ և զզօրս Շարուրն կոչեցեալ գաւառի, գայ հասանէ մինչև ցմեծ մայրաքաղաքն Դուին. և վաղվաղակի հարկապահանջս և ոստիկանս առաքեալ յԱյրարատեան գաւառ*[×] *և մինչև ցԱրագածն կոչեցեալ ոտն, որ է բաժին*[××] *կալուածոց Աբասայ որդւոյ Սմբատայ՝ ընդ իւրումն նուաճէ իշխանութեամբ: Եւ քանզի Աբաս ոչ կարողանայր ի դիմի հարկանել բռնացելոյն ի վերայ ինքեան՝ ձայն արկանէ յարքայ ի ձեռն հրեշտակաց և հրովարտակաց, զի եկեալ փրկեսցէ զնա ի հարկապահանջ բռնութեանցն հինից. և արքայի յիշեալ զգութ արեան հարազատութեանն՝ ել գնաց զօրօք բազմօք զհարազատին խնդրել զքէն վրիժուց:*

*Իսկ Աբաս որդին Սմբատայ հպարտացեալ գայ իջանէ ի դաշտն Վաղարշապատ քաղաքի, կամեց[608]եալ յառաջագոյն քան զգալուստն մեծի թագաւորին Հայոց Գագկայ անձինն ինչ ստանալ պարծանս: Իսկ այրն այլազգի քանզի գիտէր զնմանէ, թէ ոչ է հմուտ պատերազմաց՝ ելեալ հասանէ ի վերայ նորա սակաւ զօրօք և հարեալ զնա ի փախուստ*

---

*[607] ×) Այլ օր.՝ կոչեցեալ գաւառն: ××) Այլ օր.՝ որ բաժին:*

դարձուցանէ: Մաչեալ ի սուր սուսերի ի զօրացն նորա արս իբրև Ն, և առեալ զկապուտ զօրացն և զընակչաց երկրին, և հրձիգ արարեալ զաշխարհն ամենայն՝ դառնայ ի քաղաքն մեծաւ յաղթութեամբ և բազում աւարաւ: Եւ Աբաս այնուհետև փախստեայ եղեալ մազապուր անկանի յաշխարհն Վրաց:

Եւ արքայի լուեալ զգոյժ աղաղակիս այսորիկ՝ վաղվաղակի հասանէ ի դուռն Դունայ յեզր գետոյն Երասխայ, հանդէպ վիրապին սրբոյ, յորմէ ելեալ մեծն սուրբն Գրիգորիոս լուսաւորեաց զՀայաստան աշխարհս: Իսկ այլազգին յորժամ ետես զբանակ արքային մեծի սփռեալ առ լերամբն Գինոյ կոչեցեալ բլեր, որ արդարև անուն բլրակին մարգարէաբար, իբրու յանապակ [609] գինոյ զմայլեալ ուրախ արար զարքայ յիւրումն սահմանեալ վայրի. որ թէպէտ և ի բարձանց առեալ զշնորհ յաղթութեանն, բարեխօսութեամբ սուրբ Լուսաւորչին[x], որոյ և իւր իսկ տօնախմբիւր յիշատակ յամսեանն սահմի, որ օր Ժ էր ամսոյն. սակայն և բլուրն շնորհս ունելով՝ ոչ ունայնանայ ի գովեստից աստի պատմութեանցս. և այնուհետև առն ամբարշտի զօր գումարեալ արս իբրև ԺԳՌ՝ դիմէ ի վերայ արքայի, գունակ այլոց ոմանց զնա կարծելով. և մինչդեռ արեգակն յերրորդ ժամուն արփիաթևէր զկամարն երկնի, և դեռ ընթեռնոյր Աւետարանն սուրբ՝ գայ ոմն ի սուրհանդակաց և ասէ, «ընդէ՞ր ձիգ և յաւէժ աղօթէ տէր իմ արքայ, և ահա ճակատ այլազգեացն մերձեցաւ ի բանակ սրբութեան տեառն»: Եւ արքայ այնուհետև կայիւն[xx] սրտիւ և հեզահամբոյր քաջութեամբ ոչ զաչս և ոչ զբարբառ առ ազդողն ամբառնայ, այլ կատարեալ զսովորական աղօթսն, իմացեալ զիմաստնոյն թէ, «տեառն է պատերազմ»[2], և թէ «տէր [610] ամբարտաւանից հակառակ կայ, և տայ զշնորհսն խոնարհացն»[3]:

Յայնժամ արքայ վառեալ ի զէն և ի զարդ արիական

---

[609] x) Այլ օր.՝ սրբոյն Գրիգորի Լուսաւորչին: xx) Ա ($^{2}/_{9}$)՝ կայիւն փխ. կայուն (Նախն 78) :

[610] x) Այլ օր.՝ բլրին գինւոյ:

քաջութեան, առեալ զզօրսն գնդին Հաւատացելոց, Հանդարտ յառաջ մատուցեալ՝ գունդս գունդս պատշաճաբար յօրինէ զիւրոյ ճակատուն. և ապա այնուհետև սուսերամերկացն հոյլք զմիմեամբք խառնեցան, և ճայթմունք և թնդիւնք և փայլատակմունք իբրև յամպոց ի վայր թափեալ երևեցան, և ահագին օրն սկսաւ լինել: Յայնժամ ի վերին օգնականութենէն զօրացեալ լինէր արքայ իւրականն զօրօք, մանաւանդ զի և սուրբ հայրապետն Հայոց մեծն Եղիսէ, ելեալ ի կատարս բլերն Գինոյ× հանդերձ քահանայական դասիւքն, հանգոյն սրբոյն Ներսէսի[1] անխոնարհելի ունելով զձեռս, մինչև պարտեցաւ երկրորդն Ամաղէկ. ուստի և գունդ զգնդիւ անցեալ զօրացն Հայոց՝ գայ պատահէ արքայ զմիջոցաւ ռազմին այլազգեաց, յորում էին արք հետևակք ըմբշամարտ զինակրաց իբրև չորք հազարք. որոց ի [611] դիմի հարեալ արքայի, իբրև կայծակն ընդ եղէգն հարեալ՝ այնպէս խորտակեաց զռազմաց զօրուն այլազգեաց. և այնուհետև բազմութիւն դիակացն յերկիր անկելոցն էին թանձրացեալք ի վերայ երեսաց դաշտին իբրև զօրայս անդւոյ լիոյ յաւուրս հնձոց. ուստի և ընդ սրախողխողսն և ընդ գետավէժսն սատակեցան արք իբրև ԸՌ, և զբազումս ի նոցանէ ձերբակալս արարեալ՝ զոմանս շղթայակապս յղէ յանառն Դարիւնս: Իսկ արանց երկերիւր աւելի կամ պակաս զարիւնս անձանցն պարգևս նոցունց շնորհէ. և հրամայէ արձակել, զի երթեալ ի քաղաքն պատմեսցեն զոր տեսինն:

Եւ ինքն արքայ աճապարեալ անցանէ ընդ գետն Երասխ, կամելով հրձիգ առնել զքաղաքն ծագէ ի ծագ, և զաշխարհն շուրջանակի, մինչև ծերք քաղաքին× անկեալ առ ոտս նորա խնդրեն զխաղաղութիւն, տալով հարկս և պատանդս. զոր առեալ արքայի դառնայ խաղաղութեամբ յամուրն Դարիւնս, բարձեալ զզէն և զասպազէն [612] առնաձիոյ զօրացն այլազգեաց անչափ բազմութեամբ, և ի բազում աւարառուաց իւրոցն զօրաց ոչ ինչ տուժէ արքայ յումեքէ, այլ հրամայէ հանդէպ երեսաց տանել զինչ և շահեցաւ:

---

[611] ×) Յայլ օր. չիք՝ քաղաքին:

(ԺԱ)

## ՅԱՐՁԱԿՈՒՄՆ ԴԷԼՄԿԱՑՆ[1] Ի ՔԱՂԱՔՆ ՀԱԴԱՄԿԵՐՏ ԵՒ Ի ԳԱՒԱՌՆ ԱՂԲԱԳ, ԵՒ ՈՐ ԻՆՉ ՅԱՂԹՈՒԹԻՒՆ ՋՕՐԱՑՆ ՀԱՅՈՑ Ի ՇՆՈՐՀԱՑՆ ԱՍՏՈՒԾՈՅ:

*Յաւուրսն յայնոսիկ մասն ինչ ի զօրաց Դէլմկաց դիմեալ, անցանել կամելով յաշխարհն Ասորեստանի. և հասեալ ի քաղաքն Հադամակերտ և ի գաւառն Աղբագ, գերփեալ զինչս և գերեալ զկանայս և զտղայս, որչափ և ձեռն հասանէ: Եւ զայն լուեալ արքային՝ հրաման տայ զօրաց իւրոց հետամուտ լինել զկնի նոցա քաջի առնևձիոյ. որոց առեալ զհրաման յարքունուստ՝ վաղագոյն աճապարեալ ժամանեն նոցա յանհոգս լինելով յաշխարհին Անձևացեաց. և ի դիմի հարեալ քաջամարտիկ նիզակախուռն Դէլմկացն զօրաց՝ կոխան լինին իբրև զխոխ դաշտաց յոտս երիվարացն Հայոց, յորոց վերայ սուր եդեալ կո[613]տորեցին արս իբրև Ս. և առեալ զբանակս նոցա յաւարի, փրկեալ և զգերեալսն՝ դարձան յիւրաքանչիւր տեղիս մեծաւ յաղթութեամբ:*

(ԺԲ)

## ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ ԿԵՐՊԱԳՐՈՒԹԵԱՆ ԱՆՁԻՆ ԵՒ ՓԱՌԱՑ ՄԵԾԻ ԱՐՔԱՅԻՆ ՀԱՅՈՑ ԳԱԳԿԱՅ:

*Եւ քանզի նախածանօթ և յառաջգիտութեամբ Աստուծոյ, գիտելով զնա թէ այնպէս լինելոց է, անդստին յորովայնէ մօր իւրոյ ելից զնա իմաստութեամբ հոգւովն: Վասն որոյ և շնորհեաց նմա պատկեր լուսազարդ և հասակ փառաց անհամեմատ ի մէջ ամենայն մսեղեաց բանական ազգի. հարթ և ուղիղ հասակաւ, վայելուչ և պայծառ երեսօք. հեր գլխոյ նորա թխակերպ, գանգուրագեղ գիսաւորութեամբ ուղեբեկ[1]*

---

*[613] ×) Այլ օր.՝ սպիտափառ: ××) Այլ օր.՝ յօնիցն: ×××) Ա ($^{2}$/ռ)՝ վկայեալք ուղղ.՝ զկայեալք (Նախն. 75) : ×××××) Այլ օր.՝ ծաղկեալ երևեալ:*

*ջոկացեալ ի վերայ սպետափառ[×] ճակատուն յոյժ խուռնախիտ թանձրութեամբ. մրազարդ կամարաձև կցուացք յունիցն[××], և բիբք և արտևանունք Հանդերձ պտղովք վկայեալք[×××], իբրև զշուշան ի Հովիտս ծաղկեալ[××××] ծաւալին Հրաշազարդ յօրինմամբ: Ունչք երկայնագոյնք և վայելչաւորք, լսելիք դիւրալուրք և դիւրա[614]Հաւանք ի բարիս և պայծառք լուսաՀրաշ նմանեալ գունով: Շրթունք նորա իբրև զլար կարմիր, ատամունք նորա Հուպ առ միմեանս, զտեալք յաղտոյ: Տէգք մօրուաց նորա զօրէն մանուշակի ծաղկեալք ի վերայ գունագեղ այտից՝ ի կերպս զուարթնոց տեսողացն զնա ցուցանէր: Եւ յիրաւի այսպիսիք նմա չնորՀազարդ փառաց պարգևք ի վերուստ. վասն զի նա ըստ նմանութեանն Յովսիայ[2] թագաւորեալ նորոյ Իսրայէլի՝ վերագոյն քան զնա լրացոյց զկարգս եկեղեցւոյ սրբոյ: Ուստի և յոյժ սիրելի էր ինձ յայսմ ժամանակի առնուլ ի Հնդկայինն աշխարՀէ և ի Տպազ քաղաքէ, մանաւանդ թէ ի քարկոփչացն, և յԱղէքսասարացւոց և Թէքէացւոց վաճառուց զոսկետեսակն տպազիովն, և չարամանել ի թագի նորա[3] յաւուրս թագի զբօսանաց[×], մանաւանդ յորժամ ի փրկական պասեք տէրունական տօնիցն իբրև զփեսայ յառագաստէ ծագիւր ըստ նմանութեանն արուսեկին. ուստի և ի գունագոյն ականցն Հիւսելոց մարգարտախուռն զա[615]րդուցն ի գլուխս և ի լանջս և ի գաւակս երիվարին խրոխտացելոյ ճաճանչք լուսոյ ճառագայթէին. այլ և ի Հօսանս Հրաձգութեանցն առաջի նորա և ի կայթմունս թնդականացն և ի Հնչմունս փողոցն առ Հասարակ դղրդեալ բիւր բիւրոց մարդկան, ամենայն ակն զնա բաղձայր տեսանել, ուստի և ամենայն Հոգիք աղաղակէին «Տէր, կեցո զթագաւորն և լուր մեզ». և արդարև արժանի էր օծեալն Աստուծոյ և բարձրն քան զամենայն թագաւորս երկրի՝ այսպիսի և ի վեր քան զսոյնս գովութեանց:*

---

*[614] ×) Ա (2/10-9ա)՝ թագի սբուսանաց:*
*[615] ×) Ա (2/1ա)՝ պարգևիչ:*

Վասն զի նա խաղաղութեան և շինութեան առիթ: Նա աւազակաց խանձող և հերքիչ: Նա իրաւանց և դատաստանաց արդարով կշռիչ: Նա ամբարտաւանից բարձրաթռիչ թևոցն հարթող: Նա ոլջացելոց բազմաց ի բարձրաբերձ ամբոցաց ստորիջոյց: Նա ապստամբաց անզերծանելի ծուղակ: Նա գաղտնի ննէնգութեանց թշնամեաց նախատեսող և կարթ կորզիչ: Նա սիրելեաց և կամարարաց իւրոց անծախ պարգև[×] [616] այլ և անուշահոտ բուրաստան, լի համապայծառ ծաղկովք: Նա տան իւրում կանաչ տունկ ոսկեսաղարթ, լի աստուածայորդոր սիրով և բերկրաբեր աւետիք: Նա որդւոց իւրոց կրթարան բարեաց և մշտաբուղխ աղբիւր իմաստից: Նա ամենայն արուեստականաց ղռնբաց և անվրէպ քանոն: Նա բռնաւորաց սպառնալեաց բքաբեր, և ահարկու հողմոցն ընդդիմակաց լեառն բարձր և անդրդուելի վէմ: Նա խարդախող և կարծեցուցիչ հրովարտակաց և պատգամաց այլազգեաց յղելոց առ նա հուր ծախիչ: Նա ի սիրտս բռնաւորաց Բաբելացւոց, Մարաց և Պարսից, Յունաց և բարբարոսաց հրացեալ և յարաշարժ բևեռ: Նա հարցափորձող[×] իմաստնոց խորք ծովու կամ բարձրութիւնք երկնից որ անհասն է: Նա յոսկեզարդ գահոյսն ուրախութեանց բազմեալ նազելի ճոխութեամբ իբրև զառիւծ զօրաւոր հաւատովք աճեցեալ ի փառս տեառն: Նա ի սենեակս ոսկեզարդս երեկօթիցն քաղցրանինջ քնով [617] ղուղեալ իբրև զվիշապ, և ահ հզօր զօրութեան նորա շրջապատեալ զբոլոր Հայաստանեօքս՝ իբրև զպարիսպ պղնձի անմերձենալի պահէր յերկիւղէ և ի գաղտաձիգ նետից թշնամեաց: Նա ի վերայ դրացեաց իւրոց և իւրոց հնազանդելոց հովանի ամրապահեստ, և արագ...[×]:

[616] ×) Ա $(^{2}/_{8})$՝ հարցափորձաւղ:

[617] ×) Ա $(^{1}/_{11\text{-}12})$ ունի այստեղ գրչի նմուշ՝ աւաղ յայս ճառես թուղթ է անկեալ, վերջքն չկայ:

# (ՅԱՒԵԼՈՒԱԾ)

## ՎԱՍՆ ԱՆՑԻՑՆ ԱՆՑԵԼՈՑՆ ԸՆԴ ՀԱՅՍ, ԵՒ ՎԱՍՆ ԱՍՏՈՒԱԾԱՍԷՐ ԻՇԽԱՆԻՆ ԱԲԴԼՄՍԷՀԻ ԵՒ ՈՐԴԻՈՑ[xx] ԻՒՐՈՑ:

*Յետ վախճանելոյ արքային[xxx] Գագկայ Արծրունւոյ որդւոյն Դերանկի և բառնալոյ իշխանութեանն Հայոց, կատարեցաւ ասացեալն ի մարգարէէն Երեմիայ ի վերայ Հայաստան աշխարհիս, ևս առաւել ի գաւառն Վասպուրականի[xxxx], եթէ «ժողովուրդք իմ անտերունչք շրջեսցուք»[xxxxx1], և տիրեցին ի վերայ մեր ազգն Հագարու, և յամենայն ժամ ասպատակելով յառի և յաւարի հարկանէին զամենայն քրիստոնեայս, [618] ի սով, ի սուր և ի գերութիւն մատնելով զմեծամեծս և զփոքունս. զի չիք ուստեք յոյս և ակնկալութիւն, և դեռ ևս ի սակաւուց մնացեալ էին ի պակասաւոր իշխանացն Հայոց, և բռամբ ունէին զամուրս բերդից և քարանձաւաց: Ապա թագաւորեցին ի վերայ մեր մեղք մեր[x] և հարցն մերոց, և մատնեաց զմեզ Տէր և զմնացեալսն ի ձեռս անօրէն արծաթակուրծ եղեռնաթիւր և մեղսասէր զարմին Ելիմայ, որ են ազգք Թուրքաց. և տիրեցին աշխարհի ի ծովէն արևելից մինչև ցծովն արևմտից, և ոչ մնաց ի նոցանէ մինչև ցքարանձաւ մի որ ոչ մատնեաց Աստուած ի ձեռս նոցա. և նոքա ունելով զբնութիւն արիւնարբու գազանի. զի են ազգք ահաւոր տեսլեամբ, զի տեսիլ դիմաց նոցա զարհուրեցուցանէ զտեսողսն և ահաբեկ առնէ. և բնակութիւն նոցա ի լերինս և ի դաշտս և յանապատս, որպէս զվայրենի գազանաց. և են չաղղակերք որպէս զգազանս. ոչ պատուեն զմեծամեծս, ոչ խնայեն յալիս և ի հարկիսս ծերոցն, ոչ ողորմին երիտասարդին և տղայոյն, ոչ խնայեն ի մանկու-*

---

*xx) Ա (Լ/յ)՝ որդեաց: xxx) Այլ օր.՝ արքային Հայոց: xxx) Յայլ օր չիք՝ ի վերայ Հայաստան աշխարհիս ևս առաւել ի գաւառն Վասպուրականի: xxxxx) Այլ օր.՝ շրջեսցին:*

[618] *x) Այլ օր.՝ ի վերայ մեղքն մեր:*

*թիւն ումեք. ազգ չար և դառնացող, ազգ որ ոչ ուղղեաց զսիրտ իւր և ոչ հաստատեաց առ Աստուած զհոգի իւր: Զայս [619] ազգ ետ Աստուած և մեղք մեր՝ թագաւոր աշխարհիս Հայոց, ըստ ասացելոց սրբոց մարգարէից Անանիանցն[2], եթէ «մատնեցեր զմեզ ի ձեռս թագաւորի անօրինի և չարի քան զամենայն երկիր»[3]:*

*Յայնմ ժամանակի այր ոմն երեւելի տոհմակից գտեալ արքային Սենէքերիմայ մեծի, զոր մարգարէն Եսայի պատմէ վասն նորա[4], և սա նոյն անուանակից հաւուն իւրոյ Սենէքերիմ անուամբ, էր և եղբայր նորա[5] մեծ իշխանն Դերանիկ[×]: Սոքա ի ձեռն օգնականութեանն Աստուծոյ և ի խնամս տեսչութեան Հոգւոյն սրբոյ տիրեցին հայրենի բնիկ գաւառացն իւրեանց Վասպուրականի, և ի դիմի հարեալ այլազգեացն՝ ոչ տային թոյլ աւերել զաշխարհն[××]. զի ունէին զանմատոյց ամրոցն զՇամիրամաշէնն, զաւանն Վան և զերկնապիշ և զպարանոցատանջ զանառիկ բերդն զԱմիւկ, առ ոչինչ համարելով զյարձակումն այլազգեացն յարաժամ. այլ հանապազօր ի կրունկն դարձուցանէր օգնականութիւնն Աստուծոյ:*

*Ի սոցա ժամանակի երեւեցան [620] գանձք աստուածային նշանին, յորոյ վերայ եհեղ զարիւն իւր միածին որդին Աստուծոյ. և էր համբարեալ ի լերինն Վարագայ, ի գագաթն քարանձաւին ի ձեռն սուրբ որոջին և թագաւորազն կուսին Հռիփսիմիայ, յայտնեաց Աստուած, որպէս և յաւուրսն Կոստանդիանոսի արքայի և Կիւրղի հայրապետին. զնոյն և գաւառն Վասպուրական ի լեառն Վարագայ ցոլացեալ նշան տէրունական[×] խաչին՝ յերրորդ ժամու թռուցեալ ի գագաթանէ քարանձաւին՝ բնակեցաւ ի նոյն լերինն ի հովիտ մի, ուր են աղբիւրք բարեհամք. և սուրբ թագաւորն Սենեքերիմ[××] շինեաց ի նոյն տեղւոջ եկեղեցիս մեծածախս, և ի ստորոտ լերինն շինեաց զխոյակապ և զհռչակաւոր մայրա-*

---

*[619] ×) Այլ օր.՝ Դերենիկ: ××) Այլ օր.՝ զաշխարհն իւրեանց:*
*[620] ×) Ա (/$_{16-17}$)՝ տէրունեան: ××) Ա ($^{2}/_{2-3}$)՝ թագատրին Սենեքերիմայ:*

քաղաք մենաստանացն զՎարագ, և կարգեաց ի նմա արս Հաւատարիմս և զարդարեաց բազում կրօնաւորօք և երկնագումար դասիւք սուրբ քահանայիւք. և կարգեաց նոցա ռոճիկս, և կէին ի խաղաղութեան ի գաւառն[xx] Վասպուրականի. ամենայն աշխարհաց անկելոց և գերելոց տեղի ապաստանի ի նա գտանիւր:

Եւ վասն մեղաց մեր[621]ոց յարձակեցան ի վերայ մեր ազգն Ելիմացւոց, զոր վերագոյնն ասացաք. և հանապազօր նեղէին և մաշէին ի սուր սուսերի զազգն քրիստոնէից: Ապա զմտաւ ածեալ արքային Սենեքերիմայ զտէրունեան հրամանն որ ասէ, «եթէ հալածեսցեն զձեզ յայսմ քաղաքէ՝ փախիջիք ի միւսն»[6]. արդ վասն զի ոչ գոյր այլ ուստեք օգնականութիւն բաց ի տեառնէ, և օգնականութիւն տեառն հասեալ էր ի թիկունս արքային Յունաց, և յայնժամ ունէր զկայսերական իշխանութիւնն զաստուածապահ քաղաքին զԿոստանդնուպօլսի[x], այր ոմն աստուածասէր և բարեպաշտ Վասիլ անուն կոչեցեալ, և ոչ էր ձեռնհաս թագաւորն Յունաց ի վերայ աշխարհին Հայոց, այլ ինքեանք կամաւ ունէին զտէրութիւնս գաւառաց իւրաքանչիւր ոք, և ոչ ժուժէին յարձակման այլազգեաց: Յայնժամ իբրև որդի առ հայր դիմեցին մնացորդք տանն Թորգոմայ առ թագաւորն Յունաց. և նոքա լցեալ աստուածային սիրովն՝ գթացան յաղաչանս որդւոցն, և կոչեցեալ առ իւրեանս յիւրաքանչիւր գաւառաց՝ [622] և տային պարգևս, և կարգեին ի դուռն արքունի և տային փոխանակ քաղաքացն քաղաքս մեծամեծս և փոխանակ բերդիցն բերդս անմատոյցս և գաւառս և գեօղս և ագարակս և սուրբ մենաստանս. և փոխեցին զհայրենի տունսն իւրեանց հայկազունքն Արծրունիքն Սենեքերիմ ի թուին հայկազնեան տումարին ՆՀ, և դէմ եդեալ գնացին յաշխարհն Յունաց ԺԴՌ արամբք, թող զկանայս և զմանկտիս. և արկան ընդ լծով[x] ծառայութեանն

---

[621] ×) Այլ օր.՝ զԿոստանդնուպօլսոյ:
[622] ×) Ա ($^{Ա}/_{2ռ}$)՝ արկան զլծով:

Հոռոմոց. նոյնպէս և Բագրատունին Գագիկ որդի Յովհաննիսի արքայի, և նա ևս փոխեալ զհայրենիսն իւր ի նոյն Թուաբերութեանն ՆԻ՝ և չոգաւ ի Հոռոմս. և նոքա տիրեցին արևելեան գաւառին Հայոց, մեծ աւանին Վանի և գաւառին Վասպուրականի և Թագաւորանիստ քաղաքին Անւոյ և աշխարհին Հայոց:

Յորժամ եհաս համբաւ Թագաւորացն երթալոյ ի Հայոց և տիրելն Հոռոմոց ի բանակն անօրէն և արիւնարբու գազանամիտ ազգին Ելիմայ՝ ապա ձիարշաւս արարեալ ասպատակայարձակ շառ[623]աչմամբ իբրև զարծուի յերամս հաւուց ցոլացեալ արքայն Ելիմացւոց որ կոչիւր սուլտան անուամբ Տուղրուփ՝ եկն եհաս ի մայրաքաղաքն Անի, և պաշարեաց զնա և առեալ մաշեաց ի սուր սուսերի. որ ի հեղմանէ արեանն ոռոգանէր երկիրն, իբրև ի ժամանակս հեղեղաց յարուցելոց. որ ասէին բազումք ի տեսողացն, թէ զողայս դիացիկս թաւալ տալով արեանն ի գետն հասուցանէր, որ անցանէր ընդ դուռն քաղաքին: Եւ նովին ոճիւ այր ոմն ներքինի ժանդ և ապարասան և փոյթ յարբանեկութիւն սատանայի, արիւնարբու և չաղղակեր, Սրահանգ անուն՝ եկեալ էառ յաւարի զգաւառն Վասպուրական, և եկն եկաց մինչև ցաւանն Վան, և զնա պաշարեալ տառապեցոյց ի տառապանս խիստ. և զնա ևս մաշեաց ի սուր սուսերի, և զբնակութիւնսն այրեաց հրով. նոյնպէս և զԱրճէշ քաղաք[x] Գնունեաց գաւառին: Եւ ոչ մնաց տեղի ապաստանի քրիստոնէից, բայց միայն յանմատոյց ամրոցն Ամիւկ և յաստուածաբնակ կղզւոյն Աղթամար. որ վայելչացեալ ունին զգեղ վայելչու[624]թեանն ամրացեալ ալեօք և պարսպեալ խրոխտացեալ կոհակօք: Ի սոսա կատարեցաւ բան հոգերգողին Դաւթայ, որ ասէ, թէ «ուրախ եղիցին կղզիք և ամենայն բնակեալքն[x] ի նմա»[7]. և հրճուեալ բերկրանօք ըստ հրամանին Սողոմոնի, իբրև զաքաղաղ ի մէջ մարեաց[xx] սիգալով

---

[623] x) Այլ օր.՝ զԱրջէշ գաւառն.
[624] x) Այլ օր.՝ բնակեալն որ: xx) I (347), II (308), III (478)՝ մայրեաց: Ա ($^1/_{10}$)՝ մարեաց (տե՛ս նաև՝ Նախն., 292 մարեաց) :

*և իբրև զնոխազ առաջի հօտից կամ իբրև զթագաւոր ի մէջ զօրաց[xx] նոյնպէս և սոքա երևելի և փառաւոր գտեալ ի մէջ աշխարհի:*

*Ընտրեաց տէր տեսուչ և վերակացու այսմ աստուածապահ և անմատոյց ամրոցացս զայր ումն տոհմակից արքային Սենեքերիմայ ի գաւառն Ամկոյ յազգէն Արծրունեաց անուամբ Աբդլմսէհ կոչեցեալ, մնացեալ իբրև զկայծակն ի փայլատականց հրոյ. և պահեալ զնա ամենահզօր[xxx] աջոյն Աստուծոյ յայսմ ծովածուփ վտանգաւոր ալէկոծեալ նաւաբեկութենէս, և որպէս ընտրեաց տէր զՆոյ, և ի նմանէ աճեցին ամենայն ազգք և բազմացան, և որպէս ընտրեաց Աստուած զԱբրահամ և օրհնեաց զնա և զծնունդս որովայնի նորա և, որպէս [625] ընտրեաց[xxxx] տէր զմեծն Դաւիթ և օրհնեաց զպտուղս որովայնի նորա և զօրացոյց զնա ի զօրութիւն անպարտելի՝ նոյնպէս և զսա ընտրեաց Աստուած զամենիմաստն զպտուկուրապաղատն զԱբդլմսէհ, զորդի մեծ իշխանին և սուրբ մարտիրոսին Թոռնկայ, որ յաւուր մեծի տօնի ծննդեան տեառն և մկրտութեանն՝ արժանի եղև առնուլ զպսակ մարտիրոսութեան բազում արամբք ընտրելովք ի գաւառին Մոկաց ի գեօղն Ատիճանս[x]: Եւ որդի նորա զօրացեալ ի շնորհատուր պարգևացն Աստուծոյ և լցեալ իմաստութեամբ և Հոգւովն Սրբով. և հեղ տէր ի վերայ նորա զեօթնապատիկ շնորհս, Հոգի գիտութեան և աստուածպաշտութեան, Հոգի զօրութեան և իմաստութեան, Հոգի խորհրդոյ և հանճարոյ, և լցոյց զնա Հոգի երկիւղին Աստուծոյ. և գերագոյն գտեալ քան զամենայն ազգս իւր. հեզ, խոնարհ, առատ, ողորմած, աղօթասէր, սրբասէր, այրեաց ակնածու, որբոց խնամածու, որ ոչ երդուաւ նենգութեամբ ընդ ընկերի իւրում և ոչ գտաւ ստութիւն ի շրթունս նորա. և հանապազ խոկայր յօրէնս տեառն ի տուէ և ի գիշերի: Էր և անձամբ վայելուչ, մեծաշուք և [626] բարձրահասակ, գանգրահեր և*

---

*[625] x) այլ օր.՝ Ատիճանս*

*[626] x) Ա ($^{2}/_{6-7}$)՝ սգաւն և սգաստ: xx) Այլ օր.՝ սպասաւորէր սրբոց: xxx) Ա ($^{2}/_{16}$)՝ գեղապանծ:*

*գեղեցկատեսիլ, քաղցրախօս և անուշաբարբառ իբրև զտատրակ. առեալ իւր ամուսին զդուստր Գրիգորի արևելեան դուկի, և զթոռն մեծաշուք և տիեզերակալ իշխանաց իշխանին Ալուզի, որ էր տէր և իշխեցող գաւառացն Ծաղկոտան և Կոգովտի և մեծ աւանին Անգեղտանն:*

*Իսկ սուրբ որոշն Քրիստոսի անուամբ Մարիամ կոչեցեալ, որ և տիկնաց տիկին էր ազգաւ. սա սնեալ սրբութեամբ և աստուածպաշտութեամբ և երկիւղիւ տեառն և ըստ անուանակոչութեանն իւրում միացեալ ի սէրն Աստուծոյ և գերագոյն գտեալ քան զամենայն սուրբս, և առ ամենեսեան գթած, ողորմաց, հաստատուն ի հաւատս, զգօն և զգաստ[x], ոչինչ պակասութիւն ունելով ի սրբոց թագուհեացն. աղօթասէր և աղքատասէր, և հանապազ սպասաւորէր սուրբ ուխտեացն[xx], որ էին ի սուրբ կաթուղիկէն, յաստուածազարդ և գեղապանծոյճ սուրբ եկեղեցւոջն և գեղապանծ[xxx] անուանակոչութեան սուրբ Խաչին. զի զնա ընտրեաց Աստուած և հաճեցաւ բնակիլ ի նմա, և եդ ի պահեստի զգանձս աստուածայինս զաթոռ մերոյ [627] սուրբ Լուսաւորչին զՊարթևին Գրիգորի, և զսեղանն սրբարար աստուածային խորհրդոյն և զգօտի սուրբ միջոյն և զգաւազան ամենազօր աջոյն, որ հովուէր[x] զժողովուրդն տեառն, գերագոյն գտեալ քան զգաւազանսն երկոսինս մեծ մարգարէիցն Մովսէսի և Ահարոնի, և զհողաթափս աչխատասէր ոտիցն սուրբ կուսին Հռոփսիմեայ[xx] և զփողապատն ներկեալ սուրբ արեամբն, և զբազուկ սուրբ մարտիրոսին[xxx] տղային Աբդլմսէհի, ազգակցի և անուանակցի պռտուկուրապաղատին և զայլ ևս նշխարս մարտիրոսացն. և զնշան տէրունական խաչին, յորոյ վերայ էր կաթուած արեան կենարարին, ընդելուզեալ ոսկով և մարգարտով. զոր ետ տէր ի ձեռն սուրբ և երջանիկ հայրապետին արհի եպիսկոպոսի[xxxx] տեառն Դաւթի, որ դեռ ևս կոչի սուրբ Նշան Ապարանից: Զի էր տէրն Դաւիթ ա-*

---

[627] x) Ա (Լ/Է) `հովէր: xx) Այլ օր.՝ սուրբ կուսին սրբոյն Հռիփսիմեայ: xxx) Այլ օր.՝ և զբազուկս սուրբ և մարտիրոս: xxxx) Այլ օր.՝ երջանիկ արհի եպիսկոպոսին և հայրապետին:

զգակից պատուկուրապաղատին, և էին սոքա ազգք սուրբ և ընտրեալք ի տեառնէ, զոր յառաջագոյն ընտրեալ Հոգւոյն Սրբոյ՝ տեսուչ և վերակացու լինել տանն Վասպուրականի, զմեծ իշխանն զանուանեալն Խեդենեկ, զազգակից ար-ք[628]ային[×] Սենէքերիմայ և թագաւորազն ցեղիցն Արծրունեաց։ Նա ծնանի զԹոռնիկ իշխան, այր հզօր և պատերազմող և քաջ ի գործ արութեան, և զեղբարսն իւր զսուրբ և զամենագով և զբարերջանիկ զհովիւսն քաջ, զտէր Դաւիթ և զտէր Ստեփաննոս, զմեծ պսակքն եկեղեցւոյ, և զանուանակիցն մերոյ Լուսաւորչին զտէր Գրիգոր. որ և փայլէին ի մէջ տիեզերաց, որպէս զարեգակն ի մէջ աստեղաց։ Եւ ի Թոռնկայ ծնանի մեծ իշխանն Թադէոս, այր ընտիր ի գործ պատերազմի. որ օգնականութեամբն Աստուծոյ և քաջութեամբն իւրեանց ոչ տային թոյլ ական հատանել յարաժամ յարձակման թշնամեաց ի գաւառացն իւրեանց։ Եւ Թոռնիկ որդի Թադէոսի, յորմէ ծնաւ սուրբ և բարեպաշտն Աբդլմսեհ, որ սա իւրով աստուածիմաստ գիտութեամբ առաւելեալ քան զամենայն հարս իւր. նոքա ի գործ պատերազմի արի և քաջ, իսկ սա լի իմաստութեամբ և հանճարով վարէր զկեանս իւր խաղաղութեամբ[××]։ Զի յաւուրս նորա կատարեցաւ հրաման տէրունական բանին որ ասէ, «յարիցէ ազգ յազգի վերայ և թագաւորութիւն ի թագ[629]աւորութեան վերայ, և ի տեղիս տեղիս սովք և սրածութիւնք և սասանութիւնք»[9], «և նշան յերկինս յարեգակն և ի լուսին և յաստեղս, և յերկրի տագնապ հեթանոսաց»[10]։ Ի սորա ժամանակս ելին արիական ազգն Ֆռանգաց, և ազատեցին զսուրբ քաղաքն Երուսաղէմ ի ձեռաց այլազգեացն, և զայլ ևս բազում աշխարհս ի թուին ՇԽԶ։

Եւ տագնապէր երկիրս արևելեայց ի ձեռաց անօրինաց, յարձակմանէ յարաժամ այլազգեաց, որ իբրև զյորձանս

---

[627-628] ×) Այլ օր.՝ մեծի արքային։ ××) Այլ օր.՝ աստուածապաշտութեամբ և խաղաղութեամբ

[629] ×) Յայլ օր. չիք՝ սաստիկս։ ××) Ա ($^{2}/_{6}$)՝ ի ձմերանի։ ×××) Յայլ օր.՝ չիք՝ արքայն։

Հեղեղաց յարձակէին ընդ երեսս երկրի, կամ իբրև զամպս սաստիկս[×] չփոթեալս ի ճայթմանէ օդոց, և ի փայլատակմանց հրոյ ի ժամս մթացեալ գիշերոյ: Եւ եղև փախուստ մեր ի ձմերայնի[××] և յաւուր շաբաթու, ըստ տէրունական հրամանին. և ոչ գտանէր յոյս և ակնկալութիւն քրիստոնէից, բայց միայն յաստուածասէր և յընտրեալ թագաւորազն արքայն[×××] պռտուկուրապաղատն, և յազգակցէ մեծ և քաջ նահատակէն մամիկոնէին Վարդանայ. զի աղօթիւք և խնդրուածովք սրբոց հարցն և ազգակցացն զօրացոյց տէր զօծեալն իւր: Զի վար[630]եաց զկեանս իւր խաղաղութեամբ, և ընդ ամենայն ումեք զխաղաղութիւն հնարէր, զի տայր ի պէտս հարկացն զկեանս և զստացուածս իւր, և ոչ դատէր զիւրսն առնուլ ինչ ի պէտս հարկապահանջողաց, ոչ սաստիւ վարէր զիշխանութիւնն իւր, և ոչ ահիւ և սպառնալեօք, և ոչ տոկոսիւք. այլ[×] զամենեսեան խնամէր և սփոփէր և գթայր որպէս հայր ի վերայ որդւոց. զի ուսեալ էր ի վաղուց հետէ որ ասէ, թէ «եղերուք գթածք, որպէս և հայրն ձեր երկնաւոր գթած է»[11]: Սորա ծնան ուստերք Է և դստերք Ե: Ի սորա ծննդոցս ընտրեաց տէր զմի ումն, որում անուն էր Դաւիթ, նմանօղ[××] եղեալ Յեսսէ[×××] Բեդղահեմացւոյն[12], որ ընտրեաց տէր յորդւոցն նորա զԴաւիթ. և օրհնեաց զնա անանցանելի օրհնութեամբ մինչև ցյաւիտեանս յաւիտենից:

Սա նմանեալ մեծին Դաւթի և վերագոյն գտեալ քան զնա, զի բարձրացուցանել կամեցաւ տէր զեղջիւր եկեղեցւոյ իւրոյ[××××]: Սա սնեալ ի տանն տէրունեան ընդ հովանեաւ աստուածային գանձուցն, զոր վերագոյնն ասացաք, որք [631] էին ի պահեստի յաստուածաբնակ կղզւոջն Աղթամար: Սա նմանեալ Սամուէլի մարգարէին, սնեալ ի տաճարին տեառն և փոխանորդ եղեալ քահանայապետին Հեղեայ. և սա վերագոյն գտեալ քան զնա, ի մանկութենէ առեալ զլուծ խո-

---

[630] ×) Այլ օր. ահիւ և տագնապաւ և սպառնալեօք, այլ: ××) Ա ($^{2}/_{6}$)՝ նմանող: ×××) Այլ օր.՝ Յեսսեայ: ××××) Այլ օր.՝ զեղջիւր օծելոյն իւրոյ եկեղեցւոյ:

[631] ×) Այլ օր.՝ Աղթամարայ:

նարհութեան՝ պահօք և աղօթիւք և խստամբեր ճգնութեամբ, արի և քաջ ժուժկալութեամբ ընդդէմ բանսարկուին պատերազմեալ, վառեալ զինու և ասպազինու, քաղցիւ և ծարաւով և տքնութեամբ յաղթեաց ամենահնար թշնամւոյն. ըստ ասացելոյ առաքելական հրամանին երկնաքաղաքացի առնն Պօղոսի, եթէ «ոչ է մեզ մարտ ընդ մարմնոյ և ընդ արեան, այլ ընդ իշխանութիւնս և ընդ պետութիւնս և ընդ աշխարհակալս խաւարիս այսորիկ և ընդ այսս չարութեան որ ի ներքոյ երկնից»[13]:

Իսկ սա հանեալ ի գլուխ զհանդէս նահատակութեան և կուսութեան, զի որք կուսութեամբ վարեցին զկեանս իւրեանց՝ գերագոյն գտան քան զհրեշտակս: Իսկ սա առ ոչինչ համարելով զաշխարհս և զփառս սորա և զվայելչութիւն [632] կենցաղոյս, զի հանապազօր լուեալ ի սրբոց մարգարէից՝ զնմանութիւն խոտոյ ունելով մարդոյն և ծաղկի թօթափելոյ[14] և նանրի նմանիլ անցաւորի և առօրեայ վարձ վարձկանի և ունայնութեանց՝ վարժեաց սա զկեանս իւր յամենայն գործս առաքինութեան ըստ տէրունական բանին, որ իւրոց սրբոցն հրամայէր ասելով, «ոչ եթէ դուք ընտրեցիք զիս, այլ ես ընտրեցի զձեզ»[15]:

Սա նմանեալ Մելքիսեդեկի[×], յառաջ ընտրեալ ի Հոգւոյն զգալ կենարարին և բաշխել զմարմինն և զարիւն իւր[××], ընթացեալ ընդ առաջ նահապետին Աբրահամու՝ մինչ գայր ի պատերազմէն[16]: Սա նմանեալ Յեսուայ որդւոյ Նաւեայ[17]. զի նա կոյս սուրբ և արի, որ իւրով գայիսոնաւն հովուէր զժողովուրդն տեառն յերկրին Աւետեաց: Սա նմանեալ Ահարոնի վակասակիր պատմուճանաւն, ԺԲ ակամբք ընդելուզեալք մարգարտով, ըստ թուոյ սուրբ առաքելոցն, և օրինակ ԺԲ ազգաց ի Քրիստոս հաւատացելոց[18]: Սա նմանեալ Եղիայի աստուածատես մարգարէին, որ [633] յորովայնէ մօր իւրոյ ի հրեշտակաց հրով կերակրէր, և ի ձեռն կուսութեանն

---

[632] ×) Այլ օր.՝ Մելքիսեդեկի քահանային: ××) Այլ օր.՝ իւր սուրբ:
[633] ×) Ա ($^{2}/_{4-5}$)՝ սա նմանող: ××) Այլ օր.՝ յաթոռ հօր մերոյ սրբոյն Գրիգորի Լուսաւորչին:

փակեաց զերկինս զերիս ամս և զվեց ամիս, և ոչ տեղաց յերկիր ցօղ, մինչև բանիւ բերանոյ իւրոյ[19]: Սա նմանեալ մեծի մարգարէին Յովհաննու որդւոյն Զաքարիայի, որ ի հրեշտակապետէն լուեալ զաւետիսն վասն ծննդեանն Յովհաննու, որ ձեռնադրեաց զբանն Աստուած ի Յորդանան[20]:

Սա նմանեալ Յովհաննու որդւոյն Զեբեդեայ, որ ի ձեռն կուսութեանն անուանեցաւ որդի որոտման, որ և ի բարձանց որոտաց զբանն Աստուած, որ և անկաւ գլանջօքն տեառն և մաքրեցաւ որպէս զոսկի ի հուր[21]: Սա նմանօղ[×] եղեալ սոցա սրբութեամբ և կուսութեամբ, որ և տուեալ սմա շնորհք յամենառատ պարգևատուէն Աստուծոյ, առեալ զպատիւ քահանայութեան և զեպիսկոպոսութեան և զարհի եպիսկոպոսութեան և զկաթողիկոսութեան. և նստոյց զնա տէր յաթոռ մերոյ սուրբ Լուսաւորչին սրբոյն Գրիգորի[××] և խառնեաց զնա ի կարգ սուրբ հարցն առաջնոց, սրբոցն Ռստակիսի, Վրթանիսի, Յուսկանն, Գրի[634]գորիսի, Ներսիսի[×] և Սահակայ. զի յառաջ ցուցեալ Հոգւոյն Սրբոյ տեսլեամբ սրբոյն Սահակայ զանցս աղետից Հայաստան աշխարհիս, անկանիլ ի տէրութենէ և ծառայել ազգաց[××] օտարաց և լինել հակառակ ճշմարտութեանն, որպէս զՍուրմակ և զՇմուէլ, որ հակառակ էին ընդդէմ աստուածատուր շնորհացն, և դարձեալ նորոգիլ տեսութեան քարտէզին, որ ունէին ոսկեգիրն և կարմրադեղն զսրբոցն վերափոխումնն, և սևադեղն և կարգ և կէսն և ջնջագիրն զհակառակացն ճշմարտութեան. իսկ միւս այլ կարգին ոսկեգիրն[×××] նորոգիլ, որ ունէր օրինակ զմերոյ սուրբ հայրապետին զաստուածապատիւ տեառն Դաւթայ[××××] ընտրելոյն տեառն և օծելոյն և նստելոյն յաթոռ սուրբ Լուսաւորչին մերոյ: Զի սուրբքն առաջինքն նմանողք եղեն հարցն իւրեանց. և սա ևս նմանեալ հարցն իւրոց սուրբ հայրապետացն և մարտիրոսացն,

---

[634] ×) Այլ օր.՝ Գրիգորի, Դանիէլի, Ներսիսի: ××) Ա ($^{1}/_{8}$)՝ ազատաց. ուղղ. ազգաց (Նախն., 150) : ×××) II (314) , III (486) չիք՝ ոսկեգիրն: Ա ($^{2}/_{2-3}$) ՝, I (353)՝ այլ կարգին ոսկեգիրն նորոգիլ: ××××) Ա($^{2}/_{3}$) , I (353)՝ Դաւթի:

զի աղօթիւք նոցա և խնդրուածովք և հեզմամբ արեան սրբոց մարտիրոսացն Վարդանայ և իւրոցն, Թոռնկայ և իւրոցն, ազգակցաց սուրբ հայրապետին Դաւթի[635]՝ զօրացոյց զսա լոէր առաւել քան զառաւել:

Իսկ միւս ևս այլ ի ծննդոց սորա կրտսերագոյն յեղբարցն անուամբ Ստեփաննոս կոչեցեալ ըստ հայրենի ազգին, և ըստ մայրենի անուանակոչութեանն՝ սրբասնեալ մայրն իւր տիկնաց տիկին՝ կոչեաց զնա յանուն հաւուն իւրոյ Ալուզ, և ըստ յառաջադիմութեանն իւրոյ, ի սուրբ թագաւորացն պատիւ և անուն մեծութեան ընկալեալ[x]: Իսկ սա լցեալ զպակասութիւն հայրենի և մայրենի հաւուցն՝ գտաւ երևելի յամենայն յազգն. և որպէս օրհնեաց Իսահակ զՅակոբ, և տէր լուաւ նմա և օրհնեաց տէր զՅակոբ ի բերանոյ հօր նորա[22], զի օրհնութիւնք հարց հաստատեն զորդիս՝ նոյնպէս և մեծ իշխանն Ալուզ օրհնեցաւ յԱստուծոյ և ի հօրէն իւրմէ Աբդլմսեհէ. զի էր այր աստուածասէր և բարեպաշտ և հնազանդ ծնողաց իւրոց. զի ուսեալ էր ի պատուիրանացն Աստուծոյ, եթէ «պատուեա՛ զհայր քո և զմայր»[23], և լուեալ յայլում տեղւոջ, եթէ «որդի անհնազանդ ի կորուստ եղիցի»[24]. և հնազանդեալ նա արտաքոյ ամենայն փորձութեան: [636] Զսա հաստատեաց տէր յաթոռ հօր իւրոյ, որպէս զՍողոմոն յաթոռ հօր իւրոյ Դաւթի, և որպէս յաւուրս նորա արար տէր խաղաղութիւն թագաւորութեան նորա՝ նոյնպէս և յիշխանութեան սորա: Եւ մեծ և ամենիմաստ Աբդլմսեհ կուրապաղատն բաժանեաց զհայրենիսն իւր և ետ ի ձեռն որդւոյ իւրոյ Ալուզի զերկնանման և զանառիկ ամրոցն զԱմիւկ, զի նա կարող էր ի դիմի ունել անօրէն ազգացն Իսմայէլացւոց. և նա առաւելեալ իմաստութեամբ քան զամենայն զհարս իւր:

Իսկ ամեներևելի և աստուածասէր կուրապաղատն Աբդլմսեհ վարեաց զկեանս իւր խաղաղութեամբ, և ետես զորդիս իւր փառաւորս և ամենազօրս, զոմն հոգևոր և մարմնաւոր

---

[635] ×) Այլ օր.՝ ընկալաւ:

փարթամութեամբ ճոխացեալ և յաջորդեալ յաթոռ Հայրապետութեանն, լցեալ աստուածային պատուիրանապահութեամբ և բևեռեալ յերկիւղն տեառն, և զմիւսն ետես տէր և իշխան և պայծառացեալ փառօք և բարեբախտեալ և յաջողաձեռն եղեալ յամենայն գործս, և զայլ ևս զուստերս և զ[637]դստերս ետես ի փառս և ի պատիւս: Ետես և զորդիս որդւոց իւրոց և երանեցաւ ի տեառնէ. և ինքն բարիոք ծերութեամբ ննջեաց առ հարս իւր և թաղեցաւ ի նոյն աստուածաբնակ կղզւոջն Աղթամար, ի դուռն սուրբ Խաչին, արժանի եղեալ հանապազոր առնուլ ի տեառնէ վերստին զազատութիւն որդեգրութեանն ի ձեռն սուրբ և անմահ պատարագին հարազատին իւրոյ տեառն Դաւթի Հայոց կաթողիկոսի, զոր մատուցանէր անխափան ի բարեխօսութիւն աստուածասէր ծնօղաց իւրոց. և էր թուականն Հայոց, մինչ փոխեցաւ արքայն Աբղլմսեհ՝ ՇՀ. և սրբասնեալ ամուսինն իւր կեցեալ յետ կատարման առնն իւրոյ ամս Բ՝ և նա բարիոք հանգստութեամբ փոխեցաւ ի Քրիստոս և յաւելաւ առ հարս իւր և եդաւ ի նոյն տապանի. և զորդիս իւր յանձն արարեալ շնորհացն Աստուծոյ:

Յետ կատարման սոցա յաշխարհէս՝ սկսան առաւել քան զառաւել շնչել հողմն հիւսիսային դառնաշունչ օդովք սառնամանիւք և պակասեցուցանել յերկրէ զբոյս դալարոյ. և կատարեց[638]աւ հրաման տէրունեան առակին, թէ «իջին անձրևք, յարեան գետք, շնչեցին հողմք»[25]. և ոչ կարացին խախտել զմեծ վէմն հաւատոյ, զպայծառացեալն փառօք զիշխանն Ալուզ, զի մնաց միայնացեալ ի մէջ Հայաստան աշխարհիս, իբրև զնաւ ի մէջ մրրկեալ ալեաց ծովու, ոչ ունելով օգնականութիւն յումեքէ, ոչ ի թագաւորաց և ոչ յիշխանաց և ոչ ի մեծամեծաց և ոչ ի հարցն, ունայնացեալ ի ստացուածոց և թափուր մնացեալ յամենայն ընչից: Եւ զաւերեալ պարիսպն և զշէնսն, զոր յառաջագունիցն անփոյթ էին արարեալ՝ սա վերստին նորոգեաց բազում աշխատութեամբ: Եւ զի աւուրք չարութեան հասին ի վերայ երկրի, զի կատարեցաւ [639] ասացեալն ի տեառնէ, եթէ «եղիցին աւուրքն այնոքիկ նեղութեան, որպիսիք ոչ եղեն երբէք այնպէս»[26]. բայց սորա ի թիկունս հասեալ շնորհս և իմաս-

տութիւն ի վերին օգնականութենէն, որպէս արքային Եզեկիայի[27], և դարձոյց զժամն երեկոյացեալ ի հասարակօրն և կենդանացաւ յօգնականութենէն Աստուծոյ՝ և սա կենդանացաւ ի շնորհացն Աստուծոյ և լցաւ իմաստութեամբ, և պէսպէս հնարիւք անցուցանէր զկեանս իւր և հաշտեցուցանէր ընդ իւր զանհաշտ թշնամին զազգն Ելիմացւոց. և ի նոցանէ առնոյր պարգևս և մեծութիւն և փառաւոր և երևելի լինէր յաչս անհաւատիցն իւրով բազմիմաստ գիտութեամբն: Ոչ խնայելով յինչս և ի ստացուածս իւր, այլ զուարթամիտ սրտիւ տայր զքրտունս իւր վասն փրկութեան քրիստոնէից, զոր տալով ի հարկս այլազգեաց, զօր կարգելով հեծեալս և տալով նոցա ռոճիկս՝ առնէր խաղաղութիւն ամենեցուն, ըստ այնմ եթէ «խնդրեա զխաղաղութիւն և երթ զհետ նորա»[28]: Նմանեալ մեծ նահապետին Նոյի Ալուզն, և տապանին՝ ամրոցն իւր. զի նա ունէր առ իւր զընտիրս երէոցն և այլ կենդանեաց, և սա ունէր ընդ իւր սեպուհս, զազատս և զորդիս ազատաց, զմեծամեծաց և զնախարարաց յամենայն գաւառաց. և փայլէր ի մէջ տիեզերաց իւրով ազատազունդ հեծելովքն, որպէս լուսին բոլորեալ ի մէջ կամարի, կամ իբրև զարեգակն յաւուրս ամարայնոյ, տալով և նմա յԱստուծոյ զլուսածաղիկ տղայն, զշառ[640]աւիղն լուսոյ, զանուանակից հաւուն իւրոյ Խեղենիկ. որ գեղով վայելչութեամբ իւրով յաչս ամենեցուն հաճոյ և սիրելի թուէր. զի էր և մեծ իշխանն հայր նորա Ալուզ գեղեցիկ տեսլեամբ և բարձր հասակաւ և կարող զօրութեամբ:

Զսա[×] մեզ պարծանք պարծանաց ցուցեալ միածին որդին Աստուծոյ և տուեալ սմա շնորհս ըստ հայրենի նախնեացն իւրոց զԱրծրունեացն. և զօրացաւ սա զօրութեամբ անպարտելի, ըստ տուեցելոյ նմա յԱստուծոյ զանմատոյց ամրոցն Ամիւկ. և նա իւրով ամենիմաստ գիտութեամբն ընդ ամենայն ումեք զխաղաղութիւն հնարէր, զի թերևս խաղաղասցի կեանք իւր և իւրոցն ի խռովութենէ վրդովման ալեացն ծփելոց:

Ի սորա խաղաղութեան ժամանակի չփոթեալ ամենայն աշխարհս, եւ առաւել գաւառն Վասպուրականի ոչ խաղա-

---

[640] ×) Այլ օր.՝ զայս: ××) Այլ օր.՝ աջոյն:

ղանայր, այլ ևս քան զևս նեղէր ի տագնապս տարակուսի, և սա և զամրոցն իւր պահեալ աջին[xx] Աստուծոյ: Եւ որպէս Յովսէփն այն կերակրեաց զաշխարհն ամենայն ի սովին Եգիպտ[641]ացւոց՝ նոյնպէս և սա եղև պատճառ շինութեան տանն Վասպուրականի: Նա սովելոց հաց. նա փախուցելոց պատսպարան. նա գերելոց գերեդարձ և մաքրիչ զամենայն արտօսր յամենայն երեսաց. նա ամենայն տեսողաց բաղձալի և անտեսից ցանկալի. նորա անուն բարեհռչակեալ ի ծագաց մինչ ի ծագս երկրի և յամենայն լեզուաց գովեալ. նա հաստատութիւն հաւատոց և պսակ պարծանաց սուրբ եկեղեցւոյ և մայր ամենայն աստուածպաշտութեանց. նա և յաղօթս և ի խնդրուածս պաղատանաց առաւել քան զանձինն՝ զաշխարհի խնդրելով փրկութիւն, անզբաղապէս լինելով ի մէջ ժողովրդեանն որպէս մի ի հեզոց. նա գողոց և աւազակաց հերքիչ և ամենայն անօրէնութեան հալածիչ. նա և քըրտամբք երեսաց իւրոց շատանայր և վաստակաւ ձեռաց իւրոց:

Նա ստացաւ զմատեանս Թովմայի զպատմագիրս այս և ետ նորոգել վերստին, յիշատակ իւր [642] և բարի ծնողաց իւրոց և աստուածատուր պտղոյ որովայնի[x] իւրոյ Խեղենկին, զի ի պտղոյ արդարութեան բուսանի ծառ բարեաց:

Եւ նա լուսատու ծաղկով և պտղովն ցանկալի ամենեցուն լինէր, զի վայելչութեամբ գեղով իւրով նմանեալ արուսեկին, ծագելով ի ժամ առաւօտուն. կամ իբրև զվարդ Անուշահոտ գունակ գունակ գեղով ցուցեալ զգոյնս իւրեանց ի ժամանակս գարնանայինսն:

Որոյ յիշատակ իւր օրհնութեամբ եղիցի, և աղօթք սրբոց ի վերայ նորա եկեսցէ[xx]. ամէն:

* *

*

---

[642] x) Այլ օր.՝ նորոգել յիշատակ իւր և ծնողաց իւրոց և աստուածպըտղոյ յորովայնի:
xx) Այլ օր. յաւելու՝ Հօր և Որդոյ և Հոգւոյն Սրբոյն:

## ՑԻՇԱՏԱԿԱՐԱՆ I

*Փառք եռահիւսակ զուգակշիռ եռաչափեան համագոյ սուրբ Երրորդութեանն և մի աստուածութեանն[xx], որ ըստ անբաւ մարդասիրութեանն և առատ բարերարութեամբն իւրով ետ զօրութիւն տկար և ողորմելի և եղկելի մեղսամած անձինս հասանել յաւարտ սորա: Գոհութիւն և անդադար փառաբանութիւն հանդերձ երկրպագութեամբ, այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն:*

*Շնորհօք ամենակալին Աստուծոյ Հօր և միածնին Յիսուսի Քրիստոսի և Սուրբ Հոգւոյն ճշմարտի աստանօր անյանգ ելեալ աւարտեցաւ գեղեցկա[643]յարմար Պատմութիւնս այս[1], զոր արարեալ ստուգաբանութեամբ անյաղթ և գիտնական վարդապետին Թովմայի, սկսեալ ի յԱդամայ մինչև ցՆոյ, և անտի եկն աստիճանաւ վերուստ ի վայր մի առ մի, և բազում աշխատանօք ճշգրտաբար եկն եհաս ի յազգն Արծրունեաց, և մի ըստ միոջէ շարակարգեալ զազգն և զիրն և զթիւն և զպատճառս նոցա, և թէ ո՛րպէս բազում ջանք և աշխատութիւն կրեալ նոցա հանդերձ պատերազմաւ ընդդէմ այլազգեաց՝ և բարձին զչարութիւն նոցա ի բազում տեղեաց, որչափ և կարողութիւն նոցա եհաս: Եւս առաւել աստուածապսակ և բարեպաշտ և ամենիմաստ թագաւորն Հայոց Գագիկ, որ իմաստութեամբ և ուղղափառ վարուքն իւրովք և կամօքն Աստուծոյ տիրեաց բազում աշխարհաց, զոր կայ յիշատակեալ ի սմա, և խաղաղութեամբ պահեաց զամենայն աւուրս կենաց իւրոց ի հինից թշնամեաց, և եղև առիթ շինութեան եկեղեցեաց ևս առաւել գերահռչակ և սքանչելագործ սուրբ եկեղեցւոյս սուրբ Խաչիս Աղթամարայ. ընդ որոյ հովանեաւ շարագրեցաւ Պատմութիւնս այս ի թուականութեանս [644] Հայոց յեօթն հարիւրերորդի յիսներորդի երկրորդի, և յաշխարհակալ թագաւորութեանն Ղազանի, հրամանաւ և ծախիւք աստուածապատիւ և երջանիկ*

---

*[644] x) Այլ օր.՝ նախնեօքն: xx) Այլ օր.՝ աստուածարեալ: xxx) Այլ օր.՝ չիք՝ ի:*

երիցս երանեալ ամենիմաստ Հայրապետիս Հայոց տեառն Զաքարիայի, որ է յոյժ բարի և առատամիտ և աղքատասէր և աստուածային ձրիւքն բարգաւաճեալ, և ի խնդրոյ աստուածարեալ գիտնական և արդիւնական վարդապետի, միանգամայն և արհիական աստիճանի արժանացելոյ տեառն Ստեփաննոսի, որ է ակն արևելեան և աթոռակալ մեծի Սիւնեաց տանն: Եւ եթէ նախնականօքն[x] քննեսցուք զնա՝ ոչ ոք է յիշխանացն և յիշխեցելոց արևելից կողմանցն բարձրագոյն քան զնա, զի ամենեցուն քաջայայտ է ազգքն և նախնիքն նորա. և նա այնպէս է ի մէջ նոցա փառաւորագոյն և պայծառ՝ որպէս զարեգակն ի մէջ աստեղաց: Եւ նա վասն սիրոյն աստուածային[xx] խնդրեաց զպատմութիւնս ի մերոյ աստուածընկալ և սրբասէր և աթոռակալ սուրբ Լուսաւորչին ի[xxx] տեառն Զաքարիայէ. իսկ սա մեծաւ ջանիւ ետ գծագրել զսա յաղագս խնդրոյ նորա: Եւս առ[645]աւել կամեցող եղեալ այսմ գործոյ ամենիմաստ և բարեմիտ, հեզ և խոնարհն, հարազատ եղբայր տեառն Զաքարիայի Ամիրգուրգին, զոր տէր Աստուած զնոսա ընդ երկայն աւուրս արասցէ, անփորձ պահելով յամենայն որոգայթից թշնամեաց, յերևելեաց և յաներևութից, հոգւով և մարմնով զամենայն աւուրս կենաց իւրեանց. ամէն:

Եւ ես ամենամեղս և անարժանս և անյիշելիս ի կարգս գրչաց և կրօնաւորաց, Դանիէլ անուն, ըստ իմում տկարութեանս յանձն առի գրել զսա, ի դուռն մեծ և պանծալի սուրբ Խաչիս Աղթամարայ, զոր վերագոյնն յիշեցաք. և դարձեալ յերեսանկեալ աղաչեմ զբարի ընթերցողսդ և անմեղադրութիւն խնդրեմ վասն սխալանաց գրոցս, եթէ աւելի կամ պակաս գտանիցի ի սմա, եթէ կէտ, եթէ տուն և եթէ ստոր և եթէ յայլ ինչ բառ, ի Խէ կամ ի Հոյ. զի գիտնականքն քաջ գիտեն, որ ի հին գրեանք այսպիսեացս ոչ ինչ փոյթ է արարած . և ես անհմուտ գոլ սոցա՝ զոր ինչ լսեալ[x] էաք յեկեղեցական գրոց ի բառ[646]իցս յայսցանէ՝ զնոյն

---

[645] ×) Այլ օր.՝ լուեալ:

*գրեցաք, և զոր արտաքոյ սոցա էր՝ ոչ գիտելով թէ ո՛րպէս էր. և ի ձէնջ խնդրեմ, զի ըստ աստուածասէր կամաց ձերոց՝ միայն զԱստուած ողորմին շնորհէք մեզ և ծնօղաց մերոց, զի և դուք գտջիք զողորմութիւն յԱստուծոյ յաւուրն աներեկ գալստեան նորա: Եւ ինքն եղիցի օրհնեալ, գովեալ և բարեբանեալ յամենայն արարածոց յիմանալեացն և ի զգալեացս այժմ և հանապազ յաւիտեանս յաւիտենից. ամէն:*

*Դարձեալ կրկին աղաչեմ և զուսուցիչն իմ զՍիմէօն պատուական քահանայն, որ ի բազում արուեստից իւրոց զսակաւ գիրս մեզ ուսոյց՝ և զնա յիշել ի տէր սրտի մտօք և զծնողսն նորա: Եւ Քրիստոսի և Աստուծոյ մերոյ փառք յաւիտեանս. ամէն[2]:*

## ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆ II

*[647] Յետ այսր ամենայնի այսպէս[x] եղելոցս և գրելոցս, զայս ծանուցանեմք ձեզ, ո՛վ սիրելիք որդիք և հաւատարիմ հարազատ եղբարք: Այր մի երևեալ և աստուածային փառօք զարդարեալ, ազատ և յազատ ծնողաց, սնեալ սրբութեամբ և արդարութեամբ և հասեալ յիմաստութիւն աստուածեղէն սուրբ կտակարանաց, ուղղափառ հաւատովք և քրիստոսադաւան խոստովանութեամբ, որոյ անուն պարօն Սեֆեդին Արքայուն ճանաչի. սա իբրև յԱստուծոյ կոչմանէն յառաջ մատուցեալ յաստուածաբնակ և յանառիկ կղզիս Աղթամար, որ է աթոռ սրբոյն Գրիգորի Հայոց Լուսաւորչին և բնակարան գերապայծառ և հռչակաւոր սուրբ Խաչիս. զսա յոյժ սիրեաց Խեդենեկ Արքայուն իբրև յիւրմէ ծնեալ որդի, և ետ զդուստր իւր սորա ի կնութիւն և յօրինաւոր ամուսնութիւն և ետ սորա վարձք[xx] և բաժինք զկէսն Աղթամարայ. զոր յետ սակաւ ժամանակաց, ի ծերանալ Խեդենեկին և ի չքաւորութեան անձինն[xxx] իւրոյ՝ յետոյ դարձեալ ծախեաց զկէսն այլ վերստին պարօն[xxxx] Սեֆեդնին. և առեալ զգինն բազում ոս-*

---

*[647] x) Ա ($^{1}/_{7}$)՝ չիք՝ այսպէս: xx) Ա ($^{2}/_{3}$) ՝վարձանք: xxx) Ա ($^{2}/_{7}$)՝ անձին: xxxx) Ա ($^{2}/_{9, 21}$)՝ պարոն:*

կիս ի պէտս մարմնաւոր պիտոյից իւրոց: Եւ յետ սակաւ աւուրց ետ տէր Աստուած զպտուղ յորովայնի նորա, զծաղկեալ և զբարի զաւակն զտէր Ստեփաննոս, զոր իբրև հասեալ ի յուսումն և ի մանկութեան հասակի՝ ետ ձեռնադրել զնա յաթոռ հայրապետութեան սրբոյն Գրիգորի. զոր իբրև կացեալ ամս Խ, վերափոխի յաշխարհէս տարաժամ կենօք և սակաւ աւուրբք, և թողեալ զուգ անմխիթար հօր իւրոյ պարոն Սեֆեդինին:

Այլ որ գթածն է և ողորմածն [648] Աստուածն ամենեցուն՝ հայեցաւ ի ջերմեռանդ սրտի սորա ցաւս և յարտասուս, ետ նմա զաւակք օրհնեալք յԱստուծոյ զբարի և զհաճոյացեալն[x] Աստուծոյ, եւ զհարազատ եղբարքն զհեզ և զհանդարտ զԱմիր Գուրգէն[xx] և զտղայն իմաստուն զԶաքարիայ:

Եւ յորժամ եհաս ժամ պարոն Սեֆեդինին գնալ զճանապարհս հարց իւրոց և փոխիլ յաշխարհէս՝ սա ոչ ժամանեաց իւրովք ձեռօք հաստատել զտէր Զաքարիայն յաթոռ եղբօր իւրոյ տեառն Ստեփաննոսին: Ապա տուեալ լինի յուսում աստուածեղէն սուրբ գրոցն և հասու լեալ հին և նոր կտակարանացն. և ոչ զոք ունէր զօրաւիգ և օգնական իւր՝ բայց միայն զհարազատն իւր զԱմիր Գուրգէն, զհայր և զհայրագլուխ, և զպարոն Կուռճբէկն և զպարոն Նուրադինն զհօր եղբարքն իւր: Սոքա կամօքն Աստուծոյ ժողովեալք ի միասին, կոչումն արարեալ սուրբ եպիսկոպոսաց, վարդապետաց և բազում կրօնաւորաց, և աղօթս արարեալ ի միասին՝ օրհնեցին և ձեռնադրեցին զտէր Զաքարիայն յաթոռ հայրապետութեան հօր եղբօր[xxx] իւրոյ տեառն Ստեփաննոսի, և եղև ուրախութիւն մեծ և խնդութիւն յաթոռս մեր աստուածաբնակ սուրբ Խաչս Աղթամարայ: Եւ սա իբրև զվէմ անխախտելի և իբրև զպարիսպ երկաթի և որպէս զդուռն պղնձի, կացեալ ընդդէմ այլասեռից[xxxx] չար ախոյեանից: Եւ սա եղև

---

[648] x) Ա ($^{1}/_{5}$)՝ զբարի և զհաճոյացեալն: I (363) , II (321) , III (498) չիք՝ զբարի: xx)Ա($^{1}/_{7-8}$ և ամենուրեք) ՝Ամիրգաւրգին: xxx)Ա($^{2}/_{9-10}$)՝ Հայրապետութեան եղբոր իւրոյ: xxxx) Ա ($^{2}/_{19}$)՝ ելասեռից:

սիրող շինութեան և բազում ամարաթից, և աստուածային հոգւովն լցեալ՝ շինեաց յաշխարհն Վասպուրական ի կղզին որ Լիմն կոչի՝ զգեղեցիկ և լուսազգեաց գումբայթաձև տաճար սրբոյն Գէորգեայ զօրավ[649]արին, և բազում սպասիւք զարդարեաց, և տուն աղօթից շինեաց և զտեղիս բնակութեան և դարպասս, և բազում կրօնաւորս կարգեաց և հաստատեաց ի դուռն սուրբ Գէորգեայ զօրավարի տաճարին×. զոր աղօթիւք նոցա Քրիստոս Աստուած մեզ ողորմեսցի. ամէն:

Դարձեալ ի յաթոռ հայրապետութեան իւրոյ ի կղզիս Աղթամար ի դուռն սուրբ Խաչիս շինեաց գեղեցիկ և մեծանիստ տեղեաւք ի թիկունս սուրբ Խաչին զժամատունն մեծ յաւուրս ձմերայնոյ: Իսկ ի կողմն արևմտից զժամաբակն ամարայնոյ մեծանիստ կամարակապ ձևօք կրակապ և սրբագործ, բերեալ զքարինս նորա յաշխարհէն Խլաթայ բազում աշխատանօք ի վերայ անդնդային ծովու: Եւ ետ գծագրել յիշատակ հոգւոյ իւրոյ գիրք որ կոչի Տօնական. վասն զի կայ ի նմա տօնք տէրունականաց×× սուրբ առաքելոց և մարգարէից, հայրապետաց և վարդապետաց, զօրավարաց և կուսանաց. զոր տէր Աստուած Յիսուս Քրիստոս աղօթիւք և բարեխօսութեամբ սոցա ողորմեսցի տեառն Զաքարիային և հարազատ եղբօրն իւրոյ պարօն Գուրգին և զաւակի նորա Սահմադնի տարաժամ հանգուցեալոյն և ազգայնոցն ամենեցուն. ամէն:

Եւ դարձեալ վերնատունս բազումս բնակութիւն××× ամարայնոյ շինեալ գեղեցիկս և վայելուչս ի վերայ դարպասին, զոր մեծ պարօնն Սեֆեդին էր շինեալ յաղագս զաւակին իւրոյ տէր Ստեփաննոսին. և այլ բազում չէնս և անչէնս հաստատեալ հաւատով և յուսով: Սա ի վերին խնամոցն և ի տեսչութենէն մտախորհ եղեալ ի միտս իւր և խորհուրդ բարի [650] ի սիրոյ իւր արկեալ, թէ «յետ մահուան իմոյ և

---

[649] ×) Ա ($^1/_{7-8}$)՝ ի դուռն սուրբ տաճարին Գեորգեայ զաւրավարին:
××) Այլ օր.՝ տէրունական ×××) Ա ($^2/_{16}$)՝ բնակութիւնս:

[650] ×) Յայլ օր. չիք՝ իսկ սա: ××) Այլ օր. յաւելու՝ թշնամեացն: ×××)

ելանելոյ աշխարհէս ո՞վ մատիցէ յառաջ Հայրապետութեանս աթոռոյս մերոյ, եթէ ոչ ի յազգականաց մերոց և ի զաւակաց». յայնժամ յառաջ մատուցեալ զհոգևոր որդին իւր զսքանչելատես և զիմաստուն տղայն զտէր Դաւիթ, զորդի եղբօր իւրոյ Հարազատի պարոն Գուրգոյ: Եւ բազում եպիսկոպոսիւք, կրօնաւորօք և քահանայիւք և բազում ժողովրդովքն, աղօթիւք և պաշտամամբք օրհնեցին և ձեռնադրեցին զտէր Դաւիթ ժառանգ և ժառանգակից աթոռոյ իւրոյ: Եւ եղև ուրախութիւն և ցնծութիւն ոչ սակաւ ծնողացն և ազգացն ամենեցուն առ հասարակ: Իսկ սա[x] տէր Զաքարիայս ծագեալ իբրև զարեգակն յառաւօտի. սա հալեալ զպաղումն և զսառն ձմերայնոյ սառնամանեաց և այլազգեաց թշնամեաց խաչին Քրիստոսի[xx]. սա կացեալ ընդդէմ չարեաց մրրկին, Ալի փաշային[xxx] և այլոց[xxxx] նմանեացն նորա, որ խռովային ի վերայ սրբոց եկեղեցեաց և հաւատոց քրիստոնէից. սա բազում հարկս և հարաճս խափանէր ի վանորաց և ի կրօնաւորաց. սա բազում ճգնաց և աշխատութեանց համբերեալ և մեծ վիրօք վիրաւորեալ և բազում սպիս հոգիս և ի մարմինս իւր ընկալեալ: Վասն զի քեռորդին իւր տէր Ստեփաննոս զազգական իւր զդուստրն քեռ իւրոյ տարեալ ետ այլազգեացն, խառնելով զկաթն յարիւնս նոցա. և բազում վանորայք և եկեղեցիք մեծ սգով և արտմութեամբ լցեալ[xxxxx] լինէին, զի տիրեցին առ հասարակ գեղեցիկ և անառիկ կղզոյս Աղթամարայ և այլ բազում տեղեաց և ապարանից, ոխ[651]վից[x] և ագարակաց, գրով և անգիր: Եւ իբրև այս այսպէս եղև և կատարեցաւ՝ ի թուականութեանս Հայոց Ջ-երորդի Հ-երորդի Ե-երորդի եհաս վախճան և փոխումն յաշխարհէս սրբազան Հայրապետին տեառն Զաքարիային. և նա բարի խոստովանութեամբ և

---

Ա $(^{2}/_{4})$՝ Ալի փաշոյն: xxxx) Ա $(^{2}/_{5})$՝ չիք՝ այլոց: xxxxx) I (365), II (324), III (502)՝ տրտմութեամբ վարանեալ: Ա $(^{2}/_{23-24})$՝ տրտմութեամբ լցեալ:

[651] x) Ձեռագրի շարունակութիւնը վնասված է ջրով և չի կարդացվում:

ուղղափառ դաւանութեամբ աւանդեալ զհոգի իւր՝ փոխեցաւ յայս աշխարհէս անցաւոր յաշխարհն կենդանեաց ի վերինն Երուսաղէմ ի կայանս արդարոց: Զոր աղօթիւք նոցա և ամենայն սրբոցն գթածն և ողորմածն Աստուած դասակից և մասնակից արասցէ զտէր Զաքարիայն սրբոցն Հարցն և Հայրապետացն առաջնոցն և վերջնոցն:

Եւ եղև յետ սակաւ ժամանակի եհաս կատարումն և մահ սոցա Ստեփաննոսին և Շամչայ խաթունին, և բարձան յաշխարհէս և չոգան անդ, ուր ճշմարիտ դատախազքն և քննօղքն և պահանջողք բանից, գործոց և խորհրդոց: Իբրև այս այսպէս կատարեցաւ՝ ոչ գոյր մեր թագաւոր կամ իշխան կամ դատաւոր կամ այցելու կամ առաջնորդ կամ փրկօղ և կեցուցանօղ, որ ազատէր զմեզ յայլասեռից և ի չար թշնամեաց. զի բազում ինչս գանձուց ոսկւոյ և արծաթոյ եդին ի վերայ, թէ ո՛վ որ յառաջ մատիցէ յաթոռ յայն Հայրապետութեան՝ տացէ զբազում ինչն զայն. ապա թէ ոչ՝ այլազգիքն տիրեսցեն ուխտից և եկեղեցեացն կրօնաւորաց և քահանայից, կուսանաց և կուսակալաց[3], ամկաց և համօրէն Քրիստոսի ժողովրդոցն: Զոր տեսեալ այսպիսի աղէտս տարակուսանաց և զմեծ վտանգս տէրն Դաւիթ Հայոց վերադիտօղ, զոր ձեռնադրեալ էր ի յեղբօրէն իւրմէ տեառն Զաքարիայէ, զի յայսմ ժամանակի հայրն իւր մեծ պարոն Ամիր Գուրգին հանդերձ անդրանկաւն իւրով Ամիր Սահմադնիւն փոխեալ էին յաշխարհէս, և ոչ ոք էր որ օգնէր և կամ ի թիկունս հասանէր. յայնժամ տէրն Դաւիթ ծագեաց իբրև զաստղ լուսապայծառ, իբրև զարեգակն ի միջօրէի, իբրև զպատրուակս փայլեալ ի կայծականց, կամ իբրև զնշոյլս լուսոյ երևեալ ի մէջ գիշերի, գերագոյն և գեղեցկապատկեր յօրինուածովք, արի մարմնով և վայելուչ անձամբ: Սա հարազատովքն իւրովք երկու գեղեցիկ եղբարբքն, որք կոչին Ամիր Կուրճբէկ և Ամիր Սէֆէթին, որք են իմաստունք, հանճարեղք, ճարտարախօսք, արագալեզուք, յառաջ մատուցեալ սոցա, և ձայն տուեալ միմեանց իբրև զքաջն և զարին զսուրբն Վարդան և որպէս զսուրբն Ատոմեանք, և դիմեալք սոցա ի մեծ պատերազմիս և ի հանդէսս յայս, և

ասեն սոքա ցմիմեանս: «ո՛չ է պարտ թողուլ զորբութիւնս մեր զտուն և զտեղի և զհայրենի ժառանգութիւնս, զի մի՛ օտարք մտանեն ի սա այլազգիքն կամ այլ ոք որ իցեն ի չարաց կամ ի չարափառաց և ի բազում բանսարկուաց»: Եւ սոքա բազում նեղութեամբ և չարչարանօք և անհանգիստ գնացիւք այսր անդր ընթանալով բազում աշխատութեամբ և համբերութեամբ տարեալ վշտաց և նախատանաց, զորս իրաւամբք և զորս անիրաւամբք, զոմանս աղաչելով, զոմանս պաղատելով, զոմանս պատուելով և զոմանս պատուհասելով ըստ արժանեացն, զի թերևս կարասցեն ընդդիմանալ մեծ պատերազմիս և հանդիսիս և ազատանալ ի բազում ընչիցս և անհամար գանձուցս, զոր եդեալ կան ի վերայ: Դարձեալ ասելով ցմիմեանս, «ո՛վ սիրելի եղբարք, արիասցուք առ միմեանս կապակցութեամբ Հոգւոյն Սրբոյ, զի մի հայրենի ժառանգութիւնս անկցի յօտարութիւն ի ձեռս այլազգեաց»: Այլ տէրն և ողորմածն Աստուած, որ առատն է ի տուրս բարեաց և խաղաղարարն ամենայն աշխարհի՝ տացէ սոցա զօրութիւն, իմաստութիւն և գիտութիւն, համբերութիւն և ժուժկալութեամբ կալ ընդդէմ այլասեռից թշնամեաց խաչին Քրիստոսի, և ազատեսցէ զսոսա հոգւով և մարմնով յորկածից և ի խաբէութենէ սատանայի. ամէն:

Դարձեալ վերստին հայցեմք և աղաչեմք, պաղատիմք և աղերսեմք առ հայրդ գթած և ողորմած Աստուածդ Յիսուս Քրիստոս և Սուրբ Հոգիդ Աստուած ճշմարիտդ, մեք անարժանք կրօնաւորքս և քահանայքս և համօրէն հաւատացեալքըս սուրբ Երրորդութեանդ. հաւատով և յուսով հայցեմք յառատ մարդասիրութենէդ, զի վերստին հաստատեսցես զաթոռ հայրապետութեանս մերոյ իբրև զառաջինն, և ազատեսցէ ի պարտեաց և յանիրաւ պահանջողաց: Եւ զայրապետս մեր զտէր Դաւիթ իբրև զարեգակն փայլեցուցես ի վերայ երկրի, իբրև զլուսին ի մէջ աստեղաց մինչև ի խորին ծերութիւն բազմամեայ կենօք հանդերձ հարազատ եղբարբքն և որդւովքն և իւրով զարմիւ. ամէն: Եւ Քրիստոսի Աստուծոյ մերոյ փառք, գոհութիւն և երկրպագութիւն յաւիտեանս յաւիտենից. ամէն:

# ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ՅԱՌԱՋԱԲԱՆՈՒԹԻՒՆ ՀԵՂԻՆԱԿԻՆ

1. *Հմմտ.* Ծննդ., *Ա, 26-27:*

2. Սաղմ., *Ը, 7-8:*

3. Սաղմ., *ԾԴ, 22-23:*

4. Յովհ., *Թ, 4:*

5. ... ժամայեղից... _ *յեղեղեայ ժամուք, կամ փոփոխիչ, և կամ փոփոխումն ժամուց և ժամանակաց (ՆԲՀ, Ա, էջ 827):*

6. ... ի տարբերս... _ *ի տարբերութիւն (ՆԲՀ, Բ, 856, հդծ. «տարբեր» 2):*

7. ... ի պէսպէս իմաստս... _ *Հմմտ.՝ «Ընդ պէսպէս մատեանս»* (Եւս. Կես., *Քր., Ա, էջ 1, ծն. 2 _ Մ. Աւգերեանց):*

8. ... զքանիօնութիւնն կանովնեցին... եօթն հազարեան դարուց: _ *Հին մատենագիրները Ադամից մինչև Քրիստոսի ծնունդը տարիները հաշվարկելիս հասնում էին տարբեր արդյունքների:* Թով. Արծ. *ելնում է այն հաշվից, որ Ադամից մինչև Քրիստոսի ծնունդը անցել է վեց հազար տարի, իսկ Քրիստոսի ծնունդից հետո սկսվել է յոթերորդ հազարամյակը (ՆԲՀ, Ա, էջ 602):*

9. Որպէս և մեծն Մովսէս... ասաց ցնոսա: _ Ծննդ., *Ա, 14-17:*

10. ... Ադամ, ասէ, եկաց ամս ՄԼ... ամս ՋԼ և մեռաւ: _ Ծննդ., *Ե, 3-4:*

11. Գունակ սմին և Բերոսոս ոմն... ի մատեանս քաղդէական պատմութեանց: _ Մով. Խոր., *Ա, IV, էջ 13:* Եւս. Կես.՝ *«... Բերոսոս յառաջնում մատենին պատմեաց, և յերկրորդումն զթագաւորսն մի ըստ միոջէ յօրինեալ գրեաց»: (Քր., Ա, էջ 10): «Աբիդոնեայ վասն առաջին թագաւորութեանն քաղդէացւոց» (Քր., Ա, էջ 67):*

12. Եւ ի սոցունց... զփառս աշխարհիս: _ *Հմմտ.՝* Եւս. Կես., *Քր., I, էջ 9 «Եւ նիւթն ի նոցանէ ամենեցունց ժողովեալ անձին՝ ի Քրոնիկոն ժամանակական կանոնսն փոխեցայց... ի մեջ թագաւորութեան կարգեցից»: Հմմտ. նաև* Մով. Խոր.՝ *«... մեզ խոյզ խնդրոյ առաջի արկանել... կարգել զպատմութիւնն ճշդիւ՝ ... ի փառս և անջան հեշտութիւն»: (Ա, III, էջ 11-12):*

13. Զիւրաքանչիւր զանուանս և զժամանակս... և ուսումնասէրքն ի մարդկանէ: _ *Հմմտ.՝ Եւ արդ՝ եղից մի ըստ միոջէ կարգաւ զիւրաքանչիւր զրոցն դրոշմաւորութիւն, զի դիւրաւ լիցի*

*խելամուտ լինել այլակերպութեան իւրաքանչիւր պատմութեանց:* *(Քր., Ա, էջ 115):*

14. ... յիշատակարանս մատենից... _ *Տես՝ Բ Եզր., Ա, 33, 42. Բ, 22:*

15. ...Վասն Քրիստոսի պատերազմեալ զբարիոք պատերազմ... _ *Փխռ.՝ Բ Տիմ., Դ, 7:*

## ԳԼՈՒԽ Ա

1. ... ոչ է մեզ հարկաւոր զնոյն երկայնաբանութեամբ երկրորդել. _ *Հմմտ.՝ «զհին պատմութեան զյիշատակարանս երկրորդելով...» (Քր., Ա, էջ 1, 129):*

2. ... բազմայեղ յեղանակաց խուզմանցն... _ *Հմմտ.՝ Ըստ պէսպէս մատենիս առաջնոց պատմութեանց անցի...» (Քր., Ա, էջ 1, ծն. 2 -* Մ. Աւգերեանց):

3. «և ըստ Մովսէսի Քերթողի... _ *Վերջերս հայագիտությունում ենթադրություն է առաջադրվել, որ Մովսես Խորենացին և Մովսես Քերթողը տարբեր մատենագիրներ են (Տե՛ս* **Գ. Անանյան,** *Մովսէս Քերթողահայր և Մովսես Խորենացի...»:* Նորայր **Ծովական,** *«Բանասիրական հետազոտություններ»): Սակայն* Թով. Արծ., *որը առաջինը հայ մատենագիրներից նույնացրել է Մովսես Խորենացուն Մովսես Քերթողի-Քերթողահոր հետ, նկատի ունի հենց Մովսես Խորենացուն՝ «Պատմութիւն Հայոց»-ի հեղինակին:*

4. ... զտարակուսելի գիւտիցն յոյս... _ *Փխռ. Փիլոնից (ՆԲՀ, Բ, էջ 853):*

5. ... յայլոց քննողական աշխատութեանց... բանգիտութենէ: _ *Հմմտ.՝ «... զի յամենեցունց ընդ միմեանս կշռեալ համեմատութենէն ճշմարիտ գիւտն հասանիցի»: (Քր., Ա, էջ 113):*

6. Նոյ ծնանի երիս որդի, զՋրուան և զՏիտան և զՅապիտոսթէ, որ են Սեմ, Քամ և Յաբէթ. _ *Հմմտ.՝ «Զրուանն և Տիտանն և Յապետոսթէ լինէին իշխանք երկրի». Որ ինձ թուին Սեմ, Քամ և Յաբեթ»: (*Մով. Խոր., *Ա, VI, էջ 23):*

7. Սեմ ծնանի... զՂուդ: _ *Տե՛ս Ծննդ., Ժ, 12:* Եւս Կես., *Քր., Ա, էջ 110. (էջ 108-109, ծն. 1 _* **Մ. Աւգերեանց***):*

8. Ասուր շինէ... կոչի առաջին Ասորիք: _ *Հմմտ.՝ «...յերկրէն յայնմանէ ել Ասուր, և շինեաց զՆինուէ: Նինուէ զՆինոս ասեն լինել, որ էր առաջին քաղաք ասորեստանեաց, զոր շինեաց Ասուր»: (*Եւս. Կես., *Քր., Ա, էջ 109-110):*

9. Իսկ Նեբրովթ ի Քամայ... ի վերայ երկրի: _ *Փխռ.՝* Եւս. Կես., *Քր., Ա, էջ 109 (ծն. 1 -* **Մ. Աւգերեանց***):*

10. ... Նեբրովթ յինքն գրաւէ... զթագաւորութիւնն Եթովպացւոց: _ *Համաձայն Աստվածաշունչի Նեբրովթը սերում*

էր Քուշից (Ծնդ., Ժ, 8), այսինքն բուն քուշիններից էր և, հետևաբար, ապրում էր արաբական Եթովպիայում, ահա թէ ինչու Մով. Խոր. «... բազումք ի ժամանակագրաց զՆեբրովթ... եթովպացի գոլ ասելով՝ հաւանեցուցին զմեզ այսպէս հաւաստի լինել, յաղագս բնակութեան սահմանացն ընդ Եգիպտոս»: (Ա, V, էջ 20: Տե՛ս նաև՝ Քր., Ա, էջ 109):

11. Արդ զիա՞րդ... զՆինոսաս. _ Հմմտ.՝ «Առաջին վիպասանութեան և յիշատակաց արժանի Նինոս գտանէր՝ Թագաւոր ասորեստանեաց... Նինոսաս Նինեայ և Շամիրամայ որդի...» (Քր., Ա, էջ 85):

12. ... ի Սենեքերիմ արքայ առ Եզեկիայիւ Եբրայեցւոց: Տե՛ս՝ Եւս. Կես., Քր., Ա, էջ 41՝ «զՍենեքերիբայ կացեալ Թագաւոր... առ Եզեկիայիւ արքայի»: Տե՛ս նաև՝ Մով . Խոր.՝ «... Սենեքերիմս կացեալ արքայ... առ Եզեկիայիւ Հրէից առաջնորդաւ.» (Ա, XXIII, էջ 70):

13. Քանզի որպէս գրեցաւն՝ Ասուր ի Սեմայ... ասի Ասորոց Թագաւոր: _ Հմմտ.՝ «Ել Ասուր և շինեաց զՆինուէ... որ էր առաջին արքունի քաղաք... զոր շինեաց Ասուր.» (Քր., Ա, էջ 110: Տե՛ս նաև էջ 108-109, ծն. 1 - **Մ. Աւգերեանց**):

14. Հաւաստիս այս մեզ Եւսեբիոս Կեսարացի, Յուղիանոս Աղիկառնացի... _ Տե՛ս ստորև ծն. 31:

15. ... որպէս ի կանոնեալ սահմանէն իմանալ: _ Թով. Արծ. վկայակոչում է Եւս. Կես. Կանոնը (տե՛ս Քր., Բ, էջ 62):

16. Եւ ունի պատմութիւն այսպէս... որ էր հնգերորդ Ջրուանն Քսիսութրեայ: _ Ուղղելի է՝ ... որ էր երկրորդ Ջրուանն Քսիսութրեայ: Հմմտ.՝ «Յառաջ քան զաշտարակն, ասէ, և զբազմաբարբառն լինել ծայնի ազգի մարդկան, և զկնի նաւարկութեան Քսիսութրեայ ի Հայս՝ Զրուան և Տիտան և Յապետոսթէ լինէին իշխանք երկրի»: Որ ինձ թուին Սեմ, Քամ և Յաբեթ»: (Մով. Խոր., Ա, VI, էջ 23): «... յանձն է իմանալ՝ եթէ Քսիսութրոն նոյն է, որ յեբրայեցւոցն Նոյ կոչի.» (Քր., Ա, էջ 30):

17. Իսկ Ասուր երրորդ ի Սեմայ... _ Պետք է լինի՝ երկրորդ ի Սեմայ. (տե՛ս Ծննդ. Ժ, 22: Եւս. Կես., Քր., Ա, էջ 110):

18. ... և Նինոս տասներորդ ի Քամայ... _ Տե՛ս Մովս. Խոր., Ա, V, էջ 20:

19. ... ըստ Աբիւդոնեայ Քաղդէացւոյ և ըստ Եւսեբայ Կեսարացւոյ և ըստ Մովսէսի Խորենացւոյ և ըստ Յուլիանու Աղիկառնացւոյ ստուգաբանի: _ Տե՛ս ստորև ծն. 31:

20. ... որպէս յետ բազում ժամանակաց զՄովսէս ի յԵգիպտոս ... _ Տե՛ս Ելից., Բ, 1-10:

21. Եւ քանզի առեալ էր Կրոնեայ իւր կին զՌեա... ոչ ոք

զօրէր Զրուանայ Թագաւորել. _ Ինչպես ենթադրում է Գ. Խալաթյանցը, Թով. Արծ. սույն պատմությունը Կրոնոսի, Ռեայի, և Դիոսի (Զեվսի) մասին քաղել է սիբիլյան գրքերի հին հայերեն թարգմանությունից, որը գոյություն է ունեցել դեռևս IX դ. առաջ (տե՛ս Армянский эпос в Истории Армении Моисея Хоренского, I, էջ 54):

Այս առասպելը հետաքրքիր է Արծրունյաց իշխանների ծագումնաբանության տեսակետից: Մենք չենք անդրադառնալու այն հարցին, թե ինչու այս առասպելում Կռոնոսը, որը նույնական է արևելյան առասպելների Զրվանին և աստվածաշնչային Սեմին, այստեղ ներկայացված է որպես այլ անձնավորություն. մեզ համար կարևոր է այն տեղեկությունը, թե տասներորդ սերնդում Սեմի-Ասուրի արական գիծը ընդհատվում է և մնում է «... միայն կին մի անուանի Դիոնիսեայ... որ անուանէ զանուն իւր ըստ անուան հաւոյն իւրոյ Սեմայ՝ Սեմիրամ... ի հայկական լեզուէ Շամիրամ...»: Ասուրի տոհմի և, հետևաբար, Ասորական թագավորության վերջին ժառանգորդուհին՝ Շամիրամը ամուսնանում է Քուշի տասներորդ սերնդում հետնորդ Նինոսի հետ, որը և փոխարինում է նրան ասորեստանյուն թագավորների ծագումնաբանական ցանկում, քանի որ, ինչպես պատճառաբանում է Թով. Արծ., Արևելքում և, մասնավորապես, Իսրայելում կանանց չէին ներառնում ծագումնաբանական ցանկերի մեջ: Որպես օրինակ նա բերում է Հիսուս Քրիստոսի ծագումնաբանությունը ըստ Մատթեոսի և Ղուկասի, որոնք, հասնելով մինչև Հովսեփը, լռում են Մարիամի մասին և մտցնում ցանկի մեջ Հովսեփին, որը «...ոչինչ հաղորդութիւն ունէր... առ ծնունդն Քրիստոսի»: Այսպիսով, Արծրունյաց իշխանների նահապետ Սենեքերիմ թագավորը իրականում մայրական գծով էր սերում Սեմից, իսկ արական գծով նա Նինոսի հետնորդն էր, որը ուղիղ վայրընթած գծով սերում էր Քամի որդի՝ Քուշից:

22. ... որպէս և յիսրայէլի զԳոթողիայ... _ Տե՛ս Դ Թագ. Ը, 18. Բ Մն. ԺԸ, 1:

23. ... զՓրկչին մերոյ... աւետարանիչն Մատթէոս... զագգարանելն: _ Տե՛ս Մատթ. Ա, 1-16:

24. Նոյն գունակ և զՂուկա... մի ըստ միոջէքն: _ տե՛ս Ղուկ. Գ, 23, 38: Տե՛ս նաև Եւս. Կես. Պատմութիւն եկեղեցական, Ա, 6, էջ 42-43

25. ... որ յետ ՁԸ ամի Սենեքերիմ... իւրոյ թագաւորութեանն... _ Հմմտ. «քանզի Եզեկիաւ Թագաւորեաց Սենեքերիմ... Եւ միանգամայն ժողովին ի Սենեքերիմայ մինչև Նաբուկոդոնոսորոս՝ ամք ՁԸ» (Քր., Ա, էջ 44) : Թով. Արծ. սխալմամբ, կամ էլ

*ինչ-ինչ նպատակներից ելնելով, ժամանակագրական առումով փոխել է Նաբուկոդրոսորոսի (նույն Սարդանապաղոս, Տոնոս Կոնկողերոս) և Սենեքերիմի տեղերը:*

26. ... և առնու զԲաբելոն և շինէ զՏարսոն ի ձև Բաբելոնի, գետոյ ընդ մէջ անցանելոյ... _ *Համա.՝ ... և Տարսոն զձև և զօրինակ Բաբեղոնի շինէր, զի և ընդ մեջ Տարսոնի գետն Կիւղնոս անցանէ...» (Քր., Ա, էջ 53):*

27. ... որ յանուն Հաւոյն իւրոյ Սեմայ անուանեալ էր լեառն: _ *Համա.՝ «... մի ի յորդւոց նորա կոչեցեալն Սեմ... անուանէ յանուն իւր գլեառնն Սիմ...» (Մով. Խոր., Ա, VI, էջ 26:* ***Գ. Халатянц.*** *Армянский эпос, I, էջ53):*

28. ... պարսկային ձայնին ի Զրուան անուն զԶաբուանդն անուանեն: _ *Տե՛ս* Մով. Խոր., *Ա, VI, էջ 26: (****Г. Халатянц.*** *Армянский эпос, I, էջ53):*

29. Բայց քանզի աւերեալ էր զՆինուէ Նաբրովթայ ի բռնանալն ի վերայ Սեմեացն... զԹագաւորութիւնն Ասորեստանի: _ *Համա.՝ Քր., Ա, էջ 109-110:*

30. Դարձեալ քանզի Մեստրիմ... ի կանոնի անդ գտցես... _ *Տե՛ս Քր., Բ, էջ 62, ծն.* ***Մ. Աւգերեանցի****:*

31. ... և ի չորրորդ դպրութեան Յուլիանու Աղիկառնայւոյ, որպէս և ի չորրորդ դպրութեանն Մովսէսի: _ *Ինչպես հայտնի է, Հուլիանոս Հալիկառնացին (V-VI դ.) միաբնակության ծայրահեղ հոսանքի՝ դոկէտիզմի հիմնադիրն էր: Նրա ստեղծագործությունները նվիրված էին եկեղեցա-դավանաբանական հարցերին և ոչ մի տեղեկություն այն մասին, թե նրան պատկանում էին որևէ պատմական ուսումնասիրություններ, առավել ևս Ասորեստանի պատմության վերաբերյալ, չի պահպանվել:* ***Ռ. Թոմսոնի*** *(էջ 69, ծն. 1) ենթադրությամբ* Թով. Արծ. *շփոթել է Հուլիանոս Աֆրիկացուն Հուլիանոս Հալիկառնացու հետ (տե՛ս նաև՝* ***Վ. Վարդանյան****, էջ 510, ծն. 8): Նույն տեսակետին էր նաև տողերիս հեղինակը (տե՛ս* Թով. Արծ. *պատմության ռուս. թարգմ., էջ 336, ծն. 32, ինչպես նաև մեր հոդվածը՝ «Պատմություն տանն Արծրունեաց» _ ի աղբյուրները և Արծրունի իշխանների ծագումնաբանական առասպելը, էջ 8): Սակայն* Թովմայի *պատմության հետագա ուսումնասիրությունը և համեմատությունը* Եւս. Կես. *Քրոնիկոնի բնագրի հետ բերել է մեզ այն համոզման, որ մեր առաջին տպավորությունը և հարցին դրանից բխող պատասխանը մակերեսային էին, և որ* Թովմայի Յուլիան Աղիկառնացին *ամենևին էլ նույնական չէ հայտնի եկեղեցական գործիչ Հուլիանոս Հալիկառնացուն, այլ իր իսկ հնարած պատմիչ է: Ունենալով բարձրագույն եկեղեցական կրթություն և վարդապետի աստիճան,*

Թով. Արծ., որը նաև մանրամասն ճանաչում էր Եւս. Կես. Քրոնիկոնը, ոչ մի դեպքում չէր կարող սխալվել և չփոթել Աֆրիկանոսին Հուլիանոս Հալիկառնացու հետ, առավել ևս, որ հենց սույն գլխի սկզբում հիշատակում է նրան հետևյալ կոնտեքստում. «Եւ արդ ըստ Եւսեբայ բազմայեղ յեղանակաց և ըստ Աֆրիկանոսի հաւատարմաբանութեան և ըստ Մովսէսի Քերթողի նախ ի մէջ առից զորպիսութիւն ազգացն բաժանմանց գրել: Եւ անդէն զտարակարծելի յոյս երկբայութեան՝ յայլոց քննողական աշխատութեանց եդից առ ընթեր թելադրութեամբ. զի անդէն և անդի ի բաց կացցեն տարակուսական ծուփս խորհրդոց ի քումմէ հանճարեղ խոհականալիր բանգիտութենէ»: Ելնելով սույն հատվածի բովանդակությունից, կարելի է ենթադրել, որ Թով. Արծ. մտադիր է համադրել վերոհիշյալ պատմիչների տեսակետները ժողովրդների բաժանման կապակցությամբ և, այսպիսով, ցույց տալ, թէ նրանցից որ մեկն է իրավացի և որը սխալ: Սակայն հետագա շարադրանքի ընթացքում նա այլևս ոչ մի անգամ չի հիշատակում Աֆրիկանոսին. հարցը մնում է անպատասխան: Փորձենք պատասխանը գտնել Եվս. Կես. Քրոնիկոնում: Վերջինս, այդ հարցի վերաբերյալ մեջ բերելով տարբեր աղբյուրների տեսակետներ, այնուհետև նկատում է՝ «Նաև զայսու իսկ չէ պարտ առանց քննութեան անցանել, որպէս և Աֆրիկանոս ի հինգ ժամանակակարգութեան գիրս կարգեաց: Եւ թուի ինձ՝ թէ կարի իսկ մեծամեծս սխալ է յայսոսիկ, որ առաջիս կան»: (Քր., Ա, էջ 158): Փոքր ինչ հետո քննության առնելով այդ հարցի կապակցությամբ մի շարք տեսակետներ, նա կրկին անդրադառնալով Աֆրիկանոսին, գրում է՝ «Այդ, Աֆրիկանոս յայսում՝ այսպէս սխալեաց»: (Քր., Ա, էջ 159): Տվյալ դեպքում, հաստատելով Եվս. Կես. օգնությամբ Աֆրիկանոսի սխալ լինելը, Թովման այլևս չի հիշատակում նրան: Եւ այնուամենայնիվ ինչպե՞ս է հայտնվել Թովմայի «Յուլիան Աղիկառնացին»:

Եվս. Կես. բազմիցս հիշատակում է Աֆրիկանոսին առանց նրա «Յուլիոս» անունը տալու և միակ բացառությունն է Քրոնիկոնի երկրորդ հատորի կանոններից մեկում արված հիշատակությունը (Բ, էջ 296)՝ «Ի Պաղեստինէ հին էմաւուս նորոգեցաւ... աղաչանօք առ արքայ՝ Յուղիոսի Աֆրիկանոսի ժամանակագրի»: Այստեղ վերջինը ինչ որ չափով ռեաբիլիտացվում է, բայց քանի որ Աֆրիկանոսը նախորդ հղումներում ներկայացված էր որպես անհավաստի պատմիչ, ապա Թովման դեն գցելով նրա Աֆրիկանոս մականունը, թողնում է «Յուղիան» անունը: Այժմ նա փնտրում այդ անվանը համապատասխան մականուն: Այս հարցում նրան օգնում են ինչպես Եվս. Կես., այնպես էլ Մով. Խոր.: Եվս.

Կես. բազմիցս հիշատակում է Հերոդոտին (Ա, էջ 204, 207, 208, 213, 222), սակայն միայն մեկ անգամ իր անուն-մականունով՝ «Հերոդոտոս Աղիկառնացի» (Ա, էջ 91): Մեկ անգամ էլ Հերոդոտին վկայակոչում է Մով. Խոր.՝ «... և Արշակ տիրէ երրորդ մասին աշխարհիս, որպէս յիրականացն պատմութեանց Հերոդոտեայ է ուսանել ի չորրորդէն...» (Բ, II, էջ 104) և, ինչպես տեսնում ենք, առանց մականվան, սակայն իր չորրորդ գրքով, այն էլ «յիրականացն պատմութեանց» հանդերձ: Այսպիսով, Թովմային մնում էր միայն Յուղիան անվանը միացնել Հերոդոտի «Աղիկառնացի» մականունը և իր չորրորդ գիրքը: Այսպես Թով. Արծ. հնարած պատմիչը պատահմամբ դարձավ հայտնի եկեղեցական գործիչի անվանակիցը, ինչը չէր կարող վրիպել նրա ուշադրությունից, սակայն այդ չփոթը, հարցին հաղորդելով ինտրիգի բնույթ, նրան հարմար էր գալիս: Այդ կեղծիքի ստեղծումը հետապնդում էր, անշուշտ, որոշ նպատակ՝ ներկայացնել ընթերցողին մեկ այլ, հնարավորին չափ ճշմարտանման կեղծիք՝ Մովսես Խորենացու «չորրորդ գիրքը»:

Մենք կանգ չենք առնելու Խորենացու «չորրորդ» գրքի շուրջը ծավալված վիճաբանության վրա (այդ կապակցությամբ տե՛ս **Ա. Մաթևոսյան**, «Մովսէսի Խորենացւոյ վերադարձութիւն ի վերայ երեցունց դրուագեալ հատուածին», որը լույս է տեսել որպես հավելված Մով. Խոր. Պատմութեան աշխարհաբար թարգմանութեան վերջին հրատարակությունում, Եր., 1997), այլ ուղղակի կանդրադառնանք Խորենացու պատմության այն երեք հատվածներին, որոնք անմիջական առիթ են տվել Թովմային խոսելու չորրորդ գրքի մասին:

1) «Արդ օրէն էր մեզ ատտանօր զկարծիս նոցա (այսինքն՝ Բերոսոսի, Բազմավէպի և Աբիւդենոսի) յայտնել... այլ վասն երկարութեան առաջիկա գործոյս՝ այլում տեղւոյ և ժամանակի զայսոսիկ թողեալ» (Ա, IV, էջ 14): Այստեղ մենք գործ ունենք սովորական էտիկետային բանաձևերից (ֆորմուլաներից) մեկի հետ՝ բանաձև, որ օգտագործվում էր միջնադարյան մատենագիրների կողմից անկախ իրենց ազգային պատկանելությունից: Նման բանաձևերը հեղինակի տուրքն էին միջնադարյան գրականությունում ընդունված քաղաքավարության ճարտասանության: Շարունակելով իր խոսքը, հաջորդ պարբերության վերջում Մով. Խոր. կրկնում է այդ բանաձևը փոքր ինչ փոխված տեսքով:

2) «Արդ զայլսն վասն սորա (խոսքը Աբելի ու Ենովսի կոչված լինելու մասին է) ի տեսութեանց ի հրաւիրեալն մեր տեղի յուղարկեսցուք, իսկ որ առ ձեռն պատրաստ է՝ ասասցուք»: Մով.

Խոր. *սույն էտիկետային բանաձև պարունակող հատվածներին Թովմայի մոտ համապատասխանում են հետևյալ երկու վկայակոչումները. 1. «... Եւ Նինոս ի զաւակէ Քամայ ըստ Աբիւդոնեայ Քաղդեացւոյ և ըստ Եւսեբեայ Կեսարացւոյ, և ըստ Մովսէսի Խորենացւոյ, և ըստ Յուլիանու Աղիկառնացւոյ ստուգաբանի (Ա, I, էջ 7): Աբյուդենոսին հղում է 1-ին գրքի 4-րդ գլխի սկզբում* Մովսես Խորենացին, *այդ անվանը* Թովման *ավելացնում է* Եւս. Կես., *որից օգտվել է և* Մով. Խոր. *և անձամբ ինքը, իր հիմնական աղբյուր՝* Մով. Խորենացուն *և Հուլիանոս Ալիկառնացուն: Վերջինիս անուամբ* Թովման *նենգափոխում է Հերոդոտոս Աղիկառնացուն, որին հիշատակում է համապատասխան տեղում* Եվս. Կես. *և Հուլիուս Աֆրիկանոսին: 2. «... եւ առանձին Թագաւորեն Ասորեստանեայքն ի կանոնի (Եւսեբեայ) անդ գտցես զՆինոս եւ զՇամիրամ եւ զԱբրահամ եւ զվեշտասաներորդ հարստութիւն Եգիպտացւոց, եւ ի չորրորդ դպրութեանն Յուլիանու Աղիկառնացւոյ, որպես և ի չորրորդ դպրութեանն Մովսէսի»: (Ա, I, էջ 9): Առաջին մասով այդ հղումը (*Եւս. Կես. *կանոնի վրա) ճշմարիտ է, սակայն երկրորդ մասում Հուլիանոսի գոյություն չունեցող չորրորդ գրքի կողքին հայտնվում է* Մով. Խոր. *չորրորդ գիրքը: Հարց է ծագում, թե ինչու չորրորդ գիրքը չի հիշատակվում առաջին դեպքում: Թվում է, որ միակ պատճառը թաքնված է* Մով. Խոր. *օգտագործած էտիկետային փորմուլաների ձևում: Առաջին անգամ նա ուղղակի գրում է, որ ընդհատում է իր խոսքը, «... յայլում տեղւոյ եւ ժամանակի զայսոսիկ թողեալ...», և* Թովման *ընկալում է այն հենց այնպես, ինչպես որ պետք է, այսինքն՝ որպես անցում հաջորդ հարցի քննությանը: Երկրորդ անգամ* Մով. Խոր. *ներկայացնում է էտիկետային բանաձևը որպես հղում նախորդի վրա՝ «... ի հրաւիրեալ մեր տեղի յուղարկեսցուք»: Այստեղ* Թովման *արդեն հնարավորություն է տեսնում մտցնել սեփական ճշգրտումը՝ չորրորդ գիրքը, որը* Մով. Խոր. *խոստանում է գրել «այլ տեղում» և «այլ ժամանակին»: Իր շարադրանքի հետագա ընթացքում* Թովման *չի վկայակոչում* Մով. Խոր. *չորրորդ գիրքը և միայն երբ հասնում է իր առաջին գրքի ավարտին, որը համապատասխանում է* Մով. Խոր. *երրորդ և վերջին գրքին, նա այդ գրքի 67-րդ գլխում կրկին հանդիպում է էտիկետային բանձևին, որով* Մով. Խոր. *ամփոփում է իր սբ. Սահակին նվիրված գովքը:*

*3) «Զորմէ պարտ էր մեզ հրաշափառագունիւ անցեալ բանիւ, ըստ արժանի սրբոյ հօրն դրուատից, այլ գի մի երկարութիւն ճառիցս լիցի ձանձրութիւն ընթերցողաց՝ այլում տեղւոյ և ժամանակի, զայսոսիկ թողցուք, արտաքոյ այսց գրոց, ուր զսկզբանն*

հրաւիրեցաք առնել թելադրութիւն», (Գ, LXVII, էջ 355-356): Մով. Խոր. սոյն հղմանը՝ Թովմայի մոտ համապատասխանում է հետևյալ հատվածը. «Սահակս այս այն Սահակ է, որոյ հրամանաւ գրեաց մեծ վարդապետն Մովսէս տիեզերահռչակեալ քերթողն զգիրս Պատմութեան հայոց մեծաց, հրաշազան հորինուածով, սկսեալ յԱդամայ մինչ է կայսր Զենոն ... որպէս գրեալ աւանդեցաւ մեզ այս ի չորրորդ դրուագի խոստաբանեալ պատմութեանն Մովսէսի Խորենացւոյ, վերադարձութեան ի վերայ երեցունց դրուագեալ հատուածին»: Ինչպես տեսնում ենք, Մով. Խոր. չորրորդ գրքի հետ կապված Թովմայի հղումները հայտնվում են զուգահեռաբար Մով. Խոր. բնագրում նշված էտիկետային բանաձևերին, ինչից կարելի է հետևեցնել, որ Թովման իր առջև ուներ մեզ հայտնի եռամասնյա Խորենացու Պատմությունը և շարադրանքի ընթացքում հղում էր չորրորդ գրքի վրա այն ժամանակ, երբ հանդիպում էր նշված բանաձևերին: Բովանդակության տեսակետից Թովմայի բնագրի տվյալ հատվածը բաղկացած է երկու մասից. 1) «... Սահակս այս այն Սահակ է, որոյ հրամանաւ գրեաց մեծ վարդապետն Մովսէս ... գիրս Պատմութեան... սկսեալ յԱդամայ մինչ ի կայսր Զենոն...»: Այստեղ Թովման, ըստ էության, նկատի ունի ոչ միայն մեզ հայտնի Մով. Խոր. եռամասնյա Պատմությունը, այլ նաև չորրորդ գիրքը, որը պետք է բովանդակի սբ. Սահակի մահվան և Զենոն կայսրի գահակալության միջև ընկած ժամանակաշրջանի պատմությունը: Սակայն, ինչպես նշում են շատ հայագետներ, նման գրքի ոչ մի հետք անգամ չի նշմարվում ոչ Թովմա Արծրունու, ոչ էլ Հովհաննես Դրասխանակերտցու մոտ, մինչդեռ երկուսի համար էլ Խորենացու Պատմությունը համապատասխան ժամանակագրական շրջանակներում ծառայում էր որպես հիմնական աղբյուր: Ավելին՝ երկուսն էլ, այսպես կոչված «չորրորդ գրքի» փոխարեն օգտագործում են անվավեր, անախրոնիզմներով լի մի գրվածք Շավասպ Արծրունու, պարսից մարզպան Վնդոյի, վերջինիս որդի Շերոյի և նրանց դեմ պայքարող Վարդան Մամիկոնյանի մասին: Դրա հիման վրա գրված երկու գլուխները (առաջին գլխի մանրամասն աղբյուրագիտական քննությունը տե՛ս Գ. Տեր-Պողոսեան, «Նկատողութիւններ Եղիշէի պատմութեան վերաբերեալ»., էջ 129-133), Թովման տեղադրում է ոչ թէ իր պատմության Արծրունիների ծագումնաբանությանը նվիրված առաջին գրքի վերջում, ինչը սպասելի էր, այլ հաջորդ, երկրորդ գրքի սկզբում: Դրանից կարելի է եզրակացնել, որ նշված երկու պատմիչներից ոչ մեկը չի տեսել Խորենացու 4-րդ գիրքը: Մով. Խոր. բնագիրը նույնպես ոչ մի առիթ չի տալիս ենթադրելու 4-րդ գրքի գոյությունը: Որ Թով-

*ման դա շատ լավ հասկանում էր, երևում է վերոբերյալ 2-րդ մասից. «... որպես գրեալ աւանդեցաւ այս ի չորրորդ դրուագի խոստաբանեալ պատմութեան Մովսէսի Խորենացւոյ, վերադարձութեան ի վերայ դրուագեալ հատուածին»: Այսպիսով նա փորձում է հաստատել է 4-րդ գրքի արժանահավատությունը, հղելով* Մով. Խոր. *խոստացված 4-րդ գրքի վրա, այսինքն՝ մեկ անհայտի գոյությունը հաստատում է մեկ այլ անհայտով: Դա նշանակում է միայն այն, որ ինչպես մի շարք իր ծննդաբանության գրքի համար բնորոշ դեպքերում,* Թովման *դիտավորյալ կերպով մոլորեցնում է ընթերցողին: Այնպես որ* Թովմայի *վկայությունը* Խորենացու *«չորրորդ գրքի» մասին կարելի է դասել Արծրունիների ծագումնաբանության իր գրքի համար ամենասովորական կեղծիքների շարքում:*

*32.* Եւ արդ քանզի կարգ... ասելով գատանին: _ *Հմմտ.*՝ Մով. Խոր. , *Ա, VI, էջ 22-23:*

*33.* Նոյնպէս և զպայման ժամանակացն... առ ի յեղումն ժամանակի տարւոյն... _ *Հմմտ.*՝ Բարս. Կես., *էջ 195:*

*34.* ... այլ և ոչ ըստ լուսնական... սուզականութեան: _ Եւս. Կես. *Քր., Ա, էջ 27-28 (ծն. 2 -***Մ. Աւգերեանց***):*

*35.* ... Թէ և Յոյնք... և յեղուլ ի լեզու յոյն. _ *Տե՛ս* Եւս. Կես. *Քր., Ա, էջ 191:* Մով. Խոր., *Ա, II, էջ 8: Հովս.* Փլաբ. *Հնթք., Առաջաբան հեղինակի, § 3:*

*36.* ... քանզի Յունաց հուսկ... յումեմնէ փիւնիկացւոյ: Եւս. Կես. *Քր., Ա, էջ 5:*

*37.* Ծննդ., *Բ, 8:*

*38.* ... որով իցէ ասել... _ *«իցէ Թէ - որպէս նշանակ երկբայութեան կամ անհնարին գոլոյ»: (ՆԲՀ, Ա, էջ 873):*

*39.* ... և զանբաւութիւն մեծութեանն ... յերևելի աշխարհս: _ *Տես՛* Ծննդ., *Բ, 8-14:*

*40.* ... ոչ պիտոյացեալ եկամուտ... երեկոյին _ *Յայտն., ԻԱ, 23-24. ԻԲ, 25:*

*41.* ... ոչ ապաժամանութիւն արեգական... _ Յես., *Ժ, 13:*

*42.* ... և զի առէ՝ գործել և պահել... _ Ծննդ., *Բ, 15:*

*43.* ... ի սակաւուն հաւատարիմ լինելով: _ Մատթ., *Իե, 23:*

*44.* Այլ և նախապատիւ... ճաշակմամբն: _ *Տե՛ս* Փիլ. Եբր., *Մնացորդք, էջ 26:*

*45.* Ծննդ., *Գ, 9:*

*46.* Ծննդ., *Գ, 12:*

*47.* Ծննդ., *Գ, 13:*

*48. Հմմտ.* Փիլ. Եբր., *Մնացորդք, էջ 31:*

*49. Հմմտ.* Փիլ. Եբր. *Մնացորդք, էջ 22:*

50. Մննդ., Գ, 23,
51. Սաղմ., ԽԳ, 13, 21:
52. Մննդ., Դ, 1:
53. Մննդ., Դ, 15:
54. Մննդ., Դ, 3:
55. Մննդ., Դ, 7:
56. Մննդ., Դ, 4:
57. ... չարասէր և աներկիւղ... արատաձգեալ յԱստուծոյ: _ *Հմմտ.* Փիլ. Եբր. *Մնացորդք*, *էջ* 45:
58. *Տե՛ս* Մննդ., *Դ*, 8:
59. Մննդ., *Դ*, 9:
60. Մննդ., *Դ*, 16-17:
61. Զոր Փիլոն... Զբարբի ասէր... _ *Տե՛ս* Փիլ. Եբր. *Մնացորդք*, *էջ* 56 (*ծն.* **Մ. Ավգերեանց**):
62. Մննդ., *Ե*, 3:
63. Մննդ., *Դ*, 25:
64. Մննդ., *Դ*, 6:
65. Նա յուսացաւ կոչել զանուն Աստուծոյ: _ Թովմ. Արծ. *հենվում է նաև Փիլոնի վրա* (*Մնացորդք*, *էջ* 55), *որը* «*Ենոս*» *անունը մեկնաբանում է որպես* «*մարդ*», *նշելով, որ հույսը հատուկ է միայն մարդուն, իսկ անբան արարածները զուրկ են հուսալու ընդունակությունից*:
66. Մննդ., *Զ*, 1-9:
67. ... աշխարհալից նահապետացն: _ (*ՆԲՀ*, *I*, 261):
68. ... Մաղաղիէլ լեալ ամաց ճԿԵ-լից, ծնանի զՅարէդ... _ Եւս. Կես. *Քր.*, *Ա*, *էջ* 117: Մննդ., *Ե*, 15 ... *Մաղաղիէլ լեալ ամաց ԿԵ-լից ծնանի զՅարէդ*:
69. ... զԵնովք... սրբոց նախահարցն: _ *Տես՛* Մննդ., *Ե*, 5-24, *Եբր.*, *ԺԱ*, 5:
70. ... Զոր վկայէ... թէ մարգարէացաւ ութերորդն յԱդամայ... _ *պետք է լինի՝* «*եւթներորդն*» (*Յուդա*, 14): «*Ոմն ի սրբոց...*» _ *այսինքն Յուդան*:
71. Յուդա, *14-15*:
72. Յուդա, *16*:
73. ... իսկ եթէ ընդէ՞ր ոչ ի ծննդաբանութեան... զաւակ Հաբէլ _ *Հին հրեական ավանդույթի համաձայն ծննդաբանության մեջ մտնում էին միայն որդիները*:
74. ... լեալ ամաց ճԿԵ ... ամս Մ... _ *Պետք է լինի* «*լեալ ամս ԿԵ... ամս Յ...*» (Մննդ., *Ե*, 21):
75. Մաթուսաղայ լեալ ամաց ճԿԵ... *Պետք է լինի՝* «*Մաթուսաղայ լեալ ամաց ճԿէ ...*» (*Մննդ*, *Ե*, 25: Եւս. Կես., *Ա*,

էջ 118, ծն. 1 - **Մ Ալգերեանց**)։

76. Ղամէք լեալ ամաց ՃԶԸ... *Պետք է լինի «Ղամէք լեալ ամաց ՃԶԲ...» (*Ծննդ., Ե, 28*)։ Տե՛ս նաև* Եւս. Կես., *Քր., Ա, էջ 121, ծն. 1 -* **Մ. Ալգերեանց**։

77. ... ամս ՇԿԵ... _ *Պետք է լինի՝ «ամս ՇՂԵ» (*Ծննդ., Ե, 30*)։*

78. Նոյն էր ամաց Շ, յորժամ առ... կազմել զտապանն։ _ *Պետք է լինի՝ «Նոյ էր ամաց Շ և ծնաւ Նոյ Սէմ, Քամ և Յաբեթ» (*Ծննդ., Ե, 32, Զ, 10*)։*

79. Եւ լեալ Ադամ ամաց ՄԼ ծնաւ զՍէթ... Եւ Սէթ լեալ... Ենովս լեալ... Մաղաղիէլ լեալ... կազմեալ զտապան։ _ *Սույն հատվածում Ադամի ծննդաբանության ժամանակագրությունը տրված է ըստ* Մով. Խոր. *(Ա, IV) և* Եւս. Կես. *(Քր., Ա, էջ 115-121)։ Նշված ժամանակագրական անհամաձայնեցվածության կապակցությամբ* Եւս. Կես. *գրում է՝ «Բայց միայն յունարէն թարգմանութեանս տրւչութիւն՝ ի հրէականէն իւիք իւիք կարի իսկ այլակերպ է։ Բայց ի չամրտացւոց յեբրայականէն ոչ կարի. այլ մինչև զՋրհեղեղն չմիաբանէ, բայց անտի մինչև զԱբրահամու տիս միաբան ունի զաւանդութիւնն, որ առ մեզ ընթերցուած է՝ եօթանասցնից արանց հեբրայեցւոց թարգմանութիւն...» (Քր., Ա, էջ 114-115)։*

80. Ծննդ., Զ, 2։

81. Ծննդ., Զ, 5։

82. Ծննդ., Զ, 12։

83. Ծննդ., Զ, 4, 13։

84. Ծննդ., Զ, 6։

85. Ծննդ., Զ, 13-14։

86. Տե՛ս Եզե., ԺԸ, 23. ԼԼ, 11։

87. ... Միջերկրայս... _ *Այս անվան տակ հասկացվում է Փոքր Ասիան, այսինքն այն երկրները, որոնք գտնվում էին Հունական ծովի (III դարից լատինական աղբյուրների Միջերկրականը) և Պոնտոսի միջև։ «Աշխարհացոյց»-ում այդ անվանումը նշանակում է Անատոլիան կամ Ասիան։ Սակայն* Մով. Խոր. *(տվյալ դեպքում նաև* Թով. Արծ.) *այդ բառի տակ հասկանում է նաև Ասորիքը, որը ձգվում էր Միջերկրական ծովի այժմյան ափի երկարությամբ սկսած Կիլիկյան դարպասներից (հյուսիսում) մինչև Հրեաստանը (հարավում), իսկ արևելքում՝ մինչև Եփրատ գետի պտույթը. (Տե՛ս* **Ա. Վ. Մուշեղյան**. *Որտեղ է գտնվում..., էջ 219-222)։*

88. Ծննդ., Թ, 3։

89. Ծննդ., Զ, 3։

*90.* Ծննդ., *Է, 1-4:*

*91.* ... յայտ առնելով ի թիւ եօթանցն այլ և նեըողութիւն: _ *Սույն արտահայտությունը* **Բրոսեն** *թարգմանել է այս կերպ՝ «par-la il donnait une nouvelle preuve de sa Bienveillanse pour le nombre sept» (էջ 13):* **Վ.** *Վարդանյանը այն թարգմանել է այլ կերպ՝ «Տեղեկացրեց յոթի հետ ուրիշներին նույնպես ներելու մասին» (էջ 31): Մեկնաբանելով Ծննդոց գրքի յոթերորդ գլխի 1-10 տները Փիլոնը գրում է՝ «Տայ հաչտ Փրկիչն յապաշխարութիւն մեղացն, զի... յապականութենէ երկուցեալք՝ ... ի բաց դարձին՝ քաւելով և ապականելով զամբարշտութիւն, և զչարութիւն ամենայն» (էջ 94): Ըստ «Բացատրական Աստվածաշնչի» (Толковая Библия. այնուհետև ТБ) մեկնաբանի «Վերջին չաբաթը տրվում էր, ըստ երևույթին, որպեսզի մարդիկ և կենդանինները վերջնականորեն տեղավորվեն տապանում» (I, էջ 50, ծն. 4):*

*92.* Իսկ ոմանք ի պատմագրաց... ճարտարապետ նաւին կնաւ ... բարեկամօք _ *Տե՛ս* Եւս. Կես.՝ *«Հանդերձեալ կազմեալ ըստ ամենայնի՝ որպէս և առ հրաման, զկին և զորդիս և զկարևոր բարեկամս ի ներքս մուծանել»: (Քր., Ա, էջ 34) և այնուհետև՝ «... բայց ձայն բարբառոյ յօդոյն եկեալ՝ պատուէր տայր, եթէ պարտ է նոցա դիւցապաշտ լինել, և եթէ ինքն վասն դիւցապաշտութեանն երթեալ բնակիցէ ի բնակութիւն դիցն, և կնոջն նորա և դստեր և նաւապետին ի նոյն պատիւ վայելել» (Քր. I, էջ 35-36):*

*93.* Զոր Եւսեբէս Կեսարացի ... ի վերայ աշխարհին Հնդկաց: _*«Իսկ աշխարհն վերին Հնդկաց ասի լինել դստեր նորա: Զոր Եւսեբի Կեսարացւոյ ասէ՝ ի սովորութենէ մինչև զայսօր կին մարդ թագաւորէ ի վերայ աշխարհին Հնդկաց»: Հղումը չի համապատասխանում* Եւս. Կես. *բնագրին, ըստ որի «Ելանել (Նոյ) կնաւ և դստերբ միով հանդերձ, և ճարտարապետաւ նաւին... և զոհ դից մատուցանել և այնուհետև չիք յաչաց լինել՝ նոքօք հանդերձ, որք ընդ նմա ի նաւէն ելանէին»: (Քր., Ա, էջ 35): Ըստ երևույթին* Թովմայի *տեղեկության իրական աղբյուրն է ինչ որ անհայտ մի գրվածք:* Թերևս *խոսքը վերաբերում է Աստղիկին, որին հիշատակում են Վարդանը (էջ 15) և* Մով. Խոր. *իր Բերոսոսյան Սիբիլլայից մեջ բերած հատվածում (Ա, VI, էջ 24):*

*94.* ... Ռահաբ... _ *Տե՛ս* Յեսուի, *Բ, 1-21. Զ, 7, 21, 22, 24.* Մով. Խոր. *Թուղթ առ Սահակ Արծրունի, էջ 286*

*95.* ... և զԳաբաւոնացիսն... առնուլ ի տանէն Սաւուղայ: _ *Հմմտ. Բ Թագ., ԻԱ, 1:*

*96.* ... ոգիք իբրև ութ... _ *Ա., Պետր., Գ, 20:*

*97.* Իսկ Փիլոն ասէ... ի տապանի անդ... _ *Սույն տեղեկությունը* Թով. Արծ. *իրականում քաղում է Հին կտակարանի*

*անվավեր գրքերից (Տե՛ս Հ. Բ, էջ 36): Վարդան պատմիչը նույնպես գրում է, որ Նոյը «... զկնի ելիցն ի տապանէն... ծնաւ, ասեն, որդի մի այլ՝ Մանիտոն անուն և դուստր մի՝ Աստղիկ անուն... Եւ մասն ինչ յարեւմտից հատանեալ՝ ետ Մանիտոնի, և խնդրեաց յոսկերացն Ադամայ... և ետ նմա զլխուունս ծնկացն...» (Մեծին Վարդանայ Բարձրբերդցւոյ Պատմութիւն տիեզերական: Մոսկվա, 1865, էջ 15):*

*98.* Ծննդ., *Է, 16:*

*99.* Ծննդ, *Է, 11:*

*100.* Ծննդ, *Ը, 20:*

*101.* Ծննդ., *Թ, 14-15:*

*102.* Եւ յետ այնորիկ ի բազմանալ... մի ըստ միոջէ մեծն Եպիփանոս: *_ Հմմտ.՝ «... որպէս յիրականացն պատմութեանց Հերոդոտեայ է ուսանել ի չորրորդէն, որ յաղագս բաժանելոյ զբոլոր երկիրս յերիս մասունս, և կոչել զոմն Եւրոպէ, և զոմն Լիբիէ, և զոմն Ասիայ, որում և տիրեաց Արշակ»:* (Մով. Խոր., *Բ, II, էջ 104): Այդ կապակցությամբ* **Ղ. Ալիշանը** *նկատում է, որ այս տեղեկությունը* Թով. Արծ., *կարծես, քաղել է Եպիփանից (տե՛ս Հայապատում, էջ 29):* **Ա. Տաշյանը** *անդրադառնալով հարցին նշում է, որ Եպիփանու Panarion գրքի պատմական բնույթի պատճառով է, անկասկած, որ* Թովման *հիշատակում է այն (տե՛ս «Գիրք Հերձուածոց», «Արարատ», 1892): Միաժամանակ նա չի բացառում նաև փոխառությունը* Մով. Խոր. *Պատմությունից (Մատենագրական մանր ուսումնասիրութիւնք, էջ 79):*

*103.* Այլ և զՓիլոնեայսն... Եւսեբի Կէսարացւոյ: *_ «Փիղոն Աղեքսանդրացի այր բանիբուն ճանաչէր» (Քր., Բ, էջ 266):*

*104.* Զոր ի մեկնութիւն... ասէ Փիլոն... *_ Ծննդոց գրքի մեկնության, էջ 61-ում Փիլոնը տալիս է Սեմ, Քամ և Յաբէթ անունների հետևյալ ստուգաբանությունը՝ «Նշանակք անուանքս այսք են՝ երից ի բնութենէս իրաց. բարւոյ, և չարի, և անորոշի. զանազանի Սէմն բարւոյ, և Քամն չարի, և Յաբեթն անորոշի»:*

*105.* ... զոր... ասէ Փիլոն... զգրաստն: *_* Թով. Արծ. *այս տեղեկությունները փոխ է առել ոչ թէ Փիլոնից, այլ Հին Կտակարանի անվավեր գրքերից, որտեղ ասվում է, որ Ադամի մահվանից 1300 տարի անց Նոյը հանել է գերեզմանից նրա ոսկորները ջրհեղեղից փրկելու նպատակով և տեղադրել տապանում: «...և եդաւ Ադամ ի գերեզմանին. մինչև ընկալաւ Նոյ հրաման ի հրեշտակէն, որ եցոյց բանալ տեղին և առնուլ ի տապանն զոսկերաց Ադամայ և Եւայի»: (Անկանոն գիրք, Ա, էջ 26):*

*106.* Աստ դիպուածոյն... մասունս կատարեցաւ: *_ Հմմտ.՝*

«Եւ յելանէլ Նոյի ի տապանէն, եւ զմարմինս նախաստեղծին յաւագ որդին իւր ի Սէմ: Եւ նա տարաւ ի վիճակն իւր, որ արդեւս կոչի Շամա տուն, որ է Սէմայ տուն... Եւ զԱդամայն եդ ի Գողգոթայ, ուր խաչեցաւ Քրիստոս ի Հրէիցն ի վերայ գլխոյն Անդամայ» (Անկանոն գիրք, Ա, էջ 330):

107. Սաղմ., ՃԴ, 8:

108. Հմմտ.՝ Սաղմ., ՃԼԴ, 11-12:

109. ... քանզի Քամայ տուաւ... մինչև ի կողմանս արևելից: _ Եւս. Կես., Քր. Ա, էջ 108-109:

110. Ծննդ., Թ, 28:

111. ... Եբերայ: _ Տե՛ս Ծննդ., Ժ, 24:

## ԳԼՈՒԽ Բ

1. Քանզի ասեն սկիզբն աստուծոց՝ զՀին ոմն Բելոս, Հայր Դիայ, որ կոչի Հայերէն Արամազդ: _ Թով. Արծ. սխալմամբ համարում է Բէլին Դիոսի Հայր, իրականում Բէլը հենց ինքն է Դիոսը կամ էլ Արամազդը: Ըստ Թովմայի աղբյուրի՝ Եվս. Կես. «Եւ զԲէղայն ասեն՝ որ յունարէն Դիոս թարգմանի, և Հայերէն Արամազդ...» (Քր., Ա, էջ 25): (Թովման Դիոս ձևը ընկալել է որպէս ուղղ. հոլ., որից բխեցրել է սեռ. հ.՝ Դիայ, մինչդեռ Դիոսը հունարենում Zevs անվան սեռ. հոլովն է _ Διοσ θυνδ ιρσισ ιν νομινατσ εστ Ζευς - ծն. 1 - **Մ. Աւգերեան**):

2. ... և գիր մատենական ի նմանէ գրեալ... յետ ջրհեղեղին եղեալ գիր: _ Հմմտ.՝ «Բերոսոս բայ ասէ... և գրել բազմաց մատեանս, որ և ի Բաբեղոնի բազում զգուշութեամբ պահէին...» (Եւս. Կես., Քր., Ա, էջ 17):

3. Իսկ այլք զԿրոնոսդ... ի Սիպարացւոց քաղաքին: Փխռ. Եւս. Կես.՝ «... հրաման տալ՝ զամենայն զառաջինս և զմիջինս և զվերջինս մատենից փորել և դնել յԱրէգ քաղաքին սիպարացւոց»: (Քր., Ա, էջ 33, 49): Քաղաքի անունը՝ Արեգ (Heliopolis) Թով. Արծ. բաց է թողնում:

4. Իսկ Նեբրովթ որդի Քուշայ, որ ի Քամայ... _ Ծննդոց գրքում (Ժ, 8) գրված է՝ «Քուշ ծնաւ նաև զՆեբրովթ»: Այդ արտահայտությունը չի նշանակում, որ Նեբրովթը Քուշի անմիջական որդին է, այլ ապացուցում է միայն այն իրողությունը, որ Նեբրովթը սերում է Քուշից ուղիղ վայրընթաց գծով (տե՛ս ТБ, Բ, I, էջ 72, ծն. 2):

5. «Իսկ Նեբրովթ որդի Քուշայ որ ի Քամայ՝ յոյժ ուժգնագոյն ոչ միայն քան զառաջինս ուրուականաց լինել, այլ եւ ոչ Հերակլէ որ յետուստ...» _ Սույն հատվածից երևում է, որ Թովման, համեմատելով Նեբրովթին սկզբից ուրվականների, իսկ հետո

Հերակլեսի հետ, «ուրուականաց» ասելով հասկանում էր ինչ-որ Հերակլեսի հետ համեմատելի, դեռևս կենդանության օրոք փառաբանված հերոսների՝ մարդկանց (և ոչ նրանց հոգիները), որոնք օժտված էին բացառիկ ֆիզիկական ուժով: Փոքր ինչ հետո Թովման կրկին հիշատակում է ուրվականներին՝ «Քանզի առաջնոցն ուրուականք եւ սաուերականք ոմանք...», սակայն կողքին դրված է նշանակությամբ շատ մոտիկ, համանիշ «սաուերականք» բառը:

Եվսեբիոս Կեսարացին իր Քրոնիկոնի Եգիպտոսի պատմությանը նվիրված էջերում նույնպես հիշատակում է ուրվականներին՝ «... եւ եգիպտացիք դից իմն եւ այլոց ոմանց դիւցազանց, եւ առ այնու ուրուականաց եւ մահկանացուաց այլոց թագաւորաց բազում ինչ զառանցելոց առասպելս տողեն». (Ա, 6): «եւ ապա ուրուականաց եւ դիւցազանց Թագաւորութիւնն ամս ՐՊԺԳ». (Ա, 200): «Դից իմն լինել զինքեան եւ դիւցազանց եւ ուրուականացն...» (Ա, 201: Տե՛ս նաև՝ Ա. էջ 202-203:) «... դիւցազանց եւ ուրուականացն...» արտահայտությունը **Մ. Ավգերեանցը** լատիներեն է թարգմանում՝ «post manes et semideos», որտեղ manes-ը նշանակում է՝ «մեռածների հոգիներ», «հանգուցյալների ստվերներ», «աստվածային հոգիներ», իսկ semideos-ը՝ կիսաաստվածներ:

Ակնհայտ է, որ Թովման նկատի ուներ ոչ թե առասպելական թագավորական հարստությունները, այլ աստվածաշնային գրքերում հիշատակված ինչ-որ անձնավորությունների, քանի որ քննության առարկա հատվածի բովանդակությունը անկասկած կապված է աստվածաշնչային իրադարձությունների, հերոսների հետ, որոնք ապրել էին Ներրովթից շատ ավելի վաղ ժամանակներում: Եվ իրոք, Աստվածաշնչում բազմիցս հիշատակվում են հսկաներ, որոնք ապրել են դեռևս ջրհեղեղից առաջ և աչքի էին ընկնում իրենց արտակարգ ֆիզիկական ուժով (օր. Ծննդ. Զ, 4: Թիւ. ԺԳ 33-34: Բար. Գ 24-28: Ա. Մնաց. Ի, 4, 6, 8: Բ. Թագ. ԻԱ 16-22):

Աստվածաշնչի հայերեն թարգմանությունում նախաջրհեղեղյան մարդկությունը անվանվում է «սկայք»:

Նույն այդ բառով՝ «исполины» (սկայք) այն կոչվում է նաև Աստվածաշնչի ռուսերեն թարգմանությունում: Մինչդեռ Թովման օգտագործում է այդ պարագայում երկու տերմին՝ «ուրուականք» և «սաուերականք»: Դրա բացատրությունը, թերևս, պետք է փնտրել Աստվածաշնչի հին բնագրում, որտեղ նախաջրհեղեղյան մարդկության վերաբերյալ ևս օգտագործված են երկու տերմիններ՝ nephilim և gibborim. Nephilim-ներ էին կոչվում նախաջրհեղեղային մարդկության այն սերունդները, որոնք բնակեցնում

էին երկիրը մինչև այն ժամանակները, երբ Սեթի հետնորդները («որդիք Աստուծոյ») սկսեցին ամուսնական կապեր հաստատել Կայենի դստրերի («դըստերք մարդկան») հետ. այս խառը ամուսնությունների պտուղները հին հրեական բնագրում կոչվում են gibborim-ներ, որոնք ֆիզիկական հատկանիշներով զգալիորեն գերազանցում էին իրենց նախատիպեր nephelim-ներին (ТБ, I, էջ 46, ծն. 4):

Աստվածաշնչի հայերեն բնագրում գրված է՝ «Եւ Քուշ ծնաւ զՆեբրովթ. նա սկսաւ լինել սկայ ի վերայ երկրի» (Ծնդ. Ժ 8), սակայն հին հրեական բնագրում «սկայ» բառի փոխարեն օգտագործված է gibborim տերմինը: Կասկածից վեր է, որ Թովման, համեմատելով Նեբրովթին ուրվականների հետ, նկատի ուներ հենց հրեական բնագրի gibborim-ներին: Նշելով այնուհետև, որ «...առաջնոցն ուրուականք և ստուերականք ոմանք՝ ըստ իւրաքանչիւր կարծեաց թուելոց վրիպեցան յաստուածածանօթն գիտութենէ հոգեշահ նահապետաց» (էջ 40/45), նա նկատի ուներ Բարուքի ասածը, «Ով Իսրայել՝ որպէս զի մեծ է տունն Աստուծոյ, եւ ընդարձակ է տեղի ստացուածոց նորա. մեծ է՝ եւ ոչ գոյ բաւ, բարձր եւ անչափ: Անդ ծնան սկայք անուանիք՝ ի սկզբանէ եղեալք մեծամեծք, հմուտք պատերազմաց. ոչ եթէ զնոսա ընտրեաց Աստուած, եւ ոչ զճանապարհ իմաստութեան ետ նոցա. եւ կորեան առ ի չգոյէ իմաստութեան, եւ սատակեցան վասն անմտութեան իւրեանց» (Գ 24-28): Հենց այս հսկաների վրա է բերել Աստված ջրհեղեղը (Տե՛ս Ծննդ., Զ 4-7: Գ. Մակ. Բ 4: Իմաս. ԺԴ 6, Սիր. ԺԶ 8): Գիրք Թուոցի բնագրում (ԺԳ 33) nephilim տերմինով նշանակված է նաև Պաղեստինի նախաիսրայելական բնակչությունը: «Այն կոչվում էր նաև gibborim» (I, էջ 46, ծն. 4): Գոյություն ունի Պաղեստինի նախաիսրայելական բնակչության ևս մեկ անվանում՝ ռափայիմ, որը ծանոթ էր Մովսես Խորենացուն. «Այլ Զտիտանս եւ Ռափայիմսն յիշեն աստուածային Գիրք» (Մով. Խոր., Ա, 6, էջ 25):

Հսկաների մասին այս առասպելական տեղեկությունների հիմքում ընկած են ինչ-որ տվյալներ, որոնց արմատները թաքնված են դարերի խորքում: «Գիբբորիմների ու նեֆիլիմների հիշատակումը Աստվածաշնչում արդյունք է հնամենի ժողովրդական ավանդության հետագա զարգացման, ըստ որի Պաղեստինում հնագույն ժամանակներում ապրել են հսկաներ: Հետագայում նեֆիլիմ և գիբբորիմ բառերը ստուգաբանորեն սերտորեն կապվում են մեռած հոգիների կամ նրանց ստվերների տարբեր անվանումների հետ» (ЕЭ, VI, էջ 474):

Երրորդ հատվածում, որտեղ Թովման հիշատակում է «ստուե-

րականք»-ներին, այն է՝ «Ոչ կարծողականս ինչ ըստ առաջնոցն Բէլայ ասացելում, կամ այլոց ստուերականացն երեւելոց երազականաց եւ խաբեբա դիւաց, այլ ձեռագործ մեռելականս իսկ եցոյց ի պաշտօն...» (էջ 40/46), ասես, արտացոլվել է ստուերականք և ուրուականք տերմինների ստուգաբանական փոխակերպությունը, որը կատարվում էր զուգահեռաբար նեփելիմ ու գիբբորիմ հակացությունների փոխակերպությանը. վերջիններս արդեն նշանակում էին ոչ թե իրենց առասպելականությամբ հանդերձ կարծես իրական հսկաներին, այլ մեռած մարդկանց երևակայական, տեսլային հոգիներ: Հենց այս վերջին իմաստով օգտագործված է ուրուական տերմինը Ագաթանգեղոսի Պատմությունում (և բացի Թովմայից միայն նրա մոտ): (Ագաթ., էջ 80):

Վերոհիշյալ երեք հատվածներն էլ Աստվածաշնչի հաղորդածի շրջանակներից դուրս չեն գալիս: Այն հանգամանքը, որ բացառությամբ Թովմայի «ուրուականք» տերմինին հանդիպում ենք միայն Եվսեբիոսի Քրոնիկոնի հին հայերեն թարգմանությունում, ինչպես նաև Ագաթանգեղոսի Պատմությունում (իր արդեն ստուգաբանորեն փոփոխված իմաստով), այսինքն V դ. առաջին կեսին պատկանող հուշարձաններում, ընդ որում, ինչպես վերը նշվեց, Թովմայի պատմածը մնում է լոկ Աստվածաշնչի շրջանակներում, կարելի է ենթադրել, որ նրանք ունեցել են մի ընդհանուր աղբյուր, այն է, Աստվածաշնչի առաջին թարգմանությունը ասորերենից հայերեն, կատարված Սահակ Պարթևի կողմից 405-409 թթ.:

Այդ թարգմանությունը օգտագործվում էր եկեղեցական շրջաններում մինչև 432 թ. (Եվսեբիոսի Քրոնիկոնը թարգմանված էր 403-ական թթ., իսկ Ագաթանգեղոսի Պատմության նախնական խմբագրությունը կատարվել է 420-430-ական, ավելի ստույգ՝ 428-435 թթ. (Տե՛ս **С. С. Аревшатян**. Формирование философской науки, էջ 34-44, ինչպես և Ագաթանգեղոսի «Պատմութիւն Հայոց»-ի **Ս. Արևշատյանի** ռուս. թարգմ. կից Առաջաբանի էջ 14): Թվում է, թե հենց ինքը՝ Սահակ Պարթևը, Աստվածաշնչի իր առաջին թարգմանությունը կատարելիս, կարողացել է գտնել երկու տերմիններ՝ «ստուերականք» և «ուրուականք», որոնք շատ հաջող արտացոլել են նախաջրհեղեղյան հսկաների երկու սերունդների՝ nephelim-ների ու gibborim-ների միջև եղած նուրբ իմաստային տարբերությունը, ինչպես նաև ավանդականորեն նրանց հաղորդած միստիկական, տեսլային երանգը, առաջացած ժամանակի ընթացքում տերմինների ստուգաբանական փոփոխության հետևանքով, ինչը վկայում է նրա թարգմանչական արվեստի բարձրագույն մակարդակի մասին:

*Թերևս 432 թ. հետո, երբ Հայաստան է բերվել Աստվածաշնչի հունարեն բնագիրը (Եօթանասնից) և նրա հիման վրա փաստորեն կատարվել Աստվածաշնչի, հատկապես Հին Կտակարանի, նոր թարգմանությունը՝ ուրուականք և ստուերականք տերմինները, որ համազոր էին gibborim և nephelim տերմիններին, փոխարինվել են հունարեն բնագրի «սկայք» (riyos) բառով: «Սկայք»-ը հավասարապես վերաբերվում է nephelim և gibborim տերմիններին ու բնավ չի արտացոլում դրանց միջև եղած այն տարբերությունը, որը նշված է Աստվածաշնչի հրեական բնագրում և թերևս, հին ասորական թարգմանությունում:*

*6.* Իսկ Նեբրովթ... դժուարամարտիկ իբրս քաջապէս և կարողաբար վանեալ _ *Հմմտ.* Եւս. Կես., *Քր., Ա, էջ 58-59:*

*7.* ... քանզի նա խաբկանօք... կախարդի _ *Իմա՝ Նեկտանեբ, Եգիպտոսի վերջին թագաւորը (360-342):*

*8.* ... նաև ոչ աշխարհակալին Աղէքսանդրին... մահկանացու գոլ: _ *Հմմտ. «Պատմութիւն Աղ. Մակ.», էջ 410*

*9.* ... որպէս և արանցն... աւելի բիւրս ամաց... _ *Հմմտ.՝ «...զորմէ յառաջագոյն ասացաք աւելի քան ի Ն բիւրս ամաց ձգէ»: (*Եւս. Կես., *Ա, էջ 6, 26):*

*10.* ... չարս և ներս և սոսս... _ *Տե՛ս* Եւս. Կես.՝ ... *և չարն է՝ Վ. և Ռ. ամ: և ներն Ռ.: և սոսն. Կ: (Ա, էջ 47):*

*11.* Թէպէտ և ոչ ինչ նպաստաւորութիւն առաջիկայ տեսութեանց... կեղակարծութեամբ այլաբանել _ *Հմմտ.* Եւս. Կես.՝ *«... Իսկ արդ՝ եթէ արդար խոսել ինչ ոք զքաղդէացւոց կարծիցէ... և ամենևին իսկ անվաւերական է (Ա, 26) ... մարդկան ի ջրհեղեղէն սատակել.» (Ա, էջ 26-32, ծն. 2 - **Մ. Աւգերեանց**):*

*12.* ... յօրացեալ և ապաստանեալ ի յոյժ բազկի և ի յաղթանդամութիւն հասակի... _ Եւս. Կես., *Ա, էջ 51, ծն. 3 - **Մ. Աւգերեանց**):*

*13.* ... և անդրի ոսկեղէն... առ ի յիշատակ. _ *Տե՛ս* Դան., *Գ,1:*

*14.* ... Թագաւորին... _ *Այսինքն Կիւրոսին:*

*15.* Դան, *ԺԴ, 3:*

*16.* ... ապստամբութիւն առ Աստուած... _ *այս արտահայտութեան աշխարհաբար թարգմանությունը՝ «առաջացրեց դժգոհությունը» սխալ է: Տվեալ դեպքում առ նախդիրը նշանակում է՝ «ընդդեմ, հակառակ»: Առ Աստուած, կամ առ մարդ մեղանչել. «Պատերազմեսցի առ անզգամն» _ Գ Մակ., Է, 6: Իմ. Ն, 21: (ՆԲՀ, I, էջ 281), **Բրոսսեն** իր ֆրանսերեն թարգմանությունում «Ո՛վ Բաբելացի կոյր... գիտութենէ հոգեշահ նահապետացն» հատվածը բաց է թողնում:*

17. Երեմ. *ԺԱ, 44:*

18. *Տե՛ս գլ Բ, ծն. 5:*

19. Ծննդ., ԺԱ, 16:

20. Ծննդ., *ԺԱ, 27-28:*

21. Իմաս., *ԺԴ, 15: Թովմայի մեջբերումը լրիվ չէ և ունի հետեվյալ շարունակությունը՝ «... Զի տարաժամ սգով թախծեալ հայր՝ վաղամեռիկ լինելոյ որդւոյ իւրոյ արար պատկեր: Արդ զայն ժամու զմեռեալ մարդ այժմ իբրև զաստուած պատուեաց, և աւանդեաց իւրոյ հնազանդելոցն խորհուրդս և նուերս»:*

22. ... բարբարոսական թագաւորաց: _ *Այսինքն՝ նախաջրհեղեղյան շրջանի թագավորները (Տե՛ս Եպիփ., Հերձուածոցն Ցանդիմանութիւն, Ա, I):*

23. ... ըստ օրինակին Բելայ... յայլարան խլրտիւնս: _ *Փիւռ.* Եւս. Կես., *Քր., Ա, էջ 52-53, ծն. 3 - **Մ Աւգերեանց**:*

24. ... որ Եբրայեցւոցն ասի... Եբրայեցի լեալ: _ *Հմմտ.՝ «... զի Ադամ առ հասարակ զբնաւ մարդիկ նշանակէ յեբրայեցւոց բարբառն»* (Եւս. Կես., *Քր., Ա, էջ 111):*

25. ... զօրաորդականն Քամայ... _ *Այսինքն՝ Նեբրովթը* (Ծննդ., *Ժ, 9):*

26. ... ոչ միայն զի չես աստուած՝ այլ չուն ես... տողեալ սահին: _ *Հմմտ.՝ Սեբ, էջ 4. Դ Թագ., Ը, 13 (**Гр. Халатянц**, Армянский эпос, с. 101):*

27. Ծննդ., *Թ, 27:*

28. Քանզի Ասիականք արևելից Սեմայ լեալ վիճակ... _ *Տե՛ս* Եւս. Կես., *Քր., Ա, էջ 109:*

29. Եւ այսօքիկ... ի տեսիլ բազմաց: _ *Տե՛ս* Մով. Խոր., *Ա, XI, էջ 37:*

30. ... զոր ոմանք ի պատմագրաց... ասեն... _ *Հմմտ.* Մով. Խոր., *Ա, V, էջ 20: Տե՛ս նաև* Եւս. Կես., *Ա, էջ 201:*

31. Իսկ ըստ պատմագրաց... ասեն զՆեբրովթ. _ *Հմմտ.* Եւս. Կես., *Ա, էջ 109:*

32. ... այլ ըստ պատմագրաց... Արբել ծնանի Նինոս... _ Եւս. Կես., *Ա, էջ 78:* Մով. Խոր., *Ա, V, 120. Տե՛ս **Հ. Մ. Աւգերեանցի** համգամանալից ծն. 1,* Եւս. Կես., *Ա, էջ 76-81:*

33. ... զի ի մատեանս առաջնոցն... եթ նշանակեալս. _ *Հմմտ՝ «Զորոց ամենեցուն իսկ քուրմք ունէին զմատեանս ի մեհենագիրս ի հնոց ժամանակաց՝ մինչ ի պայազատաց ի պայազատս աւանդեալ, թէ որպիսի ոք յիւրաքանչիւր թագաւորացն եղև արութեամբ և քաջութեամբ, և անձամբ և յաղթութեամբ և թէ զինչ ինչ յիւրաքանչիւր ժամանակս գործեցին: Բայց մեզ զիւրաքանչիւր ուրուք իրս ի նոցանէ դատարկութիւն է, և անդի ի բաց*

*անչաՀութիւն՝ գրել: Մանաւանդ զի բազումք իսկ ի նոցանէ անպիտանք կիւրաքանչիւր ժամանակս գտանէին:* (Եւս. Կես., *Քր., Ա, էջ 199): «Բայց զանուանս Թագաւորացն՝ զոր Թագաւորեցին և զբազմութիւն զամացն՝ չունին ինչ փոյթ գրելոյ, յաղագս ոչ գործելոյ ինչ ի նոցանէ արժանի յիշատակի»: (Քր., Ա, էջ 86:* Մով. Խոր., *Ա, V, էջ 21):*

## ԳԼՈՒԽ Գ

*1.* Ցոյցք ժամանակացս այսոցիք... ի բազում խափանմանս: _ *Հմմտ.* Եւս. Կես. *Ա, էջ 82-83:*

*2.* ... զի Թէ և գրեցաւ... բայց ինքեան միայնոյ. _ *Փխտ.* Մով. Խոր., *Ա, XIV, էջ 48:*

*3.* ... Ասիաստանի... _ *Ինչպես նշում է Գր.* **Խալաթեանցը**, *(Арм. эпос, էջ 86, ծն. 3) «Մինչև X դ. հայ մատենագիրներից ոչ մեկը Թովմա Արծրունուց առաջ չի հիշատակել «Ասիաստան» անվանումը»: Հմմտ.՝* Եւս. Կես. *«ասիացւոյ աշխարհ» (Ա,83) «ամենայն ասիացւոց՝ բաց ի Հնդկաց» (Ա, 84):*

*4.* Քանզի և սա ասի Թագաւորեալ... բայց միայն ի Հնդկաց. _ *Փխտ.* Եւս. Կես., *(Քր., Ա, 98. Բ, 57, 62):*

*5.* ... որ և զՆինուէ քաղաք... ի պատիւ անուան իւրոյ: _ *Տե՛ս* Եւս. Կես., *Ա, էջ 100-110, Բ, էջ 62:*

*6. Եւ Զրադաշտ մոգ... մինչև ի սահմանս Խեպտաղաց...* _ *Հմմտ. «... և զԶրադաշտ մոգ արքայի բակտրացւոց զպատերազմէն և զպարտութենէ ի Շամիրամայ»* (Եւս. Կես., *Քր., Ա, էջ 91.* Մով. Խոր., *Ա, VII, էջ 55):*

*7.* ... զԴեպուՀան... _ *Սասանյան պետության կազմի մեջ մտնող Հնդկական քաղաք (***J. Marquart***, Eranšahr..., s. 45 _ ծան.* **Վ. Վարդանյանի***):*

*8.* ... Գովմայիդ... _ *Ըստ երևույթին Իրանի Ջիբալ նահանգում Գովմայյա գետի Հովիտն ընդգրկող շրջանն էր՝ Համադան քաղաքից Հյուսիս-արևելք (Հմմտ.* **G. Le Strange**, *The Lands...4 էջ 212-213 _* **Վ. Վարդանյան**, *ծն. 27): «Աշխարհացոյց»-ում (էջ 352) Հիշատակվում է «Գովմատ» ձևով:*

*9.* ... Գուզբան... _ *«Աշխարհացույցում տրվում է Գոզկան ձևով (էջ 352): Պետք է լինի՝ Գուզկան՝ նաՀանգ Հյուսիս-արևմտյան Աֆղանստանում: (Տե՛ս* **В. Бартольд**. *Историко — географический обзор Ирана с. 59):*

*10.* ... Շերիբամամական... _ *Նշանակում է «Բամականի իշխան (պարսկերեն). Բամականը Բամիկան քաղաքն էր Համանուն գավառում, Խորասանից Հարավ-արևելք (***J. Marquart***, Eranšahr..., s. 44-45 _ Նախն., 354 _ ծն. 29* **Վ. Վարդանյանի***):*

*11.* ... ԽոճիՀրաստան... _ *Գաւառ Իրանի Հարավ-արևել-*

*քում: Կենտրոնն էր Համանուն դղյակը (J. Marquart, Eranšahr..., s. 44-45, էջ 511, _ ծն. 30 Վ. Վարդանյանի):*

*12.* ... յոյժ արութեամբ և քաջութեամբ վանեաց ամս ԾԲ. _ *Փխռ.* Եւս. Կես., *(Քր., Ա, էջ 91 - ծն. 1,* **Մ. Աւգերեանցի***):*

*13.* և ի վախճանելն իւրում... կնոջն իւրում Շամիրամայ ... որոց և Նինոս... զհակառակութիւն Զրադաշտին... և ինքն գնացեալ յԱսորեստանէ... ուրումն Հայկազնոյ ... գտանի յայլոց ասացեալ: *Հմմտ.* Եւս. Կես., *Ա, էջ 91-93 (ծն. 2* **Մ. Աւգերեանցի***): տե՛ս նաև* Մով. Խոր. *Ա, XV, XVI, էջ 48:*

*14* ... որ տիրեաց ամս ԽԲ. _ Եւս. Կես., *Ա, էջ 92:*

*15.* Եւ առեալ զիշխանութիւն... ի խաղաղութեան _ *Հմմտ. «զի անպատերազմասէր և չվշտասէր և կանացի բարք նոցա՝ յամուր զգուշութեան պահէին զնոսա...» (Քր., Ա, էջ 93):*

*16...* Նա և պախարակելով զԲէլայսն... և դէք՝ Հարամանւոյն: _ *Հմմտ.* Եղն. Կոխբ. *§ 145,* Եղիշէ, *էջ 24-25 (R. Thomson, էջ 88, ծն. 5):*

*17.* Արդ յայսմ Հետէ... առ աստուծոյն եղեն: _ *Հմմտ. «Օձք և մողէսք, գորտք և մրջմունք, և որ այլևս խառնափնդոր բազմաճճիք են, մի կայցեն, այլ վաղ թուով Համարով ի մէջ բերցեն ըստ արքունի չափոյն»: (*Եղիշէ, *էջ 53):*

*18.* Դարձեալ ասէ նոյն յիմար Զրադաշտ.. Եղիշէ: _ *Տե՛ս* Եղիշէ, *էջ 24-25.* Եզն. Կող. *§ 145 (R. Thomson, էջ 88, ծն. 5):*

*19.* Իսկ Մանիթոյ արքայ Խեփտաղաց... զմարդն ինքնածին: _ *Մանիթոյ անունը առաջին Հերթին Հիշեցնում է եգիպտական քուրմ և պատմաբան Մանեթոնին (*Եւս. Կեսարացու՝ *«Մանեթովս»,* Մով. Խորենացու՝ *«Մանեթոս»), սակայն այն Հանգամանքը, որ Թովման չատ լավ գիտեր իր Հիմնական աղբյուրներից մեկը՝* Եվս. Կես. Քրոնիկոնը, *որտեղից նա կարող էր քաղած լինել իր տեղեկությունը Մանիթոյի մասին, բացառում է Թովմայի կողմից նման Հայտարարութիւն անելու Հնարավորությունը: Միաժամանակ սույն գլխի ընդհանուր բովանդակությունը բացառում է նաև գրչական վրիպակ: Դրանից Հետևում է, որ խոսքը ոչ թե եգիպտական պատմիչ Մանեթոնի, այլ ինչ որ մեկ այլ անձնավորության մասին է, որը կրում է նույն, կամ էլ չատ նման մի այլ անուն:*

*Առաջինը, ում մոտ Հանդիպում ենք նման անվան, դա Վարդանն է (Պատմութիւն տիեզերական, էջ 15), որը պատմելով Հետջրհեղեղային մարդկանց բնակեցման մասին, գրում է Նոյը. «... դկնի ելիցն ի տապանէն... ծնաւ, ասէն, որդի մի այլ՝ Մանիտոն անուն, և դուստր մի Աստղիկ անուն... և մասն ինչ յարեմտից յատանեալ՝ ետ Մանիտոնի... և ետ նմա զըլսրունս ծնկացն*

*(Ադամայ)...»: Այս հատվածի բովանդակությունը մատնացույց է անում ինչ-որ անկանոն մի գրվածքի վրա:*

*Հին կտակարանի անկանոն գրքում իրոք հանդիպում ենք Մանետուն անվանը հետևյալ կոնտեքստում. «Իսկ Նոյ արեալ զօրհնութիւն Աստուծոյ, էջ ի լեռնէն և բնակեցաւ (յ) Ակոռի: Երբ բազմացան զաւակք նորա՝ իջին (յ) ջեւան և անդ ապրեցան երեք հարիւր տարի: Եւ երկու որդիքն Անդուն և Մանետուն և (միւս) որդիքն աճեցան և բազմացան և լցին զնախիջեւան, և նովաւ լցին զաշխարհս: Եւ անուն տեղւոյն կոչեցաւ Նախիջեւան (Թանգարան հին և նոր նախնեաց. Ա. Անկանոն գիրք, էջ 323-324), և այն է գերեզման Նոյի» (Թանգարան հին ու նոր նախնեաց. Ա. Անկանոն գիրք, էջ 323-324): Ակնհայտ է, որ Վարդանի հիշատակած Մանիտոնը և անկանոն գրքերի Մանետունը միևնույն անձնավորությունն է:*

*Ինչպես Վարդանը, այնպես էլ Անկանոն գիրքը Մանիտոնին ներկայացնում են որպես Նոյի ջրհեղեղից հետո ծնած որդի, սակայն Ծննդոց գրքում ոչ մի ակնարկ այն մասին, թե Նոյը ջրհեղեղից հետո որդիներ է ծնել, չկա: Հարցի կապակցությամբ Եպիփանոսը հետևյալ կարծիք է արտահայտում: «Ջրհեղեղից հետո, քանի որ Նոյյան տապանը կանգ է առել Արարատյան լեռնեբում... ապա սկզբից այնտեղից է կատարվում մարդկանց բնակեցումը... 669 տարիների ընթացքում նրա որդիներից, (չի երևում, որ ինքը՝ Նոյը էլի որդիներ ծնած լիներ) ծնվում են որդիներ և որդիների որդիներ» (**J. Migne**, Patrologiae graecae. T. XII Panarium. Lib. I, s. 182.): Այսպիսով. «ծնաւ» «որդի մի այլ Մանիտոն» ասելով, ենթադրվում է ոչ թե Նոյի անմիջական որդի լինելը, այլ այն, որ Մանիտոնը սերում է Նոյից ուղիղ վայրընթաց գծով: Ելնելով Վարդանի տեղեկությունից, Սեմը, Քամը և Հաբեթը Մանիտոնի և Աստղիկի եղբայրներ են: Աստղիկին հանդիպում ենք նաև Մով. Խոր. Պատմությունում Բերոսյան Սիբիլլայից քաղած առասպելում. «Արդ՝ ի բռնանալն, ասէ, Զրուանայ՝ ընդդիմացան նմա Տիտանն և Յապետոսթէ, ի մարտ պատերազմի ընդ նմա գրգռելով... Աստ ի մէջ անցեալ քոյր նոցա Աստղիկ՝ համոզեալ դադարեցուցանէ զաղմուկն և յանձն առնուն թագաւորել Զրուանայ, բայց դաշինս ուխտից և երդմանց ի միջի հաստատեն, սպանանել զամենայն արու՝ որ ծնանիցի Զրուանայ... Եւ ըսպանեալ զերկուս ոմանս վասն երդման... խորհի այնուհետև քոյր նոցա Աստղիկ հանդերձ կանամբք Զրուանայ, հաւանեցուցանել զոմանս ի Տիտանց՝ ապրեցուցանել զայլ մանկունս, և յարեմու-*

տս կոյս յուղարկել ի լեառնն, որ անուանեալ կարդային Դիւցըն-կեց, իսկ այժմ կոչի Ոլիմպ» (Ա, VI, էջ 24): Այս երկու ցուցմունքներում կարևոր են երկու հանգամանք. 1. Աստղիկը Սեմի քույրն է, իսկ ըստ Մով. Խոր. վկայության «... կողմանք արհելից Զրուան զՍեմ կոչէն» (Ա, VI, էջ 20): 2. Ըստ Վարդանի, Նոյը «... մասն ինչ յարևմտից յատանեալ՝ ետ Մանիտոնի»: Իսկ վերոբերյալ Բերոսյան Սիբիլլայից հատվածում Աստղիկը սպանությունից փրկված մանուկին «ի յարևմուտս կոյս»-է ուղարկում: Դրանից կարելի է եզրակացնել, որ երկու դեպքում էլ խոսքը Մանիտոնի մասին է և քանի որ նրա Նոյի որդի լինելը բացառվում է, ուրեմն նա Զրուանի=Սեմի որդին, ավելի ճիշտ, նրա սերունդներից է:

Աղբյուրները կապում են Սեմին Արևելքի հետ, նշելով, որ նրա սերունդների բնակեցումը կատարվում էր Արևելքի ուղղությամբ: Այսպես, օրինակ, Հովսեփոս Փլավիոսը այդ կապակցությամբ գրում է՝ «Նոյի երրորդ որդի Սեմը ուներ հինգ որդիներ, որոնց սերունդները բնակեցրել են Ասիաստանը, սկսած Եփրատ գետից մինչև Հնդկական օվկիանոսը» (Հնթք., Ա, VI, « 4): Սեմին և իր սերունդներին Արևելքի հետ կապում է նաև Եվս. Կես. «Եւ ի Սեմայ, որ երէց եղբայրն էր, զասորեստանեայսն և զամենայն կողմանս արևելից» (Քր., Ա, էջ 109): Այսպիսով, կարող ենք ենթադրել, որ լինելով Սեմի հետնորդը Մանիտոնը պետք է բաժին ստանար արևելյան կողմերում: Որպես այդ ենթադրության կողմնակի ապացույց կարող է ծառայել Մով. Խոր. հետևյալ հաղորդումը, որը, մանրամասնելով Սեմի սերունդների բնակեցումն արևելյան կողմերում, մեջ է բերում մի անգիր հին զրույց. «Մատեան լեալ զՔսիսութրեայ և զորդւոյ նորա, որ այժմ ոչ ուրեք երևի, յորում, ասեն, կարգ լեալ բանից այսպիսի: Յետ նաւելոյ Քսիսութրեայ ի Հայս և դիպելոյ ցամաքի, գնա, ասէ, մի յորդւոց նորա կոչեցեալն Սեմ ընդ արևմուտս հիւսիսոյ դիտել զերկիրն... և դառնա անդրէն յարևելս հարաւոյ, ուստի եկն: Նորին դարձեալ և առ եզերբ սահմանացն բակտրիացւոց ասէին բնակել սակաւ աւուրս, մնացեալ և մի ոմն յորդւոց նորա անդ» (Մով. Խոր., Ա, VI, էջ 26): Թվում է, որ այդ «մի ոմն»-ը հենց Անկանոն գրքերի և Վարդանի Մանետոն-Մանիտոնն է, որը մնացել և, հետևաբար, բնակություն է հաստատել «առ եզերբ սահմանացն բակտրիացւոց», այսինքն այն տարածքում, որտեղ հաստատվել են դեռևս Ն.Մ.Թ. VII դ. վերջում հյուսիս-արևմտյան Չինաստանից գաղթած «սպիտակ դի»-երի ցեղերը. այդ ցեղերի ճյուղերից մեկը՝ հեփ-

*տաղները մ. թ. II-III դդ. ստեղծել են թագաւորություն և 384 թ. Հանդես եկել պատմական բեմում որպես Սասանյան Իրանի դաշնակիցներ, մոտ երկու դարերի ընթացքում պաշտպանելով նրա հյուսիսային սահմանները եվրասիական տափաստանի քոչվոր ցեղերի հարձակումներից: (Տե՛ս Л. Н. Гумилев Тысячелетие вокруг Каспия, с. 111. Он же, Эфталиты и их соседи в IV в., ВДИ, 1959, N 1, с. 129-140: Он же, Древние тюрки, с. 18-19: Р. Фрай. Наследие Ирана, с. 307-312):*

*Այժմ հիմքեր կան նույնացնելու Մանիտոնին Թովմայի «Մանիթոպ արքայ Խեփաղաց»-ի հետ: Եթե Մանիտուն-Մանետոն-Մանիթոպը Սեմի հետնորդն է, իսկ Սեմը հին արևելյան առասպելների Զրվանն է, զրադաշտական լույսի ու կրակի աստված Որմիզդի հայրը, զրադաշտության գրկում առաջացած գնոստիկյան հոսանքի՝ կրվանության գլխավոր աստվածությունը՝ Հոսանք, որի էությունը և ներկայացնում է իր Պատմության սույն գլխում Թով. Արծ., ապա ով է այն իրական անձնավորությունը, որը անճանաչելիորեն փոխված թաքնվում է Մանիթոպ անվան տակ, մի անձնավորություն, որը շարունակել և զարգացրել է զրվանության հիմնական գաղափարը: Թվում է, որ դա կարող էր լինել միայն մանիքեության հիմնադիր Մանին: (Մանիի և նրա ուսմունքի մասին տե՛ս* **Ե. Գ. Տեր-Մինասյան.** *Միջնադարյան աղանդների ծագման և զարգացման պատմությունից., էջ 91-106): Մեր այդ համոզմունքը բխում է հենց Թովմայի շարադրածի բովանդակությունից: Զրադաշտը,— ասում է,— այսպէս զառածանէր, զՍէմ, որդի Նոյի ասել Նոր Զրուան... և յղացաւ Զրուանն երկուորիս... իսկ խարդախն ի նոցանէ... նախաժաման եկն առաջ: Եւ հարցեալ Զրուանն, ո՞վ ես դու՝ ասէ, ես եմ որդին քո Որմիզդ. և նա ասէ. որդին իմ Որմզդ լուսաւոր է և անուշահոտ, դու խաւարայն ես և չարասէր... Որմզդ արար զլոյս, Արհմն արար զխաւար...» Այս հատվածում Թովման պարզեցված ձևով ներկայացնում է զրվանության երկու հիմնական հատկանիշները՝ 1. հավիտենական ժամանակի (այսինքն Զրվանի), հավիտենականության գաղափարը և 2. առասպելը Որմիզդի և Ահրիմանի ծնվելու մասին: «Իսկ Մանիթոպ,— շարունակում է Թովման,— արքայ Խեփտաղաց ևս յաւելուածով զայսոսիկ հաստատէ. ոչ ասել զհուր արարած Որմզդի, այլ բնութիւն Որմզդի... և երկիր պանդոկի Սպանդարամետ աստուծո է ոչ ստեղծեալ յումեքէ, այլ որպէս երևիդ՝ նոյնպէս էր, և կա մնա...»:*

*Մանիի ուսմունքի համաձայն «լույսն ու խավարը նախնական սկզբունքներ են», այսինքն, Թովմայի խոսքերով ասած, կրակը (լույսը) ոչ թէ Որմիզդի ստեղծած, իրենից անջատ նիւթ է, այլ նրա էութիւնն է (բնութիւնն) իսկ ամբողջ աշխարհը և գոյութիւն ունեցող կարգերը խավարի, չարի մարմնացումն է, այսինքն, ինչպես Թով. Արծ. է ասում, Սպանդարամետի (խավարի և չարի աստվածի) կացարանն է:*

*Առաջանում է բնական հարց, իսկ ինչո՞ւ Թով. Արծ. համարում է Մանիթոպին-Մանիին հեփտաղների արքա: Արդե՞ոք իրական Մանիի և հեփտաղների միջև գոյություն ուներ ինչ որ կապ: Մանին (216-276թ.), որը ծնվել է արևմտյան Իրանում, իր ուսմունքի քարոզչությունը սկսել է մ.թ. III դ. կեսերից, ենթարկվելով հալածանքների, տեղափոխվում է արևելյան Իրան (Թուրան), որտեղ իր ուսմունքը լայնորեն տարածվում է, ինչը ժամանակի առումով համընկնում է հեփտաղների թագավորության առաջացման հետ: Երբ 384թ. հեփտաղները առաջին անգամ հայտնվում են պատմական բեմում, մանիքեությունը նրանց միջավայրում արդեն գերիշխող կրոն էր: 569թ. թյուրքական կոտորածից հետո, երբ հեփտաղների թագաւորութիւնը դադարել է գոյութիւն ունենալուց, դժվարամատչելի լեռնային շրջաններում մնացած փոքր հեփտաղական իշխանութիւններում շարունակում էր իր իշխող դիրքը պահպանել մանիքեությունը* (Ричард Фрай, Наследие Ирана, с. 304, 307, 312, 314)*: Ահա թե ինչու արևելյան ժողովուրդների առասպելաբանական գիտակցութիւնում Մանին աստիճանաբար կերպարանափոխվում, դառնում է հեփտաղաց առասպելական թագաւոր: Թերևս որոշ դեր է խաղացել նաև այն հանգամանքը, որ Մանին մոր կողմից ծագում էր պարսից Արշակունի հարստութիւնից:*

*Հօգուտ Մանիթոպի նույնացմանը Մանիի հետ խոսում նաև այն փաստը, որ Զրադաշտը, ինչպես դա ընդունում է մասնագետների մեծամասնությունը, նույնպես ապրել և իր ուսմունքի քարոզչությամբ հանդես է եկել արևելյան Իրանում (Անդ, էջ 53-54):*

*Եթե Թով. Արծ. Մանիթոպ անվան տակ թաքնվում է Մանին, ապա առաջանում է վերջինիս և Զրադաշտի ժամանակագրորեն չհամընկնելու հարցը (մ. թ. III դ. - ն. մ. թ. VI դ.): Սակայն Թովմայի հաղորդումը, թէ «Իսկ Մանիթոպ արքայ խեփտաղաց եւ զայսոսիք հաստատէ...» ամենևին էլ չի պարունակում որևէ ցուցմունք նրանց ժամանակագրական առումով մոտիկ լինելու*

մասին, այլ միայն վկայում է նրանց հայացքների գաղափարական ուղղվածության ընդհանրության մասին: Մանիթոնին (Մանիին) որպես «արքայ խեփտաղաց» ներկայացնելն արտացոլում է այն իրական դերը, որ ուներ մանիքեությունը հեփտաղների միջավայրում:

Մենք փորձեցինք ապացուցել, որ Թովմայի Մանիթոյ անվան տակ թաքնվում է Մանին, սակայն միաժամանակ, թվում է, որ կա ինչ որ կապ նաև նրա և եգիպտական պատմաբան Մանեթոնի միջև: Անդրադառնանք կրկին Եւս. Կես. Քրոնիկոնի այն բաժնին, որը նվիրված է Եգիպտոսի պատմությանը և որը վերնագրված է՝ «Ի Մանեթեանց յեգիպտական յիշատակացն, որ յերիս տոմարս արար մատենագրութիւնս, զդից և զդիւցազանց և զուրուականաց, և զմահկանացուաց թագաւորաց, որ եգիպտացւոց թագաւորէին մինչև ցԴարեհ արքայ պարսից»:

«Առաջին մարդ, _ գրում է Մանեթոնը,_ առ ի յեգիպտացւոց՝ Հեփեստոս, որ և հրոյ գտակ լինէր նորա, յորմէ Արեգակն...» (Քր., Ա, էջ 200): Սույն հատվածը որոշ չափով համեմատելի է Թովմայի Մանիթոյի ասածի հետ՝ «... և Հեփեստոս և Պրոմիտոս, որ է Արեկագն և Լուսին՝ գողացան զհուրն յՈրմզդայ...»: Բացի այդ բովանդակության տեսակետից մակերեսային նմանությունից, մենք հանդիպում ենք այստեղ անունների զարմանալի նմանությանը: Մանեթոն=հուն.՝ Μανεθῶς-Μανεθῶ, լատ. Manetho-Manethi, հայ.՝ Մանեթովս-Մանեթեայ: Մանի=հուն.՝ Μανης-Μανητος. լատ.՝ Manes-Manichaeus: Անկանոն գրքերի Սէմի որդին՝ Մանիտուն. Վարդանի՝ Մանիտոն: Թովմայի՝ Մանիթոյ:

Թով. Արծ. այս առաջին՝ Արծրունյաց իշխանների ծագումնաբանությանը նվիրված գրքում բազմիցս հանդիպում ենք այնպիսի դեպքերի, երբ Թովման իր տեղեկությունների իրական աղբյուրի փոխարեն, երբեմն դրա անհավաստիությունը թաքցնելու նպատակով, հղում է մեկ այլ ավելի վստահելի, բայց և իր տեղեկության հետ կապ չունեցող աղբյուրի վրա, կամ էլ օգտագործելով անունների նմանությունը ստեղծում նոր շատ նման այլ անուն (ինչպես, օր., Հուլիանոս Աղիկառնացին): Տվյալ դեպքում վերոհիշյալ տարբեր, բայց և շատ նման անուններից նա ստեղծել է «Մանիթոյ» անունը, որը, լինելով շատ նման «Մանեթոն» անվանը, գալիս է թաքցնելու նախ իր աղբյուրը՝ Անկանոն գրքերը և, ինչը ավելի կարևոր է, մանիքեության ստեղծող Մանիին, որը պաշտոնական եկեղեցու համար անընդունելի էր: Դա յուրատեսակ մի խաղ է ընթերցողի հետ, որին Թովման ծա-

*ծուկ գցում է կարծես մակերեսում ընկած պատասխանը, միաժամանակ թաքցնելով իրական աղբյուրը և անունները: (Տե՛ս նաև մեր հոդվածը՝ «Ո՞վ է Թովմայի «Պատմութիւնն տանն Արծրունեաց»-ի «Մանիթող արքայ Խեփտաղաց»-ը, ՊԲՀ, 2005, 2, էջ 183-188):*

*20.* ... Տախրիքն կոչին. _ *Հմմտ.* Եղն. Կոխս., *§ 145. Եղիշէ, էջ 24-25 (*R. Thomson*, էջ 88, ծն. 5): Սկզբնապես այդ բառը նշանակում էր «քաղաքացի», հետագայում Պարսկաստանում «շախրիք» էին անվանում կռապաշտության հավատարիմ մնացած մի ցեղ:*

*21.* զեմաւոն լեառն յարեւելս, որ արդարև բարձր է քան զամենայն երկիր _ *Հմմտ. «Եւ Եմաւոն լեառն բարձր է և երկայն քան զամենայն լերունս»: («Աշխարհացոյց», էջ 353):*

*22.* Ղուկ. *ԻԳ, 43:*

*23.* Զոր և Աղէքսանդրի... Ողըմպիադայ վիպագրութիւնք: _ *Ստորև շարադրված պատմվածքը Ալեքսանդր Մակեդոնացու արտակարգ արկածների մասին համարյա բառացի փոխառություն է «Պատմութիւն Աղէքսանդրի Մակեդոնացւոյ» երկից (էջ 257-263): Բառացի փոխառությունները առնված են չակերտների մեջ:*

*24.* ... որ ի հաւուցն ասացեալ եղև»: _ *Այստեղ ավարտվում է փոխառությունը Ստոյն-Կալիսթենից (էջ 263):*

*25.* Եւ դիպողագոյնս է առ այս... բուրաստանին արքունի կացցէ: _ *Այս և հաջորդ նախադասությունը տպագիր բնագրերում առնված է չակերտների մեջ: Սակայն դրանք Թովմա Արծրունու խոսքերն են, որոնց միջոցով պատմագիրն իր կարծիքն է հայտնում Ալեքսանդր Մակեդոնացու դիտած վայրի մասին: (Տե՛ս* **Յ. Տաշեան**, *Ուսումնասիրութիւնք Ստոյն-Կալիսթենեայ, էջ 39-40 _ ծն. 36* **Վ. Վարդանյանի**):

*26.* Այլ և զհուրն զիա՞րդ մասն աստուծոյ... ի փայտից ընդ միմեանս յիրար չփելոյ _ *Հմմտ. «Զի եթէ յորժամ փայտ զփայտ չփի հուր ծնանի.»* (Բարս. Կես., *Յաղագս վեցաւրեայ, էջ 89):*

*27. Բ* Պետ., *Բ, 3:*

*28.* Հռովմ., *Ա, 21-23:*

*29.* Հռովմ., *Ա, 20:*

*30.* Ղեւտ., *Է, 24:*

## ԳԼՈՒԽ Դ

*1.* ... զոր պայազատեաց առաջին Ջամեսոս... կենօք ամս ԼԸ. _ *Փխռ.* Եւս. Կես., *Քր., Բ, էջ 66, ծն. 53 -* **Մ. Աւգերեանց**:

*2.* Արիաս... ամս Լ: _ *Փխռ.* Եւս. Կես., *Քր., Ա, էջ 98, Բ, էջ 70:*

3. ... այլ և ամենայն թագաւորք... և արք կանացիք: _ *Փխռ.* Եւս. Կես., *Քր.*, *Ա*, *էջ 93*, *ծն. 2* - ***Մ. Աւգերեանց:***

4. Ի վերջին ամի սորա (իմա՛ Արադիոսի) եղեն Եսաւ և Յակոբ, որ կոչին երկու նահապետք: _ *Փխռ.* Եւս. Կես., *Քր.*, *Բ*, *էջ 76*, *ծն. 160* - ***Մ. Աւգերեանց:***

5.

| Թով. Արծ. | Եւս. Կես. | |
|---|---|---|
| *<Քսերքսէս Բաղէոս՝ ամս Լ>: Ի վերջին ամի սորա տիրեն եգիպտացւոց հովիւքն՝ (փոխառ. նշված է **Մ. Աւգերեանցի** ծան. 190, Քր., Բ, էջ 79) <ամս ԾԳ>* | *Քսերքսէս Լ* | *Եգիպտացիս ժէ հարստութեամբ թագաւորեցին հովիւք ամս ԾԳ:* |

6. Ի սորա ԻԵ ամին... Բէղղոքոս... _ *Ուղղ. Ի սորա (Արմամիթրեայ) ԻԵ ամին թեսաղացւոց առաջին թագաւորեաց (Թետաղոս):* _ Եւս. Կես., *Քր.*, *Բ*, *էջ 80*, *ծն. 215* - ***Մ. Աւգերեանց:***

7. Ի սորա ԽԳ ամին վախճանեալ Յակոբ մարգարէանայ վասն հեթանոսաց կոչմանն: _ *Փխռ.*, Եւս. Կես., *(տե՛ս Քր., Բ, էջ 88, ծն. 307* _ ***Մ. Աւգերեանց****)*, *սակայն իմաստի տեսակետից կարևոր բացթողումով: «Բաղէոս ԽԳ. Յակոբ վախճանի ի ՃԽէ հասակի իւրոյ, մարգարէացեալ վասն Քրիստոսի և հեթանոսաց կոչմանն»: Եթէ Յակոբի վախճանման տարեթվի բացթողումը այդքան էլ էական չէ, ապա «վասն Քրիստոսի» բառերի բացթողումը զրկում է նախադասությունը իր նախասկզբնական իմաստից: Խոսքը վերաբերում է Յակոբի մարգարեական նախագուշակությանը իր բոլոր որդիների սերունդների ճակատագրի, և, հատկապես, նրա չորրորդ որդու Յուդայի մասին՝ «Թէ մի պակասեցէ իշխան ի Յուդայ, և մի պետ յերանաց նորա, մինչև եկեսցէ՝ որում կայն պահի, և նա է յոյս հեթանոսաց» (Ծննդ., ԽԹ, 10), որը ըստ Յովհան Ոսկեբերանի, նկատի ունի Քրիստոսին (Տե՛ս Т. Б. I, էջ 264-265, ծն. 8-12):*

8.

| Թով. Արծ. | Եվս. Կէս., Բ, էջ 90 |
|---|---|
| *Աղտադաս ամս ԼԲ, առ սովաւ Պրոմիտեւս այր իմաստուն երևեցաւ (փոխառ. նշված է **Մ. Աւգերեանցի** ծան. 332):* | *Աղտադաս ժէ. Ջայսու ժամանակաւ էր ըստ ոմանց Պրոմեթեւս յորմէ զմարդիկ կազմեալս յիշատակեն, թէ իմաստուն էր...* |

*ԼԲ տարեթիվը Եվսեբիոսի կանոնում տեղադրված է կողքի սյունակում և վերաբերվում է սիկոնացւոց Երաստոս թագա-*

*վորին: Վրիպակը Թովմայի անուշադրության հետևանք է:*

*9.* Մամիղոս ամս Լ... ի ժԴ ամի սորա վախճանի Յովսէփ: _ Եւս. Կես., *Քր., Բ, էջ 92, ծն. 362* - ***Մ. Աւգերեանց****:*

*10.* Մաքաղիս ամս Լ. առ սովաւ Ատղաս աստեղագէտ երևեցաւ _ Եւս. Կես., *Քր., Բ, էջ 94, ծն. 378* - ***Մ. Աւգերեանց****: Կանոնում Մանքաղէս:*

*11.* Զփերոս, ամս Ի... Մովսէս մարգարէ: _ Եւս. Կես., *Քր., Բ, էջ 98, ծն. 426* - ***Մ. Աւգերեանց****: Կանոնում Սփերոս:*

*12.* Մամիղոս միւս... ի Թեսաղեայ: _ Եւս. Կես., *Քր., Բ, էջ 98, ծն. 436* - ***Մ. Աւգերեանց****:*

*13.* Սպարեթոս ամս Խ... առաքինանայր յանապատին: _ Եւս. Կես., *Քր., Բ, էջ 102, ծն. 467* - ***Մ. Աւգերեանց****:*

*14.* Ասկատադէս ամս Խ... օրինադիր Հրէից: _ Եւս. Կես., *Քր., Բ, էջ 104, ծն. 505* - ***Մ. Աւգերեանց****:*

*15.* Ամինտէս ամս ԽԵ... մարգարէ վախճանի: _ Եւս. Կես., *Քր., Բ, էջ 108,, ծն. 545* - ***Մ. Աւգերեանց****:*

*16.* Բեղոքոս ամս ԻԵ... տեղիս: _ Եւս. Կես., *Քր., Բ, էջ 114,, ծն. 600* - ***Մ. Աւգերեանց****:*

*17.* Բաղեպարէս ամս Լ... Թևաւոր էր: _ Եւս. Կես., *Քր., Բ, էջ 118, ծն. 669* - ***Մ. Աւգերեանց****:*

*18.* Զովսարէս ամս Ի... ի վերայ Հնդկաց: _ Եւս. Կես., *Քր., Բ, էջ 120, ծն. 689* - ***Մ. Աւգերեանց****:*

*19.* Ղամպերէս ամս Լ... տեղիս: _ Եւս. Կես., *Քր., Բ, էջ 20, ծն. 693* - ***Մ. Աւգերեանց****:*

*20.* Պաննիաս ամս ԽԵ.. շինեցաւ: _ Եւս. Կես., *Քր., Բ, էջ 126, ծն. 745* - ***Մ. Աւգերեանց****:*

*21.* Սովսարմոս ամս ԺԵ... նահատակութիւնք եղեն: _ Եւս. Կես., *Քր., Բ, էջ 128, ծն. 771* - ***Մ. Աւգերեանց****:*

*22.* Միթրէոս ամս ԻԵ: _ Եւս. Կես., *Քր., Բ, էջ 130.*

*23.* Մաւտանէս ամս ԼԱ... ինքն առ սովաւ: _ Եւս. Կես., *Քր., Բ, էջ 132, ծն. 811* - ***Մ. Աւգերեանց****: Կանոնում Տաւտամէս*

*24.* Տևտեայ ամս Խ _ Եւս. Կես., *Քր., Բ, էջ 136:*

*25.* Ոթինես ամս Լ _ Եւս. Կես., *Քր., Բ, էջ 138:*

*26.* Դերկիղոս ամս (Խ)... Դամասկոսի: _ Եւս. Կես., *Քր., Բ, էջ 144, ծն. 941* - ***Մ. Աւգերեանց****:*

*27.* Ղաւոստենէս ամս ԽԵ: _ Եւս. Կես., *Քր., Բ, էջ 148:*

*28.* Պերիտիադէս ամս Լ: _ Եւս. Կես., *Քր., Բ, էջ 152:*

*29.* Ափրատէս ամս Խ: _ Եւս. Կես. *բնագրում Ոփրատէոս ամս Ի (Քր., Բ, էջ 154):*

*30.* Ափրատանէս ամս Ծ: _ Եւս. Կես. *բնագրում Ոփրատանէս ամս Ծ (Քր. Բ, էջ 156):*

*31.* Ակրապազէս ամս ԽԲ: _ Եւս. Կես. *Բ, էջ 162:*

*32.* Թոնոս Կոնկողեռոս, որ կոչի յունարէն Սարդանապա-

ղոս՝ ամս Խ _ Եւս. Կես. բնագրում՝ *«Սարդանապաղղոս, ամս Ի»:* *(Քր., Ա, էջ 100, Բ, էջ 164):*

*33.* Թոնոս Կոնկողեռոս... ի Հուր սատակի: _ *Հմմտ. «Թոննոս Կոնկողեռոս... մատնեալ ի պարտութիւն ի Վարբակայ և ի Բեղեսիոսէ՝ ինքնին զանձն ի Հուր մատնեաց.* (Եւս. Կես., *Ա, էջ 100, Բ, էջ 166):*

*34.* Եւ են ժամանակք Թագաւորութեանն... ամք ՌՅ _ Եւս. Կես., *Ա, էջ 85-86, 100)*

*35.* և Վարբակայ Մարի բարձեալ զիշխանութիւնն Ասորեստանեայց... Հազար տաղանդ արծաթոյ: _ Եւս. Կես., *Ա, էջ 100, Բ, էջ 170:*

*36.* Եւ յետ նորա _ *Իմա՛ Փուայ թագաւորի:*

*37.* Հմմտ՝

| Թով. Արծ. | Եվս. Կես., Բ, էջ 172 |
|---|---|
| *Սա ել ի վերա Հրէաստանի և զմեծ մասն ժողովրդեանն գերեաց յԱսորեստան: <Յետ նորա թագաւորեաց> Սաղմանասար, սա իսպար գերեաց զտասն <ցեղսն Հրէից ազգին խաղա> ցուցանելով ի լերինս մարաց եւ եբարձ զթագաւորութիւնն <ի Սամարիայ> որ եւ տեւեաց ամս ՄԾ:* | *Առ Փակէիւ արքաիւ թագսար թագաւոր Ասորեստանեայց ել ի վերաց Հրէաստանի և զմեծ մասն ամենայն ժողովրդեան եբրայեցւոց տարաւ Ասորեստան:*<br>*Բ, էջ 174*<br>*Առաջին գերութիւն Իսրայէղի՝ Ժ ցեղից ազգին՝ որ Իսրաէղ կոչէին, որոյ ի Սամարիայ թագաւորութիւնն էր, գերեցան ի լերինս Մարաց, Հասեալ զօրօք ի Սամարիայ եւ պաշարեալ զնա Սաղմանասար արքայ քաղդէացւոց: Եւ եկաց թագաւորութիւնն ի Սամարիայ ամս ՄԾ:* |

*Տվյալ Հատվածները Համեմատելի են նաև Դ Թագ. գրքի ԺԵ գլխի 29 և ԺԸ գլխի 9-10 տների Հետ՝ «Յաւուրս Փակէի արքայի Իսրայելի, եկն Թագղաթփաղասար արքայ ասորէստանեայց, եւ առ... զամենայն երկիրն... եւ խաղացոյց զնոսա յասորեստանեայս», «Եւ եղեւ յամին չորրորդի Եզեկիայ արքայի... ել Սաղմանասար արքայ ասորեստանեայց ի վերայ Սամարիա եւ պաշարեաց զնա, եւ առ զնա ի կատարել ամաց երից... եւ խաղացոյց արքայն ասորեստանեաց զՍամարիա յԱսորեստանեայս»: Աստվածաշնչային տվյալ Հատվածը աղբյուր է ծառայել ինչպես Եվսեբիոսի, այնպես էլ Թովմայի Համար: Վերջինս Եւսեբիոսի բնագրում տեղ գտած Թաղսար անվան փոխարեն գործածում է Դ Թագ. գրքում օգտագործված Թագղաթպաղասար ձևը, Եւսեբիոսի բնագրի*

*«գերեցին»-ի փոխարեն՝ «խաղացուցանելով» ձևը:*

*38.* Յետ նորա թագաւորէ եղբայր Սենեքերիմայ... ի վերա նորա _ Հմմտ.

| Թով. Արծ. | Եվս. Կես., Ա, էջ 43 |
|---|---|
| *Յետ նորա թագաւորէ եղբայր Սենեքերիմայ <եւ յետ տիրելոյ Ակիսեայ բաբեղացւոց, մինչ չեւ եւս զերեսուն օր կալեալ էր իշխանութիւն փութ> ապէս մեռանի ի Մարուդաք Բաղդան, իբրև <Մարուդաք Բաղդան բռնացեալ> ունէր զվեց ամիս, սպանեալ եւ նա ի միջէ ումեմնէ, որում անուն էր Ներեղիբդ, եւ թագաւորէր, եւ յերրորդ ամի թագաւորութեան նորա Սենեքերիմոս զօր գումարէր ի վերայ նորա...* | *Յետ թագաւորելոյ եղբօրն Սենիքարիբայ, եւ յետ տիրելոյ Ակիսեայ բաբեղացւոց, մինչ չեւ եւս զերեսուն օր կալեալ էր զիշխանութիւն սպանեալ ի Մարուդաք Բաղդանայ. և Մարուդաք Բաղդան բռնացեալ ունէր զվեց ամիս և սպանանէր զնա ոմն՝ որում անուն էր Եղիբուս. Եւ թագաւորէր: Եւ յերրորդում ամի թագաւորութեան նորա Սենիքարիբուս արքայ ասորեստանեաց զօրս գումարէր ի վերայ բաբեղացւոց...* |

*39.* ... ի Կիւրոսէ, որ թագաւոր <էր Բաբելոնի ամս Թ> _ Հմմտ. «... եւ թագաւորէր Բաբեղոնի Կիւրոս ամս Թ» _ Եւս. Կես., *Քր., Ա, էջ 45:*

## ԳԼՈՒԽ Ե

*1.* Պատերազմ յուզեալ Աժդահակայ... ի պատմագրաց: _ *Տե՛ս* Մով. Խոր., *Ա, XXIV-XXIX:*

*2.* ... գազանամարտիկ զանձառնի զօրսն... _ *Ա. Խ. Համբարձումյանը իր «Մովսէս Խորենացու մի հաղորդման շուրջը» հոդվածում (ԼՀԳ, Եր., 1992, N 2) ենթադրում է, որ «գազանամարտիկ» բառը պետք է հասկանալ որպես «Փղերով կռվողներ», քանի որ գրաբարում «գազան» բառը ուներ նաև «փիղ» նշանակությունը (տե՛ս ՆԲՀ, Ա, էջ 99), տվյալ դեպքում կարևոր չէ արդյո՞ք եղել են Տիգրան թագավորի զորքում փղերը, կամ էլ արդյո՞ք* Թով. Արծ. *հենվել է ինչ որ աղբյուրի տեղեկության վրա, թէ ոչ: «Գազանամարտիկ» բառի նման իմաստավորումը թվում է համոզիչ: Տվյալ կոնտեքստում «Այրարատյան» անվանման տակ, պետք է հասկանալ բուն երևույթին ողջ Հայաստանը (նշվ. հոդվ., էջ 60):*

*3.* Ապա եղև մեծին Տիգրանայ... զօրուծանու _ Մով. Խոր., *Ա, XXIX, էջ 80-81:*

*4.* Նա և բազմախոհեմն Կիւրոս Պարսիկ... գալ օգնել

Տիգրանայ... և բազմադրուատքն: _ *Հմմտ.՝ «օժանդակ և յօժարութեամբ զԿիւրոս ունելով՝ գիշխանութիւնն Մարաց և Պարսից յինքն յափշտակեաց»: (*Մով. Խոր., *Ա, XXXI, էջ 85):*

*5.* Քսերքսէս _ *Այս անձնավորությունը ներկայացված է որպէս Տիգրան Երվանդյանի զորավարներից մեկը: Փոքր ինչ հետո նրա կողքին հայտնվում է նաև Արշէշը (Արշէզը): Բրոսսեն (Histoire des Ardzrouni, էջ 33, ծն. 2) ենթադրում է, որ դրանք մեդական թագաւորական ընտանիքի արքայազներ են:*

*6.* ... հաշտմամբ... _ *Տվյալ կոնտեքստում այս բառը, ի տարբերություն իր սովորական նշանակությունից («հաշտվել», «կրկին բարեկամանալ»), Թովման օգտագործում է «անհաշտություն», «թշնամանք», «ատելություն» իմաստով (տե՛ս ՆԲՀ, Բ, էջ 48):*

*7.* ... քանզի որդիք Սենէքերիմայ... հաւուցն Սենեքերիմանց: _ *Տե՛ս* Եւս. Կես., *Ա, էջ 88-89, 100:* Մով. Խոր., *Ա, XXI, էջ 64-65:*

*8.* ... քաջք ընդ քաջս ելեալ... _ *Հմմտ.՝ «... զի քաջք դիպեալ քաջաց...»* Մով. Խոր., *Ա, XXIV, էջ 82:*

*9.* ... և զԿիւրոս զհետ մտեալ... և Պարսից: _ *Տե՛ս* Եւս. Կես., *Բ, էջ 196:*

*10.* ... կարգէ զնոսա... և բազէս. _ *Հմմտ.* Մով. Խոր., *Բ, VII, էջ 111 _ «... զԱրծրունիսդ գիտեմ ոչ Արծրունիս, այլ արծուի ունիս, որք արծուիս առաջի նորա կրէին»:*

*11.* ... բնակեցուցանէ յնոսա... և ի Հախրամի... _ Մով. Խոր., *Ա, XXX, էջ 83:*

*12.* Պատերազմ յուղեալ Աշդահակայ... յասուցեալ տեղիս բնակեցուցանելով: _ *Այս գլխի սկզբնական մասում* Թով. Արծ., *պատմելով Աժդահակի հետ Տիգրանի պատերազմի մասին, օգտագործում է որպես պատմական հենք* Եվս. Կես. *համառոտ տեղեկությունները մեդական թագաւոր Աստիագի դեմ Կյուրոսի պատերազմի և Մեդական թագաւորության անկման մասին և ծաղկեցնում դրանք* Մով. Խոր. *փոխառված պատմությամբ Աժդահակի դեմ Տիգրանի պայքարի մասին: Այդ ամենին նա ավելացնում է մեզ ոչ մի հայտնի աղբյուրով չհաստատված սեփական տեղեկությունները մեդական արքայազուներ Քսերքսեսի և Արշեզի մասին:*

*13.* Զայս գործ յուեալ Լիդէացւոց թագաւորին... զտէրութիւն Լիդէացւոց: _ Եւս. Կես. *Քր., Բ, էջ 198: Ի տարբերություն* Մով. Խոր., *որը պատերազմը Կրեսոսի դեմ վերագրում է Հայոց թագաւոր Արտաշես I (189-160 թթ. մ.թ.ա.),* Թովման, *հենվելով* Եվս. Կես. *վրա, տեղադրում է Կրեսոսին իրական ժամանա-*

կագրական սահմաններում: Այդ պատերազմը մանրամասն նկարագրում է Հերոդոտը (I, էջ 76-86). կարևոր տեղեկություններ այդ պատերազմում Տիգրանի գլխավորությամբ հայերի մասնակցության մասին պահպանվել են Քսենոֆոնի Կյուրոպատումում (Գ, գլ. I):

14. Իսկ իբրև միապետեցաւ... զգերին Հրէից: _ Եւս. Կես., Քր., Բ, էջ 196:

15. Տունն Գադա _ Լիդացվոց թագավորական հարստության այլաբանական անվանումն է, որը ծագում է հարստության հիմնադրի՝ Գոգի անունից: Ասորեստանցիները անվանում էին նրան Գուգգու, իսկ հույները՝ Գիգեմ:

16. Եւ երկայնագոյնս զպատաղմունսն... ի բլրակի մի տեղւոջ: _ Սույն հատվածում, որի միջին մասը («եւ անդ մարգարէն Եղր... ի բլրակի մի տեղւոջ») կրում է միջանկեալ բնույթ և անմիջական կապ չունի Թովմայի պատմածի հետ, հատուկ ուշադրության է արժանի Մարբակատին անվանումը: Նախ մեզ համար ինչպիսի՞ օգտակար տեղեկություններ հնարավոր է քաղել այս միջանկյալ հատվածից: Ասավածաշնչում Եղր մարգարէի և Զորոբաբելի հոր Սաղաթիելի անունները ոչ մի ձևով իրար հետ չեն կապվում, սակայն հին Կտակարանի անկանոն «Գիրք Եզրի երրորդ»-ում հանդիպում ենք տեղեկության՝ «Ես Սաղաթիէլ որ Եզր կոչեցեալ» (Ա, էջ 251), ինչը մտածել է տալիս, որ թերևս Թովմայի վերոբերեալ տեղեկության աղբյուրը ինչ որ պարականոն գրվածք է: Ըստ Հովսեփոս Փլավիոսի (Հնութք., Ա, էջ 454), Եզրը մեռել և թաղվել է Երուսաղեմում: Եզր մարգարեի և Սաղաթիէլ թագավորի միջև եղած կապի հարցը հետաքրքիր է այնքանով, որքանով հնարավորություն է տալիս որոշել Թովմայի տեղեկության աղբյուրների մոտավոր շրջանակն ու բնույթը: Երկրորդ կարևոր փաստն այն է, որ Մարբակատինը գտնվում էր Արզն քաղաքից ոչ հեռու բլրաշատ վայրում: Այդ երկու հանգամանքները հիմք են տալիս մտածելու, որ Մարբակատին բառը՝ Մարտիրոսուպոլիս քաղաքի բազմաթիվ անվանաձևերից մեկի աղավաղումն է: Հայկական ձևը՝ Նփրկերտ (Neferkert) համապատասխանում է ասորական mefrkt-ին, mprkat-ին, որոնցից առաջացել են meferkat, miperkat ձևերը. արաբերեն myyafarkin-ին համազոր են muharkin և mefarkin ձևերը, ընդ որում «վերջին վանկը՝ «կերտ», «կատ» իրանական բառ է, որ նշանակում է քաղաք» (Ն. Ադոնց Հայաստանը Հուստինիանոսի..., էջ 16-17):

Նփրկերտը նույնացվում է Մեծ Հայքի մայրաքաղաք Տիգրանակերտի հետ, որը կառուցվել է 77թ. մ.թ.ա. Տիգրան Մեծի կողմից Տավրոսյան լեռնաշղթայի հարավային լանջին, ոչ հեռու

Աքեմենեան «մեծ արքայական ճանապարհից»: Այս տեղանքը հայտնի էր հնագույն ժամանակներից՝ խեթական և, ավելի ուշ, ուրարտական թագավորները, որպեսզի հյուսիսից մտնեին Աղձնիք (Արմե-Շուպրիա) պետք է անցնեին Կղեսուրք լեռնանցքով, որից հետո անխուսափելիորեն հայտվում էին Բաթման գետի դաշտավայրում (որտեղ ավելի ուշ կառուցվել է Տիգրանակերտը, միջնադարյան Մարտիրոսուպոլիսը): Նույն ձևով էլ ասորական թագավորների պարսկական մայրաքաղաք Շոշից Լիդիայի մայրաքաղաք Սարդես տանող երթուղիները անցնում էին Հայաստանի տարածքով (մոտավորապես 300-350կմ), ընդ որում Հայաստանի և Միջագետքի սահմաններում ասորեստանյան թագավորների ճանապարհը համընկնում էր Դարեհ I «արքայական ճանապարհի» արևելյան հատվածի հետ: Ասորեստանցիներին այդ լավ ծանոթ ճանապարհը պահպանվել է և ավելի ուշ ժամանակներում, սասանյան թագավորների (IV դ.) օրոք (Գր. Ղափանցյան _ Хайаса—колыбель армян, էջ 158-159, 195): Այս ճանապարհով անցնող զորքերը, անկախ նրանից, թե որ կողմից էին նրանք շարժվում՝ հայտնվում էին Բաթման գետի լայնածավալ ցածրավայրում, որը կարող էր ծառայել բազմաթիվ զորքերի համար որպէս ճամբարային կայան: Այստեղ հաճախակի ծավալվում էին խոշոր ճակատամարտեր: Այդպիսի մի ճակատամարտի կենտրոնում հայտնվեց Տիգրանակերտը մ.թ. առաջ 69 թ. Լուկուլլոսի արշավանքի ժամանակ, իսկ պարսից թագավորի Շապուհ II-ի արշավանքի հետևանքով (364-367 թթ.) վեր է ածվել ավերակների: Միայն Մեծ Հայքի 387թ. բաժանումից հետո քաղաքը վերականգնվել է Մարտիրոսուպոլիս կամ Նփրկերտ անվան տակ: Թովմայի պատմածի դեպքում էլ՝ Կյուրոս թագավորի զորքը հայ զորավարներ Քսերքսեսի ու Արշեզի հրամանատարության ներքո Պարսկահայքից գալիս-հասնում են մինչև Արզն, որը տեղադրված էր Նփրկերտի վերաբերությամբ Բաթման գետի հակադիր կողմում, որտեղ և տեղի է ունենում երկարատև ճակատամարտը: «Եւ անդ,_ ի միջի այլոց ավելացնում է Թովման,_ մարգարէն Եզր եւ թագաւորն Սաղաթիէլ վախճանեալ թաղի ի Մարբակատինա ի բլրակի մի տեղւոջ...»: Եթէ հիշենք նաև, որ ըստ ավանդության, Մարութա եպիսկոպոսը, կառուցելով Մարտիրոսուպոլիս քաղաքը, ժողովել ու թաղել է այնտեղ սրբերի բազմաթիվ մասունքներ, ապա տվյալ կոնտեքստում բոլոր վերոհիշյալ հանգամանքները որոշակի հիմքեր են տալիս ենթադրելու, որ Մարբակատինա անվանումը՝ Մպրկատ, Միպերկատ, Մայֆերկատ ձևերից մեկի աղավաղումն է:

17. Եւ զորդիսն Իսրայէլի առեալ... մեծաւ յաղթութեամբ:

_ Ըստ Աստվածաշնչի գրքի հրեաներին Բաբելոնից Երուսաղեմ ուղեկցում էին Զորոբաբելը և ոմն թագավորական գանձապահ, որի անունը Աստվածաշնչի տարբեր ձեռագրերում տարբեր է գրվում՝ Սամանասար, Շեշբացար, Սասբացար (տե՛ս Ա Եզր., Ա, 1-7, 8, Ե, 14, 16. նաև Բ գլ.): Իսկ Յովս. Փլաբ. նրան անվանում է Միտրիդատ (Հնթք., Ա, XI, գլ. 1, § 3): (Հարցի վերաբերյալ տե՛ս մեր հոդվածը «Թովմայի «Պատմութիւն տանն Արծրունեաց»-ի աղբյուրները և Արծրունի իշխանների ծագումնաբանական առասպելը»):

18. Եզե., ԼԸ, 16-18: ԼԹ, 11, 15:

## ԳԼՈՒԽ Զ

1. Յետ Կիւրոսի... Տիգրան Հայկազնեայ _ Բովանդակության տեսակետից այս վերնագիրը չի համապատասխանում իր կոչմանը: Այն Եւս. Կես. փոխառված պարսից թագավորների ցուցակ է.

| Թով. Արծ. | Եւս. Կես., Քր., Ա, էջ 104 |
|---|---|
| Կամբիւսէս | Կամբիւսէս ամս Ը. |
| Շմերգիս մոգ | Զմերգիս մոգ ամիսս է |
| Դարեհ Վշտասպա | Դարեհ վեշտասպեայ ամս ԼԶ |

Ցուցակը, կարծես, կապում է նախորդ պատմվածքը՝ Կիւրոսի, նրա պատերազմների և Տիգրան Հայկազնի դրանցում խաղացած դերի մասին, և այդ պատմության հաջորդող տեղեկությունը, թե «ի քաներորդ ամի Դարեհի մեռաւ Տիգրան Հայկազնեայ»: Վեցերորդ գլխի բուն բովանդակությունը ոչ մի կապ չունի վերնագրի հետ:

2. Իսկ յետ այսց գործոց... զանուանս ի մատենիս: _ Համա՝ «Յայսմ հետէ... ի Հայս՝ ոչ ինչ ճշմարտագոյն ունիմ պատմել քեզ. քանզի չփոթ իմն ամբոխից լեալ՝ այր զարամբ ելանէին տիրել աշխարհիս». (Մով, Խոր., Ա, XXXII, էջ 87):

3. Տիգրան... Դարեհի: _ Այս ցուցակներից երկրորդը փոխառություն է Եւս. Կես. (Քր., Ա, էջ 104-105): Ինչ վերաբերում է առաջին ցուցակին, ապա Թով. Արծ. չի նշում ո՛վ է հատկապես ընդգրկվել ցուցակում: Ցուցակում նշված առաջին անձնավորությունը թերևս Տիգրան Երվանդյան թագավորն է. երկրորդը՝ Ադրամելեքը արդյո՞ք Սենեքերիմ թագավորի որդին և Արծրունեաց տան հիմնադիրը չէ: Այդ դեպքում հաջորդ անուների տակ ևս պետք է հասկանալ Արծրունի իշխաններին:

4. Ասուդ _ Ասուղ (Արծրունին), որին Թովման ներկայացնում որպես Դարեհ III թագավորի ժամանակակից և դաշնա-

*կից իր Ալեքսանդր Մակեդոնացու դեմ մղված պատերազմում, աղբյուրներից ոչ մեկում չի հիշատակվում: Հր. Աճառյանը, ներկայացնելով նրա մասին Թովմայից քաղած տեղեկությունները, ամփոփում է դրանք մեկ բառով՝ «կեղծիք» (Անձ. Բ, հ. Ա, էջ 229-230: Տե՛ս նաև* R. Thomson, *էջ 104, ծն. 1):*

*5.* ... «քաջք քաջաց... առնուցուն...» *_ Հմմտ.՝ «Ո՜վ քաջքդ ի Հայոց, որք ղանձինս արգելեալ փակեցէք ընդ պարսպօքդ Տիգրանակերտի և արտաքս ձայն արկանեք սպառնալեաց. զի քաջ արանց է յարձակ դաշտի և յազատ տեղւոջ կռուել և կանանց գործ է արգելուլ փակել զինքեանս յերկիւղէ առ հանդերձեալ կռւսն»: (*Մով. Խոր., *Գ,* XXVII, *էջ 289-290):*

*6.* ... զՎահագն Հայկազնեայ... *_* Թով. Արծ. *հնարած կերպար է:*

*7.* Եւ կացեալ ԺԲ ամ Աղեքսանդրի... ամս ԺԲ: *_ Տե՛ս Ա. Մակ., Ա, 7:*

*8.* Եւ ի մեռանելն իւրում... չորեքծագեան կողմանց աշխարհի... *_ Ավանդությունը այն մասին, թէ իրր Ալեքսանդրը դեռևս կենդանության օրոք բաժանել է իր թագաւորությունը (Ա Մակ., Ա, 6) չի հաստատվում Ալեքսանդր Մակեդոնացու պատմիչների կողմից (տե՛ս **Արրիան**, VII, 26):*

*9.* ... զԱնտիպատրոս... *_* Թովման *շփոթում է Անտիպատրոսին Անտիգոնի հետ: Անտիպատրը Մակեդոնիայի փոխանորդն էր (*R. Thomson, *էջ 105):*

*10.* Իսկ Պտղոմէոս ննընդութեամբ... յԵգիպտոս բնակեցուցանէ: *_ Պտղոմէոս Եպիփանէս «... հնազանդեաց զՀրէաստան...» (*Եւս. Կես., *Բ, էջ 236. -* R. Thomson, *էջ 105):*

*11.* ... Նիկանոր... *_ «Ուստի և Նիկանովր կոչեցաւ, որ է Յաղթող» (*Եւս. Կես., *Ա, էջ 349):*

*12.* Պտղոմեայ հասեալ ի տէրութիւն... մեռանի յԵգիպտոս և կայ անդէն: *_ Այս պատմությունը* Թով. Արծ. *հնարանքն է:*

*13.* Յետ մահուան Աղէքսանդրի... մինչև յՕգոստոս կայսր... *_ Տե՛ս* Եւս. Կես., *Քր., Ա, էջ 246-249 (*R. Thomson, *էջ 105, ծն. 1):*

*14.* Իսկ յետ Կ ամի անցանելոյ... ի Բախլ քաղաքի: *_ Տե՛ս* Մով. Խոր., *Բ, II, էջ 102-103:* Եւս. Կես., *Քր., Ա, էջ 349 (*R. Thomson, *էջ 106, ծն. 2):*

*15.* Իսկ սերունդք Ասուդայ... Կիւրոս: *_ Արծրունի իշխանների այս երկրորդ ցուցակը նույնպես անվավեր է: Ցուցակի վերջում հիշատակված Կիւրոսի և նրա պատմության վերաբերյալ Հր. Աճառյանի եզրակացությունը նույնն է՝ «կեղծիք» (Անձ. բառ, հ. Բ):*

16. ... պիտկէն... – «պիտակ» բառից, այսինքն «bastard», անտոհմիկ, ապօրինածին, անարգված (R. Thomson, էջ 107, ծն 7):

17. ... զի հարցեալ լինէր, թէ ո՞վ ոք... խնդրէ զնա Վաղարշակ... – Հմմտ. Գիրք Պիտոյից, V, էջ 95: Թով. Արծ. հետևում է այստեղ, համառոտելով, Մով. Խոր., Ա, VIII, էջ 29, IX, էջ 30 (R. Thomson, էջ 107, ծն. 9):

18. Արշակ տուեալ պատերազմ ընդ Մակեդոնացիսն... ի Հայս... – Թովմայի պատմությունը Կիւրոս Արծրունու սխրագործությունների մասին արժանահավատ չէ:

19. ... և անուանէ զնա Արծրունի ... ի մեջ առնուլ: – «Արծրունի» անվան կապակցությամբ Մով. Խոր. (Բ, VII, էջ 111) մեջ է բերում հետևյալ առասպելը: «Եւ Արծրունիսդ գիտեմ՝ ոչ Արծրունիս, այլ արծուիս ունիս, որք արծուիս առաջի նորա կրէին: Թողում զառասպելացն բաջաղանս, որ ի Հադամակերտի պատմին. մանկան նիրհելոյ անձրև և արև հակառակեալ, և հովանի թռչնոյ՝ պատանւոյն թալկացելոյ»: Թով. Արծ., չհիշատակելով կոնկրետ վերոբերյալ առասպելը, ներկայացնում է «Արծրունի» տոհմական անվան մի քանի այլ բացատրություններ, որոնց հիմքում ընկած էին դեռևս նրա օրոք պահպանված տոհմական առասպելներ: (Այդ հարցի կապակցությամբ տե՛ս **Г. Халатянц**, Армянский эпос, с. 338–339): Թվում է, որ ամենից մոտ է իրականությանը առաջին բացատրությունը, որ կապում է Արծրունի անունը «Արծուիք կոչելոյ» դաշտավայրի հետ, ինչը նշում է և ինքը՝ Թովման՝ «այլ ինձ զառաջինն ախորժելի է զհաւատարմութիւնն ի մէջ առնուլ»:

20. Ցանդ հանեալ Պտղոմեանց զժամանակ թագաւորութեանց... մինչ ի Կղէոպատրեայ, դուստր Պտղոմէի Դիոնիսի. – Հմմտ.՝ «... ի Պտղոմեանց... տիրելոցն եգիպտացւոց...» (Մով. Խոր., Ա, II, էջ 8): «.. Կղէոպատրայ դուստր էր Պտղոմէոս Դիոնիսի...» (Մով. Խոր., Բ, XXI, էջ 136):

21. ... զոր ընթերցաւէրն Պտղոմէոս... որպէս վերագոյն գրեցաք: – Տե՛ս Հովս. Փլաւ., Հնթք., Առաջաբան հեղինակի, § 3. Եւս. Կես., Քր., Ա, էջ 115. Մով. Խոր., Ա, III, էջ 8:

22. սա թագաւորեալ Եգիպտոսի և Աղէքսանդրի... աշխատասիրաբար անցանել պատմութիւնս: – Այս պատմությունը Թովման հնարել է, օգտագործելով որպես սյուժեի կառուցվածքի օրինակ Մով. Խոր. պատմության 2-րդ գրքի 10-րդ գլուխը և քաղելով որոշ տեղեկություններ Մամբրէ Վերծանողի մասին անվավեր մի գրվածքից, որը մեզ է հասել հետևյալ վերնագրի տակ. «Պատմութիւն սուրբ վարդապետաց Հայոց Մովսէսի Քերթողի եւ Դաւթի փիլիսոփայի, որ կոչի էակք» (Տե՛ս մեր

*հոդվածը «Թովմայի «Պատմութիւն տանն Արծրունեաց»-ի աղբյուրներ...», էջ 3-8):*

23. Զոր և մեր ըստ հրամանի քում, Գագիկ զօրավար Հայոց և Վասպուրական իշխան _ *Առաջաբանում Թովման դիմում է «... Գրիգոր Արծրունեաց տէր և Վասպուրական իշխան»-ին որպէս իր պատվիրատուի: Այն հանգամանքը, որ սույն 6-րդ գլխում նա դիմում է Գագիկ իշխանին, նշանակում է, որ Գրիգոր-Դերենիկի օրօք նա հասցրել է գրել միայն առաջին 4-5 գլուխները:*

24. Այս Վահանս, զոր յիշեցաք... _ *Թովմայի հնարած կերպարներից է: Տե՛ս Բ դպր., I գլ. ծն. 4:*

25. ... Կիւրոս ... Զաջուր _ *Ցուցակը կեղծ է:*

26. Արշամ թագաւորեալ Հայոց... ազգին Բագրատունեաց _ Մով. Խոր., *Բ, XXIV-XXV, էջ 138-142:* Եւս. Կես., *Պատմ. եկեղաց., Ա, XIII (***R. Thomson***, էջ 109):*

27. Իսկ Զաջուր Արծրունի... Բագրատունեաց և Արծրունեաց: _ *Հատվածը Թովմայի հնարանքն է:*

28. Այս եղև յամի յութուտասաներորդ արքայի Պարսից: _ *Ըստ երևույթին Թովման նկատի ունի «... Արշավրի արքայի Պարսից»: (*Մով. Խոր., *Բ, XXVI, էջ 142):*

29. ... և թագաւորէ Աբգար որդի նորա: _ *Ենթադրվում է Աբգար IX, որը ապրել է մ. թ. II դարում և իրոք ընդունել է քրիստոնեությունը: Սակայն առասպելը նույնացրել է նրան Քրիստոսի ժամանակակից Արգար V հետ, պատմական ճիշտ դեպքը ետ տանելով մինչև մեր թվարկության սկիզբը (***Ն. Ադոնց***, Հայաստանը հուստ., էջ 385: Տե՛ս նաև՝* **Ա. Անասյան***, Մատենագիտություն, Ա, էջ 3,* **Г. Саркисян***, Армения эллинистического периода, с. 125, 131.* **Е. Мещерская***, Легенда об Авгаре, с. 97–107.* **Г. Мелконян***, Арм. версия легенды с. 212):*

30. ... և լուսաւոր առնել զամենայն մարդ, որ յաշխարհ գալոց է: _ *Տե՛ս* Յովհ., *Ա, 9 (***R. Thomson***, էջ 110):*

31. Յովհ., *ԺԲ, 20-21:*

32. Եւ կեցեալ Արշամ ամս Ի ... աղբիւրն կենաց Քրիստոս: _ *Տե՛ս* Մով. Խոր., *Բ, XXVI, XXX, XXXIII:*

33. Դարձեալ վերստին հրճուանօք... եկեալ հասեալ զայս վայր ժամանակի... _ *Հմմտ.՝ Եւ այժմ ահա զուարճացայց, ոչ փոքր ինչ կրելով խնդութիւն, հասանելով ի տեղիս, յորում մերոյ իսկ բնիկ նախնւոյն սերունդք ի թագաւորութեան հասանեն յաստիճան»: (*Մով. Խոր., *Ա, XXI, էջ 64-65):*

34. ... Խուրան... _ *Տեղեկությունները Խուրանի մասին Թովման քաղել է* Մով. Խոր. *(Բ, XXIX, էջ 147)՝ «Իսկ Աբգարու*

*եկեալ ի քաղաքն իւր յեղեսիայ՝ միաբանեաց ընդ Արեւտայ արքայի Պատրիկացւոց, սատարս տալով նմա ի ձեռն Խոսրանայ ուրումն Արծրունւոյ...»:* Մով. Խոր. *իր հերթին փոխ է առել այդ տեղեկությունը Լաբուբնայից (էջ 19). (Այդ կապակցությամբ տե՛ս* **Г. Халатянц**, «Армянские Аршакиды», *էջ 16-17):*

*35.* Եւ մեք զկարգ պատմութեանց... զանց առնել: _ *էթիկետային բանաձև:*

*36.* Հերովդէս այլազգի որդի Անդիպատրեայ... Ցիսուսի Քրիստոսի _ *Տե՛ս* Եւս. Կես., *Պատմ. եկեղ., էջ 32. Քր., Բ, էջ 250. Հնթք., Բ, XIV, գլ. 7, § 3, XVIII, գլ. 3, § 3:*

*37.* Որպէս Յովսեպոս... ընդ մանկունսն: _ *Հղումը չի հաստատվում: Մանուկների կոտորածի մասին տե՛ս Մատթ., Բ, 16.* Եւս. Կես., *Բ, էջ 260:*

38. Սորա որդիք հինգ ծնանի... և հալածանացն Քրիստոսի... _ *Տե՛ս Հնթք., Բ, XIV, գլ. 7, § 3: Հերովդէսի և Արետի պատերազմի մասին տե՛ս Հնթք., Բ, XVIII, գլ. V, § 1, 2:* Մով. Խոր., *Բ, XXIX, էջ 147:*

*39.* և էր ամ վեշտասաներորդ Տիբերի կայսէր: _ *Համտ.՝ Ցիսուս օծեալն Աստուծոյ՝ Տէր մեր... գայ ի չարչարանս՝ յհննուտասաներորդի ամի Տիբերի թագաւորութեանն»:* Եւս. Կես., *Բ, էջ 264 (**R. Thomson**, էջ 112, ծն. 2):*

*40.* Յետ համբառնալոյ Փրկչին մերոյ... Անանուն... _ Մով. Խոր., *Բ, XXXIV, էջ 157:*

*41.* Բայց ոչ ժամանեալ... մահուն Ադդէի սրբոյ: _ Մով. Խոր., *Բ, XXXIII, էջ 154. Բ, II, էջ 103 (**R. Thomson**, էջ 112, ծն. 5):*

*42.* ... և թագաւորեաց... Գայիոս փոքրն ամս Գ և կէս: _ Եւս. Կես., *Բ, էջ 266 «Գայիոս ամս Գ և ամիսս Դ: (**R. Thomson**, էջ 112, ծն. 5):*

*43.* Իսկ Խուրան լուեալ... Քրիստոսի Աստուծոյ մերոյ. Ամէն: _ *Պատմությունը Հեղինէի մասին փոխ է առված* Մով. Խոր. *(Բ, XXXV, էջ 159-160), որը, իր հերթին, քաղել է այն* Եւս. Կես., *Եկեղեց. պատմ-ից (ԺԱ, Գլ. XII). Տե՛ս նաև Գործ. ԺԱ, 28-30. Հնթք, Բ, XX, գլ. 2 § 6:* Թոմսոն, *հնարելով իր պատմությունը Խուրանի մասին, հենվել է* Մով. Խոր. *հետևյալ երկու հիշատակումների վրա: 1. «... ի ձեռն Խոսրանայ ուրումն Արծրունւոյ...» (Բ, XXIX, էջ 147) և 2. «... իսկ դայեկին նորա Սանոտայ... կնոջ Խոսրենայ Արծրունւոյ... (Բ, XXXVII, էջ 161):*

## ԳԼՈՒԽ Է

*1.* ... Ներսէն... _ *պարթև Արտաշես (Արտավան) III-ի (մոտ 12-38 թթ.) որդին, որը նշանակվել էր Բաբելոնի կառավա-*

րիչ: Հիշում է նաև Մով. Խոր. (*Բ, XXXIII, էջ 155-156, ծն. 162 - Վ. Վարդանյանի*):

2. Բայց ի գնալն Խուրանա... Վաչէ և Արշաւիր երկեան երթալ... և զԱրշաւիր ի գործ պատերազմի... Զի աՀա բարեկամացեալ էր Խուրան ... Իսկ Ներսէհ ունկնդիր եղեալ Դարէհի... սպանեալ զերուանդ: _ *Այդ պատմությունը Թովմայի Հնարանքն է:*

3. Իսկ ՍաՀակ որդի Վաչէի... և մեռեալ ի նմին ի կապանս: _ *Այս պատմությունը ևս մեկ օրինակ է, թէ ինչպես Թովման իրեն յուրաՀատուկ ձևով փոխում է Մով. Խոր. պատմությունը ոմն Տուրի մասին, որը լրտեսություն էր անում Երվանդ թագավորի տնից ապագա Արտաշես թագավորի դայակին՝ Սմբատին, տեղեկություններ ուղարկելով, և այդ պատճառով սպանվեց Երվանդից: Արտաշեսը թագավոր դառնալուց Հետո, Տուրի ծառայության Համար իր 15 որդիներին նախարարական պատիվ է շնորՀում, կոչելով ցեղը նրանց Հոր անունով Տիրունի (Բ, XLVII, էջ 174): Թովման բաց չի թողնում մի Հնարավորություն ևս ներկայացնելու Արծրունիներից մեկին՝ Վաչեի որդի ՍաՀակին որպես Արտաշես թագաւորի փրկության մասնակից և Տուրին փոխարինում է ՍաՀակով, որը նույնպես Հնարած անձնավորություն է:*

4. ... Տարունոյ... _ *Թովմայի բնագրում Հայերենում ընդունված «Տարաւն» (Տարօն) գրության փոխարեն օգտագործված է արաբական «Տարուն» ձևը (R. Thomson, էջ 115, ծն. 2):*

5. Յայնմ Հետէ ի տարակոյս անկեալ... քուն գիշերոյ... _ *Տե՛ս Մով. Խոր., Բ, XXXVIII, էջ 163 (R. Thomson, էջ 115, ծն. 6):*

6. Յետ այսր արեալ Սմբատայ... ի դրան Մարաց Դարէհի... _ *Տե՛ս Մով. Խոր., Բ, XXXVII, էջ 163 (R. Thomson, էջ 115, ծն. 7):*

7. ... առեալ զթագաւորութիւնն Երուանդայ ի ԼԱ ամի Արտաշէսի արքայից արքայի և թագաւորին Յունաց... ամի. _ *Ըստ Մով. Խոր. ((Բ, XLVII, էջ 173-174) Սմբատը Արտաշեսին «... Թագաւորացուցանէ ի վերայ ամենայն երկրիս Հայոց ի քսան և իններորդի ամի ԴարեՀի Պարսից արքայի»: (R. Thomson, էջ 116, ծն. 2):*

8. *Սույն՝ VII գլուխը Մով. Խոր. Պատմության Համապատասխան գլուխների (Բ, XXXVII-XLVII) վերապատումն է, որին ավելացված է Խուրանի որդի Վաչեի և եղբոր՝ Արշավիրի սխրանքների իր իսկ Հնարած պատմությունը:*

### ԳԼՈՒԽ Ը

1. ... բարձրագագաթ ձիւնալիր սպիտակափառ... _ *Փխռ.*

Մով. Խոր., *Ա, XII, էջ 39 (*Նորայր. Բիւզանդացի *Թով. Արծ. և Անան. Արծ., էջ 465):*

*2.* ... ընդդէմ ծիծաղելով ծովուն... գկապուտակ ծիրանափայլ դաշտաձև ծովն. – *Հմմտ.՝ «... յորժամ միտ եղեալ Հայիցիս ընդ ծիծաղել ջուրց նորա, որ ազգի ազգի գոյն ցուցանեն... մերթ ծիրանւոյ, մերթ կապուտակի...» (*Բար. Կես., *Յաղագս վեցօրեայ., էջ 120):*

*3.* ... գիներեր... – *Փիտ. Եղիշէի «Ճառ յԱյլակերպութիւն Քրիստոսի», էջ 236: (*Նորայր Բիւզանդացի, Թով. Արծ. և Անան. *Արծ., էջ 466):*

*4.* ... Կազմեալ Ասկղեպեայ վարժմամբ... – *Բուժիչ բույսերի մասին պատմում է նաև* Ղազ. Փարպ. *§ 7: Ասկղեպիոսի մասին տե՛ս* **Հ. Մանանդյան** *«Scholien». էջ 285 (***R. Thomson***, էջ 117, ծն. 1):*

*5.* ... և չէն մար մարգարիտ գքարաբլուրն յօրինէ ... – *Այսպես է ձեռագրում (էջ 130, 2/19-20): I (56)-ում «չեն մարգարիտ գքարաբլուրն»: «Մար մարգարիտ» բառակապակցությունը ձեռագրում տրված է տողադարձությամբ՝ 18-երորդ տողը ավարտվում է «մար»-ով, 19-երորդ տողը սկսվում է «մարգարիտ» բառով: Ճիշտ կլինի այդ կապակցությունը կազմող բառերը բաժանել հետևյալ կերպ՝ «մարմար գարիտ»: Ակնհայտ է, որ գրիչը տողադարձել է «մարմար» բառը, որը, ի տարբերություն «մարգարիտ» բառի, համապատասխանում է հատվածի բովանդակությանը: Հարող «գարիտ»-ը թերևս, «քարիւ» բառի աղավաղումն է: Այդ դեպքում բառակապակցությունը ուղղելի է հետևյալ կերպ՝ «չէն մարմար քարիւ գքարաբլուրն յօրինէ»:*

*6.* ... Արտամատ... Մատ՝ Եկք Թարգմանի. – *Նմանվելով* Մով. Խոր., *որը «Մարմետ» դաստակերտի անվանումը բացատրում է պարսկերեն «Մար ամադ», այսինքն՝ «Մարն եկավ» (Բ, XLVI, էջ 173) բառերով,* Թով. Արծ. *«Արտամատ» անվան իմաստը ևս բխեցնում է պարսկերեն «Արտաշէս ամադ», այսինքն՝ «Արտաշեսն եկավ» բառերից:*

*7.* Իսկ սրբոցն որ ի Սուկաւէտ լերինն... մեզ չէ յայտ: – *Տե՛ս Սոփերք, էջ 172-174, 176-185:*

*8.* Սահակ որդի Վաչէի... – *Փոքր ինչ վերևում ( Է գլ.)* Թովման *արդեն գրել է Վաչէի որդի Սահակի մասին, որով նա փոխարինել է* Մով. Խոր. *նույն հանգամանքներում հիշատակված Տուրին: Այդ հնարած Սահակի կապակցությամբ* **Հր. Աճառյանը** *գրում է: «Արծրունին այս սուտ պատմությունը պատմելուց հետո, մոռանում է և ասում, որ Արտաշեսի ժամանակ (88-129) պալատում պատիւ գտավ և ստացավ Աղբակ գաւառը (Անձն. բառ IV*

էջ 349): Սակայն թվում է, որ Տուրին փոխարինած Սահակին պետք չէ նույնացնել այս Սահակի հետ: Է և Ը-երորդ գլուխների բովանդակությունը այն մտքին է բերում, որ այն մասում, որը անմիջականորեն կապված է Արտաշեսի մանկության և պատանեկության հետ, Թովմայի աղբյուրն էր Մով. Խոր., իսկ այն ինչ նա գրում է Ը-երորդ գլխում Սահակի և, հատկապես, Ջայլմայրի և նրա դստեր Անուշի մասին իր հիմքում ունի Արծրունյաց իշխանների տոհմական առասպելը, թերևս վերամշակված:

9. Բայց կին ոմն յազգէն Աժդահակայ... դիմեցուածոյն: _ Այս առասպելը պատմում է առաջին անգամ և միայն Թով. Արծ.: Առասպելը հետաքրքիր է նրանով, որ տեղեկացնում է Արծրունիների հին մեդական տոհմի արական գծի ընդհատման մասին. տոհմի վերջին ներկայացուցիչը՝ Անուշը «ի զաւակէ Աժդահակա» ամուսնանում է Խուրանի թոռ՝ Սահակի հետ, որը ստանալով կնոջ հետ որպես օժիտ Աղբագ գաւառը, տոհմի գահ ու պատիվը և Արծրունի ազգանուն կրելու իրավունքը, մտնում է Արծրունյաց իշխանների ծագումնաբանական ցուցակի մեջ, ինչի շնորհիվ տոհմը շարունակել է իր գոյատևումը: Այսպիսով Թովման տվյալ դեպքում էլ դիմել է այն սքեմային, որի միջոցով ստեղծել է Արծրունիների արական գծով տոհմապետ Սենեքերիմի ծագումնաբանությունը: Հետևաբար, այստեղ խոսքը վերաբերում է Թովմայի ժամանակակից Արծրունյաց իշխանական տոհմի մայրական գծին: Հենվելով Մով. Խոր. ասածի վրա, թե «... այս յայտնի է ամենեցուն, զի դժուարահաւաք և տաժանելի է որպէս գիտ նախարարականաց ազգաց ծննդոց յերիս որդւոցն Նոյի, զորքան կամք իցեն խուզել ումէք ըստ իւրաքանչիւր դարուց» (Ա, V, էջ 17), Թովման ձգտում է մայրական գիծը ևս կապել Նոյի երեք որդիներից որևէ մեկի հետ (ինչպես վարվել է Սենեքերիմի դեպքում, որը Սեմի որդու Ասուրի շառավիղն էր՝ Շամիրամի միջոցով): Եթե փորձենք, հետևելով Թովմայի շարադրանքին, վերադառնալ հետ, ապա առաջին անգամ Թով. Արծ. պարզորոշ ակնարկում է Արծրունիների մեդական ծագումը Ա գրքի 5-րդ գլխում, պատմելով, թե ինչպես Տիգրան Թագաւորը գերի է վերցնում երկու «ոմն» մեդական արքայազներ «ի զաւակէ Աժդահակաց» և ցուցաբերած հավատարիմ ծառայության համար շնորհում նրանց արծվակիրների պատվավոր արքունական պաշտոնը և, ոչ թե շնորհում, այլ իրականում, վերադարձնում Արծրունիների բուն տոհմական տիրույթ Աղբակը: Շարունակելով իր «դժուարահաւաք և տաժանելի» գործը, Թովման հասցնում է մեզ մինչև Զրադաշտի ժամանակաշրջանը, որին նվիրված է իր Ա գրքի 3-րդ գլուխը, վերնագրված «Վասն Ասորեստանեայց թա-

*գաւորութեանն եւ թէ որպէս Զրադաշտ եւ Մանիթոպ կացեալ գլխաւորք Արեւելից կողմանց, եւ մոլար ուսմանց նոսա»:* Թովմայի *աղբյուրներից առաջինը՝* Եւս. Կես. *իր Քրոնիկոնում, Զրադաշտի մասին խոսելիս սահմանափակվում է նվազագույն տեղեկություններով, կապված Շամիրամի հետ. 1. «... և Զրադաշտ մոգի արքայի բակտրացւոց պատերազմէն և պարտութենէ ի Շամիրամայ.» (Ա, էջ 91): 2. «Զրադաշտ մոգ՝ արքայ բակտրացւոց՝ ճանաչի ընդ որում պատերազմ ետ Նինոս» (Բ, էջ 64): Այսպիսով,* Եվս. Կես. *չի կապում Զրադաշտին մեդացիների հետ: Այդ հարցում* Թովմայի *աղբյուրն է* Մով. Խոր., *որի տեղեկություններն անմիջականորեն և օգտագործում է նա: Շամիրամը «կողմնապէտ և վերակացու Ասորեստանի և Նինուէի թողու զԶրադաշտ մոգ և նահապետ մեդաց: ... Իսկ ի լինել սխալանաց ինչ Զրադաշտի առ տիկինն և հակառակութիւն ի ներքս անկանել, պատերազմ ի վերայ նորա յարուցանէ Շամիրամ, քանզի բռնանալ ի վերայ ամենայնի խորհէր մարն: Եւ ի սաստկանալն պատերազմին՝ փախստական լինի Շամիրամ յերեսաց Զրադաշտի ի Հայս» (Ա, XVII, էջ 55-56): Լինելով մեդացիների նահապետ և մեդական թագաւորության հիմնադիր, Զրադաշտը, հետևաբար նաև մեդական թագավորների, դրանց թվում նաև Աժդահակի և իգական գծով Արծրունեաց իշխանների տոհմապետն էր:* Թովման *այդ մասին ուղղակի չի գրում, նախ ելնելով այն հանգամանքից, որ Արևելքում կանանց չէին ընդգրկում ծագումնաբանական ցանկերում, և ինչը ավելի կարևոր է, որովհետև պաշտոնական քրիստոնեական եկեղեցու տեսանկյունից Զրադաշտը անցանկալի դեմք էր: Գոյություն ունեցե՞լ է արդյոք որևէ կապ Զրադաշտի և Նոյի որդիներից մեկնումեկի միջև: Այդ հարցին պատասխանում է Եպիփանոս Կիպրացու հետևյալ տեղեկությունը. «Հույները ասում են նրա (իմա՝ Նեմրոդի* – **Մ. Դ**) *մասին, որ դա Զրադաշտն է, որը առաջ շարժվելով դեպի արևելյան երկրները, դառնում է Բակտրիայի բնակիչ: Այստեղից է տարածվում երկրով մեկ անօրինականությունը, որովհետև ծնվում է ոչ բարի գիտության՝ աստղագուշակության և մոգության այդ հնարողը, ինչպես ոմանք ասում են Զրադաշտի մասին. համենայն դեպս, թե ճիշտն ասենք, դա հսկա Նեբրովթի ժամանակաշրջանն էր, և ժամանակի առումով այդ երկուսին՝ Նեբրովթին և Զրադաշտին իրարից բաժանող տարածությունը այդքան էլ մեծ չէր»: (Տե՛ս* Patrologiae graecae, t. 41, p. 186)*: Նման տեղեկություն չկա ոչ* Եվս. Կես., *ոչ էլ* Մով. Խոր. *մոտ, սակայն* Թով. Արծ. *Պատմության երկրորդ գլխում, որ վերնագրված է «Վասն Բէլայ և Բաբելացւոցն և նոցին առասպելաբանութեանցն», կա հետևյալ վկայությունը.*

«Իսկ Ներքովթ ինքնագիմաքար ասաց, զինքն ստուած, և թագաւորեալ ի Բաբելոնի սաստիկ զօրութեամբ՝ առնէր և նշանս կախարդութեամբ և առ աչօք մինչև ի զարմացումն ամենեցուն», որը կողմնակի ապացուցում է, որ Թովման ծանոթ էր վերոգրյալ, կամ էլ մի այլ նման առասպելին, որտեղ Ներքովթ = Զրադաշտը կախարդությամբ էր զբաղվում: Այստեղից հետևում է, որ Զրադաշտը ուղիղ վայրընթած գծով սերում էր Քամի որդու՝ Քուշից և Արծրունյաց իշխանների ընդհատված արական գիծը ծագում է Նոյի որդի Քամից: Թով. Արծ. չի բավարարվում Մով. Խորենացու հաղորդած տեղեկություններով, այլ ներկայացնում է նաև Զրադաշտի ուսմունքի էությունը, այսինքն այն ինչն ըստ Մով. Խոր. պետք չեր «երկրորդել»: Դրա պատճառը կարող էր լինել այն, որ Արծրունեաց հին մեդական տոհմը, որի արմատները սկիզբ են առնում ուրարտական ժամանակաշրջանում (տե՛ս **Гр. Капанцян**, Историко–лингвистические работы, т. II с. 99–113. **С. Бархударян**, Урартское происхождение нахарарского рода Арцруни, с. 29–37) զրադաշտականներ էին:

Զրադաշտի կյանքի (628-551 թթ. մ.թ.ա.) և քարոզչության տարիները համընկնում են Մեդական թագավորության (որի սկիզբը սահմանվում է 671 թ.) ծաղկման և, ապա, անկման ժամանակաշրջանի հետ (612-553 թթ. մ.թ.հ.), երբ մեդական մշակույթի և կրոնի ազդեցությունը տարածվել էր մեդացիներից դեպի հյուսիս, հարավ և արևելք ապրող բոլոր իրանցիների վրա: (Տե՛ս **Р. Фрай,** Наследие Ирана, с. 113): Զրադաշտը ոչ միայն մեդացիների նահապետն էր, այլ նաև ինչպես վկայում են աղբյուրները, մոգ էր, այսինքն սովորական ընկալմամբ՝ աստղագուշակ, աստղագուշակության ստեղծող, ըստ հետնագույն ավանդույթի՝ քուրմ: Սակայն Հերոդոտը ներկայացնում է մոգերին որպես մեդական ցեղերից մեկը (գր. Ա, §101): **Ն. Ադոնցը** («Հայաստանը Հուստինիանոսի դարաշրջանում», էջ 417), անդրդառնալով սույն տեղեկությանը, ասում է, որ տվյալ դեպքում խոսքը ոչ թե վեց մեդական ցեղերի, այլ մեդական ցեղը կազմող վեց տոհմերի մասին է, ընդ որում մոգերի տոհմը գերիշխող դիրք ուներ: Ավեստական գրականության մեջ Զրադաշտը պարսկա-մեդական «տեր» և «կրոնապետ» է կոչվում (տե՛ս նույն աշխ., էջ 419, ծն.1): Հետագայում էր, որ քրմական պարտականությունները դարձել են մոգերի տոհմի համար «ընտանեկան մասնագիտություն» (Տե՛ս **Р. Фрай,** Наследие Ирана, с. 112): Հնագույն ժամանակներում Արծրունիները արդյո՞ք չէին ևս պատկանում այդ ցեղին: Ուրարտական թագավոր Մենուայի (IX դ. վերջը) արձանագրություններում ցեղի, տեղանքի, քաղաքի Artsuiuini անվան կողքին

Հիշատակվում է նաև Artsubedini աստվածի անունը՝ «Արտսուբեդինի աստծուն՝ 1 ցուլ և 2 ոչխար» (տե՛ս **Ս. Բարխուդարյանի** նշվ. հդծ.): Այն հանգամանքը, որ Արծրունիները պահպանել, ընդունել են Արծրունի ազգանունը, արդյո՞ք չի նշանակում, որ «Արտսուբեդինի աստծուն» երկրպագության ծիսակարգում, նրանք կատարել են քրմական ֆունկցիաներ: Չէ՞ որ պատահական չէր, որ Շավասպ Արծրունին Վարդանանց պատերազմի ժամանակ եկել է Հայաստան մոգպետի ուղեկցությամբ: Բոլոր դեպքերում Արծրունիները, որոնք Մեդական պետության անկումից հետո, հայտնվելով Արևելյան Հայաստանում, այսինքն հայոց պետականության ձևավորման արևելյան կենտրոնի տարածքում, հայացվել են, պահպանելով նվիրվածություն զրադաշտականությանը, որը դավանում էին նաև հայերը (ըստ **Ստրաբոնի**՝ «պարսիկների բոլոր սրբազան ծեսերը հարգվում են մեդերի և հայերի կողմից» _ գր. XI, էջ 532), և Մեհրուժան Արծրունին, որը պարսից արքա Շապուհ II զորքը գլխավորելով ներխուժեց Հայաստան, ամենևին էլ դավաճան (ինչպես անվանում է նրան **Ն. Ադոնցը**, տե՛ս նշվ. աշխ. էջ 53, 54) չէր, քանի որ երբեք քրիստոնեություն չի ընդունել, այլ զենքը ձեռքին պաշտպանում էր իր նախնիների հավատքը: Համաձայն խնդրո առարկա առասպելի, Արծրունյաց տոհմի ընդհատված արական գծի ներկայացուցչուհի Անուշը ամուսնանում է Արտաշես Թագավորի հրամանով Խուրանի Թոռան՝ Սահակի հետ, որը իր կնոջ հետ որպես օժիտ ստանում է ոչ միայն Արծրունիների տոհմական տիրույթ՝ Աղբակը, այլ, համապատասխանաբար, նաև գահ ու պատիվը և Արծրունի անունը կրելու իրավունքը: Իսկ ո՞վ էր իրականում ինքը՝ Սահակը: Կասկածից վեր է, որ նա Արծրունի չէր: Սակայն Մով. Խոր., ինչպես նաև նրան հետևող Թովման, նրա պապ՝ Խոսրան-Խուրանին ներկայցնում են որպես Արծրունի: Խոսրանի մասին Մով. Խոր. աղբյուրն էր Լաբուբնան, ըստ որի Աբգար Թագավորը օգնության է ուղարկում Պետրայի Թագաւոր Արետին մի գունդ զինվորներ «ոմն Խոսրանի» գլխավորությամբ (տե՛ս **Гр. Халатянц**, Армянские Аршакиды, с. 98, **Լաբուբնա**, Թուղթ Աբգարու, էջ 19): Ինչպես նշում է **Հր. Աճառյանը** (տե՛ս Անձն. բառ., Բ, էջ 528), Խոսրան անունը=սիրիական «Xesron» անվանը: Դա վկայում է այն մասին, որ Խուրանը կապ չունի մեդական ծագում ունեցող Արծրունիների հետ, այլ հանդիսանում է Ծոփքի Շահիդյան հարստության հետնորդներից մեկը: Ամենայն հավանականությամբ Մով. Խոր., ծանոթ լինելով այդ, կամ մեկ այլ նման առասպելին, հարմար գտավ տալ Լաբուբնայի «ոմն Խոսրանին» Արծրունի ազգանունը: Ինչպես **Հ. Մարկվարտը**, անպես էլ **Ն.**

Ադոնցը համարում էին, որ Արծրունիները ծագում են Տոփքի Շահիրյան հարստությունից, իսկ Գր. Ղափանցյանը ընդունելով Արծրունիների մեդական ծագման հնարավորությունը, չի բացառում նաև նրանց ծոփենական ծագումը (Տե՛ս Ն. Ադոնց, Հայաստանը Հուստինիանոսի դարաշրջանում, էջ 433, ծն. 1. էջ 461, ծն. 1: **Гр. Капанцян**, Историко—лингвистические работы, т. II с. 58: Արծրունիների ուրարտա-մեդական ծագումը ապացուցում է Ս. Բարխուդարյանը, տե՛ս վերը նշված հոդվածը): Իրականում կատարվել է տեղական իշխանական տոհմի, որի ակունքները սկիզբ են առնում ուրարտական ժամանակաշրջանում, և Տոփքի Շահիրյան հարստությունից ծագող եկվոր իշխանական տոհմի միաձուլումը: Առասպելի վերլուծությունը հաստատում է Ն. Ադոնցի «այն թեզը, որ նախարարությունը իրոք բաղկացած է տեղական և եկվոր տարրերից» և որ այն «... ծագում է երբեմնի ինքնուրույն էթնիկական խմբակցություններից»: (Տե՛ս նշվ. աշխ., էջ 516): Առասպելը, որ ինքնին զուրկ չէ իրական հիմքից, հետաքրքիր է նաև այն տեսակետից, որ հանդիսանում է յուրատեսակ խորհրդական արտահայտություն երկու կրոնների բախմանը՝ արևելյան զրադաշտության և արևմտյան՝ Սիրիայից Տոփքի միջոցով Հայաստան ներխուժած քրիստոնեությանը: Մեդական զրադաշտությունը դավանող տոհմի չառավիղ Անուշը ամուսնանում է քրիստոնեական գաղափարները կրող Տոփքի հարստության հետնորդ Սահակի հետ: Այսպիսով Արծրունյաց իշխանների տոհմը վեր է ածվում յուրօրինակ մի ասպարեզի, որտեղ բախվում են զրադաշտական և քրիստոնեական գաղափարները: Այդ է վկայում Թով. Արծ. պատմությունը հավատի հարցերի վերաբերյալ տարաձայնությունների մասին, որոնք առաջացել են Ղազար Փարպեցու ուսուցիչ՝ «սքանչելի» և «հրեշտականկրոն» տեր Աղանի (նրա մասին տե՛ս Ղազ. Փարպ. Պատմութիւն, էջ 13, 93, 411, 437) և նրա հոր Վասակ Արծրունու (=«Վրամ մեծ իշխանն» _ **Մ. Ջամչյան**, Պատմութիւն, Ա, էջ 518: **Գր. Խալաթեանց**, Ղազար Փարպեցին և գործք նորին, էջ 8: **Հ. Աճառյան**, Անձ. բառ., Դ, էջ 126) միջև, որը հակամետ էր զրադաշտությանը և պաշտպանում նրա պապ՝ զրադաշտական Մեհրուժան Արծրունուն: Հատկանշական է, որ Վարդանանց պատերազմի ժամանակ Աղանը իր հոր և երկու հորեղբայրների հետ հեռանում է Բյուզանդիա, կարծես սպասելով, թե ո՞վ է լինելու հաղթողը, և վերադառնում միայն պատերազմը ավարտելուց հետո, մինչդեռ նրա հայրն և հորեղբայրները ընդմիշտ մնում են Բյուզանդիայում: Ըստ երևույթին, քահանայական աստիճանը Աղանը ստացել է Հայաստան վերադառնալուց հետո և շատ առաջացել այդ աս-

*պարեզում: Դատելով Մով. Խոր. պատմածից, նույն պրոբլեմը տարաձայնությունների պատճառ դարձավ նաև Մամիկոնյանների ընտանիքում (տե՛ս Գ, XVIII, էջ 319): Զրադաշտության դեմ մղված պայքարում հաղթանակ տանելուց հետո քրիստոնեական տրադիցիան արել է ամեն ինչ, որպեսզի ոչնչացվեն զրադաշտության նախկինում ունեցած ազդեցության բոլոր հետքերը: Եւ երբ* Թով. Արծ., *փոխանակ սահմանափակվի* Եղս. Կես. *և* Մով. Խոր. *գործերում Զրադաշտի մասին պարունակվող տվյալներով, մանրամասն ներկայացնում է զրադաշտության էությունը և հետո հանգամանալից հերքում այն, ելնելով քրիստոնեության դիրքերից, ապա դրանով նա փորձում է մաքրել Արծրունյաց տոհմի բարի համբավը զրադաշտության, իր տեսակետից, արատավորող բծից: Նույն այդ նպատակին է ծառայում իր իսկ ստեղծած Վահան Արծրունու կերպարը, սբ. Վարդանին ոչնչով չզիջող, որպես վերջինիս զինակից և վկայակից:*

*10. ... Համամ... _ Ինչպես նշում է Հր.* **Աճառյանը** *(Անձ. բառ., հ. Ա, էջ 23), հնարավոր չէ որ երկրորդ դարում հայերը օգտագործած լինեին արաբական Համամ անունը: Ի դեպ, ըստ իր սովորության,* Թովման *փոխարինել է նրանով* Մով. Խոր. *Աբեղյանների տոհմի նահապետ ոմն Աբեղոյին, մի ճարպիկ շողոքորթ և հաճոյախոս մարդու. բնավորության նման գծերով* Թովման *օժտել է նաև Համամին՝ «սէգ, և ամբարհաւան, յոյլ և թոյլ առ պատերազմի գործ...»:*

*11.* Եւ նուազեալ ազգին Արծրունեաց... ի Բակուրակերտ աւանի: _ *Համամի, նրա առաքելության որպես դեսպանի, վերադարձի և մահվան հանգամանքների պատմությունը* Թով. Արծ. *հնարել է* Մով. Խոր. *Պատմության (Բ, LX) հիման վրա, որտեղ Համամը փոխարինում է «... զԱբեղոյ ոմն... զայր չոյտ և չղոմարար...» (էջ 190):*

*12.* Առ սոքօք էին... Բաքգեան: _ *Անվավեր:*

*13.* Վաղարշակ թագաւորեալ... կորովաձիգ աղեղնաւորացն: _ *Տե՛ս* Մով. Խոր. *Բ, LXV, էջ 200 (***R. Thomson***, էջ 120, ծն. 4):*

*14.* Անդ Բաքգեան... գոյժ զմահուանէ թագաւորին: _ *«Հիւսիսային հազրաց» դեմ պատերազմում Բաքգենի և ասպետ Աշոտի մասնակցության մասին վկայում է միայն* Թով. Արծ.:

*15.* ... զամենայն ժամանակս կենաց Խոսրովու, որ թագաւորեաց ամս ԽԸ: _ Մով. Խոր., *Բ, LXXIV, էջ 212:*

**ԳԼՈՒԽ Թ**

*1.* ... հասանէ համբաւ մահուան Արտաւանայ... Սասանա-

կանի. _ *Տե՛ս Ագաթ., § 18,* Մով. Խոր., *Բ, LXVII, էջ 202-203 (R. Thomson, էջ 120, ծն. 6):*

2. ... և հասեալ դաւող մահ... իւրոյ մերձաւորէ: _ *Տե՛ս* Ագաթ. *§ 32,* Մով. Խոր., *Բ, LXIV, էջ 211-212 (R. Thomson, էջ 120, ծն. 7):*

3. ... դիմեցին առ կայսրն... ոչ խաղաղանայր երկիրս... _ *տե՛ս* Մով. Խոր., *Բ, LXVI, էջ 214-215 (R. Thomson, էջ 121, ծն. 1):*

4. ... և ոչ առ գխաղաղութիւն մինչև ի Պռոբոս կայսր, որ արար խաղաղութիւն ընդ Արտաշրի: _ Մով. Խոր., *Բ, LXVII, էջ 215-216 (R. Thomson, էջ 125, ծն. 2):*

5. Աստանօր ոչ է ինձ յայտ... կամ զիա՞րդ. _ *Հենվելով* Մով. Խոր. *այն հայտարարության վրա, թէ՝ «... ինչ զկնի մահուանն Խոսրովայ մինչև զթագաորութիւնն Տրդատայ ի ժամանակս անիշխանութեանն պատմէ (Փերմելիանոսը)՝ ստոյգ համաբելով երկրորդեմք քեզ համառօտ բանիւք», (Բ, LXXV, էջ 214)* Թովման *սահմանափակվում է «... միայն զազգին (Արծրունեաց) չարս բստ գիտի աշխատութեան... վարել մինչ ի թագաւորել Տրդատայ»: Այդ աշխատութեան արդյունքն էր Արծրունեաց իշխանների 5-երորդ և վերջին ցանկը, որը նախորդների պես անվավեր է: Այս վերջին ցանկի օգնությամբ* Թովման *մոտեցնում է Հայաստանում քրիստոնեության տարածման և պետական կրոնի վերածման կարևորագույն շրջանին:*

### ԳԼՈՒԽ Ժ

1. Իսկ ի տանէն Արծրունեաց... մկրտեալ լինի Տիրոց... _ *Ինչպես նախորդ ցուցակներում, այստեղ էլ հերոսի դերում հանդես է գալիս ցուցակի վերջում հիշատակված Տիրոցը, որը իր բնավորության հատկանիշներով լիովին համապատասխանում է քրիստոնեության ընդունման և սուրբ Գրիգորի քարոզչական գործունեության ժամանակին՝ «... այր հեզ, խոնական, խորհրդական, համեստ ի բանս, համեստ ի նայեցուածս...»:* Թովմայի *առաջին գրքում Տիրոցը վերջինն է իր ստեղծած կերպարներից: Առաջին գլխի շարունակությունում և վերջին՝ 11-երորդ գլխում, ընդհուպ մինչև սբ. Սահակի և Մաշտոցի մահը,* Թովման *բավարարվում է, աննշան բացառությամբ, Արծրունիներին վերաբերվող այն տեղեկություններով, որոնք պարունակվում են* Փավս. Բուզ., Մով. Խոր. *և* Ղազ. Փարպ. *գործերում (Շավասպ Արծ., Մեհրուժան, Աղան և այլն):*

2. ... ի ժամու անդ յորում զմեծն Գրիգոր... վարդապետութիւն աշխարհիս Հայոց... _ *Տե՛ս Ագաթ., §§ 795, 796, 802-805:*

3. Ղուկ., *ԺԴ, 8-10:* Մարկ., *Թ, 35:*

4. Եսայ., Ժ, 5, 12. ԼՉ, 1:

5. Բայց մեք գյոյժ հռչակեալսն... մարմնուոր պատերազ-մողաց... _ Հմմտ.՝ Բ Տիմ., Դ, 5-7 (R. Thomson, էջ 122, ծն. 5):

6. ... ի գլուխ երկրորդի պատմագրութեանն: _ Վրիպակ: Մով. Խոր. Տրդատ Թագավորի մահվան և թաղման արարողու-թյան մասին գրում է Բ գրքի ՂԲ գլխում (էջ 245-250):

7. Թագաւորէ Խոսրով... հրամանաւ Կոստանդիանոսի... _ Տե՛ս Մով. Խոր., Գ, V-VI, էջ 261-263:

8. և զզօրն տուեալ ի ձեռս Վաչանայ Ամատունւոյ... _ Մով. Խոր., Գ, IX, էջ 266: Փաւ. Բուզ., Գ, VIII, էջ 18 (R. Thomson, էջ 123, ծն. 3):

9. ... թագաւորեալ ամս ԺԹ: _ Սակայն ըստ Մով. Խոր. (Գ, X, էջ 268)՝ «Բայց ոչ յերկարեալ զկեանս իւր՝ վախճանի, Թագաւորեալ ամս ինն»:

10. Զկնի Խոսրովու Փոքու թագաւորէ Տիրան որդի նորա: _ Փաւ. Բուզ., Գ, XII. Մով. Խոր., Գ, XII, 269 (R. Thomson, էջ 123, ծն. 7):

11. Եւ ի ժամանակին յայնմիկ... Հայր Մարդապետ անուն էր. _ Հմմտ.՝ Փաւ. Բուզ., Գ, XVII:

12. ... զտուն Մամիկոնեան նախարարութեանց... _ Տե՛ս Մով. Խոր., Բ, LXXXI, էջ 221-223:

13. ... ունէր հազարապետութիւնն... Հայր Մարդպետ. ... Որոյ ունկնդիր եղեալ Տիրան... ի խորհուրդ Հայոց զամս բազումս. _ Տե՛ս Փաւ. Բուզ., Գ, XVIII:

14. Տիրան պղծութեան... որ թագաւորեաց ամս ԺԶ: _ Հմմտ.՝ «... կալեալ զթագաւորութիւնն ամս մետասան»: (Մով. Խոր., Գ, XVII, էջ 276: Փաւ. Բուզ., Գ, XX):

15. Արշակ թագաւորեալ... հրամանաւ Շապհոյ արքայից արքայի: _ Մով. Խոր., Գ, XVIII, էջ 277: Փաւ. Բուզ., Գ, XXI:

16. ... տեղեկացեալ և վասն տոհմին Արծրունեաց... կացին անկասկած: _ Այս հատվածի հիմքում դրված են Փաւ. Բուզ., Դ, I, II գլուխները, ընդ որում Փաւ. Բուզ. տեղեկությանը, թէ «Յայնմ ժամանակի խնդիր ելանէր արքայն Արշակ տոհմին զօրավարաց ազգին քաջացն Մամիկոնենից. մանաւանդ զի իւր դայեակս և սնուցիչք էին» Թով. Արծ. հարմար գտավ ավելացնել նաև Արծրունիներին:

17. ... յերկինս բացեալ... ածեր զլեզուն զերկրաւ: _ Սաղմ., ՀԲ, 9 (R. Thomson, էջ 125, ծն. 1):

18. Այլ չարիմացն Հայր կոչեցեալ Մարդպետ... կան մահու չափ: _ Փաւ. Բուզ., Դ, XIV «էջ Հայր Մարդպետ ի գա-ւառն Տարաւնոյ ընդ իւր գիւղսն տեսանել... դնէր թշնամանս

*Տրդատայ արքայի… զհարդ, ասէ, զայսպիսի տեղիս կանանցահանդերձ մարդկան տուեալ է և ոչ արանց»:*

19. Իսկ սրբոյն Ներսէսի իրազէկ եղեալ… ընկալաւ զփոխարէնն: _ Տե՛ս Փաւ. Բուզ., Դ, XIV: Սոփերք, VI, էջ 41-42:

20. Ընդ ժամանակսն ընդ այնոսիկ Թագաւորէ Ցունաց Վաղէս … երկրորդել զյառաջագոյն պատմագրաց նշանագրութիւնս: _ Տե՛ս Մով. Խոր., Գ, XXIX, XXXVI:

21. Բայց յետ բազում պատերազմացն… սրբոյն Ներսէսի: _ Փաւ. Բուզ., Դ, LIV: Մով. Խոր., Գ, XXXIV, XXXV: Սոփերք, VII, էջ 17:

22. Բայց դոյզ մի զամբարշտին Մեհուժանայ… լուսաւորութեանն մերոյ Հօրն: _ Տե՛ս Փաւ. Բուզ., Դ, LIX:

23. Գնա զկնի նոցա և երջանիկն Զուիթայ… որ յարևելս և յարևմուտն: _ Փաւ. Բուզ., Դ, LV-LVII, Մով. Խոր., Գ, XXXV, էջ 300-301:

24. Եւ կալեալ Արշակայ զթագաւորութիւնն ամս ԼՁ… _ Մով. Խոր., Գ, LVI, էջ 301՝ *«Զայս.. լուեալ Արշակայ՝ սաւուղաբար արար ընդ անձին իւրում, որ թագաւորեաց ամս երեսուն»:*

25. *… Աբրահամի ի գեղջէն Արածոյ… _ «Ըստ Ղազար Փարպեցու, Աբրահամ Խոստովանողի (V դ.) ծննդավայրը ոչ թէ Արած գյուղն էր, այլ Տայքի Զենակ գյուղը:* Թով. Արծ. *Աբրահամ Խոստովանողին շփոթել է նույն դարի եկեղեցական գործիչ Աբրահամ երեցի հետ (Ղևոնդյան նահատակներից), որն իրոք ծնվել է Արածում (***Վ. Վարդանյան***, էջ 515, ծն. 89): Արածոյ գյուղից Աբրահամ սարկավագի մասին տե՛ս* Եղիշէ, *էջ 143, 179, 183-185, 189.* Ղազ. Փարպ., *Բ, էջ 161, 166, 185, 188: Աբրահամ Խոստովանողի (ի Զենակաց) մասին տե՛ս* Ղազ. Փարպ., *Բ, 204, 229-232:*

26. Քանզի Սամուէլ որդի Վահանայ… ի կողմանս Խաղտեաց _ Փաւ. Բուզ., Դ, ԾԹ, էջ 152: Մով. Խոր., Գ, XLIX, էջ 319:

27. Իսկ Մեհուժան ոչ թողանայր… յաշխարհէս Թշուառականն: _ *Հմմտ.՝ «Եւ խմբեցաւ պատերազմն ի դաշտի որ կոչի Ձիրաւ… Եւ մանկունքն… մտին ի մեջ ճակատուցն, առաջնորդութեամբ սպարապետին իւրեանց Սմբատայ ասպետի, որդւոյ Բագարատայ, որ յազգէն Բագրատունեաց»:* (Մով. Խոր., Գ, *XXXVII, էջ 303): «Եւ Մուշեղ սպարապետն Հայոց հարկանէր զզօրսն Պարսից ի հարուածս անհնարինս … Ցայնմ ժամանակի բազում պարգևս և պատիւս և բազում գեւղեան զտաւարին Մուշեղի Պապն շնորհէր»* (Փաւ. Բազ., *(Ե, գլ. IV, էջ 166, 167): Ըստ* Փաւ. Բուզ. *Ե, XLIII, էջ 214) Մեհրուժանը սպանվել է շատ ավելի ուշ Պապի որդիներ Արշակի ու Վաղարշակի թագավորության*

*օրոք՝ Մանուէլ սպարապետի նիզակակից Սյունյաց գավառի տէր Բաբիկի ձեռքով: Սուրբ Ներսեսի վարքի ընդարձակ տարբերակում (Սոփերք, VI) Բագրեւանդի ճակատամարտը ներկայացված է ըստ Փաւ. Բուզ., չեն հիշատակվում ոչ Ձիրաւ գյուղը, ոչ էլ Սմբատ սպարապետ Բագրատունին, միայն գավառի Բագրեւանդ անունը և որպես սպարապետ՝ Մուշեղ Մամիկոնյանը: Վարքի համառոտ տարբերակում (Սոփերք, VII) պատմությունը փոքր ինչ փոփոխված է՝ նշվում են ճակատամարտի տեղի անունը՝ Ձիրաւ և Նպատ լեռը, որտեղ աղոթում էր սբ. Ներսեսը: Սակայն ճակատամարտի նկարագրության վերջում ավելացրած է՝ «Ուր և ձեռբակալ իսկ արարեալ Սմբատայ զպիղծն Մեհրուժան Արծրունի, և երկաթ բոլորեալ ի ձեւ պսակի, և շանթիւք հրոյ շողացուցեալ դնէ ի գլուխ նորա և այնպէս զնա սատակէ» (էջ 19-20): Հիմնականում Թովմայի պատմածը համընկնում է Հովհ. Դրասխ. հաղորդածի հետ (գլ. XII), ինչից կարելի եզրակացնել, որ նրանց ժամանակ գոյություն է ունեցել Վարքի մեկ այլ տարբերակ, որը վերաբերվում է Բագրատունիների բարձրացման ժամանակին և որում ընդհանրապէս չի խոսվում Մամիկոնյանների և, մասնավորապես, Մուշեղ Մամիկոնյանի դերի մասին: Սակայն փոքր ինչ հետո՝ XI-երորդ գլխում Թով. Արծ., ինքն իրեն հակասելով, գրում է, որ Մեհրուժանի թոռի՝ Վասակ Արծրունու պարսից թագավորի կողմը անցնելու պատճառը այն էր, որ նա «միանգամայն խորհէր վրեժխնդիր լինել ազգին Մամիկոնէից վասն սպանման Մեհուժանայ հաւոյն իւրոյ»:*

*28. Առ սա ինձ ի ճախ ելանէ... չունք ոչ առին յանձն:* _ *Աղբյուրը ճշտուած չէ:*

## ԳԼՈՒԽ ԺԱ

*1. XI-երորդ գլխի հիմքում դրված են* Մով. Խոր., Գ *գրքի, XXXV-LXVII գլուխները:*

*2.* ... տարեալ հանգուցանեն ի տեղւոջ հայրենեացն վկայարանի ի Թորդան: _ *Ըստ* Փաւ. Բուզ. *(Ե, XXIV, էջ 185)* Մով. Խոր. *(Գ, XXXVIII, էջ 306) և սբ. Ներսեսի Վարքի (Սոփերք, VI, էջ 114, VII, էջ 26) սուրբ Ներսեսին թաղել են Եկեղեաց գավառի Թիլ գյուղում, որը, ինչպես և այլ եկեղեցական կալվածքները Մեծ Հայքում, պատկանում էր Արշակունիների ժամանակ Գրիգոր Լուսավորչի տոհմին:*

*3.* ... ի Մեհուժանայ... Սմբատայ Մամիկոնէի... _ *Վ. Վարդանյանը ենթադրում է, որ բնագրի «Սմբատ Մամիկոնէի»-ն վրիպակ է, որը ուղղելի է «Սմբատայ Բագրատունւոյ», մանավանդ որ այս մասին գրում է նաև հենց ինքը* Թով. Արծ. *նախորդ*

*Ժ գլխում (էջ 515, ծն. 94)։ Սակայն այս վրիպակը Թով. Արծ., թվում է, միտումնավոր է արել։ Օգտվելով, մի կողմից և հիմնականում, Մով. Խոր. Պատմությունից և, թերևս, մեզ չհասած սբ. Ներսեսի Վարքի այն տարբերակից, որտեղ բախտորոշ դերը Շապուհի դեմ մղված պատերազմներում և Մեհրուժանի սպանությունում վերագրվում է միայն Սմբատ Բագրատունուն, և, մյուս կողմից՝ Փաւ. Բուզ. Պատմությունից և սբ. Ներսեսի Վարքի ընդարձակ և համառոտ տարբերակներից, որտեղ Սմբատ Բագրատունու փոխարեն հանդես է գալիս Մուշեղ Մամիկոնյանը, իսկ Մեհրուժանը սպանվում է Մանուէլ Մամիկոնյանի սպարապետության օրոք, Թով. Արծ. անշուշտ նկատած կլիներ իր աղբյուրների հակասությունները և այս «վրիպակի» օգնությամբ փորձեց հարթել դրանք։ Պատահական չէ որ նույն այս գլխի շարունակությունում նա գրում է. «Իսկ Վասակ Արծրունի խոյս տուեալ գնաց առ Արտաշիր Պարսից, խորհելով... վրէժխնդիր լինել ազգին Մամիկոնէից վասն սպանման Մեհուժանայ հաւոյն իւրոյ»։*

*4.* Իսկ նորա տուեալ գնա ի կղզիս Ովկիանու։ _ Մով. Խոր., *Գ, XL, էջ 309։*

*5.* Մեծն Թէոդոս... Ոնորէոս և Արկադ որդիքն Թէոդոսի։ _ Մով. Խոր., *Գ, XLI, էջ 309։*

*6.* Եւ բաժանեալ թագաւորութիւնն... հաւանեալ օրինաց նոցա։ _ *Տե՛ս* Փաւ. Բուզ., *Զ, I,* Մով. Խոր., *Գ, XLII, էջ 310։*

*7.* Իբրև գիտաց Շապուհ... զերկիր իւրաքանչիւր կալաւուք։ _ *Տե՛ս* Մով. Խոր., *Գ, XLII, «Թուղթ Շապհոյ առ նախարարսն»։*

*8.* Որում ունկնդիր եղեալ... թագաւորեալ ամս է _ *Հմմտ.՝ «թագաւորեալ ամենայն Հայոց ամս հինգ, և կիսոցն Հայոց ամս երկուս և կէս»: (*Մով. Խոր., *Գ, XLVI, էջ 316)։*

*9.* Իսկ Յունաց առեալ կացուցին... ոչ ոք թագաւորացուցեալ այնուհետև։ _ Մով. Խոր., *Գ, XLVI, էջ 306։*

*10.* ... Վասակ Արծրունւոյ... _ *Նրան հիշատակում է առաջին անգամ և միայն Ղազար Փարպեցին որպես Աղանի հոր և Տաճատի ու Գոտորզի եղբոր։* ***Մ. Չամչեանը*** *անվանում է նրան «Վռամ մեծ իշխան» IV, էջ 126)։ Ինչպես ենթադրում է* ***Գ. Խալաթեանցը****, Վռամ անունը Վասակի երկրորդ անունն էր, որը թերևս, տվել է նրան պարսից թագաւոր Արտաշիրը (տե՛ս «Ղազար Փարպեցի և գործք նորին», էջ 8)։*

*11.* Զայն ի փոքր ինչ աւուրց... զՎաղարշ գեղբայր Խոսրովու _ Մով. Խոր., *Գ, XLIII-L: Պետք է լինի ոչ թէ Վաղարշ,*

*այլ Վռամշապուհ (... կացուցանելով, զՎռամշապուհ զեղբայր նորին...» _ Մով. Խոր., էջ 321):*

*12.* Իսկ Վասակ Արծրունի... գնաց առ Արտաշիր Պարսից... ընդ որ յոյժ չարեալ... Աղան Արծրունի... և ելեալ Աղան գնաց առ սուրբն Սահակ... Եւ յերկարեալ Աղան զողբսն... անկեալ Աղան... առաջի սրբոյն Սահակայ... անսայր դիպող աւուր: _ Թով. Արծ. *տեղեկությունները չեն համապատվում Ղազ. Փարպ. տվյալներով, այն ինչ նա «սնեալ և ուսեալ» էր «առ ոտս առաքինակրօն երանելւոյն Աղանոյ, որ էր ազգաւ ի հօյակապ և յականաւոր տոհմէնն Արծրունեաց, որդի Վասակայ, եղբօր Տաճատայ և Գոտրզի: ... ի բաց ընկեցեալ արհամարհէր զամենայն վայելս անցաւոր կենցաղոյս... ոգնութեամբ և պահօք անապատ վաստակօք զանմարմնոցն զվերին զօրացն բերէր յանձին զքաղաքավարութիւն: Եւ կեցեալ այսպէս... և կատարեալ ցընթացս նահատակութեան իւրոյ՝ հանգչէր: Եւ եդեալ ի մատրանն ի Հադամակերտի... որոյ յիշատակարանն ընդ անուանս վկայիցն սրբոց պատմեալ քարոզի մինչև ցայսօր և յաւիտեան անուն սրբոյն՝ յամենայն եկեղեցիս Հայաստանեայց աշխարհիս, Վրաց և Աղուանից» (էջ 13-14): Աղանը հիշատակվում է նաև թարգմանիչների թվում (տե՛ս Սոփերք, Բ, էջ 14):*

*13.* Արկադեայ կայսեր... քաղաք թէոդուպօլիս ի Կարին գաւառի... _ *Տե՛ս* Մով. Խոր., Գ, *LIX, էջ 338-339:*

*14.* ... և ինքն Ատոմ հատեալ գնաց ի կողմն Մարաց: _ *Հմմտ.՝ «Եւ յետ այնր (Ատոմ)... անցեալ ի Մոկացն գնայր յաշխարհ»: (*Մով. Խոր., Գ, *LV, էջ 331): Փոքր ինչ վեր՝ VIII գլխում, *Թովման*, պատմելով Փ. Աղբակում տեղակայված Ջլմար բերդի մասին առասպելը, կապում է այն մարերի հետ, որոնք, ինչպես հայտնի է, ուրարտական ժամանակաշրջանում բնակեցնում էին Մոկքն ու Կորճայքը: Այդ նշանակում է, որ *Թովման* գիտակցաբար է գրում «ի կողմն Մարաց» Խորենացու «ի Մոկաց... աշխարհ»-ի փոխարեն:*

*15.* Եւ եղև ի վախճանելն Խոսրովու... այլ թագաւորեցոյց նոցա զորդի իւր Շապուհ... զոր արհամարհեալ Շաւասպ... Իսկ Շապոհ լուեալ զհիւանդանալ հօր... կալան զերկիրս: _ *Տե՛ս* Փավ. Բուզ., Գ, *XVIII*, Դ, *XIV*. Մով Խոր., Գ, *LVI, LVIII: Տե՛ս նաև՝* **Ն. Ադոնց**, *Հայաստանը Հուստինիանոսի..., էջ 319, 449-450, ծն. 2:*

*16.* Եւ թագաւորեալ Վռամ... ստրատելատ Հայոց... Իսկ ի հասանել սրբոյն Սահակայ... Իսկ Արտաշիր յանդգնագոյնս... ընդ որ զչարեալ նախարարքն... չարաբանէն զԱրտաշրէ... և կացուցին... զՍամուէլ... _ *Տե՛ս* Մով. Խոր., Գ, *LXIII-LXIV:*

*17.* ... ընդ մարզպանին Մշկանայ... _ *Հմմտ.՝* Մով. Խոր.՝

*«ընդ ումն պարսիկ մարզպանի, որ կոչի Վեհմիհրշապուհ» (Գ, LXIV, էջ 270): Ինչպես նշում է* **Վ. Վարդանյանը**, *Թովման «Հավանաբար... նկատի ունի հայերի ապստամբությունը ճնշելու նպատակով 451 թ. Հայաստան ներխուժած պարսից զորքի հրամանատար Մուշկան Նյուսալավուրտին: Հայաստանի առաջին մարզպանը Վեհմիհրշապուհն էր (430-438), որին հաջորդեց Վասակ Սյունին (438-455)», (էջ 515, ծն. 98): Մշկանի մասին տե՛ս նաև՝* Եղիշէ, *Դ, էջ 96:*

*18.* Իսկ նախարարքն Հայոց իբրև տեսին... արտաքոյ իրաւանց: _ *Տե՛ս* Մով. Խոր., *Գ, LXIV-LXV:*

*19.* Իսկ Անատողի զօրավարն Յունաց գՀաւուկ ումն Կուկռճացի կացոյց մասինն Յունաց եպիսկոպոսապետ: _ *Սույն տեղեկությունը փոխ է առված* Մով. Խորենացուց *(Գ, LXV, էջ 350)՝ «... և զօրավարին Անատոլեայ ի Կարնոյ զՀաւուկ ի Կուկայառճոյ. զի եթէ ոչ իցէ նմա հաճոյ ունել յիւրում բաժնին՝ տացէ զնա մասինն Յունաց»: Ինչպես նշում է* **Գ. Խալաթեանցը**, *«Խորենացու Պատմության այդ հատուածը... այնքան էլ պարզ չէ, ինչի պատճառով որոշ թարգմանչներ (Vistonii, Coppeletti) հասկացել են այնպես, թէ իբր Հաւուկ Անատոլի թեկնածու էր թափուր աթոռի համար: Նույն ձևով է հասկացել մեր հեղինակին նաև* Թովմա Արծրունին, *որը նունիսկ համարել է Հավուկին յունական Հայաստանի կաթողիկոս» (տե՛ս Армянские Аршакиды, с. 352):* **Ստ. Մալխասյանցը** *խնդրո առարկա հատվածը թարգմանել է այս կերպ՝ «Նաև Հունաց Անատոլ զորավարը Կարինից ուղարկեց Կուկայառիճեցի Հավուկին՝ խնդրելու, որ եթէ (պարսից) թագավորը չի հաճում նրան (Սահակին) իր բաժնում պահել, թող տա հունաց բաժնին»: (էջ 270):*

*20.* ... Եւ եղև ի դառնալն սրբոյն Սահակայ... և ահարկու դիւաց: _ *Այդ մասին վկայում է միայն* Թով. Արծ.

*21.* ...որք առանց եպիսկոպոսին Կեսարու ձեռնադրեցան յերանեալ եպիսկոպոսէ... _ *Այդ աղավաղված նախադասությունը* Նոր. Բյուզ. *առաջարկում է ուղղել հետևյալ կերպ՝ «... որք առանց եպիսկոպոսին Կեսարու ձեռնադրեցան ի Երան եպիսկոպոսէ» (Նախն., էջ 363):*

*22.* ... ապա նախարարքն Հայոց եկին առ սուրբն Սահակ... ի մեծի հինգ շաբաթոջն: _ *Տե՛ս* Մով. Խոր., *Գ, LXVI, էջ 353-354:* Կորյուն, *էջ 116-117:* Սոփերք, *Բ, էջ 30-36, 45:*

*23.* ... Վահանայ Ամատունւոյ... _ *Տե՛ս* Մով. Խոր., *Գ, LXVII, էջ 357:*

*24.* Եւ այս ամէնայն այսպես եղեալ... մեզ հաւատարմացուցանէ: _ *Սրանկյուն փակագծերի մեջ վերցրած երկու*

նախադասությունները, տեղափոխված են այստեղ ստորև շարադրված բնագրից: Տե՛ս ծն. 30:

25. Յամի երկրորդի Յազկերտի... տևեաց ամս ՆԺԵ և վախճանեցաւ: _ Տե՛ս Սեբ., Զ, էջ 62:

26. ... Ղևոնդ ումն աշակերտ սրբոյն Մաշտոցի տեղապահ լինէր... և Մեղէս: _ Հմմտ.՝ «Իսկ զաթոռ եպիսկոպոսապետութեան ատեղապահութեամբ յաջորդեաց հրամանաւ երանելւոյն Մեսրոպայ՝ նորին աշակերտ Յովսէփ քահանայ...» (Մով. Խոր., Գ, LXVIII, էջ 358): «Քանզի յետ կատարման... կաթողիկոսին Յովսէփայ յաջորդէաց զկաթողիկոսութիւնն աշխարհիս Հայոց տէր Մելիտէ... և զհետ նորա տէր Մովսէս... Եւ ապա... տէր Գիւտ...» (Ղազ. Փարպ., Գ, § ԿԲ, էջ 241):

27. ... ի լեսուրս... _ Պետք է լինի՝ կղէսուրս: Բառը հանդիպում է Մով. Խոր. (Բ, VIII, էջ 116), Սամ. Ան. (էջ 49): Մանրամասն տե՛ս **Ն. Ադոնց**, Հայաստանը Հուստինիանոսի ..., էջ 21-23. Նոր. Բյուզ., Տեղեկ. ի գիրս պատմ. Ստեփանոսի..., էջ 36-37. _ **Վ. Վարդանյան**, էջ 515, ծն. 101):

28. Ջռայլ _ Բնագրում՝ Ջրղայլ (ուղղ.՝ Նոր. Բյուզ., Թովմա. Արծ. եւ Անանուն..., «Բազմավէպ», 109, էջ 329): Այլ առիթով Թովման հիշում է Ջռայլ (Բ, գլ. I), Անանունը՝ Ջռել ձեռվ (գլ. IV,): (**Վ. Վարդանյան**, էջ 515, ծն. 102):

29. ... հաւատացեալ էր Թէոդոսի կայսեր... զողորմութիւն ի Քրիստոսէ: _ Տե՛ս Մով. Խոր., Գ, LI: **Մ. Աւգերեանց**, Լիակատար վարք և վկայաբանութիւնք, Բ, էջ 302-303:

30. Սահակս այս այն Սահակ է... զայսոսիկ մեզ հաւատարմացուցանէ: _ Մեջ բերենք սկզբից այն հատվածը, որը ծն. 24-ում նշված է որպես հատված I, ցույց տալով բազմակետով այն տեղերը, որտեղ սրանկյուն փակագծերով տեղափոխված են նախադասությունները հատված II-ից:

I

«Եւ այս ամենայն այսպէս եղեալ, կեցեալ սուրբն Սահակ ամս ԾԻ... փոխի յաշխարհէս ի կարգս հրեշտակաց, և տարեալ հանգուցանեն զնշխարս սրբոյն յԱշտիշատ Տարօնոյ ի տեղւոջ վկայարանի սրբոյն Յոհաննու Մկրտչին և Աթանագինի վկային: Ի նմին ամի յետ վեց ամսոյ անցանելոյ փոխի և սուրբ վարդապետն Մաշտոց. և խաչանշան լուսով խաղացուցանեն բազմութեամբ նախարարացն Հայոց ի ձեռն Վահանայ Ամատունոյ, որ էր ի ժամանակին սպարապետ Հայոց, և տարեալ հանգուցանէին զնա ի Յօշական գեօղ, ի գաւառին որ կոչի Արագածոյ...»: Երկրորդ հատվածում սրանկյուն փակագծերով նշված են նախադասությունները, որոնք տեղափոխված են I հատված:

## II

*«Սահակս այս այն Սահակ է, որոյ հրամանաւ գրեաց մեծ վարդապետն Մովսէս տիեզերահռչակեալ քերթողն զգիրս Պատմութեան Հայոց Մեծաց, հրաշազան յօրինուածով, սկսեալ յԱդամայ մինչ ի կայսր Զենոն <որոյ ժամանակ կենացն տեւեալ ամս ՃԻ լի և պարարտ ծերութեամբ> որպէս գրեալ աւանդեցաւ մեզ այս ի չորրորդ դրուագի խոստաբանեալ պատմութեանն Մովսէսի Խորենացւոյ, Վերադարձութեան ի վերայ երեցունց դրուագեալ հատուածին. <զոր և երանելին Կորյուն, ուսումնակից Մովսէսի և աշակերտ սրբոյն Մաշտոցի՝ յիւրումն ստուգաբանեալ պատմութեան զայսոսիկ մեզ հաւատարմացուցանէ>»:*

*Քննության առարկա երկրորդ հատվածը վաղուց գրավում էր և շարունակում է գրավել հայագետների ուշադրությունը* Մովսես Խորենացու *պատմության չորրորդ գրքի գոյության հարցի կապակցությամբ (հարցի մանրամասն պատմությունը և գրականությունը տե՛ս* **Ա. Մաթևոսյան**, *«Մովսէս Խորենացւոյ վերադարձութիւն ի վերայ երեցունց դրուագեալ հատուածին», էջ 407-418): Այլ հարցերի շարքում, որ առաջանում են սույն հատվածը կարդալիս, հետազոտողները նկատել են նաև սրանկյուն փակագծերում տեղադրված նախադասությունների անհամատեղելիությունը տվյալ կոնտեքստին:* **Ա. Մաթևոսյանը** *առաջարկում է միացնել այդ երկու նախադասությունները՝ (I) «... որոյ ժամանակ կենացն տեւեալ ձգեալ ամս ՃԻ, լի և պարարտ ծերութեամբ», (II) «զոր և երանելին Կորիւն, ուսումնակից Մովսէսի և աշակերտ սրբոյն Մաշտոցի՝ յիւրումն ստուգաբանեալ պատմութեան զայսոսիկ մեզ հաւատարմացուցանէ», և քանի որ, միացրած լինելով, դրանք բովանդակությամբ միևնույն է չեն համապատասխանում հատված II-ին, տեղադրել I վերջում: Այդ դեպքում բովանդակության տեսակետից դրանք կլինեն իրենց տեղում, եթե համարենք, որ առաջին նախադասությունը վերաբերում Մեսրոպ Մաշտոցին, քանի որ հատված I-ում Սահակի մասին արդեն ասված է, թե նա ապրել է 120 տարի: Հատված I* **Մ. Մաթևոսյանի** *ուղղումից հետո կունենա հետևյալ տեսք՝ «Եւ այս ամենայն այսպես եղեալ, կեցեալ Սուրբն Սահակ ամս ՃԻ՝ փոխի յաշխարհէս ի կարգս հրեշտակաց, և տարեալ հանգուցանեն զնշխարս սրբոյն յԱշտիշատ Տարօնոյ, ի տեղւոջ վկայարանի Սրբոյն Յոհաննու Մկրտչին և Աթանագինի վկային: Ի նմին ամի, յետ վեց ամսոյ անցանելոյ, փոխի և սուրբ վարդապետն Մաշտոց, և խաչանշան լուսով խաղացուցանէն բազմութեամբ նախարարացն Հայոց ի ձեռն Վահանայ Ամատունոյ, որ էր ի ժամանակին սպարապետ*

*Հայոց. և տարեալ հանգուցանեն զնա ի Ցօշական գեօղ, ի գաւառին որ կոչի Ոստն Արագածոյ <որոյ ժամանակ կենացն տևեալ ձգեալ ամս ճի լի և պարարտ ծերութեամբ>, <զոր և երանելին Կորիւն, աշակերտ Մովսէսի և աշակերտ Սրբոյն Մաշտոցի յիւրումն ստուգաբանեալ պատմութեան զայսոսիկ մեզ հաւաստարմացուցանէ>: Սակայն թվում է, որ, ինչպես այդ նշում է* **Վ. Վարդանյանը**, *«որոյ» դերանունը պետք է վերագրենք... Սահակ կաթողիկոսին, որի մասին (Թովման) նույն գլխում գրում է, թէ ապրել է հիրավի 120 տարի: Բացի այդ, պատմիչի այն վկայությունը, թե այս Սահակին հիշում են նաև Մովսես Խորենացին և Կորյունը, դարձեալ հաստատում է տվյալ ենթադրությունը, քանի որ թե՛ Կորյունը և թե՛ Խորենացին նշում են, որ Սահակ Պարթեն իրոք ապրել է մինչև խոր ծերություն» (էջ 516, ծն. 104): Նույնը վկայում է նաև Ղազար Փարպեցին՝ «Եւ կեցեալ ամս բազումս և հասեալ ի յերկար ծերութիւն՝ վախճանեցաւ խաղաղական հանգստիւ ի գաւառին Բագրեւանդայ...» (Ա, էջ 75): «Որոյ առեալ զոսկեղէնչալի նշխարս սրբոյն... տարան ի գաւառն Տարօնոյ, ի բնիկ գիւղն իւր սեփհական, յանուանեալն Աշտիշատ...» (Ա, էջ 76): Սուրբ Սահակի Վարքում ևս տեղեկություն կա, թէ Սահակի կյանքը տևել է մինչև խորը ծերություն (Սոփերք, II, էջ 35):* Թովմայի*ն մնում էր միայն, կրկնելով այդ տեղեկությունները, կոնկրետացնել դրանք տարիների որոշակի թվով՝ 120 տարիներով, որը նա փոխ է առել Աստվածաշնչից (Բ Օր., ԼԴ, 7): Ինչպես նշում է* **Նորայր արք. Ծովականը**, *նման պատշաճեցումները սովորական էին էպիկական պատումներում (Վանատուր, էջ 158): Նույնպիսի տեղեկություն կա նաև Աստուածաշնչի պարականոն գրքերում. «... Եւ ինքն (Մովսես) եւ ի գլուխ լերին Նաբաւու եւ անդ վախճանեցաւ հարիւր եւ քսան ամաց»: (I, էջ 204): Աղբյուրներում բացակայում են տվյալներ, թէ ինչ տարիքում է մահացել Մաշտոցը, ահա թէ ինչու, թվում է, ավելի ճիշտ կլինի տեղադրել առաջին նախադասությությունը՝ «... որոյ ժամանակ կենաց տևեալ ձգեալ ամս ճի լի և պարարտ ծերութեամբ» հատված I-ի սկզբում, իսկ երկրորդը, որտեղ* Թով. Արծ.*, նկարագրելով սուրբ Մաշտոցի հուղարկավորությունը՝ «...խաչանման լուսով խաղացուցանեն... (նրան) ... ի Ցօշական գեօղ...», միանգամայն արդարացիորեն վկայակոչում է Կորյունին՝ «... զոր և երանելին Կորիւն յիւրումն ստուգաբանեալ պատմութեան զայսոսիկ մեզ հաւաստարմացուցանէ»:*

*31.* ... Գագիկ Վասպուրական և մեծ զօրավար Հայոց... – *Սույն արտահայտությունը պետք է ուղղել՝ «Գագիկ Վասպուրական իշխան և մեծ զօրավար Հայոց», ելնելով* Թովմայի *համան-*

*ման դիմումից, ուղղված Գագիկին VI գլխում («Գագիկ Վասպուրական իշխան և զորավար Հայոց» _ էջ 35):*

*32.* Կատարեցաւ Դպրութիւն Առաջին Պատմութեան Հայոց ըստ ազգաբանութեան Արծրունեաց սեռի: _ *Թով. Արծ. Պատմության առաջին գիրքը ավարտող և դրա բովանդակությունը՝ որպես Արծրունյաց իշխանների ծննդաբանությունն ամփոփող նախադասությունը համեմատելի է Մով. Խոր. առաջին գիրքը ավարտող արտահայտության հետ. «Կատարեցաւ գիրք Առաջին ծննդաբանութեան Հայոց Մեծաց», որը Ստ. Մալխասյանցը թարգմանում է որպես «Հայոց մեծերի ծննդաբանությունը»: (էջ 19): Մով. Խոր. իր առջև դրել է մի վիթխարի խնդիր՝ ներկայացնել Հայոց պետականության առաջացման և զարգացման պատմությունը և, քանի որ դրա նյութական կրողներն էին Հայոց թագավորական հարստությունները և նախարարական տները, նա ստեղծում է թագավորական հարստությունների ծննդաբանությունը և ներկայացնում ամենակարևոր և Հայոց պատմությունում երևելի դեր խաղացած նախարարական տների ծննդաբանական առասպելները, հատուկ ուշադրություն հատկացնելով Բագրատունյաց իշխաններին՝ որպես Հայոց թագավորների ժառանգական պսակադիրների: Թով. Արծ. խնդիրը շատ ավելի համեստ էր՝ ստեղծել, որպես ելակետ ունենալով Արծրունի իշխանների Սենեքերիմ թագավորից ծագելու Մովսես Խորենացու վերսիան, Արծրունյաց նախարարական տան ծագումնաբանական առասպելը, որը հաղորդելով Արծրունյաց տոհմին շուք, նշանակայնություն, ազնվազարմություն, պետք է ծառայեր որպես հիմք IX դ. Հայաստանի քաղաքական, սոցիալական և տնտեսական կյանքում առաջատար դեր խաղալու Արծրունեաց իշխանների նկրտումներին: Թովմա Արծրունու Պատմության առաջին գիրքը չի կարող օգտագործվել որպես ստույգ պատմական փաստերի աղբյուր, սակայն պատմամշակութային և քաղաքական զարգացումների տեսանկյունից պատվավոր տեղ է գրավում հայ միջնադարյան մատենագրության մեջ:*

## ԴՊՐՈՒԹԻՒՆ ԵՐԿՐՈՐԴ ՊԱՏՄՈՒԹԵԱՆ ՀԱՅՈՑ

### ԳԼՈՒԽ Ա

*1.* Յետ բառնալոյ թագաւորութեան Հայոց... խոշտանգանօք: _ *Սույն հատվածը իրենից ներկայացնում է առաջին գլխին կից յուրատեսակ մի ներածություն, որտեղ Թով. Արծ.*

*տալիս է Հայոց պատմության մարզպանական ժամանակաշրջանի համառոտ բնութագիրը: Ինչպես նշում է* **Գր. Տեր-Պողոսյանը** *(«Նկատողություններ Եղիշէի Պատմութեան վերաբերեալ», «Հանդէս ամսօրեայ». Վիեննա, 1896, 5), այս գլխի աղբյուրներ կարող են լինել* Եղիշեն, Ղազ. Փարպեցին *և* Մով. Խորենացին:

2. ... առ Պերոզ... _ Թով. Արծ. *այստեղ Պերոզին (459-484) շփոթել է Հազկերտ II-ի (438/9 -457) հետ (***Վ. Վարդանյան***, ծն. 107):*

3. Ընդ նոյն ժամանակս... մարզպան յՎնդոյ Պարսից մոգպետ: _ *Ինչպես Շավասպ Արծրունու, այնպես էլ մարզպան Վնդոյի պատմական վավերականությունը հաստատված չէ: «Այս անունով մարզպան չի եղել Հայաստանում:* Սեբեոսը *և* Թովմա Արծրունին *Վահրամ Չուբինի ապստամբության ժամանակ Խոսրով արքայի քեռի Վնդոյին հիշում են որպես դեպքերի հանգույցում գտնվող իշխանի» (***Վ. Վարդանյան***, ծն. 108): Շավասպի և Վնդոյի հետ կապված իրադարձությունները որոշ փոփոխություններով և մանրամասներով հիշատակում է նաև* Հով. Դրասխանակերտցին *(գլ. XV ):*

4. ... Վահանայ Արծրունւոյ... _ *Առաջին անգամ Վահան Արծրունուն հանդիպում ենք Ա գրքի 6-րդ գլխում որպես Մամբրե Վերծանողի անվավեր երկի պատվիրատուի: Այժմ* Թով. Արծր. *ներկայացնում է նրան իբրև Վարդանանց պատերազմի հերոսի, որը ոնչով չի զիջում Վարդան Մամիկոնյանին և, երբ սկսվում է պատերազմը պարսիկների դեմ, նա որպես Վարդանի մտերիմ զինակից «... ընդ սրբոյն Վարդանայ ճակատ առ ճակատ վարեալ զպատերազմն...» և «... մեռանին ի միասին քաջքն և ընտիրքն, մեծ նահատակք Վարդան և Վահան...»: Թե ինչու այդ մասին ոչինչ չի ասվում* Եղիշեի *գրքում հարցը կանխելու համար* Թովման *հաջորդ՝ 2-րդ գլխում հնարում է պատմություն, իբր նեստորական Բարծուման, որը այդ նույն ժամանակ փորձել էր գործունեություն ծավալել Վասպուրականի հարավային շրջաններում, սակայն վտարվել այնտեղից Տմորիք բերդի տիրոջ Ներշապուհ Արծրունու կողմից, խնդրել էր Եղիշեից իր երկի ձեռագիրը և այնտեղից դեն նետել Արծրունիներին, և հատկապես, Վահանին վերաբերող բոլոր տեղեկությունները (Հերքումը տե՛ս Եղիշէ. Վասն Վարդանայ եւ Հայոց պատերազմին. Թարգմ., ներածակ. հոդվածը, ծանոթագր.* **Ե. Տեր-Մինասյանի***, Եր., 1946, էջ 11-13:* Եղիշէ արքեպ. Դուրեան, *Ուսումնասիրութիւնք եւ քննադատութիւնք. 4. Եղիշէ եւ Բարծումայ: Երուսաղէմ, 1934, էջ 37-49): Նման միջադեպի հանդիպում ենք նաև* Մով. Խոր. *մոտ, որը Հայքի ծագումնաբանության կապակցությամբ գրում է՝ «Եւ զայս*

մեզ Արիւդենոս յիւրում առաջնում առանձնակի իմն մանր ազգաբանութեան ասէ. զոր աստ ուրեմն յետոյ ոմանք բարձին» (Ա, V, էջ 21): Ըստ երևույթին հենց այս հատվածն է հուշել Թովմային վարվել նույն ձևով և տվյալ դեպքում:

5. Ընդ նոյն ժամանակս խորհուրդ ի մէջ առեալ Շաւասպայ... աւուրս Վարդանայ: _ Սույն հատվածի աղբյուրը ճշտված չէ: Ինչպես ենթադրում է **Գր. Տեր-Պողոսյանը** (տե՛ս նշված աշխատ., էջ 129-133) դա կարող էր լինել ժողովրդական ավանդություն, որից օգտվել են, բացի Թով. Արծ., նաև Հով. Դրասխ., Վարդ., Ստ. Օրբ., ընդորում, ելնելով իրենց պատմածի մանրամասների որոշ տարբերություններից, այլ և այլ տարբերակներից, Թով. Արծ. ձեռքի տակ ուներ, ըստ երևույթին, վասպուրականյան տարբերակը:

6. Բայց արքայն Պարսից... ընդ նորա Յազկերտ: _ Թով. Արծր., հետևում է այստեղ Եղիշեին (էջ 11), սակայն քուշանների հետ կռվում էր Պերոզը, որը և սպանվեց այդ պատերազմում (տե՛ս Ղազ. Փարպ., § 73, _ R. Thomson, էջ 146, ծն. 4): Պերոզից հետո գահ բարձրացաւ Վաղարշը (484-489):

7. ... որպէս ցուցանեն յիշատակարանքն... զոր աւելորդ համարիմ երկրորդել զմիանգամ ասացեալսն: _ Թով. Արծ. նկատի ունի Եղիշեին և Ղազ. Փարպ. (տե՛ս **Գր. Տեր-Պողոսյան**, նշվ. աշխ., էջ 132):

8. ... իբրև հուր ընդ եղեգն ճեմելով... _ Հմմտ.՝ Յով. Բ, 5: Իմաս., Գ, 7: (**Նորայր Բիւզանդացի** Թով. Արծ. և Անան. Արծ., էջ 469):

9. Եւ իբրև ռազմ երկոցունց... համառօտութեան Աբրահամու Խոստովանողի: _ Հատկանշական է, որ Վահան Արծրունու անհավաստի պատմության միակ աղբյուրն է մեզ չհասած Աբրահամ Խոստովանողի Համառոտությունը, որի գոյության մասին հաղորդում է առաջին անգամ և միայն Թով. Արծ.: Այդ հանգամանքը դարձնում է կասկածելի սույն վկայակոչման ճշմարտությունը:

## ԳԼՈՒԽ Բ

1. «Թովմա Արծրունու պատմության 2-րդ դպրության Բ գլուխը տպագիր բնագրերում վերնագրված է «Պատմած յիշատակի վասն արիւնահեղին Բարսումայի», մինչդեռ թե՛ ամբողջական ձեռագրում և թե՛ ձեռագիր պատառիկներում նույն գլուխը կրում է «Վասն արիւնահեղին Բարծումայի» վերտառությանը, որը և պահպանել ենք սույն հրատարակության (1985թ.) մեջ»

*(Վ. Վարդանյան, ծն. 111): Մենք ևս պահպանել ենք այդ վերտառությունը:*

*2.* Ի ժամանակին յայնմիկ... տէր Քրիստափոր Հայոց կաթողիկոս... _ *Անախրոնիզմ: Պերոզ թագավորի ժամնակակիցն էր Գյուտ կաթողիկոսը (461-478). Քրիստափոր I կաթողիկոսը (539-545) Խոսրով I Անուշիրվանի (531-578) ժամանակակիցն էր:* Թով. Արծ. *451 թ. պատերազմը Վարդան Մամիկոնյանի ղեկավարությամբ և 571թ. ապստամբությունը, որը ղեկավարում էր Վարդ Պատրիկի թոռ Վարդան Մամիկոնյանը (Կարմիրը), ներկայացնում է որպես մեկ ապստամբություն, նույնացնելով երկու Վարդան Մամիկոնյաններին* (R. Thomson, *էջ 143, ծն. 1):*

*3. «Ամբողջական ձեռագիր բնագրում և տպագիր հրատակություններում՝ «... եկն եհաս յԱրզնարզիւն և յաշխարհն Մոկաց»: Սակայն բոլոր չորս ձեռագիր պատառիկներում սույն դարձվածքը պահպանվել է «... եկն ի Հայս յԱրզնարզիւն և յաշխարհն Մոկաց» ձևով: Որովհետև «Բ» ձեռագիր պատառիկը օրինակվել է ավելի վաղ (1172 թ.), քան «Պատմութիւն տանն Արծրունեաց»-ի ամբողջական ձեռագիրը, ուստի կարծում ենք, որ առաջնությունը պետք է վերապահել «... եկն ի Հայս յԱրզնարզիւն» ձևին: Բնագրում նման սրբագրությունը պատճառաբանվում է նաև պատմական այն իրողությամբ, որ Արզնարզյունը իրոք Հայաստանում էր, ուստի տվյալ դարձվածքում դրված է Հայաստանի Մոկք նահանգի հետ կողք-կողքի, որպես նույն՝ Հայաստան երկրի մասերից մեկը»: (Վ. Վարդանյան, ծն. 116):*

*4.* Եւ սրբոյ վարդապետին մեր Եղիշէի... ի սաղբելոյ Բարծումայի ամբարշտի: _ *Հերքումը տե՛ս* Եղ. արք. Դուրեան, *Ուսումնասիրութիւնք և քննադատութիւնք. 4. Եղիշէ և Բարծումայ, էջ 37-49: «Եղիշէ, Վասն Վարդանայ եւ Հայոց պատերազմին, էջ 11-13:*

*5. «Ամբողջական ձեռագրում՝ «որ զեպիսկոպոսաց», տպագիր բնագրում՝ «ՈԼՂ եպիսկոպոսաց», որն ընդունելի չէ: Ուղղելի է «ՈԼԴ եպիսկոպոսաց»: Ըստ երևույթին «ՈԼԴ»-ի վերջին «Դ» տառը դարձել է «Զ» և միացվել հաջորդ՝ «եպիսկոպոսաց» բառին, որն, իհարկէ, սխալ է: (Վ. Վարդանյան, ծն. 118):*

*6.* ... Հազարաւուխտ Պարսից զօրավար... _ *Տե՛ս* Ղազար Փարպ., *էջ 259, 346, 348-350* (R. Thomson, *էջ 159, ծն. 7):*

*7.* ... Հապա, քաջք, վառեալ ի զէն... Տէր յոյս մեր... _ *Հմմտ.՝ 2 Մակ. ԺԲ, 28: Ա թագ. Բ, 9. ԺԷ, 47:* R. Thomson, *էջ 151, ծն.1):*

*8.* Սաղս. *ՃԺԷ, 11:*

*9.* Եւ եղև ընդ ժամանակս... ել Հազարաւուխտ... Ցերկաբէալ վտանգ նեղութեան Հայոց... եսուն փառս Աստուծոյ: _ *Տե՛ս*

Ղազ. Փարպ. Գ, § 66-95: Ինչպես նշում է **Վ. Վարդանյանը** (ծն. 121), «Այս գլխից անցքերի հաջորդական շարքն ընդհատվում է: Այդ է պատճառը, որ 480-ական թթ. ժողովրդական պատերազմի մասին եղած պատումը մնացել է թերի և հաջորդ՝ Գ գլխում շարադրվում է սուսկ ավելի քան մեկ դար հետո կատարված դեպքերի մասին: Ուշագրավ, որ **Մ. Չամչյանը** (հ. Բ, էջ 210) հիշում է Արծրունեաց տանուտեր Սահակին, որին սակայն չեն հիշում աղբյուրները (այդ թվում նաև Ղազար Փարպեցին): Թերևս Թովմա Արծրունու Պատմության հեղինակային օրինակում եղել է պակասող մասը, որտեղ և ասվել է Սահակ Արծրունու, ինչպես նաև V դ. վերջին և VI դարում կատարված իրադարձությունների մասին: **Հ. Աճառյանը** կարծում է, որ **Չամչյանը** օգտվել է Թովմա Արծրունու մի ձեռագրից, որն իրոք ունեցել է թերի մասը (տե՛ս Անձ. բառ., հ. Դ, էջ 353)»: Սակայն, թվում է, որ քննվող հատվածի սկզբնական նախադասությունը՝ «Յերկարեալ վտանգ նեղութեան Հայոց, որպէս ցուցանեն բազումք ի պատմագրաց, մինչ ի ժամանակս Ջամասպայ և Կաւատայ, մինչ ի Խոսրով արքայ» ցույց է տալիս, որ Թովման մտադրություն չուներ մանրամասն նկարագրելու VI դ. իրադարձությունները, այլ, համառոտակի ներկայացնելով Վահան Մամիկոնյանի ապստամբության անցքերը, անմիջապես անցնում է վերոհիշյալ թագավորների ժամանակի պատմությանը:

## ԳԼՈՒԽ Գ

1. Սույն գլխի հիմնական և, թերևս, միակ, աղբյուրն է Սեբեոսի Պատմությունը, որտեղից նա փոխ է առնում երբեմն բառացի, երբեմն էլ վերապատմելով մեծ և փոքր հատվածներ և գրեթե միշտ խմբագրելով Սեբեոսի բնագիրը՝ փոխարինում է առանձին բառերը դրանց համանիշներով, կամ էլ, պահպանելով իմաստը, փոխում է նախադասության կառուցվածքը:

2. Վահրամ ոմն Մեհրեանդակ... Վահռամ: _ Համմտ.՝ Սեբ., էջ 73:

3. ... սա և զթագաւորութիւն պարսից յինքն կորզեաց... ի դուռն կայսերական ... _ Սույն հատվածը Սեբ. էջ 74-75 համառոտությունն է:

4. ... զՄծուրին քաղաք... _ Պետք է լինի՝ «զՄծուրն քաղաք»: Տե՛ս **Գ. Աբգարյան**, «Սեբեոսի Պատմությունը» և Անանունի առեղծվածը, էջ 147-153:

5. ... ի մէջ երկոցունց... _ Սեբ., էջ 76՝ «ի մէջ մեր մինչև զմահ երկոցունցս»:

6. Առաքեցին առ Մուրիկ թագաւորն... թուղթ գրեալ... «Թագաւոր մեծ... յետ մեր թագաւորելոյ»: _ Սեբ., էջ 75-76:

*7. ... զՓիլիպիկոս փեսայ իւր _ Հմմտ.՝ «Կայսրը ուղարկել է իւր փեսա Փիլիպիկոսին, նշանակելով նրան զորքի հրամանատար»: (Տե՛ս Из анонимной сирийской хроники 1234 г.,* ***Н. В. Пигулевская,*** *Византия и Иран на рубеже VI–VIII, веков, էջ 253):*

*8.* Եւ կայսր Մուրիկ... յղէր առ նա զՓիլիպիկոս... և զՑովհան պատրիկ... և զՄուշեղ... ի Վարարատ գաւառի: _ Սեբ. *էջ 76-77: Սեբեոսի բնագրում չի հիշատակվում Մուշեղը. այդ կապակցությամբ տե՛ս* ***Գ. Աբգարյանի*** *ծն. 196:*

*9. ...* ԶԱսորեստան և զՄծուբին... _ *Ուղղ.՝ «ԶԱրուաստան և զՄրծուբին» -* ***Գ. Աբգարյան****, ծն. 202:*

*10. ...* Քան զԱրասխ անցանել յայդկոյս: _ *Պետք է լինի՝ «Զարասպ», ինչպես Սեբեոսի (էջ 78) բնագրում է վկայված: «Զարասպը,_ գրում է* ***Ս. Մալխասյանցը****,_ լեռնաշղթա է առաջին Արշակունիների ժամանակակից Հայաստանի հարավ-արևելքում, Պարսկաստանի սահմանին, հավանաբար այժմյան Զագրոսը»: (Տե՛ս* ***Գ. Աբգարյան****, ծն. 204):*

*11.* Գրէ և Վահրամ առ Մուշեղ... ոչ արարին բանիցն պատասխանի: _ *Սեբ., էջ 77-78:*

*12. ... Ցուցանեմ ձեզ փիղս վառեալս... _ Սեբեոսի բնագրում՝ «ցուցանեմ ձեզ փիղս վառս»: ՆՀԲ «վառ» բառի դիմաց գրում է. «ած[ական], որպէս բառ հուն[ական], վառիս βαρυς, gravis, այսինքն՝ ծանր»: Ուրեմն, պատմիչը, «փիղս վառս» ասելով, հասկացել է ծանր, հուժկու փղեր: Բայց քանի որ «վառ» բառը «ծանր» իմաստով քիչ է գործածվում, անսովոր է թվացել Թ. Արծրունուն կամ նրա երկն ընդօրինակողներին, որոնք պատմիչի խոսքը դարձրել են «Փիղս վառեալս»: (***Գ. Աբգարյան****, ծն. 207):*

*13. ...* շուառունս ... _ Սեբ., *էջ 78 «շաւառունս». «Հայոց լեզվի հոմանիշների բառարանում» (էջ 621) «տեգ» բառի հոմանիշների շարքում նշված են և Սեբեոսի «շաւառն» և Արծրունու «շվառն» ձևերը: Սրանք սկզբնապես գրվել են, անշուշտ, միևնույն ձևով, և մեզ հասել են հետագայի երկու գրությամբ: (***Գ. Աբգարյան****, ծն. 209):*

*14. ...* ճակատ առ ճակատ ձգին...» _ *«Արծրունյաց տան պատմություն 1887 և 1917 թթ. տպագիր բնագրերում՝ «ճակատ առ ճակատ ուժգին խումբ»: Մինչդեռ ձեռագրում «ճակատ առ ճակատ ձգին», որն ավելի է համապատասխանում խոսքի ամբողջական իմաստին» (****Վ. Վարդանյան****, ծն. 129):*

*15.* Գրէ դարձեալ թուղթս երկրորդս և ասէ... սպանաւ ի հրամանէ Խոսրովայ: _ Սեբ., *էջ 79-80:*

*16.* Եւ հաստատեցաւ (Խոսրով) յաթոռ _ *Թագաւորութեան...* և զՄակու: _ Սեբ. *էջ 84:*

*17.* Եւ եղև յամի չորեքտասաներորդի Խոսրովայ... և

նստուցին զՓոկաս յաթոռ թագաւորութեան: _ Սեբ., *էջ 106: Թովման բաց է թողնում Սեբեոսի ԺԲ _ ԼԱ* գլուխները:

*18.* Իբրև լուաւ Խոսրով արքայ զլուր Համբաւոյն այնորիկ՝ չարժեցաւ ի բարկութիւն մեծ, լինել վրեժխնդիր արեանն Մուրկայ: Եւ ժողովեալ զբազմութիւն զօրաց իւրոց՝ առնէր վնասս մեծամեծս և սաստիկս ի բաժնին Յունաց: _ *Սույն Հատվածում Համառոտ ներկայացված է* Սեբ. *ԼԲ-ԼԴ գլուխների բովանդակությունը:*

*19.* Եւ առաքեաց Հրեշտակս մեծապէս գանձիւք... խնդրել զխաղաղութիւն մեծաւ թախանձանաւք, ասէ. «զվրէժ արեանն Մուրկայ առի ի թշնամոյ նորա, արդ կա՛մ եղիցի քեզ առնէլ ընդ իս զխաղաղութիւն և արգելուլ զսուր քո յերկրէ իմմէ... ոչ արար պատասխանի... _ *Զակերտների մեջ դրված Հատվածի մասը բացակայում է* Սեբեոսի *բնագրում: Շարունակությունը՝ «Որում ոչինչ կամեցեաւ լսել... ոչ արար պատասխան»՝ բառացի փոխառություն է* Սեբեոսից: *«Սրանով նա թելադրում է մտածել, որ նամակի՝ «Սեբեոսի Պատմությունից» բացակայող մասը նույնպես ինքը արտագրել է այդ Պատմությունից: Այլապես՝ անիմաստ կլիներ նամակի մեջ ներմուծել մի Հատված, որը բովանդակությամբ էական ոչինչ չի ավելացնում Սեբեոսի պատմությունում ասվածի վրա: ... Բայց մենք չկասկածելով Հանդերձ այն մասին, որ Արծրունու Հատվածը քաղված է «Սեբեոսի Պատմության» նախնական բնագրից, չենք կարող Արծրունու գրածը ներմուծել այդ Պատմության մեջ, որովհետև գիտենք, թե որքան Հարազատությամբ է Արծրունին արտագրել իր աղբյուրը: Իսկ որ Արծրունին կարող էր արտագրելիս փոփոխած լինել աղբյուրը՝ դա երևում է այն Հատվածներից, որոնք նախորդում են ներմուծվող Հատվածին: Ահա դրանք.*

| «Սեբեոսի Պատմություն» | Թ. Արծրունի<br>*(ՍՊԲ., 1887, էջ 88)* |
|---|---|
| Արձակեաց Հրեշտակս մեծապէս գանձիւք և Հրովարտակօք առ արքայ Խոսրով խընդրել զխաղաղութիւն մեծաւ թախանձանօք: Որում ոչինչ կամեցաւ լսել արքայ Խոսրոս ասելով. «Իմ է թագաւորութիւնն այն, և ես զԹէոդոս զորդին Մուրկայ նստուցի թագաւոր»: | Եւ առաքեաց Հրեշտակս մեծապէս գանձիւք և Հրովարտակօք առ արքայ Խոսրով, խնդրել ի նմանէ զխաղաղութիւն մեծաւ թախանձանօք: Որում ոչ կամեցեալ լսել Խոսրովայ ասէ. «Իմ է թագաւորութիւն այն, և ես զորդին Մուրկայ նստուցի թագաւոր: |

Ընդգծված բառերի դեպքում Արծրունին փոփոխել է իր օգտագործած աղբյուրը: Ուրեմն, հնարավոր է, որ նա փոփոխած լիներ նաև այս հատվածը, որը չի պահպանվել «Սեբեոսի Պատմության» մեզ հասած ձեռագրում»: (**Գ. Աբգարյան**, ծն. 368):

20. ... և զօրավար նոցա անուանեալ Ռազմայուզան որ է Խորեամ... և սուր ի գործ արարեալ... զքաղաքն այրեցին հրով՝ _ Սեբ. էջ 115: Հատվածի վերջին նախադասությունը՝ «և նստան ի ներքո քաղաքին... զքաղաքն այրեցին հրով», Սեբ. բնագրում ձևակերպված է այս կերպ. «Նստան ի ներքո քաղաքին և այրեցին քաղաքն հուրբ»: Առանց մեր (Թ. Արծրունուց) ներմուծված նախադասության ստացվում է այնպես, թե պարսիկները մտնում են քաղաք, նստում են (բնակվում են) քաղաքում և իրենց հետ միասին այրում են քաղաքը: «Այս անհեթեթությունը վերանում է Թ. Արծրունու մոտ պահպանված բառերի ներմուծմամբ»: (**Գ. Աբգարյան**, ծն. 394):

21. ...գտաւ թիւ սպանելոցն ԾԷՌ մարդ. _ Սեբեոսի բնագրում՝ «և եղև թիւ սպանելոցն ԺԷ հազար մարդ»:

22. «Եւ հրամայեցին համար առնել անկելոց դիականցն..., Կալան և զհայրապետն Զաքարիայ... Եւ վասն մնացելոցն... ել հրաման... Եւ անդէն վաղվաղակի... որում անուն էր Մոդեստոս: _ Գրեթե բառացի փոխառություն Սեբեոսից (էջ 116): Սեբեոսի բնագրի հաջորդ՝ ԼԵ-ԼԷ գլուխները Թովման բաց է թողել:

23. Եւ յետ այսորիկ գումարեցոյց զօրս բազումս Խոռէմ... Իբրև եթես կայսր Հայրակղէս... Զի ոչ թէ վասն աստուածապաշտութեան ... Եւ եթէ զքեն արեանն Մուրկայ խնդրէ... Մինչև յե՞րբ ոչ կամիցի յագենալ արեամբ ... Աւ ես աւասիկ արձագեցից Թագաւորին... Իսկ Թագաւորն Պարսից ընդունէր զպատարագն... այլ տարածեալ կալան զերկիրն ամենայն...» _ Սեբ., էջ 122-123:

24. Եւ յաւել գրգռել ի սիրտս իւր արքայ Խոսրով... «Աստուծոց պատուական... որպէս դու ոչ կամիցիս»: _ Սեբ., էջ 123:

25. ... ել դէպուղի ի Կարնոյ քաղաք և անցանէ ի Շիրակ... Թով. Արծրունու այս նախադասության «և անցանէ ի Շիրակ» բառերը «Սեբեոսի Պատմությունը» չունի, ինչպես նաև շարունակությունում հիշատակվող «և զՈրմի»: (Տե՛ս **Գ. Աբգարյան**, ծն.426):

26. ... և դիմեալ ի Գանձակն Ատրպատականի... _ Սեբեոսի «Բոլոր ձեռագրերն ունեն «արի գիւղն այն» (փխ. «Ատրպատականի»): Սակայն Պատկանյանը (Պատկ., էջ 92) տողատակին նշել է, որ Թովմա Արծրունին «արի գիւղ այն»-ի փոխարեն ունի «Ատրպատականի»: Ռուսերեն թարգմանության մեջ (Պատկ.,

էջ 102) նույնպես նա գրում է. «Հրատարակության մեջ՝ «արի գիւղ այն»: Թովմա Արծրունին ունի Ատրպատականի: Երկրորդը մենք աւելի ճիշտ ենք համարում, ըստ որում եթէ Գանձակը նշանակում է Թավրիզ, ապա մյուս Գանձակից (Գյանջա, Ելիզավետպոլ) տարբերելու համար միշտ կողքին դրվում է Ադրբեջանական (=Ատրպատական _ **Գ. Աբգարյան**): ... Մենք նույնպես սրբագրել ենք տեքստը, որովհետև «արի գիւղն այն» արտահայտությունը բացահայտ սխալ է»: _ **Գ. Աբգարյան**, ծն. 427:

*27.* ... և լինուլ դծովակն որ յանդիման հրատին՝ դիականբք. _ *Այս տեղեկությունը չկա* Սեբ. *բնագրում:*

*28.* Զայս յառաջագոյն իմացեալ հին պատմագիրն... ի ձեռն յունական սրոյն: _ *Այս հատվածը, որը չկա Սեբեոսի բնագրում,* Թով. Արծ. *գրել է նմանակելով Եսայիային. տե՛ս Եսայ., Բ, 9, 11-13, 17:*

*29.* Իսկ Խոսրով կարծեալ արծարծեալ զզօրս իւր... հարկանել զամենայն երկիրն սրով սուսերի: _ Սեբ., *էջ 124-126:*

*30.* ... և անցեալ զԴեկղաթաւ ի Վեհկաւատ... _ *Վեհկավատը գտնվում էր Տիգրիս գետի աջ ափում՝ սասանյան մայրաքաղաք Քտեսիփոնի դիմաց: Ըստ երևույթին այն սասանյան թագավորների ամառային նստավայրն էր: Այդ քաղաքները կապում էր իրար հետ հատուկ կառուցվածքի մի կամուրջ, որը ինչպես* Սեբ., *այնպես էլ* Թով. Արծ. *անվանում են «զոմ»: Դա նավակներից կազմված յուրատեսակ կիսակամուրջ-կիսալաստ էր:* Վեհ*կավատը հիշատակում է* նաև Մով. Կաղ. *(Բ, էջ 18): Արաբական խալիֆների շրջանում Վեհկավատ էր կոչվում Տիգրիսի աջափնյակում գտնվող արգավանդ հողերի մի տարածք, որը բաժանվում էր երեք շրջանների՝ Վերին Վեհ-Կավատ, Միջին-Վեհկավատ և Ներքին-Վեհկավատ:* **Բ. Պատկանյանը** *ենթադրում է, որ հայկական աղբյուրների Վեհկավատը նույնական է հունական աղբյուրների Դաստագիրդին, «քանի որ և պարսկերեն և հայերեն «դաստակերտ» է կոչվում ընդհանրապես գյուղ, զվարճանքների տեղ, ելնելով «դաստ»-ձեռք, «կերտ»-կառուցել իմաստից, այսինքն՝ «թագավորի համար կառուցված ամառանոց, հանգստի վայր» (տե՛ս* Армянская география VII в., *ծն. 186): 627 թ. Հերակլես կայսրը ավերել է Դաստագիրդը: (Տե՛ս* **J. Marquart**. *Eransahr, էջ 163-164:* **В. Бартольд.** *Историко—географический обзор Ирана, էջ 193:* **A. Christensen.** *L'Iran sons les Sassanid, էջ 493:* Սեբ., **Գ. Աբգարյան**, *ծն. 439):*

*31.* ... ածին զնա ի դախողին անդր: _ Սեբեոսի *բոլոր ձեռագրերը... ունեն «ածին դահիճ»: Այս ակնհայտ վրիպակը ուղղ-*

*վել է Թով. Արծ. տեղեկության հիման վրա: Տե՛ս **Գ. Աբգարյան**, ծն. 440:*

*32.* Եւ Խոսրով արքայ փախստական գնաց... և մեռաւ, կեցեալ ամիսս Զ: _ Սեբ. *էջ 127-129*

*33.* բայց արդ եկ... եկից և ես յԱսորեստան. _ *Այս արտահայտությունը չկա Սեբեոսի բնագրում: Խոռեամին ուղղված Հերակլի այս խոսքերը պարունակող հատվածի կորստյան պատճառով հայտնի չէր, թե ո՞րն էր այն ժամադիր տեղը, որտեղ Հերակլը պետք է հանդիպեր Խոռեմին: Թով. Արծ. շնորհիվ հայտնի է դառնում, որ դա Ասորեստանն էր: (Տե՛ս **Գ. Աբգարյան**, ծն. 445):*

*34.* Եւ հաւանեալ Խոռեմայ՝ ... թողեալ ի նա զերուսաղէմ... և զմեծ մաս Հայոց... _ *Այս տեղեկությունը չկա* Սեբեոսի *բնագրում (տե՛ս* Սեբ., *էջ 129):*

*35.* Յայնժամ Հայրակղէս գրէ առ Խոռեամ և ասէ ... _ *և մեծարեալ արձակեաց պատուով: _ Սեբ., էջ 129-130:*

*36.* Եւ գումարեալ Հայրակղի զամենայն զօրս իւր... Եւ կարգեալ հաստատեաց Հայրակղոս զսուրբ նշանն... ի սուրբ Գողգոթայ: _ Սեբ., *էջ 131: Խաչի հաստատումը Գողգոթայում տեղի է ունեցել 629 թ. սեպտ. 14:*

*37.* Եւ բաշխեաց... օրհնութիւն և գինս խնկոց _ Սեբ. *էջ 131: Սույն հատվածում օգտագործած «Օրհնութիւն բաժանել» արտահայտությունը արտասովոր է, որովհետև բուն հայերենում «օրհնություն» բառն ունի միայն բանավոր օրհնության իմաստ, իսկ բանաւոր օրհնության մասին չի կարելի ասել «օրհնություն բաժանել»: Սեբէոսի պատմության» հեղինակի արտահայտության ձևից երևում է, որ մեր պատմիչն օգտվել է հունական աղբյուրից, որի մեջ «օրհնութիւն» բառը ունեցել է նյութական օրհնության իմաստ: Հայ մատենագրության մեջ միայն հունարենից թարգմանված երկերում է հանդիպում բառի այդ իմաստը»: Ամենայն հավանականությամբ այդ բառի տակ պետք է հասկանալ օրհնված հաց, որը բաժանում էին պատարագից հետո ծխականներին և որը հունարեն կոչվում էր էվլոգիա (eylogia) այսինքի «օրհնություն»: (տե՛ս **Գ. Աբգարյան**, ծն. 451:* Սեբ. *ռուս. թարգմ., էջ 168, ծն. 149 _ **Ստ. Մալխասյանց**):*

*38.* ... և ինքն գնաց ի Միջագետս Ասորոց... որ յորդւոցն Իսմայէլի: _ Սեբ., *էջ 131:*

*39.* Ապա թագաւորեցին զԲորն... և ոչ հրամանատու այլ անձնապահ: _ Սեբ., *էջ 130:*

*40.* Դան., *Բ, 31-35:*

## ԳԼՈՒԽ Դ

*1.* Եւ յայնմ ժամանակի… արք ԺԲՌ յամենայն ցեղից Իսրայելի… ի Հռովմայեցւոց տէրութենէն… առ որդիսն Իսմայէլի… – *Համարյա բառացի փոխ.* Սեբ., *էջ 134:*

*2.* Մադիամ – Թով. Արծ. *նկատի ունի Իր-Մովաբ քաղաքը. տե՛ս* Գ. *Թագ., ԺԱ, 18:*

*3. …* զոր ատեցեաց Իսրայէլ… արքայի Մովաբայ: – *Տե՛ս Թիւք, ԻԲ-ԻԴ:*

*4.* Յայնմ ժամանակի էին եղբարք… – *Այսպես է սկսում* Թով. Արծ. *պատմությունը Իսլամի հիմնադիր Մոհամմեդի մասին, որը բացակայում է ինչպես* Սեբեոսի, *այնպես էլ* Ղեւոնդի *մոտ, մինչդեռ* Ղեւոնդի *երկի վերնագիրն է՝ «Պատմաբանութիւն Ղեւոնդեայ մեծի վարդապետի Հայոց, որ յաղագս երեւելոյն Մահմետի, և զկնի նորին: Թէ որպէս և կամ որով օրինակաւ տիրեցին տիեզերաց և առաւել թէ Հայոց ազգիս» (Մատ., ձեռ. Թ. 1902): Սույն հանգամանքը մատնանշում է,* Ք. Պատկանյանը, *որը ենթադրում է, որ թերևս Մոհամմեդի պատմությունը պարունակող* Ղեւոնդի *գրքի առաջին գլուխը մեզ չի հասել, կամ էլ վերնագիրը հետագայում ավելացրել են գրիչները (տե՛ս* Ղեւոնդ, *Պատմութիւն Հայոց, Ս.-Պետ., 1887, էջ 118: Տե՛ս նաև 1852թ. հրատակ. առաջաբանը, էջ 11): Հնարավոր է, որ* Թով. Արծ. *օգտվել է* Ղեւոնդի *այդ մեզ չհասած գլխից, հակառակ դեպքում որպես աղբյուր նրան կարող էին ծառայել բազմաթիվ ձեռագրերում պահպանված Մոհամմադի մասին ավանդության տարատեսակներից մեկը (տե՛ս Մատ. ձեռ. ԹԹ. 234, 2506, 3206, 3447, 8100, 8387):Ստորև ներկայացնում ենք XVII դ. ձեռ. Թ. 6961-ում (էջ 91բ-96բ) պահպանված տարատեսակներից մեկը, որը ունի հետևյալ վերնագիր. «Պատմութիւն ծննդեան եւ սննդեան արբանեկին նեռան Մահմատին եւ թագաւորելն»: «Աստանօր կամ եղև ինձ դարձեալ երկրորդ անգամ բուռն հարկանել զմատենից ժամանակագրաց պատմութեանց կարգաւ ծանուցանել, թէ որպէս կամ զինչ գործեցան աշխարհին Հայոց և Բաբիլացոց, [Հ]ունաց և առհասարակ ընդ տիեզերս ամենայն: Եւ արդ, բազում էին զօրաւորք տանն Թորգոմայ և անթիւք էին գունդք նախարար[աց] նոցա. նոքօք ելանէր մեծն Տրդատ և յաղթէր բազում գաւառաց և թագաւորաց. և յետ նոցա վախճանելոյն ոչ ուղ[ղ]եաց զաթոռ թագաւորութեան որդին նորա Խոսրով, և նորին որդին Տիրան, և նորին որդին Արշակ, և նորին որդին Պապն, որ եսպան դեղովք զսուրբ հայրապետն զմեծն Ներսէս և ընկալաւ զնորին արագահաս պատիժն և զկործանումն տանս Հայոց և զփախփանումն թա-*

գաւորաց, զի զազրագործ և պիղծ և գարշելի վարս ունէին, որպէս Հեթանոսք, և խոտորեցան ի ճանապարհացն աստուծոյ: Վասն այն բարկութիւն աստուծոյ եկն ի վերայ Հայոց աշխարհին և ջնջեցաւ շրջեցաւ թագաւորութիւնս մեր բազում ժամանակս: Ապա, յայտնի կարապետն նեռին, որ է Մէհէմէտն՝ առաջնորդն տաճկաց:

Այր ոմն աշխարհէն Պարսից և անուն նորա Ապտռահման՝ որդի Աբդալի՝ որդոյ Բեյմիկին, ի քաղաքէն Ռուերան՝ մօտ ի քաղաք Ռէյոյ, ընդդէմ Ասպահան բերդոյ. նա ծնաւ որդի մի և կոչեաց զանուն նորա Մէհէմէտ և յաւել ծնաւ դուստր մի և կոչեաց զանուն նորա Ֆաթմայ՝ կին գեղեցիկ յոյժ: Իսկ որդին Աբդռահման[այ]՝ Մահամատ եղև դիւահար և մոլեգնէր ի դիւէն աւր ըստ աւրէ և անդըրգնեալ ի դիւէ՝ խզէր ի շխթայս և զկապանս երկաթիս և վարէր ի դիւէն ի յանապատս, ի լերինս և ի քարանձաւս. և բազում ծախ ծախեց Հայր նորա բժշկեաց. և ոչ աւգտեցաւ և կայր ի տարակուսի զօր Հանապազ. և երեկ այր մի առ նա և պատմեաց նմայ և ասէ, թէ տանէիր զորդին քո յերկիրն Ասորեստանեաց առ այր մի, որում անուն էր Սարգիս. և նա ըստ Հաւատին իւրոյ զգեցեալ է պարէգաւտ և է սևազգեստ և նա բժշկէ զորդին քո: Եւ յարուցեալ Աբդռահման, առ զՄահմէտ զորդին իւր և եկ ի յերկիրն Ասորեստանեաց և Հանդիպեցաւ առն աստրոյ մոլոզոնի, և Հասեալ նոցա ի լերն վանաց, եհաս դեւն ի վերայ և զարկուց զնա ի գետնի, և մոլեգնայր և փրփրայր յոյժ. և Հասեալ Սարգիսն բուռն եհար զՄահմետայ և կանգնեաց զնա. և ասէ Աբդռահման, եթէ Հնար է և կարես բժշկել զորդին իմ, տամ քեզ գանձս բազումս և Հանդերձս պատուականս և երիվարս ազնիւս: Եվ նորա անձն առեալ՝ եթէ բժշկեմ: Եւ Աբդռահման եթող զՄահմէտ զորդին իւր առ նա և ինքն գնաց. և այրն էր Նեստորի Հաւատով, դիւական և կախարդասէր և յոյժ Հմուտ էր արՀեստից դիւաց թիւթել և կարդալ: Եվ Մահմէտն էր կռապաշտ Հաւատով և մոգ. և ասէ Սարգիս զՄահմէտ, եթէ Հաւատաս յԱստուած և դառնաս ի կռապաշտութենէդ, բժշկեմ զքեզ: Եվ նորա յօժարեալ՝ մկրտեցաւ ի նմանէ: Եվ նա մկրտէր զնա ըստ Նեստորի Հաւատոյն: Եւ բնակեցաւ Մահմէտ առ նա ամս ԻԳ, և միացաւ սատանայ ընդ մարմնոյ և ընդ Հոգոյ նորա, և վարժեցաւ արուեստիւ կախարդութեամբ և ուսաւ զամենայն կախարդական աղանդս և Հերձուածս Նեստորի: Եվ յետ այսորիկ, եհաս Համբաւ առ Մահմէտ, եթէ մեռաւ Հայրն քո Ապտռահման. և լուեալ Մահմէտ՝ լայր: Ասէ Սարգիս՝ մի լայր եթէ մեռաւ Հայրն քո, զի ես քեզ մեծ առնեմ քան զՀայրն քո և քան զամենայն ազգատոՀմն քո. և արդ, արի տես զտուն Հաւր քո և դարձիր առ իս: Եվ յարուցեալ Մահմէտ զառ զերկուսս ի վանաց

մոլոզոնս և գնաց ի յերկիր իւր, Հասանի Սումիրայն. և եգիտ մեռեալ զհայրն իւր և զքոյրն իւր՝ զկինն Ալէ եղբօրորդոյն իւրոյ և ասէ. «Զի ես, Ալէ, զտուն հօր իմոյ յափշտակեցէց և առիր զամենայն գանձս և զհանդերձս հոր իմոյ և զամենայն մլքերս»: Եվ արար Մահմէտ աղաղակ մեծ և էառ մասն ինչ յԱլէ և գնաց դարձեալ և եկն երկիրն Ասորեստանեան ի վանքն Դեմետրի առ Սարգիս մոլոզոնն և պատմեաց նմա զեղեալսն: Ասէ Սարգիսն. «Մի՛ երկնչիր, Մահմէ՛տ, զոր ունիմ ես հնարագիտութիւն զքեզ մեծացուցանել. արդ արի և գնայ դարձեալ ի տուն հօր քո և յօժարեցոյ այսր զարս ոմանս վաճառականս գնալ յերկիրն եգիպտացոց, և յորժամ գաս և հասանես հանդէպ վանացս իմոյ՝ առաջիք իջևանք, բա[յ]ց դու մի ասիցես եթէ ծանօթ եմ վանացս կամ տեղացս կամ սահմանացս այսմիկ և նշանէ զտեղս իջևանաց քոց. և ես, առեալ զսարկաւագունս իմ, ջահիւք և մոմեղինօք հասանեմ առ քեզ և համբարձեալ զձայնս մեր յերկինս զարհուրեցուցանեմ զայրս պարսից, որ զկնի քո իցեն եկեալ, և ասեմ ցնոսայ, թէ տեսիլ երկնից տեսի վասն մանկանս այսաւրիկ, զի սա մարգարէ ոմն է և պարտ է հաւատալ սմայ և զոր ինչ ասէ սա՝ լինելով լինիցի: Եվ արար Մահմէտ զամենայն զոր ուսոյց նմա կախարդն Սարգիս: Եւ գնաց Մահմէտ յաշխարհն պարսից ի քաղաքն Սումարայ և յօժարեցոյց զարս վաճառականս երթալ յերկիրն եգիպտացւոցն ի քաղաքն Սկանտարիայ և ժողովեցան արք մեծատունք և պատվաւորք և եկեալ հասանէին յաշխարհն Ասորեստանեայց: Իսկ ի ճանապարհին ասէր Մահմէտ. «Ո՛վ մեծամեծք պարսից, չենք մենք ի հաւատս և ի աստուածպաշտութիւն, զի սնոտիք են կուռքն մեր, քանզի լուեալ եմ ես ոմանց, թէ գոյ Աստուած յերկինս ի վեր քան զարեգակն, որ երևի մեզ»: Եվ նոքա ասեն. «Զի լինիս, Մահմէտ, լուռ լեր և մի խօսիր ընդ ա[յ]ն»: Իսկ նա սկսաւ պատմել նոցա զաւուրս զառաջինս յԱբրահամու և ի Նոյէ, նաև ի յԱդամայ. և նոքա զարմանային ընդ իմաստութիւնս նորա և ասեն. «Ո՛վ Մահմէտ, ուստի ասես զայդպիսի բանս և բազում գիտութիւնս»: Եվ նա ասէ. «Ի վերուստ է տված ինձ իմաստութիւն, գիտութիւն և մարգարէութիւն»: Եվ իբրև մօտեցան վանացն՝ բանակեցան անդ հադէպ վանացն մոլոզոնի ըստ խրատոյն նորին:

Եւ ելեալ ի գիշերի մոլոզոնն Սարգիս, առեալ ջահս [և] մոմեղէն[ս], զսարկաւագունս և մի[աբանս վանացն] և եկեալ ի տեղին, ուր էր [Մահմէտ], և շուրջ զնովա արեալ մեծաձայն բարբառէին և անկարծակի զարդեան արք վաճառականք զարհուրեցան: Եւ յարուցեալ գնացին առ նայ և ասեն ցմոնոզոն. «Զինչ է որ լսեմք, Նեստոր Սարգիս, զառնէս զայսմանէ»: Եւ ասէ. «տեսիլ

երկնից տես[ի] ի վերայ սորայ և լոյս մեծ և հրեշտակք, որ ասէին թէ մարգարէ է սա մեծ և զոր ինչ ասէ դայ, ճշմարիտ են բանք դորայ»:

Եւ ապա զմտաւ եկեալ արքն վաճառականք. «արդար էին բանք դորայ, զոր ասէր մեզ, յորժամ գայք ի ճանապարհին»:

Եւ յարուցեալ գնաց[ին] զճանապարհս իւրեանց: Եւ յորժամ դար(1բ) [ձան յաշխա]րհն իւրեանց և գնացին [իւրաք]անչիւր ի տունս և [համբաւէին զՄահմէտ թէ մարգարէ ոմն է]:

Եւ լուաւ զայս Ճապասպ Քասրէ արքայն Պարսից և խնդրէր սպանանել զՄահմէտ և ասէր թէ. «նայ ուսեալ էր հերձուածս Ասորեստանեաց և կամի խաբանել զպաշտօն կռոց մերոց»: Եւ յարուցեալ Մահմէտ և Ալի, առեալ զՖատմայ, ելին աշխարհէն իւրեանց ի Պարսից և եկեալ բնակեցան աշխարհն Բաբելացոց: Եւ էր սկիզբն թվականին հայոց ԼՁ»:

5. Յուշ առնէր նմա զխոստումնն Աստուծոյ առ Աբրահամ... _ Տե՛ս Սեբ., էջ 135: Ղեւ., էջ 4: Ծննդ., ԺԷ, 11-12. ԽԸ, 19:

6. ... և զկարգս թլպատութեանցն և զզոհիցն և զայլոցն ամենեցուն... _ Տե՛ս Ծննդ., ԺԷ, 11-12: Ելք, գլ. ԻԲ:

7. ... կնոջն Ղաւտայ... _ Ծննդ., ԺԹ, 26:

8. ... իսկ էր դուստր ցեղի Դանայ: _ Ղեւ. ԻԴ, 11-12:

9. Եւ Ալի այր քաջ, ասէ ցնա... եկին ի քաղաքն Մադիամ... _ Այդ կապակցությամբ Ք. Պատկանեանը նկատում է, որ մեր մատենագիրները «առ հասարակ զսկիզբն Թուականութեանն Արաբացւոց դնեն յառաջ քան զհէջիրն (16 յուլիսի 622 ամին): ... Սամուէլի Անեցւոյ ծանուցեալ զտարբերութիւնսդ առ պատմագիրս մեր զԹուականէն Արաբացւոց՝ գրէ, թէ ոմանք զսկիզբն Թուականութեան նոցա դնեն ի Թուականիս մերում 62-րդի, այլք ի 65-րդի և այլք ի 68-րդի, որ են ամք Տեառն 615, 617 և 620: (Տե՛ս Ղև., էջ 172-173, ծն. 2):

10. Եւ ուսեալ հրէիցն... բարձին սրով: _ Հմմտ Սեբ., էջ 135:

11. Տեսեալ Մահմէտի զյաջողութիւն իրացն... և զայլ ևս բազում»: _ Հմմտ.՝ Սեբ., էջ 135-136. Ղև., էջ 3-4:

12. Եւ նորա կամեցեալ ցուցանել Թագաւորին... տեսցէ զելս իրացն... _ Հմմտ.՝ «Եւ չուեալք գնացին բանակք բանակք ըստ իւրաքանչիւր նահապետութեանց... և սակաւք ի նոցանէ... անկանէին ի տեղի ապաստանի»: (Սեբ., էջ 135-136: Ղև., էջ 4-5):

13. Յայնժամ տեսեալ Երուսաղէմացւոցն... ամենայն հրէաստանի: _ Տե՛ս Սեբ., էջ 136:

14. Ի սոյն ժամանակս էր այլ ոմն... անուն էր Սալման _ Սալմանի մասին ստորև ներկայացված պատմությունը Թով. Արծ. քաղել է վերոհիշեալ Մոհամադի կյանքին նվիրված առասպելներից:

*15.* Եսայ. *ԻԱ, 7:*

*16.* ... «վայ քեզ, եղուկ դու, ազգ Տաճկաց... և քեզ ոչ եղիցի հանգիստ»: _ *Սույն հատվածը* Թով. Արծ. *գրել է նմանվելով աստվածաշնչային մարգարեություններին:*

*17.* ... և ինքն կացուցանէ ի գլխավորութիւն Տաճկաց... ամս Ի և ամիսս Զ: _ *«Համօրէն պատմագիրք Հայոց տան երեցունց առաջին յաջորդացն Մահմետի ամս 38 թագաւորութեան հասարակաց, առանց որոշելոյ իւրաքանչիւրոցն ի նոցանէ զժամանակ թագաւորութեան... Սակայն ժամանակ թագաւորութեան տևեաց ոչ ամս 38, այլ 24 միայն...» (***Ք. Պատկանեան***, էջ 3, ծն. 2): Ի տարբերություն* Ղևոնդի Թով. Արծ.*, նշելով Աբուբեքրի իշխանության տևողությունը՝ Բ տարի, մնացած Բէ տարուց Ժ տարիների փոխարեն հատկացնում է Աբուբեքրին հաջորդող Ամրին՝ Ի տարի և բաց է թողնում Ուսմանին (644-656) և Ալիին (656-661):*

*18.* Եւ փախեաւ Յազկերտ... որ տևեաց ամս ՇԻԲ: _ *Տե՛ս* Սեբ.*, էջ 164: Սույն հատվածին հաջորդում է* Ղևոնդի *պատմության հիման վրա կազմված արաբական խալիֆների ցանկը, սկսած Մուավիայից և վերջացուած Ահարոնով (Հարուն ալ-Ռաշիդ): Ցանկը իրենից ներկայացնում է խալիֆների անունների հասարակ թվարկումը, որը երբեմն ընդհատվում է շատ թե քիչ ընդարձակ, ծանոթագրությունների բնույթ կրող այս կամ այն խալիֆի անձը և գործունեությունը բնութագրող տեղեկություններով, ամբողջությամբ քաղած* Ղևոնդի *երկից:* Ղևոնդի *Պատմությունը վերջանում է կաթողիկոս Ստեփանոս Դվինեցու (788-790) և Հարուն ալ-Ռաշիդի (788-809) հիշատակումով, ուրեմն հաջորդ չորս խալիֆների անունները քաղած են ինչ-որ մեկ այլ աղբյուրից: Սակայն հնարավոր է, որ արաբական խալիֆների ողջ ցուցակը քաղած է այլ աղբյուրից, այսինքն* Շապուհ Բագրատունու *Պատմությունից: Այդ դեպքում տրամաբանորեն արդարացված կլինի* Դ *րդ գլուխն ավարտող տարբերությունը. «Բայց մեզ կայ առաջի ասել վասն Ջափրա և չար գործոց նորա, անգիրս մնացեալ յայլոց...»: Ոչ թե* Թովման*, այլ իր նոր աղբյուրի հեղինակն է խոստանում նկարագրել «անգիրս մնացեալ յայլոց» իրադարձությունները:*

*19.* ... ի Կիւրոսէ մինչև ցթագաւորութիւնն Տաճկաց՝ ամք ՌԾԿ: _ *Այսինքն* Թով. Արծ. *համարում է տաճիկների իշխանության սկիզբը 621թ:*

*20.* Ումառ որդի Աբդլազիզա... գրէ թուղթ հաւատոց... ի նմանէ պատասխանիս... իւրոց սպայիցն: _ *Տե՛ս Ղև., էջ 42-98:*

*21.* Յեզիտ _ *Ինչպես նշում է* ***Ք. Պատկանեանը****,* Ղևոնդի

*բոլոր ձեռագրերում «Յեզիտի» փոխարեն գրված է Յեզկիրտ, ինչից կարելի է եզրակացնել, որ* Թով. Արծ. *(կամ էլ՝ Շապուհ Բագրատունին) օգտվել է ձեռագրից, որտեղ անունը գրված էր ճիշտ՝ Յեզիտ: (տե՛ս* Ղև., *էջ 99, ծն. 9):*

*22.* Աբդլայ ամս Գ. միւս Աբդլա ամս ԻԲ. *_ Ինչպես հույն, այդպես էլ հայ մատենագիրները Աբդլայներ են կոչում Աբբասյան հարստության հիմնադիրներ՝ երկու եղբայրներին, որոնցից առաջինի անունն էր Աբուլ-Աբբաս-Աբդլա աս-Սաֆահ (749-754), իսկ երկրորդինը՝ Աբու Ջաֆար ալ Մանսուր (754-775): (Տե՛ս* Ղև., *էջ 127, ծն. 126):*

*23.* Մահադի ամս Ժ *_ Խոսքը վերաբերում է խալիֆ Մոհամադ ալ Մահդիին, որը իրոք թագավորել է 10 տարի (775-785): Ըստ* Թովմայի *ցուցակի նրան հաջորդում է «Մահմետի որդի Մահադեայ ամս Ը»: Սակայն «Մահադին» և «Մահմետ որդի Մահադեայ»-նը միևնույն անձնավորությունն է: Թերևս* Թովման *օգտվել է նաև մեկ այլ աղբյուրից, որտեղ տրված էր «Մահադի»-ի իշխանության տևողության ճիշտ թիվը և այդ պատճառով, կարդալով* Ղեւոնդի *մոտ «և կալեալ զիշխանութիւն Մահմետ ամս Ը» (էջ 161), համարել է նրան մեկ այլ անձնավորություն:*

*24.* Ահարոն ամս Ե *_ Խալիֆ ալ Մահդիի կրտսեր որդի՝ Հարուն ալ-Ռաշիդն է (786-809):* Թով. Արծ. *վերագրում է նրան իշխանության ընդամենը Ե տարի, թերևս այն պատճառով, որ 789/790 թթ. Հարունը ստիպել է իր մտերիմներին հավատարմության երդում տալ իր որդի Մոհամմադին:*

*25.* ... վասն չփոթեալ և հակառակասէր ազգին... զԲագդադ: *_ Խոսքը վերաբերում է երրորդ պառակտիչ պատերազմին և Օմայան հարստության անկմանը:*

*26.* ... այս այն Աբդլայն է... անյագ ագահութեանն: *_ Հմմտ.՝* Ղև. *էջ 128. «... զյափշտակող բարս ագահութեան իբրև զվարմ ձգեալ ի տամբւոն՝ ... մինչև կոչել յիւրական ազգէն անուն զլացութեան նորա հայր դանգի, զի որպէս բանից կարգ է ասել՝ զդանգ առաւել քան զԱստուած մեծարէր»:*

## ԳԼՈՒԽ Ե

*1.* ... նախ քան զլնուլ վեցերորդ յոբելինի... *_ Նմանակելով Եվսեբիոսին, հայ մատենագիրները սահմանում էին հոբելյանական ժամանակաշրջանը լիակատար 50 տարիներով, ավելին, նրանք համապատասխանեցնում էին այդ ժամանակաշրջանի, ինչպես նաև 532 տարվա զատկային ցիկլի սկիզբը հայոց թվականության առաջին տարվան, այսինքն մ.թ. 552 թ.: Վեց հոբելաննե-*

րին համապատասխանում են 300 տարի, 847 թ. մինչև 6-րդ հոբելյանի ավարտը մնում էին դեռևս 5 տարի, որոնց վերջին տարին համընկնում է 851 թ. հետ: Հենց այդ էլ նշանակում է վերոբերված արտահայտությունը: (**Dulaurie M.**, Recherches, էջ 254):

2. ... եւ եօթանասուներորդ ոլոմպիադին... _ 70 օլիմպիադներ = 280 տարիներին, որոնք հանած լինելով 847-ից տալիս են 567: Քանի որ այդ վերջին տարեթիվը քննվող ժամանակաշրջանի պատմության տեսանկյունից ոչինչ չի տալիս, **Դյուլորիեն** համարելով այն աղավաղում, առաջարկում է 70-ը ուղղել 74-ի, որը համապատասխանում է 847 թ. (Recherches, էջ 254):

3. ... յետ իննեւտասն ընդիքտիոնին... _ 19-րդ ինդիկտիոնը պետք է ավարտվեր 836 թ., իսկ 846 թ. համապատասխանում էր 20-րդ ինդիկտիոնի 10-րդ տարուն (**Recherches**, էջ 254):

4. ... Թոքլ ոմն Ջափր անուն: _ Խալիֆ Ջափար ալ-Մութավաքիլ (847-861):

5. ... խլրդենի դիմօք... _ Խլրդենի, այսինքն՝ խիստ կարմրած, բորբոքված դեմքով («խլդենի»=«փտախտ», «քաղցկեղ», «գանգրենա»):

6. ... ունէր յայնժամ զգլխաւորութիւն բարձակցութիւն իշխանաց Հայոց... _ Պետք է լինի «... ունէր յայնժամ զգլխաւորութիւն բարձակցութեան իշխանաց Հայոց...» (**К. Юзбашян**, Армянские государства эпохи Багратидов, էջ 54):

7. ... Մուսէի ումեմն որդւոյ Զորահայի հագարացւոյ... _ Բացի Թովմա Արծրունուց տեղեկություններ է նրա մասին հաղորդում նաև արաբ պատմիչ Բալաձորին (տե՛ս **Ա. Տեր-Ղևոնդյան**, Արաբական ամիրայությունները, էջ 81):

## ԳԼՈՒԽ Զ

1. ... և Մուշեղ և Ապուպէլճ _ Մինչդեռ Ապուպելճ Արծրունին (Գուրգենի և Մուշեղի հայրը) այդ ժամանակ կենդանի չէր: Ելնելով խոսքի իմաստից, կարելի է ուղղել «Մուշեղ Ապուպէլճ»: Վերջինիս Թովմա Արծրունին հիշում է նաև այլ առիթով երրորդ գրքի Դ գլխում (**Վ. Վարդանյան**, ծն. 165):

2. ... ի տոհմէն Ընտրունեաց... _ «Պետք է կարդալ Տրունեաց: ... Տիր-ունին, ըստ երևույթին, Տրպատ-ու-նիի կրճատ ձևն է»: (**Ն. Ադոնց**, Հայաստանը Հուստինիանոսի, էջ 356):

3. ... իշխան Աշոտ... Գունդստալար... _ Այս հատվածում հիշատակված անձանց մասին տե՛ս **Հ. Աճառյան**, Անձ. բառ., հ. Ա-Ե:

4. ... հագարապետ ոմն հարկաց, Մովափի կոչեցեալ ամիրայ Ալայ անուն: _ Արաբական պատմիչներ (Բելաձորին, Տաբարին) հիշատակում են նրան որպես Ալա իբն Ահմադ ալ- Ազդի (**Ա. Տեր-**

*Ղևոնդյան, Արաբական ամիրայությունները, էջ 82)։ Ըստ Տաբարիի, Ալան Հարկեր էր գանձում Հայաստանում 865 թ.։ Նա հաղորդում է նաև Ալայի մահվան տարեթիվը՝ 873։ (Տե՛ս* **Հ. Փափազյան**, *Անանուն տաջիկ աշխարհագիրը, էջ 83, ծն. 50)։*

*5.* ... գեօղն Առճուճս... _ *Հիշատակում է միայն մեկ անգամ* Թով. Արծ. *Նույն այդ տեղը, ըստ երևույթին, նշում է նաև Անանուն Արծրունին, սակայն արդեն որպես բերդ. «... յԱրճուճն անուանեալ ամրոցի»։ (Ան. Արծ., գլ. Դ)։*

*6.* ... Գուրգինայ Ապուպլէճի... _ *Պետք է ուղղել «Գուրգինայ (որդւոյ) Ապուպլէճի»։ (***J. Marquart***, Südarmenien, էջ 361)։*

*7.* ... Վասակայ Արծրունոյ... _ *Հայտնի չէ, թե վերոհիշյալ չորս Վասակ Արծրունիներից ո՞ր մեկի հետ նույնական է այս Վասակը։ Ստորև երրորդ գրքի Զ-րդ գլխում* Թով. Արծ. *կրկին հիշատակում է նրան որպես դավաճանի և հավատուրացի։* **Հ. Աճառյանը** *(տե՛ս Անձ. բառ., Ե, էջ 47) սխալմամբ ներկայացնում է նրան որպես 2-րդ գնդի հրամանատար Գուրգեն Ապուպլճի նիզակակից, Վահան Արծրունու փոխարեն։*

*8. Հմմտ.* Սոփո., *Ա, 10-11։*

*9.* Առակ., *ԻԹ, 4։*

*10.* Եսայ., *Զ, 9։*

*11.* Եզե., *ԺԶ, 3։*

*12.* Եսայ., *Ա, 23։*

*13.* Եսայ., *ԼԲ, 1։*

*14.* Իմաս., *Զ, 7։*

*15.* Եսայ., *Զ, 9-11, Ե, 13։*

*16.* Արդ ի գալ միւսոյ ամին որ յօրելեանք Զ և ոլիմպիատք ՀԲ, ընտիքտիոնք Ի, որ է ըստ հայերէն թուականութեանն Յ... _ *Նախորդ Ե գլխի սկզբում* Թով. Արծ. *առաջին անգամ օգտագործում է իր շարադրանքում հռոմեական թվագրությունը, որին մենք կհանդիպենք ևս մեկ անգամ իր երրորդ գրքի Թ և ԺԴ գլուխներում։*

*17.* ... Յովսեփու ումեմն որդւոյ Ապուսէթի... _ *Յուսուփ բեն Աբու Սայիդ Մոհամեդ բեն Յուսուփ ալ Մարվազի, Արմինիայի ոստիկան։ Ինչպես նշում է* **Մարկվարտը** *(Südarmenien, էջ 297, ծն. 4), բացի* Թով. Արծ., *բոլոր հայ մատենագիրները չփոթում էին Յուսուփին իր հոր՝ Աբու Սայիդի հետ (տե՛ս* **Ա. Նալբանդյան**, *Արաբ ոստիկանները, ՏՀԳ, Եր., 1956, 8)։*

*18.* ... և վասն աշխարհին նորա։ _ *Բոլոր տպագիր բնագրերում բացակայում է սույն դարձվածքը, որ վերականգնում ենք՝ ձեռագրի (էջ 237) հիման վրա։ (***Վ. Վարդանյան** *_ ծն. 171)։*

*19.* ... Զորոյ Հասկոյ... _ *Սույն անվանումը հիշատակում*

է միայն Թով. Արծր.: *(Տե՛ս Ղ. **Ինճիճեան**, Ստորագրութիւն, էջ201):*

*20. ... անհաւատարիմ... _ Սույն կոնտեքստում այդ բառը օգտագործված է «անհաւատ»-ի, «ճշմարիտ հաւատ չունեցող»-ի իմաստով: (Տե՛ս ՆԲՀ, հ. Ա, էջ 184-185):*

## ԳԼՈՒԽ Է

*1. ... Արիւնարբուք... _ Թվում է, որ այս բառը օգտագործված է աստեղ ոչ իր սովորական իմաստով, այլ նշանակում է, որ նրանք չէին վախենում թափել ինչպես իրենց սեփական, այնպես էլ ուրիշի արյունը:*

# ԴՊՐՈՒԹԻՒՆ ԵՐՐՈՐԴ ՊԱՏՄՈՒԹԵԱՆ ՀԱՑՈՑ

## ԳԼՈՒԽ Ա

*1. Մատթ., ԺԲ, 25:*

*2. Ոլպիանու _ Ն. Մառը (տե՛ս «Сборники притч Вардана, էջ 431) և Հ. **Տաշյանը** (Ժողովածոյք առակաց Վարդանայ, էջ 111) առաջարկում են ուղղել «Ողոմպիանու»: «Ոլպիանու» ձեւը թերևս մուծել են հետագայի գրիչները: Ողոմպիանի (Օլիմպիանի) անունով հայերեն թարգմանությամբ մեզ են հասել մի քանի առակներ: (**Վ. Վարդանյան**, ծն. 175):*

*3. Երեմ., Ճ, 25*

*4. Հմմտ.՝ Սաղմ., Ղ, 12: Բ. Զաք., ԼԲ, 35: Մատթ., Դ, 6: Ղուկ., Դ, 11:*

*5. Յայտն., Գ, 7:*

*6. Հմմտ.՝ Դատ., Ի, 15-16:*

*7. Ամբ., Ա, 5-10: Բազմակետով նշված է Թովմայի բաց թողած «քաղդեացիք» բառը:*

## ԳԼՈՒԽ Բ

*1. Ժլարք _ Խոսքը վերաբերում է Ջլարք զորավարին, որին զորավար Բուղան ուղարկել է Բզնունիք և Մոկք գավառներ (Տե՛ս **А. Тер-Гевондян**, Армения и арабский халифат, էջ 144):*

*2. Այլ և զամենայն Նորաշինիկս [illegible] Բզնունեաց _ Նորաշիրական ավանը հիշատակվում է միայն Թով. Արծր. տե՛ս նաև սույն աշխատության գլ. ԺԴ, էջ 113*

*3. Քարն Աստուծոյ _ Հիշատակվում է միայն Թով. Արծ., տեղադրված է [illegible] Բզնունեաց*

*գավառի սահմանների մոտ (տե՛ս* **Ղ. Ինճիճեան**, *Ստորագրութիւն, էջ 505):*

4. Առակ., *ԺԸ, 19:*

5. *Հմմտ.՝* Եսայ., *Լ, 17:*

6. *Բնագրում՝ «սպնգով»: Պետք է լինի «սպնգռով» (տե՛ս* **Բ. Լ. Չուգասզյան**, *Բժշկարան ձիոյ, էջ 238): Պատմիչը նկատի ուներ խիստ թունավոր սպունգուռ (շնախաղող) անունով բույսը, որով թունավորում էին նետասլաքները. (***Վ. Վարդանյան***, ծն. 178):*

7. Մատթ., *Ժ, 19-20:*

8. Մատթ., *Ժ, 28:*

9. *Հմմտ.՝* Մատթ., *Ե, 15-16:*

10. *Սաղմ., ՂԸ, 15:*

11. ... ի ձորոյ Տատուանոյ... _ *Հիշատակում է միայն* Թով. Արծ.: *Ինչպես ենթադրում է* **Ղ. Ինճիճեանը**, *պետք է լինի՝ Դատուանոյ ձոր (Ստորագրութիւն, էջ 533): Ըստ* **Ղ. Ալիշանի**, *Դատուանը՝ ավան է Վանայճի հարավ-արևմտյան ափին, մինչդեռ* **Մ. Միրախորեանը** *նույնացնում է Դատուանը լճի արևելյան կողմում մի բարձր բլուրի վրա գտնվող ավերակների հետ, որոնք, ըստ ավանդույթի, եղել են Սենեքերիմ թագավորի բերդը (տե՛ս* **Մ. Հովհաննիսեան**, *Հայաստանի բերդերը, էջ 221):*

12. ... ի Ղոկորուատ աւանին... _ *Հիշատակում է միայն* Թով. Արծ.: *I (էջ 146, ծն. 1) և II (էջ 131, ծն. 2) տրված է՝ «ի Շոկորուտ» տարընթերցվածքը: Ինչպես նշում է* **Ղ. Ալիշանը** *(Այրարատ, էջ 258ա)՝ «Անսովոր է ի մեզ Ղ տարիւ սկզբնաւորութիւն անուան»: «Շոկորուատ» տարընթերցվածքը ընդունում է* **Ն. Բյուզանդացին** *(Նախն. էջ 342):*

13. *Հմմտ.՝* Եսայ., *ԻԲ, 6:*

14. Եսայ., ԾԶ, 10-11:

15. Սաղմ., *ԼԴ, 12, ՃԸ, 5:*

16. *Սաղմ., ՃԸ, 6:*

17. Առակ., *ԺԷ, 13:*

18. ... Սմբատ Բագրատունի... Մոկաց իշխեցող... _ *Այս Սմբատ Բագրատունուն շփոթում են Աշոտ Մսակերի որդի՝ Սմբատ Ապլաբաս սպարապետի հետ: Իրականում Մոկաց իշխեցող Սմբատը Մոկաց իշխան Սահակի որդին էր և Աշոտ Մսակերի թոռը. (***Ն. Ադոնց***, Բագրատունեաց փառքը, էջ 67):*

19. Եսայ., *ԺԹ, 20:*

20. Եսայ, *ԽԵ, 13:*

## ԳԼՈՒԽ Գ

1. «Տպագիր բնագրերում բաց է թողնված «և զտիկնայս նոցա» դարձվածը, որը կա ձեռագիր բնագրում (Թ. 141բ) և էապես լրացնում է հեղինակի խոսքը» (Վ. Վարդանյան, ծն. 181):

2. ... և զտիկինն Հրանուշ... _ Խոսքը մեծ իշխան Աշոտ Արծրունու կնոջ և իշխան Գրիգոր-Դերենի մոր մասին է: Տիկին Հրանուշն հիշատակվում է նաև «Կարծեցեալ Շապուհ Բագրատունի»-ի պատմությունում երեք անգամ. 1) «Եւ ած Աշոտ զդուստրն Աշոտի Բագրատունւոյ զՀրանուշ՝ կին որդոյ իւրոյ Դէրէնի» (էջ 157): 2) «Յայնժամ Հրանուշ քոյր իւր (այսինքն՝ Սմբատ I Թագավորի-Մ. Դ.-Մ.) ուղարկել առ Սըմպատ եղբայրն իւր և ասէ, թէ «իմ այրս Դերենն թողել է զիս և զայլազգի կին մի կուսիրէ ի Հերայ՝ զդուստրն Ապումսրայ... Եւ դու տիէզերակալ եղբայրն իմ... մի տալ զիս արհամարհել, զի քոյր քո եմ և ոչ զոք ունիմ այլ տէր»: (էջ 161): 3) «Եւ յորժամ մայրն քո Հրանուշ, համեստ և իմաստուն ի կանանց, ել գնաց ի Հայք՝ լայր առաջի նորա (Սմբատի) և ասէր, թէ դու եղբայրն իմ ես և ես իբրև զանտէր ի տունն Վասպուրականի և զորդիքն իմ զսպանած ի ձեռաց անարժանին Մրվանայ, իսկ նա ծիծաղեցաւ և ասեր ընդ մայրն քո Հրանուշ. «մի լայր, թող մեռան զորդիքդ քո, զի ուժին ձագն լավ է սպանանել, որ ոչ վիշապանան» (էջ 193): Հայտնի չէ, թե իրականում մեծ իշխան Աշոտ Արծրունու կին Հրանուշը ո՛ր իշխանական տոհմից էր սերում: Կարծեցյալ Շապուհի կիսառասպելական պատմությունում նա ներկայացված է որպես Բագրատունյաց Աշոտ I Թագավորի դուստր, ըստ երևույթին, շփոթված լինելով Աշոտ Մսակերի դուստր Հռիփսիմեի հետ:

## ԳԼՈՒԽ Դ

1. Մատթ., Ժ, 32:
2. Եսայ., ԾՁ, 3:
3. Եսայ., ԾՁ, 6-7:
4. Յովհ., Ժ, 16-17:
5. Եսայ., ԿԵ, 15-16:
6. ... գեղջն Թուայ... _ Թով գյուղը հիշատակում է միայն Թով. Արծ., ինչպես նաև ստորև հիշատակվող «Արեան լիճ» աշխարհագրական անվանումը:
7. Խոսքը 851 թ. «... Մուսէի ումեմն որդւոյ Զօրահայի...» դեմ մղված պատերազմի (տե՛ս դպր. Բ, գլ. Ե) մասնակից Սահակ Ապումկդէմ Արծրունու մասին է, որին հիշատակում է միայն Թով. Արծ.:

*8. ... իբրև զքաջ հովիւ... յանձն առին... _ Համտ.՝* Յովհ., *Ժ, 11:*

*9. Տե՛ս գլ. ԻԹ, ծն. 9:*

*10.* Ելից., *ԺԵ, 3:*

*11.* Դան., *Գ, 26-45:*

*12. ...* ի գարդայ Պարսիցն... *_ «Գարդա» բառը հին պարսկերենում նշանակել է սարուկ (տե՛ս* Сасанидский судебник, изд. **А. Г. Периханян**, с. 535 *_* **Վ. Վարդանյան**, *ծն. 195):*

## ԳԼՈՒԽ Ե

*1. ...* Ամովս մարգարէ... *_ Պետք է լինի՝ Միքիէ, Ա, 16. տե՛ս նաև՝* Եսայ., *ԻԲ, 12:*

*2.* Զաք., ԿԺԳ, 7: Մատթ., *ԻԶ, 13:* Մարկ., *ԺԴ, 27:*

*3. Յովէլ, Բ, 3, 5, 25:*

## ԳԼՈՒԽ Զ

*1. ...* յաճիւռ... *_ Թերևս աղճատված բառ է: Ելնելով հատվածի ընդհանուր բովանդակությունից կարելի է ենթադրել, որ անիմաստ «յաճիւռ» բառի փոխարեն սկզբնօրինակում գրված էր՝ «յախուռն»:*

*2. ...* ոչ գոլ ճշմարիտ վկայութիւն միոյ ուրուք... Թող թէ բազումս: *_ Համտ.՝* Բ Օրին., *ԺԷ, 6:* Մատթ., *ԺԸ, 16:* Յովհ., *Ը, 17: Բ* Կորնթ., *ԺԳ, 1:* Առ. Եբր., *Ժ, 28:*

*3. Համտ.՝* Յովհ., *ԽԱ, 12-13:*

*4.* Մատթ., *ԺԵ, 8:*

*5.* Մատթ., *Զ, 24:*

*6.* Գ. Թագ., *ԺԱ, 26:*

*7.* Երեմ., *Բ, 27:*

*8.* Մատթ., *ԺԴ, 3-11:*

*9.* Մատթ., *ԺԸ, 20:*

*10.* Սաղմ., *ԽԳ, 23:*

*11.* Երեմ., *Ա, 18:* Եզեկ., *Դ, 3:* Ամովս, *Է, 7:*

*12.* Սաղմ., *ՃԽԳ, 1:*

*13.* Սաղմ., *ԼԳ, 8:*

*14. Տե՛ս* Երեմ. *Թ, 19:*

*15.* Դան., *Գ, 19, 49-51:*

*16.* Մատթ., *ԺԱ, 28:*

*17.* Մատթ., *ԺԶ, 25:*

*18.* Գործք առաք., *Ի, 34:*

*19. Համտ.՝* Երեմ., *Ը, 17:*

*20.* Եսայ., *ԺԱ, 8-9:*

*21.* Յովհ., *ԺԲ, 32:*

*22.* Ղուկ., *ԻԳ, 42:*

*23.* ... Հոռի ամսեան, որ օր Ե էր ամսոյն յաւուր ուրբաթու... _ *այսինքն 855 թ. մայիսի 31-ին ուրբաթ օրը (տե՛ս* **M. E. Dulaurie**, *Recherches, էջ 262):*

## ԳԼՈՒԽ Է

*1.* Ձընդ նոյն ժամանակս և Նաքատիոս... ի Հռովմ... _ *(Տե՛ս* Եւս. Կես., *Պատմութիւն եկեղեցական, գիրք Զ, գլ. ԽԳ, էջ 505-513):*

*2.* Հռովմ., *Ժ, 10:*

*3.* Եսայ., *ԻԹ, 13:* Մարկ, *Է, 6:*

*4.* Մատթ., *Է, 18-19:*

*5.* Մատթ., *Է, 17:*

*6.* Մատթ., *Ժ, 32-33:*

*7.* Հռովմ., *Ժ, 8:*

*8. Բ* Տիմ., *Բ, 12-13:*

*9.* Եսայ., *Զ, 5:*

*10.* Առ Եբր., *Ժ, 29:*

*11. Տե՛ս* Գործք առաք., *Ը, 9-13, 18-24:*

*12.* Գործք առաք., *Ե, 1-10:*

*13.* Հռովմ., *Ժ, 8:*

*14.* Սաղմ., *ՃԺԵ, 10:*

*15.* Բ. Կորնթ., *Դ, 13:*

*16.* Հռովմ., *Ժ, 9-10:*

*17.* Բ Տիմ., *Ա, 8:*

*18.* Սաղմ. *ՃԺԸ, 46:*

*19.* Մարկ., *Ը, 36:*

*20.* Աստանօր զվկայեալ բանիս... _ *Սույն դարձվածը* Նորայր Բյուզանդացին *ուղղել է «Աստանօր զկայ առեալ բանիս» ձևով (Հայկական բառաքննութիւն, էջ 86): Ուղղումն ընդունել է* ***Ք. Պատկանյանը*** *և մուծել 1887-ին Ս. Պ.-գում լույս տեսած բնագրի մեջ: Կարծում ենք, բնագիրը չպետք է սրբագրել: (****Վ. Վարդանյան****, ծն. 197): Այդ կապակցությամբ* ***Ք. Պատկանյանը*** *(էջ 166, ծն. 2) գրում է. «... մեք եդաք այսպէս ըստ ուղղագրութեան Նորայր Բիւզանդացւոյ (Հայկական բառաքննութիւն, յէջն 86), որպէս և եդաք զընթերցուածն «ի Հեր և ի Զարևանդ» յէջն 50 մատենիս ի ծան.՝ ըստ առաջարկութեան նորին, (անդ)»: Այդ սրբագրությունը մեզ ընդունելի է թվում:*

## ԳԼՈՒԽԸ

1. Զոր օրինակ... պատմութեանս խորհրդոյ: _ *Հմմտ., Եղիշէ, էջ 88: (R. Thomson, էջ 232, ծն. 2):*

2. Յորժամ անդնդական խորքն... և միայն բնակեն ըստ ազգս իւրեանց: _ *Հմմտ.՝* Եղիշե, *էջ 44 (R. Thomson, էջ 233, ծն. 3):*

3. Իսկ անօրէն զօրավարն... ի վերայ աշխարհիս Վասպուրական կոչեցեալ... _ Թով. Արծ. *նկատի ունի 852 թ. գարնանը Սասունի և Խութի ապստամբած լեռնցիների դեմ սկսված Բուղայի արշավանքը, որը ներխուժելով Հայաստան Դիարբեքիրի կողմից և գերի վերցնելով Բագրատի որդիներ Աշոտին և Դավթին, ծավալեց այնուհետև ռազմական գործողություններ Վասպուրականի տարածքում, ինչը ստիպեց մեծ իշխան Աշոտ Արծրունուն անձնատուր լինել Բուղային:*

4. ... եմուտ... ի քաղաքն Դուին ձմերել անդ. _ *Խոսքը 852/53 թ. ձմռան մասին է:*

5. Իսկ անօրէն զօրավարն իբրև արար... ի հաւատէն Քրիստոսի: _ *Հմմտ.* Եղիշե *55-56 (R. Thomson, էջ 233, ծն. 6):*

6. Մատթ., *Ժ, 33:*

7. Մատթ., *Ժ, 39:*

8. Մարկ., *Ը, 36-37:*

9. ...իբրև մանուկ մի անպիտան... _ Եղիշե, *էջ 41 (R. Thomson, էջ 234, ծն. 7):*

10. Ամբա., *Բ, 5:*

11. Սաղմ., *ԿԹ, 2 (Հ, 1):*

12. Սաղմ., *ԽԳ, 22:*

13. Եւ սոցա այսպէս նահատակեցան... ի փառս Աստուծոյ... _ *Ըստ* Թով. Արծ. *Նոր Աստվածյանց նահատակությունը կատարվել է հայ. թվգր. 302 թ. և ըստ* Հով. Դրասխ. *ճշգրտման մեհեկան ամսվա 25-ին, այսինքն՝ 853 թ. նոյեմբեր 17-ին (տե՛ս M. E. Dulaurie, Recherches, էջ 259):*

## ԳԼՈՒԽ Թ

1. Եւ եղև իբրև ձմեռն փոքրացաւ... գարնանային եղանակին մերձեցաւ... _ *Խոսքը 853/54 թ. ձմռան և 854 թ. գարնան մասին է:*

2. ... քաղաքին Տփղիք կոչեցեալ յառաջագոյն Փայտակարան անուանէին. _ *Փայտակարանը պետք է գտնվեր ներկայիս Սալիան քաղաքից դեպի արևմուտք, այժմ չորացած Մահուղճալա լճի մերձակայքում: ... «Աշխարհացույց»-ի հեղինակը արձանագրել է Փայտակարանի գտնվելը Կասպից ծովի եզերքին*

Երասխի գետաբերանում: VI-VII դդ. Կասպից ծովի մակարդակի խիստ անկման հետևանքով Փայտակարանը դադարում է ծովափնյա քաղաք լինելուց և, հավանաբար VII դ. վերջից, գոյություն ունենալուց: Ուշ շրջանի հեղինակներ՝ Հով. Դրասխ., Թով. Արծ., Վարդ. սխալմամբ Փայտակարանը անվանում են Տփղիս: (տե՛ս **Բ. Ա. Հարությունյան**, Փայտակարան քաղաք, էջ 61-76):

3. ... քաղաքապետն Սահակ... _ Իսհակ իբն Իսմայիլ, Տփխիսի ամիրայ (830-853): Բուղան Վրաստան է ներխուժել 853 թ. գարնանը: Ինչպես գրում է վրաց պատմագիրը, «... հայտնվել է [ոմն] սարուկ՝ Բուղա Թուրք, որին Բաղդադից ուղարկել էր ամիրմումնը: Եկել, պաշարել է Տփխիս քաղաքը: Քանի որ ամիրա Սահակը չէր ենթարկվում՝ սպանեց Սահակին, ամայացրեց Տփխիսը, հրով այրեց և ավերեց ողջ շրջակայքը»: (Матиане Картлиса, с. 30):

## ԳԼՈՒԽ Ժ

1. ... ծանարսն... _ լեռնական ցեղեր, որոնք բնակվում էին Թերեք գետի վերին ավազանում՝ Ծանարքում և առաջատար դիրք գրավում Կախեթիի մյուս ցեղերի նկատմամբ: Ծանարների վրա էր դրված Ալանաց անցքի պահպանության պարտականությունը (Տե՛ս **А. Мкртумян**, Племя цанаров, с. 85):

2. ... Ապումուսէ ոմն... _ Այդ անվան տակ հայտնի էր Աղվանքի իշխան Եսայիան: Պատերազմական գործողությունները Աղվանքի դեմ սկսվել են 854 թ. գարնանը և տևել մինչև 855 թ. գարունը: Հետևաբար Եսայիան բռնվել է 855 թ. և նույն տարվա ընթացքում գերեվարվել մյուս հայ իշխանների հետ: (**Ն. Ադոնց**, Բագրատունեաց փառքը, էջ 70-71):

3. ... ի դաշտն Գարգարացւոց... _ Հենվելով Մով. Խոր. պատմածի վրա, Թով. Արծ. Գարգարացվոց դաշտը տեղայնացնում է Պարտավ (Բարդա) քաղաքի շուրջը: Սակայն այդ անվան տակ պետք է հասկանալ Քուր գետի ձախափնյա ողջ դաշտավայրը և ոչ թե նրա ինչ որ որոշակի հատվածը: (Տե՛ս **А. А. Акопян**, Албания—Алванк в греко—латинских и армянских источниках, с. 74):

4. ... որպէս Մովսէս զԱղամաղէկ... _ Ելից., ԺԷ, 8-16:
5. ... Յեսու զՔանանցիսն... _ Յեսուի., ԺԷ, 18:
6. ... Սամուէլ զԱգագ... _ Ա Թագ., ԺԵ, 33:
7. ... Դաւիթ զԳողիաթ... _ Ա Թագ., ԺԷ, 49:
8. Եսայ., ԼԳ, 7:
9. Ամովս, Ա, 5:

## ԳԼՈՒԽ ԺԱ

1. Եւ եղև զի անցանէր ընդ այն Մուկաթլ ոմն ի Վանանդ... _ *Մուկաթլի նաՀատակության մասին մանրամասն գրում է միայն Թով. Արծ.: Մի քանի տող նվիրում է նրան Ասողիկը: Մուկաթլի նաՀատակությունը տեղի է ունեցել ըստ երևույթին, Նոր Ատոմեանց նաՀատակությունից շատ չանցած՝ 853 թ. աշնան վերջին:*

2. ... Սողովմոն, որ Սևորդին ճանաչի... _ *Նրա մասին գրում է միայն* Թով. Արծ.: *Թերևս նրան կարելի է նույնացնել* ՅովՀ. Դրասխ. *(գլ. ԻՁ) նույնպիսի Հանգամանքներում Հիշատակված Ստեփանոս Կոնի Հետ:*

3. ... Կախայ վերին աշխարՀեցին... _ *Խոսքը վերին աշխարՀեցի (Վերին Աշխարհ = Քարթլի) Կոնստանտիի մասին է, որի նաՀատակության պատմությունը ընդգրկված է Վրաց եկեղեցու սրբերի լիակատար վարքագրությունում (տե՛ս* Картлис Цховреба, *էջ 70-71, ծն. 49):*

4. ... Գրիգոր Քուրդկայ որդի Մամիկոնէից տէր... _ *Ինչպես գրում է Վարդան պատմիչը, «... Գրիգոր Մամիկոնեան արիաբար պաՀեալ զՀաւատն՝ ելանէ ի բանտէն և գայ մտանէ ի գաւառն Բագրեւանդ և կամէր ամրանալ ի գաւառն Գաբեղենից ի Գազանածական, որ և զկնի եօթն աւուրց մեռանի: Եւ իմացեալ ոստիկանին ՄաՀմետի, որ ի Հայս առաքէ առ Աշոտ որդին Սմբատայ, զի ուր և իցէ ըմբռնեալ առ նա տարցի: Եւ նորա Հատեալ զգլուխ մեռելոյն՝ առաքէ առ նա ասելով «Թէ կամեցաւ անցանել առ Յոյնս և իմ զկնի առաքեալ՝ սպանաւ, և աՀա գլուխ նորա»: Եւ խնդաց ՄաՀմետ և զգացուցանէ Ջափրի և նորա Հրամանաւ պատուէ զԱշոտ՝ տալով նմա զգաւառն Բագրեւանդ և արծաթ եօթն բիւր: Եւ յայսմ Հետէ բարձաւ ի Հայոց աշխարՀէ ազգն Մամիկոնէից»: (էջ 111):*

5. ... ԱտրներսէՀ Աղուանից իշխան... _ *Փոքր Սյունիքի - Խաչենի տեր, ծագում էր ԱռանշաՀիկների Հին Հայկական իշխանական տոՀմից: Ամուսնանալով Աղվանքի իշխան Վարազ-Տրդատի դստեր Հետ, ժառանգել է նաև Աղվանքի իշխանությունը: (Տե՛ս* **Բ. Ուլուբաբյան**, *Խաչենի իշխանությունը 10-15-րդ դարում, էջ 65):*

6. ... Գրիգոր Սիւնեաց տէր... _ *Գրիգոր Սուփան I, Սյունիքի իշխանաց իշխան Վասակի կրտսեր որդու՝ ՍաՀակի որդին էր: (Մանրամասները տե՛ս* **Ա. Ուլուբաբյան**, *Սյունիքը 9-10 դարերում):*

7. *Ձեռագիր և տպագիր բնագրերում «ՄաՀլ Սմբատայ*

*որդի» (Նույն ձևով վկայված է նաև Մովսես Դասխուրանցու, Վարդան Արևելցու մոտ), արաբ պատմիչները հիշում են Սահլ իբն Սնբատ (Սունբատ, Շամբատ) ձևով (այս մասին տե՛ս նաև **Թ. Ավդալբեգյան**, Հայագիտական հետազոտություններ, էջ 181, ծն. 7: **Նորայր Բյուզանդացի**, Նախն. էջ 343: - **Վ. Վարդանյան**, ծն. 203):*

*8.* ... Բաբան... _ Թով. Արծ. *նկատի ունի պարսիկ Բաբեկին: Ինչպես գրում է Վարդանը «Յաւուրս յայսոսիկ այր մի յազգէն Պարսից ելեալ ի Բաղդատայ՝ Բաբ անուն, արկանէր զբազումս ի սուր սուսերի յազգէն Իսմայելի՝ գերելով զբազումս, և ասէր զինքն անմահ, և ի միում նուագի սատակէր երեսուն հազար ի պատերազմելն իւրում ընդ Իսմայելի... Մեռաւ Մամուն և առ զիշխանութիւն Ապուսահակ եղբայր նորա, որ և առաքէ զԱփշին ամենայն ուժով ի վերայ Բաբանայ ի Հայս և ինքն կոտորէ զզօրսն Բաբանայ: Սահլ որդի Սմբատայ ըմբռնէ զԲաբան և առնու յԱփշնէն պարգևս... և զԲաբանայ... հանէ... ի փայտ». (էջ 108-109):*

*9.* ... իշխանական Վասակ... _ *«**Թ. Ավդալբեգյանն** առաջարկում է ուղղել «Իշխանիկ Վասակ» (Հայագիտական հետազոտություններ, էջ 181, ծն. 7): Հովհաննես Դրասխանակերտ*ցին *այս նույն Վասակին հիշատակում է՝ «Մեծ իշխանն Սիւնեաց, որ ըստ փաղաքշականին Իշխանիկ անուանիւր» (գլ. ԻԸ, ԻԹ): (**Վ. Վարդանյան** - ծն. 204):*

*10.* ... և Փիլիպպէ իշխանն Սիւնեաց... _ *Այս Փիլիպպէին հիշատակում է միայն* Թով. Արծ.*, որի համաձայն 853 թ. նրան էլ ի թիվս այլ հայոց իշխանների Բուղան գերի է ուղարկել Սամառա: Նրան հնարավոր չէ նույնացնել ոչ 848 թ. մահացած Սյունաց իշխան Փիլիպպէ I-ի հետ, ոչ էլ Վասակ Իշխանիկի որդի Փիլիպպէ II-ի հետ, որը 943 թ. դեռևս կենդանի էր: (Տե՛ս **Ա. Ութմազյան**, Սյունիքը, էջ 333):*

*11. Բնագրում «Գարիթայանց»: **Ն. Ադոնցը** (Պատմ. ուսումն., էջ 137) և **Թ. Ավդալբեգյանը** (Հայագիտ. հետազ., էջ 181, ծն. 7) ուղղել են «Գարդմանից» ձևով (**Վ. Վարդանյան** - ծն. 206): Սակայն* Նորայր Բյուզանդացին *առաջարկում ուղղել «Գաբիթայանից», հիմք ընդունելով Աշխարհացույցը (էջ 609), որտեղ կա «Գաբիթայանք» ընթերցումը, կամ էլ սրբագրել վերջինը ըստ* Թով. Արծ.՝ *«Գարիթայանք»:*

*12.* Իսկ ի Վասպուրական տէրութեանն ի տեղւոջ զօր արութեան մնաց Գուրգէն... _ *Խոսքը՝ Քուրդիկ Մամիկոնյանի քեռորդու՝* Գուրգեն Ապուպելճ Արծրունու *մասին է (տե՛ս **Ն. Ադոնց**, Բագրատունեաց փառքը, էջ 74-75: **T. Laurent**, Un feodal*

*arménien au IX siècle Gourgen fis d'Abu-Beldj. «Etudes d'Histoire arméniennes», s. 20-50:* ***Վ. Վարդանյան,*** *Վասպուրականի Արծրունյաց թագավորությունը (918-1021), էջ 11-44):*

*13.* ... զԱբրահիմ ումն... _ *Խոսքը Բուղայի զորավարներից մեկի՝ Իբրահիմի մասին է, որին Բուղան, հեռանալով Հայաստանից, թողել է որպես Նախճավանի ամիրա:*

## ԳԼՈՒԽ ԺԲ

*1.* Եսայ., *Գ, 6:*

*2.* Եսայ., *Գ, 5:*

## ԳԼՈՒԽ ԺԳ

*1.* ...զՄամգոնեաց ճենազնեոյ... _ *Տե՛ս* Մով. Խոր., *Ա, 23, Բ, 81:*

*2.* ... բայց քանզի պատմագրութեան է ժամ և ոչ գովասանականութեան... _ *Փխռ.՝* Մով. Խոր., *Բ, 92 (Նախն., 466-467):*

*3.* Հռոմ., *Ը, 28:*

*4.* Առ Եբր., *ԺԱ, 32-33:*

*5.* Յայտ., *ԻԲ, 18-19:*

*6.* ... և էր յայնժամ առեալ Յունաց գաղաբար իշխանիկ կոչեցեալ ի տոհմէ Բագրատունի՝ զերդն Արամանեակ կոչեցեալ: _ *«Գաղաբար» բառը հայ մատենագրության մեջ այլ տեղ չի հանդիպում:* ***Հ. Մարկվարտը*** *այս բառը սրբագրում է «գայլաբար» կամ «գաղտաբար» (տե՛ս, Հայ Բագրատունեաց ծյուղագրությունը, էջ 139, ծն. 3): «Իշխանիկ»-ը գործածվել է որպես մականուն:* ***Լեոն*** *(Երկերի ժողովածու, հ. 2, էջ 451),* ***Ե. Դուրյանը*** *(Ազգային պատմություն, էջ 428) կարծում են, թե «իշխանիկ»-ը հատուկ անուն է:* ***Ժ. Լորանն*** *ընդհակառակը, «գաղաբարն» է համարում հատուկ անուն և կարծում է, որ երբ Սպերի Գրիգոր իշխանը կոչվել է նաև «Գաղաբար իշխանիկ» (տե՛ս Un feodal Armenien IX-e Siesle, p. 31): Տվյալ դեպքում «Իշխանիկը» սոսկ մականուն է՝ տրված Գրիգոր իշխանին (ինչպես վերը հիշված Վասակ Սյունեցի իշխանին (տե՛ս ծն. 204) կամ «արքայիկ» պատվանունը՝ տրված Տարոնի տեր Դավթին): Նոր Հայկազյան բառարանը «Իշխանիկ» բառը մեկնում է «Կտրիճ և սիրուն իշխան»: Թերևս «գաղաբարը» նույնպես մականուն է (իմաստը չի մեկնվում): (***Վ. Վարդանյան,*** *ծն. 209): Մեզ թվում է, որ ճիշտ է* ***Հ. Մարկվարտի*** *«գաղտաբար» սրբագրումը, որն նա մեկ անգամ ևս հաստատում է իր «Südarme-*

nien» երկում (էջ 361-362)։ Եթե փորձենք մտցնել այդ սրբագրությունը խնդրո առարկա նախադասության մեջ, ապա այն կկարդացվի հետևյալ կերպ. «և էր յայնժամ առեալ Ցունաց դաղտաքար [Գրիգոր] Իշխանիկ կոչեցեալ ի տոհմէ Բագրատունի՝ զբերդն Արամանեակ կոչեցեալ»։ Արամանեակ բերդը հիշատակում է միայն Թով. Արծ. տվյալ կոնտեքստում։

7. ... ընդ իշխանականն... _ **Հր. Աճառյանը** սրբագրում է «իշխանկանն» (Անձ. բառ., *Ա, էջ 540:* **Վ. Վարդանյան**, *ծն. 210)։*

8. ... Աշխարհաբերդն... _ *Հիշատակում է միայն* Թով. Արծ.։

9. ... ի գեօղն որում Խոզաղբերքն ասէն. _ *Հիշատակում է միայն* Թով. Արծ.։ *Այդ ճակատամարտը տեղի է ունեցել 853 թ. վերջում - 854 թ. սկզբում։*

10. Այս լուր քաջութեան ... ճոխացոյց զայրն երևելի։ _ *Այդ դեպքերը կարելի է վերագրել 855 թվին։*

11. Յետ անցանելոյ չորից ամաց ... Հայոց կաթողիկոսութեան _ *Հայոց կաթողիկոս Զաքարիայ Զագեցին աթոռակալել է 855-876 թթ.։ Ամենայն հավանականությամբ չորս տարիները հաշվելիս* Թով. Արծ. *նկատի ուներ Հայոց իշխանների գերեվարությունը 852/853 թ.։ Այդ դեպքում Աշոտ Արծրունու եղբոր՝ Գրիգորի հայտնվելը կարելի է վերագրել 857 թ., երբ Բուղան արդեն հեռացել էր Հայաստանից։ Մի տարի անց, ինչպես գրում է* Թով. Արծ., *այսինքն 858 թ., Գրիգորը մահացել է։ (Տե՛ս* **Ն. Ադոնց**, *Բագրատունեաց փառքը, էջ 74)։*

12. ... եկն Վահան Աշոտի որդի, Հօրեղբօրորդի Սահակայ... _ *Թերևս ուղղ.՝ «եկն Վահան՝ Աշոտի հօրեղբօր Սահակայ որդի։*

13. *Տե՛ս* Յեսու., *Ա-ԺԲ։*

14. *Տե՛ս* Դատ., *Է, 13, 21-21։*

15. *Տե՛ս* Ծննդ., *ԺԲ, 14-16։*

16. *Տե՛ս* Ա Մակ., *Գ-Թ։*

## ԳԼՈՒԽ ԺԴ

1. Եւ եղև ի լնուլ վեցերորդ ամի... յորում կային յարքունիսն իշխանքն... _ *Սովորաբար* Թովման *պահպանում է իր աղբյուրների ժամանակագրական համակարգը։ Առաջին գրքում այն հիմնված է* Եվս. Կես. *և* Մով. Խոր. *վրա, այսինքն հնագույն ժամանակի համար ցանկը կազմվում է ոչ թե ըստ տարիների, այլ աստվածաշնչյան հայրապետների և տիրակալների սերունդների, հետագա շարադրանքի ընթացքում շատ թե քիչ սինխրոնիկ արշակ-*

յան-սասանյան ներկայացուցիչների, Հռոմեական կայսրերի և ավելի մանրամասն Հայոց թագավորների և կաթողիկոսների շարքերով: Երկրորդ գրքի 3-4-րդ գլուխներում պահպանվում է իր աղբյուրներ՝ Սեբեոսի և Ղևոնդի ժամանակագրությունը, որը տարվում է ըստ այս կամ այն տիրակալի տարիների (օր.՝ «և եղև յամի չորեքտասաներորդի Խոսրովա արքայի, ի քսաներորդ ամի Մուրակ թագաւորութեան» և այլն):

Երրորդ գրքում, որտեղ Թովմայի շարադրանքը հիմնականում պետք է որ լիներ ինքնուրույն և աղբյուրներից անկախ, նա սովորաբար բոլոր իրադարձությունները թվագրում է ըստ հայկական տոմարի: Այս տրամաբանորեն արդարացված ժամանակագրական համակարգից դուրս են մնում երկրորդ գրքի 5-6 գլուխները և երրորդ գրքի 9 և14-րդ գլուխները: Ակնհայտ է, որ այս գլուխները շարադրելիս, Թովման օգտվել է ինչ-որ մի մեզ անհայտ աղբյուրից: Ավելին, կարելի է պնդել, որ այս անհայտ աղբյուրը հիմք է ծառայել երկրորդ գրքի 5-րդ գլխի և երրորդ գրքի 14-րդ գլխի միջև ընկած ողջ ծավալուն հատվածի համար, որը բովանդակում է 851-858 թթ. տեղի ունեցած իրադարձությունների պատմությունը: Որ այդ աղբյուրը պետք է լինի Շապուհ Բագրատունու Պատմությունը կարծիք են հայտնել Ն. Ադոնցը, Հ. Մարկվարտը, Հ. Օրբելին: Ն. Ակինյանը իր հանգամանալի հոդվածում (տե՛ս Մատենագրական հետազոտություններ, էջ 195) նշում է՝ «Մինչև 788 շրջանի համար անշուշտ Ղևոնդ ամենէն աւելի չեշտուած պիտի ըլլայ, իսկ յաջորդ շրջանի պատմութիւնն է Շապուհ»: Ներկայացնելով Շապուհ Բագրատունու երկի բովանդակությունը Հով. Դրասխ. գրում է. «... Վասն զի հաճեցաւ բանս ոչ երկրորդել միւս անգամ զհետեանս զրուցաց Շապհոյ Բագրատունւոյ և մերում ժամանակի պատմագրի, որ յայտապատում իսկ արարեալ է զրոյցս պայազատութեան որդւոյ Աշոտոյ սպարապետին Սմբատայ զիշխանանական պատմութիւն, և զթագաւորացն զհանգամանացն զկարգս, և կամ զդարձ գերելոցն ի Բուխայէ զՀայաստանեայցս իշխանաց և նախարարաց յիւրաքանչիւր սեպհական իշխանութիւնս առեալ կացեալ հաստատեալ, և թէ ոյք ի նոցանէ հոյակապք և հարուստք և ուժեղակք ընդդէմ հակառակորդաց հինից գտան և կամ ոյք յումեքէ եղեն հարստահարեալք և կամ փախճան նոցա յիւրաքանչիւրումն տեղ»: Սույն հատվածում Հովհ Դրասխ. համառոտակի ներկայացնում է Շապուհի Պատմության այն մասը, որը բովանդակում է՝ 1. Թագավորաց կարգը (թվում է, որ այդ «Թագաւորաց կարգը» վերաբերում է նաև արաբական տիրակալների հաջորդականությանը, որը ներկայացնում է մեզ Թովման իր երկրորդ գրքի 4-րդ գլխի վերջին

հատվածում, ճիշտ այնտեղ, որտեղ ավարտվում է Ղևոնդի պատմությունը: Այստեղից է, որ նրա տեղեկությունների միակ աղբյուրն է դառնում Շապուհ Բագրատունին), 2. Աշոտ Մսակերի որդի Սմբատ սպարապետի իշխանական պատմությունը, 3. գերեվարված Հայոց իշխանների դարձը Հայաստան և դրանց հետագա ճակատագրի հանգամանքները: Հմվ. Դրասխ. սույն համառոտագրությունը լիովին համապատասխանում է Թովմայի Պատմության երկրորդ գրքի 5-րդ գլխի և երրորդ գրքի 14-րդ գլխի, ինչպես նաև մի շարք հաջորդ գլուխների բովանդակությանը: Այնպես, ինչպես, առանց անունները տալու, Թոհման կազմել էր իր կոմպիլյատիվ երկրորդ գրքի 3-4 գլուխները, երբեմն արտագրելով ամբողջ էջեր, ճիշտ նույն ձևով, պետք է ենթադրել նա օգտագործել է նաև Շապուհի գործը: Թովման անկասկած տվյալ իրադարձությունների ժամանակակից էր և թերևս դրանց մի մասի ականատես. սակայն այդպիսի մանրամասն և գործող անձանց ու դեպքերի աշխարհագրական տեսակետից լայն ընդգրկում ունեցող գիրք գրելու համար բավական չէ լինել ժամանակակից և ականատես, նման գործ կարող է գրել համապատասխան կրթություն ստացած և հասուն անձնավորություն: Արդ, ի՞նչ տարիք կարող էր ունենար 850 թ. Թովմա Արծրունին: Թովմայի Պատմության վերջին, անավարտ մնացած 29-րդ գլխում դեպքերի նկարագրությունը հասցվում է մինչև 908թ., Գագիկ Արծրունին հիշատակվում է միայն որպես Վասպուրականի իշխան, իսկ Յուսուֆ Սաջիդի մասին խոսք անգամ չկա: Կարող է ստեղծվել այն տպավորությունը, թե Թովմա Արծրունին մահացել է նախքան 908 թ.: Սակայն նույն այդ 29-րդ գլխում Թովման գրում է՝ «... իսկ զՆախճավան քաղաք և զԳողթն գաւառ հանեալ էր ի Վասպուրականէ բազում ժամանակօք առաջ, ՄԺԱ ամօք, յամի այրման եկեղեցւոյն Գրիգորի...»: Քանի որ Հայոց նախարարների այրումը Նախճավանի և Խրամի եկեղեցիներում տեղի է ունեցել 705թ., հետևաբար այդ տողերը Թովման գրում է 915/916 թ. (705+211), ինչը հաստատվում է նույն գլխում փոքր-ինչ անց Վարագա խաչի հայտնության մասին պատմվածքի հետևյալ տողերով. «Այս այն խաչ է զոր վերագոյնն գրեցաք վասն սորա, ՄԾԹ ամօք յառաջ զսորայս բացայայտեալ զրոյցս յայտնութեանն, յամս Ներսեսի Երրորդ Հայոց կաթողիկոսի և Վարդանայ Ռշտունեայ պատրկի և յամ ունելութեանն տաճկաց զհայկական աշխարհս»: Հայոց կաթողիկոս Ներսես Գ հայրապետության տարիներն են 641-661 թթ., Վարդ Պատրիկը Հայոց սպարապետի պաշտոնն է ստանձնել 658թ., իր հոր Թէոդորոս Ռշտունու մահից հետո. դա այն ժամանակաշրջանն էր, երբ արաբները խախտելով

652 թ. պայմանագիրը, ներխուժել են Հայաստան և 658 թ. մոտ հիմնականում գրավել այն: Հետևաբար Թովման այդ տողերը գրել է 652-658 թթ., 250 տարի անց, այսինքն՝ 911-917 թթ.: Սակայն շատ հնարավոր է, որ իր տեղեկությունը Վարագա խաչի հայտնության մասին Թովման քաղել է մի շարք ձեռագրերում պահպանված «Պատմութիւն գիւտին Վարդ Պատրիկին» պատմվածքից (Մատ. ձեռ. թ. 1487, էջ 18բ, թ. 7050, էջ 268ա, թ. 8100, էջ 244ա և մի շարք այլ ձեռագրերում): «Ի սորա (Վարդ Պատրիկի) աւուրս յայտնեցաւ սբ. Խաչն ի Վարագայ և էր թուականն ՃԲ: Եւ բարեպաշտ Վարդ Պատրիկ գնաց յերկրպագութեան սբ. Նշանին Վարագայ»: Այդ դեպքում Թովման նկատի ուներ 653 թ. և, ուրեմն, սույն տողերը գրում էր 912 թ.: Զուգադրելով մեր ստացած տարեթվերը, կարող ենք ասել, որ վերջին՝ 29-րդ մեզ անավարտ հասած գլուխը Թովման գրում էր 10-րդ դարի երկրորդ տասնամյակի կեսերին, երբ նա հազիվ թե 75-80 տարեկանից անցած լիներ և, ուրեմն, 851 թ. մոտ 10 տարեկան պատանի էր: Ամենայն հավանականությամբ, կարող ենք ենթադրել, որ Թովմայի ինքնուրույն, գրավոր աղբյուրներից անկախ շարադրանքը սկսվում է մոտավորապես այն պահից, երբ նա անցնում է 886/7 թվից հետո տեղի ունեցած իրադարձությունների նկարագրությանը: Առաջաբանում Թովման դիմում է «... Գրիգոր Արծրունեաց տէր և Վասպուրական իշխան»-ին որպես իր պատվիրատուի: Սակայն արդեն առաջին գրքի 6-րդ գլխում նա գրում է՝ «Զոր և մեր ըստ հրամանի քում, Գագիկ զօրավար Հայոց և Վասպուրականի իշխան, ջան յանձին տարեալ ընդ համառօտութիւն զրուցատարութեանցն անցեալ...», ինչից կարելի է եզրակացնել, որ նա Գրիգոր-Դերենիկի օրոք հասցրել է գրել միայն առաջին հինգ գլուխները, որից հետո նրա աշխատանքը ընդհատվել է մեզ անհայտ պատճառներով: Համենայն դեպս նա, ըստ երևույթին հենց այդ ժամանակաշրջանը նկատի ուներ, երբ 3-րդ գրքի 27-րդ գլխում պատմելով Ռշտունյաց ոստանում հրաշքի հայտնության մասին, գրում է՝ «... որ ցուցաւ ի զօրավարութեանն Գագկայ, և ապաշավանք ոչ սակաւք դիմեցին հոլովեալ ի վերայ իմ», այսինքն՝ այն տարիները, երբ Գագիկը դեռևս միայն սպարապետ էր, իսկ Վասպուրական իշխանն էր Սարգիս-Աշոտը: Դա նշանակում է, որ իր առաջին գրքի 5-րդ գլխից հետո գրված ողջ աշխատության շարադրանքը կատարվել է Աշոտի մահվանից՝ 906/7 թ. հետո, երբ իշխանությունը ժառանգած Գագիկը առաջարկել է նրան շարունակել գրքի շարադրանքը, որը և տևել մոտ 10-12 տարի և թվում է ընդհատվել է նրա մահվան պատճառով 920 թ. ոչ ուշ:

*Ի՞նչ չափով և ի՞նչ ձևով է օգտագործել Թովման Շապուհի Պատմությունը: Հարցին պատասխանելիս պետք է նշենք, որ ի տարբերություն առաջին գրքի երկրորդ գրքում (սկսած 3-րդ գլխից), Թովման՝ 1. ոչ մի անգամ չի հիշատակում հանվանե իր աղբյուրները: Այդ կապակցությամբ Հ. Ներսես Վ. Ակինյանը գրում է՝ «Զարմանալի է, որ Թովմա Արծրունին չի յիշէր գոնէ յանուանէ, որ այնպէս մերձաւոր էր Շապհոյ: Այս լռութիւնը սակայն չի կրնար նկատուիլ հետևցնելու, թէ անծանօթ մնացած է իրեն Շապհոյ Պատմութիւնը: Ինծի կերևայ թէ Թովման կարդացած է Շապհոյ պատմական երկասիրութիւնը» («Մատենագրական ուսումնասիրութիւններ, էջ 198): 2. քաղում է դրանցից ոչ միայն առանձին պարբերություններ, այլ նաև ամբողջ էջեր. իր սեփական միջամտությունն աննշան է: Թվում է, որ սխալված չենք լինի, եթե ենթադրենք, որ նույն չափով և նույն ձևով նա օգտվել է նաև Շապուհի գործից: Իհարկե, հնարավոր չէ տող առ տող նշել Թովմայի փոխառությունները Շապուհի պատմությունից, սակայն մոտավոր չափով դա հնարավոր է անել: Օրինակ՝ երկրորդ գրքի 5-րդ գլխի վերնագիրը՝ «Վասն թագաւորին Ջափրա... անուն» և առաջին պարբերությունը՝ Շապուհինն է, 2-րդ պարբերությունում՝ «Ի սորա ժամանակս տիրէր Վասպուրական աշխարհիս Աշոտ ի տանէն Արծրունեաց, այր քաջայայտ և ճոխ... եւ հոյակապ և անուանի եղեալ քան որ յառաջագոյն քան զնա էին կացեալ իշխանք ընդհանուր հայաստանեայց, որ յարեւելս և ի կողմանս հիւսիսոյ...» զգացվում է Թովմայի առաջին գրքի համար բնորոշ միտումը՝ վերագրել Արծրունյաց իշխաններին հատուկ նշանակություն ունեցող դեր բոլոր կարևոր իրադարձություններում և այդ միտումը պահպանվում է մինչև վերջ: Թերևս այդ ձևով է նա հիմնականում միջամտում Շապուհի շարադրանքի մեջ, պահպանելով միաժամանակ անփոփոխ հիմնական պատմական նյութը: Նույն ձևով կազմված են երկրորդ գրքի 6-7-րդ գլուխները, իսկ 7-րդ գլխի այն ծավալուն հատվածը, որտեղ նկարագրված է սասունցիների նիստուկացը, անկասկած, բառացի արտագրություն է Շապուհի Պատմությունից: Նույնը կարելի է ասել նաև 3-րդ գրքի 2-րդ գլխի մասին, որտեղ Թովման ներկայացնում է Մոկաց իշխան Սմբատ Բագրատունու պատմությունը: Ինչպես նշում է Ն. Ադոնցը, Գուրգէն Արծրունու (Աբուբելջի) արկածալից կյանքը գրի է առել «... հաւանօրէն Շապուհ Բագրատունին, որից քաղում է Թովմա Արծրունին» («Պատմական ուսումնասիրություններ. Բագրատունեաց փառքը», էջ 74): Լիովին հիմնավոր է Ն. Ակինյանի կարծիքը, թե «Շապուհ Պատմութիւն որ է գիրք սրբոյն Սմբատայ ստրատելատին եւ այլ նահատակացն*

*թուին Հայոց ԳՃԲ» պատկանում է Շապուհի գրչին և ոչ թե առանձին գիրք է, այլ նրա Պատմության մասերից մեկն է (տե՛ս նշ. աշխ., էջ 189):*

*Այսպիսով Թովմայի Պատմության 2-րդ գրքի վերջին երեք գլուխները և 3-րդ գրքի քսան գլուխները, որտեղ նկարագրված են 850-855/56 թթ. արաբական արշավանքները, Հայոց իշխանների գերեվարությունը, նրանց դարձը Հայաստան և հետագա ճակատագիրը, բովանդակության տեսակետից լիովին համապատասխանում են Հով. Դրասխ. ներկայացված շրջանակներում, Շապուհի Պատմությանը: Միայն 21-րդ գլխից սկսվում է Թովմայի Պատմության ինքնուրույն շարադրանքը. նախորդ, ըստ էության Շապուհի գրչին պատկանող մասի համեմատությամբ Թովմայի գրքի վերջին 22-29-րդ գլուխները զգալիորեն ավելի աղքատ են ներկայացված փաստական նյութի և դրա ընդգրկման աշխարհագրական շրջանակների տեսակետից. հիմնականում, չաս թե քիչ բացառություններով, այն սահմանափակվում է Վասպուրականի բուն տարածքով: Եթե հիշենք, ելնելով Թովմայի վերոհիշյալ ցուցմունքներից, որ կան հիմքեր ենթադրելու, թե նրա ամբողջ աշխատությունը, բացառությամբ առաջին հինգ գլուխների, գրված է 906/907-916/918 տարիների ընթացքում, ապա ուրեմն, վերջին 22-29-րդ գլուխները նա գրել է ոչ թե անմիջականորեն հետևելով կատարվող դեպքերին, այլ հիշողությամբ: Դրանով կարելի է բացատրել, օրինակ, այն, որ Սարգիս-Աշոտի իշխանության օրոք տեղի ունեցած Աֆշինի արշավանքները Հայաստանում ներկայացված են ընդհանուր ձևով, որոշ անճշտություններով ու սխալներով, օրինակ, Աֆշինի մահվան թվագրումը՝ 898-ը 901-ի փոխարեն: Ի տարբերություն Թովմայի, Յով. Դրասխ. գրում է իր պատմությունը դեպքերի թարմ հետքերով, մարամասն և աշխույժ, որպես դրանց անմիջական և եռանդուն մասնակիցը:*

*2.* Դան., *Թ, 24-25: Համտ.՝* Երեմ., *ԻԳ, 5:*

*3.* Բնագրում «ժամանակակարգեաց համառօտեաց – *Ուղղել ենք ըստ* Նոր. Բյուզ. *սրբագրության (Նախն., էջ 422):*

*4. Գրիգոր Արծրունին նահատակվել է Սամառայի բանտում 855 թ.: (Տե՛ս* **M. E. Dulaurier**, *Recherches, s. 262):*

*5.* Զաք. *Ա, 12:*

*6.* Եւ եղև յետ աւուրց այնոցիկ... փոխանակ հօր իւրոյ: – *Տասնամյա Գրիգոր-Դերենիկը գերությունից է վերադարձել 858 թ. ամռանը: (Տե՛ս* **Ն. Ադոնց**, *Բագրատունեաց փառքը, էջ 74):*

*7.* ... դառնայ Գուրգէն եղբայր Աշոտի... – *Մեծ իշխան*

*Աշոտ Արծրունու եղբայր՝ Գուրգենը վերադարձավ գերությունից 859թ.:*

8. Զի թեպէտ և Գուրգէն... _ *Այսինքն՝ Գուրգեն Ապուպելճը:*

9. ...զՍողոմոն Բագրատունի... _ *Հիշատակում է միայն* Թով. Արծ.:

10. Բայց Գուրգէն... ի սուրբ Խաչի վանս: _ *Իշխան Աշոտ Արծրունու եղբայր Գուրգենը մահացել է 860 թ.:*

11. ... Մոթէին... _ *Պետք է լինի՝ Մունթասիր: Ահմատ ալ-Մունթասիրը գահ բարձրացավ, սպանելով իր հոր՝ Մութավաքիլին: Այնուհետև* Թով. Արծ. *գրում է, որ Մոթէինին (այսինքն՝ Մունթասիրին) փոխարինել է նրա հորեղբոր որդի Մուհթիսը իմա՝ Մուսթաինը, որը իրոք Մութավաքիլի եղբորորդին էր:*

12. ... *և կացեալ ամիսս Գ մեռանի: _ «Ուղղելի «ամս Դ», քանի որ Մոհթիս (իմա՝ Մուսթային) խալիֆան իշխել է 862-866 թթ.: Շփոթն ըստ երևույթին առաջացել է «ամս» և «ամիս» բառերի, թերևս նաև «Գ» և «Դ» գրերի նմանությունից»: (Վ. Վարդանյան, ծն. 214: Տե՛ս նաև Նախն., էջ 151):*

13. *Տե՛ս Գ-րդ դպր., գլ. Բ, ծն. 2:*

## ԳԼՈՒԽ ԺԵ

1. Ընդ նոյն ժամանակս... իշխանաց իշխանի: _ *858-ի սկիզբը-859 թթ.:*

2. Նորաբերդ _ *Այդ ամրոցի մասին տեղեկացնում է միայն* Թով. Արծ.:

3. Եւ նոյնժամայն հրաման հասեալ... զկատարումն առնուին: _ *Բուղան սպանվեց 868 թ.:*

## ԳԼՈՒԽ ԺԶ

1. Ընդ նոյն ժամանակս... որում Կզուիննասեն: _ *Խոսքը Ղազվին քաղաքի ամիրա՝ Աբումուլիբի՝ խալիֆ ալ-Մուհթադիի (869-870) դեմ ուղղված ապստամբության մասին է: (Տե՛ս Ն. Ադոնց, Բագրատունեաց փառքը, էջ 79-80): Մանրամասները Աշոտ Արծրունու այդ ապստամբությունը ճնշելու գործում մասնակցության մասին հաղորդում է միայն* Թով. Արծ.:

## ԳԼՈՒԽ ԺԷ

1. ... զորդի իշխանաց իշխանի և զՍմբատ և զՇապուհ և զՄուշեղ Մոկաց իշխեցողք... _ *Քանի որ իշխանաց իշխան Աշոտի որդին էր ոչ միայն Սմբատը, այլև Շապուհը (տե՛ս դպր. Գ, գլ. Ի,*

*ԻԲ), իսկ Մոկաց իշխան էր միայն Մուշեղը (տե՛ս Թով. նույն դպր., գլ. ԺԹ, Ի), սույն նախադասությունը պետք է սրբագրել հետևյալ կերպ՝ «զորդիս իշխանաց իշխանի զՄրբատ և զՇապուհ և զՄուշեղ Մոկաց իշխեցող»: (Տե՛ս* **Ն. Ադոնց**, *Պատմական ուսումնասիրություններ, էջ 67:* _ **Վ. Վարդանյան**, *ծն. 219):*

*2.* ... և զԱրզնոյ զօրսն... _ *Ենթադրվում է Արծրունյաց տան հետ ազգակցական կապեր ունեցող Արզն քաղաքի ամիրա Աբուլ-Մահրի զորքը: (Մանրամասն տե՛ս* **J. Marquart**, *Südarmenien, էջ 327-334:* **Ն. Ադոնց**, *Բագրատունեաց փառքը, էջ 53-58:* **Ա. Տեր-Ղևոնդյան**, *Արաբական ամիրայությունները Բագրատունյաց Հայաստանում):*

## ԳԼՈՒԽ ԺԸ

*1.* ... զի ըստ Պտղոմեայ և Աղեքսանդրի (Պապպի) սահմանադրութեանն, կամ թէ մեր Արտաշէսի որդւոյ Սանատրկոյ՝ ... ի Վասպուրական պետութենէ _ *Սույն հատվածը պատկանում է այն ճշմարտանման, սակայն անվավեր հղումների շարքին, որ բնորոշ է Ա դպրությանը: Նկատելի է Թովմայի որոշակի միտումը հիմնավորել Արծրունյաց իշխանների տիրակալական իրավունքը Ամյուկ ամրոցի նկատմամբ հղումով հին հեղինակությունների վրա: Աշխարհագրական առումով այդպիսիք էին Պտղոմեոսը և Պապպը, իսկ քաղաքական տեսակետից, որպես այդ իրավունքի երաշխավորող ներկայացվում է Արտաշես թագավորը: Այդ անունները Թովման քաղել է 7-րդ դ. Հայոց աշխարհագրությունից, որտեղ բազմիցս հիշատակվում են Պտղոմեոսը և Պապպը, մի անգամ Ամյուկ բերդը, մի անգամ էլ Արտաշես թագավորը: Թովման օգտագործել է Աշխարհագրությունում հիշատակված անունները և միացրել դրանք իրեն անհրաժեշտ իմաստավորմամբ: Ի դեպ, դա Թովմայի երրորդ գրքում գրավոր աղբյուրի միակ հղումն է:*

*2.* ... զոր Ճ ամոյ յառաջ հանել էր... ի Վասպուրական պետութենէ: _ *Ութմանիկների արաբական ցեղը հաստատվել է Վանալճի հյուսիս-արևելյան մերձափնյա ծայրամասում դեռևս Ռաշիդ-ալ Հարուն խալիֆի ժամանակներից: Միայն Գագիկ Արծրունուն 908 թ. հետո, երբ նա Յուսուֆ Սաջյանից ստացավ արքայական թագը, սակայն մինչև 913 թ. հաջողվեց ետ գրավել ութմանիկներից Ամյուկ ամրոցը (Տե՛ս* **J. Marquart**, *Südarmenien, էջ 299, ծն. 2:* **Մ. Հովհաննիսեան**, *Հայաստանի բերդերը, էջ 286-291):*

*3.* ... զԽոստոմ Վարաժնունի... _ *Այս իշխանի անունը*

*Թովման հիշատակում է սույն դպր. Դրդ գլխում այլ իշխանների անունների թվում, որոնք իրենց զորամասերով մտել են Բուղայի դեմ կռվող Աշոտ Արծրունու եղբոր՝ Գուրգենի զորքի կազմի մեջ: Ռոստոմ Վարաժնունին սպանվել է 870 թ.:*

*4.* ... գեաւղջն Կոխպանից ... _ *Կոխպան գյուղը հիշատակում է միայն* Թով. Արծ.

*5.* ... գեաւղջն Ահեականից... _ *Հիշատակում է միայն* Թով. Արծ.:

*6.* ... Յիսէ, որ Շեհի որդին... _ *Հիսե իբն ալ-Շայխ աս-Սալիլ Աբու-Մուսա ալ Ջիհրի աշ-Շայբան, Արմինիայի ոստիկան 870/871-882/883 կամ 883/884 թթ. (Տե՛ս* **Ա. Նալբանդյան**, Արաբ ոստիկանները, *էջ 121):Իսա իբն Շայխի ճակատամարտը Աշոտ Արծրունու դեմ տեղի է ունեցել 870 թ.*

*7.* ... Վահան հայր Գագկայ Ապումրուանայ... _ *Վահան Արծրունին ամուսնացած էր իշխանաց իշխան Աշոտ Բագրատունու դստրերից մեկի հետ (անունը անհայտ է): (Տե՛ս* **Ն. Ադոնց,** *Բագրատունեաց փառքը, էջ 77):*

*8.* ... յԱրտաշեսեան աւանին... _ *Հիշատակում է միայն* Թովմ. Արծ:

*9.* ... Ե ամ ի գերութեանն արարեալ... _ *Բնագրի «Ե ամ»-ը պետք է ուղղել ԺԵ կամ, ավելի ճիշտ, ԺԷ ամ (***Ն. Ադոնց***, Բագրատունեաց փառքը, էջ 80, ծն. 2):*

*10.* ... և Ջ ամ... գերեդարձն լինելոյ... _ *Աշոտ Արծրունին, վերադարնալով գերությունից 868 թ., մահացել է 874 թ. մայիսի 27-ին: (***Ն. Ադոնց***, Բագրատունեաց փառքը, էջ 80, ծն. 2):*

*11. Տե՛ս* Ծննդ.*, Ջ, 2:*

*12.* Մարկ.*, Թ, 48:*

*13.* Մարթ.*, Թ, 10, 13:* Ղուկ.*, ԻԳ, 39-43:*

*14. Տե՛ս* Մատթ. *Ժ, 32-33:*

## ԳԼՈՒԽ ԺԹ

*1.* ... տէր Զաքարիա ... կեցեալ ի Հայրապետութեան Հայոց ամս ԺԸ... _ *Կաթողիկոս Զաքարիա Ձագեցու աթոռակալությունը սկսվել է Հ. Թ. 304 թ. վերջին- 305 թ. սկզբին, ինչը համապատասխանում է մ. թ. 855-856 թթ.: Ըստ* Թով. Արծ. *տեղեկության նրա կաթողիկոսությունը տևել է 18 տարի, այսինքն մինչև 321-ի վերջը-322-ի սկիզբը, ինչը համապատասխանում է 873 թ. ապրիլի 22-874 թ. սկզբին: Սակայն Հով. Դրասխ. վկայում է, որ Զաքարիայի աթոռակալությունը տևել է ոչ թե 18, այլ 21 տարի, այսինքն մինչև 877 թ.: Հով. Դրասխ. վկայությունը ավելի վստա-*

*Հելի է, քանի որ նա, օգտվելով կաթողիկոսարանի արխիվներից, հատուկ զբաղվել է կաթողիկոսների ցանկի կազմությամբ և Գևորգ Գառնեցու աթոռակալության (877-897) հենց առաջին օրերից եղել է նրա մերձավորը:*

*2. ...* Յամանիկ ումն: _ *այս «ումն Յամանիկ»-ի անունը պահպանվել է* Մով. Կաղ. *Պատմությունում (էջ 267)՝ Մահամատ իբն Ալլմեհդի: 872 թ., հեռանալով Աղվանքից, Հիսե իբն Շայխը թողել է նրան այնտեղ որպես Պարտավի քաղաքագլուխ: Շատ չանցած Յամանիկը (յեմենցի) ապստամբեց, և Հիսեն հայոց իշխանների հետ սկսեց Պարտավի պաշարումը, որը տևել է մոտ մեկ տարի: Ինչպես ենթադրում է* **Ն. Ադոնցը** *(Բագրատունեաց փառքը, էջ 54-55), արաբական ամենահին գաղութները Հայաստանում ստեղծել են յեմենցիների ցեղերը: Ըստ երևույթին նման գաղութ գոյություն է ունեցել Պարտավ քաղաքի շրջակայքում դեռևս Օմայան խալիֆների ժամանակներից: (Տե՛ս նշվ. աշխ. էջ 53-58):*

*3. ...* և այս եղև երկիցս անգամ: _ *Հիսե իբն Շեյխը առաջին անգամ եկել է Արմինիա որպես ոստիկան 870 թ.: Երբ են նրան ետ կանչել՝ հայտնի չէ: 875 թ. որպես Արմինիայի ոստիկան նշվում է Ջաֆար ալ-Մու՛աուիդը: Սակայն արդեն 877 թ. Հիսեն կրկին Արմինիայում է, որտեղ անց է կացնում պատժիչ արշավանք Պարտավի դեմ: Ըստ արաբական աղբյուրների, որոնք տարբեր ժամանակ են ցույց տալիս, նա մահացել է 881/882-883/884 թթ. միջոցին: (Տե՛ս* **Ա. Նալբանդյան**, *Արաբ ոստիկանները, էջ 123-124):*

*4. ...* զԱհմաթ որդի Հալթի. _ *Մոհամմադ իբն Հալիդ Շայբանին 878/879 թ. երկրորդ անգամ գալիս է Արմինիա որպես ոստիկան, փոխարինելով այնտեղից հեռացած Հիսե իբն Շեյխին:*

*5. ...* Ապլբառ Կայսիկ _ *Ապահունիքի բռնավոր Արդ՛ուլ-Բառի նստավայրն էր, ըստ Կոնստանտին Ծիրանծնի վկայության, Մանցիկերտ (Մանազկերտ) քաղաքը և նա ենթարկվում էր իշխանաց իշխան Աշոտին: Առաջին անգամ* Թով. Արծ. *հիշատակում է նրան ԺԸ գլխում որպես «Մանազաւեան պետոյն և Ութմանացն»: (Տե՛ս* **J. Marquart**, Südarmenien, *էջ 299, ծն. 2, էջ 3):*

## ԳԼՈՒԽ Ի

*1.* Եւ եղև մինչ կային իշխանքն ի միաբանութեան... յիշխանութենէ անտի նորա: _ *Սույն հատվածը ընդգրկում է այն ժամանակամիջոցը, որ ընկած է 862/863 թվի, երբ առաջին անգամ որպես ոստիկան Արմինիա ժամանեց Մոհամմեդ իբն Հալիդը, և*

Վասպուրականի մեծ իշխան Աշոտ Արծրունու գերությունից վերադարձի՝ 868 թվի միջև:

2. ... զԴաւիթ... _ Բագարատ Բագրատունու կրտսեր որդի՝ Դավթի մասին տե՛ս N. Adontz, Les Taronites en Arménie, էջ 204-211:

3. ... ամս է ... _ Վրիպակ. պետք է լինի «ամս ժէ», կամ, ավելի ճիշտ, «ամս ժե» (**Ն. Ադոնց**, Բագրատունեաց փառքը, էջ 83, ծն. 1: **Ռ. Մաթևոսյանը** հատկացնում է Դաւթին ժէ տարի՝ 878-895 թթ.-տե՛ս Բագրատունիներ, էջ 50):

4. Ժող., ԺԱ, 10:

5. ... և որդի Գրիգորի Արծրունոյ: _ Խոսքը վերաբերում է վերոհիշյալ «Գրիգոր Հարազատի իւրոյ (իմա՝ Դերենիկի) ի նոյն տանէ Արծրունոյ»:

6. Սաղմ. ԺԱ, 16:

7. Գրիգոր-Դերենիկի մահվան հանգամանքների նկարագրությունը տե՛ս նաև Անանուն Արծրունի, գլ. Ա. Հով. Դրասխ, գլ. ԻԹ. «Կարծեցեալ Շապուհ Բագրատունի», էջ 161-169:

8. Հմմտ. Առակ., ԺԹ, 23 «Երկիւղն Տեառն ի կենդանութիւն առն, իսկ աներկիւղն մոլորեալ ի դրունս բնակեսցէ ի տեղիս ուր ոչ լիցի այցելութիւն յաւիտենից»: Թովման մեջ է բերում սույն առակը սկսած «աներկիւղն» բառից, հասկանալով այն ոչ թե «երկիւղն տեառն» չունեցողի, այլ ընդհանրապես «համարձակ»-ի, «քաջ»-ի իմաստով:

9. Հմմտ. Առակ., ԺԸ, Ը՝ «Զվատ կործանէ երկիւղ»: Թովման վերաիմաստավորում է սույն առակը՝ «Զվատ երկիւղ ապրեցուցանէ»:

10. Սաղմ., ԾԺԸ, 60:

11. ... և այլ ոմն յարտաքին իմաստնոց... _ Նկատի ունի Խիկար Իմաստունին:

12. ... ընդ աներկիւղ...» _ այսինքն «երկիւղն Տեառն» չունեցողի հետ:

13. Ժող., Դ, 10:

14. Ժող., Դ, 9-10:

15. ... ի պետս սուրբ Խաչին Աղթամարայ... _ «Այս անունով պատմությանը հայտնի է Աղթամար կղզում 920-ական թթ. Գագիկ Արծրունի արքայի կառուցած հռչակավոր վանքը: Սակայն այստեղ պատմիչն ի նկատի ունի ոչ թե գագկաշեն վանքը, այլ մինչև այդ վանքի շինությունը նույն տեղում եղած մենաստանը» (տե՛ս **Վ. Վարդանյան**, ծն. 299):

16. ... և եւ հրաման սոցա իբրև զվէմ հաստատուն. _ Հմմտ. Մատթ., Է, 25: Ղուկ., Զ, 48 (**R. Thomson**, էջ 292, ծն. 6):

## ԳԼՈՒԽ ԻԱ

1. Ծննդ., *ԺԶ, 12:*

2. ... ի ԺԵ ամի հայրապետութեան Գէորգեայ Հայոց կաթողիկոսի: _ *Վրիպակ: Աշոտ I մահվան տարեթիվը՝ 339 համապատասխանում է Գէորգ կաթողիկոսի հայրապետության ոչ թե 15-րդ, այլ 17-րդ տարուն: (**Ն. Ադոնց**, Բագրատունեաց փառքը, էջ 89):*

## ԳԼՈՒԽ ԻԲ

1. Ի սորա յերրորդ ամի թագաւորութեան... _ *Դվինի երկրորդ ուժեղ երկրաշարժը տեղի է ունեցել 893 դեկ.-894 թ. հունվարին:*

2. *Տե՛ս* Թուոց, *ԺԶ, 28-33:*

3. ... անխայեալ ի Նինուէականն ստրջացեալ... _ *Տե՛ս* Յով., *Գ, 3-10:* Մաթ. *ԺԲ, 41:* Ղուկ., *ԺԱ,* 32:

4. ... որպէս յայնժամ ի մահուն Ոզիայ արքայի... դրանդեացն: _ *տե՛ս* Եսայ., *Զ, 1-4:*

5. *Տե՛ս* Զաք., *ԺԴ, 3-4:*

6. Այս շարժումն սաստկագոյն քան... յետ Է ամի գերութեանն Հայոց: _ Թով. Արծ. *նկատի ունի Դվինի 862թ. երկրաշարժը:*

7. *Տե՛ս* Ծնն., *ԺԸ, 23-32:*

8. ...Նոր քաղաղին... _ *Հմմտ. Ագաթ., § 150:* Ղազ. Փարպ., *էջ 11:*

9. *«Բնագրում «Ներսեսի երկրորդի»: Պետք է լինի «Ներսեսի երրորդի», քանի որ Վաղարշապատում եկեղեցի է կառուցել ոչ թե Ներսես երկրորդը (548-557), այլ Ներսես երրորդը (641-661): (**Վ. Վարդանյան**, ծն. 234):*

10. Յետ այսր՝ յերկրորդ ամի գնացին ... _ *Այսինքն՝ երկրաշարժից երկու տարի անց՝ 894/895 թ.: Ստորև* Թով. Արծ. *գրում է, որ այդ նույն տարում մահացել է Տարոնի իշխան Դաւիթ Արքան, դրանով իսկ կրկին հաստատելով Կարինի պաշարման տարիները՝ 894/895 (Տե՛ս **J. Marquart**, Südarmenien, էջ 318):*

11. ... և բռնագրօսեալ զաշխարհն Ահմատ որդի Յիսէի Շեհայ... և սպանանի Գուրգէն իշխան... ի մէջ Հայաստանեայցս: _ *Մանրամասն տե՛ս **N. Adontz**, Les taronites, էջ 211-214:*

12. ... ի փորն Լմբայ: _ *«Լմբա փոր», բառացի նշանակում է «Լմբայ ձոր» (հին հայերենում «Փոր» նշանակում է «Ձոր»):* Թովմա Արծրունու *շարունակողը հիշում է «Լումբայ*

փորակ» ձևով, որպես գաւառ: Սակայն այն գաւառ չէր, այլ ձոր էր: Ուստի Հովհաննես Դրասխանակերտցին գրում է. «Ձորակ մի, զոր Փորակ Լմբայ անուանեն»: (Հով. Դրասխ., Պատմութիւն Հայոց, էջ 190): Այս ձորը պետք է գտնվեր Վասպուրականում, թերևս Արճակ լճից հյուսիս-արևմուտք»: (Վ. Վարդանյան, ծն 238):

13. ... զտիկինն Վասպուրական զՍեռայ... _ Գագիկ Արումրվանի դուստր:

14. Եւ յետ սակաւ աւուրց... զզօրագլուխն Հայոց մեծաց: _ Գուրգեն Ապուպելճի մահվան հանգամանքների մասին տե՛ս նաև Հովհ. Դրասխ., գլ. ԼԴ:

15. ... Ատոմ որդի մեծին Գուրգինայ... _ Անձևացիքի իշխան Ատոմի իշխանությունը տևել է մի քանի տասնյակ տարիներ: Արաբական պատմիչ Միսկավէյխը 937/938 թ. տակ հաղորդում է, որ Ատոմ իրն Ջուրջիկը պարտության մատնեց Վասպուրական ներխուժած արաբ զորավար Լաշկարի իբն Մարդինին (Տե՛ս Ա. Տեր-Ղևոնդյան, Արաբական ամիրությունները, էջ 142):

16. ... ըստ յորդորման հեթանոսաց վարդապետին: _ Ինչպես ենթադրում է Ռ. Թոմսոնը (էջ 298, ծն. 5), Թով. Արծ. նկատի ունի Մոհամմեդին:

17. ... զի փեսայացուցեալ էր Շապհոյ զԳագիկ ի դուստր իւր. _ Թով. Արծ. այս վկայությունը չի հաստատվում այլ աղբյուրների տվյալներով: (R. Thomson, էջ 298, ծն. 6):

## ԳԼՈՒԽ ԻԳ

1. ... ԾՌ-աց... _ Ըստ Հովհ. Դրասխ. Սմբատ թագավորի զորքի թիվը կազմում էր ԿՌ: (Պատմութիւն Հայոց, էջ 176):

2. ... գետոյն... _ այսինքն՝ Թուղխ գետը:

3. Անկեալ էր յայնժամ ի պատերազմին Աշոտ... եդ ի գերեզմանի: _ Այդ ճակատամարտը նկարագրում է նաև Հով. Դրասխ., որը նույնպես հաղորդում է, թե «Անդ ապա անկանէր անփորձ եւ անկիրթ երիտասարդ չքնաղագեղն Աշոտ՝ քեռորդի արքային, որ ի մեծ նախարարութենէ հայկական գրոհի» (էջ 176): Թվում է, թե խոսքը միևնույն անձնավորության մասին է, սակայն որոշ մանրամասներում Հով. Դրասխ. և Թով. Արծ. տեղեկությունները ինչ-որ տարբերություններ ունեն, ինչը առիթ է տվել Հր. Աճառյանին ներկայացնել Հով. Դրասխ. և Թով. Արծ. Աշոտներին որպես տարբեր անձինք (ՀԱԲ, հ. Ա, էջ 185): Դրանցից մեկը՝ Վասակ Գաբուրի և Աշոտ I արքայի դուստր Մարիամի որդի չքնաղագեղ Աշոտ Սյունին է, մյուսը՝ Գրիգոր II Սուփանի

որդի՝ Գեղարքունիկի իշխան Աշոտն է: Երկուսն էլ զոհվել են 896 թ. Թուղխ գետի ճակատամարտում: **Մ. Ջամչեանը**, հենվելով Հովհ. Դրասխ. վկայության վրա և անտեսելով Թով. Արծ. հաղորդածը, խոսում է միայն Սմբատ I-ի քրոջ որդու՝ երիտասարդ Աշոտ Սյունիի զոհվելու մասին (Պատմութիւն Հայոց, Բ, էջ 221):

Հայտնի է, որ Աշոտ I արքան ուներ երեք դուստրեր, դրանք եմ՝ Մարիամը, Վասակ Գաբուրի կինը և Գրիգոր II Սուփան իշխանի մայրը (Ստեփ. Օրբ., Պատմութիւն նահանգին Սիսական, էջ 169). Սոֆին՝ Գրիգոր-Դերենիկ Արծրունյաց իշխանի կինը. երրորդը, որի անունը անհայտ է, իշխան Վահան Արծրունու կինն էր և Գագիկ Աբուլվանի մայրը (տե՛ս **Ն. Ադոնց**, Բագրատունեաց փառքը, էջ 121-122): Աշոտ Սյունին չէր կարող լինել Մարիամի ու Վասակ Գաբուրի որդին, որոնք, ինչպես հայտնի է, ունեին երեք որդի՝ Գրիգոր Սուփան, Վասակ և Սահակ, և քանի որ Վասակ Գաբուրը «տղա հասակաւ յերիտասարդութեան տիս վախճանի» (Ստեփ. Օրբ., էջ 172), «չքնաղագեղն Աշոտը» չէր կարող լինել նրա ու Մարիամի որդին: Կասկածից վեր է, որ մյուս երկու քույրերից ոչ մեկն էլ դարձյալ չէր կարող լինել Աշոտ Սյունիի մայրը՝ այն Աշոտի, որի մասին գրում է Թովման, իսկ **Աճառյանը** ներկայացնում է որպես Գրիգոր Սուփանի որդի (Անձ., Ա, էջ 186): Հով. Դրաս. պատմելով 915 թ. ամռանը Աշոտ II թագավորի Բյուզանդիայից վերադառնալու մասին հաղորդում է՝ «Եկն և մեծ Հայկազունն Վասակ եղբայր մանկագրաւ իշխանին Գրիգորոյ» (էջ 294): Վերջինին 912 թ. Յուսուփ իբն Սաջիդի հրամանով, թունավորելով, սպանել են (տե՛ս Ստեփ. Օրբ., էջ 188): Իհարկե Գրիգոր Սուփանը 896 թ. կարող էր ունենալ երիտասարդ որդի, և մնալ անզավակ նրա մահվանից հետո, սակայն Հով. Դրասխ. տվյալ վկայության լույսի տակ հատուկ նշանակություն է ստանում այն, որ Թով. Արծ. հաղորդելով Աշոտի մահվան մասին, փոխանակ պարզապես գրի՝ «անկեալ էր Աշոտ՝ որդի Սուփանայ», գրում է՝ «անկեալ էր... Աշոտ ... որ Սուփանայ որդի ճանաչէր...»: Սույն արտահայտությունը մտածել է տալիս, որ Աշոտը անզավակ Գրիգոր Սուփանի հոգեորդին էր: Բագրատունյաց Հայաստանում թագավորական կամ էլ իշխանական գահի անմիջական (ավագ որդու) ժառանգորդի բացակայության դեպքում գահը կարող էր անցնել մեկ այլ՝ կանացի գծով ներկայացուցչի ձեռքը (տե՛ս **К. Н. Юзбашян.** Армянские государства эпохи Багратидов, էջ 73-74): Տվյալ դեպքում իրավիճակը, ըստ երևույթին, հենց այդպիսին էր, որովհետև, ինչպես գրում է Թովման՝ «...տիկինն սպարապետականի Տարոնոյ եկեալ եւ նշանացի գդի նորա՝ գտեալ՝ տարաւ ի Պորպ յիւր աւան եւ եդ ի գերեզմանի»: Ակնհայտ է, որ այդ

տիկինը Աշոտի մայրն էր և որ նա Գրիգոր Սուփանի կինը չէր: Ղ. Ինճիճեանը «տիկին սպարապետականի» բառերի կողքին փակագծերում ավելացնում է՝ «այսինքն Մամիկոնեան» (Ստորագրութիւն, էջ 108): Սակայն ըստ Հով. Դրասխ. ցուցմունքի «չքնաղագեղն» Աշոտը Սմբատ I-ի քեռորդին էր, այսինքն նրա մայրը Աշոտ I-ի քույրն էր և, հետևաբար, Սմբատ սպարապետի դուստրը, որը սերում էր «ի մեծ նախարարութենէ հայկական գրոհի», ինչպես գրում է Հով. Դրասխ.: Դժվար թե Հովհ. Դրասխ., որի իրազեկ լինելը կասկածից վեր է, տվյալ դեպքում նկատի ուներ Մամիկոնյաններին, որոնց դերը Հայոց պատմությունում նախընտրում էր լռությամբ մատնել: Թվում է, որ նա նկատի ուներ Բագրատունյաց տոհմը, իսկ Թով. Արծ. «սպարապետական տիկին» արտահայտության տակ հասկանում էր սպարապետ Սմբատի դստերը:

## ԳԼՈՒԽ ԻԴ

1. Գագիկ Աբումրվանին սպանել են 897 թ.: (**Ն. Ադոնցը** թվագրում է Գագիկ Աբուլմրվանի սպանությունը 898 թ.: տե՛ս Les taromtes, էջ 212):

2. ... ըստ կարգի բարձաքերձութեան.. Տրդատայ թագաւորի: _ Ստ. Օրբ. իր Պատմությունում (գլ. Է, էջ 24) այդ կապակցությամբ գրում է՝ «... սուրբ քահանայապետն Գրիգորիոս, հրամայէ մեծին Տրդատայ կարգել զթագաւորութիւն իւր ըստ սահմանի կայսերացն Յունաց, և տալ ըստ իւրաքանչիւր պատշաճի գահ և պատիւ իշխանացն յաջմէ և յահեկէ», ինչ կարծես թե հաստատում է Թով. Արծ.: Սակայն, գրում է **Ն. Ադոնցը**, «... իրականում այդ ամենը հիմնված է մի ցավալի թյուրիմացության վրա: Զենոբ Գլակը պատմում է, որ Տրդատի օրոք հյուսիսի թագավորը ասպատակեց Վրաստանը և ավերեց ամբողջ երկիրը՝ մինչև Կարին: Վրացիների խնդրանքով Տրդատը նրանց օգնության ուղարկեց հայկական մի զորախումբ: Հայերը հաղթեցին թշնամուն և հալածեցին լեռնականներին, ընդ որում գերի վերցրին երեք իշխանների ու չորս հարյուր ընտրյալների ու բերին թագավորի մոտ, և երբ Տրդատը Տարոնից ուղևորվեց Ապահունիք, իր հետ տարավ «զիշխանսն՝ որք էին ի բերդ Ողկան եւ զչորեքհարեւր արսն ի դիւանն արքունի տալը արկանել» (էջ 43): Այս պատմության ընթացքին անուշադիր վերաբերվելու դեպքում պատմիչի խոսքերը կարող են այն իմաստով հասկացվել, թե բոլոր 400 գերիները բարձրացվեցին իշխանական աստիճանի: Այստեղից հեռու չէ մինչև այն առասպելը, որ գոյություն են ունեցել 400 իշխանա-

*կան բարձեր, և Տրդատն էլ եղել է դրանց հաստատողը»։ (Հայաստանը Հուստինիանոսի, էջ 271)։*

### ԳԼՈՒԽ ԻԵ

*1.* ... ծառայի ումեմն Սափի անուն... _ *Սափիին, որի գործունեությունը կապված էր Վասպուրականի հետ և որին հիշատակում է նաև Անանուն Արծրունին, ծանոթ չէր ոչ Հովհ.* Դրասխ., *ոչ էլ* Մով. Կաղ.։

### ԳԼՈՒԽ ԻԶ

*1.* Հռոմ., *Ա, 28:*
*2.* Յեզ., *Ե, 10:*
*3.* Եսայ., *ԺԴ, 9:*
*4.* Եսայ., *ԺԴ, 4, 11:*
*5.* Գործեցաւ այս Յիժ թուականութեան... փոխեցաւ: _ *Կաթողիկոս Գէորգի մահվան ստույգ տարեթիվը տալիս է Հովհ.* Դրասխ.՝ *հ. թվ. 346 թ. (=897-ի ապր. 16 - 898-ի ապր. 17) հայոց կաթողիկոսների իր կազմած ցանկում (տե՛ս* Սամ. Ան., *Հաւաքմունք, էջ 277)։ Իրականում Ափշինը մահացել է 901 թ. Հովհ.* Դրասխ. *աթոռակալության ժամանակ:*
*6.* Սա կեցեալ ամիսս Ը կամ Թ... խոստաբանեալսն: _ *Ըստ* Հովհ Դրասխ. *Մաշտոցի աթոռակալությունը տևել է 7 ամիս, սկսած 897 գարնանից մինչև աշուն: Նրա մահվանից հետո՝ 897 թ. վերջում (նոյեմբերը) կաթողիկոս ընտրվեց Հովհաննես VI Դրասխանակերտցին, որի աթոռակալությունը տևել է 27 տարի և մի քանի ամիս մինչև մոտավորապես 925 թ. մայիսը: (Տե՛ս V.* **Grumel,** *Les regestes des Actes du Patriarcat de Constantinople, t. I, N 7 նամակի ծն.):*

### ԳԼՈՒԽ ԻԷ

*1. Տե՛ս* Ելից., *Լ, 2, 36-32:*
*2. Տե՛ս* Դ Թագ., *ԻԵ, 8-22:*
*3. Տե՛ս* Գ Թագ., *ԺԶ, 9-10:*
*4.* Առ Եբր., *Ժ, 28-29:*

### ԳԼՈՒԽ ԻԸ

*1.* Ընդ այն ժամանակս... _ *Այսինքն՝ հ. թ. 351 (=902-903) թ.*
*2.* ... որդիք Աբդռհամանի որ Կայսիկքն անուանին... _

Թով. Արծ. նկատի ունի Ապահունիքի ամիրա (նստավայրը Մանազկերտն էր) Աբլ-Բառի ավագ որդի Աբդալ-Համիդի որդիներ՝ Աբու-Սավադին, Աբու-լ-Ասվադին և Աբու-Սալիմին, որոնք Սըմբատ թագավորի պարտությունից ի վեր հրաժարվել են վճարել հայոց թագավորին հասանելիք հարկն և զորուժը (Տե՛ս J. Marquart, Südarmenien, էջ 303-304: **Ա. Տեր-Ղևոնդյան**, Արաբական ամիրայությունները, էջ 120-121): Առաջին անգամ Աբլ-Բառը որպես Մանազկերտի ամիրա հիշատակվում է գլ. ԺԹ- ում:

## ԳԼՈՒԽ ԻԹ

*1.* Մատթ., *ԻՁ, 38:*

*2.* Եփես., *Ձ, 12:*

*3.* ... առեալ էր ի բաժնէ Գագիկ իշխանի _ *«Ուղղելի է «առեալ ի բաժնի» քանի որ «առեալ» կրավորական բայի հետ «ի բաժնի» ձևն ավելի է հարիր: Հաջորդ պարբերության մեջ Գուրգեն Արծրունու բաժնի մասին խոսելիս պատմիչը գործ է ածում «ի բաժնի» ձևը («Իսկ Գուրգէնի մարզպանի հայոց* առեալ էր ի բաժնի *յելս կոյս...»): (**Վ. Վարդանյան**, ծն. 254):*

*4.* ...Արտաշէսեան: _ *այս գավառը հարաբերակցվում է Արտաշեսեան ավանի հետ, որ հիշատակում է միայն* Թով. Արծ. *(Տե՛ս **Ն. Ադոնց**, Հայաստանը Հուստինիանոսի, էջ 353):*

*5.* Բայց զՏամբէր... ՄԺԱ ամօք, յամի այրման եկեղեցւոյ Գրիգորի... _ *Այսինքն՝ 915/916 թ. (705+211):*

*6.* ... շինեաց եկեղեցի հրաշագործ հրաշազան յօրինուածով եկեղեցի... _ *Բնագրի սույն կապակցության մեջ վերջին՝ «եկեղեցի» բառն ավելորդ է: (**Վ. Վարդանյան**, ծն. 258):*

*7.* ... ուր Արտաւազդն... ի կոչտն կոհակին: _ *Տե՛ս* Մով. Խոր., *Բ, գլ. 61:*

*8.* Փութանեմ ընթացող... ըստ յորդորման մարգարէին: _ *Տե՛ս* Եսայ., *Բ, 3:*

*9.* ... և երկրպագեալ աստուածազարդ քրիստոսապսակեալք փայտի խաչին... գզրոցկանն: _ *Վարագա սուրբ Խաչը, ինչպես նաև Ավետարանը՝ Արծրունիների տոհմական սրբություններն էին: Ավետարանի ձեռագրում, որը բազմիցս գերի էր ընկնում և ազատագրվում, պահպանվել են հիշատակարաններ, դըրանց թվում՝ Գագիկ Արծրունու և նրա երկրորդ կնոջ Մլքէինը: (Մանրամասները տե՛ս **Հ. Գ. Անանեան**, Արծրունեաց տոհմին ավետարանը, էջ 117-127):*

*10.* ... Այս այն խաչ է, զոր վերագույն գրեցաք վասն

սորա, ՄՄԹ ամօք յառաջ… զհայկական աշխարհս: _ *Տե՛ս սույն գրքի գլ. ԺԴ, ծն. 1.*

*11.* … ի Մահրաշտ գեող… յոստանն Ուշտունեայ… _ *Մահրաշտ գյուղը փոքր ինչ աղավաղված ձևով հիշատակում է նաև Կարծեցեալ Շապուհ Բագրատունին՝ «Եւ եկեալ ի աշխարհն Վասպուրականի Վարդ Պատրիկ և մտեալ ի արքունիս իւր, որ մօտ էր ի ծովն Ուշտունեաց, որ կոչի Մահարեշայ…» (Տե՛ս Պատմութիւն Անանուն զրուցագրի / Կարծեցեալ Շապուհ Բագրատունի/, էջ 99-101):*

*12.* Բ Կորնթ., *Զ, 16:*

*13.* Առ Եբր., *Գ, 6:*

*14.* Բ Կորնթ., *Զ, 16:*

*15.* … ի խորհուրդ տապանին, ի Փռիւգացւոց ապարասանութենէ… _ *Համաձայն առասպելի Հրեական Սիբիլլյան գրքերում (I, 261) Արարատ լեռը, որտեղ կանգ է առել Նոյան տապանը, գտնվում էր Փրյուգիայում, իսկ որպես Նոյի իջման ստույգ տեղը նշվում էր Մարսիա գետի ակունքը: Այդ տեղից փոքր ինչ վայր կառուցվել է Ապոմեա Կիբոտոս (իմա՝ Տապան) քաղաքը: Կայսրներ Սեվերոս, Մակրիանոս և Փիլիպպոս Ավագի ժամանակներում այդ քաղաքում կտրած դրամների վրա գծագրված են եղել Նոյի և նրա կնոջ պատկերները: (Տե՛ս E. Э., հ. II, էջ 830-831):*

*16.* Դան., *Թ, 21-27:*

*17.* Զաք., *Ա, 9-11:*

*18.* Ա Կորնթ., *ԺԲ, 28:* Եփես., *Դ, 8-11:*

*19.* … յԱկէացի տոհմէ… _ *Այդ հին իշխանական տոհմը հիշատակում է Ղազ. Փարպ. (էջ 170) 451 թ. պատերազմի մասնակից Վասակ Սյունեցու կողմնակից իշխանների իր կազմած ցուցակում: Այն հիշատակվում է նաև նախարարական տների ցանկում (Զորանամակում), որոնցից յուրաքանչյուրի մոտ նշանակված է նրանց հեծելազորի թիվը («Գահնամակի» և «Զորանամակի» մասին տե՛ս* Ն. Ադոնց, *Հայաստանը Հուստինիանոսի, էջ 270-295): Այս ցուցակում Ակէացի անվան մոտ նշանակված է 300 թիվը, ինչից կարելի է եզրակացնել, որ նրանք հաշվվում էին իշխանական տների ստորին չերտում: Գ դպրության 4-րդ գլխում* Թով. Արծ. *հիշատակում է Գէորգ Ակէացուն, որը բռնվել էր Բուղայի կողմից և նահատակվել գերության մեջ, ինչպես նաև Վասակ Ակէացուն, որը կռվում էր գահերեց իշխան Աշոտ Արծրունու եղբոր՝ Գուրգենի զորքի կազմում և գերի քշվել Սամառա: Նույն դպրության 6-րդ գլխում Բագարատ Բագրատունու 850 թ. ճակատամարտում Մուսե իբն Զուրարայի դեմ մասնակցում էր Խոսրով Ակէացին: Գ դպրության 22-րդ գլխում նկարագրվում է, թե ինչպես էր պաշտպանում Վան քաղաքի ամրոցը Ցիսեն եղբայր*

Թադեոսի «որոց Շերեփայ որդիք անուանէին», իսկ սույն գլխում հիշատակվում են ինչպես Թադեոսը,այնպես էլ նրա մյուս եղբայր՝ Շապուհը: Այսպիսով Արծրունյաց իշխաններին որպես վասալներ IXդ. 50-ական թթ. ծառայում էին Գէորգ, Խոսրով և Վասակ Ակէացիներ, իսկ X դ. առաջին քառորդում երեք եղբայրներ՝ Յիսե, Թադեոս և Շապուհ Ակէացիները:

20. ... Փայտակշտան գեօղ... _ Հիշատակում է միայն Թով. Արծ.:

21. ... և անցեալ ծովակն Յըմբեայ, և ընդ Վարագի Ջարեհաւանի. և ընդ այգն ընդ առաւօտն՝ յԸռենայ Յամաց գեօղ և գիշերագնաց հասեալ մինչև ի Տարօնայ կոչեցեալ գետ: _ Ք. Հարությունյանը սույն հատվածը սրբագրում է հետևյալ կերպ: «Վարագ ի Ջարեվհավանի» ուղղում է «Վարագի Ջար եվ հասանի». ուղղումը արդարացվում է նրանով, որ այժմ էլ գոյություն ունի Վարագի զուր գյուղը, որի անվան «զուր»-ը հայկական «ձոր» բառի աղավաղումն է և ձեռագրի նախնական օրինակում եղել է «Վարագի ձոր»: Գյուղի Ըռենայ անվանումը ոչ մի կապ չունի Ըռնա գավառի անվան հետ, այլ հանդիսանում է «ուրենի» բառի բարբառային ձև, որին հաջորդող «յամայ» բառը, որ ընկալվում է որպես գյուղի անուն, իրականում գրաբարյան «յամենալ» բայն է: Այս վերջին ուղղումը արդարացվում է հաջորդ «գիշերագնաց» բառով: Թով. Արծ. հիշատակված «Տարաւն» գետը այժմ կոչվում է «Բրատոստի ջուր» կամ «Բրադար-չայ, իսկ ստորև հիշատակվող «Մղունիս» անվանումը, պահպանվել է «Մալթունա» գյուղի անվան մեջ: (Տե՛ս «Մի սրբագրում Թովմա Արծրունու «Պատմության» մեջ: «Մաշտոցյան Գ ընթերցումներ», էջ 24): Սույն ուղղումների տեսակետից, քննության առարկա հատվածը պետք է սրբագրվի հետևյալ կերպ. «... և անցեալ ծովակն Յըմբեայ, և ընդ Վարագի Ձոր և հասանի ընդ այգն ընդ առաւօտի յԸռենայ յամենայ (ի) գեւղ, և գիշերագնաց հասեալ մինչ ի Տարաւնայ կոչեցեալ գետ»:

22. Իսկ ի գալ միւսոյ ամին... որոց Տէր եղիցի այցելու: _ Ինչպես ենթադրում է Բրոսեն իր Թով. Արծ. «Պատմության ֆրանսերեն թարգմանությունում (էջ 210, ծն. 2), այս իրադարձությունները կատարվել են 906 թ. Ուրմիա լճից դեպի արևելք: Ըստ երևույթին հարավային Վասպուրական արշավող ցեղերը՝ դեյլմիկներն էին, որոնք X դ. սկզբներից սկսել են ավելի եռանդուն խառնվել հարևան երկրների քաղաքական կյանքին:

## [ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ԱՆԱՆՈՒԱՆ]

### ԳԼՈՒԽ Ա

1. Եսայ., *Ա, 3.*

2. ... որում անուն էր Գագիկ... _ *Խոսքը Գագիկ Աբումրվանի՝ Վասակ Արծրունու և Աշոտ I թագավոր դստեր (անունը անհայտ է) որդու մասին է:*

3. ... զբերդն Ագարակայ... _ *Մ. Հովհաննիսյանը (տե՛ս Հայաստանի բերդերը, էջ 244), հենվելով* Թով. Արծ. *ցուցմունքների վրա, այդ բերդը տեղադրում է Կորճայքում: Ս. Երեմյանը Ագարակ բերդը նույնացնում է Ճահուկ բերդի հետ և տեղադրում այն Ագարակ կոչվող լեռներում, Ջուլամերկից դեպի հյուսիսարևմուտք (տե՛ս Հայաստանը ըստ «Աշխարհացույց»-ի, էջ 31):*

4. *Տե՛ս* Յովհ., *Ջ, 10:* Եսայ., *ԺԲ, 40:*

5. ... որդի Ապումսարայ... _ *Նրա անունը՝ Ապլբերս հաղորդում է* Թով. Արծ. *(Տե՛ս դպր. Գ, գլ. 20):*

6. *Հմմտ.՝* Երեմ., *Թ, 1:*

7. *Հմմտ.՝* Զաք., *ԺԲ, 12-14:*

8. Կատարեցաւ կարգ ծննդաբանութեան... ողբք ի վերայ նորին: _ *Ելնելով առաջին գլուխն ավարտող այս հատվածից, կարելի է ենթադրել, որ Անանունը իր Պատմությունը սկսել է հենց Գրիգոր-Դերենի իշխանությունից, նպատակ ունենալով ներկայացնել իր երեք որդիների ծննդաբանությունը՝ նրանց ծննդյան և մանկության հանգամանքները և հետո անցնել Գագիկ Արծրունու թագավորության տարիների մանրամասն նկարագրությանը:*

### ԳԼՈՒԽ Բ

1. ... Աշոտ որդի... ամաց իբրև երկոտասանից: _ Անան. Արծ. *սույն ցուցմունքը չի համապատասխանում* Թով. Արծ. *տեղեկությանը, թե Աշոտը, երբ մահացել է իր հայրը, 9 տարեկան էր: Այդ կապակցությամբ* Նորայր Բյուզանդացին, *որը նախընտրություն է տալիս* Թով. Արծ. *տվյալներին, գրում է, որ Աշոտը իշխան է դարձել 10 տարեկանում, երբ անցան Դերենի մահվան կապակցությամբ սուգ պահելու տաս ամիսները: (Տե՛ս Թովմա Արծրունի և Անանուն Արծրունի, էջ 269):*

### ԳԼՈՒԽ Գ

1. *Առակ., Իթ, 4.*

2. ... այնինչ մինչդեռ չև ևս եղեալ էր ամաց հնգետասանից... _ *Համաձայն* Թով. Արծ. *տեղեկության (դպր. Գ, գլ. XIX)*

Գագիկը ծնվել է 879 թ. և, հետևաբար, Գագիկ Աբումրվանի սպանության տարում՝ 897թ. նա 17-18 տարեկան էր:

3. ... յամրոցն Աշինոտ... _ Հիշատակում է միայն Անան. Արծ.: Ելնելով կոնտեքստից, այդ բերդը գտնվում էր Տոսպում: (Տե՛ս Մ. Հովհաննիսեան, Հայաստանի բերդերը, էջ 336):

4. ... իբրև գպարիսպ պղնձի... անհաս զօրութեամբ... _ Հմմտ.՝ Երեմ., Ա, 18-19:

5. ... գոլով ամենայնի... _ «Տպագիր բոլոր բնագրերում բաց է թողնված «գոլով ամենայնի» դարձվածքը, որն իմաստային նոր երանգ է հաղորդում հեղինակի խոսքին: Վերականգնել ենք Ձեռագրի (Թ. 276բ) հիման վրա»: (Վ. Վարդանյան, ծն. 3):

6. Առակը., ԺԸ, 20:

7. ... գուցէ գնացցէ Աշոտ... զոր վերագոյնն ասացաք: _ Ան. Արծ. այդ կապակցութեամբ «վերագոյն» ոչինիչ չի գրել: Նա չէր կարող այդ մասին գրել նաև իր Պատմության սկզբնական մեզ չհասած մասում, քանի որ այստեղ նա խոսում է Գրիգոր-Դերենիկի իշխանության և նրա մահվան հանգամանքների, այսինքն 884/886 թթ. եղելությունների մասին, երբ Ափշինը դեռևս չէր մտել Հայաստան:

8. Իսկ Ափշնի ելեալ յերկիրս Հայոց... աղաչէ ի խաղաղութիւն զԱփշին... _ Ափշինի այս երկրորդ արշավանքը Հայաստան սկսվել է 896 թ.: 896/897 թթ. ձմռանը Սմբատ I թագավորի և Ափշինի միջև բանակցություններ էին վարվում, որոնք ավարտվել են հաշտության դաշնագրով: 897 գարնանը Ափշինը, ինչպես պատմում է ստորև Անան. Արծ., արշավեց Վասպուրական:

9. ... և նորա հետամուտ եղեալ... առնու հարկս բազումս: _ Այս նոր՝ երրորդ առշավանքը Սմբատ թագավորի դեմ տեղի է ունեցել 900/901 թ.

10. Յայնժամ Հասան... զոր վերագոյն ասացաք... _ Այդ մասին Անան. Արծ. կարող էր պատմած լինել առաջին գլխի մեզ չհասած մասում Գրիգոր-Դերենիկի և Հասանի գժտության կապակցությամբ. (այդ մասին տե՛ս նաև Թով. Արծ., դպր. Գ, գլ. XX):

11. Իսկ ամիրային թողլով երկուս ոստիկանս ներքինիս... _ տե՛ս Թով. Արծ., դպր. Գ, գլ. XX, ծն. 2:

12. ... որում անուն էր Յիւսր... _ Հ. Մարկվարտը այդ Յիւսրին նույնացնում է Նըսրի հետ, որին ինչպես նշում է ինքը, հիշատակում է նաև Դրասխանակերտցին՝ «... Նըսր... Սրուկն ի բազմաց յորջորէր» (էջ 330): (Տե՛ս Պարսկահայք նահանգ, ՊԲՀ, 1961: N 1, էջ 188, ծն. 1): Նըսրը Յուսուփ իբն Աբուսաջի ստրուկն էր, որին նա Ռեյ գնալիս թողնում է Հայաստանում որպես

*ոստիկան: Սակայն Անան. Արծ. տեղեկությունը ոչ մի կապ չունի Յուսուփի և նրա սարուկ Նըսրի հետ, քանի որ Նըսրի հետ կապված դեպքերը տեղի են ունեցել 922-924 թթ. մինչդեռ Անանունը պատմում է 898-901 թթ. իրադարձությունների մասին, կապված Ափշինի հետ: Թվում է, որ ավելի ճիշտ կլինի Յիւսր աղավաղված անունը փոխել Յիւսփի, այսինքն Յովսեփ անվամբ, ինչպես Թով. Արծ. անվանում է երկրորդ ներքինուն:*

*13.* ... Կակենից գեաղջ... – *Այդ գյուղը հիշատակում է միայն Անան. Արծ.:*

*14.* ... այր մի ներքինի... մինչև յերկիր Շամայ: – *Այստեղ* Անան. Արծ. *սխալ է թույլ տալիս, ենթադրելով, որ գոյություն է ունեցել նաև երկրորդ ներքինին Պարտավում: Ինչպես հաղորդում է* Թով. Արծ., *Ափշինը թողել է Սափիին Վասպուրականում, իսկ Յովսեփին՝ երկրորդ ներքինուն ուղարկել է Պարտավ: Այդ երկրորդ ներքինուն լավ ճանաչում են ինչպես* Հովհ. Դրասխ., *այնպես էր* Մով. Կաղ.: *(Ավելի մանրամասն տե՛ս մեր հոդվածը «Դիտողություններ Թովմա Արծրունու «Պատմութիւն տանն Արծրունեաց»-ի վերաբերյալ»: «Էջմիածին», 2002, Բ-Գ, էջ 57-59):*

*15.* ... Տեսլեամբ Թեկղեայ սրբոյ... – *Տե՛ս* Փավ. Բուզ., Դ, *10:*

*16.* Առակ., ԺԴ, 3:

*17.* Սաղմ., *Է, 16:*

*18.* Աստանօր յիշէ իշխանն Աշոտ... մինչև ցօր վախճանի իւրոյ: – Անան. Արծ. *պատմածը հիմնականում համընկնում է այն տեղեկությունների հետ, որոնք հաղորդում է այդ դեպքերի վերաբերյալ* Հովհ. Դրասխ., *լինելով միջնորդ Աշոտի և Հասանի միջև: Սակայն* Անան. Արծ.*միջնորդի դերում ներկայացնում է Գագիկ Արծրունուն: Ըստ* Հովհ. Դրասխ. *այդ կոնֆլիկտից մեկ տարի անց Աշոտը մահանում է և, հետևաբար, նկարագրված իրադարձությունները հնարավոր է վերագրել 904/905 թթ.:*

## ԳԼՈՒԽ Դ

*1.* «քաղցր է արև... յետ աշխատութեան» – *Աղբյուրը ճշտված չէ:*

*2. «Բնագրի «բնակչաց աշխարհին» դարձվածքից հետո պակասում են որոշ բառեր, ուստի հեղինակի միտքն աղճատված է (տե՛ս ձեռ., էջ 282ա): (***Վ. Վարդանյան***, էջ 527, ծն. 6): Թերևս պակասում է հարձակվող քրդերի ցեղի անվանումը:*

*3.* Յորոց մի էր Շապուհ որդի Մայմանկին... գգուանս

ճահուկ... _ *Հիշատակում է միայն* Անան. Արծ.: *Մայմանիկ անունը արաբական է (Տե՛ս Անձան. բառ., Դ, էջ 147), այդպես էին կոչում քուրդ առաջնորդներից մեկին: (Տե՛ս* **Վ. Վարդանյան**, *Վասպուրականի Արծրունեաց թագավորությունը 908-1021 թթ., էջ 65):*

*4.* ... Գրիգորի... յԱրճուճսն անուանեալ ամրոցի: _ *Հիշատակում է միայն* Անան. Արծ.:

*5.* ... առեալ էր զդուստրն Ապուհամզայի իւր կնութեան... _ *Խոսքը Գագիկ Արծրունու երկրորդ կնոջ՝ Մլքէի մասին է: Նրա առաջին կինը Աշոտ I Բագրատունու որդի՝ Շապուհի դուստրն էր, որի անունը անհայտ է: (Տե՛ս* **Գ. Անանեան**, *Արծրունեաց տոհմին աւետարանը, էջ 118-120:* **Ռ. Մաթևոսյան**, *Հայկական զինանշաններ, էջ 14):*

*6.* ... ի դաշտին Գերատայ... _ *Այդ տեղանքը հիշատակվում է նաև Հացունյաց խաչի պատմությունում (տե՛ս* **Ղ. Ինճիճեան**, *Ստորագրութիւն, էջ 515):*

*7.* Սաղմ., *ՃԽԴ, (ՃԽԵ), 18:*

*8.* Զայս տեսեալ Սմբատայ... գանձս բազումս: _ *Այդ մասին* Հովհ. Դրասխ. *մոտ չկա ոչ մի տեղեկություն:*

*9.* Մատթ., *ԻԲ, 21:* Մարկ, *ԺԲ, 17:* Հռովմ., *ԺԳ, 1:*

*10. Տե՛ս* Մատթ., *ԻԴ, 27:*

*11.* ... Յուսփ յարձակեցաւ... զօրու և զինու... _ *Յուսուփը, ներխուժեց Հայաստան 358 (= 909) թ. ապրիլի 16 Զատկվա օրը (տե՛ս* Հովհ. Դրասխ., *գլ. ԻԳ):*

*12.* ... ոմն հռետոր ... ի գանձս արքունի: _ Անան. Արծ. *նկատի ունի* Հովհ. Դրասխ.:

*13.* Հռովմ., *ԺԵ, 1:*

*14.* Զայսու ժամանակաւ... կրկին թագաւորութեամբ: _ *Խոսքը Աբդ Ալլահ բեն Մուհամմադ ալ-Ֆարիքի մասին է, որին Մուկթադիր խալիֆը Հայաստան է ուղարկել Ատրպատականում ապստամբած Յուսուփ Սաջյանի փոխարեն կառավարիչ նշանակված Սբուկին ճնշելու նպատակով: Ալ-Ֆարիքին 919 թ. գարնանը վերստին թագադրել է Գագիկ Արծրունուն:*

*15.* Եւ փախստական արարեալ... և կացեալ ի բանտի զամս Ը ... _ *Յուսուփին պարտություն է մատնել Մունիսը՝ խալիֆի գլխավոր զորավարներից մեկը, որը գերի է վերցրել նրան Արդեբիլի մոտակայքում 919 թ. հունիսի 19 (տե՛ս N.* **Adontz**. *Ašot Erkat, էջ 281:* **Р. Фасмер**, *О монетах Саджидов, էջ 10): Յուսուփը ազատվել է բանդից 922/923 թ. և անմիջապես նշանակվել Ռեյի, Ղազվինի, Զենջանի և Ադրբեջանի փոխարքայ (տե՛ս* **Р. Фасмер**, *О монетах Саджидов, էջ 11:* **G. Weil**, *Geschichte der Chalifen, t. II, էջ 624), այնպես որ* Անան. Արծ. *տեղեկությունը, թե իբր նա մնացել*

*է բանտում «Ը ամս», չի համապատասխանում իրականությանը:*

*16. Գուրգենի մահը կարելի թվագրել 924 թ., քանի որ, երբ կաթողիկոս Յովհաննես Դրասխանակերտցին տեղափոխվել է 923 թ. աշնանը Վասպուրական՝ Գագիկ արքայի մոտ, Գուրգենը դեռևս կենդան էր (տե՛ս Յովհ. Դրասխ., գլ. LXVII):*

*17. Հմմտ.* Սիրաք, *ԻԲ, 13:*

## ԳԼՈՒԽ Ե

*1. ...* Հրեշտակք արքունի, հրաման տալով... ի սահմանաց նորա: *— «Հարաւային զօրացն» ասելով Անան.* Արծ. *նկատի ունի կարմատներին, որոնք 923 թ. հարձակվել են Բասրայի վրա, իսկ 924 թ.՝ ուխտագնացների քարավանի վրա: (Տե՛ս G. Weil, Geschichte der Chalifen, t. II, էջ 624):*

*2. ...* Փէթք... *— Ըստ երեվույթին Անան.* Արծ. *նկատի ունի Յուսուֆի եղբոր՝ Աֆշինի որդի Աբու-Մոզաֆֆեր Ֆիխեթին, որը փոխարինել է ինչ որ մի ժամանակ Յուսուֆին և սպանվել 929 թ.:*

*3. ...* Հարկանին իսպառ զօրքն Յուսփայ... պատահեալ վիճակի մահու: *— 926 թ. Յուսուֆը ուղարկվեց կարմատների դեմ, 927 ջախջախիչ պարտության մատնվեց, գերի ընկավ և սպանվեց 928 թ.: (Տե՛ս* **Р. Фасмер,** *О монетах Саджидов, էջ 11: G. Weil, Geschichte der Chalifen, t. II, էջ 624),*

## ԳԼՈՒԽ Զ

*1.* Ժող., *Ժ, 16:*
*2.* Առակ., *Լ, 21-23:*

## ԳԼՈՒԽ Է

*1.* Անանուն Արծրունու *Ոստան ավանի նկարագրութեան կապակցությամբ տե՛ս* ***И. А. Орбели,*** *Избранные труды, т. I, с. 22–25:* ***Х. Ф. Линч,*** *Путевые очерки и этюды, с. 156–169:*

## ԳԼՈՒԽ Ը

*1. «Աղթամար» տերմինը* ***Ն. Մառը*** *բխեցնում է «Aqdamar» անվանումից, որը նշանակում է «Վիշապի լիճ» (Տե՛ս* ***И. А. Орбели,*** *Избранные труды, т. I, с. 26): Աղթամարի կառուցմանը նվիրված այս գլուխը թարգմանել են ռուսերեն* ***Հ. Օրբելին*** *(տե՛ս անդ, էջ 34–35, 69–70) և* ***Լ. Քալանթարը՝ Ն. Տոկարսկու,***

*«Հայաստանի ճարտարապետությունը IV-XIV-րդ դդ.» ռուսերեն գրված աշխատության համար (էջ 214):*

*2. ... հուղս մրգապահաց... _ Համտ* Եսայ., *Ա, 8: Ի*Դ*, 20:* Միքիէ, *Ա, 6:* Առակ., *ՀԸ, 1:*

*3. ...* բարձրագոյն հրաշակերտեաց քան զԱղեքսանդրին ի Մակեդովն քաղաքի... *_ այս դարձվածքը* **Ն. Բյուզանդացին** *ուղղում է հետևյալ կերպ. «բարձրագոյն հրաշակերտեաց քան զՄակեդովնին յԱղեքսանդր քաղաքի»: (Տե՛ս «Թովմա Արծրունի և Անանուն Արծրունի, էջ 335: Տե՛ս նաև* **Հ. Տաշեան**, *Ուսումնասիրութիւնք Ստոյն-Կալիսթենայ, էջ 40):*

*4. ...* եղեալ ի նմա դրունք հատուածոյք մանր յօրինուածով և հրաշալի գեղգեղմամբ. *_ «Հատուածոյ» բառը ՆԲՀ-ում (Բ, էջ 59) բացատրված է որպէս «հատուածովք կամ կոտորովք յարմարեալ» և որպես օրինակ տրված է տվյալ դարձվածքը Անանուն Արծրունուց:*

**ԳԼՈՒԽ Թ**

*1.* Երեմ., *ԺԵ, 19:*
*2.* Եսայ., *ԼԵ, 1:*
*3. Հմմտ.* Սաղմ., *ՂԵ, 11:*

**ԳԼՈՒԽ Ժ**

*1. Տե՛ս* Դատ., *ԺԸ, 1: ԺԹ, 1:*
*2. Տե՛ս Ա Թագ., ԺԷ, 47:*
*3.* Առակ., *Գ, 34:*
*4. ... հանգոյն սրբոյն Ներսեսի... _ Տե՛ս* Սոփերք, *Է:*

**ԳԼՈՒԽ ԺԱ**

*1.* Դէլմակացն *_* **Ն. Բյուզանդացու** *ենթադրությամբ դեյլմիկների հարձակումը Վասպուրականի վրա տեղի է ունեցել 937-939 թթ. (տե՛ս Թովմա Արծրունի և Անանուն Արծրունի, էջ 207: Տե՛ս նաև* **Ս. Ճալճյան**, *Վասպուրական թագավորության պատմությունից. ՏԳԱ, 1949, 4):* [illegible]", 1898, Բ, էջ 49-58

**ԳԼՈՒԽ ԺԲ**

*1. Ձեռագիր և տպագիր բնագրերի «ուղերեկ» բառը* **Ներսես Բյուզանդացին** *առաջարկում է սրբագրել «աղէբէկ», իմա «ալեխառն» ձևով (Տե՛ս «Նախնիք», էջ 149: «Բազմավէպ» 1905, էջ 465): Կարծում ենք, որ բնագիրը տվյալ դեպքում չպետք է սրբագրել: Պատմիչը նույն նախադասության մեջ գրում է. «Հեր*

*գլխոյ նորա Թխակերպ գանգուրագեղ գիսաւորութեամբ ուղերեկ ջոկացեալ ի վերայ սպիտափառ ճակատոյն...»: «Ուղերեկը» «աղէբեկի» ձևով սրբագրելու դեպքում ստացվում է այնպես, որ նույն նախադասության մեջ մատենագիրը Գագիկ Արծրունուն համարում է և «Թխակերպ», և «աղէբէկ» մազեր ունեցող: (Վ. Վարդանյան, ծն. 21):*

2. ... Յովսիայ... _ տե՛ս Դ Թագ.:

*3.* «Ուստի եւ յոյժ սիրելի էր ինձ յայսմ ժամանակի առնուլ ի Հնդկայինն աշխարհէ եւ ի Տպազ քաղաքէ, մանաւանդ Թէ ի քարկոփչացն, եւ յԱղէբասարացւոց, եւ Թէբէացւոց վաճառուց գոսկետեսակն տպազիովն, եւ չարամանել ի Թագի նորա...» _ *Սույն հռետորական հատվածի հիմքում ընկած է ավելի քան տասնյակ ձեռագրերում պահպանված Եպիփան Կիպրացու «Վասն ԺԲ քարանց» գործի գրաբարյան Թարգմանությունը: Ստորև բերում ենք Մատենադարանի N 266 ձեռագրից (1468 Թ., էջ 91ա) համապատասխան հատվածը:*

*«Տպազիոնն կարմրագոյն է, նման ելական կայծի բայց գտանի ի Տպազէ քաղաք Հնդկաց, զոր երբեմն քարկոպղն գտին ի մէջ քարին, եւ տեսիլ պայծառ եւ զուարճացեալ վաճառեցին աղեբասարացոցն դոյզն գնոյ, իսկ աղեբասարացիք՝ Թէբէյացւոցն յաւելագոյն գնոց եւ նոքա մատուցին Թագուհոյն որ էր յայնմն ժամանակին, իսկ նորա առեալ ի Թագին իւրում ի մէջ ճակատոյն կապեաց» (Հունարեն բնագիրը զուգահեռ լատիներեն Թարգմանությամբ տե՛ս* **J. P. Migne**, *Patrologiae graecae, t. 43, էջ 325): Հին հեղինակները տարբեր ձևերով էին բնորոշում Տպազ քաղաքի տեղադրությունը: Դրանց մի մասը, այդ Թվում նաև Եպիփանը, այն համարում էին հնդկական քաղաք. ոմանք ենԹադրում էին, որ Տպազ քաղաքը գտնվում է Արաբիայում. սակայն ավելի հավանական է այն տեսակետը, համաձայն որի Տոպազոսը՝ Կարմիր ծովում գտնվող կղզիներից մեկն է և իր անվամբ կոչվում է նաև Թանկարժեք քար, որի հարուստ հանքերն այնտեղ են հայտնաբերվել: «...Տոպազոսը, _ գրում է Պլինիոս Մեծը, կղզու անունն է, որը գտնվում է Կարմիր ծովում, մայրցամաքից 35 մղոն հեռավորության վրա...» (**Pliny**. Natural History, t. X, էջ 25):*

*Տոպազոս կղզին իր անվանումը պահպանել է մինչև XX դարի սկիզբը: Այժմ այն կոչվում է Ջեբերջեդ (**Н. И. Корнилов, Ю. П. Солодова**,_Ювелирные камни. с. 143. Ջեբերջեդ կղզին հայտնի է նաև Ս. Հովհանի անվամբ. Natural History, X, էջ 251, ծն. 8), և այնտեղ մինչև հիմա շահագործվում են տպազիոնի կամ, ավելի ճիշտ՝ խրիզոլիտի հարուստ հանքերը, որովհետև Պլինիոսը, խոսելով տպազիոնի մասին, նկատի ուներ, այսպես կոչված, «արևելյան տպազիոնը», այսինքն՝ խրիզոլիտը (տե՛ս Natural History, X, էջ 250): Ըստ երևույԹին, Անանուն Արծրունին, խոսելով «ոսկետե-*

սակն տպազիովն»-ի մասին, նույնպես նկատի ունի խրիզոլիտը: Ի դեպ, Տպազոս կղզու արաբներն Զեբերջեդ անվանումը նույնպես նշանակում է «Խրիզոլիտ»:

Խնդրո առարկա հատվածի երկրորդ տերմինը, որ կարոտ է լուսաբանման, «ադեբասարցիք» տերմինն է: Ռ. Թոմսոնը իր անգլերեն թարգմանությունում պահպանել է տառադարձ թարգմանության «Alebasaratsik» ձևը, նշելով միայն ծանոթագրությունում, որ «Վ. Վարդանյանը այս տարօրինակ տերմինը թարգմանում է որպես «մարմարագործք» (Thomas Artsruni History of House of the Artsrunik): Կրկին վերադառնանք Պլինիոսին, որը, շարունակելով իր խոսքը տպազիոնի մասին, գրում է «Աղբյուրների մեծ մասը պնդում է, թե այդ թանկարժեք քարը ակոսավորված է նաև փոքրիկ Ալաբաստրում քաղաքում, որը գտնվում է Եգիպտոսում...» (Natural History, էջ 250): Եվ իրոք, Ալաբաստրում քաղաքը գտնվում էր հյուսիսային Եգիպտոսում. քաղաքի մոտակայքում Աղեբաստրյան լեռներում առկա էին գիպսի այն տեսակի հարուստ հանքերը, որը քաղաքի անվամբ ևս կոչվում է «ալեբաստր»: Հետևաբար «ադեբասարացիներ»-ի տակ պետք է հասկանալ Ալաբաստրա-Աղաբաստրա քաղաքի բնակիչներին:

## (ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆ)

1. Երեմ. Բ, 31:

2. «Բնագրում «Սրբոց մարգարէիցն Անանիանցն»: Պետք է ուղղել «Սրբոց մանկանցն Անանիանցն»: (Դան. Ա, Բ և Գ): Անանիանք անունով հայտնի էին երեք մանուկներ, որոնք հրաժարվել են երկրպագել Նաբուգոդոնոսոր թագավորի ոսկեձույլ արձանին և գցվեցին հնոց. բայց չայրվեցին: Անանիանց մանուկների մասին հայ մատենագրության մեջ եղած հիշատակությունները հաճախ չեղվում են աստվածաշնչյան հենքից (նույնն է կատարվել նաև այստեղ)» (Վ. Վարդանյան. [Հավելված], ծն. 1)

3. Դան. Գ. 32

4. Եսայ. Լ. 7-8

5. ... եղբայր նորա Դերանիկ ... Դերենիկը խրախանում Սենեքերիմի եղբոր Գուրգենի որդին էր

6. Մատթ. Ժ. 23

7. Սաղմ. ՂԵ. 7-8

8. Տե. և Առակ. Ի. 30-31

9. Մատթ. ԻԴ. 7

10. Ղուկ. ԻԱ. 25

11. Ղուկ. Չ. 36

12. Տե. և Ա Թագ. ԺՁ. 4-13

13. Եփէս., Զ, 12:
14. Եսայ., Խ, 6:
15. Յովհ., ԺԵ, 16:
16. Տե՛ս Մնսդ., ԺԴ, 18: Առ Եբր., Է, 1-4:
17. Բ Օրին., Գ, 28. ԼԱ, 7, 8, 23:
18. Եկից., ԼԹ, 14:
19. ... Եղիայի... բերանոյ իւրոյ: _ Գ Թագ., ԺԷ, 1-4: ԺԸ, 1-2, 41-45:
20. Տե՛ս Զաք., Թ, 9-10:
21. Մատթ., Դ, 21-22: Մարկ., Գ, 17: Ժ, 35-40:
22. Տե՛ս Մնսդ., ԻԷ, 27-29:
23. Մարկ., Է, 10: Ղուկաս., ԺԸ, 20: Եփես., Ժ, 2:
24. Առակ., ԺԳ, 1.
25. Մատթ., Է, 25:
26. Մատթ., ԻԴ, 21:
27. Տե՛ս, Դ Թագ., գլ. 19.
28. Սաղմ., ԼԳ, 15:

* *
*

1. Բոլոր տպագիր բնագրերում «աստանօր յանգ ելեալ աւարտեցաւ»: Ձեռագրի հիման վրա ուղղել ենք «աստանօր անյանգ ելեալ աւարտեցաւ» (տե՛ս ձեռ. Թ. 322ա): (Վ. Վարդանյան, ծն. 10):

2. Այստեղ ավարտվում է հիշատակարանի այն մասը, որը գրվել է Թով. Արծ. Պատմությունը արտագրելուց անմիջապես հետո, այսինքն 1303 Թ.,

3. ... կուսականաց... _ ուղղելի է կուսարանաց (Վ. Վարդանյան ծն. 12):

# ՑԱՆԿ ՕԳՏԱԳՈՐԾՎԱԾ ԱՂԲՅՈՒՐՆԵՐԻ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅԱՆ

## ՄԱՇՏՈՑԻ ԱՆՎԱՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆԻ ՁԵՌԱԳՐԵՐ

*NN 266, 1404, 1487, 1882, 1890, 1902, 2559, 6961, 7050, 8100, 8889, 10451:*

## ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՏՊԱԳԻՐ ԱՂԲՅՈՒՐՆԵՐ


**Աբգարյան Գ. Վ.** *«Սեբեոսի պատմությունը» և Անանունի առեղծվածը: Եր., 1965:*

**Աբեղյան Մ.** *Հայ հին գրականության պատմություն: Հ. I, Եր., 1944:*

**Աբրահամյան Ա. Գ.** *Անանիա Շիրակացու մատենագրությունը: Եր., 1944:*

**Ագաթանգեղոս.** *Պատմութիւն Հայոց: Աշխատասիրութեամբ Գ. Տէր-Մկրտչեան և Ստ. Կանայեանց: Տփղիս, 1909:*

**Ադոնց Ն.** *Հայաստանը Հուստինիանոսի դարաշրջանում: Եր., 1987:*

**Ադոնց Ն.** *Պատմական ուսումնասիրություններ. «Բագրատունեաց փառքը»: Փարիզ, 1948:*

**Ալիշան Ղ.** *Այրարատ: Վենետիկ, 1890:*

**Ալիշան Ղ.** *Հայապատում: Վենետիկ, 1901:*

**Ակինյան Ն.** *Գաւազանագիրք կաթողիկոսաց Աղթամարայ: Պատմական ուսումնասիրութիւն: Վիեննա, 1920:*

**Ակինյան Ն.** *Մատենագրական ուսումնասիրութիւններ. քննութիւն եւ բնագիր: Վիեննա, 1922:*

**Աճառյան Հ.** Անձնանունների բառարան: Հ. Ա-Դ: Եր., 1946:

**Անանեան Պ.** Մովսէս Քերթողահայր և Մովսէս Խորենացի: «Բազմավէպ», Վենետիկ, 1991, 1-2:

**Անանեան Պ.** Արծրունեաց տոհմին ուխտարանը: «Բազմավէպ», Վենետիկ, 1994:

**Անասյան Հ.** Հայկական մատենագիտություն: Ե-ԺԸ դդ., հ. Ա: Եր., 1959:

**Անդրիկեան Ն.** Մամբրէ Վերծանող: «Բազմավէպ», Վենետիկ, 1904:

**Ավդալբեգյան Թ.** Հայագիտական հետազոտություններ: Եր., 1969:

**Առաքելյան Բ. Ն.** Քաղաքային վարչություն և ինքնավարություն միջնադարյան Հայաստանում: «Պատմա-բանասիրական հանդես», Եր., 1961, 3-4:

**Աւգերեան Մ.** Լիակատար վարք և վկայաբանութիւնք սրբոց, որք կան ի հին տօնացուցի եկեղեցւոյ Հայաստանեայց, 12 հատորով: Վենետիկ, 1810-1815:

**Բարսեղ Կեսարացի** Յաղագս վեցաւրեայ արարչութեան: Աշխատասիրությամբ **Կիմ Մուրադյանի**: Եր., 1984:

**Գարեգին Ա կաթողիկոս** Յիշատակարանք ձեռագրաց. Հ. Ա: Անթիլիաս, 1951:

**Գիրք Աստուածաշունչք** Հին և Նոր Կտակարանաց: Վենետիկ, 1860:

**Դանիելյան Է. Լ.** Հայաստանի քաղաքական պատմությունը եւ Հայ առաքելական եկեղեցին (VI-VII դարեր): Եր., 2000:

**Թովմայ Արծրունի** — *Պատմութիւն տանն Արծրունեաց ի Թովմա վարդապետէ Արծրունւոյ: Կ. Պոլիս, 1852:*

**Թովմայ վարդապետի Արծրունւոյ** — *Պատմութիւն տանն Արծրունեաց. ի լոյս էած Ք. Պ.: Ս. Պետերբուրգ, 1987:*

**Թովմայ Արծրունի և Անանուն** — *Պատմութիւն տանն Արծրունեաց. բնագիրը հրատարակության պատրաստեց, աշխարհաբար թարգմ. և ծանոթագր.* **Վ. Մ. Վարդանյան:** *Եր., 1985:*

**Ինճիճեան Ղ.** — *Ստորագրութիւն հին Հայաստանեայց: Վենետիկ, 1882:*

**Լաբուբնա** — *Թուղթ Աբգարու թագաւորի Եդեսիոյ քաղաքի: Վենետիկ, 1868:*

**Խալաթեանց Գր.** — *Ղազար Փարպեցի և գործք նորին: Մոսկվա, 1989:*

**Խաչիկյան Լ. Ս.** — *ԺԴ դարի հայերեն ձեռագրերի հիշատակարանները: Կազմեց* **Լ. Ս. Խաչիկյան:** *Եր., 1950:*

**Կորիւն** — *Վարք Մաշտոցի. հրատ* **Մ. Աբեղյան:** *Եր., 1941:*

**Համբարձումյան Ա. Խ.** — *Մովսես Խորենացու մի հաղորդման շուրջ: «Լրաբեր հասարակական գիտությունների», Եր., 1997, 2:*

**Հայերեն ձեռագրերի հիշատակարաններ (Ե–ԺԲ դդ.)** — *Կազմեց* **Ա. Ս. Մաթևոսյան:** *Եր., 1988:*

**Հարությունյան Բ. Ա.** — *Փայտակարան քաղաքը և նրա տեղադրությունը: «Լրաբեր հասարակական գիտությունների», 1981, 12:*

**Հարությունյան Բ. Ա.** — *Մեծ Հայքի Մոկք աշխարհը ըստ «Աշխարհացոյց»-ի: «Պատմա-բանասիրական հանդես», Եր., 1990, 1:*

*Հարությունյան Բ. Ա.* Մի սրբագրում Թովմա Արծրունու Պատմության մեջ. «Մաշտոցյան Գ. ընթերցումներ»: Օշական, 2001:

*«Հնոց և Նորոց».* Հրատարակեց Գարեգին Վ. Սրվանձտեանց: Կ. Պոլիս, 1874:

*Հովհաննիսյան Մ.* Հայաստանի բերդերը: Վենետիկ, 1940:

*Ղազար Փարպեցի.* Պատմութիւն Հայոց և Թուղթ առ Վահան Մամիկոնեան: Թիֆլիս, 1904:

*Մաթևոսյան Ռ. Ի.* Բագրատունիների պատմա-տոհմաբանական հանրագիտարան: Եր., 1997:

*Մաթևոսյան Ռ. Ի.* Հայկական զինանշանները: Եր., 1994:

*Մարկուարտ Հ.* Բագրատունեաց ծագումը: Վիեննա, 1913:

*Մարկուարտ Հ.* Պարսկահայք նահանգը: «Պատմա-բանասիրական հանդես», Եր., 1961, 1:

*Մովսիսի Խորենացւոյ* Պատմութիւն Հայոց: Աշխատութեամբ Մ. Աբեղեան և Ս. Յարութիւնեան: Տփղիս, 1913:

*Մովսես Խորենացի* Հայոց պատմություն: Թարգմ., ներած. և ծանոթ. Ստ. Մալխասյանց: Եր., 1997:

*Մովսէս Կաղանկատուացի* Պատմութիւն Աղուանից աշխարհի: Քննական բնագիրը և ներածությունը Վ. Առաքելյանի:

*Մուշեղյան Ա. Վ.* Որտե՞ղ է գտնվում Մովսես Խորենացու հիշատակված Բյութանիան: «Պատմա-բանասիրական հանդես», Եր. 1990, 1:

*Մուշեղյան Խ. Ա.* Աբբասյան դրամների թողարկումը խալիֆատի Արմինիա նահանգում: «Պատմա-բանասիրական հանդես», Եր. 1973, 4:

*Յովհաննես Դրասխանակերտցի* Պատմութիւն Հայոց: Թիֆլիս, 1912:

*Յովհան Մամիկոնեան* — Պատմութիւն Տարօնոյ: Աշխատությամբ և առաջաբանով Ա. Աբրահամյանի: Եր., 1941:

*Նալբանդյան Հ. Տ.* — Արաբ ոստիկանները Հայաստանում: «Տեղեկագիր հասարակական գիտությունների», Եր., 1956, 8:

*Նալբանդյան Հ. Տ.* — Արաբական աղբյուրները Հայաստանի և հարևան երկրների մասին: Կազմեց և թարգմ. Հ. Տ. Նալբանդյան: Եր., 1965:

*Նորայր Բիւզանդացի* — Հայկական բառաքննութիւն: Կ. Պոլիս, 1880:

*Նորայր Բիւզանդացի* — Թովմայ Արծրունի եւ Անանուն Արծրունի երկու այլեայլ պատմագիրք: «Բազմավէպ», Վենետիկ, 1905, 5-10:

*Նորայր Բիւզանդացի* — Նախնիք: Հրատարակութեան պատրաստեց Մարտիրոս Մինասեան: Ժնեւ, 1996:

*Նորայր արք. Ծովական* — «Վանատուր». Բանասիրական յօդուածներու ժողովածոյ: Երուսաղէմ, 1998:

*Նոր բառգիրք Հայկազեան լեզուի (ՆԲՀ)* — Երկասիրութեամբ Գ. Աւետիքեան, Բ. Սիւրմէլեան, Մ. Աւգերեան: Վենետիկ, հ. Ա, 1836, հ. Բ, 1837:

*Շալճյան Ս.* — Վասպուրականի թագավորության պատմությունից: «Տեղեկագիր հասարակական գիտությունների», Եր. 1949, 4:

*Ջամչեան Մ.* — Պատմութիւն Հայոց: Հ. Ա, Վենետիկ, 1784:

*«Պատմութիւն Աղեքսանդրի Մակեդոնացւոյ»* — Հայկական խմբագրություններ: Աշխատասիրությամբ Հասմիկ Սիմոնյանի: Եր., 1979:

*Պատմութիւն Ղևոնդեայ մեծի վարդապետի Հայոց* — Ս. Պետերբուրգ, 1887:

Պատմութիւն Սեբէոսի — Աշխատասիրությամբ Գ. Վ. Աբգարյանի: Եր., 1979:

Սամուէլի քահանայի Անեցւոյ — Յաւաքմունք ի գրոց պատմագրաց: Վաղարշապատ, 1893:

Սոփերք Հայկականք — Հ. VI, VII, Վենետիկ, 1854:

Ստեփանոս Օրբելեան — Պատմութիւն նահանգին Սիսական: Թիֆլիս, 1910:

Վարդանայ Բարձրբերդեցւոյ — Պատմութիւն տիեզերական: Ի լոյս ընծայեաց Մկրտիչ Էմին: Մոսկվա, 1861:

Վարդանյան Վ. — Վասպուրականի Արծրունյաց թագավորությունը 908-1021 թթ.: Եր., 1969:

Վարդանյան Վ. — Վասպուրական թագավորության սահմանները 9-11-րդ դդ.: «Պատմա-բանասիրական հանդես», Եր. 1969, 4:

Վարդանյան Վ. — Արծրունիները Հայոց պատմության մեջ: Եր., 2002:

Տաշեան Հ. — Մատենագրական մանր ուսումնասիրութիւնք: Վիեննա, 1895-1901:

Տաշեան Հ. — Ուսումնասիրութիւնք Ստոյն-Կալիսթենայ «Վարուց Աղեքսանդրի»:

Տաշեան Հ. — Վարդապետութիւն առաքելոց. Անվաւերական կանոնաց մատեանը: Վիեննա, 1896:

Տեր-Ղևոնդյան Ա. — Արաբական ամիրայությունները Բագրատունյաց Հայաստանում: Եր., 1961:

Տէր-Մինասեանց Ե. — Հայոց եկեղեցու յարաբերութիւնները ասորւոց եկեղեցիների հետ: Էջմիածին, 1908:

Տեր-Մինասյան Ե. — Միջնադարյան աղանդների ծագման և զարգացման պատմությունից: Եր., 1968:

**Տէր-Մկրտչեան Գ.** Խորենացու Պատմութեան ուսումնասիրութիւն: Վաղարշապատ, 1890:

**Տէր-Պողոսեան Գր.** Նկատողութիւններ Եղիշէի Պատմութեան վերաբերեալ: «Հանդէս ամսօրեայ», Վիեննա, 1896, 5:

**Ուլթմազյան Հ. Մ.** Սյունիքը 9-10-րդ դարերում: Եր., 1957:

**Ուլուբաբյան Բ. Ա.** Խաչենի իշխանությունը 10-15-րդ դարերում: Եր., 1975:

**Փաւստոս Բյուզանդացի** Պատմութիւն Հայոց. Ս. Պետերբուրգ, 1883:

**Փափազյան Հ.** Անանուն տաճիկ աշխարհագիրը Հայաստանի, Ադրբեջանի և Արևելյան Վրաստանի աշխարհագրության և տնտեսական հարաբերությունների մասին (X դ.): ՀՍՍՌ ԳԱ «Տեղեկագիր», Եր., 1953, 5:

**Փիլոնի Եբրայեցւոյ** Մնացորդք ի Հայս որ են մեկնութիւնք Ծննդոց և Ելից: Աշխատասիրութեամբ Հ. **Մկրտիչ** աթոռակալ վարդ. **Մխիթ. Աւգերեան**: Վենետիկ, 1826:

**Փիլոն Եբրայեցւոյ** Ճառք թարգմանեալք ի նախնեաց մերոց, որոց հելլէն բնագիրք հասին առ մեզ: Վենետիկ, 1892:

**Քասունի Ե.** Ամիդ (Տիգրանակերտ), Տիգրանակերտ (Ֆարղին). Շփոթը հայ պատմագրութեան մէջ: Պէյրութ, 1968:

**Քսենոֆոն** Կիւրոպաշտպանում: Ֆրանս. թարգմ. Աշոտ Մուրադխանեան: Թեհրան, 1971:

**Օրմանեան Մ.** Ազգապատում, Հ. Ա, Կ. Պոլիս, 1912:

*Абуладзе И. В.* Древнеармянский перевод грузинских исторических хроник (Картлис Цховреба). Грузинский оригинал и древнеармянский перевод с исследованием и вокабулярием издал **И. В. Абуладзе**: Тбилиси, 1944.

Агатангелос. История Армении. Перевод с древнеарм., вступительная статья и комментарий К. С. Тер-Давтян и С. С. Аревшатяна. Ер.1904:

Акопян А. А. Албания-Алуанк в греко-латинских и древнеармянских источниках. Ер. 1987.

"Анонимная сирийская хроника 1234г." – В кн.: Пигулевская Н. В. Византия и Иран на рубеже VI-VII вв. М.-Л., 1946.

Антиох Стратиг. Пленение Иерусалима в 614г. Издал Н. Марр. СПб., 1909.

Аревшатян С.С. Формирование философской науки в древней Армении (V-VI вв.). Ер., 1973.

Арриан. Поход Александра. Пер. с греч. М. Е. Сергеенко М.-Л., 1962:

Бартольд В. В. Историко-географический обзор Ирана. Соч., т. VII. М., 1971.

Бархударян С. Урартское происхождение нахарарского рода Арцруни. "Исследования по истории культуры народов Востока". Сборник в честь академика И. А. Орбели М.–Л. 1960.

Библия Москва, 1912.

Босворт К. Е. Мусульманские династии, справочник по хронологии и генеалогии. М. 1971.

Геродот. История в девяти книгах. Перевод и примечания Г. А. Стратановского. Л., 1979.

Грязневич Н. А. Развитие исторического сознания арабов (VI-VIII вв.). Сб. "Очерки истории арабской культуры в V- XV вв.". М., 1982.

Гудзий Н. К. Сравнительное изучение литератур в русской дореволюционной и советской науке. Сб. "Взаимодействие и взаимосвязи национальных культур". М., 1961.

Дворецкий И. Латинско-русский словарь. М., 1976.

***Еврейская энциклопедия.*** *Т. VI.*

***Епифаний Кипрский.*** *Творения иже во святых отца нашего Епифания, еписк. Кипрского. Москва, ч. I, 1863, ч. IV, 1880.*

***Гумилев Л. Н.*** *Эфталиты и их соседи в IV в. ВДИ, 1959, 1.*

***Гумилев Л. Н.*** *Древние тюрки. Москва, 1967.*

***Гумилев Л. Н.*** *Тысячелетие вокруг Каспия. Москва, 1993.*

***Иоанн Златоуст.*** *Творения святого Иоанна Златоуста. Беседы на кн. Бытия, ч. I, Москва, 1895.*

***Йованнес Драсханакертци.*** *История Армении. Пер. с древнеарм., вступительная статья и комментарий* ***М. О. Дарбинян-Меликян****. Ер. 1986.*

***Иосиф Флавий.*** *Иудейские древности. Перевод с греческого* ***Г. Г. Генкеля****. Т. I и II. М. 1996.*

***История Анонимного повествователя*** *(Псевдо-Шапух Багратуни). Пер. с древнеарм., пред. и прим.* ***М. О. Дарбинян-Меликян****. Ер., 1971.*

***История епископа Себеоса.*** *Перев. с арм. Ст. Малхасянца. Ереван. 1939.*

***История халифов вардапета Гевонда,*** *писателя VIII в. Пер.* ***К. Патканова****. СПб., 1862.*

***Капанцян Г. А.*** *Историко-лингвистические работы. II, Ер., 1975.*

***Капанцян Г. А.*** *Культ Ара Прекрасного. Ер., 1945.*

***Колесников А. И.*** *Иран в начале VII в. (Источники, внутренняя и внешняя политика, вопросы административного деления). ПС, вып. 22 (85). Л., 1970.*

***Корнилов Н. И, Солодова Ю. П.*** *Ювелирные камни. М. 1986.*

***Лихачев Д. С.*** *Поэтика древнерусской литературы. Л., 1979.*

| | |
|---|---|
| *Луконин В. Г.* | *Иран в III в. Москва, 1979.* |
| *Марр Н. Я.* | *Арабское извлечение из сирийской рукописи Марибаса. СПб., 1902.* |
| *Марр Н. Я.* | *Аркаун, монгольское название христиан в связи с вопрсом об армянах-халкидонитах. Сб. "Н. Я. Марр. Кавказский культурный мир и Армения". Составитель и редактор тома: П. М. Мурадян. Ер., 1996.* |
| *Марр Н. Я.* | *Новооткрытый армянский текст "Паралипоменон". Сб. "Н. Я. Марр. Кавказский культурный мир и Армения".* |
| *Марр Н. Я.* | *Сборники притч Вардана. СПб., 1894.* |
| *Марр Н. Я.* | *Хитон Господень в книжных легендах армянских, грузинских и сирийских "Сб. статей учеников Бар. В. Р. Розена". СПб., 1897.* |
| *Матиане-Картлиса.* | *Пер., введ. и прим. М. Д. Лордкипанидзе. Тбилиси, 1976.* |
| *Мещерская Е. Н.* | *Легенды об Авгаре в литературах византийского культурного круга. Сб. "Кавказ и Византия". Вып. 3. Ер., 1982.* |
| *Орбели И. А.* | *Избранные труды. "Из истории культуры и искусства Армении". Т. I, М., 1968:* |
| *Памятники армянской агиографии.* | *Вып. I. Пер. с древнеарм., вступительная статья и примеч. К. С. Тер-Давтян. Ер., 1973:* |
| *Периханян А.* | *Сасанидский судебник . "Книга тысячи судебных решений". Ер., 1973.* |
| *Пигулевская Н. В.* | *Византия и Иран на рубеже VI и VII веков. М.-Л., 1946.* |
| *Степанян Л.* | *Агиографический памятник "История Рипсимянских дев". Сб. "Armenia and Christian Orient". Ер., 2000.* |

*Страбон.* — *География в 17-ти книгах. Пер., статья и коммент.* ***Г. А. Стратановского****. М., 1964.*

*Тер-Гевондян А. Н.* — *Армения и арабский халифит. Ер. 1977.*

*"Типик Григория Пакуриана".* — *Введение, перевод и комментарий* ***В. А. Арутюновой-Фиданян****. Ер., 1978.*

*Токарский А. М.* — *Архитектура Армении в IV- XIV вв. Ер., 1961.*

*Товма Арцруни и Аноним.* — *История дома Арцруни. Пер. с древнеарм., вступительная статья и коммент.* ***М. О. Дарбинян-Меликян****. Ер., 2001.*

*Толковая Библия* — *или комментарий на все книги св. Писания Ветхого и Нового Заветов. Стокгольм, 1987.*

*Тревер К. В.* — *Кушаны, хиониты и эфталиты по армянским источникам IV-VII вв. (к истории народов Средней Азии). – "Советская археология". XXI, 1954.*

*Фасмер Р. Р.* — *О монетах Саджидов. (Отдельный оттиск из "Известий О-ва обследования и изучения Азербайджана".). Баку, 1927.*

*Фрай Р.* — *Наследие Ирана. М., 1972.*

*Халатянц Гр.* — *Армянские Аршакиды. М., 1903.*

*Халатянц Гр.* — *Армянский эпос в "Истории Армении" Моисея Хоренского. М., 1896.*

*Юзбашян К. Н.* — *Армянские государства эпохи Багратидов и Византия IX-XI вв. М., 1988.*

*Adontz N.* — *Les Taronites en Arménie et à Byzanse. EAB, Lisbonne, 1965.*

*Brosset M.* — *Notice sur l'Histoire de Thoma Ardzrouni, Xe siècle. MEA. IV, VI.*

*Christensen A.* — *L'Iran sous les Sassanides, Copenhague, 1944.*

*Collection d'Historiens Arméniens.* — *T. **Ardzrouni,** Xe s. Histoire des Ardzrounis, Traduite par **M. Brosset.** T. I. S.–Pétersbourg, 1874.*

*Dulaurier M. E.* — *Recherches sur la chronologie arménienne technique et historique. Paris, 1859.*

*Laurent J.* — *Un féodal arménien au IXe siècle: Gourgen Ardzrouni, fils d'Abou-Beldj."Etudes d'Histoire arménienne". Louvain, 1971*

*Marquart J.* — *Südarmenien und die Tigrisquellen nach grichischen und arabischen Geographen. Vien, 1930.*

*Marquart J.* — *Eransahr nach der geographie des Ps. Moses Xorenaci. Berlin, 1907.*

*Migne Y.* — *Patrologiae graecae, PG, t. XVI, XVII, XVIII. Brepols-Turnhout.*

*Pliny.* — *Natural History, X. London, 1962.*

*Thomas Ardsruni.* — *History of the House of the Artsruny. Translation and Commentary by Robert W. Thomson. Detroit, 1985.*

*Weil G.* — *Geschichte der Califen. T. I, Mannheim, 1848.*

# ՑԱՆԿ ՑԱՏՈՒԿ ԱՆՈՒԱՆՑ*



---

* Սույն անվանացանկը՝ 1887 թ. տպագրի համար Ստ. Մալխասյանցի կազմած հատուկ անունների ցանկի արտատպությունն է որոշ ուղղումներով:

# ԹՈՎՄԱ ԱՐԾՐՈՒՆԻ ԵՒ ԱՆԱՆՈՒՆ
# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՏԱՆՆ ԱՐԾՐՈՒՆԵԱՑ

# ТОВМА АРЦРУНИ И АНОНИМ
# ИСТОРИЯ ДОМА АРЦРУНИ

Քննական բնագիրը, առաջաբանը և ծանոթագրությունները՝ Մ. Հ. Դարբինյան-Մելիքյանի

Պատասխանատու խմբագիր՝ Ս. Ս. Արևշատյան

Համակարգչային շարվածք և ձևավորում՝ Ա. Խանզադյան

Թուղթ՝ օֆսեթ N 1
Տպաքանակը՝ 400:

ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ
ՄԱՇՏՈՑԻ ԱՆՎԱՆ ՀԻՆ ՁԵՌԱԳՐԵՐԻ ԻՆՍՏԻՏՈՒՏ

«ՄԱԳԱՂԱԹ» ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

ԵՐԵՎԱՆ, ՄԱՇՏՈՑԻ ՊՈՂՈՏԱ 53

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ